АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ИСТОРИИ

ВИЗАНТИЙСКИЕ ИСТОЧНИКИ

III

# ИОАНН СКИЛИЦА

ПЕРЕВОД С ОРИГИНАЛА,
ПРЕДИСЛОВИЕ И ПРИМЕЧАНИЯ
Р. М. БАРТИКЯНА

ИЗДАТЕЛЬСТВО АН АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1979

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

Գ

# ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԿԻԼԻՑԵՍ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆ ԲՆԱԳՐԻՑ,
ԱՌԱՋԱԲԱՆ ԵՎ ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ
ՀՐԱՉ ԲԱՐԹԻԿՅԱՆԻ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1979

Հատորի խմբագիր
Ս. Մ. ԿՐԿՅԱՇԱՐՅԱՆ

Հովհաննես Սկիլիցես.
Հ 851 [Բնագրեր] / Թարգմ. բնագրից, առաջաբան և ծանոթագր. Հ. Բարթիկյանի; խմբ. Ս. Մ. Կրկյաշարյան.— Եր.: ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1979.—LXXXIII. 439 էջ.—(Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին; 10. Բյուզանդական աղբյուրներ; 3 / ՀՍՍՀ ԳԱ, Պատմ. ին-տ).

Գրքում տրվում է XI դ. երկրորդ կեսի բյուզանդական խոշորագույն ժամանակագիր Հովհաննես Սկիլիցեսի «Համառոտություն պատմությանց» երկի երկրորդ՝ ինքնուրույն մասի (959—1057), ինչպես և նրա «Շարունակության» (1057—1081) ամբողջական թարգմանությունը։ Հիշյալ երկը XI դ. բյուզանդական ամենակարևոր աղբյուրն է խնդրո առարկա ժամանակաշրջանի ոչ միայն կայսրության պատմության, այլև հարևան երկրների ու սելջուկների նվաճումների ուսումնասիրության։

Հ $\frac{0503000000}{703\ (02)-79}$ 24—78

902.9
ԳՄԴ 63.2

# ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԿԻԼԻՑԵՍԸ, ՆՐԱ «ՀԱՄԱՌՈՏՈՒԹՅՈՒՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆՑ»-Ը ԵՎ ՀԱՅ-ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՌՈՄԱՆՈՍ II-ԻՑ (959—963) ՆԻԿԵՓՈՐ III ԲՈՏԱՆԻԱՏԵՍ (1078—1081)

*Գեորգիոս Կեդրենոս։ Հայագիտության (և ոչ միայն հայագիտության) մեջ հաճախ այդ անունն են տալիս «Համառոտություն պատմությանց»* (Σύνοψις ἱστοριῶν) *խորագիրը կրող մի ընդարձակ պատմական երկի հեղինակին, որի դերն իրականում եղել է այն, որ իր՝ աշխարհի արարչագործությունից սկսվող ժամանակագրության 811—1057 թթ. դեպքերը շարադրելիս բառացիորեն արտագրել է Հովհաննես Սկիլիցեսի երկը*[1]*։*

*Դեռևս հայոց նոր պատմագրության հիմնադիր Միքայել Չամչյանն իր «Պատմություն հայոց» եռահատոր աշխատության երկրորդ հատորում օգտագործել է Հովհաննես Սկիլիցեսի տվյալները, նրանց հեղինակին անվանելով Կեդրենոս, ապա և Սկիղիցես*[2]*։*

*Հայագիտության մեջ «Համառոտություն պատմությանց» երկի հեղինակին Կեդրենոս են անվանում մինչև օրս։ Ակադ. Հ. Մանանդյանն իր «Քննական տեսության» մեջ Հայաստանի պատմության տարբեր դրվագների վերաբերյալ բերում է Սկիլիցեսի տվյալները և նրանց հեղինակ համարում Կեդրենոսին*[3]*։ Եվ այդպես է ոչ միայն հայագիտության*

[1] *Հովհաննես Սկիլիցեսի մասին մանրամասն մատենագիտությունը տե՛ս հետևյալ գործերում.* *G. Moravcsik*, Byzantinoturcica I. Die byzantinischen Quellen der Geschichte der Turkvölker. Zweite durchgearbeitete Auflage, Berlin, 1958. S. 335—341; *M. E. Colonna*, Gli storici bizantini dal IV al XV secolo. I. Storici profani, Napoli, 1956, p. 116—118; Ioannis Scylitzae Synopsis historiarum, editio princeps, recensuit *Ioannes Thurn*. Corpus Fontium Historiae Byzantinae, Consilio Societatis Internationalis Studiis Byzantinis Provehendis Destinatae Editum, vol. V, Series Berolinensis, ediderunt *H.-G. Beck, A. Kambylis, R. Keydell*. Apud Walter de Gruyter et socios. Berolini et Novi Eboraci, MCMLXXIII (1973) p. XLVII—LVI.

[2] Մ. Չամչեան, *Պատմութիւն հայոց. հտ. Բ, Վենետիկ, 1785, էջ 925, 935 և այլուր։*

[3] Հ. Մանանդյան, *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հտ. Գ, Երևան, 1952, էջ 21, 25 ծանոթ. 5, 41, 42 ծանոթ. 1 և այլն։*

մեջ։ Վրացի բյուզանդագետ Ս. Գ. Կաուխչիշվիլին իր՝ «Գեորգիկա» (Բյուզանդական աղբյուրները Վրաստանի մասին) բազմահատոր աշխատության IV գրքում վրացերեն թարգմանությամբ տալիս է Սկիլիցեսի ժամանակագրության Վրաստանին վերաբերող տվյալները, հեղինակությունը վերագրելով Գեորգիոս Կեդրենոսին[4]։ Նույն բանը կարելի է հանդիպել բազմաթիվ բյուզանդագետների աշխատություններում։

Այդ «սխալի» պատճառն այն է, որ, ինչքան էլ տարօրինակ թվա, Հովհաննես Սկիլիցեսի գործն առաջին անգամ լույս տեսավ միայն 1973 թ.։ Դրանից չորս հարյուր տարի առաջ լույս էր տեսել այդ երկի Գաբիուսի իրականացրած լատիներեն թարգմանությունը[5], որը, հասկանալի է, ոչ միայն մատենագիտական unicum է, այլև գիտական ուսումնասիրության համար ոչ պիտանի։ Սկիլիցեսի ժամանակագրության հունարեն բնագրի չտպագրվելու պատճառն, անշուշտ, հրատարակիչների կողմից այդ գործի թերագնահատումը չէր, ոչ էլ քննական բնագրի կազմման խսկապես առկա դժվարությունները, այլ պարզապես այն հանգամանքը, որ XII դարի բյուզանդական ժամանակագիր Գեորգիոս Կեդրենոսը, ինչպես ասվեց, Սկիլիցեսի գործն ամբողջությամբ ընդգրկել էր իր տիեզերական ժամանակագրության մեջ, որը որպես Կեդրենոսի գործ հրատարակվել էր բազմիցս։ Որպես Կեդրենոսի ժամանակագրության մաս, այն առաջին անգամ հրատարակվել էր դեռ 1566 թ. Բազելում և կրում է հետևյալ խորագիրը. „Georgii Cedreni Annales, sive Historiae ab exordio mundi ad Isaacium Comnenum usque compendium. Guilielmo Xylandro Augustano interprete, qui annotationes etiam addidit et tabellas chronologicas, Basiliae per Ioan. Oporinum et Episcopios Fratres.

Այնուհետև Սկիլիցեսի երկը որպես Գեորգիոս Կեդրենոսի ժամանակագրության մաս և «Շարունակությունը» որպես Հովհաննես Սկիլիցեսի գործ հրատարակվեց 1647 թ. Փարիզում, Շ. Ֆաբրոյի կողմից՝ բյուզանդական պատմիչների փարիզյան մատենաշարում („Corpus Byzantinae Historicae“) հետևյալ երկարաշունչ խորագրի տակ. Georgii Cedreni Compendium historiarum ex versione Guilelmi Xylandri, cum ejusdem annotationibus. Accedunt huic editioni praeter lacunas tres ingentes

---

[4] Сведения византийских писателей о Грузии, том V. Греческие тексты с грузинским переводом издал и примечаниями снабдил *С. Г. Каухчишвили*, Тбилиси, 1963.

[5] Historiarum compendium, quod incipiens a Nicephori imperatoris a Genicis obitu ad imperium Isaaci Comneni pertinet. A Joanne Curopalate Scilizzae magno drungario viglae conscriptum a *J. B. Gabio* conversum, Venetiis, 1570.

et alias expletas, Notae in Cedrenum P. Iacobi Goar, Ord. Praedicator et Caroli Annibali Fabroti I. C. Glossarium ad eundem Cedrenum. Item Ioannes Skylitzae Curopalates, excipiens ubi Cedrenus dessinit nunc primum graece editus ex Bibliotheca Regia. Parisiis e typographia regia MDCXLVII (1647).

Փարիզում լույս տեսած բնագիրն այնուհետև վերահրատարակվեց բյուզանդական հեղինակների վենետիկյան մատենաշարում („Byzantinae Historiae scriptores in unum corpus redacti", Venetiis, 1729), նույն խորագրով, ապա Բոննյան մատենաշարում՝ Իմմ. Բեկկերի կողմից („Corpus Scriptorum Historiae Byzantinae", 1839), և վերջապես Migne-ի հայտնի Հունական Հայրաբանության („Patrologia graeca") 121 և 122 հատորներում (Փարիզ, 1864)։

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, Հովհաննես Սկիլիցեսի երկի հունարեն բնագիրը մատչելի էր ուսումնասիրողներին, թեև ոչ հազվադեպ, մասնագետները այս կամ այն անվան, թվականի և այլ հարցերի ճըշգրտման համար ստիպված էին դիմելու Սկիլիցեսի՝ աշխարհի տարբեր մատենադարաններում պահվող բազմաթիվ ձեռագրերին։

Հովհաննես Սկիլիցեսի «Համառոտություն պատմությանցը», ինչպես ասվեց, ընդգրկում է 811—1057 թթ. դեպքերը և կարելի է երկու մասի բաժանել։ Առաջին մասը «Թեոփանեսի Շարունակող» խորագիրը կրող հայտնի ժամանակագրության վերաշարադրությունն է և հասցվում է մինչև X դ. կեսը։ Այս մասն այնքանով է արժեքավոր, որ կարող է օգտակար լինել Թեոփանեսի Շարունակողի հիշյալ երկի գիտական հրատարակությունը պատրաստելու, ինչպես և այդ ժամանակագրության առանձին տեղեր ստուգելու, ճշգրտելու տեսակետից։ Քանի որ Սկիլիցեսի ժամանակագրության առաջին մասն ըստ էության բանաքաղություն է մի աղբյուրից, որ ամբողջությամբ պահպանվել է և նկատի ունենալով այն հանգամանքը, որ «Թեոփանեսի Շարունակողը» կազմելու է սույն՝ «Բյուզանդական աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» մատենաշարի 5-րդ գիրքը, ապա «Բյուզանդական աղբյուրների» այս՝ երրորդ հատորում Սկիլիցեսի երկի առաջին մասը մենք չենք ընդգրկելու։ Ինչ վերաբերում է Սկիլիցեսի աշխատության երկրորդ մասին, ապա այն ինքնուրույն արժեք է ներկայացնում և անգնահատելի է X դ. երկրորդ կեսից մինչև XI դ. առաջին կեսն ընկած ժամանակահատվածի պատմության ուսումնասիրության համար։ Նյութի ընդգրկման առումով այդ շրջանի և ոչ մի բյուզանդական աղբյուր չի կարող համեմատության մեջ դրվել Հովհաննես Սկիլիցեսի պատմական երկի հետ։ Ճիշտ է, այդ շըր-

*ջանի պատմության վերաբերյալ մենք ունենք բյուզանդական այնպիսի անվանի հեղինակների գործերը, ինչպիսիք են Լևոն Սարկավագը, Միքայել Պսելլոսը և Միքայել Ատտալիատեսը, բայց առանց Սկիլիցեսի երկի այդ ժամանակաշրջանի պատմության լուսաբանությունն, անտարակույս, կլիներ թերի։*

*Հովհաննես Սկիլիցեսի անձի՝ վերաբերյալ մեր տեղեկությունները ծայր աստիճան աղքատիկ են։ Իր աշխատության խորագրում նշված է, որ նա կուրապաղատ էր և վիգլայի մեծ դրունգար։ Կարծում են, որ պատմիչ Հովհաննես Սկիլիցեսը և կուրապաղատ ու վիգլայի դրունգար, պրոտովեստիարիոս Հովհաննես Թրակեսիացին նույն անձնավորություններն են։ Հայտնի է, որ Հովհաննես Թրակեսիացին 1092 թ. մի հուշագիր է ներկայացրել Ալեքսիոս I կայսեր[6]։*

*Կուրապաղատը Բյուզանդիայում բարձր պատվաստիճան էր, որի կրողը վաղ շրջանում կայսրից, կեսարից և նոբելիսսիմոսից հետո չորրորդ մարդն էր։ Բայց IX դ. վերջից այդ պատվաստիճանն սկսեց հասարականալ, մասամբ այն պատճառով, որ արդեն շնորհվում էր և օտարերկրացի իշխանավորներին։ Ինչ վերաբերում է վիգլայի դրունգարին, ապա այդ պաշտոնը կրողը Կոստանդնուպոլսում գտնվող չորս գվարդիաներից մեկի՝ Արիթմոսների հրամանատարն էր։ Հիշյալ գվարդիայի հիմնական պարտականությունը արքունիքի անվտանգության ապահովումն էր։*

*Սկիլիցեսը ծերակուտական էր, նա դրական է գնահատում այն կայսրերին, որոնք սիրալիր էին ծերակույտի հանդեպ և պարսավում նրանց, որոնք ոտնահարում կամ արհամարհում էին նրա շահերը։ Սկիլիցեսը զայրացած է այն բանի համար, որ Միքայել VI-ը պատասխանատու պաշտոններում նշանակեց ոչ ծերակուտականներին, այլ մանր ծառայողներին։ Մեր պատմիչը, լինելով ռազմական շրջաններին մոտիկ կանգնած անձնավորություն, հետևողականորեն պաշտպանում է ռազմական ավագանու շահերը, բարձր գնահատում բանակի դերը երկրի պաշտպանության գործում։*

*Որպես իր ժամանակի ծնունդ, Սկիլիցեսը ծայր աստիճան սնոտիապաշտ է։ Նա հավատում է, թե կայսրության սահմաններում խոշոր եղջյուրավոր անասունների անկման պատճառը, Կոստանդնուպոլսում ամառային պալատի կառուցման ժամանակ հիմքեր փորելիս հայտնաբեր-*

---

[6] Εὐδόξου Θ. Τσολάκη, Ἡ Συνέχεια τῆς Χρονογραφίας τοῦ Ἰωάννου Σκυλίτση (Ioannes Scylitzes Continuatus), Θεσσαλονίκη, 1968, σελ. 96. *Каждан*, Рец. на Скил., стр. 208.

ված ցլի մարմարյա գլուխը բանվորների կողմից ջարդելն ու կիր պատրաստելու համար կրակը նետելն էր։ Նա հավատում է ժողովրդի մեջ տարածված զրույցներին, թե Նիկեփոր II Փոկասը, թեև կարող էր գրավել Անտիոքը, չգրավեց այն, քանզի կանխագուշակված էր, թե քաղաքի առման օրը կայսրը մեռնելու է։ Ավելորդ է ասել, որ տարերային երևույթները՝ երկրաշարժ, գիսավոր աստղի երևալը, արեգակի խավարումը և այլն, անպայման վատ բան են կանխագուշակում (կայսեր մահ, ապստամբություններ, թշնամիների արշավանք, հոռոմների պարտություն և այլն)։ Նա հավատում է նաև տեսիլքներին ու երազներին։

Հովհաննես Սկիլիցեսն ապրել է XI դ. երկրորդ կեսին և XII դ. առաջին տարիներին[7] և հույն ուսումնասիրող Ե. Ցոլակիսի հաշվումներով ծնվել է 1045 թ. հետո[8]։ Նա իրեն փիլիսոփա Պսելլոսի (1018—1096) ժամանակակից է համարում[9]։

Ահա այն ամենը, ինչ մենք գիտենք Հովհաննես Սկիլիցեսի մասին։ Հայտնի է, որ բացի «Համառոտություն պատմության» երկից նա գրել է նաև իրավագիտական գործեր, որոնք Ի. Բեկկերը հրատարակել է Բոննում, 1838—1839 թթ.։

Հովհաննես Սկիլիցեսի պատմական երկը ներկայացնում է Թեոփանես Խոստովանողի հայտնի ժամանակագրության շարունակությունը, սկսվում է այն տեղից, որտեղ Թեոփանեսն ավարտել է իր գործը (811) և հասցվում է մինչև 1057 թ., մինչև Իսահակ I Կոմնենոսի բյուզանդական գահին տիրանալը։ Սկիլիցեսի գործը շարունակվել և հասցվել է մինչև Նիկեփոր III Բոտանիատես կայսեր թագավորության վերջը (1081)։ Գիտության մեջ «Սկիլիցեսի Շարունակություն» կամ «Շարունակված Սկիլիցես» (Συνέχεια τοῦ Σκυλίτση, Scylitzes Continuatus) խորագիրը կրող մասի հեղինակի վերաբերյալ դեռ խոսք կլինի։

Ի՞նչ աղբյուրներ է օգտագործել Հովհաննես Սկիլիցեսը «Համառոտություն պատմությանցը» շարադրելիս։ Ամբողջ ժամանակագրության մեջ

---

7 Սկիլիցեսների ընտանիքը հայտնի էր Բյուզանդիայում։ Հիշված են մի քանի ներկայացուցիչներ, որոնք, որպես կանոն, պատկանում էին XI—XII դդ. քաղաքացիական ավագանուն։ Նրանցից գրող Գեորգ Սկիլիցեսը Մանուիլ կայսեր օրոք (1143—1180) Սերդիկայի (Սոֆիա) կառավարիչն էր։

8 Τσολάκης, նշվ. աշխ., էջ 97։ Ա. Պ. Կաժդանը ենթադրում է, որ Սկիլիցեսն իր երկը գրում էր այն ժամանակ, երբ դեռ Կոստանդին IX-ի (1042—1055) և նրա մերձավորագույն հաջորդների մասին հիշողությունները շատ թարմ էին, այսինքն նա կարող է ծնված լինել 1045 թ. էլ առաջ։ Տե՛ս Каждан. Рец. на Скил., стр. 208.

9 Ըստ Ե. Ցոլակիցի (նույն տեղում, էջ 96) կրտսեր ժամանակակիցը, իսկ ըստ Կաժդանի՝ հասակակիցը (նույն տեղում, էջ 208)։

նա ոչ մի հղում չի տալիս, ոչ մի աղբյուր, հեղինակ չի հիշատակում, բայց իր համառոտ նախաբանում հիշում է բազմաթիվ հեղինակների անուններ։ Նկատի ունենալով, որ այդ համառոտ նախաբանը կարևոր է ոչ միայն հիշյալ ժամանակաշրջանի բյուզանդական պատմագիտության մոտավոր վիճակը պատկերացնելու համար, ապա և մեր պատմիչի նախասիրությունների, պատմության առարկայի վերաբերյալ նրա ըմբռնումների ու այդ պատմությունը գրելու սկզբունքների, նպատակահարմար ենք գտնում այն այստեղ բերել ամբողջությամբ։ Հովհաննես Սկիլիցեսը գրում է. «Պատմության համառոտությունը հներից հետո գերազանց կատարեցին նախ Գեորգիոս Վանականը, որ սրբազնագույն պատրիարք Տարասիոսի սինկելլոսի [պաշտոնը] վարեց, իսկ նրանից հետո Ագրոսի վանահայր Թեոփանես խոստովանողը։ Նրանք ամենայն բաբեխղճությամբ հետազոտելով պատմական գրքերը, պարզ ու հասարակ ոճով համառոտեցին, առանց խորանալու տեղի ունեցած դեպքերի էության մեջ։ Նրանցից Գեորգիոսը [իր շարադրանքն] սկսելով աշխարհի արարչագործությունից, այն հասցրեց մինչև բռնակալները, ես նկատի ունեմ Մաքսիմիանոսին և նրա որդի Մաքսիմինոսին։ Իսկ Թեոփանեսը նրա [շարադրանքի] վերջն իր համար սկիզբ անելով, համառոտեց մնացած ժամանակագրությունը, հասցնելով [մինչև] նախկինում դենիկոնի [պաշտոնը վարած] Նիկեփոր կայսեր վախճանը։ Նրանից հետո ոչ ոք չնվիրվեց նման գործի։ [Ճիշտ է], ոմանք փորձեր արեցին, ինչպես, օրինակ, վարդապետ Սիկիլիացին, մեր ժամանակակից՝ փիլիսոփաների հյուպատոս և հյուպերտիմոս Պսելլոսը և ուրիշներ, բայց նրանք գործին ի միջի այլոց լծվեցին, բազում կարևոր [հարցեր] շրջանցելով, ճշմարտության դեմ մեղանչեցին, հաջորդներին էլ օգուտ չտվեցին, [քանզի] սոսկ կայսրերին թվեցին, ցույց տվեցին, թե ով ումից հետո տիրացավ գահին, և ոչինչ ավելի։ Եվ եթե անգամ թվում է նրանք կանգ են առել այս կամ այն դեպքի վրա, այդ էլ մակերեսայնորեն գրի առած լինելով, ավելի վնասեցին, քան թե օգուտ տվեցին։ Թեոդորոս Դափնոպատեսը, Նիկետաս Պափլագոնացին, բյուզանդացիներ Հովսեփ Գենեսիոսն ու Մանուիլը, փռյուգիացի Նիկեփոր Սարկավագը, ասիացի Լևոնը, Սիդեի եպիսկոպոս եղած Թեոդորոսն ու նրա համանուն զարմիկը, որ Սեբաստիայի եկեղեցու առաջնորդը եղավ, այնուհետև Կյուզիկոսի [եպիսկոպոս] Դեմետրիոսը, վանական Հովհաննես Լյուգացին, յուրաքանչյուրն իր առջև անձնական նպատակ դնելով, մեկը, ասենք, կայսեր ներբողյան [գրեց], մյուսը՝ պատրիարքի պարսավագիր, երրորդը՝ բարեկամի գովք, ամեն մեկը պատմության զգեստի մեջ սեփական դիտավորություն դնելով, հեռացան հիշյալ աստվածակիր այրերի սկզբունքներից։ Իրենց

ապրած ժամանակի դեպքերը երկար բարակ [շարադրելով], մի քիչ էլ վերից սկսելով, [դրածին] պատմության ձև տալով, մեկը՝ համակրությամբ, մյուսը՝ հակակրությամբ, երրորդը՝ հաճոյանալու համար, մի ուրիշն էլ որևէ մեկի կարգադրությամբ, յուրաքանչյուրն իր պատմությունը շարահարեց, որոնք միևնույն հարցերում իրարից տարբերվելով, ունկնդիրներին գցեցին շփոթության ու տարակուսանքի մեջ։ Իսկ մենք հավանություն տալով հիշյալ այրերի[10] ջանքին, հույս ունենք, որ [սույն] համառոտությունը պատմություն սիրողներին շատ օգտակար կլինի, հատկապես նրանց, ովքեր գերադասում են դյուր [ընկալելին] դժվար-[ընկալելիից], այն կտա համառոտ, ավելորդություններից բեռնաթափված պատկերը տարբեր ժամանակներում տեղի ունեցած դեպքերի։ Մենք վերցրինք վերոհիշյալ հեղինակների արժանահավատ պատմությունները, մի կողմ թողնելով այն, ինչ նրանց մոտ ասված է աչառությամբ կամ հաճոյանալու միտումով, շրջանցեցինք անհամաձայնությիններն ու հակասությունները, հրաժարվեցինք այն ամենից, ինչ առասպելապատում համարեցինք, հավաքեցինք արժանահավատը և վրստահելին։ Դրա վրա ավելացրինք այն, ինչ բանավոր իմացանք տարեց մարդկանցից։ Այդ բոլորի համառոտությունը տալով, մենք հաջորդ սերունդներին թողեցինք փափուկ, ինչպես ասում են՝ աղացած սնունդ, որպեսզի վերոհիշյալ պատմիչների գրքերի ընթերցողները ի դեմս այս գրքի մեկնություններ ունենան, իրենց համար ուղեկից, հետևեն նրան, քանզի ընթերցումը հուշեր է առաջացնում, հուշերը սնում և ընդարձակում են հիշողությունը, իսկ անհոգությունն ու անփութությունը, ընդհակառակը, բթացնում են հիշողությունը, դրան հետևում է տեղի ունեցած իրադարձությունների մասին հիշողությունը մթագնող և շփոթող մոռացությունը։ Իսկ նրանց համար ովքեր ձեռքի տակ չեն ունենա պատմական [հիշյալ գրքերը], այս համառոտությունը ուղեցույց կլինի և հետագոտելով ավելի ընդարձակապատում շարադրանքները, իրադարձությունների մասին ավելի կատարյալ տեղեկություններ կստանան...»։

Վերոբերյալից պարզվում է, որ Հովհաննես Սկիլիցեսի համար պատմություն շարադրելու տիպարներ են եղել Գեորգիոս Վանականն ու Թեոփանես Խոստովանողը։ Քանի որ վերջինս իր շարադրանքը հասցրել էր մինչև 811 թ., ապա Սկիլիցեսը, համոզված լինելով, որ հիշյալ այրերից հետո գրված պատմագիտական երկերը քննադատության չեն դիմանում, իր ժամանակագրությունն սկսում է հենց 811 թ.։ Բայց Սկիլիցեսը, ինչպես տեսանք, հիշատակում է բազմաթիվ անուններ, որոնք այս կամ

10 Նկատի ունի Գեորգիոս Վանականին և Թեոփանես Խոստովանողին։

այն չափով մինչև իր օրերը զբաղվել են պատմությամբ և շարադրել իրենց երկասիրությունները։ Նիկետաս Պափլագոնացին IX դ. վերջի և X դ. սկզբի անվանի գրող է, որ պարսավագիր շարադրեց ընդդեմ Փոտ պատրիարքի։ Լևոն Ասիացուն նույնացնում են հայտնի պատմագիր Լևոն Սարկավագի հետ[11]։ Վերջինս գրել է Նիկեփոր II Փոկասի և Հովհաննես Չմշկիկի պատմությունը[12]։ Սկիլիցեսի հիշատակած Հովսեփ Գենեսիոսը այժմ համարվում է այդ անունով հրատարակված «Գիրք թագավորությանց» (Βίβλος βασιλειῶν) երկի հեղինակից տարբեր անձնավորություն[13]։

Հովհաննես Սկիլիցեսի հիշատակած հեղինակների մեծ մասը մեզ հայտնի է սոսկ իրենց անուններով։ Դրանցից են Մանուիլը, որ ութ գրքից բաղկացած իր պատմական երկը ձոնել էր X դ. հայազգի նշանավոր զորավար Հովհաննես Կուրկուասին, շատ քիչ բան գիտենք Վասիլ II-ի ժամանակակցի՝ Թեոդորոս Սեբաստացու մասին։ Նրա երկից պահպանվել է ընդամենը երեք հատված, որոնք վերաբերում են Վասիլ II-ի թագավորությանը։ Մնացած հեղինակների մասին գրեթե ոչինչ չգիտենք։

Օգտագործե՞լ է արդյոք Հովհաննես Սկիլիցեսը իր հիշած հեղինակների գործերը։ Մի բան որոշ է, որ նա չի օգտագործել Նիկետաս Պափլագոնացու վերոհիշյալ աշխատությունը, ոչ էլ Մանուիլի՝ Հովհաննես Կուրկուասին ձոնված գիրքը։ Մեր պատմիչը պատրիարք Փոտի, պատրիարք Իգնատիոսի և Հովհաննես Կուրկուասի մասին շարադրանքը վերցրել է Թեոփանեսի Շարունակողից, այն է եղել նրա հիմնական աղբյուրը 811—945 թթ. պատմության համար։ Ռոմանոս Լակապենոսի (920—944) անկումից սկսած դեպքերի շարադրանքի համար Սկիլիցեսն այլևս չի օգտագործում Թեոփանեսի Շարունակողի

---

11 Այդ կարծիքը առաջին անգամ հայտնեց Վ. Ֆիշերը (*W. Fischer*, Beiträge zur historischen Kritik des Leon Diaconus und Michael Psellos, „Mitteilungen des Instituts für osterr. Geschichtsschreibung", Bd. 7, 1886, S. 376), այն որդեգրեց Կ. Կրումբախերը (*K. Krumbacher*, Geschichte der Byzantinischen Litteratur, München, 1897, S. 266, 367)։ Դրա դեմ ելավ Մ. Յա. Սյուզյումովը (*М. Я. Сюзюмов*, Об источниках Льва Диакона и Скилицы. „Византийское обозрение", том II, вып. I, 1916, стр. 112, прим. 3)։ Ա. Պ. Կաժդանը այդ հարցը դեռևս չլուծված է համարում և գտնում, որ Սկիլիցեսի առաջարանում Լևոն Ասիացու անվան հիշատակությունից դեռևս չենք կարող եզրակացնել, որ նա, Սկիլիցեսը, օգտագործել է Լևոն Սարկավագի «Պատմությունը»։ Տե՛ս *Каждан*, Из истории, 2, стр. 116.

12 Այն պահպանվել է։ Տե՛ս *C. B. Hasii*, Leonis Diaconi Caloensis Historiae, Bonnae, 1828.

13 Տե՛ս *C. de Boor*, Zu Johannes Skylitzes, Byzantinische Zeitschrift, Bd. 13, 1904, S. 361, An. 1.

*ժամանակագրությունը։ Բայց նա ի՞նչ աղբյուրներ է օգտագործել X դ. կեսերից սկսած ժամանակաշրջանի պատմությունը գրելու համար։ Այդ հարցի շուրջ լուրջ աշխատանք է կատարել Մ. Յա. Սյուզյումովը։ Նա եկել է այն եզրակացության, որ Հովհաննես Սկիլիցեսը օգտագործել է երկու աղբյուր, որոնք իրարից տարբերվում են Նիկեփոր II Փոկասի հանդեպ ունեցած իրենց դիրքորոշմամբ։ Այդ աղբյուրներից մեկը հաղորդում էր այդ կայսեր մասին եղած թշնամական ավանդույթը, մյուսն՝ ընդհակառակը՝ բարեկամական[14]։ Առաջինն արտահայտում էր ֆեոդալական ավագանու շահերը, գլխավորապես հոգևոր, և, ամենայն հավանականությամբ, ստեղծվել էր X դ. վերջին կամ XI դ. սկզբին (շուրջ 1000 թ.)։ Այդ աղբյուրի հեղինակը ժամանակակից էր Նիկեփոր II Փոկասին և Հովհաննես Չմշկիկին։*

*XI դ. պատմության համար, ըստ Սյուզյումովի, Սկիլիցեսն ունեցել է միանգամայն այլ բնույթի աղբյուրներ, որոնք ծագում են Նիկեփոր II Փոկասի և Վասիլ II-ի շրջապատից, քանզի այստեղ հեղինակի շարադրանքը դրական գնահատական է տալիս հիշյալ երկու կայսրերի անձին ու գործունեությանը։ Այս փաստը ցույց է տալիս, որ Սկիլիցեսն այնքան էլ քննադատական վերաբերմունք չունի իր աղբյուրների նկատմամբ։ Նա կարող է նույն անձնավորության մասին տարբեր, միանգամայն հակոտնյա աղբյուրներից քաղած նյութն առանց որևէ փոփոխության ընդգրկել իր գրքում, չնկատելով բացահայտ հակասությունը։ Նմանատիպ փաստի ենք հանդիպում Սկիլիցեսի ժամանակագրության մեջ նաև հոգևոր ավագանու վերաբերյալ։ Նա X դ. մասին շարադրանքում, որպես կանոն, դրական գնահատական է տալիս նրան, բայց Ռոմանոս III-ի թագավորությունից սկսած շարադրանքում հոգևորականները մռայլ գույներով են հանդես գալիս։ Սա վկայում է Սկիլիցեսի օգտագործած աղբյուրների բազմատարրության մասին, որն աչքի է զարնում նաև Վասիլ II-ից հետո առավել կամ պակաս չափով երկարատև թագավորած երկու կայսրերի՝ Միքայել IV-ի (1034—1041) և Կոստանդին IX Մոնոմախի (1042—1055) մասին շարադրանքի մեջ։ Միքայել IV-ի վերաբերյալ շարադրանքը ծաղկաքաղության տպավորություն է թողնում, այստեղ իրար հետ անմիջական կապ չունեցող առանձին պատմություններ հաջորդում են միմյանց։ Ինչ վերաբերում է Կոստանդին Մոնոմախին նվիրված շարադրանքին, ապա այն բաղկացած է մի քանի գլխավոր թեմաներից և փաստորեն ներկայացնում է X—XI դդ. ծնունդ առնող ամբողջական պատմական շարադրանքի մասին պատկերացումը, որ փո-*

---

14 *Сюзюмов*, Об источниках, стр. 107 и сл.

խարինելու է գալիս Թեոփանեսի և նրա շարունակողների որդեգրած պատմությունը շարադրելու ժամանակագրական սիստեմին[15]։

Ա. Պ. Կաժդանն իր տարբեր աշխատություններում զարգացնում է այն միտքը, որ Հովհաննես Սկիլիցեսն իր առաջաբանում հիշած հեղինակներից և ոչ մեկի գործը չի օգտագործել, որ նա նրանց հիշատակում է, որպեսզի ցույց տա, թե ինչպես չպետք է գրել պատմությունը[16]։ Այս միտքը հաստատելու կամ մերժելու հնարավորություն, հասկանալի է, չկա, քանզի չկան հիշյալ հեղինակների գործերը, որպեսզի կարելի լիներ համեմատություն կատարել։ Բայց այդուհանդերձ մեզ անհնարին է թվում, որ Սկիլիցեսն իր ձեռքի տակ ունենար այնքան շատ պատմական գործեր և օգտագործած չլիներ նրանց տվյալները։ Մերժել այդ հեղինակների պատմագիտական հայացքները, դեռևս չի նշանակում մերժել նրանց գործերում առկա պատմական նյութը։ Ա. Պ. Կաժդանը ուշադրություն չի դարձրել Սկիլիցեսի առաջաբանում ասվածի ամբողջությանը։ Չէ՞ որ մեր պատմիչը պարզիպարզո գրում է. «Մենք վերցրինք վերոհիշյալ հեղինակների արժանահավատ պատմությունները, մի կողմ թողնելով այն, ինչ նրանց մոտ ասված է աչառությամբ կամ հաճոյանալու միտումով, շրջանցեցինք անհամաձայնություններն ու հակասությունները, հրաժարվեցինք այն ամենից, ինչ առասպելապատում համարեցինք, հավաքեցինք արժանահավատը և այն, ինչ վստահելի էր»։

Այժմ անցնենք մեր պատմիչի՝ «Սկիլիցեսի Շարունակող» հայտնի բաժնին։ Այն ընդգրկում է 1057—1080 թթ. դեպքերի շարադրանքը։ Մի շարք փաստեր, սակայն, վկայում են, որ «Շարունակության» բնագիրը չէր ավարտվում այն տեղում, ինչ մեզ այսօր հայտնի է, այսինքն Նիկեփոր III Բոտանիատեսի թագավորության երկրորդ տարով, շարադրանքն հասցվում էր մինչև Ալեքսիոս I Կոմնենոսի գահ բարձրանալը (1081)։ Փաստերից մեկն այն է, որ Vindob. hist. gr. 35, XII դ. առաջին կեսում արտագրված ձեռագիրն ունի հետևյալ խորագիրը. «Հովհաննես կուրապաղատի, վիղլայի նախկին դրունգար Սկիլիցեսի պատմության համառոտությունը, որն սկսվում է նախկինում գենիկոնի [պաշտոնը վարած] Նիկեփոր կայսեր մահից և ավարտվում Ալեքսիոս Կոմնենոսի հռչակմամբ»։ Հենց Շարունակության բնագրից էլ երևում է, որ վերջից պակասավոր է, նախադասությունը կիսատ է մնացել, հակադրությունը չկա։ Ենթադրվում է, որ պակասում է ձեռագրի երեք և կես էջ[17]։

---

[15] *Каждан*, Рец. на Скил., стр. 210.

[16] *Каждан*, Из истории I, стр. 94. *Его же*, Из истории 2, стр. 110, 114—115.

[17] Τσολάκης, Ἡ Συνέχεια, σελ. 25—29.

Ե՞րբ է գրի առնվել Սկիլիցեսի Շարունակությունը։ Անվիճելի է, որ այն շարադրված է 1101 թ. հետո, քանզի նա հիշատակում է Բոդինոսի, խորվաթների իշխան Միխայիլասի որդու իշխանության ավարտը։ Հայտնի է, որ Բոդինոսն իշխեց մինչև 1101 թ.[18]։ Եթե սա Շարունակության գրության ստորին սահմանն է, ապա վերին սահմանը որոշվում է այն փաստով, որ Հովհաննես Զոնարասը (XII դ. կես) օգտագործել է Շարունակությունն իր պատմական երկում, բացի այդ, վերոհիշյալ Vindob. hist. gr. 35 ձեռագրում Շարունակության արտագրությունը կատարվել է Հովհաննես Կոմնենոսի (1118—1143) օրոք։

Ի՞նչ աղբյուրներից է օգտվել Շարունակության հեղինակը։ Վաղուց հայտնի է, որ նրա գլխավոր աղբյուրը Միքայել Ատտալիատեսի պատմական երկն է, որտեղից մեր հեղինակը հաճախ ամբողջական էջեր է արտագրել։ Այդ էր պատճառը, որ իտալացի բյուզանդագետ Ա. Պերտուզին անհրաժեշտ էր գտնում, որ Ատտալիատեսի «Պատմության» քննական բնագրի հրատարակությանը նախորդի Սկիլիցեսի Շարունակության քննական հրատարակությունը[19] (ինչ որ իրականացրեց 1968 թ. հույն գիտնական Ե. Ցոլակիսը)։ Ցոլակիսը զուգահեռ համեմատության մեջ դնելով Շարունակությունն ու Ատտալիատեսի «Պատմությունը», պարզեց, որ Շարունակությունն այնուամենայնիվ բազում տեղեկություններ ու դատողություններ է բովանդակում, որոնք չկան Ատտալիատեսի երկում[20]։ Շարունակողն Ատտալիատեսի գործն օգտագործել է տարբեր ձևերով։ 1. Գրեթե բառացիորեն արտագրելով այն, 2. առավել կամ պակաս չափով համառոտելով իր աղբյուրի շարադրանքը, 3. ընդարձակելով Ատտալիատեսի շարադրանքը ի հաշիվ սեփական տեղեկությունների, դիտողությունների ու դատողությունների՝ տարբեր դեմքերի ու դեպքերի վերաբերյալ։ Կան դեպքեր, երբ Շարունակության հեղինակը միանգամայն անկախ է Ատտալիատեսի բնագրից, պատմում է եղելություններ, որոնց մասին Ատտալիատեսը անհրաժեշտ կամ նպատակահարմար չի գտել գրելու։ Պետք է նշել այնուհետև, որ Շարունակության հեղինակը բաց է թողել Ատտալիատեսի մոտ հանգամանորեն գրի առնված առանձին դեպքերի շարադրանքը[21]։ Որոշ հարցերում Սկիլիցեսի Շարունակողը միանգամայն այլ մոտեցում ունի, քան

---

18 Τσολάκης, Ἡ Συνέχεια, σελ. 75-76, 79—80.

19 *A. Pertusi*, Per la critica del testo della „Storia" di Michele Attaliate, Jahrbuch der Österreichischen byzantinischen Gesellschaft, 7, Wien, 1958, S. 73.

20 Τσολάκης, Ἡ Συνέχεια, σελ. 84—87: *D. I. Polemis*, Notes on eleventh-century chronology, „Byzantinische Zeitschrift", Bd. 58, Heft I (1965), p. 60, n. 1.

21 Τσολάκης, Ἡ Συνέχεια, σελ. 61—72.

*Ատտալիատեսը[22]։ Շարունակությունը հաճախ ավելի լավ ընթերցումներ է տալիս, քան Ատտալիատեսի Պատմության պահպանված գրչագրերը[23]։*

*Բացի Ատտալիատեսից, Սկիլիցեսի Շարունակողն օգտագործել է նաև Պսելլոսի պատմական աշխատությունը[24]։ Բայց նրա աղբյուրները չեն սահմանափակվում Ատտալիատեսով ու Պսելլոսով, նա մեզ տալիս է բազմաթիվ տեղեկություններ, որոնք բացակայում են նրանց աշխատություններում։ Այդ տեղեկությունները նա, հասկանալի է, քաղել է իրենից առաջ գրած հեղինակների գործերից, որոնք, դժբախտաբար, չեն պահպանվել, ինչպես և, անժխտելի է, նա գրի է առել ականատեսի իր հուշերը, քանզի ինքը շարադրածի դեպքերի ժամանակակիցն է։*

*Ո՞վ է Սկիլիցեսի Շարունակողը։ Նրա վերաբերյալ բյուզանդագիտության մեջ արտահայտված են երկու հակադիր կարծիքներ, մեկի համաձայն Սկիլիցեսի Շարունակողն հենց նույն ինքը Սկիլիցեսն է, ըստ մյուսի՝ այլ, մեզ անհայտ անձնավորություն է։ Այսպես, Կարլ Կրումբախերը գտնում է, որ Շարունակությունը նույն Սկիլիցեսի գործն է[25]։* De Boor-*ն ընդհակառակը, Շարունակությունը համարում է Ատտալիատեսի երկի մեզ անծանոթ մի համառոտողի գործ, որն իր այդ համառոտությունը կցել է Սկիլիցեսի ժամանակագրությանը[26]։ Այդ կարծիքը պաշտպանում է հունգարացի բյուզանդագետ և թուրքագետ Դ. Մորավչիկը[27], հիմնվելով հետևյալ կռվանների վրա. 1. Սկիլիցեսի երկը բովանդակող ձեռագրերի մեծ մասը շարադրանքը հասցնում է մինչև 1057 թ., 2. Գեորգիոս Կեդրենոսը, որ բառացի արտագրում է Սկիլիցեսի գործը, 811—1057 թթ. պատմության շարադրանքի համար, այն կողմ չի անցնում, 3. Սկիլիցեսն իր նախաբանում չի հիշատակում Ատտալիատեսի անունը որպես իր կողմից օգտագործված աղբյուրի հեղինակի, հակառակ, որ Շարունակությունը ոչ այլ ինչ է, քան Ատտալիատեսի երկի արտագրությունն ու համառոտումը։*

*Սկիլիցեսի և նրա Շարունակողի տարբեր հեղինակներ լինելու կարծիքը բաժանում է նաև սովետական բյուզանդագետ Գ. Գ. Լիտավրինը։ Նա գտնում է, որ Սկիլիցեսը և նրա Շարունակողը որոշ հարցերում հա-*

---

22 «Советы и рассказы», стр. 71.

23 *Каждан,* Критические заметки, стр. 285 и сл.

24 *G. Moravcsik*, Byzantinoturcica, I, S. 340; *Ավելի հանգամանորեն տե՛ս* Τσολάκης, Ἡ Συνέχεια, σελ. 72—74.

25 *Krumbacher*, Geschichte, S. 367.

26 *C. de Boor*, Weiteres zur Chronik des Skylitzes, Byzantinische Zeitschrift, Bd. 14, 1905, S. 467.

27 *Moravcsik*. Byzantinoturcica, I, S. 340—341.

կադիր դիրքերում են կանգնած։ Լիտավրինի ամենագլխավոր կռվանն այն է, որ Սկիլիցեսը դրական կարծիք ունի Պսելլոսի մասին, այնինչ Շարունակողը միանգամայն բացասական[28]։

Մ. Ե. Կոլոննան ավելի հավանական է գտնում, որ հենց Սկիլիցեսն է գրել աշխատության երկրորդ մասը[29]։

Սկիլիցեսի ժամանակագրության Շարունակության հարցը մանրազնին ուսումնասիրության ենթարկեց Ե. Ցոլակիսը, դրան նվիրելով մի ամբողջ մենագրությունն[30]։ Հույն բյուզանդագետը վստահորեն գրում է, որ Մորավչիկի և ոչ մի կռվանը ապացուցող նշանակություն չունի[31], որ հենց Սկիլիցեսն է լրացրել իր գործը՝ ընդգրկելով 1057—1079/1080 թթ. դեպքերը՝ Միքայել Ատտալիատեսի Պատմության հրապարակ գալուց հետո։ Նրա ասելով Սկիլիցեսն իր առաջաբանը գրել է նախքան Ատտալիատեսի երկի հրապարակ գալը և այդ է պատճառը, որ վերջինիս անունը բացակայում է այնտեղ[32]։ Ինչ վերաբերում է Կեդրենոսին, ապա հայտնի է, որ նա իր երկն ավարտել է XI դ. վերջին կամ XII դ. սկզբին, հետևաբար նրա երկի ավարտվելը 1057 թ. դեպքերով ոչ մի հիմք չի տալիս, որպեսզի Շարունակությունը Սկիլիցեսի գործ չհամարենք[33]։

Ե. Ցոլակիսը Սկիլիցեսին և նրա Շարունակողին տարբեր անձնավորություններ համարելու հիշյալ փաստարկումների դեմ բերում է մի շարք կռվաններ ևս, որոնք, իր համոզմամբ, այդ նույնացումը դարձնում են անվիճելի։ Նրա կռվանները հետևյալներն են. 1. Սկիլիցեսն ու նրա Շարունակողը նույն ժամանակներում են ապրել. 2. Սկիլիցեսի Շարունակողը հավատարմությամբ հետևում է պատմություն գրելու այն սկզբունքներին, որոնք արտահայտված են Սկիլիցեսի երկի առաջաբանում[34]։ 3. Սկիլիցեսի ժամանակագրությունը Շարունակության հետ օրգանական կապի մեջ են, Շարունակության մեջ հաճախ Սկիլիցեսի երկին հղում է տրվում[35]։ 4. Լեզվական առումով այդ երկու երկերը նույնական են։ Կան երկուսին էլ ընդհանուր բազում դարձվածքներ[36]։

---

28 Советы и рассказы, стр. 74.

29 *Colonna*, Gli storici, p. 116.

30 Τσολάκης, Ἡ Συνέχεια.

31 Նույն տեղում, էջ 78։

32 Նույն տեղում։

33 Նույն տեղում, էջ 80։

34 Նույն տեղում, էջ 84, 87—88։

35 Նույն տեղում, էջ 88։

36 Նույն տեղում, էջ 91—95։ Ա. Պ. Կաժդանը նույնություն ապացուցող այդ հանգամանքները վիճելի է համարում, քանզի, ըստ իրեն, բյուզանդական գրական ունիֆորմիզմի պայմաններում, այդ մեթոդը վստահելի չէ։

*Բացի այդ փաստերից, Ցոլակիսը բերում է երկու այլ կռվան ևս։ 1118—1143 թթ. միջև արտագրված* Vindob. hist. gr. 35 *ձեռագիրը բովանդակում է Սկիլիցեսի երկն իր Շարունակությամբ հանդերձ և գրիչը դրանք համարում է Հովհաննես Սկիլիցեսի գրչին պատկանող գործեր։ Բյուզանդական պատմիչ Հովհաննես Զոնարասը, որ իր ժամանակագրությունը գրել է XII դ. առաջին կեսին, որպես աղբյուր օգտագործել է և Շարունակությունը, որը վերագրում է Հովհաննես Սկիլիցեսի գրչին։ Ցոլակիսի ասելով, Զոնարասը Սկիլիցեսի կրտսեր ժամանակակիցն էր և նա չէր կարող սխալված լինել*[37]*։*

*Այդ բոլոր հանգամանքները նկատի ունենալով Ցոլակիսը եզրակացնում է, որ պետք է Սկիլիցեսին համարենք նաև Շարունակության հեղինակ*[38]*։*

*Վերջերս Ցոլակիսի եզրակացությունների պաշտպանությամբ հանդես եկավ ավստրիացի բյուզանդագետ Վ. Զայբտը։ Նրա ասելով Շարունակության հեղինակը նույն Սկիլիցեսն է։ Նա տալիս է Սկիլիցեսի կենսագրության հետևյալ հիմնական կետերը։ Ծնվել է շուրջ 1040 թ., XI դարի 70-ական թվականներին ստացել է պրոտովեստեսի, պրոտովեստարքեսի պատվաստիճանները։ Հենց այս ժամանակ է գրել աշխատության հիմնական մասը։ 80-ական թվականներին դարձել է մագիստրոս և պրոեդրոս, 90-ական թվականներին՝ նաև պրոտոպրոեդրոս, վիգլայի դրունգար և էպարքոս, 1092-ին կուրապաղատ էր և վիգլայի դրունգար։ XI—XII դդ. սահմանագլխին որպես մասնավոր անձնավորություն գրել է Շարունակությունը։ Վախճանվել է XII դարի առաջին տասնամյակում*[39]*։*

*Հասկանալի է, վերոհիշյալ վեճը դեռևս ավարտված չէ, բայց վերջին հաշվով հայագիտության համար այն երկրորդական նշանակություն ունի, մեզ համար կարևորն այդ աղբյուրի բովանդակած նյութի արժեքն է։*

*Քանի որ, ինչպես ասվեց, Շարունակության հեղինակի վերաբերյալ բանավեճը փակված չէ, ապա Սկիլիցեսի և նրա Շարունակողի Հայաստանի և հայերի մասին տեղեկություններին կանդրադառնանք ոչ թե առանձին-առանձին, այլ միասին։ Նախքան մեր աշխատության հիմնական նպատակը հանդիսացող այդ հարցին անցնելը, այստեղ անհրաժեշտ ենք գտնում ընդգծել, որ Հովհաննես Սկիլիցեսի ժամանակագրությունն իր Շարունակությամբ հանդերձ անգնահատելի արժեք է ներկայացնում ոչ միայն հայոց պատմության, սոցիալ-տնտեսական հարաբե-*

---

37 Τσολάκης, Ἡ Συνέχεια, σελ. 99:

38 *Նույն տեղում։*

39 *Seibt*, Ioannes Skylitzes, S. 81–85.

րությունների, հայ-բյուզանդական փոխհարաբերությունների ուսումնասիրության համար, այլև Հայաստանի պատմական աշխարհագրության, անգամ ազգագրության։ Դեռ ավելին։ Նա հնարավորություն է տալիս ամենայն մանրամասնությամբ ուսումնասիրելու հայերի՝ բյուզանդական ավագանու կազմում խաղացած դերը, մի բան, որ հազիվ թե կարելի լիներ անել լոկ Լևոն Սարկավագի, Միքայել Պսելլոսի և Միքայել Ատտալիատեսի գործերով։ Նույնը կարելի է ասել հայկական աղբյուրների մասին։ Քանզի, ինչքան էլ տարօրինակ թվա, այդ հարցը միջնադարյան հայ հեղինակների տեսադաշտից դուրս է գտնվել։ Հայ պատմիչներին քիչ է հետաքրքրել Բյուզանդական կայսրության պատմությունը, առավել ևս Բյուզանդիայում ապրող և ծառայող հայ բարձրաստիճան ազնվականությունը, գուցե վերջինիս որպես կանոն քաղկեդոնիկ լինելու, կամ էլ, ավելի ճիշտ, այդ մասին բավարար տեղեկություններ չունենալու պատճառով։ Բոլոր դեպքերում փաստը մնում է փաստ, որ միջնադարյան Հայաստանում և ոչ մի բյուզանդական պատմիչի գործը չի թարգմանվել հայերեն[40], թեև դա դեռևս ապացույց չէ այն բանի, որ բյուզանդական պատմիչների գործերին Հայաստանում լիակատար անտեղյակ էին։ Այդուհանդերձ, ինչ խոսք, այդ հանգամանքը վկայում է տվյալ երկերի հանդեպ հայերի ունեցած ոչ առաջնակարգ հետաքրքրության մասին։ Վերադառնալով մեր խնդրին, կարելի է առանց վարանելու ասել, որ Սկիլիցեսի և նրա Շարունակության տեղեկությունները Հայաստանի և հայերի մասին բացարձակապես նորություն են, չկան հայկական միջնադարյան աղբյուրներում և եթե այս կամ այն դեպքի կամ դեմքի մասին գտնվի որևէ տեղեկություն, ապա այն էլ դիտված է այլ տեսանկյունից և այլ կերպ է լուսաբանված։ Այդ երկու՝ բյուզանդական և հայկական աղբյուրներում առկա փաստերի համադրությամբ, համեմատությամբ միայն կարելի է ճիշտ պատկերացում կազմել որևէ հարցի վերաբերյալ։

Խուսափելով կրկնողությունից, Սկիլիցեսի և նրա Շարունակողի բոլոր տեղեկությունների վրա մենք այստեղ կանգ չենք առնի, քանզի սույն առաջաբանի երկրորդ բաժնում, որ նվիրված է հայ-բյուզանդական հարաբերությունների պատմության X դ. կեսից մինչև XI դ. 70-ական թթ., նրանց մեծ մասը քննության է ենթարկվել՝ հայկական և այլ աղբյուրների ընձեռած նյութի համադրությամբ։ Այդ նկատառումներից ելնելով այստեղ համառոտակի կխոսվի Սկիլիցեսի և նրա Շարունակողի հայոց պատմության այլ հարցերի վերաբերյալ հաղորդած տեղեկու-

40 Ս. Տեր-Ներսեսյան, *Բյուզանդիա և Հայաստան (Խնդիրներ և հետազոտությունների արդի վիճակը), Պատմա-բանասիրական հանդես, № 1,1970, էջ 159։*

*թյունների մասին։ Նախ հայերի խաղացած դերի մասին Բյուզանդիայում։ Դժբախտաբար Սկիլիցեսը (ոչ միայն նա, այլև բյուզանդական հեղինակներն ընդհանրապես) ոչինչ չի ասում Բյուզանդիայի տարածքի վրա ստեղծված հայկական գաղութների մասին, հայ աշխատավորության, առևտրական-արհեստավորական խավերի մասին, որոնք, կասկածից վեր է, Բյուզանդիայում եղել են և լայն գործունեություն ծավալել։ Այդ հարցը միջնադարյան հեղինակներին քիչ է հուզել, ավելի ճիշտ՝ ամենևին էլ չի հուզել։ Ինչ վերաբերում է բյուզանդական ավագանու կազմում (հատկապես ռազմական) հայերի խաղացած դերին, ապա Սկիլիցեսի տվյալներն այդ մասին չափազանց հանգամանալից են։ Մենք այնտեղ կհանդիպենք ամենացածր զինվորական աստիճանը կրողից մինչև կայսեր գահին, գուցե և Կոստանդնուպոլսի պատրիարքի աթոռին բազմած (եթե նկատի ունենանք պատրիարք Հովհաննես Քսիֆիլինոսի եղբոր անունը՝ Վարդ, ապա հայկական ծագում պիտի տանք նաև պատրիարքին) բազմաթիվ հայերի մասին ամենամանրամասն տեղեկությունների։ Սկիլիցեսը և նրա Շարունակողը հանվանե հիշում են շուրջ հարյուր հայ բարձրաստիճան գործիչների, որոնց բացարձակ մեծամասնությունը անծանոթ է միջնադարյան հայ հեղինակներին (Շարունակողի հիշատակած Պավղոսին, Եդեսիայի կառավարչին, օրինակ, չգիտե անգամ Մատթեոս Ուռհայեցին)։ Դեռ ավելին, մեր հեղինակից կարելի է իմանալ նաև բյուզանդական ծառայության մեջ գտնվող հայկական առանձին զորամասերի մասին։ Այդ հարցի վերաբերյալ հայկական աղբյուրները բավական առատ տեղեկություններ են հաղորդում, բայց միայն Սկիլիցեսից կարելի է իմանալ, որ Բյուզանդիայում ծառայող հայկական զորամասերը կրում էին իրենց՝ հայկական համազգեստը (στολὴ Ἀρμενίων) և իրենց արտաքինով միանգամայն տարբերվում էին հույն զինվորներից։ Սկիլիցեսից և այլ աղբյուրներից կարելի է մոտավոր պատկերացում կազմել նաև Բյուզանդիայի հայ ազգաբնակչության նկատմամբ բնիկների ունեցած վերաբերմունքի մասին։ Այն միշտ չէ, որ եղել է բարյացակամ և դրա մեջ քիչ դեր պետք է խաղացած չլինի դավանանքի տարբերությունը։ Նիկեփոր II Փոկասին մայրաքաղաքի բնակչությունը չի սիրում, քանզի նա հայ է, Վարդաս Սկլերոսի ապստամբության ժամանակ գերի ընկած հայերին են միայն սրի քաշում և այլն։ Տարբեր չէր և հայերի վերաբերմունքը դեպի բյուզանդացիները։ Ռոմանոս IV Դիոգենեսը Եկեղյաց գավառում միջոցների է դիմում, որպեսզի իր զինվորները հայերից սրի չքաշվեն։*

*Սկիլիցեսի և նրա Շարունակողի տվյալները Հայաստանի պատմական աշխարհագրության մասին շատ-շատ են։ Բավական է միայն*

թվարկել անուններն այն նահանգների, քաղաքների, բերդերի, որ հիշում է մեր պատմիչը, համոզվելու համար այդ բանում։ Մեծ Հայք (Շիրակ), Իբերիա (Տայք), Վասպուրական, Եկեղյաց գավառ, Անի, Դվին, Կարս, Վան, Գանձակ, Մանազկերտ, Բերկրի, Թեոդոսուպոլիս (Կարին), Խլաթ, Սեբաստիա, Մելիտենե, Տիվրիկ, Արծն, Արգովան, Սուրմառի, Սբ. Գրիգոր, Ամբերդ, Ծիծեռնակաբերդ, Ծամնդավ, Հայաստանից դուրս գտնվող, բայց հայաշատ Եդեսիա, Տլուք, Կարկառ, Մոպսուեստիա (Մսիս), Սարվանդիքար, Ադանա, Լարիսա, Աբարա, Գերմանիկիա (Մարաշ), Մարտիրուպոլիս (Նփրկերտ), Լիկանդոս, Կուկուսոս, Կոլոնիա և այլն։ Սկիլիցեսը պարզապես չի թվարկում դրանք, այլ տալիս է այնպիսի մանրամասնություններ, որոնք չկան անգամ հայկական աղբյուրներում։ Միայն Սկիլիցեսից ենք իմանում, որ Վասպուրականը կոչվել է նաև Վերին Մարաստան, որ Ծամնդավը բազմամարդ ու արտակարգ հարուստ քաղաք էր։ Ծիծեռնակաբերդի առաջին հիշատակությունը հենց Սկիլիցեսի մոտ է հանդիպում։ Հայկական աղբյուրներում այն առաջին անգամ հիշվում է ուշ միջնադարում։ Միայն Սկիլիցեսից ենք իմանում, որ IX դ. վերջում և X դ. սկզբներում՝ արաբների ձեռքից խլված հողերի վրա Բյուզանդիան ստեղծում է բանակաթեմեր, որոնք «Հայկական» են կոչվել (Ἀρμενιακὰ θέματα) իրենց զուտ հայ բնակչության պատճառով։ Սկիլիցեսը մանրամասն խոսում է նաև Հայաստանի սահմաններում գտնվող արաբական ամիրայությունների մասին (Բերկրիի, Խլաթի, Մանազկերտի), և նրա տվյալները միշտ չէ որ համընկնում են հայկական աղբյուրների հաղորդածներին։ Սկիլիցեսը չի մոռանում խոսել նաև իր հիշատակած շրջանների բնակչության դավանանքի մասին անգամ։ Որպես կանոն այն հայադավան էր, քանզի, ինչպես Շարունակողն է ասում, «Իբերիայում (իմա՛ Տայք և Շիրակ)[41], Միջագետքում՝ մինչև Լիկանդոս և Մելիտենե և նրանց շուրջ ընկած նահանգներում հերետիկոս (իմա՛ միաբնակ) հայեր են բնակվում»։

Սկիլիցեսի և նրա Շարունակողի երկերն անգնահատելի արժեք ունեն նաև սելջուկ թուրքերի Փոքրասիական թերակղզուն, այդ թվում և Հայաստանին տիրելու պատմությունն ուսումնասիրելու համար։ Ճիշտ է, Հայաստանի վերաբերյալ Արիստակես Լաստիվերցու և Մատթեոս Ուռհայեցու տվյալները հանգամանալից են ու ծավալուն, բայց բյուզանդական հեղինակի հիշյալ գործում եղած առատ նյութը հնարավորություն է տալիս առավել խորությամբ հետազոտելու այդ կարևոր հարցը։

41 Որ Իբերիայի տակ նա ենթադրում է Հայաստանը, պարզվում է հետևյալից։ Խոսելով Ծիծեռնակաբերդի մասին, նա ցույց է տալիս, որ այն գտնվում է Դվինի մոտ՝ Իբերիայում։

Սկիլիցեսի և նրա Շարունակողի ժամանակագրությունը բովանդակող ձեռագրերի մանրամասն մատենագիտությունը տվել են Դ. Մորավչիկը և Մ. Ե. Կոլոննան։ Ավելի հանգամանորեն նրանց վրա կանգ առան քննական բնագրի հրատարակիչներ Յ. Թուրնը և Ե. Ցոլակիսը։ Ըստ Թուրնի Սկիլիցեսի երկը բովանդակող ձեռագրերը բաժանվում են երեք խմբի.

I. Vindobonensis Hist. gr. 35 (արտագրված 1118—1143 միջև)։
Bibliothèque Nationale, fonds Coislin 136 (XII դ.).
Scorialensis T III 9 (166), (XIVդ.).
II. Achridensis 79 (XII դ. այժմ կորած)։
Vaticanus Graecus 161 (սրանից է կատարված Գաբիուսի լատիներեն թարգմանությունը)։
Ambrosianus C 279 (XIV դ.).
III. Matritensis II (XIII—XIV դդ. բազմաթիվ մանրանկարներով։ Մանրանկարները հրատարակվել են. „Skylitzes Matritensis, vol. I. Reproducciones y miniaturas por Sebastian Cirac Estopañan, Barselona—Madrid, 1965).
Neapolitanus III. B.24 (XIV դ.).
Vindobonensis Hist. gr. 74 (XIV դ. առաջին կես։ Միքայել Դեուկյու ընդմիջարկումներով)։
Գեորգիոս Կեդրենոսի բնագիրը։

Ե. Ցոլակիսի համաձայն Սկիլիցեսի Շարունակությունը բովանդակող ձեռագրերը հետևյալներն են.

I. Vindobonensis Hist. gr. 35:
II. Vindobonensis Hist. gr. 74:
III. Marcian. gr. VII, 12 (XC, 5), 1283 թ.
IV. Vaticanus Graecus 161:
V. Ambrosianus gr. 912 (C 279 inf.):

Բացի վերոհիշյալներից, պահպանվել են և XVI—XVIII դդ. այլ ձեռագրեր Շարունակությունն ամբողջությամբ կամ հատվածաբար բովանդակող, որոնք, սակայն, արտագրված են նշված ձեռագրերից և աղբյուրագիտական արժեք չեն ներկայացնում։

* * *

Ստորև տալիս ենք X դ. կեսից մինչև XI դ. 70-ական թթ. ընկած ժամանակաշրջանի հայ-բյուզանդական հարաբերությունների պատմությունը։ Դա ոչ Հայաստանի և ոչ Բյուզանդիայի պատմություն է, այդ

*բանը շատ հանգամանորեն կատարված է բազմաթիվ մենագրություններում և կոլեկտիվ աշխատություններում։ Մեր տվածը այդ շրջանի հայ-բյուզանդական հարաբերությունների գեռևս չգրված պատմության մի ակնարկ է լոկ[42]։ Մենք ամենևին չենք կարծում, որ այս շարագրանքը կատարյալ է և ամբողջական։ Մի շարք հարցեր այստեղ ամենևին քննության չեն ենթարկված և դեռ սպասում են իրենց հետազոտողին (հայ-բյուզանդական գրական կապերը), այլ հարցեր ուսումնասիրված են ոչ այն խորությամբ, ինչ հնարավոր էր անել, նկատի ունենալով աղբյուրների արդի վիճակը (հայ-բյուզանդական եկեղեցական հարաբերությունները)։*

* * *

*«Եթե պատահի սեփական երկրում բերդեր ունենաս կամ գյուղեր, դրանց տոպարխը լինես կամ էքսուսիաստեսը, քեզ չմոլորեցնեն գանձերը կամ պաշտոնները[43], կայսրերի մեծ խոստումները և հանկարծ երկիրդ տաս կայսեր, փոխարենն ստանալու համար դրամ ու կալվածներ՝ թեկուզ [տվածիդ] քառապատիկը։ Պահպանիր քո երկիրը թեկուզև փոքրիկ ու չնչին, քանզի նախընտրելի է քեզ [կայսեր] ինքնիշխան բարեկամը լինել, քան ստրուկն ու հպատակը։ Դու կայսեր և բոլորի մոտ այնքան ժամանակ հարգանք, պատիվ, գովք ու փառք կվայելես, քանի դու, երեխաները քո ու նրանց [երեխաները] երկրիդ տերն եք։ Եթե զրկվես քո երկրից, տապալվես իշխանությունիցդ, ճիշտ է, սկզբնական շրջանում պիտի վայելես կայսեր սերը, բայց քիչ անց նա քեզ պիտի արհամարհի, նա քեզ բանի տեղ չի դնելու և [այն ժամանակ] պիտի համոզվես, որ ստրուկ ես և ոչ բարեկամ։ Այն ժամանակ քո ստորադրրյալն անգամ քեզ համար պիտի սարսափելի դառնա. եթե նրան նեղացնես, կգնա կայսեր մոտ և քեղ կամբաստանի, որ [իբր] նրա դեմ*

---

42 *Առանձին հարցերի նվիրված հոդվածներ կան։ Հիշատակելի են Ն. Ադոնցի մի շարք հոդվածները, որոնք մեկ հատորով լույս տեսան Լիսաբոնում (N. Adontz,* Etudes Armeno—Byzantines, Lisbonne, 1965*)։ Հիշենք նաև հետևյալները.* Վ. Կ. Իսկանյան, *Հայ-բյուզանդական քաղաքական հարաբերությունների պատմությունից* (X—XI *դդ.)։ Երևանի Խ. Աբովյանի անվան հայկական պետական մանկավարժական ինստիտուտի գիտական աշխատությունների ժողովածու № 6, Երևան, 1957։ K. N. Yuzbashian,* L'administration byzantine en Arménie aux X[e]—XI[e] siècles, Revue des Études Arméniennes, t. X, 1973—1974, p. 139—183.

43 *Հմմտ.* Մատթ. Ուռհ. *էջ 84. «Յովհաննէս (Հովհաննես-Սմբատ Բագրատունի թագավորը—Հ. Բ.) ի կենդանութեան իւրում գիր էր տուեալ Հոռոմոց՝ եթէ զկնի մահուան իմոյ Անի Հոռոմոց լինի, և այնու առնոյր* տուրս և իշխանութիւնս *ի Հոռոմոց զամս հնգետասան»։*

*գավ ես նյութում, որ ուզում ես փախուստի դիմել և գնալ քո առաջվա երկիրը, երբ նման բան մտքովդ անգամ չէր անցել։ Դրա վրա քո նկատմամբ ահեղ դատաստան պիտի տեսնեն, դատապարտեն որպես նենգ ու չարադավ ստրկի։ Դու ճշմարտություններ պիտի ասես, բայց քեզ չպիտի հավատան, քո վաղեմի ստորադրյալ ստրկի սուտը ճշմարտություն համարվի, նա կայսեր պատիվներին կարժանանա, իսկ դու պիտի պապանձվես, ոչինչ չկարողանաս պատասխանել։ Կայսեր կողմից քո կուրացման մասին վճիռ պիտի արձակվի, դուցե և նա կասի. «Իմ թագավորությունը խղճում է քեզ» և զրկելով քեզ ունեցվածքիցդ, պիտի աքսոր ուղարկի կամ բանտ նետի։ Եվ այն ժամանակ միայն պիտի հիշես այդ փոքրիկ երկրիդ և իշխանությանդ մասին, այն մասին, թե ինչպես ազատ լինելով, հոժարակամ ստրուկ դարձար, ինչպես դու, արդար դատաստան տեսնողդ ու պատժողդ, այժմ անիրավ կերպով դատապարտվում ես ու պատժվում։ Բացառված չէ, որ կայսրն իմանա, որ քո դեմ Ներկայացված մեղադրանքները անհիմն են, սակայն քեզ շնորհածը ետ առնելու և իր խոստացածը [չկատարելու] համար անտես կանի արդարությունը, այդ պատճառով քեզ համար շատ ավելի լավ է մնաս սեփական երկրում»*[44]։

*Մենք դիտմամբ մեջ բերեցինք XI դարի երկրորդ կեսի բյուզանդական նշանավոր հայազգի գործիչ Կեկավմենոսի աշխատությունից այս ընդարձակ քաղվածքը, քանզի նա ամենից խոսուն կերպով է ցույց տալիս X—XI դդ. հայ-բյուզանդական հարաբերությունների ճշմարիտ պատկերը։ Նա այդ հարաբերությունները դիտում է երկուսի տեսանկյունից էլ, և՛ Բյուզանդիայի, և՛ Հայաստանի, ցույց տալիս, թե ինչին է ձգտում առաջինը, և ինչ պետք է անի երկրորդը։ Ճիշտ է, Կեկավմենոսը այս դեպքում ամենևին էլ Հայաստանի անունը չի տալիս, Բյուզանդիայի զոհն այստեղ անանուն է, բայց անկասկած է թվում, որ նա նրկատի ունի Բյուզանգական կայսրության կողմից նաև հայկական հողերի նվաճումը*[45]։ *Կեկավմենոսն ականատես է եղել Վասպուրականի, Շիրակի, Վանանդի նվաճմանը կայսրության կողմից, իր հորից կամ Մեծ*

---

44 Советы и рассказы Кекавмена. Сочинение византийского полководца XI века. Подготовка текста, введение, перевод и комментарий *Г. Г. Литаврина*, М,. 1972, стр. 298—300.

45 *Նրա օգտագործած տերմիններից կարելի է հանգել նման եզրակացության։ Կեկավմենոսը իր խորհուրդն ուղղում է «տոպարխին» ու «էքսուսիաստեսին»։ Սկիլիցեսը Շիրակի Բագրատունի թագավոր Գագիկ II-ին կոչում է Անիի տոպարխ* (τοῦ Ἀνίου τοπάρχης), *իսկ Գագիկ I-ի որդի Աշոտին, Հովհաննես—Սմբատի եղբոր՝ Մեծ Հայքի էքսուսիարխ* (ἐξουσιάρχης).

*Հայքում տոպարխ եղած իր պապից*[46] *լսել Տարոնի, Տայքի և հայկական այլ նահանգների նվաճման մասին, ականատես է եղել այդ շրջաններում բյուզանդական վարչության կամայականություններին, բռնություններին ու ծանր հարկապահանջության*[47]*, ինչպես և Բյուզանդիա գաղթած կամ բռնագաղթեցված հայության ու նրա մեծամեծների ողբալի վիճակին՝ օտարության մեջ։*

*Բյուզանդական կայսրությունը VIII դ. «մոռացել» էր Հայաստանը, նրա համար ավելի առաջնահերթ հոգսեր կային, պաշտպանել իր հողերը արաբներից և այլ թշնամիներից։ Բայց IX դ. կեսերից խալիֆայության թուլացումը հնարավորություն տվեց կայսրության իր արտաքին քաղաքականության մեջ նոր էջ բացել, վերանվաճել այն, ինչ ձեռք էր բերել դեռևս Մավրիկիոս կայսեր օրոք։ Եվ նա մեկ հարյուրամյակի ընթացքում կարողացավ իրականացնել իր նպատակը՝ նվաճել գրեթե ողջ Հայաստանը։*

1. **Տարոնի նվաճումը:** *Բյուզանդիայի ձեռքն ընկած առաջին զոհը Տարոնի հայկական իշխանությունն էր։ Նրա վերջին իշխան Գրիգորը, գտնվելով երկու աշխարհակալ տերությունների՝ արաբական խալիֆայության և Բյուզանդական կայսրության միջև, ստիպված էր խուսանավել, երկուսից ավելի վտանգավոր համարելով հենց Բյուզանդիան։ «Հենց սկզբից նա,— գրում է Կոստանդին Ծիրանածինը,— երկու լարի վրա էր խաղում, խոսքով ձևացնում էր, թե գնահատում է կայսեր բարեկամությունը, բայց իրականում աշխատում էր հաճոյանալ սարակինոսների առաջնորդին։ ...Նա ձևացնում էր, թե հռոմայեցիների կողմից է, բայց իրականում նախապատվություն էր տալիս սարակինոսներին և գործում նրանց օգտին»*[48]*։*

*Տարոնի իշխանի համար պակաս դժվարություններ չէին ներկայացնում նաև ներքին հակասությունները, որոնք պայմանավորված էին իշխան Գրիգորի և վերջինիս եղբայր Ապոգանեմի շահերի բախմամբ, հակասություններ, որոնք Բյուզանդական կայսրությունն էր սրում և աշխատում օգտագործել հեռու գնացող իր նպատակների համար։ Կայսրության առաջին մտահոգությունն էր իշխան Գրիգորին ստիպել արաբական խալիֆայությունից կապերը խզելու։ Երկար դիմադրությունից հետո իշխան Գրիգորն ընդառաջ գնաց դրան։ Կայսրությունը նրան շնորհեց մագիստրոսի՝ օտարերկրացուն պարգևվող ամենաբարձր պատվաստի-*

---

[46] «Советы и рассказы», стр. 168—170.

[47] *Նույն տեղում, էջ 152—154։*

[48] Կոստանդին Ծիրանածին, էջ *4—5։*

ճանը, և այդ ստիճանը կրողին հասնող տաս լիտր ոսկի ու տաս լիտր արծաթ հռոգը։ Նրան հայտարարեցին Տարոնի զորավար (στρατηγός)։ Դա արդեն ապացույց է այն բանի, որ Տարոնի իշխանությունն արդեն վասալական կախվածության մեջ է ընկել կայսրությունից։

Բյուզանդական կայսրությունը Տարոնի վրա իր ազդեցությունը տարածելու համար օգտագործում էր Բյուզանդիայում ծառայող հայ բարձրաստիճան պաշտոնյաներին։ Նրանցից էին օքսեոս դրոմոսի խարտուլար Ներքինի Սինուտեսը (Սյունեցին), հայ թարգման Թեոդորոսը, պրոտոսպաթար Կոստանդինը, թարգման Կրինիտեսը և ուրիշներ։ Փոքր դեր չէին խաղում նաև խնամիական կապերը։ Տարոնի իշխան Գրիգորի ավագ որդի Բագարատին Լևոն VI կայսրը կնության տվեց մագիստրոս Թեոփիլակտոսի քրոջը, Գրիգորի եղբայր Ապոգանեմին՝ պրոտոսպաթար Կոստանդնի դստեր։

Բյուզանդիայի համար քիչ էր Տարոնը վասալական կախման մեջ գցելը։ Նրա վերջնական նպատակը Տարոնի զավթումն էր և այն՝ արաբների դեմ մղվող պատերազմի հենարան դարձնելը։ Դրա հետ միասին կայսրությունը հենարան կունենար ծավալվելու նաև դեպի կենտ. Հայաստան, որ երկդարյա ստրկությունից հետո հազիվ էր ոտքի կանգնել, ստեղծելով սեփական թագավորություններ և իշխանություններ։

X դարի կեսերին Բյուզանդիային հաջողվեց իր ազդեցությունը տարածել Տարոնի վրա, ինչպես ասվեց, օգտագործելով Տարոնի ներսում ծագած երկպառակությունները։ Մագիստրոս Գրիգորի որդիներ Բագարատն ու Աշոտը միացած աշխատում էին տիրանալ իրենց հորեղբայր Ապոգանեմի որդու՝ Թոռնիկի տիրույթներին։ Ի վերջո Թոռնիկն ստիպված իր տիրույթները կտակեց Բյուզանդիային։ Թեև Բագարատի և Աշոտի պահանջով կայսրությունն այն ժամանակ ստիպված հրաժարվեց Ապոգանեմի տիրույթներից, այնուամենայնիվ Տարոնը բաժանվել էր երկու մասի՝ Գրիգորի որդիներ Բագարատի և Աշոտի, և Գրիգորի եղբայր Ապոգանեմի որդիների միջև։ Այս հանգամանքը թուլացրեց Տարոնի իշխանության դիմադրողականությունը և Տարոնի զավթումը արդեն օրակարգի հարց էր։ Իշխան Աշոտը Տարոնը «կտակեց» կայսրության և նրա մահից հետո (696) Բյուզանդիան տիրացավ իր «ժառանգության»[49]։ Խորամուխ լինելով դրան հաջորդող մի ամբողջ հարյուրամյակի հայ-

---

49 Պետք է ասել, որ Տարոնը միացվելով կայսրության, ամբողջությամբ չմտավ նրա կազմի մեջ։ Դեռևս անկախ մնացին որոշ բերդեր, որոնք հպատակություն էին հայտնում Հայոց Բագրատունի թագավորին։ Նրանցից էր Այծյաց բերդը, որը գրավելու Չմշկիկի փորձը ապարդյուն անցավ։ Տե՛ս Մատթ. Ուռհ., էջ 18։

բյուզանդական քաղաքական պատմության ամենախորը ծալքերի մեջ, ուշադրություն դարձնելով Տարոնի իշխան Աշոտի մահվան հաջորդած Բյուզանդիայի համար շատ ձեռնտու և կարծես պատվերով ու ժամանակին տեղի ունեցած հայոց աշխարհի վեհապետների «մահվան» (Դավիթ կուրապաղատի, Աշոտ և Հովհաննես Բագրատունիների և այլն), ապա և ուշադիր կարդալով Հովհաննես Սկիլիցեսի պատմական երկը, որի մեջ շատ շատ են Բյուզանդիայում բարձրաստիճան գործիչների, մինչև անգամ կայսրերի ու պատրիարքների անաղմուկ, ժամանակին ու «ինքնաբերաբար» մահանալու դեպքերի մասին հիշատակությունները, կարելի է համոզվել, որ կայսրության մեջ քաղաքական տեռորը պետական քաղաքականության մակարդակին էր բարձրացված։ Այդ առումով «վախճանեցաւ Տարօնոյ իշխանն Աշոտ։ Եւ Տարօնոյ Հոռոմք տիրեցին» Ասողիկի խոսքերը շատ են հիշեցնում երեք տասնամյակ հետո Տայքում կատարված դեպքերը. վախճանվեց Դավիթ կուրապաղատը և Տայքին հոռոմները տիրեցին։ Հայտնի է, որ Դավիթ կուրապաղատին նահատակեցին։ Նույնը չկատարվե՞ց արդյոք Տարոնի իշխան Աշոտի հետ...

Իշխան Աշոտի «կտակը» և «մահը» առաջինն էին։ Դրանց հաջորդելու էին և այլ «կտակներ» ու «մահեր», որոնց հետևանքով վերջ էր տրվելու հայոց ինքնուրույն պետականությանը։

**2. Տայքի նվաճումը:** Տարոնի նվաճումը ոգևորեց կայսրությանը։ Ընդամենը հինգ տարի էր անցել, երբ Նիկեփոր II Փոկասի հաջորդ Հովհաննես Չմշկիկը փորձեց նորանոր հայկական հողերի տիրանալ։ Օգտվելով դեպի Ասորիք և Լիբանան՝ արաբների դեմ կատարած իր արշավանքից, նա այդ ընթացքում ուզեց ոտք դնել Հայաստան։ Այդ առթիվ հայոց թագավոր Աշոտ III-ն իր շուրջ հավաքելով ողջ հայության զինյալ ուժերը, շուրջ ութսուն հազար հոգի, բանակեց Հարք գավառում՝ պատրաստ ընդդիմակայելու բյուզանդական զորքերին։ Չմշկիկի փորձը անհաջողության մատնվեց[50]։

Հայոց հողերին զենքի ուժով տիրանալու փորձ կատարեց նաև Չմշկիկի հաջորդ Վասիլ II-ը։ Նրա օրոք 993 թ. «ելանէր մեծ տուկն Հոռոմոց և գայր բազում զօրօք ի վերայ աշխարհին Հայոց»[51]։ Դարձյալ

---

50 Այդ մասին աղոտ գրում է Մատթեոս Ուռհայեցին (էջ 17—18), բայց հստակ՝ Սմբատ Սպարապետը. «Չմշկիկ շարժեցաւ ի բարկութիւն, և ժողովեաց զամենայն զօրսն Յունաց և էառ օգնական ի Ֆռանկնոյն. և կամեցաւ նախ յառաջ Հայոց տիրել...» (Սմբատ Սպարապետ, էջ 9)։

51 Մատթ. Ուռհ., էջ 41։

ողջ հայությունը մի մարդու պես ոտքի կանգնեց և պարտության մատնեց հռոմոց զորքերին[52]։

Բյուզանդիայի համար պարզ դարձավ, որ քանի հայկական թագավորությունները և իշխանությունները հանդես են գալիս միասնական, իրեն դժվար կլինի զենքի ուժով հաջողության հասնել։ Ստրատեգիան թողնելով նույնը, նա պետք է փոխեր իր տակտիկան, ջանքեր թափեր հայերի միասնականությունը խախտելու, գործ ունենալու հայկական պետական միավորումների հետ առանձին-առանձին։ Այսինքն զենքը ժամանակավորապես փոխարինել դիվանագիտությամբ։

Ամրապնդվելով Տարոնում, Բյուզանդիան իր ուշադրությունը բևեռեց Տայքի կուրապաղատության վրա։ Առաջ քաշելով այն պատրվակը, որ Դավիթ կուրապաղատը օգնություն էր ցուցաբերել Վասիլ II-ի դեմ ապստամբած Վարդաս Փոկասին (ամենայն հավանականությամբ պարզ պատկերացնելով բյուզանդական առկա վտանգն իր իշխանության համար), ապստամբության ճնշումից հետո կայսրը ստիպեց Դավթին իր իշխանությունը Բյուզանդիային կտակել։

Տայքում Վասիլ II-ն ստեղծել էր բավական ընդարձակ լրտեսական ցանց, կարողացել էր կաշառել և իր հլու հնազանդ կամակատարները դարձնել Տայքի ավագանու մի մասին և նրա օգնությամբ իրագործել իր նպատակները։ Դավիթն իր իշխանությունը կտակել էր կայսրության, բայց մեռնելու նպատակ չուներ։ Բյուզանդիայի կամակատար Տայոց ավագանին, նրա «ազատագունդը», ինչպես գրում է Արիստակես Լաստիվերցին, «ձանձրացեալ կէնօք նորա», ասել է անհամբեր սպասելով Դավթի ուշացող մահվան, ամեն ինչ արեցին այն արագացնելու։ Այդ բանը շատ լավ գիտակցում էր Դավիթ կուրապաղատը և հնարավոր թունավորումից խուսափելու համար հակաթույն օգտագործում։ Դավիթ կուրապաղատին Վերին Երուսաղեմ ուղարկելու գործն իրենց վրա վերցրին վրաց աշխարհի արքեպիսկոպոս Իլարիոնը և Դավթի «չար իշխանները»։ Արքեպիսկոպոսը 1000 թ. ավագ շաբաթվա հինգշաբթի օրը «ի կենդանարար մարմնին և յարիւնն Քրիստոսի դեղ մահու խառնեաց», այսինքն հաղորդության հացի ու գինու մեջ թույն խառնեց։ Մահափորձը հաջողություն չունեցավ, քանզի «գիտացեալ աստուածասէր իշխանին Դաւթի, ...առեալ դեղ բժշկութեան շիջուցանէր զցաւսն ի մարմնոյ իւրոյ»[53]։ Մնում էր այլ քայլի դիմել։ Եվ Իլարիոնը երեք օր անց, Զատկի օրը, երբ Դավիթը «խաղաղիկ ի քուն կայր... առեալ նորա զբարձն ի սնարիցն

52 Նույն տեղում։

53 Նույն տեղում, էջ 38։

*դնէր ի վերայ բերանոյն Դաւթին և անկեալ սաստկապէս ուժգին ի վերայ նորա և չարչարանօք խեղդէր զաստուածասէր կուրապաղատն զԴաւիթ»*[54]։

*Դավիթ կուրապաղատի հանդեպ Վասիլ II-ի գործած քաղաքական տեռորի մասին պարզ վկայում է Արիստակես Լաստիվերցին, ցույց տալով, որ նրան սպանող Տայոց ազատագունդը ակնկալություններ ուներ կայսրից, վերջինս նրանց ինչ-որ խոստումներ էր տվել. «վասն առաջիկայ խոստմանցն՝ որ ի թագաւորէն ակն ունէին»*[55]։ *Կայսրն իր խոստումը կատարեց, բայց և ոճրագործության հետքերը թաքցնելու ու Տայքի բնակչությանը հանգստացնելու համար մահապատժի ենթարկեց արքեպիսկոպոս Իլարիոնին։*

*Վասիլը տիրացավ ոչ միայն Տայքին, այլև Տայքի կուրապաղատ Դավթի ողջ իշխանության, որի մեջ մտնում էին այլ գավառներ ևս։ Լաստիվերցին գրում է, որ կայսրը «տիրէ բազում գաւառաց և բերդից և քաղաքաց»*[56]։ *Նրանցից նա հանվանե հիշատակում է Հարքը, Մանազկերտը, ասել է՝ Ապահունիքը, Բագրևանդը և Եկեղյաց գավառը*[57]։

*Ինչպե՞ս է նկարագրված Տայքի նվաճումը Սկիլիցեսի մոտ։ Ինչպես և պետք էր սպասել, Սկիլիցեսը ոչինչ «չգիտե» ջուցե և իսկապես չգիտե Տայքը նվաճելու գործում Վասիլ II-ի գործադրած միջոցները։ Նրա ասելով, կայսրը զբաղված էր Սամուիլի դեմ պատերազմով։ Թեսաղոնիկեից գալով Կոստանդնուպոլիս, նա այնտեղից շտապում է Իբերիա, քանզի արդեն մեռել էր Դավիթ կուրապաղատը, իր տիրույթների ժառանգ նշանակելով կայսեր։ Գալով Իբերիա, Վասիլը տիրանում է «իր» ժառանգության, վրաց թագավոր Գիորգիի հետ հաշտություն կնքում և այնտեղից գնում Փյունիկե, իր հետ տանելով Տայքի մեծամեծներից Բակուրյանին, Թևդատին և Փերսին։*

3. Վասպուրականի նվաճումը։ *Տայքի նվաճումից հետո Բյուզանդիան շարունակեց իր զավթողական քաղաքականությունը։ Թեև նրան ամենից առաջ հետաքրքրում էր Շիրակի թագավորությունը, բյուզան-*

---

54 *Նույն տեղում*։ Արիստ. Լաստ. *էջ 23։ Քաղաքական տեռորի այս ոճին մենք հանդիպում ենք մի քանի տասնամյակ հետո, երբ Բյուզանդիան նույն ձևով տեռորի ենթարկեց, նույնպես հոգևորականի ձեռքով, հայոց իշխան Ծպիխտին։ Նրա խոստովանահայրը «յաւուր միում մտեալ առ Պիխտն և տեսեալ զնա, զի ննջեալ կայր քաղցրիկ ի մահիճս իւր, յարձակեցաւ զազանաբար ի վերայ նորա և առեալ զբարձն դնէր ի վերայ բերանոյ նորա՝ և ուժգին անկեալ ի վերայ նորա և չարաչար սպանանէր զայր հզօր և քաջ՝ չարագործ և պիղծ կրօնաւորն Հոռոմոց»* (Մատթ. Ուռհ., *էջ 214)*։

55 Արիստ. Լաստ., *էջ 23*։

56 *Նույն տեղում, էջ 24*։

57 *Նույն տեղում*։

դական աղբյուրների Մեծ Հայքը (Μεγάλη 'Αρμενία), բայց նա Տայքից անմիջապես հետո չէր կարող իր ուշադրությունը բևեռել Շիրակի վրա։ Այն բավական հզոր էր, բացի այդ, նրան օգնության կարող էր հասնել Վասպուրականի Արծրունյաց թագավորությունը։ Մնում էր նախ և առաջ չեզոքացնել Վասպուրականը։ Դրանով ոչ միայն Շիրակը կմնար առանց օգնականի, այլ հյուսիսից և հարավից՝ Տայքից և Վասպուրականից կառնվեր աքցանի մեջ։

XI դարի սկզբներին դրությունն առաջին հայացքից բարենպաստ էր Բյուզանդիայի համար։ Ասպարեզ էր եկել այնպիսի մի ուժ՝ օղուզները, որոնց վտանգը թեև կայսրության համար գեռևս շոշափելի չէր, բայց շոշափելի էր Վասպուրականի համար։ Հենց դրանից էլ ուզեց օգտվել Բյուզանդական կայսրությունը։ Մատթեոս Ուռհայեցին, խոսելով հայոց 465 թ. (1016) դեպքերի մասին, գրում է. «զարթեաւ աստուածասաստ բարկութիւնն ի վերայ ամենայն քրիստոսական ժողովրդեանն և երկրպագողաց սուրբ խաչին, զի զարթեաւ վիշապն մահաշունչ հանդերձ մահաբեր հրով, եհար զհաւատացեալս Սրբոյ Երրորդութեանն։ Յայսմ ի թուականիս սասանեցաւ հիմունք առաքելականացն և մարգարէականացն, վասն զի օձք թևավորք հասին և կամին ցոլանալ ընդ ամենայն աշխարհս հաւատացելոցս Քրիստոսի. այս է առաջին ելն արեանարբու գազանացն։ Ընդ աւուրսն ընդ այնոսիկ զօրաժողով լինէին խուժադուժ ազգն անօրինացն, որք անուանեալ կոչին Թուրք, և հասեալ մտանէին յաշխարհն Հայոց ի Վասպուրական գաւառն և անողորմ ի բերան սրոյ կոտորէին զհաւատացեալքս Քրիստոսի»[58]։

Թուրքերի դեմ դուրս եկավ Վասպուրականի թագավոր Սենեքերիմի որդի Դավիթը, բայց ի վիճակի չեղավ կանգնեցնել նրանց հրոսակներին։ Եթե հավատանք Մատթեոս Ուռհայեցուն և այլ պատմիչների, թուրքերի հենց այս արշավանքի առթիվ Սենեքերիմը «խորհեցաւ տալ զաշխարհ հայրենեաց իւրոց յարքայն Յունաց Վասիլ և առնուլ զՍեբաստիա և գրէր վաղվաղակի առ թագաւորն. զոր իբրև լուաւ թագաւորն Վասիլ՝ ուրախ եղև և ետ նմա զՍեբաստիա. և տայր Սենեքերիմ զաշխարհն Վասպուրականի...»[59]։

Բայց աղբյուրների արժանահավատ տվյալներով տարածքների փոխանակությունը կատարվեց 1021-ին[60] և ոչ 1016-ին։ Նույն Ուռհայեցու

58 Մատթ. Ուռհ., էջ 46—47։

59 Նույն տեղում, էջ 48—49։

60 Մանրամասն տե՛ս Վ. Վարդանյան, Վասպուրականի Արծրունյաց թագավորությունը 908—1021 թթ., Երևան, էջ 210 և հտ.

*տվյալներով 1016 թ. Կոստանդնուպոլիս է գնում Սենեքերիմի պատվիրակությունը, այն գլխավորում է վերջինիս որդի Դավիթը։ Եթե Սենեքերիմն արդեն տվել էր Վասպուրականը, համաձայնվել էր փոխանակության, բյուզանդական կայսրն էլ ինչո՞ւ էր Բյուզանդիա հրավիրում Սենեքերիմի որդուն։ «Եւ առաքեաց թագաւորն Վասիլ առ Սենեքերիմ առաքել առ նա զԴաւիթ թագաւորական ճոխութեամբ...»*[61]*։ Դավիթը, ապատաց բազում որդիների, եպիսկոպոս տեր Եղիշեի հետ, գանձերով բեռնավորված 300 ջորիներով, 1000 արաբական ձիերով գնաց Կոստանդնուպոլիս։ Սա վկայում է, որ Կոստանդնուպոլիս գնաց արքայազնը, երկրի տերը, և ոչ հայրենիքը օտարի ձեռքը հանձնելու մտադրություն ունեցող մեկը։ Հարցը պարզվում է, եթե նկատի առնենք Հովհաննես Սկիլիցեսի տվյալները։ Խոսելով բյուզանդա-բուլղարական պատերազմի վերջին դրվագներից մեկի մասին, նա ցույց է տալիս, որ Վասիլ II-ը, գրավելով Մակեդոնիայի Մոգլենա բերդը, զենք կրելու ընդունակ բոլոր ռազմագերի բուլղարներին ուղարկեց Վասպուրական*[62] (τοὺς μὲν ὅπλα δυναμένους κινεῖν εἰς Ἀσπρακανίαν ἐκπέμπει ὁ βασιλεύς)*։ Բուլղար պատմաբան Զլատարսկու հաշիվներով Մոգլենայի համար պատերազմն սկսվեց 1015 թ. ապրիլին*[63]*։ Պարզ է, նրանք հենց 1015 թ. չէին կարող Վասպուրական հասած լինել, դեռ ավելին, հենց 1015 թ. ուղարկված։ Ի՞նչ էր այդ ընթացքում տեղի ունեցել։ Վասպուրականը 1015—1016 թթ. դեռևս սուվերեն պետություն էր, Վասիլը Վասպուրականի հետ ոչ մի պատերազմ չուներ, էլ ի՞նչու էր բյուզանդական զորք ուղարկում Վասպուրական։ Պարզ է, մեկը պիտի խնդրեր, որպեսզի Վասիլը Վասպուրական զորք ուղարկեր։ Դարձյալ հարց է ծագում։ Ինչո՞ւ 1016-ին Դավիթը, այն էլ «թագաւորական ճոխութեամբ», բազում թանկագին նվերներով գնաց Կոստանդնուպոլիս։ Եթե նա արդեն տվել էր Վասպուրականը կամ այն տալու նպատակով էր գնում, էլ ինչո՞ւ էր այդ նվերներով գնում բյուզանդական պետության մայրաքաղաքը, ինչո՞ւ նրան քաղաքի բնակչությունն ընդունեց մեծ հանդիսավորությամբ. «Փառաւորութեամբ եմուտ Դաւիթ ի Կոստանդնուպօլիս՝ և դղրդեցաւ քաղաքն և ելին ամենեքեան ընդ առաջ նորա և զարդարեցին զփողոցս և զապարանս և գանձս բազումս ցանէին ի վերայ նորայ»*[64]*։ Այդպես կգնար սուվերեն վեհապետը, այդպես կընդունեին սուվերեն վեհապե-*

---

61 Մատթ. Ուռհ. էջ 49։

62 *Տե՛ս ստորև, էջ 84։*

63 *Златарски,* История, том I, часть 2, стр. 707.

64 Մատթ. Ուռհ., էջ 49։

տին, հետևաբար 1016 թ. Դավիթը Կոստանդնուպոլիս գնաց ոչ թե հայրենիքը զոհաբերելու համար, այլ այն փրկելու։ Միանգամայն անհավանական է, որ թուրքերի առաջին իսկ լուրջ վտանգի առաջ Սենեքերիմը որոշեր հրաժարվել իր հայրենիքից։ Ավելի տրամաբանական է ենթադրել, որ նա նախ և առաջ պիտի փորձեր վտանգի առաջն առնել ժամանակի քրիստոնեական հզորագույն տերության զինական օգնությամբ։ Ահա այդ օգնությունը խնդրելու էր գնում Դավիթը Կոստանդնուպոլիս։ Եվ նա ստացավ այն՝ հանձինս Մոգլենայում գերեվարված բուլղար ռազմագերիների։

Բյուզանդիան, իր զորքերը Վասպուրական ուղարկելով ամենևին էլ նպատակ չուներ պաշտպանելու Արծրունյաց թագավորությունն արտաքին թշնամուց։ Նա իր հաշիվներն ուներ։ Արիստակես Լաստիվերցին ցույց է տալիս, որ Վասիլ II-ը, գրավելով Բուլղարիան (1018), բուլղարական զորքերը «խաբանօք ի մի վայր ժողովէ, որպէս թէ պարգևս տալ նոցա, և գրով զհամար նոցա կալեալ՝ առաքէ զնոսա յարեւելս անդառնալի եկիւք. որք եկեալ զաշխարհս յաւեր դարձուցին»[65]։ Կասկած չի կարող լինել, որ Լաստիվերցու հիշատակած բուլղարական զորքը նույնանում է Հովհաննես Սկիլիցեսի բուլղարական այն զորքի հետ, որ Վասիլ II-ը ուղարկեց Վասպուրական։ Հենց նրանք «զաշխարհս յաւեր դարձուցին», մեր համոզմամբ Վասպուրականը տակնուվրա արեցին և հող նախապատրաստեցին այն «փոխանակության», որ տեղի ունեցավ 1021 թ.։ Բյուզանդիան Արծրունյաց թագավորությունը ներսից պայթեցրեց և ոչ դրսից՝ ճնշում գործադրելով, ինչպես կարծում են։

Ինչպես տեսնում ենք, Հովհաննես Սկիլիցեսի և հայկական աղբյուրների տվյալների զուգորդությունը միայն պարզ է դարձնում հայոց պատմության մի շատ կարևոր հարց, Վասպուրականի Արծրունյաց թագավորության վերջին տարիների պատմության հետ կապված։

Նման իրավիճակ ստեղծվել էր Հայաստանում մոտ մեկ հարյուրամյակ դրանից առաջ, այն ժամանակ, երբ Հայաստան ոտք էր դրել Ատրպատականի ամիրա Յուսուֆը և Բագրատունիների համար դժվար էր նրա դեմ մարտնչել։ Աշոտ II Երկաթը ստիպված եղավ 913 թ. գնալ Կոստանդնուպոլիս զինական ուժ խնդրելու։ Այդ օգնությունը նրան տրվեց. «Իսկ կայսր Կոստանդին (Ծիրանածինը—Հ. Բ.)... սիրալիր սրտիւ հաւանեալ խնդրոյն Աշոտոյ, ...բազում զօրավարս և զօրս Հոռվմայեցիս ի ձեռս նորա դումարեալ՝ յուղարկէ յիւրական աշխարհս»[66]։

---

65 Արիստ. Լաստ., էջ 24—25։

66 Հովհ. Դրասխ., էջ 292—293։

Բայց բյուզանդական զորքերն սկսեցին տակնուվրա անել Հայաստանի մի շարք շրջաններ, նրանք նվաճեցին Հայաստանի արևմտյան մի քանի գավառներ[67], սկսեցին խառնվել Բագրատունիների ներքին գործերին, Աշոտ II-ի կենտրոնական իշխանության դեմ նախարարների խռովություններ կազմակերպել։ Եվ Աշոտ II-ը 922 թ., երբ բյուզանդական զորքերը Հովհաննես Կուրկուասի գլխավորությամբ փորձեցին գրավել Դվին քաղաքը, ինչքան էլ դա տարօրինակ թվա, դաշնակցեց Ատրպատականի ամիրա Սբուքին, հանդես եկավ բյուզանդական զորքերի դեմ և դուրս շպրտեց նրանց Հայաստանից, մի բան որ հարյուր տարի անց չկարողացավ անել Սենեքերիմ Արծրունին, և, հավանաբար, չէր էլ կարող անել՝ նկատի ունենալով ժամանակվա միջազգային իրադրությունը և Բյուզանդիայի հզորությունը։ Սենեքերիմը հեռացավ Վասպուրականից 1021-ին, այսինքն այն ժամանակ, երբ արևելք եկավ Վասիլ II-ը։ Մինչև այդ Սենեքերիմը, երևի, չէր էլ մտածում հրաժարվել Վասպուրականից։ Վասիլը, հարկավ, կարող էր առանց քաղաքական ճնշման էլ վերացնել Վասպուրականի թագավորությունը, նրան բավական էր շարժման մեջ դնել իր զինական ուժերը։ Բայց գործը դրան չհասավ։ Ստեղծված իրադրության մեջ Սենեքերիմին այլ բան չէր մնում անել, քան տեղի տալ Վասիլ II-ի առաջարկի առջև և ընդառաջ գնալ բյուզանդական թելադրանքին։

Վասպուրականի նվաճումը ներկայացնել որպես ազնիվ գործարք՝ հավասար կողմերի միջև կնքված, հողերի պարզ փոխանակություն՝ ձեռնտու էր և՛ Բյուզանդիային, և՛ Վասպուրականին։ Առաջինին այն պատճառով, որ նա դեռևս պայքար ուներ մղելու Բագրատունիների թագավորության դեմ, և ջանում էր ցույց տալ հայերին, որ Վասպուրականի կցումը կայսրության սովորական փոխանակություն էր, երկուստեք ձեռնտու փոխանակություն և ոչ թե նվաճում, իսկ Վասպուրականի տերերի համար այն պատճառով, որ նրանք այդ ձևով մի կերպ պաշտպանում էին իրենց պատիվը, ցույց տալով, որ կատարվածը բյուզանդական ճնշման ու թելադրանքի հետևանք չէր։ Իսկ գործարքը Բյուզանդիայի կողմից ամենևին էլ ազնիվ չէր, իսկ Վասպուրականի համար էլ՝ փոխադարձ ձեռնտու և իրավահավասար, քանզի Սեբաստիա տեղափոխված հայերն «արկան ընդ լծով ծառայութեանն Հոռոմոց»[68]։

Վերևում ասվածից հետո Սենեքերիմ թագավորը մեզ համար հանդես է գալիս միանգամայն այլ տեսքով։ Նա վախկոտ մի վեհապետ չէր,

---

67 Տեր-Ղևոնդյան, Արաբական ամիրայությունները, էջ 136։

68 Թովմա Արծրունի, էջ 500։

առաջին վտանգի առաջ իր հայրենիքն ու ժողովրդին ծախելու պատրաստ, ինչպես նա պատկերված է մի շարք աղբյուրներում և ժամանակակից ուսումնասիրություններում։ Սենեքերիմն իրականում, չափազանց բարդ իրավիճակում ամեն ինչ արեց փրկելու իր հայրենիքն ու ժողովրդին՝ արևելքի ու արևմուտքի ահարկու թշնամիներից։ Գուցե նա սխալվե՞ց դաշնակցի ընտրության գործում։ Բայց նա էլ ու՞մ կարող էր այն ժամանակ դիմել օգնության։ Չէ՞ որ սեփական ուժերով նա ի վիճակի չէր ընդդիմակայելու թուրքերին։ 20—25 տարի անց ի վիճակի չէր լինելու նրանց ընդդիմակայել ամենահզոր Բյուզանդական կայսրությունը...[69]։

Վասպուրականը «կտակակցության» կարգով ստանալով, կայսրությունը դեռևս Վասպուրականին չտիրացավ։ Հենց այստեղ էլ Հովհաննես Սկիլիցեսի պատմական երկը հանդես է գալիս որպես բացառիկ արժեք ունեցող աղբյուր, քանզի Բյուզանդիայի՝ Վասպուրականի նվաճման համար մղած հետագա պայքարը հայկական աղբյուրներում թերի է լուսաբանված։ Վասպուրականում հաստատված էին մի շարք արաբական ամիրայություններ, որոնք լուրջ դիմադրություն էին ցուցաբերում։ Նրանցից էր Բերկրիի ամիրայությունը։ Կայսրության գործադրած ճնշման տակ նրա ամիրա Ալիմն այն զիջեց Բյուզանդիային, ենթադրելով, որ կարժանանա պատրիկության և այլ բազում փոխհատուցումների, բայց իր ակնկալածը չստանալով, գաղտնի դաշինք կնքեց հարևան թուրքերի հետ և գիշերով վերագրավեց Բերկրին ու սրի քաշեց բյուզանդական վեց հազարանոց կայազորը։ Կայսրը պաշտոնանկ անելով կառավարիչ Նիկոլայոս Խրիսելիոսին, նրա պաշտոնը տվեց Նիկետաս Պեգոնիտեսին, որը ռուս վարձկանների և այլ զինական ուժով, վերագրավեց Բերկրին, իսկ ամիրային մահվան դատապարտեց։ Դեպքերի հետագա պատմությունը մեզ հաղորդում են հայկական աղբյուրները։ Միքայել III կայսեր օրոք Բերկրիի արաբները ապստամբեցին և «եղև մեծ կոտորած զորացն Հոռոմոց՝ ի բերդաքաղաքն որ կոչի Բերկրի, որ ի վիճակի Արծրունեաց աշխարհի, զոր վաղնջուց յափշտակեալ էր Պարսից՝ հանդերձ իւրովք դաստակերտօքն, և ունէին ընդ ձեռամբ։ Յորոյ վերայ եկեալ Կաւասիլաս ոմն՝ որ Վասպուրականի գաւառապետն էր՝ բազում զօրու, էառ զքաղաքն և կացոյց զունդս հեծելոց պահապան քաղաքին»[70]։

Բերկրիից հետո Բյուզանդիան նվաճեց Արճեշը։ Այդ բանը կատա-

---

69 Հարցի մասին մանրամասն տե՛ս Бартикян, О болгарском войске, էջ 88—95։ Նույնի, Գրիգոր Մագիստրոսի քաղաքական կողմնորոշման հարցի շուրջը։

70 Արիստ. Լաստ., էջ 48։

րեց Վասպուրականի կատապան Նիկեփոր Կոմնենոսը. «զԱրճէշ իւրով դաստակերտօքն նա ած ընդ ձեռամբ Հոռոմոց»[71]։

Վասպուրականը, որ կազմեց վարչական մեկ միավոր՝ Վասպուրականի կատապանությունը՝ կատապանի գլխավորությամբ[72], Տայք-Իբերիայի հետ դարձավ այն հենակետը, որտեղից կայսրությունն սկսեց իր կործանիչ քաղաքականությունը Շիրակի Բագրատունյաց թագավորության դեմ։ Վասպուրականը դարձավ այն ապաստարանը, որտեղ փրկություն էր փնտրում ու գտնում Շիրակի թագավորության դեմ ոտնձգություններ կատարող և պատասխանատվությունից խուսափել ձգտող ամեն մի անձնավորություն։ Անգամ հայոց կաթողիկոս Պետրոս Գետադարձը, որ Բյուզանդիայի գործակալն էր Անիում, ստիպված եղավ 1037 թ. «ծածկաբար» ապաստանել Վասպուրականում, որտեղ մնաց ամբողջ չորս տարի[73] և Հայաստան վերադարձավ Բյուզանդիայի միջնորդությամբ։

4. Շիրակի (Մեծ Հայքի—Μεγάλη Ἀρμενία) նվաճումը: Տայքի և Վասպուրականի կցումը ու նրան հաջորդած բյուզանդական վարչության հաստատումը բարդացրեց Շիրակի Բագրատունիների վիճակը, քանզի կայսրության առաջնահերթ նպատակը Շիրակի նվաճումն էր, հայոց թագավորության վերացումը։ Այդ բանը շատ լավ էին գիտակցում Բագրատունիները և պատահական չէ, որ նրանք վաղուց էին վտանգը կանխելու միջոցներ ձեռք առնում։ Վտանգի մասին շատ լավ պատկերացում ունեին նաև վրաց տիրակալները։ Այդպիսի պայմաններում օրակարգի հարց դարձավ հայ-վրացական դաշինքը, որի հիմքը դրվել էր դեռևս X դարի վերջերին։ Երբ Դավիթ կուրապաղատի վրա հարձակվել էր Ատրպատականի արաբ ամիրա Ռավադյան Մամլանն իր հրոսակներով, «կիւրապաղատն Դաւիթ և արքայն Հայոց Գագիկ և Աբաս ընդ

71 Նույն տեղում, էջ 41։

72 Կ. Յուզբաշյանը, ելնելով Գրիգոր Մագիստրոսի Կեչառիսի արձանագրության տվյալներից, գտնում է, որ XI դարի կեսերից Վասպուրականն ու Տարոնը միացվեցին և կազմեցին մեկ միացյալ բանակաթեմ՝ Վասպուրականի և Տարոնի բանակաթեմը (*Yuzbashian*, L'administration, p. 147, 152)։ Բայց իր մի թղթում Գրիգոր Մագիստրոսն իրեն հորջորջում է նաև «Վասպուրականի և Տարօնոյ և Մանազկերտի, Արճիշոյ, Բերկրոյ, Միջագետաց տէր և Մօնումախին մագիստրոս, վէստ և տուկ» (էջ 213)։ Այս բոլոր նահանգները երբեք մեկ միացյալ բանակաթեմ չեն կազմել, պարզ է, որ նա թվարկում է տարբեր ժամանակներում գրաված պաշտոնները (հմմտ. Юзбашян, Экскуссия, стр. 107, прим. 14, նաև *Каждан*, Армяне, стр. 38)։ Ինքը՝ Մագիստրոսը, մի այլ թղթում իրեն անվանում է լոկ Տարոն բանակաթեմի (դքեշխության) կառավարիչ (էջ 48)։ Հնարավոր է, որ տվյալ դեպքում էլ նույն բանն է եղել, քանզի Վասպուրականն ու Տարոնը միացյալ բանակաթեմ լինելու վերաբերյալ փաստեր չկան։

73 Մատթ. Ուռհ., էջ 75։

*նմա, և Բագարատ թագաւոր Վրաց՝ դան ընդդէմ նոցա ի գաւառն Բագ-րևանդ, բանակ մեծ բոլորեալ ի Վաղարշակերտ քաղաքի»*[74]*։ Հայ-վրա-ցական միացյալ բանակը սարսափեցնում է թշնամիներին, որոնք «դար-ձան յերկիրն իւրեանց»*[75]*։*

*Հայ-վրացական զինական դաշինքն իր բարի պտուղներն է տալիս և մի փոքր անց, 998 թ., երբ նույն Մամլանը դարձյալ է հարձակվում Տայքի կուրապաղատ Դավթի վրա։ Դավթին ռազմական օգնություն է տալիս հայոց արքա Գագիկը և վրաց թագավոր Գուրգենը՝ Բագարատի որդին։ «Միաբան հասանէին զօրքն Հայոց և Վրաց» գրում է Ասողիկը*[76]*, «որոց հետամուտ եղեալ Հայոց և Վրաց զօրուն՝ սաստիկ հարուածովք հարկանէին, ի սուր սուսերի մաշելով զնոսա... մինչև ի դուռն Արճէշ քաղաքին»*[77]*։*

*Բյուզանդական վտանգի առջև այդ դաշինքը շարունակում է գոր-ծել։ Երբ 1020 թ. Գագիկ I-ի մահից հետո նրա որդիներ Հովհաննես-Սմբատի և Աշոտի միջև գահակալական պայքար սկսվեց, որը հրահրում էր Բյուզանդական կայսրությունը*[78]*, պայքարին միջամտեց «թագաւորն Ափխազաց Գէորգի՝ ի խաղաղութիւն համոզեաց զնոսա»*[79]*։ Երբ 1022 թ. Վասիլ II-ի դեմ ապստամբություն բարձրացրեց Վարդաս Փոկասի որդի Նիկեփոր Ծռվիզը, վրաց թագավոր Գիորգին և Գագիկ I-ի որդիները ապստամբին միացան և զինական օգնություն ցույց տվեցին, մի բան, որ ահաբեկեց Վասիլ II-ին*[80]*։*

*Այդուհանդերձ, ո՛չ հայերը, ո՛չ վրացիները ի վիճակի չէին հաջո-ղությամբ ընդդիմակայելու հզորության գագաթնակետին գտնվող Բյու-զանդական կայսրության։ Վասիլ II-ը 1021 թ. Տրապիզոնում իր կամքն էր թելադրում հայոց և վրաց վեհապետներին։ Հովհաննես-Սմբատի հրամանով Տրապիզոն գնաց հայոց կաթողիկոս Պետրոսը։ «Անգ՝ եղև Հայոց կորստեան գիր և նամակ,— գրում է Լաստիվերցին,—քանզի*

---

74 Ասողիկ. *էջ 267։*

75 *Նույն տեղում։*

76 *Նույն տեղում, էջ 271։*

77 *Նույն տեղում, էջ 273։*

78 *Աշոտը «թողեալ զաշխարհն՝ երթեալ հասանէ ի դուռն թագաւորին Հոռոմոց. և հաճոյ եղեալ նմա՝* խնդրէր զօրս յօգնականութիւն. *և առեալ զայ անցանէ յաշխարհն իւր։ Եւ յաջողեալ նմա յԱստուծոյ, տիրէ բաղում գաւառաց և բերդից»։* Արիստ. Լաստ.*, էջ 28։ Տարիներ անց, 1030 թ. Ռոմանոս III Արգիրոսն իր զարմուհուն կնության տվեց «Մեծ Հայքի էքսուսիարխին», հավանաբար հենց Աշոտին։*

79 Արիստ. Լաստ.*, էջ 27։*

80 Մատթ. Ուռհ.*, էջ 51։*

Յովհաննէս պատուէր տուեալ էր հայրապետին, եթէ՝ Գրէ գիր և տուր կտակ թագաւորին, զի յետ իմոյ վախճանին՝ զիմ քաղաքս և զերկիրս նմա տաց ի ժառանգութիւն»[81]։

Տրապիզոնի պայմանագրի մասին պատմում է Հովհաննես Սկիլիցեսը, արձանագրելով Վասիլ II-ի գործադրած ճնշումը հայոց թագավորի վրա։ Մենք հենց Սկիլիցեսից ենք իմանում, որ Հովհաննես-Սմբատր և վրաց թագավոր Գիորգին զինական դաշինք ունեին ընդդեմ Բյուզանդիայի, որ հայոց թագավորը Գիորգիի պարտությունից հետո ստիպված էր տեղի տալ Վասիլ II-ի ճնշմանը և իր երկիրը «կտակել» կայսեր։ Մենք հայկական աղբյուրներից չգիտենք, որ Հովհաննեսը Վասիլի կողմից ստացավ մագիստրոսի պատվաստիճանը, այլ միայն անորոշ կերպով, թե նա կայսրությունից ստանում էր «տուրս և իշխանութիւնս ի Հոռոմոց զամս հնգետասան»[82]։ Ահա թե ինչ է գրում Հովհաննես Սկիլիցեսը. «Երբ իբերների առաջնորդ Գեորգիոսը հռոմայեցիների դեմ զենք բարձրացրեց, նրան զինակցություն ցուցաբերեց Անիի շրջանին տիրող Հովհաննեսիկը։ Բայց երբ, ինչպես նախապես ասվեց, Վասիլ կայսրը բարձրանալով Իբերիա, ճակատեց Գեորգիոսի դեմ, նրան պարտության մատնեց ու ոչնչացրեց, Հովհաննեսիկը ահ ու դողի մեջ ընկավ, մտածելով, որ կայսրը Գեորգիոսին՝ իր ցուցաբերած զինակցության համար գլխին փորձանք կբերի։ Դրա համար ահա, վերցնելով քաղաքի բանալիները, անձամբ գնում է կայսեր մոտ, կամավոր հանձնվում նրան և ընձեռում բանալիները։ [Կայսրը] ընդառաջ գնաց նրա խելամտությանը, մագիստրոսի պատվաստիճան շնորհեց և նշանակեց Անիի ու Մեծ Հայք կոչվածի ցմահ կառավարիչ, նրանից գրավոր փաստաթուղթ պահանջելով, թե իր՝ Հովհաննեսիկի մահից հետո համայն իշխանությունը դառնում է հռոմեական պետության բաղկացուցիչ մասը»[83]։

Մագիստրոսի տիտղոսը կրողը կայսրությունից ամեն տարի հռոգ էր ստանում՝ տասը լիտր ոսկի և տասը լիտր արծաթ։ Ինչպես տեսանք, այդ ռոճիկը (հռոգը) ստանում էր ժամանակին Տարոնի իշխան Գրիգորը։ Հովհաննես-Սմբատը, Տարոնի իշխան Գրիգորի նման, գուցե ստացած լիներ նաև զորավարի (στρατηγός) աստիճանը։ Թեև աղբյուրներում այդ մասին ուղղակի հիշատակություն չկա, բայց Մատթեոս Ուռհայեցու խոսքերից՝ «և այնու առնոյր տուրս և իշխանութիւնս ի Հոռոմոց զամս հնգետասան»[84], կարելի է հանգել այդ եզրակացության։ Հովհան-

81 Արիստ. Լաստ., էջ 32։

82 Մատթ. Ուռհ., էջ 84։

83 Տե՛ս նույնը, էջ 146—147։

84 Մատթ. Ուռհ., էջ 84։

նեսի «զորավար» աստիճանը ստացած լինելու հանդամանքը հավանական է և այն տեսակետից, որ Սկիլիցեսը նրան Անիի տոպարխ է անվանում (τοῦ 'Ανίου τοπάρχης)[85], իսկ բյուզանդական աղբյուրներում տոպարխ էին կոչվում նաև բյուզանդական բանակաթեմերի զորավարները[86]։ Այս բոլորը վկայում են այն մասին, որ Տրապիզոնի պայմանագրից հետո մինչև իր մահը Հովհաննես-Սմբատը անտարակույս կախման մեջ էր կայսրությունից։

Տրապիզոնի դաշնագրությունը դամոկլյան սրի նման կախված էր Շիրակի թագավորության գլխին։ Երկրում կար երկու թագավոր, Հովհաննես-Սմբատը և Աշոտը։ Առաջինի մահվան դեպքում, ըստ պայմանագրի, Մեծ Հայքը (Շիրակը) պետք է դառնար Բյուզանդիայի սեփականությունը։ Հովհաննեսը ժառանգ չուներ. «իւր ոչ գոյր որդի թագակալ թագաւորութեանն. վասն զի որդին նորա Երկաթ վաղ վախճանեցաւ, և չժամանեաց ի պատիւ հօրն»[87]։ Այս հանգամանքը շատ ձեռնտու էր Բյուզանդիային, բայց նրան ավելի էր մտահոգում Հովհաննես-Սմբատի եղբայր Աշոտը, մի «քաջասիրտ և պատերազմասէր»[88] մարդ, որը Բյուզանդիային այնքան ժամանակ էր պետք, ինչքան նա, Աշոտը, պայքար էր մղում իր եղբոր դեմ և թուլացնում հայոց թագավորությունը։ Սակայն երբ երկու եղբայրների միջև վեճը մի կերպ հարթվեց, իսկ Աշոտն էլ «զօրանայր քան զամենեսեան, որ յառաջ քան զնա էին. մինչ զի բազումք ի մեծամեծացն՝ զհայրենի տեղիս իւրեանց ի նա թողեալ, նմա զանձինս կամօքն ի հնազանդութիւն ետուն»[89], կայսրությունը ստիպված փոխում է իր դիրքը նրա նկատմամբ, քանզի նա միշտ կարող էր հանդես գալ որպես հայոց միահեծան թագավոր և, որ պակաս կարևոր չէր, ուներ ժառանգ՝ Գագիկ անունով։ Հովհաննեսի մահվան դեպքում Բյուզանդիան, թեև կարող էր, հենվելով Տրապիզոնի գաշնագրության վրա պահանջել Շիրակը, բայց կար և մի այլ պայմանագիր՝ Հովհաննեսի և Աշոտի միջև կնքված, համաձայն որի Հովհաննես-Սմբատի մահից հետո Անիի թագավորությունը ժառանգում էր Աշոտը[90]։ Հենց դա էլ մտահոգում էր կայսրությանը։ Եվ հանկարծ կատարվեց այն, ինչ, եթե նկատի ունենանք Բյուզանդիայի շահերը, պիտի կատարվեր. «ի միում ամի

85 Տե՛ս ստորև, էջ 146։

86 Leo Diac., p. 96.

87 Արիստ. Լաստ., էջ 32։

88 Նույն տեղում, էջ 27։

89 Նույն տեղում, էջ 28։

90 «Եւ եթէ յառաջագոյն մահ հասցէ Յովհաննիսի՝ Աշոտ լիցի թագաւոր ամենայն Հայոց»։ Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, էջ 6։

զրուեալ յաստեացս՝ բարձան ի կենաց երկոքին հարազատ եղբարքն Աշոտ և Յովհաննէս, որ ունէին զթագաւորութիւն մերոյ աշխարհիս...»[91]։ Նախ մեռավ Աշոտը (բյուզանդական արքունիքում գրված սցենարի համաձայն այդպես էլ պիտի լիներ), քանզի հենց նա էր կայսրության համար ամենից վտանգավոր։ Նա կայսրության հետ որևէ պայմանագիր չէր կնքել և ոչ մի պարտավորություն չուներ, դեռ ավելին, նա, ինչպես ասացինք, ուներ և ժառանգ։ Աշոտի մահվան ժամանակ նրա որդին Գագիկը ընդամենը տասնհինգ տարեկան էր, այսինքն անչափահաս էր, Բյուզանդիան շտապեց, քանի Գագիկը չի հասել թագ կապելու տարիքին[92]։ Աշոտից մի քանի ամիս անց «մեռավ» և Հովհաննես-Սմբատը։ Եթե պետք լինի պատասխանել այն հարցին, թե ու՞մ էր ձեռնտու նրանց մահը, այդ բանն անել դժվար չէ։ Իհարկե Բյուզանդիային։ Հետևաբար նրանց «մահը» ոչ այլ ինչ էր, քան կայսրության կողմից կազմակերպված քաղաքական տեռորի ակտ։ Քաղաքական հակառակորդներին հրապարակից այդ ձևով վերացնելը Բյուզանդիայի համար նորություն չէր[93]։ Մենք արդեն գիտենք, դրան նախորդել էր Դավիթ կուրապաղատի «մահը»։

Ազգանշանը տրված էր։ Շիրակում Բյուզանդական կայսրության գլխավոր գործակալը վեստ Սարգիսն էր և պատահական չէ, որ նա իսկույն «կամեցաւ թագաւորել ի վերայ Հայոց»[94], «եդ շուք անձինն թագաւորել ի վերայ տանն Շիրակայ և որ շուրջ զնովաւ գաւառք»[95]։ Հավանաբար դա էլ Բյուզանդիայի նախաձեռնությամբ էր, Հայաստանի նվաճումը աստիճանաբար իրագործելու դիտավորությունն։ Բայց սպարապետ Վահրամ Պահլավունին «հանդերձ իւրովք ազգակցօք, որդւովք և եղբորորդւովք իբրև երեսուն ազատօք, ոչ միաբանեցան ընդ նմա. այլ կո-

---

91 Արիստ. Լաստ., էջ 55։

92 Ինչպես հայտնի է, Գագիկին թագավորեցրին 18 տարեկան հասակում, իր հոր մահից երեք տարի անց։ Պարզ է, որ մինչ այդ Գագիկը իրավունք չուներ թագ կրելու։

93 Ինչպես գիտենք, Դավիթ կուրապաղատին փորձեցին սպանել հաղորդության գինու մեջ թույն խառնելով։ Դա նորություն չէր։ Թեոփանո կայսրուհին նույն եղանակով թունավորեց ու սպանեց Ռոմանոս I-ի որդի Ստեփանոսին։ Բյուզանդիայում քաղաքական նկատառումներով այս ժամանակաշրջանում թունավորեցին Ջմշկիկին, Վարդաս Փոկասին, Ռոմանոս III-ին, ատրիկլին Կոստանդնին, թունավորելու փորձ արեցին Վասիլ II-ին և Հովհաննես Օրֆանոտրոֆոսին։ Երբ Իսահակ Կոմնենոս կայսրը երկար ժամանակ չէր կարողանում համոզել պատրիարք Միքայել Կերուլարիոսին հրաժարական տալ, պատրիարքը հենց «այդ միջոցին ...խաղաղությամբ հոգին ավանդեց»։ Ընդ որում կար երկու տեսակի թույն, արագ և դանդաղ գործող։

94 Մատթ. Ուռհ. էջ 84։

95 Արիստ. Լաստ., էջ 57։

չեալ առ ինքեանս զԳագիկ որդի Աշոտոյ, թագաւորեցուցին ի վերայ իւրեանց, և իմաստութեամբ և հնարիւք մուծին ի քաղաքն»[96]։

Վեստ Սարգիսը իսկույս «ազդ առնէր Հոռոմոց և ի տուր տայր զաշխարհն Հայոց»[97]։ Նա դիմեց և մի այլ կարևոր քայլի։ Նա ուզեց տնտեսապես խախտել Շիրակի թագավորության հիմքերը, զրկել այն տնտեսական հենարանից, քանզի առանց ֆինանսների բանակ գոյություն ունենալ չէր կարող, բանակ, որ պետք էր ընդդիմակայելու համար բյուզանդական հարձակմանը։ Եվ նա «զգանձատունն առաջին թագաւորացն Հայոց յափշտակեաց և տարաւ յԱփխազք, բերդամուտ եղեալ. և աւանս բազումս էառ ընդ ձեռամբ իւրով»[98]։

Հովհաննես-Սմբատի «մահը» (1041) պատճառ դարձավ Տրապիզոնի պայմանագիրը կյանքի կոչելուն։ Բյուզանդական կայսր Միքայելը, հայոց թագավորի մահվան լուրն առնելով, հավանաբար պահանջած պիտի լիներ «իր ժառանգությունը» և անկասկած մերժում ստացած, քանզի միայն այդ դեպքում նա զենքի ուժին սլիտի դիմեր։ «Ժողով աբարեալ թագաւորն Հոռոմոց Միխայլն և հասանէր յաշխարհն Հայոց և աւար հարկանէր զտունն Հայոց սրով և գերութեամբ»[99]։ Այս լույսի տակ բավականին կասկածելի է թվում Դավիթ Անհողինի գիրքը՝ Շիրակի թագավորության հանդեպ։ «Յայսմ ամի,— գրում է Մատթեոս Ուռհայեցին Հովհաննես-Սմբատի մահվան և բյուզանդացիների Հայաստանի վրա հարձակվելու մասին խոսքն ավարտելուց հետո,—բազում անցումն եղև տանս Հայոց ի ձեռն Դաւթի Անհողինի... Սա յարուցեալ ի վերայ թագաւորութեանն Հայոց և մատնեաց ի սուր և ի գերութիւն զգաւառս բազումս... անթիւ կրակով այրեցան ի զօրաց նորա»[100]։ Նման քայլը դուցե բացատրեինք նրա ցանկությամբ՝ Շիրակի վրա թագավորելու։ Բայց դրա դեմ է խոսում այն, որ նա այդ բոլորը կատարելուց հետո թողեց հեռացավ սեփական տիրույթները[101]։ Հետևաբար նրա միակ նպատակը Շիրակի թագավորության վնասելն էր, այն թուլացնելը։ Դարձյալ հարց է ծագում։ Ո՞ւմ էր դա ձեռնտու։ Անկասկած Բյուզանդիային, և բացառված չէ, որ Դավիթ Անհողինը, մի մարդ, որ հայերի մեջ կոչվում

---

96 Արիստ. Լաստ., էջ 58։

97 Մատթ. Ուռհ., էջ 84։

98 Նույն տեղում։

99 Նույն տեղում, էջ 84։

100 Նույն տեղում, էջ 84—85։

101 Նույն տեղում, էջ 85։

էր Դա Վիհ, քանզի «ի վիհն տառապանաց էած զազգս քրիստոնէից»[102], գործում էր Բյուզանդիայի դրդմամբ։ Ուռհայեցին, ճիշտ է, մշուշապատ, դա ցույց է տալիս։ «Յայնժամ յազգմանէ չարին կրկին շարժումն լինէր Յունաց դաւաճանութեամբ և կեղծաւորութեամբ սուտ քրիստոնէին Դաւթի Անհողինին...»[103]։ Դավիթ Անհողինն իր նախաձեռնությամբ չէր համարձակվի նման քայլի դիմել, քանզի դրանից շատ քիչ առաջ, հենց Աշոտ Բագրատունու մահվան տարին, նա դժվարին պատերազմ էր մղում իր հարևան ամիրա Աբու -լ- Ասվարի դեմ և անել վիճակից դուրս գալու համար դիմել և ստացել էր Հովհաննես-Սմբատի ռազմական օգնությունը[104]։ Արդ, նա Դվինի ամիրայից այլևս չէր վախենում։ Ի՞նչն էր պատճառը։ Պատասխանը տալիս է Հովհաննես Սկիլիցեսը։ Նա գրում է. «Դվինի և Արաքս գետի շուրջ ընկած Պերմարմենիայի կառավարիչ Ապլեսփարեսին [Աբու -լ-Ասվարին] կայսեր նամակն ուղարկվեց, որով կոչ էր արվում ասպատակել Մեծ Հայքը և Գագիկին [Գագիկ II Բագրատունուն] ենթակա երկիրը։ Նիկոլայոսը [բյուզանդական սպարապետը] գնաց ու գործի անցավ, նամակն էլ ուղարկեց Ապլեսփարեսին, իր կողմից էլ գրեց ու հրահրեց, նվերներով ու խոստումներով նրան գրգեց՝ կյանքի կոչեց կայսեր կամքը։ [Ապլեսփարեսը] ստանալով նամակները, պատասխանեց, թե հրամանը կկատարի, եթե իրեն կայսերական հրովարտակ ուղարկվի այն բանը հաստատող, թե ինքը որպես տեր կտիրի Գագիկին պատկանող բոլոր այն բերդերին ու շրջաններին, որոնք կկարողանա գրավել պատերազմի օրենքով։ Կայսրը համաձայնվեց դրան և խրիսովուլ գրությամբ հաստատեց Ապլեսփարեսի պահանջը, որը փաստաթուղթն ստանալուց հետո, գործի լծվեց։ Նա պաշարմամբ գրավեց Գագիկին պատկանող բազմաթիվ ամրոցներ ու շրջաններ։ Գագիկը մի կողմից պատերազմ մղելով հռոմեական բանակի դեմ, մյուս կողմից ենթարկվելով Դվինի կառավարչի ասպատակություններին, կատարյալ հուսաբեկ եղած, պարակիմոմենոսի հետ հաշտություն է կնքում և նրա միջոցով հանձնվում կայսեր ու տալիս [Անի] քաղաքը»[105]։

Դավիթն ու Աբու -լ-Ասվարը հանդես էին գալիս որպես Բյուզանդիայի դաշնակիցներ՝ ընդդեմ Շիրակի թագավորության։ Բայց Աբու-լ-Ասվարն ու Դավիթ Անհոգինը միակը չէին, որոնց Բյուզանդիան ոտքի

102 Մատթ. Ուռհ., էջ 88։

103 Նույն տեղում։

104 Նույն տեղում, էջ 79—82։

105 Տե՛ս ստորև, էջ 147—148։

էր հանել Շիրակի դեմ։ Եթե ուշադիր կարդանք Մատթեոս Ուռհայեցու պատմական երկը, ապա կտեսնենք, որ կայսրությունը Շիրակի դեմ էր հանել նաև Ատրպատականի այլազգիներին, քանզի հայոց թագավոր Գագիկ II-ն իր թագավորության երկրորդ տարին «երթեալ բազմութեամբ զօրօք, բանակ հարկանէր յԱյրարատեան գաւառին՝ առնուլ զվրէժխնդրութիւն յազգէն հարաւայնոյ»[106]։ Շիրակի Բագրատունիների դեմ միաժամանակ հանդես եկած այսքան թշնամիները հենց Բյուզանդիայի գործունեությամբ պիտի բացատրել։

Բյուզանդիան Շիրակի դեմ այլ դաշնակիցներ էլ ուներ։ Այսպես «Նենգաւորն Սարգիս և այլ nf յազատացն յառաջ մատեան, որք բանատուք էին առ Մոնոմախն...»[107] շարունակում էին իրենց գործունեությունը։ Այդ «աստուածուրաց նենգաւորքն... առաքեն քառասուն բանալիս զքաղաքին Անւոյ առ թագաւորն Մոնոմախն և ի հետ թուղթ՝ թէ Անի քաղաքն և ամենայն արևելքն քեզ եղև...»[108]։ Այդ «նենգավոր ազատներին» Մատթեոս Ուռհայեցին մի այլ տեղ «նախարարքն Հայոց» է անվանում[109]։ Նրանց գործունեությունը գլխավորում էր հայոց կաթողիկոս Պետրոս Գետադարձը, որի դիրքը հնարավորություն չի տալիս մեր պատմիչներին բացահայտ նրա դեմ գրելու, բայց այդուհանդերձ պետք եղածը նրանք ասում են։ Արիստակես Լաստիվերցին, օրինակ, գրում է, թե բյուզանդացիները Բագրատունյաց թագավորության վերացման «զշնորհակալիսն և զտրից տուրսն կաթուղիկոսին հատուցին, յորմէ զքաղաքն առին»[110]։

Ինչպես տեսնում ենք, Շիրակում գործում էր բյուզանդական գործակալների բավականին ընդարձակ ցանց։

Այդ բոլորի վերջը հանրահայտ է։ Հոռոմոց զորքերը «չորս անգամ զկնի միմեանց մտին յաշխարհն Հայոց, մինչև մարդաթափ արարին զերկիրն ամենայն սրով և հրով և գերութեամբ»[111]։ Գագիկ II-ը ստիպված գնաց Կոստանդնուպոլիս և այլևս չտեսավ իր հայրենիքը։ Այդ առթիվ Հովհաննես Սկիլիցեսը գրում է. «Գալով կայսեր մոտ նա [Գագիկը] մագիստրոսի պատվաստիճան ստացավ, շատ եկամտաբեր շրջաններ

106 Մատթ. Ուռհ., էջ 87—88։

107 Նույն տեղում, էջ 94։

108 Նույն տեղում, էջ 95։

109 Նույն տեղում, էջ 97։

110 Արիստ. Լաստ., էջ 63։

111 Նույն տեղում, էջ 58։

Կապադովկիայում, Խարսիանոնում, Լիկանդոսում և այսուհետև խաղաղ ու անվրդով կյանք ապրեց»[112]։

Հայկական աղբյուրներից քաջ հայտնի է, թե ինչքան էր «խաղաղ ու անվրդով» Գագիկի կյանքը Բյուզանդական կայսրության սահմաններում։

**5. Բյուզանդիայի պայքարը Դվինի ամիրա Աբու-լ-Ասվարի դեմ։** Նվաճելով Շիրակը և վերջ տալով Բագրատունյաց թագավորությանը, Բյուզանդական կայսրությունը սկսեց պահանջել Բագրատունիների այն տիրույթները, որոնց մի քիչ առաջ, իր իսկ դրդմամբ և համաձայնությամբ, տիրել էր Դվինի ամիրա Աբու-լ-Ասվարը։ Կոստանդին Մոնոմախը նրանից պահանջեց այդ բերդերն ու շրջանները (φρούρια καὶ χωρία), որպես Անիի (ասել է՝ Շիրակի թագավորության) բաղկացուցիչ մասեր (ὡς μέρη τοῦ Ἀνίου)։ Աբու-լ-Ասվարը, հենվելով կայսեր կողմից ստացած ոսկեկնիք գրության վրա (χρυσόβουλλος γραφή), որով նա համաձայնվել էր ամիրային թողնել այն բոլորը, ինչ նա Գագիկ II-ից կգրավեր պատերազմի օրենքով, մերժեց։ Դրա վրա Մոնոմախը Դվինի ամիրային պատերազմ է հայտարարում և հրամայում Նիկոլայոս պարակիմոմենոսին բյուզանդական բանակով, իբերական զորքով (Ἰβηρικὸς στρατός, ասել է՝ Իբերիա բանակաթեմի) և Մեծ Հայքի զինյալ ուժերով (τῆς ἐν τῇ Μεγάλῃ Ἀρμενίᾳ δυνάμεως, անկասկած Բագրատունիների բանակով), որոնց գլխավորում էր Սկիլիցեսի ասելով Անեցին (Ἀνιώτης), որ նույնանում է սպարապետ Վահրամ Պահլավունու հետ[113], հարձակվել Դվինի վրա։ Նիկոլայոս պարակիմոմենոսը այդ զինյալ ուժերի գլխավոր հրամանատար նշանակեց վեստարխ Միքայել Իասիտեսին, Իբերիա բանակաթեմի նախկին կատապանին, որ Շիրակի գրավումից հետո դարձել էր Հայաստանի և Իբերիայի կատապան, և իր «ծառա» (δοῦλος) մագիստրոս Կոստանդին Ալանի հետ Դվինի դեմ ուղարկեց։ Սկիլիցեսի համաձայն, Աբու-լ-Ասվարը ռազմագիտական հարցերում շատ հմուտ մարդ էր, տեսնելով, որ ի վիճակի չէ ընդդիմակայել բյուզանդական զորքերին, փակվեց Դվինի պարիսպների ետևում, մոտիկից հոսող գետի հոսանքը շրջեց դեպի դաշտերը,

---

112 Տե՛ս ստորև, էջ 148։

113 Հ. Արվայլերը սխալմամբ կարծում է, որ Անեցին Գագիկ II Բագրատունին է։ Գագիկը դեռ 1045 թ. գնացել էր Կոստանդնուպոլիս և մինչև իր մահը՝ 1079 թ. Անի չի վերադարձել։ Բյուզանդական այս արշավանքը դեպի Դվին տեղի ունեցավ 1045 թ. Մարմաշենի մի տապանաքարի վրա գրված է. «Աստ ամփոփի նշխար Վահրամ իշխանաց իշխանի Հայոց Մեծաց ի ցեղէ Պահլավունի, որ նահատակեցաւ ի Թուրքաց պատերազմի ի Մարմաշէն ի հայոց թվ(ին) ՆՂԴ»։ Տե՛ս *Орбели*, Надписи Мармашена, стр. 449:

դրանք համատարած տիղմի վերածեց, որի մեջ հակառակորդի ձիերն ու ռաղմիկները խրվեցին։ Դվինի ամիրան պարտության մատնեց բյուզանդացիներին։ Այդ մարտում սպանվեց նաև սպարապետ Վահրամն իր Գրիգոր որդով հանդերձ, «որ մեծ սուղ հասոյց Հայոց»[114]։

Կոստանդին Մոնոմախը պաշտոնանկ արեց Նիկոլայոս պարակիմոմենոսին և Միքայել Իասիտեսին, նրանց փոխարեն Հայաստանի և Իբերիայի կատապան նշանակեց Կատակալոն Կեկավմենոսին, Լաստիվերցու Կամենասին[115], իսկ Նիկոլայոսի պաշտոնում զորավարավտոկրատոր նշանակվեց մեծ հետերիարխ, ներքինի Կոստանդինը, ծագումով սարակինոս[116]։

Հաջորդ տարին, 1047 թ. ամռանը, բյուզանդական զորքերը դարձյալ հարձակվում են Աբու-լ-Ասվարի վրա։ Այս արշավանքի մասին հայկական աղբյուրները շատ համառոտ են խոսում։ Մատթեոս Ուռհայեցին դրում է, թե ՆՂՁ (496—1047) թ. «դարձեալ գայ Տելիարխն ղօրօք բազմօք և իջանէր ի վերայ քաղաքին Դվնայ. և բազում չարչարանս և տագնապս գործեաց այնմ գաւառին և սրով և գերութեամբ ապականեաց զամենայն ազգն Տաճկաց և դարձաւ յաշխարհն Յունաց խաղաղութեամբ»[117]։ Ավելի հանգամանալից շարադրանք է տալիս Սկիլիցեսը։ Նրա ասելով բյուզանդացիները 1047 թ. արշավանքի ժամանակ «չուզեցին հարձակվել Դվին քաղաքի վրա, որը համայն ազգի մայրաքաղաքն է, այլ փորձեցին [տիրանալ] Անիին ստորանկյալ բերդերին, գրավեցին գահավեժ տեղանքում գտնվող շատ անառիկ Սուրբ Մարիամը, Ամբերդ կոչվածը, Սուրբ Գրիգորը։ Ապլեսֆարեսը բազմիցս անգամ փորձեց պաշարյալներին օգնության հասնել, բայց ամեն անգամ պարտություն կրեց։ Նրանք եկան նաև Խելիդոնիոն կոչվող բերդը, որը գահավեժ լեռան վրա է կառուցված և գտնվում է Դվինից ոչ հեռու։ Ահա այդ [բերդը] խրամատներով ու ցանկապատով օղակի մեջ առնելով, ջանում էին [երկարատև] պաշարմամբ տիրանալ... [Հռոմայեցիները] այս [բերդն] էլ կգրավեին, եթե Արևմուտքում հանկարծակի չբռնկվեր պատրիկ Լևոն Թոռնիկի ապստամբությունը[118]։ Բյուզանդացիներն ըս-

---

114 Արիստ. Լաստ., էջ 63։ Նաև Մատթ. Ուռհ., էջ 98։

115 Արիստ. Լաստ., էջ 63։

116 Տե՛ս ստորև, էջ 149։ Ուռհայեցին նրան անվանում է Տելիարխ (հետերիարխ)։ Մատթ. Ուռհ., էջ 100։ Մանրամասն տե՛ս Բարթիկյան, Մի քանի բյուզանդական տերմինների մասին, էջ 72—77։

117 Մատթ. Ուռհ., էջ 100։

118 Տե՛ս ստորև, էջ 149։

տիպված Աբու-լ-Ասվարի հետ հաշտություն են կնքում և իրենց զորքերը տեղափոխում Արևմուտք ընդդեմ ապստամբ Լևոն Թոռնիկի։

Բյուզանդական կայսրությունը հասել էր իր նպատակին։ Նրան այժմ մտահոգում էր ձեռք բերածը ապահովել, ամրապնդվել Հայաստանում։

6. Բյուզանդական վարչության հաստատումը Հայաստանում։ Բյուզանդական զորքերի հետ Հայաստան մուտք էր գործում բյուզանդական վարչությունը և կարգն ու կանոնը։ Պետք է նկատել, որ կայսրությունն իր նվաճած նահանգներում իշխանությունը տալիս էր իր զինվորականներին, կամ էլ հազվադեպ, տեղացի այն բարձրաստիճան գործակալներին, որոնք այս կամ այն չափով նպաստել էին իր ձեռք բերած հաջողության։ Տարոնի վերաբերյալ մենք քիչ տեղեկություններ ունենք, բայց, ամենայն հավանականությամբ, այդ երկրամասը Դերջանի հետ միասին մեկ բանակաթեմ կազմեց։ Մենք չգիտենք ով դարձավ նրա առաջին կառավարիչը։ Բացառված չէ, որ 966-ից անմիջապես հետո, բայց 974 թ. առաջ Բյուզանդիան նահանգի կառավարումը թողած լինի իշխան Գրիգորի երկու որդիների՝ Բագարատի և Աշոտի ձեռքը, բայց դա երկար չէր կարող տևած լինել, քանզի 974 թ. նահանգի կառավարիչն էր պրոտոսպաթար Լևոնը։ Հովհաննես Չմշկիկ կայսեր՝ Աշոտ III-ին ուղարկած նամակում գրված է. «Եւ յանափոռաէն պռոտօսպաթրին Դերջնայ Լևոնի և Տարօնոյ զօրավարին»[119]։ Սրանից երևում է, որ Դերջանն ու Տարոնը, համենայն դեպս 974 թ. մեկ վարչական միավոր են կազմել զորավարի գլխավորությամբ, որն ուներ պրոտոսպաթարի աստիճանը[120]։

---

119 Մատթ. Ուռհ., էջ 27։

120 Ն. Ադոնցը, մեր համոզմամբ, ճիշտ է հասկացել Ուռհայեցու վերոհիշյալ նախադասությունը և թարգմանել. «protospathaire de Derdjan, Léon, général de Taron» (Adontz, La lettre de Tzimiscès, p. 144)։ Կ. Ցուգրաշյանը գտնում է, որ խոսքը երկու անձնավորությունների մասին է, Դերջանի պրոտոսպաթար Լևոնի և Տարոնի անանուն զորավարի (տե՛ս նրա L'administration, 145—146)։ Սակայն եթե այդպես լիներ, ապա Դերջանի կառավարիչը Տարոնում գտնվող Այծյաց բերդի վերաբերյալ Չմշկիկին ուղղված անափոռա-զեկուցագրի կազմմանը ինչո՞ւ պետք է մասնակցեր։ 971—975 թթ. միջև կազմված էսկուրիալի Տակտիկոնում Դերջանն ու Տարոնը, ճիշտ է, հիշված են որպես առանձին վարչական միավորներ (Oikonomidès, Les lists, p. 265, 267), բայց գուցե Չմշկիկի թուղթը Աշոտ III-ին հնարավորություն տա ավելի ևս սեղմել հիշյալ Տակտիկոնի գրության ժամկետները։ Ավելորդ չէ նշել, որ Ուռհայեցու գրածը սխալ է հասկացել դեռևս Սմբատ Սպարապետը։ Նա ասում է, «Գրեաց և ի պռոտօսպաթարն, և ի Տարօնոյ զօրավարն զի առաքեսցեն առ թագաւորն Աշոտ զխրատվուլն և դաշնեկան ԼԲ

Տարոնը որպես առանձին վարչական միավոր հիշվում է մոտ մեկ իննսունամյակ անց. այն մասին վկայում է Գրիգոր Մագիստրոսը, որը վարել է այդ նահանգի կառավարչի պաշտոնը։ Նա գրում է. «մեք առ-ժամանակս այսր եմք ի Տարօն յաշխարհիս Մամիկոնէից, այլ ակն ունիմք, զի եթէ կամեսցի Տէր, երթամք առ արքայ, զի թերևս ղերծեալք ի մրրկեալ այսմ բդեշխութենէ պարապել Աստուծոյ»[121]։

Տարոնի կառավարիչն ուներ իր գործակալները, որոնք բավական լայն իրավունքներ ունեին։ Այդ մասին գրում է Արիստակես Լաստիվերցին. «Հրահատ ոմն ի գործակալաց մեծին Գրիգորի որդւոյ Վասակայ» և նշում, որ նրանք, այդ գործակալները, «երկրին (իմա Տարոնի) տէր էին»[122]։

Տայքի հարցը տարբեր էր։ Սկզբնական շրջանում այն առանձին վարչական միավոր չկազմեց, այլ, ամենայն հավանականությամբ, դրվեց հարևան բանակաթեմի զորավարի ենթակայության տակ[123]։ Հարցն այն է, որ Տայքի նվաճումից սկսած մոտավորապես քառորդ դարի ընթացքում Տայքի կատապանություն կամ զորավարություն դառնալու, սեփական կառավարիչ ունենալու մասին և ոչ մի փաստի չենք հանդիպում աղբյուրներում։ Քաջատեղյակ Արիստակես Լաստիվերցին ցույց է տալիս, որ Վասիլ II-ը, գրավելով Տայոց աշխարհը, «կացուցանէ ի վերայ նոցա գործակալս և դատաւորս և վերակացուս»[124]։ Մենք գիտենք նաև, թե ովքեր են նրանք։ Ստեփանոս Տարոնեցին գրում է, որ Վասիլը «զամենայն բերդս և զամրոցս Տայոց նուաճեաց ընդ ձեռամբ իւրով, զհաւատարիմս կարգեալ ի նոսա, և զմնացեալ ազատսն Տայոց առեալ տարաւ ընդ ինքեան՝ բնակեցուցանէ յաշխարհին

---

(30.000) և ծառայս ԲՌ (2000), ձի ԺՌ (10.000) և ջորի Ռ (1000) վասն սիրոյն և միաբանութեան զոր արար նմա» (էջ 12—13)։

121 «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 48։

122 Արիստ. Լաստ., էջ 118։

123 Հ. Արվայլերը («Recherches», p. 85) գտնում է, որ Տայքն «անկասկած» միացավ Միջագետք (Մեսոպոտամիա) բանակաթեմին, բայց այդ ենթադրությունն անառարկելի չէ։ Հեղինակի միակ փաստարկն այն է, որ Մոնոմախի ռազմական ռեֆորմի մասին դրելով, բյուզանդական հեղինակները նշում են, որ այն տարածվեց Իբերիայի և Մեսոպոտամիայի վրա, բայց դա դեռ փաստ չէ, որ այդ երկուսը մեկ մավոր են կազմել։ Ավելի հավանական է, որ միացվեց Կարինին՝ Թեոդոսուպոլսին։ Ինչպես հայտնի է, Ուղթիքը Տայքի կենտրոնն էր։ Սմբատ Սպարապետը այդ քաղաքը տեղադրում է Թեոդոսուպոլիս գավառում. «...և Պառակամանոսն ձմեռեաց Ցուղտիքն (պիտի լինի՝ յՈւղտիքն—Հ. Բ.), ի գավառն Թեոդուպօլեացյ» (Սմբատ Սպարապետ, էջ 42)։

124 Արիստ. Լաստ., էջ 24։

*Յունաց»*[125]։ *Պարզ է, որ նա Տայքում իշխանությունը տվեց իրեն հավատարիմ մնացած բնիկ ազատանուն։*

*Տայքը բյուզանդական աղբյուրներում հայտնի է որպես Իբերիա, Տայք անվանումն այդ շրջանի բյուզանդական աղբյուրներում չի հանդիպում։ Սկզբնական շրջանում Իբերիան այնքան մեծ կարևորություն չուներ կայսրության համար։ Միայն 1021 թ. հետո նրա կարևորությունն արտակարգ մեծացավ։ Հարցն այն է, որ Վասպուրականի նվաճումից և Շիրակի թագավոր Հովհաննես-Սմբատի հետ Տրապիզոնում 1021 թ. կնքած պայմանագրից հետո, Տայք-Իբերիան հյուսիսից և Վասպուրականը՝ հարավից Շիրակի թագավորությունն առան աքցանի մեջ, այսինքն իրականացավ այն, ինչ ծրագրել էր Բյուզանդիան։ Հենց այս հանգամանքը կյանքի կոչեց Իբերիա բանակաթեմը, որը Վասպուրականի կատապանության հետ պետք է Շիրակի Բագրատունիների թագավորության մեռելաթաղի դերը խաղար*[126]։

*Ն. Ադոնցը գտնում է, որ Իբերիա բանակաթեմն ստեղծվեց Վասիլ II-ի կողմից 1023 թ. բյուզանդա-վրացական պատերազմի ավարտումից հետո, որ բյուզանգական առաջին կառավարիչն այնտեղ եղել է Ռոմանոս Դալասենոսը*[127]*, որը Կարինի «Վրացական» կոչվող դարբասների վրա թողած հունարեն վիմագիր արձանագրության մեջ իրեն անվանում է «Իբերիայի կատապան»*[128]*։ Ն. Ադոնցի ասելով նա կառավարել է մինչև 1026 թ., քանզի 1027 թ., ինչպես հայտնի է բյուզանդական և հայկական աղբյուրներից*[129]*, այդ պաշտոնն ստացավ Նիկետաս Պիսիդացին։ Սակայն պետք է նկատել, որ Ռոմանոս Դալասենոսի կառավարման ժամանակի վերաբերյալ աղբյուրները ոչինչ չեն ասում, նրա՝ Իբերիայի կատապան լինելու միակ վկայությունը Կարինի վերոհիշյալ արձանագրությունն է, որն անթվակիր է, հետևաբար Ռոմանոս Դալասենոսին Նիկետաս Պիսիդացու անմիջական նախորդը լինելու մասին ոչ մի կռվան չունենք։ Ռոմանոսը բյուզանդական ծառայության*

---

125 Ասողիկ, *էջ 278*։

126 *1045 թ. Անիի վրա հարձակվեց Միքայել Իասիտեսը, Իբերիա բանակաթեմի զորավարը, նրա ջանքերով ոչնչացվեց Բագրատունիների թագավորությունը։ Մատթեոս Ուռհայեցու տվյալներով, Անիի պարիսպների տակ պարտություն կրած Նիկողայոս պարակիմոմենոսը նահանջեց և ձմեռեց հենց Ուղթիքում, Տայքի մայրաքաղաքում* («Մատթ. Ուռհ., *էջ 96)*։

127 *Adontz*, Les Dalassènes, p. 171.

128 Սարգսյան, *Տեղագրութիւն, էջ 74*։

129 *Տե՛ս ստորև, էջ 96.* Արիստ. Լաստ., *էջ 41*։

մեջ էր մինչև 1038/1039 թթ[130], հետևաբար նա կարող էր Իբերիայի կատապան լինել ոչ անպայման 1023—1026 թթ.[131]։

Բոլոր դեպքերում Իբերիա բանակաթեմն ստեղծվեց Վասպուրականի գրավումից և վրաց թագավոր Գիորգիի Վասիլ II-ից պարտվելուց հետո։ 1023 թ. նրանց միջև հաշտություն կնքվեց, Վասիլ II-ը տիրացավ Դավիթ կուրապաղատի այն հողերին, որ Գիորգին էր գրավել, որից հետո՝ ահա «թագաւորին (Վասիլ II-ը) իշխանս ի վերայ գաւառին կացուցեալ»[132]։

«Իշխան» տերմինը Արիստակես Լաստիվերցին օգտագործում է կառավարիչ-կատապան նշանակությամբ։ Օրինակ, խոսելով Կոստանդին VIII-ի գահակալության մասին, պատմիչը նշում է, որ նա «զիշխանս որ զաւառակալք էին, զորս մեծն Վասիլ կարգեալ էր, ի նոյն հաստատեաց»[133]։ Իսկ խոսելով Տարոնի մասին, նույն հեղինակը գրում է. «իսկ ի կողմանս Տարօնոյ Թէոգորոս որդի Ահարոնի... նա էր իշխան գաւառին»[134]։ «Իշխան գաւառին» դարձվածքը բյուզանդական աղբյուրներում հանդես է գալիս ἄρχων τῆς χώρας ձևով, որի տակ կատապանն է ենթադրվում։ Վասպուրականի կառավարիչ Ահարոն Բուլղարին Սկիլիցեսն անվանում է հենց ἄρχων τῆς χώρας։

Այսպիսով պարզ է դառնում, որ Տայք-Իբերիան բանակաթեմի ստատուս ստացավ 1023 թ. հետո։ Հենց այդ թվականից սկսյալ այդ բանակաթեմը հայկական աղբյուրներում սկսեց կոչվել «գաւառն Վրաց»[135] տարբերվելու համար Վրաստանից, որ հայտնի էր «աշխարհն Վրաց» ձևով[136]։ Մենք գիտենք, որ 1027 թ. բանակաթեմի կատապան էր նշանակվել Նիկետաս Պիսիդացին։ Դրանից հետո Իբերիա բանակաթեմի կառավարչի մասին տեղեկություններ չունենք ընդհուպ մինչև XI դ. 30-ական թվականների վերջերը։ Հնարավոր է, որ այդ ընթացքում կառավարած լինեն հիշյալ Ռոմանոս Դալասենոսը, ինչպես և նրա եղբայր Թեոփիլակտոսը։

---

130 Տե՛ս Бартикян, О феме Иверия, стр. 69.

131 Պետական էրմիտաժի բյուզանդական արճճե կնիքների ժողովածուի մեջ կա Թեոփիլակտոս Դալասենոսի, Ռոմանոս Դալասենոսի եղբոր, մի կնիքը, որի վրա գրված է. «Թեոփիլակտոս Դալասենոս, Իբերիայի կատապան»։ Հայտնի չէ, ե՞րբ է Թեոփիլակտոսը կառավարել Իբերիա բանակաթեմը։ Կնիքի մասին տե՛ս Шандровская, Неизвестный правитель, стр. 79—86.

132 Արիստ. Լաստ., էջ 38։

133 Նույն տեղում, էջ 40։

134 Նույն տեղում, էջ 41։

135 Նույն տեղում, էջ 41—42։ Գրիգոր Մագիստրոսը հիշում է «Վերիացւոց կողմ»-ը (էջ 231), հավանաբար Իբերիա բանակաթեմը։

136 Նույն տեղում։

Իբերիայի վարչական ստատուսը փոփոխություն կրեց 1045 թ. Բագրատունյաց թագավորության վերացումից հետո։

Շիրակը, բյուզանդական աղբյուրների Մեծ Հայքը ( (Μεγάλη Ἀρμενία), անցնելով Բյուզանդական կայսրության ձեռքը, Տայք-Իբերիայի հետ կազմեց վարչական մեկ միավոր՝ բյուզանդական կառավարչի՝ կատապանի կամ դուքսի իշխանության ներքո, որի պաշտոնական տիտղոսն էր «Հայաստանի և Իբերիայի կատապան» (Κατεπάνω Ἀρμενίας καὶ Ἰβηρίας)[137]։ Այդպես է իրեն անվանում կառավարիչ Հովհաննես Մոնաստիրիոտեսը։ Պահպանվել են նաև կառավարիչ Ահարոն Բուլղարի արճճե կնիքները հետևյալ մակագրությամբ. «Տե՛ր, օգնյա՛ Իբերիայի և Մեծ Հայքի մագիստրոս և դուքս Ահարոնին»[138] (Κύριε βοήθει Ἀαρὼν μαγίστρῳ καὶ δουκὶ Ἰβηρίας καὶ τῆς Μεγάλης Ἀρμενίας)։

Բյուզանդական պատմողական աղբյուրներում ևս, այդ թվում և Հովհաննես Սկիլիցեսի երկում, հիշյալ անձնավորությունը կոչվում է «Անիի և Իբերիայի կառավարիչ» (τοῦ Ἀνίου καὶ τῆς Ἰβηρίας κατάρχων)[139], որտեղ Անիի տակ ենթադրվում է հայ Բագրատունիների ողջ տիրույթը[140]։ Ավելորդ չէ նշել, որ նման հասկացություն հայկական աղբյուրներում գոյություն չունի։ Արիստակես Լաստիվերցին առաջին կառավարիչ Ասիտին (Իասիտես) անվանում է «տեղակալ քաղաքին Անւոյ»[141], իսկ ամբողջ վարչական միավորը՝ «տէրութիւն Հայոց»[142]։ Կառավարիչ Կեկավմենոսի մասին խոսելիս, Արիստակես Լաստիվերցին գրում է, թե նա «ունէր զիշխանութիւն տանն Հայոց»[143], իսկ Մատթեոս Ուռհայեցին, խոսելով Բագարատ Վխկացու և Գրիգոր Բակուրյանի մասին, նշում է, թե նրանց «կացուցեալ էր թագաւորն պահապանս տանն Հայոց»[144]։

Հայաստանի տարբեր նահանգներում կազմակերպված բյուզանդական բանակաթեմերի մեջ ամենից կարևորը «Հայաստանի և Իբերիայի» կատապանությունն էր, և պատահական չէ, որ հայկական աղբյուրներում եթե բոլոր կատապանությունների կառավարիչները կոչված են գավառապետ, իշխան գավառի, ապա Հայաստանի և Իբերիայի կա-

---

137 *Бенешевич,* Три анийские надписи, стр. 19.
138 *Шандровская,* Неизвестные печати, стр. 61.
139 *Տե՛ս ստորև, էջ 157։*
140 *Տե՛ս Бартикян,* О феме Иверия, стр. 74, прим. 30, 32.
141 Արիստ. Լաստ., *էջ 63։*
142 *Նույն տեղում, էջ 63։*
143 *Նույն տեղում, էջ 80։*
144 Մատթ. Ուռհ., *էջ 148։*

տապանը մեկ անգամ կոչված է «տեղակալ»[145]։ Հայկական և ոչ մի այլ բանակաթեմի կառավարիչ այդ տիտղոսը չի կրել։ Այդ «տեղակալը» կրում էր նաև մագիստրոսի բարձր պատվաստիճանը։ Արիստակես Լաստիվերցին ընդգծում է այդ հանգամանքը. «իշխանին որ նստէր յԱնի և ունէր զպատիւ մագիստրոսութեան»[146]։ Աղբյուրների տվյալների հիման վրա կարելի է կազմել «Հայաստանի և Իբերիայի» բանակաթեմի կառավարիչների ցուցակը.

1. Միքայել Իասիտես
2. Կատակալոն Կեկավմենոս
3. Լևոն Թոռնիկ
4. Ահարոն Բուլղար
5. Հովհաննես Մոնաստիրիոտես
6. Բագարատ Վխկացի

Վասպուրականը հենց սկզբից կազմեց մի առանձին վարչական միավոր, Վասպուրականի կատապանությունը (’Ασπρακανία, Βαασπρακανία), որը կոչվում էր նաև Վերին Մարաստան (ἄνω Μηδία)[147]։ Նրա կառավարիչը հայկական աղբյուրներում կոչվում է «Վասպուրականի գաւառապետ»[148] կամ «դուքս»[149]։ Մայրաքաղաքը Վան քաղաքն էր (τὸ Ἴβαν (μητρόπολις δὲ αὕτη τοῦ Βαασπρακᾶν)։ Կատապանը որպես կանոն նստում էր Վանում, բայց մենք նրան հանդիպում ենք նաև Արճեշում. «հասանէր (Թուրքերի զորքը 1045 թ.) մինչև յԱրճէշ քաղաքն Հայոց։ Եւ էր անդ զորավար մի Հոռոմոց՝ որում անուն ասէին Ստեփան կատապան»[150]։

Աղբյուրները հնարավորություն են տալիս առավել հանգամանորեն կազմել հենց Վասպուրականի կատապանների ցուցակը՝ 1021—1060 թթ. ընկած ժամանակաշրջանում.

---

145 Արիստ. Լաստ., էջ 63 (ἐκπροσώπου?)։

146 Նույն տեղում, էջ 106։

147 Գրիգոր Մագիստրոսի մի նամակի վերնագրից, ինչպես և Կեչառիսի 1051 թ. արձանագրությունից կարելի է հանգել այն թյուր եզրակացության, որ Վասպուրականը Տարոնի հետ կազմեց մեկ միավոր («յորժամ էր դուքս ի Վասպուրական և ի Տարօն» («Գր. Մագ. Թղթերը», էջ 148)։ Գրիգոր Մագիստրոսը հավանաբար տարբեր ժամանակներում է վարել Վասպուրականի, ապա Տարոնի, կառավարչի պաշտոնը։ Համենայն դեպս Գրիգոր Մագիստրոսի մի այլ նամակից (և ոչ նամակի վերնագրից, որ Մագիստրոսինը չէ), որն արդեն առիթ ունեցանք հիշելու, Տարոնը հիշված է որպես առանձին վարչական միավոր («Գր. Մագ. Թղթերը», էջ 48)։ Հետաքրքրական է նշել, որ ըստ Մխիթար Այրիվանեցու (էջ 58) Կոստանդին Մոնոմախը նվաճելով Հայաստանը, «ետ զիշխանութիւն երկրիս Գրիգորոյ Մագիստրոսի, որ շինեաց զեկեղեցին Կեչառուաց»։

148 Արիստ. Լաստ., էջ 48։

149 Գրիգոր Մագիստրոս, էջ 148։

150 Մատթ. Ուռհ., էջ 99։

1. Վասիլ Արգիրոս
2. Նիկեփոր Կոմնենոս
3. Նիկողայոս Խրիսելիոս
4. Նիկետաս Պեգոնիտես
5. Գեորգիոս Մանիակես
6. Կոստանդին Կավասիլաս
7. Ստեփան Լիխուդես
8. Գրիգոր Մագիստրոս
9. Ահարոն Բուլղար
10. Բագարատ Վխկացի[151]։

Վասպուրականի կատապանը (ինչպես, անկասկած, մյուս կատապանները ևս), ուներ իր պաշտոնեությունը, որից Սկիլիցեսը հիշատակում է Ահարոն Մագիստրոսի «ենթաքարտուղարին» (ὑπογραμματεύς) Գեորգիոս Դրոսոսին, որ սուլթանի մոտ մեկնած դեսպանությունն էր գլխավորում։

Բացի այս խոշոր վարչական միավորներից, բյուզանդական կառավարությունը հայկական մի շարք շրջաններում ու քաղաքներում հաստատել էր կառավարիչներ, որոնք աղբյուրներում նույնպես իշխան կամ կատապան են կոչված։ Չորրորդ Հայքի Պաղին (Պաղնատուն) գավառում 1051 թ. հիշվում է Պեռոս անունով կատապան[152], որին 1055 թ.

---

151 Կ. Յուզբաշյանն իր հոդվածում (L'administration, էջ 182—183) տալիս է Վասպուրականի կատապանների ցուցակը, որը, չգիտես ինչու, սկսում է 1016 թ. (այդ թվականից կառավարած ցույց տալով Վասիլ Արգիրոսին և Նիկեփոր Կոմնենոսին), երբ դեռևս մինչև 1021 թ. գոյություն ուներ Վասպուրականի Արծրունյաց անկախ հայկական թագավորությունը։ Սկիլիցեսը ցույց է տալիս, որ Վասիլ Արգիրոսը Վասպուրականի կառավարիչ նշանակվեց Սենեքերիմի Սեբաստիա գնալուց (1021) հետո (տե՛ս ստորև, էջ 86), հետևաբար նա չէր կարող 1016 թ. Վասպուրականի կառավարիչ եղած լինել։ Դժվար է պատկերացնել, որ Վասպուրականում 1016—1021 թթ. միաժամանակ կառավարել են Սենեքերիմ Արծրունին և բյուզանդական, այն էլ մեկը չէ, երկու կատապան։ Յուզբաշյանի ցուցակում բացակայում է Նիկետաս Պեգոնիտեսի անունը։ Նա հաջորդել է Նիկողայոս Խրիսելիոսին (տե՛ս ստորև, էջ 111)։ Գեորգիոս Մանիակեսին Յուզբաշյանն հիշում է Վասպուրականի կատապանի պաշտոնում երկու անգամ՝ 1030 և 1035 թթ., ընդորում մի անգամ «Ստորին Մարաստանի», որի տակ նա հասկանում է Անձևացիքն ու Մանազկերտը, երկրորդ անգամ «Վերին Մարաստանի»։ Ստորին Մարաստանը Վասպուրականի հետ ոչ մի առնչություն չունի (տե՛ս ստորև, ծանոթ. 352)։ Մանիակեսը Վասպուրականի կառավարիչ դարձավ մեկ անգամ։ Կատապանների Յուզբաշյանի ընդունած հերթականության մեջ ևս կան անճշտություններ։ Այսպես՝ Նրա ցուցակում Կոստանդին Կավասիլասին հաջորդում է Նիկողայոս Խրիսելիոսը, այնինչ իրականում հակառակն է եղել։ Նիկողայոս Խրիսելիոսին Վասպուրականի կառավարչի պաշտոնից հեռացնում է Ռոմանոս III Արգիրոսը (տե՛ս ստորև, էջ 111), իսկ Կավասիլասը, ինչպես Արիստակես Լաստիվերցին է ցույց տալիս, կառավարել է Վասպուրականում Ռոմանոս III կայսեր հաջորդ Միքայել Պափլագոնացու օրոք (Արիստ. Լաստ., էջ 48)։ Այնուհետև, Ստեփան Լիխուդեսի իշխանության սկիզբ է նշված 1046 թ., այնինչ Մատթեոս Ուռհայեցին հիշատակում է նրան այդ պաշտոնում դեռևս 1045 թ. (Մատթ. Ուռհ., էջ 99)։

152 Մատթ. Ուռհ., էջ 111։

*փոխարինեց Մելիսանոսը[153]։ Մանազկերտի մասին խոսելիս, Լաստիվերցին գրում է. «Իսկ Վասիլն՝ որ քաղաքին իշխանն էր»[154] կամ «իշխանն որ ունէր զհոգ վերակացութեան քաղաքին»[155] (Մանազկերտի)։ Նա հիշում է նաև Կարին քաղաքի իշխանին[156], որ, ամենայն հավանականությամբ, ենթարկվում էր «Հայաստանի և Իբերիայի» կատապանին[157]։*

*Բացի կատապան-նահանգապետից, Հայաստանի բյուզանդական կատապանություններում հաստատված էին նաև բյուզանդական դատավորներ—κριταί, որոնց իրավասության մեջ էր գատ-գատաստանը տվյալ նահանգում։ Դեռևս Վասիլ II-ի օրոք, երբ հիշյալ կայսրը «տիրէ բազում գաւառաց և բերդից և քաղաքաց... կացուցանէ ի վերայ նոցա գործակալս և դատաւորս և վերակացուս»[158]։ Դատավորները, ինչպես երևում է աղբյուրներից, շատ ընդարձակ իրավունքներ ունեին, բացի դատականից, նաև ֆինանսական ու քաղաքական։ Խոսելով 1057 թ. դեպքերի մասին, Լաստիվերցին հիշում է մի դատավորի, որ «ունէր զհոգս արևելից», հավանաբար «Հայաստանի և Իբերիայի» բանակաթեմի, որն անգամ հրամայեց ձերբակալել Լիպարիտի որդի Իվանեին, նրան բանտ նետել, բռնագրավել նրա «անչափ գանձը», ձիերը, ջորիներն ու «զամենայն զոր ինչ և նա յարևելից ժողովեալ էր»[159]։ Բյուզանդական գատավորին հիշատակում է Լաստիվերցին նաև Թոնդրակյան շարժման առնչությամբ, որ «առաքի ի Թագաւորէն»։ Նա է «դատաւոր իրաւանց աշխարհին»[160], որ իրավունք ունի անգամ զինվորներ ուղարկելու[161]։*

**7. Բյուզանդիայի տնտեսական քաղաքականությունը Հայաստանում:** *Բյուզանդական կայսրության շուրջ հարյուրամյա տիրապետության ժամանակ Հայաստանում վարած տնտեսական քաղաքականության մասին աղբյուրներում շատ քիչ տեղեկություններ են պահպանվել։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ կայսրության առաջնահերթ միջոցառումներից մեկը երկրում հարկային լուծ հաստատելն է։ Արիս-*

---

153 Նույն տեղում, էջ 122։
154 Արիստ. Լաստ., էջ 94։
155 Նույն տեղում, էջ 90։
156 Նույն տեղում, էջ 106։
157 Նույն տեղում։
158 Նույն տեղում, էջ 24։
159 Նույն տեղում, էջ 106։
160 Նույն տեղում, էջ 130։
161 Նույն տեղում։

տակես Լաստիվերցուց հայտնի է, որ Վասիլ II-ը «ի չորեքհարիւր վաթսուն և եօթն ամի թուականիս մերոյ» (1018), այսինքն հենց բուլղարական պատերազմի ավարտին, երբ նա իրեն բավականին ապահով էր զգում, «առաքէ ...զնիկոմիտացի իշխան ոմն, որ եկեալ մարդաճարկ արկանէ յերկրիս»[162]։

Հարկահանություն Հայաստանում գոյություն ուներ նաև Կոստանդին Մոնոմախ կայսեր օրոք, այդ մասին է վկայում նույն Լաստիվերցին. «զոր ի հարկաց ամենայն աշխարհաց ժողովէր»[163]։ Պետք է ընդգծել, որ Վասիլ II-ի և Կոստանդին Մոնոմախի քաղաքականությունը Հայաստանում իրարից արմատապես տարբերվում էր։ Վասիլը, ինչպես և նրան հաջորդած եղբայրը՝ Կոստանդին VIII-ը շատ զգույշ քաղաքականություն էին վարում, լինի տնտեսական, լինի հարկային, լինի կրոնական կամ իրավական։ Եվ պատահական չէ, որ այդ երկու կայսերերին, ինչքան էլ տարօրինակ դա թվա, հայկական աղբյուրներում դրական գնահատական է տրված։ Վասիլ II-ը Լաստիվերցու համար «երանելի»[164] կայսր է, Ուռհայեցու համար՝ «հայրն ամենեցուն» որ «անուն բարի ստացաւ՝ ի վերայ արարածոցս՝ ողորմած ի վերայ այրեաց և գերեաց ի իրաւարար զրկելոց»[165], նա «եղև որպէս զհայր աշխարհիս Հայոց...»[166], որ իբր իր մահվան մահիճում «անդարձ արարեալ նմա (իր եղբայր Կոստանդնին) վասն աշխարհին Հայոց, զի հայրաբար սիրով խնամեսցէ զազգն զայն»[167]։

Նույն գնահատականին է արժանացել նաև Կոստանդին VIII-ը։ Նա «քաղցրութեամբ հովուեաց զամենայն հաւատացեալս Աստուծոյ... և բարի յիշատակաւ գնաց առ հարս իւր»[168]։ Հայ ժողովրդի մեջ տարածվել էր նույնիսկ մի առասպել (անկասկած Բագրատունիների անկումից հետո), համաձայն որի Կոստանդին VIII-ը ուզում էր հավիտյան պահպանել Հայոց թագավորությունը[169]։

Բոլորովին այլ էր Կոստանդին Մոնոմախի հարկային քաղաքակա-

---

162 Արիստ. Լաստ., էջ 28։

163 Նույն տեղում, էջ 95։ Գրիգոր Մագիստրոսը հիշատակում է Մելիտենեի շրջանում գործող «պռատկսպատրիկ և աշխարհագիր» մի անձնավորության մասին։ «Գր. Մագ. թղթերը», էջ 225։

164 Արիստ. Լաստ., էջ 95։

165 Մատթ. Ուռհ., էջ 30։

166 Նույն տեղում, էջ 50։

167 Նույն տեղում, էջ 55։

168 Նույն տեղում, էջ 56։

169 Արիստ. Լաստ., էջ 57։

նությունը։ Կեկավմենոսը այդ առթիվ գրում էր, թե կայսրը Իբերիա և Միջագետք ուղարկեց իր պաշտոնյա Սերվլիասին՝ գույքի հաշվառում կատարելու և հարկեր նշանակելու համար, այնպիսի հարկեր, որոնք, պատմիչի ասելով, այդ մարդիկ իրենց օրում չէին տեսել։ Հարկերի ծանրությունը պատճառ դարձավ, գրում է Կեկավմենոսը, որ այդ մարդիկ տնով տեղով (πανοιχεί) անցնեն պարսից թագավորի (իմա՝ սելջուկ սուլթանի) կողմը[170]։

Կեկավմենոսն Իբերիայի տակ նկատի ունի Հայաստանի և Իբերիայի միացյալ բանակաթեմը, իսկ Միջագետքի մեջ, ինչպես տեսանք, մտնում էին ի միջի այլոց Չորրորդ Հայքը և Բարձր Հայքը։

Բյուզանդիան բացի ընդհանուր մարդահարկից, հարկեր էր գանձում նաև Հայաստանի քաղաքների առևտրականներից և արհեստավորներից։ Այդ մասին պատմողական աղբյուրներում որևէ տեղեկություն չկա[171], վկայություններ են պահպանվել Անիի մայր տաճարի պատերին փորագրված երկու վիմագիր արձանագրություններում, որոնցից մեկը Հայաստանի և Իբերիայի կատապան Ահարոն Բուլղարն է փորագրել տվել շուրջ 1056 թ., մյուսը՝ Բագարատ Վիկացին հավանաբար 1060 թ.։

Տվյալ ժամանակաշրջանում Անին շատ հարուստ ու զարգացած քաղաք էր, միջազգային առևտրի աշխույժ կենտրոն։ Այստեղ բարձր զարգացման էին հասել արհեստները[172]։ Այդ մասին վկայում են ոչ միայն հայկական, այլև բյուզանդական աղբյուրները։ Միքայել Ատտալիատեսը, օրինակ, գրում է, որ Անին հրաշալի քաղաք էր (θαυμασία πόλις), որ նրա ողջ բնակչությունը առևտրով էր զբաղված[173]։

Նվաճելով Հայաստանի քաղաքները, բյուզանդացիները քաղաքային բնակչությունից՝ առևտրականներից ու արհեստավորներից սկսեցին հարկեր գանձել, հարկեր, որոնք կայսրության հիմնական եկամուտն էին կազմում։ XI—XII դդ. սահմանագլխին գրած արաբ գիտնական Մարվազին ցույց է տալիս, որ Բյուզանդիայի «պետական եկամտի մեծ մասը կազմում են առևտրականներից գանձած հարկերը»[174]։ Ահարոն

---

170 «Советы и рассказы», стр. 152—154.

171 Կցկտուր տեղեկություններ կան Սկիլիցեսի մոտ՝ Եդեսիայի վերաբերյալ։ Գեորգիոս Մանիակեսը, 1032 թ. գրավելով Եդեսիան, կայսեր ուղարկեց քաղաքի տարեկան հարկը, որ կազմում էր 50 լիտր ոսկի (3600 ոսկեդրամ)։ Տե՛ս ստորև, էջ 110։

172 *Манандян*, О торговле... Առաքելյան, Քաղաքները և արհեստները, հտ. Ա—Բ։

173 *Mich. Attal.*, էջ 80—81։

174 *Minorsky*, Marwazi..., էջ 462։

Մագիստրոսի վերոհիշյալ արձանագրության մեջ, ի միջի այլոց, ասված է. «Բերի ոսկի մատանեաւ (այսինքն՝ կայսերական խրիսովուլով հաստատված) գիր ազատութեան զինքնակալ ծիրանեծին թագուհոյն վասն պախտից տանց Բաղաբիս և բաստակին, զոր տաին ամ յամէ չափ ութից լտերց.[այ]լ և ի խնգրո իշխանաւորացս խափանեցի և զգիտ երկուց լտերց զոր տայր մութասիբն...»[175]։ Այս արձանագրությունից պարզվում է, որ Անիի առևտրականներն ու արհեստավորները մինչև այս արձանագրության փորագրությունը բյուզանդական կառավարության վճարում էին ութ լիտր ոսկի (576 ոսկեդրամ) հարկ։ Քաղաքապետը (մութասիբը) հավանաբար պետության, իր հերթին հարկ էր վճարում՝ երկու լիտր ոսկու չափով (144 ոսկեդրամ), հարկ, որ արձանագրության մեջ «գիտ» է կոչված։

Անիի արհեստավորների ու առևտրականների վճարած հարկի մասին վկայում է և Անիի կառավարիչ Բագարատի արձանագրությունը, այն տարբերությամբ, որ եթե Ահարոնի արձանագրության մեջ այդ հարկը բյուզանդական տերմինով է նշանակված (պախտ տանց), ապա Բագարատի արձանագրության մեջ արդեն մշակվել է հայկական տերմին՝ «տանուտրուբիւն»[176] (տուրք տներից՝ արհեստանոցներից, խանութկուղպակներից)։ Այս արձանագրությունից պարզվում է, որ եթե Ահարոն Մագիստրոսի կառավարման ժամանակ Անիի արհեստավորներն ու վաճառականները ազատվում էին այդ հարկից, ապա շուրջ 1060 թ. Բագարատի իշխանության օրոք վերականգնվում էր, այն տարբերությամբ, որ եթե Ահարոնի ժամանակ հարկի գումարը հաստատուն էր և այն վճարվում էր ուղղակի պետության, ապա Բագարատի ժամանակ հարկի գումարը անորոշ էր և նրա գանձման գործը կապալով տրվում էր հարկահաններին, որոնք աղբյուրներում հայտնի են որպես «պակտոնարիոս» (πακτονάριος)[177], «պախտ» գանձող։ Նրանց խղճից էր կախված գանձվելիք հարկի քանակը։

Նման հարկային քաղաքականությունը անկասկած տարածված էր Հայաստանի և այլ քաղաքներում։ Դժբախտաբար, այդ մասին աղբյուրներում տեղեկություններ չեն պահպանվել։

Մենք որևէ տեղեկություն չունենք խոշոր կալվածատերերի վճարած հարկերի մասին, իսկ այդպիսիներ՝ աշխարհիկ թե հոգևոր, Հայաստանում շատ-շատ էին։ Հայոց եկեղեցին Պետրոս Գետադարձի օրոք ուներ

175 «Դիվան հայ վիմագրության», պր. I, էջ 38։
176 Նույն տեղում, էջ 37։
177 «Советы и рассказы», стр. 238.

«հինգ հարիւր դեղ անուանի և մեծանիստ և շահաւէտ ընտիր ընտիր»[178]. Բյուզանդական տիրապետության օրոք, հասկանալի է, հայ եկեղեցին դրանցից զրկվեց, բայց այդուհանդերձ հայոց եկեղեցին եկամուտներ ուներ, քանի որ բյուզանդացիները Պետրոս Գետադարձի հաջորդին՝ Խաչիկին «ընդ հարկիւ կամէին արկանել»[179]։ Սակայն ասվածից չի կարելի եզրակացնել, որ հայ հոգևորականներն ընդհանրապես զրկվեցին իրենց կալվածներից։ Կաթողիկոսության հողային հարստության հարված հասցնելն ավելի քաղաքական դրդապատճառներ ուներ, քան տնտեսական։ Հայաստանում հենց բյուզանդական տիրապետության օրոք լայնածավալ կալվածներ հայ հոգևորականներն ունեին։ Օրինակ, Արծնի Դավթուկ քորեպիսկոպոսի հարստությունները սելջուկ-թուրքերը քառասուն ուղտերի վրա բարձեցին ու տարան, իսկ նրա տնից «ութ հարիւր վեցկի եզանց ելանէին»[180]։ Այդքան անասուն աշխատացնելու համար մշակելու համապատասխան հողային տարածություն էր պետք։

Բյուզանդական կայսրությունը, ինչպես ասվեց, չէր հանդուրժում հայ ֆեոդալների, ավագանու առկայությունը Հայաստանում։ Աշխատելով հեռացնել նրանց մայր երկրից, միաժամանակ նա ոչ հայ ֆեոդալների էր հաստատում։ Նրանց շնորհելով ընդարձակածավալ կալվածներ, ջանում էր իր համար տնտեսական ու քաղաքական հենարան ստեղծել Հայաստանում։ Դրա փայլուն օրինակը Եվստաթիոս Բոյիլասն էր, որին Բյուզանդական կայսրությունը հաստատեց Կղարջքում, նվիրելով բազմաթիվ եկամտաբեր կալվածներ[181]։

**8. Բյուզանդիայի քաղաքականությունը տեղական ավագանու նկատմամբ:** Բյուզանդական կայսրությունը, նվաճելով Հայաստանը, նրա ավագանու (աշխարհիկ, թե հոգևոր) նկատմամբ մշակել էր որոշակի քաղաքականություն, որն իրագործում էր ամենայն բծախնդրությամբ։ Այդ քաղաքականության էությունը մի քանի խոսքով տալիս է Մատթեոս Ուռհայեցին. «Յորժամ այր քաջ և զօրաւոր դտանէին,— գրում է նա,— զաչսն խաւարեցուցանէին և կամ ի ծովն ձգեալ խեղդամահ սատակէին»[182]։ Բայց կայսրությունը միաժամանակ ամեն կերպ աշխատում էր պահպանել, սիրաշահել պաշտոններ ու աստիճաններ շնորհելով, հլու գործիք դարձնել իր կողմնակիցներին, իսկ հակառակորդներին ցրել կայսրության ամբողջ տարածքով մեկ։ Մի փաստ, որ

178 «Մատթ. Ուռհ., էջ 153։
179 Արիստ. Լաստ., էջ 83։
180 Մատթ. Ուռհ., էջ 103։
181 Բարթիկյան, Բոյիլասի կտակը, էջ 393—429։
182 Մատթ. Ուռհ., էջ 136։

հանդիպում է Ստեփանոս Տարոնեցու պատմական երկում, վերաբերում է սոսկ Տայքին, բայց բոլոր հիմքերը կան այն տարածելու ողջ Հայաստանի վրա։ Պատմիչը գրում է. «Թագաւորն Վասիլ... զամենայն բերդս և զամրոցս Տայոց նուաճեաց ընդ ձեռամբ իւրով, զհաւատարիմս կարգեալ ի նոցա, և զմնացեալ ազատսն Տայոց առեալ տարաւ ընդ ինքեան՝ բնակեցուցանել յաշխարհին Յունաց»[183]։

Վասիլ կայսեր այս քաղաքականությունը կայսրության համար նորություն չէր, այն մշակված էր բազում դարեր առաջ, դեռևս Արշակունյաց հարստության վերացումից հետո և որի հոյակապ ձևակերպումը գտնում ենք Սեբեոսի մոտ։ Հանրահայտ է Մավրիկիոս կայսեր նամակը՝ ուղղված պարսից շահնշահ Խոսրովին. «Ազգ մի խոտոր և անհնազանդ են, ասէ, կան ի միջի մերում և պղտորեն։ Բայց եկ, ասէ, ես զիմս ժողովեմ և ի Թրակէ գումարեմ. և դու զքոյդ ժողովէ և հրամայէ յԱրևելս տանել։ Զի եթէ մեռանին թշնամիք մեռանին. և եթէ սպանանեն՝ զթշնամիս սպանանեն. և մեք կեցցուք խաղաղութեամբ։ Զի եթէ դոքա յերկրի իւրեանց լինիցին՝ մեզ հանգչել ոչ լինի»[184]։ Մավրիկիոսը, հարկավ, նկատի ուներ ոչ ողջ հայ ժողովրդին, այլ նրա ավագանուն և զինվորական ուժերին։

Վասիլ II-ի այդ քաղաքականությունը շարունակեցին և նրա հաջորդները։ Վասիլի եղբայր Կոստանդինն իր իշխանության երկրորդ տարում, 1027 թ., «առաքէ ...յարևելս վերակացու աշխարհին զնիկիտ ոմն ներքինի, որ եկեալ անցանէ ի գաւառն Վրաց (իմա Իբերիա բանակաթեմը), և պատիր բանիւք զբազումս յազատաց աշխարհին հանեալ ի հայրենեաց՝ առաքէ ի դուռն թագաւորին։ Զոր տեսեալ և ուրախացեալ՝ մեծամեծ պարգևօք և իշխանական գահու պատուէ զնոսա, և տայ նոցա ըստ արժանեաց գիւղս և աւանս գրով և մատանեաւ ժառանգութիւն յաւիտենից»[185]։

Արիստակես Լաստիվերցու վերոբերյալ տողերի մեջ հայելու նման արտացոլված է կայսրության քաղաքականությունը. եկամտաբեր կալվածներ շնորհելով կայսրության սահմաններում, հեռացնել ավագանուն իր հայրենիքից, որպեսզի վերացնի ժողովրդի հնարավոր ազատա-

183 Ասողիկ, էջ 278։ Այդ մասին վկայում է անգամ Հովհաննես Սկիլիցեսը, ցույց տալով, որ Իբերիայի (Տայքի) նվաճումից հետո Վասիլ II-ը իր հետ Փյունիկե տարավ Իբերիայի ազնվականության գլխավորներին (τοὺς ἐν τῇ κατ᾽αὐτὸν Ἰβηρίᾳ κατὰ γένος πρωτεύοντας), որոնցից հիշատակում է Պակուրյանին (Գրիգոր Բակուրյանի հորը), Թևդատին և Ֆերսին (տե՛ս ստորև, էջ 75)։

184 Սեբեոս, էջ 49։

185 Արիստ. Լաստ., էջ 41։

գրական շարժումը գլխավորելու ընդունակ մարդկանց վտանգը։ Շատ խոսուն է Կոստանդին Մոնոմախի գործունեությունը Չորրորդ Հայքում, որտեղ նա ձերբակալել է տալիս, սպանում կամ կղզիները աքսորում ապստամբություն նախապատրաստող Պաղինի իշխաններին[186]։

Բյուզանդիան առաջին հերթին ուզում էր գլխատել հայ ժողովրդի ռազմական ավագանուն, քանզի նա էր իր հնարավոր հակառակորդը։

9. Բյուզանդիայի ռազմական քաղաքականությունը Հայաստանում: Կայսրությունը թեև դեմ էր հայկական ավագանու գոյությանը Հայաստանում, այդուհանդերձ դեմ չէր հայկական ռազմական ուժերի գոյությանը, քանզի այդ զորքերն իրեն միշտ էլ պետք էին։ Գրավելով Հայաստանի այս կամ այն նահանգը, Բյուզանդիան լուծարքի չէր ենթարկում տեղի զինական ուժերը։ Տարոնը կայսրության կցվեց 966 թ., բայց մի քանի տարի անց Հովհաննես Չմշկիկի ժամանակ, հիշվում է Բուլղարիայում ռուսների դեմ պատերազմող հայոց հետևակը[187]։ Ասողիկը հայոց 425 (976) թ. տակ հիշում է «զհեծելազունդ զօրն Հայոց, որ ընդ Յունաց թագաւորութեամբն»[188]։ 1000 թ. նա խոսում է Չորրորդ Հայքի և Տարոնի զորքերի մասին[189]։ Դավիթ կուրապաղատը իր կտակում Վասիլ II-ին էր թողել բացի իր երկրից, նաև իր «ազատագունդը»[190]։ Հայկական զորքեր կային Սասունում։ Նրանք բավական նեղություն պատճառեցին Չմշկիկի հոռոմ զորքերին[191]։

Հայկական զորքերի մասին հիշատակություն ունի Մատթեոս Ուռհայեցին Միքայել V-ի օրոք, հետևյալ պարզաբանությամբ. «որք ընդ Հոռոմոց իշխանութեամբն էին՝ Սեբաստիա և Տարօն և ամենայն Վասպուրական»[192]։ Զորքեր ուներ հայ իշխան Գանձին՝ Բերկրիի համար մղվող պատերազմի ժամանակ[193]։ «Հայոց աշխարհի» զորքեր են հիշվում Կոստանդին Մոնոմախի ժամանակ[194], որոնց մի մասը, անկասկած, Շիրակի Բագրատունիների վերացած թագավորության զինյալ ուժերն էին։

Մենք որոշ գաղափար ունենք նաև հայկական զինուժի քանակի մասին։ Հովհաննես Չմշկիկի դեմ Աշոտ III Ողորմածը դուրս հանեց

186 Մատթ. Ուռհ., էջ 110—112։
187 Ասողիկ, էջ 184։
188 Նույն տեղում, էջ 191։
189 Նույն տեղում, էջ 276։
190 Նույն տեղում, էջ 275։
191 Մատթ. Ուռհ. էջ 18։
192 Նույն տեղում, էջ 88։
193 Նույն տեղում, էջ 75։
194 Նույն տեղում, էջ 93, 98։

ողջ Հայաստանից գումարված ութսուն հազար հոգի[195]։ Երբ 983 թ. Ատրպատականի ամիրա Մամլանը հարձակվեց Տայքի կուրապաղատ Դավթի վրա, վերջինս նրա դեմ հանեց «հետևակս աղեղնաւորս երեք հազար, և ձիաւորս երկու հազար և հինգ հարիւր»[196]։ Դավիթը հենց այս զորքերը կտակեց Վասիլ II-ին։ 989 թ. հայոց սպարապետը զորաժողով արեց «զՄարզպետական գունդն քառասուն և հինգ հազար արանց քաջաց, զատ ի յարքունական գնդէն»[197]։ Գագիկ I-ի թագադրման հանդեսներին մասնակցեցին հայոց թագավորության «հարիւր հազարաց վառելոց ընտիր արանց ի մարտ պատերազմաց անուանեաց և քաջ կոռովեաց»[198]։ 1020 թ. հայոց թագավոր Հովհաննես-Սմբատն իր եղբոր Աշոտի վրա արշավեց քառասուն հազարանոց հետևակով և քսան հազարանոց հեծելազորով[199]։ Աշոտն էլ ուներ իր զորքերը, որոնց քանակը հայտնի չէ։ Մենք չգիտենք նաև Վասպուրականի թագավորության (հետագայում՝ կատապանության) զինուժի քանակի մասին։ Բյուզանդացիների՝ Անիի վրա կատարած երկրորդ հարձակման ժամանակ՝ XI դ. 40-ական թվականների սկզբին, սպարապետ Վահրամ Պահլավունին դուրս հանեց «մնացեալք զօրքն Հայոց»՝ «արք երեսուն հազար հետևակք և ձիաւորք»[200]։

Ինչպես տեսնում ենք, հայկական զորքեր կային Հայաստանի՝ Բյուզանդիայի կողմից նվաճված բոլոր նահանգներում, որոնց հաշվի չառնել կայսրությունը չէր կարող։ Նա ջանում էր դրանք փոշիացնել, չթողնել Հայաստանում, մշտապես ուղարկում էր պատերազմական տարբեր ճակատներ՝ ընդդեմ թշնամիների։ Մենք հայկական զորքերի ենք հանդիպում Բուլղարիայում՝ Ջմշկիկի ժամանակ[201], նրանց մենք տեսնում ենք այնտեղ 986 թ. Վասիլ II-ի բանակում[202], 994 թ. Անտիոքի շրջանում՝ եգիպտացիների դեմ պատերազմելիս[203] և այլն։

Բայց, հարկավ, հայոց ողջ զինուժը երկրից հեռացնել հնարավոր չէր։ Եվ ահա հանկարծ կատարվում է անսպասելին, հրապարակվում է Կոստանդին Մոնոմախի հրովարտակը տեղական զորքերի լուծարքի վերաբերյալ։ Միքայել Ատտալիատեսը, գրելով սելջուկ-թուրքերի Հայաս-

195 Մատթ. Ուռհ., էջ 17։
196 Նույն տեղում, էջ 36։
197 Նույն տեղում, էջ 3։
198 Նույն տեղում, էջ 4։
199 Նույն տեղում, էջ 8։
200 Նույն տեղում, էջ 85։
201 Ասողիկ, էջ 184։
202 Նույն տեղում, էջ 245։
203 Նույն տեղում, էջ 262։

*տանում տարած դյուրին հաղթանակների մասին, այդ բանում մեղավոր է համարում Կոստանդին Մոնոմախին։ Ունենալով ռազմունակ «իբերական»[204] զորք, գրում է նա, որն իր «կերակուրն» (ὀψόνιον) ստանում էր մերձակա գյուղերից, կայսրը զրկեց զորքը այդ «կերակրից», որով ոչ միայն կորցրեց իր դաշնակիցներին, այլև նրանց իր թշնամիների վերածեց[205]։ Ավելի պարզ ու հստակ է գրում Հովհաննես Սկիլիցեսը։ Կոստանդին Մոնոմախը, գրում է նա, «Լևոն Սերվլիասի միջոցով լուծարքի ենթարկեց շուրջ հիսուն հազարի հասնող իբերական զորքը, և զինվորների փոխարեն այդ վայրերից բազում հարկեր էր հավաքում»[206]։*

*Կոստանդին Մոնոմախի ռազմական ռեֆորմը տարածվում էր ոչ միայն «Հայաստանի և Իբերիայի» բանակաթեմի վրա, այլև Միջագետք բանակաթեմի, որի մեջ էին մտնում նաև Չորրորդ Հայքն ու Բարձր Հայքը։ Կեկավմենոսը, խոսելով նույն Սերվլիասի մասին, նշում է, որ կայսեր հրամանով նա գնաց Իբերիա և Մեսոպոտամիա (Միջագետք բանակաթեմը), որպեսզի աշխարհագիր անցկացնի և հարկեր նշանակի, որոնց տեղի բնակիչներն իրենց օրում չէին տեսել։*

*Այսպիսով, ինչպես տեսնում ենք, Մոնոմախի օրենքի էությունը կայսրության ենթակա տեղական զորքերի լուծարքն էր։ Ի՞նչն էր դրա պատճառը։ Եթե հավատանք բյուզանդական աղբյուրներին, ապա դրա պատճառը կայսեր ագահությունն էր ու շռայլությունը, դրամ կորզելու ու խնայելու նրա մարմաջը[207]։ Այդպես է դատում նաև Արիստակես Լաստիվերցին, «զգանձս, զոր ի հարկաց ամենայն աշխարհաց ժողովէր,— գրում է նա,— զոր պարտ էր ի պէտս հեծելոց բաշխել և բազմացուցանել հեծելազօրս ընդդէմ թշնամեաց՝ որ զաշխարհս ի խաղաղութեան կարէին պահել յաղթելով թշնամեացն... ի բոզից ծախսն վճարէր...»[208]։*

*Բայց այդպե՞ս էր արդյոք իրականում։ Եթե ուշադիր կարդանք հայկական աղբյուրները, ապա կարելի է գալ միանգամայն այլ եզրակացության, համոզվել, որ Բյուզանդական կայսրությունը XI դ. կեսերին այդ քայլին դիմելու լուրջ շարժառիթներ ուներ։*

---

204 *Ենթադրվում է «Հայաստանի և Իբերիայի» բանակաթեմի զինուժը։ Է. Հոնիգմանը «իբերական» զորքը համարում է զուտ հայկական։ Տե՛ս* *Honigmann*, Die Ostgrenze, S. 178.

205 *Mich. Attal., p. 44—45.*

206 *Տե՛ս ստորև, էջ 180։*

207 *Mich. Attal.*, p. 44.

208 Արիստ. Լաստ., *էջ 95։*

*Հայկական զինված ուժերը Բյուզանդիայի համար երկսայրի սուր էին։ Նրանք, ճիշտ է, օգուտ էին տալիս, բայց և գլխացավանք պատճառում։ Նիկեփոր II Փոկասին վերագրվող* «De velitatione bellica» *երկում խոսվում է հայ սահմանապահ զորքերի անհուսալիության մասին*[209]*։ Սասունցիների հետևակազորը Տարոնում, Այծյաց բերդի մոտ մեծ վնաս հասցրեց Հովհաննես Ջմշկիկի զորքերին*[210]*։ Տարոնի նվաճումից անցել էր ընդամենը տասը տարի, երբ 976 թ. մենք տեսնում ենք, որ հայոց զորքը հենց Տարոնի իշխաններ Գրիգորի ու Բագարատի գլխավորությամբ «ահաբեկ արարեալ զզօրսն Յունաց՝ զօրէն փոթորկեալ մրրկի չփոթէին, զյոլովս սրախողխող արարեալ և զբազումս ձերբակալ»*[211]*։ Մի փոքր անց, 990 թ. հայերը միանում են կենտրոնական կառավարության դեմ ապստամբած Վարդաս Փոկասին*[212]*։ 1000 թ. Դավիթ կուրապաղատի զորքերը մարտ տվեցին Տայքը գրավող բյուզանդական զորքերին*[213]*։*

*Շուրջ 1040 թ. Բյուզանդիայի դեմ ապստամբություն նախապատրաստեցին Սենեքերիմ Արծրունու որդիներ Ատոմն ու Ապուսահլը Սեբաստիայում։ Միքայել կայսրը նրանց դեմ ուղարկեց ակոլութոսին՝ տասնհինգ հազարանոց վարձկան բանակով, ձերբակալեց ապստամբների ղեկավարներին և Կոստանդնուպոլիս բերեց*[214]*։ Եթե ծրագրված ապստամբությունը կանխելու համար անհրաժեշտ է լինում տասնհինգ հազարանոց բանակ ուղարկել, պիտի ենթադրել, որ ապստամբները զգալի զինուժ էին ոտքի հանել։ 1051 թ. Կոստանդին Մոնոմախի դեմ ապստամբություն բարձրացրեց Բալահովիտը Չորրորդ Հայքում։ Ապստամբների դեմ ուղարկված կատապան Պեռոսը ձերբակալեց ապստամբների պարագլուխներին՝ իշխան Աբելի որդիներ Հարպիկին, Դավթին, Լևոնին և Կոստանդնին, առաջինին գլխատեց, մյուսներին աքսոր ուղարկեց*[215]*։*

*Շիրակի նվաճումից հետո Բյուզանդական կայսրությունը հայոց կաթողիկոս Պետրոսին պատվավոր աքսորի մեջ էր պահում Կոստանդնուպոլսում, նրան չէր թողնում Հայաստան վերադառնալ, քանզի վախենում էր, որ նա «երթեալ ապստամբեցուցանէ զԱնի»*[216]*։*

---

209 Կոստանդին Ծիրանածին, *էջ 202։*
210 Մատթ. Ուռհ., *էջ 18։*
211 Ասողիկ, *էջ 191։*
212 *Նույն տեղում, էջ 251։*
213 *Նույն տեղում, էջ 277։*
214 Մատթ. Ուռհ., *էջ 83։*
215 *Նույն տեղում, էջ 109—112։*
216 Արիստ. Լաստ., *էջ 82։*

Ասվածից պարզ է դառնում Կոստանդին Մոնոմախի ռեֆորմի իմաստը։ Նա պարզապես կես հազարամյակ անց կրկնում էր Զենոն և Հուստինիանոս I կայսրերի ռեֆորմները։ Բյուզանդական Չորրորդ Հայքը, որ գտնվում էր կայսրության կազմում, կառավարվում էր հայ նախարար-սատրապների կողմից, որոնք ունեին իրենց սեփական զինուժը։ Նրանք պատերազմական գործերում ինքնուրույն ու անկախ էին։ Այն պատճառով, որ Չորրորդ Հայքի նախարարները մասնակից դարձան Զենոնի դեմ բարձրացված Իլլոսի և Լեոնտիոսի ապստամբությանը, կայսեր կողմից զրկվեցին սեփական զինված ուժեր ունենալու իրավունքից։ Վերջնական հարվածը հասցրեց Հուստինիանոս I-ը։ Նա վերջ տվեց սատրապների իշխանությանը Չորրորդ Հայքում, տեղում դուքսերի նշանակեց և հաստատեց զուտ բյուզանդական կայազորներ[217]։

Այսպիսով, Մոնոմախի ռեֆորմի նպատակը Հայաստանում հնարավոր ապստամբությունների առաջն առնելն էր, բյուզանդական վարչության գործը հեշտացնելը։ Ինչ խոսք, դիմելով նման քայլի, կայսրությունը ելնում էր այդօրվա կամ ծայրահեղ դեպքում՝ վաղվա շահերից, բայց ոչ ավելի կամ պակաս հեռավոր ապագայի, և նման քաղաքականությունը ճակատագրական դարձավ ոչ միայն Հայաստանի, այլև իր իսկ Բյուզանդիայի համար։ Միայն հայ զորքերը կարող էին շահագրգռված լինել Հայաստանի պաշտպանությամբ, և ոչ օտար վարձկանները, որոնց կայսրությունը հաստատում էր Հայաստանի տարբեր շրջաններում։ Հանուն ինչի՞, օրինակ, պետք է իրենց կյանքը զոհեին բուլղարները Վասպուրականում[218], ռուսները՝ Տայքում[219], վարյագները՝ Բաբերդում[220], կամ ուզերն ու պածինակները՝ Մանազկերտում[221]։ Եվ պատահական չէ, որ Մատթեոս Ուռհայեցին բյուզանդական զորքերը Հայաստանում որակում է որպես «սուտ պահապաններ»[222]։ Շատ խոսուն է Մանազկերտի դեպքը։ «Առ ի չգոյէ պահապանաց քաղաքին,— գրում է Ուռհայեցին,— յաւուր միում առաւ քաղաքն Մանծկերտ, վասն զի փախեան Հոռոմոց պահապանքն»[223]։

Ավելորդ չէ ասել, որ վերացնելով հայկական կանոնավոր զորամասերը Հայաստանում, կայսրությունը, երբ դա անհրաժեշտ էր, շա-

217 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 191։

218 Տե՛ս ստորև, էջ 84․ Համտ. Արիստ. Լաստ., էջ 25։

219 Ասողիկ, էջ 277։

220 Արիստ. Լաստ., էջ 88։

221 Մատթ. Ուռհ., էջ 201—202։

222 Նույն տեղում, էջ 135։

223 Նույն տեղում, էջ 194։

րունակում էր զորահավաք կատարել։ Կոստանդին Դուկաս կայսրն, օրինակ, երբ Արևմուտքում ուզերի դեմ պատերազմ սկսեց, Հայաստանում զորահավաք հայտարարեց[224]։ Նույն բանը կատարեցին Մանազկերտի ճակատամարտի նախօրեին Ռոմանոս IV Դիոգենեսը[225], Ալեքսիոս I Կոմնենոսը՝ երբ պածինակների դեմ պատերազմ սկսեց[226]։

Թե ի՞նչ հետևանքներ ունեցավ բյուզանդացիների ռազմական այս քաղաքականությունը Հայաստանում, կարելի է ցույց տալ մի երկու օրինակով։ «Յայսմ ամի (1041),— գրում է Մատթեոս Ուռհայեցին,— զօրաժողով արար թագաւորն Հոռոմոց Միխայլն զամենայն աշխարհն Յունաց և այլ ի Հայոց զօրացն, որք ընդ Հոռոմոց իշխանութեամբն էին՝ Սեբաստիա և Տարօն և ամենայն Վասպուրական. և անթիւ բազմութեամբ հասանէր թագաւորն Միխայլ յարևմուտք...»[227]։

Վասպուրականի հայկական զորքերը տարվում են Արևմուտք։ Եվ հենց նույն տարին «ժողովեցան Հեր և Սամուսատ և ասպատակ արարին զԹոռնեան գաւառն» Վասպուրականում[228]։ Իշխան Խաչիկը, որ «էր այր քաջ և յաղթող (ի) պատերազմօղ, յազգէ ի վերոյն յառիծ ջոկէ. բայց ծերացեալ էր և թողեալ զգործ պատերազմին և հառաչելով ապաշաւէր, fանզի ււազ որդին նորա fաջն Հասան և Ճնճղուկն հանդերձ զօրօfն ի յարևմուտfն էին զհետ թագաւորին Միխայլի»[229]։ Թե ի՞նչ տեղի ունեցավ, հանրահայտ է։ Ծերունի Խաչիկը և իր տասնհինգամյա որդին՝ Իշխանը սպանվում են պատերազմում, գավառը թալանվում, ավերակ է դառնում։

Բյուզանդական կատապան Պետրոսը 1051 թ. ձերբակալում է Չորրորդ Հայքի Պաղին գավառի իշխաններին, եղբայրներ Հարպիկին, Դավթին, Լևոնին և Կոստանդնին, առաջինին գլխատում է, մյուսներին աքսոր ուղարկում[230]։ Հետևանքը. թուրքական բանակները գալիս են «ի գաւառն, որ կոչի Պաղին, և սրով սրտմտութեամբ հեղաւ բազում արիւն ի հաւատացելոցն, և գերեցաւ ամենայն գաւառն Պաղնայ»[231]։

Ստեղծված դրության փայլուն բնութագիրը տվել է Մատթեոս Ուռհայեցին. «Ո՞վ կարասցէ մի ըստ միոջէ պատմել զկորուստ բարկու-

---

224 Մատթ. Ուռհ.. էջ 151։
225 Նույն տեղում, էջ 198։
226 Նույն տեղում, էր 238։
227 Նույն տեղում, էջ 88։
228 Նույն տեղում, էջ 90։
229 Նույն տեղում, էջ 90։
230 Նույն տեղում, էջ 110—112։
231 Նույն տեղում, էջ 138։

*թեանն և զլաց ապաշաւանաց տանս Հայոց, զոր յանօրէն և յարեանարբու գազանացն զօրացն Թուրքաց կրեաց* յանտիրութենէ, և սուտ պահապանացն, *ի տկար և ի թուլամորթ վատ ազգին Յունաց. վասն զի մի առ մի քակեալ հանին զքաջ զզօրականսն ի տանէն Հայոց, զորս հանին յարկաց և ի գաւառաց և բարձեալ խափանեցին զաթոռ թագաւորութեանն Հայոց.* փակեցին զցանկ պահպանութեանն զօրաց և զօրավարաց. *և ազգն Հոռոմոց իւրեանց անուն քաջութեան զանդարձ փախչելն արարին պարծանք. Նմանեցան վատ հովուացն, որ յորժամ զգայլն տեսանէ՝ փախչի։ Սակայն Հոռոմք յայն ջանս ջանացան, որ լուր* զպարիսպ ամրութեան *տանս Հայոց քակեալ կործանեցին և զՊարսիկք (իմա՝ Թուրքերին) ի վերայ արձակեցին սրով... մինչ և Պարսիկք անտէր տեսին զամենայն արևելք...»*[232]*։ Եվ այնուհետև. «արեանարբու և գազանացեալ ազգն Թուրքաց տարածեցաւ ընդ ամենայն երեսս երկրի, որ ոչ մնաց գաւառ ի խաղաղութեան, այլ կայր մատնեալ ամենայն տունն քրիստոնէից ի սուր և ի գերութիւն. և արգելաւ վաստակ հողագործութեան յերկրէ, և հատաւ կերակուր հացի, և սրով և գերութեամբ հատան մշակք և վաստակաւորք, և առ հասարակ տարածեցաւ (սով) ընդ ամենայն աշխարհս։ Եւ անմարդ եղեն բազում գաւառք, և քակեցաւ տունն արևելից, և եղև աւերակ աշխարհն Հոռոմոց...»*[233]*։*

*10.* Բյուզանդիայի կրոնական քաղաքականությունը Հայաստանում: *Քաղկեդոնի ժողովը (451) բյուզանդական ու հայկական եկեղեցիների, հայերի ու հույների միջև ստեղծեց այնպիսի մի անջրպետ, որ հնարավոր չեղավ վերացնել Բյուզանդիայի ամբողջ գոյության ընթացքում։ Հենց V դարից սկսել էին միաբնակ-երկաբնակ դավանաբանական վեճերը, որոնք պատճառ դարձան երկու հարևան երկրների ու ժողովուրդների փոխադարձ անհանդուրժողության ու հակամարտության։ Հասկանալի է, այդ վեճերը կրոնական քողով քողարկված քաղաքական ու մշակութային ավելի խոր արմատներ ունեին։ IX դարից սկսած, երբ Բյուզանդական կայսրության համար Հայաստանի նվաճումը մտավ օրակարգի մեջ, բնականաբար լույս աշխարհ եկավ հիշյալ հարցը։ Բյուզանդիան քաղկեդոնական էր, Հայաստանը՝ միաբնակ։ Այս հանգամանքը չէր կարող դժվարությունների առջև չկանգնեցնել կայսրությանը, որը որոշել էր երկար ժամանակով հաստատվել այդտեղ։ Քանի որ Բյուզանդիան մտադիր չէր միաբնակություն ընդունել, իսկ*

232 *Նույն տեղում, էջ 135—136։*

233 *Նույն տեղում, էջ 217։*

միջին գիծն էլ իր համար ցանկալի չէր, մնում էր ամեն ջանք թափել հայ ժողովրդին քաղկեդոնական դարձնելու։ Եվ կայսրությունը հենց այդ ուղղությամբ էլ սկսեց գործել։ Հարցը արտաքուստ կրոնական էր, հետևաբար գործը գլխավորեցին Բյուզանդիայի հոգևոր պետերը։ Դեռևս Փոտ պատրիարքը այդ ուղղությամբ լուրջ աշխատանք էր տարել։ Պահպանվել է 862 թ. իշխան Աշոտին գրած նրա մի նամակը, որից իմանում ենք Չորրորդ Հայքում և Տարոնում «ուղղափառություն» (իմա՝ քաղկեդոնականություն) ընդունած հայերի մասին (καὶ τῶν Ἀρμενίων τοὺς ὀρθοδοξήσαντας δευτέρα πάλιν σταλεῖσα ἐπιστολή, τοὺς κατοικοῦντας τὴν Τετάρτην Ἀρμενίαν Ταρρωνίτας), որոնց Փոտը երկու նամակ է ուղարկել[234]։ Փոտր մի շարք նամակներ էլ ունի գրած նույն հայոց իշխանաց իշխան Աշոտին և կաթողիկոս Զաքարիային, դարձյալ դավանաբանական բնույթի[235]։

Փոտի սկսած գործը մեծ եռանդով շարունակեց Կոստանդնուպոլսի պատրիարք Նիկողայոս Միստիկոսը, որ մի քանի նամակներ է ուղարկել հայոց թագավոր Սմբատին և կաթողիկոս Հովհաննես Դրասխանակերտցուն[236]։ Այդ նամակների հունարեն բնագրերը պահպանվել են, իսկ ինքը կաթողիկոսն իր պատմական երկում հիշում է դրանց մասին[237]։ Ռոմանոս I Լակապենոս կայսեր օրոք Բյուզանդիան աշխույժ նամակագրություն ուներ անգամ հեռավոր Սյունիքի հոգևոր պետերի հետ, հավանաբար, տեղում հենարան ստեղծելու մտահոգությամբ՝ ընդդեմ

---

[234] *Darrouzès*, Deux lettres, p. 147.

[235] *Տե՛ս «Գիրք թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 279—294։ Նաև՝* «Православный Палестинский Сборник», вып. 31, СПб., 1892, стр. 179—226. *«Թուղթ Փոտայ պատրիարքի առ Զաքարիա կաթողիկոս Հայոց Մեծաց վասն երկու միաւորեալ բնութեանցն մի անձնաւորութիւն գոլով Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի և վասն ճշմարտախոհութեան ժողովոյ սուրբ հարցն որ ի Քաղկեդոն»։ Հրտ. Ն.* Ակինյան, *Հանդէս ամսօրեայ, 1968, № 1—3, սյունակ 61—100։ «Պատճէն թղթոյն Մեծի հայրապետին Կոստանդնուպոլսի Փոտայ առ Աշոտ իշխանաց իշխան»։ Հրտ. Ն.* Ակինյան, *Հանդէս ամսօրեայ, 1968, № 10—12, սյունակ 439—450։ «Պատասխանի թղթոյն Փոտայ դրեալ Աշոտայ իշխանաց իշխանի Հայոց»։ Հրտ. Ն.* Ակինյան. *Հանդես ամսօրեայ, 1968 № 10—12, սյունակ 451—472։*

[236] **Հ. Մ. Բարթիկյան,** *Կոստանդնուպոլսի պատրիարք Նիկողայոս Միստիկոսի 101-րդ և 139-րդ թղթերը՝ ուղղված Հովհաննես Դրասխանակերտցուն և Սմբատ Ա Թագավորին։ Պատմա-բանասիրական հանդես, 1966, № 4, էջ 251—256։ Նաև* *Каждан-Бартикян*, Рец. на Ник., стр. 277—279.

[237] Հովհաննես Դրասխանակերտցի, *էջ 280—282։*

Բագրատունիների։ Պահպանվել է հիշյալ կայսեր կարգադրությամբ Սյունիքի հայոց եպիսկոպոսին գրված թուղթը (ցարդ անտիպ)[238]։

Կայսրությունը Սյունիքում որոշ հաջողությունների հասավ, և անգամ Սյունիքի 9-րդ՝ Բաղաց գավառից կաթողիկոս դարձած Վահան Սյունեցին (968—969) «ընդ քաղկեդոնականս սիրելութիւն և հաճութիւն կամեցաւ առնել թղթովք»[239]։ Երբ Անիում նրա դեմ եկեղեցական ժողով գումարեցին, Վահանը փախավ Վասպուրական, որտեղ էլ հավանաբար քաղկեդոնականների կողմնակիցներ կային[240]։

Հաճախակի դարձան հայ և հույն վարդապետների դավանաբանական վեճերը, որոնք, որպես կանոն, տեղի էին ունենում հենց Բյուզանդական կայսրության մայրաքաղաքում և որոնց մասնակցություն էին ցուցաբերում նաև աշխարհիկ տերերը։ Դեոևս Հովհաննես Չմշկիկ կայսեր օրոք Կոստանդնուպոլիս գնաց «և խօսեցաւ վարդապետն Հայոց (Պանգալևոն) առաջի թագաւորին ընդ ամենայն իմաստասիրացն Հոռոմոց»[241]։ Վասիլ II-ի թագավորության վերջին տարիներին կայսեր հրավերով Կոստանդնուպոլիս գնաց վարդապետ Սամուել Կամրջաձորեցին, նրան Վասիլ II-ը «կացուցանէր... յատենի խօսել ընդ վարդապետացն Յունաց»[242]։ Նման բանավեճեր ունեցան Կոստանդնուպոլսում Հակոբ Սանահնեցին կամ Քարաբնեցին[243], Գագիկ II Բագրատունին[244], Գագիկ Աբասյանը[245], Գրիգոր Մագիստրոսը[246], Բագրևանդի իշխան Ատրներսեհը[247] և ուրիշներ։ Աշխույժ էր նաև դավանաբանական բնույթի նամակագրությունը[248]։

Միջնադարում կրոնական հարցը շատ փափուկ հարց էր, նամանավանդ, որ միաբնակների և երկաբնակների հակամարտությունը շատ էր սուր։ Հայերը հույներին հերետիկոս էին համարում («աստուածուրաց և նենգաւոր ազգն հերետիկոսացն»)[249]։ Անանիա Նարեկացին նույնիսկ հրաման էր արձակել «ղքաղկեդանական մկրտեալսն կրկին անգամ

---

[238] *Darrouzès*, Un recueil épistolaire, p. 115.
[239] Ասողիկ, էջ 181։
[240] Նույն տեղում, էջ 182։
[241] Մատթ. Ուռհ., էջ 28։
[242] Նույն տեղում, էջ 44։
[243] Նույն տեղում, էջ 161, 227։
[244] Նույն տեղում, էջ 163—178։
[245] Նույն տեղում, էջ 183։
[246] Նույն տեղում։
[247] Նույն տեղում։
[248] Նույն տեղում, էջ 39, 44։
[249] Նույն տեղում, էջ 96։

...մկրտել»[250]։ Բյուզանդացիների համար էլ հերետիկոս էին հայերը («Իբերիայում, Միջագետքում, մինչև Լիկանդոս ու Մելիտենե և կից Հայաստանում ապրող հերետիկոս բնակիչները»)[251]։ Ինչպես գրում է հայոց Խաչիկ կաթողիկոսը (973—992) Սեբաստիայի մետրոպոլիտին ուղղած թղթում, «ի սկիզբն թղթոյս ձերոյ և զկնի բազում անգամ՝ եռետիկոս զմեզ յեղանակեալ էիք»[252]։ Ռոմանոս III կայսրը, տեսնելով Սև լեռան հայադավան վանականներին, հարց տվեց. «Զի՞նչ են այն բազմութիւն հերետիկոսացն»[253]։

Փոխադարձ անհանդուրժողականությունն այն աստիճան էր խորացել, որ Խլաթը պաշարող Դավիթ կուրապաղատի քաղկեդոնիկ զինվորները հայոց եկեղեցին գոմի էին վերածել և հարևան արաբներին առանց քաշվելու ասում էին, թե «մեք զհայ եկեղեցին և զձեր մզկիթն միապէս ընդունիմք»[254]։ Դեռ ավելին, Կեսարիայի հույն մետրոպոլիտ Մարկոսը «ամենայն շան Արմէն (իմա՝ հայ) կոչէր»[255]։ Նման պայմաններում Հայաստանը նվաճել ծրագրած կայսրության գործը բավականին դժվարանում էր, նա ստիպված էր հայերի հանդեպ ճկուն քաղաքականություն վարել։ Բայց ոչ բոլոր կայսրերն էին գիտակցում այդ բանը։ Համեմատաբար ճկուն քաղաքականություն էր վարում Վասիլ II-ը։ Հայկական աղբյուրներում նրա անձնավորությանը տրված դրական գնահատականը հենց այդ մասին է վկայում։ «Մեծ թագաւորն Հոռոմոց, Վասիլն,—գրում է Պողոս Տարոնացին,—զայգ ամենայն քննութիւնդ վասն հաւատոյ ոչ է արարեալ ընդ Հայս»[256]։ Իսկ ըստ Արիստակես Լաստիվերցու, Վասիլ II-ը և նրան նախորդող կայսրերը «խնամակալութիւն ցուցին առ ազգս՝ զորս ընդ ձեռամբ ունէին»[257]։ Իհարկե, դա չի նշանակում, որ հիշյալ կայսեր օրոք Բյուզանդիան հայադավաններին չէր հալածում։ Վասիլ II-ի թագավորության սկզբնական շրջանում, դեռ 979 թ. բյուզանգացիներն «արգելին զժամաձայն Հայոց ի քաղաքէն Սեբաստիոյ»[258], իսկ 986 թ. «կանացի հովիւքն և մետրապօլիտն Սեբաստիոյ սկսան նեղել զազգն Հայոց վասն հաւատոյ. և զբռնութիւն ի ձեռն ա-

250 Ասողիկ. էջ 178։
251 Տե՛ս ստորև, էջ 233։
252 Ասողիկ. էջ 203։
253 Արիստ. Լաստ., էջ 43։
254 Ասողիկ. էջ 268։
255 Մատթ. Ուռհ., էջ 180։
256 Պողոս Տարոնացի. էջ 273։
257 Արիստ. Լաստ., էջ 43։
258 Ասողիկ. էջ 202։

*ռեալ՝ սկսան տանջել զքահանայս վասն հաւատոյ, և ղգլխաւոր քահանայս Սեբաստիոյ քաղաքին երկաթեղէն կապանօք հասուցանէր ի դուռն թագաւորին։ Եւ ի բանտի չարչարեալ զաւագն երիցանց զԳաբրիէլ սպանին...»*[259]։

*Ինքնըստինքյան հասկանալի է, որ վիճակը այդպիսին էր ոչ միայն Սեբաստիայում, այլև հայաբնակ ուրիշ վայրերում։*

*Վասիլ II-ի և, անկասկած, նրան նախորդած ու հաջորդած կայսրերի օրոք, քաղկեդոնականություն ընդունող հայն օրենքի առջև առավելություններ ուներ միաբնակ հայի համեմատությամբ։ Թոնդրակեցի Վրվերը դատաստանից խուսափելու համար «Հոռոմ խոստանայ լինել...»*[260]*։ Այս հանգամանքը, ինչպես նաև բռնությունները, կայսրության համար շոշափելի արդյունք տալիս էին։ Օրինակ, կրոնական հալածանքների պատճառով Սեբաստիայի և Լառիսայի հայ եպիսկոպոսներ Սիոնն ու Հովհաննեսը «ի ձեռն նոյն մետրապօլտին ընկալան զժողովն Քաղկեդոնի, ի բաց կալով ի միաւորութենէն Հայոց»*[261]*։ Ավելի ուշ Հակոբոս Սանահնեցին Կոստանդնուպոլսում «սակաւ մի վասն երկբնութեանն Քրիստոսի ի կողմն Հոռոմոց դարձաւ... գրեաց գիր միաբանութեան Հայոց և Հոռոմոց»*[262]*։*

*Նման պայմաններում Հայաստանում սկսեցին սնկի նման աճել քաղկեդոնիկ եպիսկոպոսությունները*[263]*, որոնք հաճախ հանդիսանում էին Բյուզանդիայի օգտին աշխատող կենտրոններ։ Այդ տեսակետից շատ հատկանշական է Վաղարշակերտ քաղաքում հաստատված և Բյուզանդիայի օգտին գործող քաղկեդոնիկ եպիսկոպոսությունը*[264]*, Նա բավականին աշխույժ գործունեություն ծավալեց XI դարի 20-ական թվականների սկզբներին, բյուզանդա-վրացական պատերազմի ժամանակ։ Վաղարշակերտի վրացադավան հայ եպիսկոպոս («վրացի ազգաւ») Զաքարիան ոչ միայն Վասիլ II-ի և վրաց թագավոր Գիորգիի միջև բանագնացի դեր էր խաղում, այլ հօգուտ Վասլի աշխատում խաբել վրաց թագավորին («հաւանական բանիւք պատրեալ զԳէորգի»)*[265]*,*

---

259 Ասողիկ. *էջ 201։*

260 Արիստ. Լաստ., *էջ 132։*

261 Ասողիկ, *էջ 202։*

262 Մատթ. Ուռհ., *էջ 161—162։*

263 *Տե՛ս Honigmann*, Die Ostgrenze, S. 198—210; *Thierry*, Notes, p. 159—173.

264 *Հավանաբար այն ստեղծվել էր VII դ. «Ներսէս Հայոց կաթողիկոս, որ ի Տայոց էր ծննդեամբ, այն որ զՎաղարշակերտոյ սուրբ Աստուածածինն շինեաց»։ Տե՛ս* Հովհան Մամիկոնյան, *էջ 280։*

265 Արիստ. Լաստ., *էջ 36։*

Վասլին տեղյակ պահում վրացական զորքի վիճակի և պատերազմին պատրաստ լինելու մասին. «Զաքարիայն ասէ (Վասիլ II-ին), թէ Բաղում զօրս ունի (Գիորգին) որպէս ոչ այլ ոք, և հզօրս զօրութեամբ և պատրաստ առ ի պատերազմել»[266]։ Պատահական չէ, որ 1000 թ. Վասիլ II-ը Տարոնից Տայք գնալու ճանապարհին «բանակի ի դաշտին մերձ ի քաղաքն Վաղարշակերտ»[267]։ Հենց այստեղից նա գնաց Ուխթիք[268]։

Վասիլ II-ը անգամ կապեր ուներ հեռավոր Անտիոքի շրջանում, Սև լեռան ստորոտում գտնվող քաղկեդոնիկ հայոց վանքի վանահոր հետ[269]։

Վասիլ II-ը կրոնական հարցերում տարբերվում էր մյուս կայսրերից նրանով, որ պետք եղած ժամանակ կարողանում էր սիրաշահել հայերին, ժամանակավորապես դադարեցնել հայադավանների հալածանքները, եթե դա քաղաքականությունն էր պահանջում։ Եթե 979 թ., անգամ 986 թ. Սեբաստիայում հայադավաններն հալածանքի էին ենթարկվում, ընդամենը տասնհինգ տարի անց, երբ օրակարգի հարց դարձավ Տայքի նվաճումը և կայսրին պետք էր սիրաշահել հայերին, այս անգամ նա հայերին «հրամայեաց համարձակ լինել յամենայն գործս հաւատոց և հնչեցուցանել զձայն ժամահարի»[270] Սեբաստիայի հայ եկեղեցիներում։

Վասիլի մահից հետո Բյուզանդիայի կրոնական քաղաքականությունը Հայաստանում էապես փոխվեց։ Ռոմանոս III-ը «ինքնօրէն հրամանաւ կամէր նորաձևս առնել յեկեղեցիս Աստուծոյ»[271]։ Նա անգամ զինվորագրեց Սև լեռան հայադավան վանքերի միաբաններին[272]։ Դրությունը է՛լ ավելի վատթարացավ Հայաստանի նվաճումից հետո, երբ արդեն հայերին սիրաշահելու որևէ ձգտում չկար. «յորժամ առաւ Հայք ի Յունաց,—գրում է Մատթեոս Ուռհայեցին,— արգելաւ ամենայն չարութիւնն Հոռոմոց յազգէն Հայոց. և զկնի այսորիկ հնարեցան այլ կերպիւ պատերազմ յարուցանել ընդ ազգն Հայոց. Նստան ի քննութիւն հաւատոյ և այսու ատեալ զհանդէս պատերազմին, զմարտի և զկռիւս և զաղմուկ յեկեղեցի Աստուծոյ կարգեալ հաստատեցին։ Ի Պարսից

266 Արիստ. Լաստ., էջ 36։

267 Ասողիկ, էջ 277։

268 Նույն տեղում, էջ 278։

269 Մատթ. Ուռհ., էջ 50։

270 Ասողիկ, էջ 276։

271 Արիստ. Լաստ., էջ 43։

272 Նույն տեղում։

*պատերազմէն յօժարութեամբ փախչին և զամենայն ճշմարիտ հաւատացեալքս Քրիստոսի ի հաւատոյն ջանային խափանել և խախտել...»*[273]։

*Եթե մինչև Հայաստանի նվաճումը կայսրությունը հիմնականում գործ ուներ հայազավակների հետ, նվաճումից հետո նա դեմ առ դեմ կանգնեց հայոց կաթողիկոսության։ Հայկական պետականության վերացման պայմաններում հայոց կաթողիկոսությունը հայերին կենտրոնացնող գլխավոր ուժն էր։ Բյուզանդիան չէր կարող այդ հանգամանքը հաշվի չառնել։ Այդ իսկ պատճառով նրա առաջին գործերից մեկն եղավ Անիում հայոց կաթողիկոսությունը վերացնելը։ Եթե 1045 թ. Անիի գրավումից անմիջապես հետո «Հայաստանի և Իբերիայի» բանակաթեմի առաջին կառավարիչ Իասիտեսը, գալով իր նոր մայրաքաղաքը՝ Անի «անչափ պատուով մեծարէ զհայրապետն Պետրոս»*[274], *հասկանալի է, վերջինիս բյուզանդասիրական գործունեության համար, ապա նրա անմիջական հաջորդը՝ Կատակալոն Կեկավմենոսը մեկ տարի անց «ոչ ըստ առաջին պատւոյն մեծարէ զհայրապետն»*[275]։ *Դեռ ավելին, Պետրոս կաթողիկոսին, հայոց հոգևոր պետին, հեռացնում են Անիից, նախ ուղարկում Արծն, այնտեղից էլ Կոստանդնուպոլիս, որտեղ երեք (կամ չորս) տարի պահելուց հետո, նրա մշտական բնակության վայր է նշանակվում Սեբաստիա քաղաքը, քանզի բյուզանդական կառավարությունը չէր համարձակվում նրան թողնել վերադառնալու Անի, վախենալով, որ նա «երթեալ ապստամբեցուցանէ զԱնի»*[276]։ *Սեբաստիայում երկու տարի մնալուց հետո Պետրոս կաթողիկոսը վախճանվում է, իսկ նրան հաջորդող Խաչիկ կաթողիկոսին, Պետրոսի քեռորդուն, կայսրը նույն ձևով բերում է Կոստանդնուպոլիս, երեք տարի պահում և ապա թույլատրում գնալ Երկրորդ Հայքի Տարնտա գավառը, «քանզի անգ հրամայեցին նմա տեղի բնակութեան»*[277]։

*Հայոց կաթողիկոսությունն, այսպիսով, Հայաստանում վերանում է, նրա գոյությունը Բյուզանդիայի սահմաններում հայերի համար էական որևէ նշանակություն ունենալ չէր կարող. «Ժառանգ աթոռոյն,—գրում է Արիստակես Լաստիվերցին,— յօտար աշխարհ հեռացեալ իբրև զգերի և զկալանաւոր»*[278]։

---

273 Մատթ. Ուռհ., *էջ 136։*
274 Արիստ. Լաստ., *էջ 63։*
275 *Նույն տեղում։*
276 *Նույն տեղում, էջ 82։*
277 *Նույն տեղում։*
278 *Նույն տեղում, էջ 99։*

Հայ եկեղեցու հզորությունը բխում էր նրա տնտեսական բարգավաճումից։ «Յորժամ էր Տէր Պետրոս յաթոռ հայրապետութեանն և ի Հայաստան աշխարհին,— գրում է Մատթեոս Ուռհայեցին,— ունէր կազմութիւն հայրենեաց՝ տուեալ ի թագաւորացն Հայոց՝ հինգ հարիւր գեղ անուանի և մեծանիստ և շահաւէտ ընտիր ընտիր, նոյնպէս և եպիսկոպոսս հինգ հարիւր փառաւոր և գաւառապետս ի վերայ եօթն հարիւր թիմի հանապազ... և չէր նուաստ աթոռ հայրապետութեանն քան զթագաւորութեանն Հայոց»[279]։ Պատմիչը դրանց հետ միասին հիշատակում է հայ եկեղեցու գանձերի մասին։ Բյուզանդիան, նվաճելով Հայաստանը, զրկեց հայ եկեղեցին իր կալվածներից։ Բայց դա քիչ էր կայսրության համար։ Բյուզանդացիները «արարին... խնդիր բազմութեան գանձուցն ոսկւոյ և արծաթոյ Տեառն Պետրոսի Հայոց կաթուղիկոսի»[280]։ Բյուզանդական կառավարության հաջողվեց Կոստանդնուպոլիս տեղափոխել հայոց կաթողիկոսության գանձերը, որոնք հայտնաբերեցին «թէ անդ (Սեբաստիայում) և թէ ի Հայս»[281]։

Այդ բոլորն անելուց հետո կայսրությունը դիմեց մի այլ քայլի։ Նա փորձեց հայոց կաթողիկոսությունը հարկատու դարձնել. Հոռոմները,— գրում է Արիստակես Լաստիվերցին,— խաչիկ կաթողիկոսին «ընդ հարկիւ կամէին արկանել»[282]։ Խաչիկ կաթողիկոսը վճռականորեն մերժեց դա, ասելով, թե «զոր մինչև յիմ ժամանակն չէ լեալ՝ և՛ ոչ ես հաւանիմ...»[283]։

Հայադավանների հալածանքները բորբոքվեցին նոր թափով հատկապես Կոստանդին Դուկաս կայսեր օրոք (1059—1067)։ Նա «խորհեցաւ խորհուրդ չար և կամեցաւ բառնալ և խափանել զաթոռ հայրապետութեան սրբոյն Գրիգորի ի տանէն Հայոց... յարուցանէր հալածանս և առնէր քննութիւնս պէսպէսս յաղագս հաւատոյ Հայաստանեայց ազգիս»[284]։

Բյուզանդական կայսրության կրոնական քաղաքականությունը Հայաստանում բացասաբար անդրադարձավ ոչ միայն հայերի վրա, այլև հենց իրենց՝ հույների։ Այդ մեկ հարյուրամյակի ընթացքում հայադավանների ու քաղկեդոնականների միջև գոյություն ունեցող վիհն է՛լ ավելի խորացավ ու լայնացավ, Բյուզանդիան չկարողացավ ամուր հե-

279 Մատթ. Ուռհ., էջ 153—154։
280 Նույն տեղում, էջ 137։
281 Արիստ. Լաստ., էջ 82։
282 Նույն տեղում, էջ 83։
283 Նույն տեղում։
284 Մատթ. Ուռհ., էջ 138։ Հմմտ. նաև էջ 160—161։

նարան ստեղծել Հայաստանում, նա այնտեղ զգում էր իրեն որպես օտարական, թշնամական միջավայրում, մի բան, որ չէր կարող ճակատագրական նշանակություն չունենալ թուրքական նվաճումների ժամանակ։

**11. Դիմադրողական պայքար:** Բյուզանդական կայսրության նվաճողական քաղաքականությունը հանդիպում էր հայ ժողովրդի համառ դիմագրության։ Արաբական երկդարյա տիրապետության լուծը հազիվ թոթափած ժողովուրդը չէր ուզում դարձյալ կրել օտարի լուծը, թեկուզ և քրիստոնյայի։ Դեռևս 972 թ., երբ Հովհաննես Չմշկիկը սկսեց իր արշավանքը արաբների դեմ, նա «կամեցաւ զմուտն յաշխարհն Հայոց առնել»[285] այսինքն ուզեց խալիֆայության վրա հարձակվել Հայաստանի վրայով, պարզ է, նպատակ ունենալով Հայաստանից էլ որոշ հողեր նվաճել։ Հայերի համար Տարոնի մասին հուշերը շատ թարմ էին, ընդամենը վեց տարի էր անցել և այդ նոր վտանգի դեմ հայոց իշխանավորները ստիպված էին պատնեշ կազմել[286]։ «Յայնժամ ամենայն թագաւորազունքն Հայոց,— գրում է Մատթեոս Ուռհայեցին,— ազատքն և իշխանքն և ամենայն մեծամեծքն աշխարհաց տանն արևելից ժողով արարին առ թագաւորն Հայոց Աշոտ Բագրատունի. թագաւորն Կապանին Փիլիպպէ և թագաւորն Աղուանից Գուրգէն, Աբաս Կարուց տէրն և Սենեքերիմ Վասպուրականիս տէրն և Գուրգէն Անձևացեաց տէրն և բովանդակ ամենայն տունն Սասանու (իմա՝ Սասունի). և բանակ հարեալ ի Հարքայ գաւառին արք իբրև ութսուն հազար։ Եւ եկեալ հրեշտակ թագաւորին Հոռոմոց առ նոսա և տեսին պատրաստական զամենայն տունն Հայոց ժողովեալ ի մի վայր և երթեալ պատմեցին թագաւորին Չմշկանն...»[287]։ Չմշկիկը չհամարձակվեց պատերազմել հայոց միասնական զինուժի դեմ։ Նա միայն փորձեց գրավել Տարոնի Այծյաց բերդը, բայց անհաջող։ Նրան դիմադրություն ցուցաբերեցին սասունցիք։ Հայերն այդպես միասնական հանդես եկան նաև 993 թ., երբ «ելանէր մեծ տուկն Հոռոմոց և գայր բաղում զօրօք ի վերայ աշխարհին Հայոց»[288]։ Մենք չգիտենք ոչ այգ դուքսի անունը, ոչ նրա ստնձգությունների տարածքը, բայց գիտենք, որ «ի մտանելն նորա յաշխարհն Հայոց, ժողովեցան ընդ յառաջ նորա զօրքն Հայոց ազատացն... եղեն

---

285 Մատթ. Ուռհ., էջ 17։

286 Տարոնը թեև 966 թ. կայսրությունը նվաճել էր, բայց նրա Այծյաց բերդը Աշոտ III-ը պահում էր իր տիրապետության տակ և չէր զիջում Բյուզանդիային։ Մատթ. Ուռհ., էջ 27։

287 Մատթ. Ուռհ., էջ 17—18։

288 Նույն տեղում, էջ 41։

պարտեալք զօրքն Հոռոմոց առաջի զօրացն Հայոց և դարձան ի փախուստ դիմօք յաշխարհն իւրեանց...»[289]։ Սա ցույց է տալիս, որ Չմշկիկի հաջորդ Վասիլ II-ի օրոք էլ կայսրությունը համառորեն շարունակում էր իր փորձերը՝ զենքի ուժով նվաճել Հայաստանը, բայց և այն, որ Աշոտ III-ի հաջորդները ևս, այդ թվում և Գագիկ I-ը կարողանում էին ի մի հավաքել Հայաստանի տարածքի վրա գոյություն ունեցող թագավորությունների և իշխանությունների զինված ուժերը և հաջողությամբ ընդդիմակայել հասարակաց թշնամուն։

993 թ. հարձակումը Հայաստանի վրա կայսրության ձեռնարկած վերջին ճակատային հարձակումն էր, Բյուզանդիան սրանից հետո դիմեց այլ քաղաքականության, հարձակվել թևերով, աշխատել ջլատել հայոց միասնությունը, մեկ-մեկ ջախջախել հայ իշխանություններն ու թագավորությունները, նույնիսկ զենքի չդիմելով, այլ գործի դնելով Հայաստանում գործող իր գործակալներին, չխորշելով անգամ քաղաքական տեռորից։

Հայ ժողովուրդը բյուզանդական վտանգին ընդդիմակայում էր և այլ ձևով՝ բյուզանդական կենտրոնական կառավարության դեմ բռնկվող ապստամբություններում ակտիվ մասնակցություն ցուցաբերելով։ Այդ ձևով նա ոչ միայն դեռևս անկախությունը պահպանած հայ իշխանությունների գոյությունն էր ուզում ապահովել, այլ ազատագրել այն շրջանները, որոնք արդեն դարձել էին կայսրության զոհը։ Տարոնի օրինակը ամենալավ հաստատումն է այդ մտքի։

Վարդաս Սկլերոսը ազգությամբ հայ էր։ Նա 976 թ. ապստամբելով Վասիլ II-ի դեմ, հնարավոր է, նպատակ չուներ հայկական հողերն ազատագրել բյուզանդական լծից։ Նրա նպատակները, հավանաբար, այլ էին։ Բայց մենք իրավունք չունենք նրա կողմն անցած բոլոր հայերին համարել ապստամբներ, որոնց միտքն ու նպատակը Սկլերոսին բյուզանդական թագն ապահովելն էր։ Վերջինիս ապստամբությունը բռնկվեց կայսրության կողմից Կարինի, Տարոնի նվաճումից շատ չանցած։ Ապստամբ Սկլերոսին կայսր հռչակեցին նախ և առաջ հայերը[290] (τῶν 'Αρμενίων καταρξάντων τῆς εὐφημίας)։ Առաջին վայրը, որտեղ Սկլերոսը հաստատվեց՝ հայկական Խարբերդ ամրոցն էր[291] (Χάρπετε)։ Ապստամբի ձեռքում էր գտնվում հայկական Միջագետքի և Չորրորդ Հայքի զգալի մասը՝ Հիսն ալ Н. п. d. г. s-ը, Հովիտը Տարոնից

289 Մատթ. Ուռհ., էջ 41։
290 Տե՛ս ստորև, էջ 56։
291 Նույն տեղում, էջ 57։

Հարավ, Սասնա բերդը, Անգեղտունը, Անձիտը, Թիլ Խումը՝ Արղանայից Հարավ-արևելք և Հանին[292]։ Վարդաս Սկլերոսն իրեն կայսր հռչակեց նախկին Երրորդ Հայքի մայրաքաղաք Մելիտենեում[293]։ Ապստամբների կողմն է անցնում Բյուզանդիայում ծառայող հայկական հեծելազորը[294]։ Սկլերոսին են միանում Մոկքի իշխան Զափրանիկը, ինչպես և Տարոնի իշխանի որդիներ Գրիգորն ու Բագարատը[295], որոնք դրանից տասը տարի առաջ զրկվել էին իրենց տիրույթներից։ Սկլերոսին է միանում բյուզանդական հայազգի զորավար Սահակ-Վահրամը[296]։ Ապստամբները դալիս են Լիկանդոս բանակաթեմը, որը Կոստանդին Ծիրանածինի տվյալներով, հիմնադրվել էր հայերի կողմից և որի բնակչությունը բացարձակապես հայերից էր բաղկացած[297]։ Սկլերոսի կողմն է անցնում Անտիոքի հայազգի դուքս Բուրցիսը (Բուրճ) հայկական զորքերով[298]։ Նա դալիս է հայկական Ծամնդավ (Τζαμανδός) քաղաքը[299]։ Սկլերոսին է միանում նաև բյուզանդական հայազգի ծովակալ Միքայել Քուրդիկը[300]։ Մի՞թե բոլոր այս հայերի նպատակը Սկլերոսին բյուզանդական դահին տիրանալուն օժանդակելն էր միայն։ Թվում է ոչ։ Նրանց նպատակն էր նախ և առաջ Բյուզանդիայի ձեռքն անցած հայկական շրջանների ազատագրումը, մնացած անկախ հայկական հողերի նվաճման կանխումը։ Եվ եթե ի վերա ամենայնի նկատի ունենանք այն խոսուն փաստը, որ Վասիլ II-ը Վարդաս Սկլերոսի դեմ հավաքագրեց բացարձակապես հույներին (‘Ρωμαῖοι)՝ «զզորսն Բիւզանդիոնի և զԹրակացին և զՄակեդոնացին, հանդերձ ամենայն արևմտեայ ազգօքն»[301], որոնք Սկլերոսի առաջին իսկ պարտության ժամանակ սկսեցին կոտորել գերի ընկած հայերին միայն (πολλοὶ τῶν σὺν αὐτῷ (τῷ Βούρτζῃ) ἀπώλοντο, καὶ μᾶλλον τῶν ᾿Αρμενίων· πάντας γὰρ τοὺς ἁλόντας τῶν ᾿Αρμενίων ἀπέσφαττον οἱ ‘Ρωμαῖοι, μὴ λαμβάνοντες οἶκτον διὰ τὸ πρώτους προσχωρῆσαι τῷ ἀποστάτῃ)[302], ապա մեր ենթադրությունը Սկլերոսի ապստամբության բնույթի մասին կհաստատվի։

---

292 Մանրամասն տե՛ս *Canard*, Deux documents arabes p. 60—61.

293 Ասողիկ, էջ 191։

294 Նույն տեղում։

295 Նույն տեղում։

296 Տե՛ս ստորև, էջ 59։

297 Կոստանդին Ծիրանածին, էջ 171—172։

298 Տե՛ս ստորև, էջ 60, 61։

299 Նույն տեղում, էջ 59։

300 Նույն տեղում, էջ 60։

301 Ասողիկ, էջ 191։

302 Տե՛ս ստորև, էջ 61։

Հայերը մասնակից դարձան նաև Վարդաս Փոկասի ապստամբության, որը դարձյալ Վասիլ II-ի դեմ էր ուղղված։ Նրան միացել էր մագիստրոս Ջորտվանելը, Թոռնիկ աբեղայի եղբորորդին, որ «բռնացեալ էր ի կողմանս Դերջանայ և Տարօնոյ»[303]։ Ապստամբ Ջորտվանելի գրաված տարածքը՝ Դերջանն ու Տարոնը, պարզ ցույց է տալիս, որ հայ ժողովուրդը չէր հաշտվել Տարոնի կորստյան մտքի հետ։

Երբ 1022 թ. նույն Վասիլ II-ի դեմ բռնկվեց Վարդաս Փոկասի որդու՝ Նիկեփոր Ծռվիզի ապստամբությունը, ապստամբը «կոչեաց ի միաբանութիւն իւր զթագաւորն Վրաց Գորգի և զորդիսն Գագկայ. գնաց յահէ նորա Դաւիթ առ նա զօրօքն Հայոց, և աճ մեծ եղև ի վերայ Վասլին»[304]։ Սա պարզ վկայում է, որ բյուզանդական վտանգին պատրաստ էին ընդդիմակայելու նաև հայ ու վրացի թագակիրները։

Հազվադեպ չէին և հայերի ապստամբական փորձերը հենց Բյուզանդական կայսրության սահմաններում։ Սենեքերիմ Արծրունու որդիներ Ատոմն ու Ապուսահլը Սեբաստիայում շուրջ 1040 թ. ամբաստանվում են Միքայել կայսեր առաջ այն բանում, թե «կամին ապստամբել ի վերայ քո և յարուցանել քեզ վիշտս և հալածանս»[305]։ Եթե կայսրը նրանց դեմ ուղարկում է տասնհինգ հազարանոց բանակ ակոլութոսի գլխավորությամբ, պարզ է, թե ինչպիսի լուրջ վտանգ էին նրանք ներկայացնում պետության համար։ Հայ ապստամբներն այնքան հզոր էին իրենց զգում և այնքան վստահ իրենց հաջողության, որ ապստամբներից մեկը՝ Շապուհ իշխանն ասում էր Ատոմին և Ապուսահլին. «Կամի՞ք զի զզօրսդ Հոռոմոց ցիր ու ցան ածեմ ընդ երեսս դաշտաց...»[306]։

Տասը տարի անց Կոստանդին Մոնոմախ կայսեր օրոք ապստամբության փորձ տեղի ունեցավ Չորրորդ Հայքում։ Պաղին գավառի իշխաններ, Հաբելի որդիներ Հարպիկը, Դավիթը, Լևոնն ու Կոստանդինը ամբաստանվեցին կայսեր առջև, թե «կամին ապստամբ լինել ի քէն»[307]։ Նրանց դեմ կայսրն ուղարկեց «զօրապետս հանդերձ զօրօքն»[308]։ Պեռոս կատապանը «սկսաւ ապականել զամենայն գաւառն. և զամենայն իշխանսն սկսաւ ի փառաց ընկենուլ»[309]։ Նա գլխատեց Հարպիկին, իսկ

---

303 Ասողիկ, էջ 251։
304 Մատթ. Ուռհ., էջ 51։
305 Նույն տեղում, էջ 83։
306 Նույն տեղում։
307 Նույն տեղում, էջ 109։
308 Նույն տեղում։
309 Նույն տեղում, էջ 110։

*մյուս երեքին տարավ Կոստանդնուպոլիս, Մոնոմախի մոտ, որ «հրամայեաց անցուցանել զնոսա ի կղզի»*[310]։

*Հայոց պայքարը բյուզանդական լծի դեմ շարունակվեց և ապագայում, նաև Ռոմանոս IV Դիոգենեսի իշխանության օրոք*[311]։

*Բյուզանդական առաջխաղացման ու տիրապետության դեմ պայքարողների մեջ էին նաև Թոնդրակյան աղանդավորները*[312] *և պատահական չէ, որ նրանց դեմ Բյուզանդիան պայքար էր մղում դեռևս Տարոնի նվաճումից անմիջապես հետո*[313], *պայքար, որ շարունակվեց ու ավարտին հասավ մեկ հարյուրամյակ անց՝ XI դարի կեսերին արդեն բյուզանդական ռազմական ու պետական գործիչ Գրիգոր Մագիստրոսի ջանքերով*[314]։

*12.* **Հայոց արտագաղթը:** *Բյուզանդական կայսրության բանակում ծառայող հայ սահմանապահ զորքերի հողերին վերաբերող Նիկեփոր II Փոկասի (963—969) մի օրենքում ի միջի այլոց նշված է. «Ա. Եթե հայ զինվորներից (ստրատիոտներից) ոմանք, ովքեր հեռացել են [իրենց հողերից] և երեք տարի անցկացրել այլ տեղում, և վերադառնալով իրենց հողերը գտել են ի պահ տրված ուրիշի, որպես պարգև տրված այլ՝ աչքի ընկած զինվորների (ստրատիոտների), բանակաթեմային կամ տագմատային արխոնտների, սխրանքներ կատարած զորավարների, կամ էլ [վերջապես] ուրիշ ոմանց՝ հանրօգուտ օգտագործման նպատակներով, հրամայում ենք. երեք տարին լրանալուց հետո վերադարձող հայ զինվորներն իրավունք չունեն պահանջելու և ստանալու այդպիսի հողերը»։ Կայսրը բացատրում է իր օրենքի լույս աշխարհ գալու դրդապատճառները. «Որովհետև եթե հայոց անկայուն* (ἄστατον) *և անվերջ թափառել սիրող* (πολυπλανές) *բնավորությունն այսպիսի օրենսդրությամբ չսանձվի ...ապա ողջ հայությունը կչքանա»*[315]։

310 *Նույն տեղում, էջ 112։*

311 *Նույն տեղում, էջ 198։*

312 Աս. Մնացականյան, *Թոնդրակյան շարժման մի քանի գլխավոր հարցերի մասին, Տեղեկագիր, № 3, 1954, էջ 63—84։*

313 *Anne Comnène*, Alexiade, ed. *B. Leib*, t. III, Paris, 1945, p. 180—181 *Հմմտ.* Բարթիկյան, *Պավլիկյանների ծագումը, էջ 87—89։*

314 *Р. М. Бартикян*, Ответное послание Григория Магистра Пахлавуни сирийскому католикосу, «Палестинский Сборник» вып. 7(70), 1962, стр. 130—145; *его же*, Два послания Григория Магистра Пахлавуни (XI в.) относительно еретиков-тондракитов, «Палестинский Сборник», вып. 9(72), 1962, стр. 133—140.

315 Nov. XVIII Imp. Nicephori Phocae de fundis militum Armenicorum et; homicidarum. Jus graecoromanum, cura J. Zepi et P. Zepi, vol. I, Scientia Aalen, 1962, p. 247.

Հայկական ծագում ունեցող կայսրը, պետք է ենթադրել, բոլորից լավ գիտեր իր հայրենակիցների ազգային բնավորությունը։ Մի բան պարզ է, որ X դարի կեսերին հայերը համարվում էին անկայուն և թափառող ժողովուրդ։ Բնածին էր այդ բնավորությունը, թե ձեռք բերովի, դժվար է ասել, բայց հավանաբար ձեռք բերովի. գտնել դրա ակունքները հնարավոր չէ, բայց մի բան պարզ է, որ այդ «բնավորությունը» հայոց ծանր ճակատագրի արդյունք էր, նրանց պետականության գոյության անբնականոնությունը։ Այդ գիծը սկսեց հանդես գալ դեռևս Հռոմի ու Պարսկաստանի՝ Հայաստանի համար մղվող պայքարի ժամանակաշրջանում և ամբողջ հասակով կանգնեց 387 թ. Հայաստանի՝ Բյուզանդիայի ու Պարսկաստանի միջև բաժանվելուց և հայոց Արշակունյաց հարստության վերջնական անկումից հետո (428)։

Հայ ժողովուրդը, ընկնելով երկու խոշոր տերությունների լծի տակ, իր ֆիզիկական գոյությունն ապահովելու համար ջանում էր շարունակ խուսանավել նրանց միջև, գաղթել Հայաստանի մեկ կեսից մյուսը։

Եթե մինչև VII դարը ներառյալ «թափառող» էր հայոց ավագանին և նրա զինված ուժերը, ապա հաջորդ դարերին մենք նկատում ենք մի այլ երևույթ։ Գաղթում են հայ ժողովրդի աշխատավոր խավերը, այն էլ ոչ կամովին, այլ բռնի։ VIII դարի կեսերին Կոստանդին V կայսրը Կաբինից և Մելիտենեից հայեր է բռնագաղթեցնում Թրակիա։ Այնտեղ նրանք տարածում են պավլիկյան աղանդը, մի բան, որ ամենից լավ է վկայում բռնագաղթեցվածների ժողովրդական խավերին պատկանելու մասին։

Արաբական տիրապետության օրոք հայերի արտագաղթի պրոցեսը է՛լ ավելի ուժեղացավ։ Խալիֆայության տիրապետությունը Հայաստանում արմատապես տարբերվում էր Պարսկաստանի և Բյուզանդիայի տիրապետությունից։ Խալիֆայության համար բոլոր հայերը «անհավատներ» էին, նրանց քաղաքական, տնտեսական լուծը բոլորի վրա էր ընկած, կրոնական հալածանքների էին ենթարկվում բոլորը։ Նրանց ավելի քան երկուհարյուրամյա տիրապետության օրոք Հայաստանում չի կառուցվել և ոչ մի եկեղեցի։ Եթե այդուհանդերձ Բյուզանդիայում հնարավոր էր վիճակը որոշ չափով բարելավել՝ քաղկեդոնիկ դառնալով, բոլոր դեպքերում մնալով քրիստոնյա, արաբական տիրապետության օրոք պետք էր պապենական հավատքից հրաժարվել, դառնալ մահմեդական, մի բան, որ անընդունելի էր հայերի համար։ Այս պայմաններում հայերին մնում էր արտագաղթի մեկ ճանապարհ՝ քրիստոնյա Բյուզանդիա տանողը։

Հայերի բռնագաղթեցումները շարունակվեցին նաև Հովհաննես

Չմշկիկի օրոք (969—976)։ Նա ևս Պոնտոսից և հայկական շրջաններից հայեր գաղթեցրեց նույն Թրակիա։ Հայոց ավագանին նույնպես շարունակում էր գաղթել։ Մեծաթիվ հայերի առկայությունը բյուզանդական ավագանու կազմում VIII—XI դդ. դրա լավագույն վկայությունն է։

Հայերի արտագաղթը մինչև XI դարը, թեև բացասաբար անդրադարձավ Հայաստանի վրա, բայց այն չի կարելի աղետալի համարել։ Ժողովրդի բացարձակ մեծամասնությունը, այդ թվում և ավագանին, մնաց երկրում, հակառակ այն ֆիզիկապես ոչնչացնելու խալիֆայության ջանքերին։ Հայոց պետականության վերականգնումը IX դարի վերջերին, դրա լավագույն ապացույցն է։

Հայաստանի՝ Բյուզանդիայի կողմից նվաճվելու ընթացքում հայոց արտագաղթն արդեն այլ բնույթ է կրում։ Եթե մինչև այդ կայսրությունը ջանքեր էր թափում ձերբազատվելու հայոց քաղաքական, հոգևոր ու ռազմական ղեկավարներից, այժմ տեսնում ենք, որ նա դեմ չէր Բյուզանդիա գաղթեցնել հայկական ամբողջական նահանգների բնակչությունը։ Նա հավատացած էր, որ այդ ճանապարհով ավելի հեշտությամբ կյուրացնի երկիրը։ 1021 թ. տեղի ունեցավ Վասպուրականի գաղթը, շուրջ 14.000 հոգի, չհաշված կանանց ու երեխաներին, հաստատվեցին Սեբաստիայում։ Սա նախընթացը չունեցող երևույթ էր հայոց պատմության մեջ։

Հայոց արտագաղթի մի նոր հոսանք սկիզբ առավ Շիրակի (1045) և Վանանդի (1065) նվաճումից հետո։ Հայերը գաղթում էին արևմուտք, հարավ և հարավ-արևմուտք։ Այդ շարժմանն էլ ավելի ուժեղ թափ հաղորդեցին սելջուկ թուրքերի նվաճումները։ Միայն Ուռհայեցին հիշում է XI դարի երկրորդ կեսին կատարված տասնհինգից ավելի թուրքական խոշոր արշավանքներ Հայաստանում, որոնց ընթացքում հողին հավասարվեցին, կրակի ճարակ դարձան, կողոպտվեցին ու ավերվեցին բազում նահանգներ՝ Վասպուրականը, Ապահունիքը, Տարոնը, Բալահովիտը, Բարձր Հայքը, Փոքր Հայքը, Գուգարքը, Շիրակը, Տայքը, Սասունը, քաղաքներ՝ Արծնը, Բերկրին, Արճեշը, Մանազկերտը, Մելիտենեն, Սեբաստիան, Թլմուխը, Կարինը, Անին, Կարսը և շատ ուրիշներ, բնակչությունը սրի քաշվեց ու գերության տարվեց։ Նկարագրելով թուրքերի արշավանքները մինչև 1064 թ., մինչև Անիի առումը, Արիստակես Լաստիվերցին իր պատմածն ավարտում է սովորական դարձած խոսքերով, թե «մարդակոտոր սատակմամբ ապականեցին զաւառս բազումս, և առ և գերի բազում առեալ իջին յաշխարհն իւրեանց»[316]։ Բայց Անիի գրավ-

316 Արիստ. Լաստ. էջ 68, նաև 94, 102, 107, 110։

ման մասին խոսելուց հետո, պատմիչի մոտ արդեն հանդես են գալիս նոր դարձվածքներ. «եղև գործ պատերազմի յերկիրս Հայոց ընդարձակեցուցանել զբնակութիւնս իւրեանց, և տիրել ի վերայ սահմանի այլոյ թագաւորութեան»[317]։ Մի խոսքով, նա արդեն գրում է թուրքերի հաստատման մասին Հայաստանում։

Երկրում ստեղծվեց անապահով վիճակ. «արեանարբու և գազանացեալ ազգն Թուրքաց,—գրում է Մատթեոս Ուռհայեցին,—տարածեցաւ ընդ ամենայն երեսս երկրի, որ ոչ մնաց գաւառ ի խաղաղութեան, այլ կայր մատնեալ ամենայն տունն քրիստոնէից ի սուր և ի գերութիւն. և արգելաւ վաստակ հողագործութեան յերկրէ, և հատաւ կերակուր հացի, և սրով և գերութեամբ հատան մշակք և վաստակաւորք, և առհասարակ տարածեցաւ (սով) ընդ ամենայն աշխարհս։ Եւ անմարդ եղեն բազում գաւառք, և քակեցաւ տունն արևելից...»[318]։

Սելջուկ թուրքերի՝ փոքրասիական թերակղզով առաջխաղացման պատճառով, հայերը, անգամ միևնույն սերնդի, ստիպված էին դարձյալ վերցնել գաղթականի ցուպը։ Սեբաստիա ապաստանած հայերի մի մասը շարժվում է հարավ՝ Կիլիկիա, Միջագետք և Ասորիք[319]։ «Պանդխտեցան երկրորդ անգամ և եղեն վտարանդիք,—գրում է Արիստակես Լաստիվերցին,—... ցրուեցան զօրէն աստեղաց մոլորական կոչեցելոց»[320]։

Հայոց արտագաղթը XI դ. ժողովրդի և երկրի համար ունեցավ ծանր հետևանքներ։ 1021 թ. սկսվեց մի պրոցես, որ պիտի շարունակվեր շուրջ 900 տարի։ Այն հնարավորություն տվեց օտար նվաճողներին ավելի հեշտությամբ հաստատվելու իրենց նվաճած երկրում, ավելի հեշտությամբ յուրացնելու այն ու մարսելու, մի բան, որ ճանապարհ բացեց նորանոր գաղթերի։

Հայոց արտագաղթը դեպի արևմուտք, հարավ և հարավ-արևմուտք ունեցավ և այլ հետևանքներ։ Արևմտյան Հայաստանը հռոմեական, ապա և բյուզանդական բազմադարյան տիրապետության օրոք բռնել էր ապազգայնացման ու ձուլման ճանապարհը, սկսել էր կորցնել իր ազգային դեմքը։ Հուստինիանոս I-ի բոլոր չորս Հայքերը գնում էին ապազգայնացման ճանապարհով։ Նրան նպաստեց նաև մի շարք շրջանների նվաճումը արաբների կողմից և արաբ տարրի հաստատումը։ Առաջին գավառը, որտեղ նրանք հաստատվեցին, Աղձնիքն էր, հետագա-

317 Արիստ. Լաստ., էջ 135։

318 Մատթ. Ուռհ., էջ 217։

319 *Michel le Syrien*, Chronique, t. III, pp. 133, 188.

320 Արիստ. Լաստ., էջ 22։

յում նրանք հասան մինչև Կարին[321]։ Այդ ճանապարհով խալիֆայությունն ապահովում էր բյուզանդա-արաբական սահմանի անվտանգությունը։ Երբ այդ շրջանները վերանվաճվեցին կայսրության կողմից, Բյուզանդիան բոլոր միջոցներով ջանում էր այդտեղ հաստատել հայ բնակչություն, ունենալով նույն դրդապատճառները։ Հիմնադրվեցին, այսպես կոչված, «Հայկական բանակաթեմերը» (Ἀρμενιακὰ θέματα)։ Հայերի գաղթը դեպի արևմուտք XI դարում նպաստեց ապազգայնացման ճանապարհը բռնած հայկական այդ շրջանների հայացմանը։ Նրանք այն աստիճան հայացան, այնտեղ այնքան շատ հայեր բնակվեցին. որ Սենեքերիմ Արծրունին Սեբաստիայում, Գագիկ II Բագրատունին Կապադովկիայում հայերի շրջանում շարունակում էին հայոց թագավորներ համարվել, իսկ նրանց տիրույթները՝ հայկական թագավորություններ, թեև և Արծրունյաց, և Բագրատունյաց թագավորությունները վաղուց էին վերացել։ Բագրատունյաց թագավորությունը դադարեց գոյություն ունենալուց 1045 թ., բայց Մատթեոս Ուռհայեցին այդ թագավորության վերջ է համարում 1079 թ., Գագիկ II-ի սպանության տարին. «և աստանոր դադարեալ եղև թագաւորութիւնն ի տանէն Հայոց և յազգէն Բագրատունեաց։ Յայսմ վայրի լցեալ կատարեցաւ մարգարէութիւն սրբոյն Ներսէսի Հայոց կաթուղիկոսին՝ որ ասաց. «եթէ ջնջելով ջնջեսցի թագաւորութիւն ի տանէն Հայոց»[322]։

Վասպուրականի Արծրունյաց թագավորությունը վերացավ 1021 թ.։ Վերջին թագավոր Սենեքերիմը գաղթեց Սեբաստիա, ուր և մեռավ 1025 թ.։ Բյուզանդական հեղինակները նրան անվանում են պարզապես մագիստրոս և պատրիկ, Կապադովկիայի զորավար (πατρίκιος... καὶ στρατηγὸς Καππαδοκίας)[323], բայց հայերի համար նա շարունակում էր թագավոր կոչվել։ Սենեքերիմի մահից հետո,— գրում է Մատթեոս Ուռհայեցին,— «Հաստատեալ լինէր թագաւորական իշխանութիւնն տանն Հայոց յաւագ որդին իւր ի Դաւիթ...»[324]։ Եվ այնուհետև. «Յայսմ ժամանակի մեռանէր արքայն Դաւիթ՝ որդին Սենեքարիմայ արքային Հայոց, և տայ գիշխանութիւնն հայրենեաց իւրոց ի յեղբայրն իւր յԱտոմ...»[325]։ Եվ այդ բոլորը Սեբաստիայում և Կապադովկիայում, Բյուզանդական կայսրության փոքրասիական տարածքի հենց սրտում...

---

321 Տեր-Ղևոնդյան, *Արաբական ամիրայությունները*, էջ 58—59։
322 Մատթ. Ուռհ., էջ 220։
323 *Տե՛ս ստորև*, էջ 86։ Նաև «Советы и рассказы», стр. 282.
324 Մատթ. Ուռհ., էջ 55։
325 Նույն տեղում, էջ 65։

Հայկական միաձույլ բնակչության առկայությունը Հայաստանի և Բյուզանդիայի հարավում հնարավորություն տվեց ստեղծելու փոքր հայկական իշխանություններ, որոնք տվյալ էտապում դրական դեր խաղացին հայ բնակչության այլազգիներից պաշտպանելու գործում։ Ամենակարևորներից մեկը Փիլարտոս Վարաժնունու իշխանությունն էր Մարաշ (Գերմանիկիա) կենտրոնով, որն ստեղծվեց Մանազկերտի ճակատամարտից (1071) անմիջապես հետո։ Միքայել Ատտալիատեսը շատ հանգամանորեն է խոսում այս իշխանության հիմնադրման նախադրյալների և տարածքի մասին։ Փիլարտոսը,— գրում է նա,— «հաստատվեց անանցանելի լեռներում, թուրքական անցուղիներից հեռու ընկած վայրերում, նա պարսպապատեց կիրճերի մեծ մասը, ամրացրեց լեռնանցքները և այդ ձևով թշնամու համար այդ վայրերը անառիկ դարձրեց։ Այնուհետև նա իր շուրջ հավաքեց բազմաթիվ հայերի և փախստականների և նրանցից կազմեց ռազմունակ ուժ։ Նա հպատակություն չհայտնեց նախորդ կայսեր (Միքայել VII-ին), սկսեց ինքնուրույն գործել, ձեռք գցել կայսեր պատկանող քաղաքները և ընդարձակել իր տիրույթները»[326]։

Փիլարտոսի ծրագրերը շատ հեռուն գնացող էին։ Նա ջանում էր իրեն ենթարկել շրջակա հայկական իշխանությունները, այդ թվում և Սասունի Թոռնիկյանների հզոր իշխանությունը[327]։ 1083 թ. նա իրեն ենթարկեց Ուռհան[328]։ Իրեն բավական հզոր զգալով, Փիլարտոսը որոշեց հայոց կաթողիկոսությունն իր իշխանության սահմաններում հաստատել, և եթե այդ ծրագրին հավանություն տվեց հայոց կաթողիկոս Գրիգորիսը, նշանակում է, որ վերջինս էլ Փիլարտոսի իշխանությունն այդպիսին էր համարում[329]։ Հոնիում և Մարաշում հաստատվեց հայոց կաթողիկոսություն և այնտեղ աթոռակալեցին կաթողիկոսներ Սարգիսը, Թեոդորոսը և Պողոսը։

Հայկական իշխանություն ստեղծվեց նաև Մելիտենեում։ Նրա իշխանն էր Գաբրիելը, Ուռհայի կառավարիչ Թորոս կուրապաղատի աները։ Գաբրիելն այնքան հզոր էր, որ կարողացավ 1096 թ. հաջողությամբ հակադրվել Ղլիճ-Արսլանին, ապա և Սեբաստիայի Դանիշմանյաններին (1100)։

Բյուզանդիայի հարավում՝ Քեսունում հիմնադրվեց մեծ իշխան Գող Վասիլի իշխանությունը, որի շուրջ հավաքվեցին հայոց զորքի մնացորդ-

---

326 Mich. Attal., էջ 301։ Նաև՝ ստորև, էջ 270։
327 Մատթ. Ուռհ., էջ 206։
328 Նույն տեղում, էջ 223—224։
329 Նույն տեղում, էջ 210։

ները, Բագրատունյաց ու Պահլավունյաց բեկորները։ Գող Վասիլն իր իշխանությունը տարածեց մի շարք այլ շրջանների վրա և հաջողությամբ պայքարում էր ոչ միայն թուրքական, այլև խաչակիրների հրոսակների դեմ։ Նա Քեսունում հայկական կաթողիկոսություն հաստատեց, մի բան, որ այդ իշխանության հզորության մասին է վկայում։ Գող Վասիլի ժամանակ հայկական իշխանություն կար Բիրում և Մրծբինում, որը գլխավորում էին Վասակի որդիներ Ապլղարիպն ու Լիկոսը։

Այս բոլոր իշխանությունները, որոնք հայկական գաղթի արդյունք էին, շատ կարճ կյանք ունենալով, բազմաթիվ հզոր թշնամիների՝ թուրքերի, բյուզանդացիների, խաչակիրների հարվածների տակ ստիպված հեռացան հրապարակից։ Միակը, որ կարողացավ ընդդիմակայել բազմաթիվ հակառակորդների, Կիլիկիայի Ռուբինյանց իշխանությունն էր, որ 1198 թ. վերածվելով թագավորության, ամբողջ երեք հարյուրամյակ գոյություն ունեցավ։ Կիլիկիան դարձավ այն ապահով ապաստարանը, որտեղ փրկություն էր գտնում այլազգիների բռնություններից փախչող հայությունը։ Կիլիկիայում այնքան շատ հայություն հավաքվեց, երկիրն այնքան հայացավ, որ Բյուզանդիայում «Կիլիկիա» և «Հայաստան», «կիլիկեցի» և «հայ» հասկացությունները հոմանիշ դարձան, անհրաժեշտություն առաջացավ բյուզանդական աշխարհագրական բառարաններում պարզիպարզո գրել, թե Կիլիկիան Հայաստան է նշանակում, իսկ կիլիկեցի՝ հայ (Κιλικία ἡ 'Αρμενία, Κίλιξ ὁ 'Αρμένιος)[330]։

Կապադովկիան, Ասորիքը, Միջագետքը, Կիլիկիան շրջաններ էին, որոնք առավել կամ պակաս չափով Հայաստանին հարևան էին, կամ տարածքային առումով նրան շատ մոտիկ էին գտնվում։ XI դարում հայերն սկսեցին գաղութներ հիմնադրել հայրենիքից շատ հեռու գտնվող երկրներում։ Մատթեոս Ուռհայեցին ցույց է տալիս, որ XI դարի վերջում Եգիպտոսում կար 30.000-անոց հայկական գաղութ, որ այդ ժամանակներում Եգիպտոսում հիմնադրվեց հայկական պատրիարքություն[331]։ Առաջացավ «սփյուռք» հասկացությունը։ Եվ պատահական չէ, որ բազմաթիվ հայկական գաղութներ, որոնք հակառակ որ ստեղծվեցին հետագա դարերում, իրենց սկիզբը համարում էին XI դարը, այն կապում էին Անիի՝ թուրքերի կողմից գրավվելու հետ, իրենց էլ, որպես կանոն, Անիից գաղթածներ։

---

330 Hieroclis Synecdemus, recensuit *Augustus Burckhardt*, Lipsiae, 1893, p. 6: Նաև *Diller*, Byzantine lists, p. 33: Համա. Հեթում պատմիչ, էջ 20—21. «Եւ այս Կիլիկիա այժմ Հայք կամ Արմենիա յորջորջի»։

331 Մատթ. Ուռհ., էջ 211, 229, 231։

* * *

*Ստորև տալիս ենք Հովհաննես Սկիլիցեսի պատմական երկի երկրորդ մասի և Շարունակության ամբողջական թարգմանությունը, որը (եթե նկատի չունենանք չորս հարյուր տարի առաջ Գաբիուսի կողմից իրականացված լատիներեն թարգմանությունը՝ առանց Շարունակության) հանդիսանում է միակը։ Հրապարակի վրա կան եվրոպական լեզուներով, ինչպես և վրացերեն, բուլղարերեն, սերբերեն առանձին հատվածների թարգմանությունները միայն։ Թարգմանությունն իրականացված է բյուզանդական պատմիչների երկերի Բոննյան մատենաշարում Ի. Բեկկերի աշխատասիրած բնագրից, իսկ Շարունակությունը՝ Ե. Ցոլակիսի կազմած քննական բնագրից։ Մեր թարգմանությունն ավարտված էր, երբ լույս տեսավ Սկիլիցեսի երկի՝ Թուրնի կազմած քննական բնագիրը։ Թարգմանիչն ամենայն բծախնդրությամբ համեմատեց իր թարգմանությունն այդ հրատարակության հետ և եկավ այն հաստատ համոզման, որ քննական բնագիրը Բոննի հրատարակությունից իմաստային առումով և ոչ մի էական տարբերություն չի պարունակում։ Թարգմանիչն ընդունեց բնագրի՝ Թուրնի կատարած ենթաբաժանումները։ Թարգմանության լուսանցքներում տրված թվական տվյալները, որպես կանոն, վերցված են Թուրնի հրատարակությունից, բայց Հայաստանին վերաբերող թվական նշումները մեծամասամբ մերն են, քանզի Թուրնի մոտ նրանք հաճախ ճիշտ չեն[332]։ Կրկնողություններից խուսափելու համար ծանոթագրություններում բյուզանդական տերմինների բացատրությունների վերաբերյալ հղում ենք «Բյուզանդական աղբյուրների» երկրորդ գրքին («Կոստանդին Ծիրանածին»), եթե այդ տերմիններն այնտեղ մեկնաբանված են։*

---

*332 Օրինակ, Դավիթ կուրապաղատի մահվան թվականը Թուրնը նշում է 990 թ., երբ նա մեռել է 1000 թ.։ Նա 990 թ. է նշում նաև Վասիլ II-ի և վրաց թագավոր Գիորգի I-ի միջև կնքված հաշտության պայմանագիրը, երբ Գիորգին սկսեց թագավորել 1014 թ.։ Գագիկ II-ի գահակալումը Թուրնը նշում է 1040 թ., երբ Գագիկը թագավոր օծվեց 1043 թ.։ Եվ այլն։*

# ΙΩΑΝΝΟΥ ΤΟΥ ΣΚΥΛΙΤΖΗ
# ΣΥΝΟΨΙΣ ΙΣΤΟΡΙΩΝ

# ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԿԻԼԻՑԵՍ
# ՀԱՄԱՌՈՏՈՒԹՅՈՒՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆՑ

# ՀԱՄԱՌՈՏՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՏՄՈՒԹՅԱՆՑ՝ ՍԿՍՅԱԼ ՆԱԽԿԻՆՈՒՄ ԳԵՆԻԿՈՆԻ[1] [ՊԱՇՏՈՆԸ ՎԱՐԱԾ] ՆԻԿԵՓՈՐ ԿԱՅՍԵՐ[2] ՍՊԱՆՈՒԹՅՈՒՆԻՑ ՄԻՆՉԵՎ ԻՍԱՀԱԿ ԿՈՄՆԵՆՈՍԻ ԹԱԳԱՎՈՐԵԼԸ[3], ՇԱՐԱԴՐՅԱԼ ՆԱԽԿԻՆՈՒՄ ՎԻԳԼԱՅԻ ՄԵԾ ԴՐՈՒՆԳԱՐԻ[4] [ՊԱՇՏՈՆԸ ՎԱՐԱԾ] ԿՈՒՐԱՊԱՂԱՏ ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԿԻԼԻՑԵՍԻՑ

*Պատմության համառոտությունը հներից հետո գերազանց կատարեցին նախ Գեորգիոս Վանականը[5], որ սրբազնագույն պատրիարք Տարասիոսի[6] սինկելլոսի[7] [պաշտոնը] վարեց, իսկ նրանից հետո Ագրոսի վանահայր Թեոփանես Խոստովանողը[8]։ Նրանք ամենայն բարեխղճությամբ հետազոտելով պատմական գրքերը, պարզ ու հասարակ ոճով համառոտեցին, առանց խորանալու տեղի ունեցած դեպքերի էության մեջ։ Նրանցից Գեորգիոսը [իր շարադրանքն] սկսելով աշխարհի արարչագործությունից, այն հասցրեց մինչև բռնակալները, ես նկատի ունեմ Մաքսիմիանոսին և նրա որդի Մաքսիմինոսին[9]։ Իսկ Թեոփանեսը նրա [շարադրանքի] վերջն իր համար սկիզբ անելով, համառոտեց մնացած ժամանակագրությունը, հասցնելով [մինչև] նախկինում գենիկոնի [պաշտոնը վարած] Նիկեփոր կայսեր վախճանը։ Նրանից հետո ոչ ոք չնվիրվեց նման գործի։ [Ճիշտ է], ոմանք փորձեր արեցին, ինչպես, օրինակ, վարդապետ Սիկիլիացին[10], մեր ժամանակակից՝ փիլիսոփաների հյուպատոս և հյուպերտիմոս Պսելլոսը[11] և ուրիշներ, բայց նրանք գործին ի միջի այլոց լծվեցին, բազում կարևոր [հարցեր] շրջանցելով, ճշմարտության դեմ մեղանչեցին, հաջորդներին էլ օգուտ չտվեցին, [քանզի] սոսկ կայսրերին թվեցին, ցույց տվեցին, թե ով ումից հետո տիրացավ գայիսոնին, և ոչինչ ավելի։ Եվ եթե անգամ թվում է նրանք կանգ են առել այս կամ այն դեպքի վրա, այդ էլ մակերեսայնորեն գրի առած լինելով, ավելի վնասեցին, քան օգուտ տվեցին։ Թեոդորոս Դափնոպատեսը, Նիկետաս Պափլագոնացին, բյուզանդացիներ Հովսեփ Գենեսիոսն ու Մանուիլը, փռյուգիացի Նիկեփոր Սարկավագը, ասիացի Լևոնը, Սիդեի եպիսկոպոս եղած Թեոդորոսն ու նրա համանուն զարմիկը, որ Սեբաստիայի եկեղեցու առաջնորդը եղավ, այնուհետև*

Կյուզիկոսի [եպիսկոպոս] Դեմետրիոսը, վանական Հովհաննես Լյուդացին[12], յուրաքանչյուրն իր առջև անձնական նպատակ դնելով, մեկը, ասենք. կայսեր ներբողյան [գրեց], մյուսը՝ պատրիարքի պարսավագիր, երրորդը՝ բարեկամի գովք, ամեն մեկը պատմության զգեստի մեջ սեփական դիտավորություն դնելով, հեռացան հիշյալ աստվածակիր այրերի սկզբունքներից։ Իրենց ապրած ժամանակի դեպքերը երկար բարակ [շարադրելով], մի քիչ էլ վերից սկսելով, [գրածին] պատմության ձև տալով, մեկը՝ համակրությամբ, մյուսը՝ հակակրությամբ, երրորդը՝ հաճոյանալու համար, մի ուրիշն էլ որևէ մեկի կարգադրությամբ, յուրաքանչյուրն իր պատմությունը շարահարեց, որոնք միևնույն հարցերում իրարից տարբերվելով, ունկնդիրներին գցեցին շփոթության ու տարակուսանքի մեջ։ Իսկ մենք հավանություն տալով հիշյալ այրերի[13] ջանքին, հույս ունենք, որ [սույն] համառոտությունը պատմություն սիրողներին շատ օգտակար կլինի, հատկապես նրանց, ովքեր գերադասում են դյուր[ընկալելին] դժվար[ընկալելիից], այն կտա համառոտ, ավելորդություններից բեռնաթափված պատկերը տարբեր ժամանակներում տեղի ունեցած դեպքերի։ Մենք վերցրինք վերոհիշյալ հեղինակների արժանահավատ պատմությունները, մի կողմ թողնելով այն, ինչ նրանց մոտ ասված է աչառությամբ կամ հաճոյանալու միտումով, շրջանցեցինք անհամաձայնություններն ու հակասությունները, հրաժարվեցինք այն ամենից, ինչ առասպելապատում համարեցինք, հավաքեցինք արժանահավատը և վստահելին։ Դրա վրա ավելացրինք այն, ինչ բանավոր իմացանք տարեց մարդկանցից։ Այդ բոլորի համառոտությունը տալով, մենք հաջորդ սերունդներին թողեցինք փափուկ, ինչպես ասում են՝ աղացած սնունդ, որպեսզի վերոհիշյալ պատմիչների գրքերի ընթերցողները ի դեմս այս գրքի [փաստերը] ստուգելու հնարավորություն ունենան, իրենց համար ուղեկից, հետևեն նրան, քանզի ընթերցումը հուշեր է առաջացնում, հուշերը սնում և ընդարձակում են հիշողությունը, իսկ անհոգությունն ու անփութությունը, ընդհակառակը, բթացնում են հիշողությունը, դրան հետևում է տեղի ունեցած իրադարձությունների մասին հիշողությունը մթագնող և շփոթող մոռացությունը։ Իսկ նրանց համար, ովքեր ձեռքի տակ չեն ունենա պատմական [հիշյալ գրքերը], այս համառոտությունը ուղեցույց կլինի և հետազոտելով ավելի ընդարձակապատում շարադրանքները, իրադարձությունների մասին ավելի կատարյալ տեղեկություններ կստանան...[14]։

# ՌՈՄԱՆՈՍ

## [10 նոյեմբեր 959—15 մարտ 963 թթ.][15]

1. Կոստանդին [Ծիրանածինի][16] վախճանվելու և հանդերձ-
10—XI յալ աշխարհը գնալու առնչությամբ, իշխանությունն անցնում է
—959 նրա որդի Ռոմանոսի ձեռքը։ Նա բարձր պաշտոնների նշանակեց իրեն բարյացակամ ու ցանկալի մարդկանց և [իր] թագավորությունն՝ հնարավորին չափ ամրապնդելու դիտավորությամբ ինդիկտիոնի նույն երրորդ տարվա զատկի օրը[17] մեծ եկեղեցում[18]
22—IV իր որդուն էլ կայսր թագադրեց՝[19] ձեռամբ Պոլիևկտոս պատ-
—960 րիարքի[20]։

2. Հաջորդ տարին նա Պեգեի պալատում[21] մի որդի էլ ունեցավ որին կոչեց իր հոր՝ Կոստանդնի անունով[22]։

3. Լինելով երիտասարդ, նա իրեն տվեց հաճույքների, իսկ հասարակաց հոգսերը թողեց պրեպոզիտոս[23] և պարակիմոմենոս[24] Հովսեփին, մականունը, Բրինգաս։ Իր [Ռոմանոսի] միակ հոգսը կնաբարո ու պիղծ մարդուկների, անբարոյական կանանց, միմոսների ու ծաղրածուների հետ զբաղվելն էր։ Նա, իշխանությունն իր ձեռքն առնելուց հետո, ինչ-որ լպիրշ արարքների համար Կոստանդին կայսեր սպառնալիքի տակ վանականի սքեմն հագած ու մինչև նրա վախճանը թաքնվող ոմն ներքինի Հովհաննես քահանայի, վանականի սքեմից ազատեց, քահանայի հանդերձներ հագցրեց ու դասեց իր սենեկապանների թվին։ Պոլիևկտոսը շատ էր նեղվում և ջանք թափում կայսեր վրա ճնշում գործել՝ հեռացնելու համար նրան իր սպասավորությունից, որպես վանականի ուխտը դրժողի։ [Կայսրը] մերժեց, պատճառաբանելով, որ [Հովհաննեսը] վանականի սքեմն էր հագել ոչ թե իսկականից, նա որևէ հոգևորականից օրհնություն էլ չէր ստացել, այլ [Կոստանդին] կայսեր վախից [ստիպված]։ Պոլիևկտոսը խաբվեց և թողեց նրան։ Այստեղ բավական աշխատեց նաև

* Անկյունավոր փակագծերի մեջ առնված բառերը թարգմանչինն են, կոր փակագծերի մեջ առնված բառերը՝ հեղինակինը։

*Հովսեփ։ Հովհաննեսը մինչև Ռոմանոսի վախճանը աշխար-
հական ու երիտասարդին վայել կյանք վարեց։ Նրա վախճանվե-
լուց հետո նա վերստին հագավ վանականի սքեմը, բայց իր
մտայնությունը չփոխեց։*

*4. Այդ տարի կայսրը մագիստրոս[25] Նիկեփոր Փոկասին,
(որը դեռ Կոստանդին կայսեր կողմից արևելից սխոլերի գոմես-
տիկոս[26] էր նշանակվել և արևելքի սարակինոսների դեմ բազում
հաղթանակներ տարել[27], գլխովին պարտության մատնել Տար-
սոնի ամիրա Կարամոնին, Հալեպի [ամիրա] Համդունին, և
Տրիպոլիսի [ամիրա] Եզիդին)[28], տալով բազմաթիվ ընտիր զին-
վորներ[29] և լավ համալրված նավատորմիղ, Կրետեի սարակինոս-*
960 *ների դեմ ուղարկեց։ Նավելով դեպի կղզի և առաջին անգամ ափ*
*ամառ* *դուրս գալով, նա պարտության մատնեց իրեն ընդդիմակայելու
ելած սարակինոսներին, նրանց փախուստի մատնեց և իր զին-
վորներով անվտանգ ափ ելավ։ Նա խոր խրամատով ու ցցերով
պաշտպանված ամուր ցանկապատնեշ շինեց, իր նավերը՝
խարսխեց ալեկոծությունից կատարելապես անվտանգ ծովա-
խորշերում. ամեն ինչ ապահով կերպով կարգի բերելով, նա
եռանդագին լծվեց կղզու քաղաքների պաշարման աշխատան-
քին, ամբողջ յոթ ամիս գործի դրեց պաշարողական բոլոր
մեքենաները և քանդելով պարիսպները, գրավեց քաղաք-*
961 *ներ ու բերդեր։ Ինդիկտիոնի 4-րդ տարվա մարտ ամսի 7-ին նա
գրոհով վերցրեց [կղզու] ամենաամուր քաղաքը, որ տեղացիները
Խանդաքս[30] էին անվանում, գերեց կղզու ամիրա Կուրուպեսին,
նրանից հետո կղզու առաջին դեմքը հանդիսացող Անեմասին։
Նվաճելով բովանդակ կղզին[31], նա մտադիր էր ավելի երկար
մնալ այնտեղ, կարգավորելու նրա գործերը, բայց [երկրում]
կանխասացություն էր տարածվել, թե այն հռոմայեցի այրը,
որ գրավելու է [Կրետե կղզին], անխուսափելիորեն դառնալու
է հռոմայեցիների կայսր[31ա]։ Կղզու գրավման լուրը հասնե-
լուն պես, Ռոմանոսը, Հովսեփի խորհրդով, Նիկեփորին այնտե-
ղից ետ կանչեց։ Նիկեփորի Կրետեում գտնված ժամանակ, Ռո-
մանոսը ջանալով, որ արևելքի արաբները, և ամենից առաջ Հա-
լեպի ամիրա Համդունը, ռազմունակ ու մյուսներից ավելի գոր-
ծունյա մի մարդ, արևելքը չասպատակեն, Լևոն Փոկասին, Նիկե-
փոր Փոկասի եղբոր, մագիստրոսի պատվաստիճանը շնորհելով,
ուղարկեց [արևելից սխոլերի] գոմեստիկոսի պաշտոնը վարե-
լու[32]։ Նա անցնելով [Ասիա] և Ադրասոս կոչվող վայրում[33] հան-*

962 դիպելով Համդունին, նրան գլխովին պարտության մատնեց ու ոչնչացրեց։ Մարտում ընկածներին հաշվելն անհնարին էր, իսկ գերվածներն ու քաղաք ուղարկվածներն այնքան շատ էին, որ քաղաքի տներն ու ագարակները ստրուկներով լցվեցին[34]։ Նրանց առաջնորդ Համդունը միայն կարողացավ փոքրաթիվ մարդկանցով խուսափել վտանգից և գնալ իր երկիրը։ Երբ Լևոնը [քաղաք][35] մտավ, կայսրը նրան մեծ սիրալիրությամբ ընդունեց, նրա պատվին հաղթական շքերթ կազմակերպեց[36], ըստ արժանվույն պարգևներ շնորհեց, նաև պատիվներ ու բարձր աստիճաններ բոլոր նրա հետ աչքի ընկածներին։

5. Ռոմանոսի թագավորության երկրորդ տարին բազում քաղաքացիներ ձերբակալվեցին՝ նրա դեմ դավադրություն նյութած լինելու պատճառով։ Դավադրության նախաձեռնողն ու կազմակերպիչը Վասիլ մագիստրոսն էր, մականունը Պետինոս և երևելիներից մի քանիսը, այն է՝ պատրիկ Պասքալիոսը, պատրիկ Վարդասը՝ Լիվոսի որդին և Նիկոլայոս խալկուցիսը։ Սրանք որոշել էին ձիարշավական մրցումների[37] օրը, երբ կայսրը իջներ [ձիարշավարան], սպանել նրան, իսկ Վասիլին, նստեցնելով թագավորական գահին, կայսր հռչակել։ Բայց դավադիրներից մեկը՝ անունը Իոաննիկկիոս, ծագումով սարակինոս, դավադրության մասին տեղյակ պահեց կայսրին նախքան այդ օրը ծագելը։ Հովսեփը ձերբակալեց [դավադիրներին], նրանց բոլորին, բացի Վասիլից, խայտառակ արեցին, անգթորեն խոշտանգեցին և հենց մրցումների օրը [ձիարշավարանում] ծաղր ու ծանակի ենթարկելով, աքսորեցին ու վանական խուզեցին[38]։ Կարճ ժամանակ աքսորում տառապելուց հետո, նրանք ետ կանչվեցին, քանզի Ռոմանոսը նրանց հանդեպ մարդասիրություն ցուցաբերեց։ Միայն Վասիլ Պետինոսը, որ խելագարվել էր, վախճանվեց Պրիկոնեսոսում[39]։ Նա իր արդար պատիժն ստացավ, քանզի չարանենգորեն Ստեփանոսին կայսր դարձնելով, այնուհետև նրան Կոստանդնի ձեռքը գցեց[40]։

6. Մագիստրոս Ռոմանոս Սարոնիտեսը, ծերունի Ռոմանոսի դստեր ամուսինը, տեսնելով Պետինոսի և մյուսների գլխին եկածը, և երկյուղ կրելով, որ նույնն էլ իրեն կպատահի (իր փառահեղությունը մարդկանց մեջ նախանձ ու կասկածամտություն էր առաջացրել), իր ունեցվածքը իր երեխաների միջև ցանկացածին պես բաժանեց, մնացածն էլ՝ աղքատներին, և վանականի սքեմ հագավ։ Նա հաստատվեց Էլեգմոն վանքում[41] ու մնաց եր-

կար տարիներ, հաջորդ կայսրերի կողմից արտակարգ պատիվների արժանանալով։

7. Այդ ժամանակները հրապարակ եկավ Ֆիլորեոս անունով մեկը՝ մագիստրոս Ռոմանոս Մոսելեի, ծերունի Ռոմանոսի թոռան[42] թիկնապահը։ Սա շատ արագավազ ձիու թամբի վրա կանգնած, ձեռքին սուր բռնած, ձիու կարողացածի չափ արագ վազելու ընթացքում, սուրում էր ձիարշավարանի վազքուղիներում, սուրը վերև, ներքև պտտեցնելով և կանգնած տեղից ամենևին չսահելով։

8. Այդ օրերին տարածվեց խոշոր եղջյուրավոր անասուններին ոչնչացնող ու կոտորող կրավրա կոչվող սուր հիվանդությունը, որ անցյալում էլ հռոմայեցիների երկիրն էր խուժել։ Ասում են, որ դա սկիզբ առավ ծերունի Ռոմանոսի օրերում։ Պատմում են, որ Ռոմանոսը Բոնոսի ջրամբարին[43] շատ մոտիկ տեղում ամառվա տապից հովանալու համար պալատ էր կառուցում. երբ հիմքն էին փորում, ցուլի մարմարյա գլուխ գտնվեց, որը հայտնաբերողները ջարդեցին ու կիր պատրաստելու հնոցը գցեցին։ Ահա այդ ժամանակներից մինչև օրս հռոմայեցիների համայն տիրապետության մեջ դադար չգտավ խոշոր եղջյուրավոր անասունների անկումը։

9. Ռոմանոսը կնոջ դրդմամբ փորձեց իր մոր՝ Հելենեին և քույրերին հեռացնել արքունիքից և արգելափակել Անտիոքոսի պալատում[44]։ Հելենեն, իմանալով այդ մասին, լաց ու կոծ բարձրացրեց, անեծք թափեց որդու գլխին, որից նա երկյուղեց[45]։ Նրան թույլ տրվեց մնալ տեղում, իսկ քույրերին դուրս հանելով, Ստուդիոնի [վանքի][46] վանահոր Հովհաննեսի միջոցով միանձնուհի խուզեց։ Բայց երբ [Հովհաննեսը] հեռացավ, նրանք հրաժարվեցին միանձնուհու սքեմից և աշխարհիկ կյանք էին վարում։ Իսկ Հելենեն, իր դուստրերի հեռացման առթիվ մեծ ապրումներ ունեցավ և մի փոքր անց, ինդիկտիոնի 5-րդ տարվա սեպտեմբեր ամսի 20-ին վախճանվելով, թագավորավայել թաղվեց հոր դամբարանում։

10. Նիկեփոր Փոկասը, ինչպես նախապես ասվեց, կարգադրություն ստացավ Կրետեից վերադառնալ, բայց նրան թույլ չտվեցին մուտք գործել մայրաքաղաք[47], այլ հրաման ստացավ համայն զորքով գնալ արևելք։ Համգունը, կրած պարտությունից սթափվելով, սկսել էր հզորանալ։ Մարտունակ զորք հավաքելով, նա հարմար առիթի էր սպասում հռոմայեցիների պետության

վրա հարձակվելու։ Բայց Փոկասը, մուտք գործելով Ասորիք, համառ ճակատամարտում նրան հաղթեց, գլխովին պարտության մատնեց, հալածեց Ասորիքի խորքերը, գրոհով վերցրեց Բերիա քաղաքը՝[48] բացի միջնաբերդից, որպես ավար մեծ հարըստություն և ռազմագերիներ վերցրեց, ազատագրեց այնտեղ կապանքների մեջ պահվող քրիստոնյաներին, և տուն ուղարկեց։

15—III 11. 6471 թվի, ինդիկտիոնի 6-րդ տարվա մարտ ամսի 15-ին
963 24 տարեկան հասակում վախճանվեց Ռոմանոս կայսրը, թագավորելով 13 տարի, 4 ամիս և 5 օր[49]։ Ոմանք ասում են, թե նա ժամանակից շուտ վատնեց իր մարմինը՝ խայտառակ ու վավաշոտ արարքներում, իսկ ուրիշներն էլ գտնում են, որ նրան թունավորեցին[50]։

# ՎԱՍԻԼ ԵՎ ԿՈՍՏԱՆԴԻՆ

## [16 մարտ 963—16 օգոստոս 963 թթ.]

1. Նրա իշխանությունը ժառանգեցին իր որդիներ Վասիլն ու Կոստանդինը[51]՝ իրենց Թեոփանո մոր հետ։ [Ռոմանոսի] վախճանից երկու օր առաջ նա դուստր էլ ունեցավ, որին Աննա կոչեցին։

2. Ռոմանոսը բարձրահասակ էր, թեև հորից կարճ, համեստ էր, ուներ հեզ ու մեղմ բնավորություն։ Հակառակ իր երիտասարդ տարիքին, նա սուր միտք ուներ և ընդունակ էր, պետական գործերը վարելու շատ հմուտ, եթե, իհարկե, սպասավորները թույլ տային նրան դրսևորելու այդ գծերը։ Բայց այդ ամենամտերիմները նրան մղեցին դեպի երիտասարդության հատուկ հաճույքները, որպեսզի իրենք հասարակաց գործերին ձեռք գցելով, անհաշիվ հարստություն դիզեն, որով նրան անգործունյա ու անկարող դարձրին։

963 3. Ինդիկտիոնի նույն՝ 6-րդ տարվա ապրիլ ամսին տիրուհու[52] հրամանով, հակառակ Հովսեփի վճռական ընդդիմակայության[53], որ նախկինում էլ էր նա ցուցաբերում, Նիկեփոր Փոկասը Կոստանդնուպոլիս մտավ։ Նա ձիարշավարանում Կրետեից ու Բերիայից բերած ավարով հաղթական երթ կազմակերպեց։ Նա Հովհաննես Մկրտչի հանդերձից մի կտոր էլ բերեց, որ Բերիայում գտավ պահված։ Բրինգասը վախենում էր [Փոկասից] և

կասկածում նրա վրա։ [Փոկասը] սակայն նենգությամբ ու երկերեսանիությամբ կարողացավ նրան խաբել, ահա թե ինչպես. Փոկասը իր թիկնապահներից մեկի հետ ճաշի ժամանակ դնում է Հովսեփի տունը և դուռը թակելով, հրամայում դռնապանին հայտնել իր գալստյան մասին։ [Դռնապանը] հայտնում է, [Փոկասը] թույլտվություն ստանում ներս մտնելու, ապա առանձին մի կողմ քաշելով Հովսեփին, նրան ցույց տալիս մազե հանդերձները, որ իր հագուստների տակ էր հագել և երդումներով հավաստիացնում, թե ինքը վանականի կյանքի կողմնակից է և վաղուց հագած կլիներ [վանականի] սքեմը, աշխարհիկ կյանքի հոգսերից կհրաժարվեր, եթե այդ բանին արգելք չկանգներ կայսրերի՝ Կոստանդնի և Ռոմանոսի[54] հանդեպ իր տածած համակրանքը, և որ ինքը մտադիր է կատարել իր նպատակը։ Նա աղաչեց իզուր տեղ իր վրա չկասկածել։ Հովսեփը, տեսնելով դա, իսկույն նրա ոտքերն է ընկնում, ներողություն խնդրում, հավաստիացնում, թե չի հավատա նրա դեմ ուղղված և ոչ մեկի ամբաստանություններին։

4. Բրինգասը կասկածում էր նաև Ստեփանոս կայսեր վրա[55], որ դեռ կենդանի էր, աքսորում՝ Մեթիմնեում[56], նա ամեն կերպ ջանում էր, որ նրան արտակարգ զգոնությամբ հսկեն։ Սակայն [Ստեփանոսը] ավագ շաբաթվա տոնին, ստանալով սուրբ հաղորդությունը, հանկարծակի մեռավ, առանց որևէ պատճառի։ Նրա գլուխը Թեոփանոն կերավ, թեև նրանից շատ հեռու էր ապրում։

5. Բուլղարների թագավոր Պետրոսը[57] իր կնոջ մահվան [առ-
968/ թիվ] իբրև թե ցանկանալով վերականգնել խաղաղությունը,
969 կայսրերի հետ հաշտության պայմանագիր կնքեց, որպես սլա-
տանդ տալով իր երկու որդիներին՝ Բորիսին և Ռոմանոսին։ Փոքր
անց Պետրոսը վախճանվեց, իսկ նրա երկու որդիները Բուլղարիա
ուղարկվեցին՝ իրենց հոր թագավորությունն ստանալու և կոմ-
սաձագերի վտանգի առաջն առնելու[58]. Դավիթը, Մովսեսը, Ահա-
րոնն ու Սամուիլը Բուլղարիայում մեծ դեր խաղացած կոմսերից
մեկի որդիները, ապստամբություն էին բարձրացրել և տակնու-
վրա էին անում Բուլղարիան[59]։ Այդպիսին էր ահա վիճակն այն-
տեղ։

6. Բրինգասը Նիկեփորի կողմից մեր սլատմած ձևով խաբվելով և թողնելով նրան տուն գնալ[60], զղջաց, նա շատ վատ զգաց. մտածելով, որ հիմարի պես բաց է թողել արդեն ցանցը

գցած որսին։ Նա մտահոգված էր այն հարցով, թե ինչպե՞ս, ի՞նչ մեքենայությամբ կպրծնի այդ գլխացավանքից։ Նա ամենապատակահարմարը գտեց նամակ գրել մագիստրոս Հովհաննես Ջմշկիկին[61], մի քաջ ու գործունյա, Փոկասից հետո հռոմայեցի զորավարների մեջ ամենաանվանի մարդուն, որ տվյալ պահին Անատոլիկոնի զորավարն էր[62], ինչպես նաև շատ հայտնի և անվանի մագիստրոս Ռոմանոս Կուրկուասին՝[63] արևելից ստրատելատին[64], և պատիվներ, նվերներ ու շնորհներ խոստանալով, ոտքի հանել՝ Փոկասին տապալելու։ Նամակներ գրվեցին, որոնց միտքը հետևյալն էր. եթե նրանք ոտքի կանգնեն ու տապալեն Փոկասին, նրան վանական խուզեն, կամ որևէ կերպ մեջտեղից հանեն, ապա արևելից սխոլերի դոմեստիկոսի բարձրագույն իշխանությունը կստանա Հովհաննեսը, իսկ արևմուտքի դոմեստիկոսինը՝ Ռոմանոսը։ Երբ նամակները հանձնվեցին հիշյալ մարդկանց, նրանք, Փոկասի նկատմամբ լինելով բարյացակամորեն տրամադրված, իսկույն կարդալ են տալիս նրան նամակները և կոչ անում զենքի դիմել ու մտածել ինչ-որ քաջ ու խիզախ գործ կատարելու։ Եթե նա զլանա կամ խուսափի, սպառնացին իրենց ձեռքով սպանել նրան։ [Փոկասը] մահվան սպառնալիքից սարսափած համաձայնվեց և ինդիկտիոնի նույն՝ 6-րդ տարվա հու-
963 լիս ամսի երկուսին, Ջմշկիկի դրդմամբ արևելից համայն զորքերի կողմից հռոմայեցիների կայսր հռչակվեց[65]։

7. Դա այդպես էր ըստ մեկ վարկածի։ Բայց մի վարկած էլ կա, որ ավելի ճիշտ է թվում, թե [Փոկասը] վաղուց ցանկություն ուներ թագավորության տիրանալու և նրան այնքան չէր խորովում [թագավորության] սերը, ինչքան կայսրուհի Թեոփանոյի։ Մայրաքաղաքում գտնվելու ժամանակ [Փոկասը] հանդիպել էր նրան և իր ամենահավատարիմ սպասավոր Միքայելին[66] բազմիցս ուղարկել նրա մոտ։ Ահա դրա պատճառով է, որ Բրինգասը կասկածում էր [Փոկասի] վրա։ Երբ նրա [կայսր] հռչակվելու մասին լուրը հասավ Կոստանդնուպոլիս, իրարանցում առաջացավ, հասարակաց հոգսերը հոգացող Հովսեփը ահուդողի մեջ ընկավ, նա ամենևին չգիտեր ի՞նչ անել, քանզի իրեն քաղաքացիները, իր ներփակ բնավորության պատճառով, չէին սիրում։ Երբ Նիկեփոր Փոկասը ամբողջ զորքով, ներբողվելով[66ա] իջավ Խրիսուպոլիս[67], Բրինգասը մտածեց որևէ մեկին կայսր հաստատել[68], ուզեց այդ միջոցով բանակի թափը կոտրել։ Երբ Փոկասը կայսր հռչակվեց, նրա հայր Վարդասը[69],

*որ այդ պահին մայրաքաղաքում էր գտնվում, ապաստան է հայցում Մեծ եկեղեցում, իսկ [Փոկասի] եղբայր Լևոնը, թեև ուժեղ հսկողության տակ էր գտնվում, փախուստի դիմեց և միացավ իր եղբորը։ Բրինգասը սրտաբեկ եղավ, ընկավ անելանելի դրության ու սարսափի մեջ։ Դժվարին կացության մեջ նա ի վիճակի չէր սիրաշահել ամբոխին, խաբել զանգվածներին։ Երբ պետք էր հեզ ու շոյող խոսքերով մեղմել զանգվածների թափը, նա ընդհակառակը գրգռեց ու գազազեցրեց նրանց. երբ բոլորը շտապում էին Մեծ եկեղեցի, նա զանգվածներին սպառնում էր, դիմելով նրանց մեծամիտ ու կոպիտ խոսքերով, թե «Ես ձեր հանդգնության ու անամոթության վերջ կտամ, այնպես կանեմ, որ դահեկանով գնված ցորենը ծոցում տեղավորվի»[70]։ Դեռ մի օր էլ չէր անցել այն պահից, երբ նա այդ բանն ասաց, (կիրակի օր էր,*
*963 օգոստոս ամսի իննին), երբ նույն օրվա երեկոյան Վասիլը,*
*Կոստանդին կայսեր պարակիմոմենոսը[71], որ Հովսեփին չէր սիրում և թշնամաբար էր նրա հանդեպ տրամադրված, իր բարեկամներին ու ազգականներին սեփական սպասավորներով քաղաքի բազում շրջաններն ուղարկեց, իր հակառակորդների բնակարանները։ Երկուշաբթի օրվա առաջին ժամից մինչև վեցերորդ ժամը նրանք քանդեցին, հողին հավասարեցրին քաղաքացիների բազում տներ, որոնցից ամենաերևելին Հովսեփինն էր։ Ավերակ դարձան ոչ միայն հակառակորդ համարվող նշանավոր ու քաղաքական գործիչների բնակարանները, այլ բազում հասարակ մարդկանց, որոնց հաշիվը չկա[72]։ Ով երբևիցե մեկի հետ հաշիվ ուներ, իր հետ բազում անկարգների տանելով, անարգել կերպով նրան բնաջնջում էր։ Նման անկարգությունների ժամանակ շատ մարդիկ էլ սպանվեցին։ Այդպիսի արարքներ գործելով, նրանք քաղաքի հրապարակներում, պողոտաներում, շուկաներում ու փողոցներում Նիկեփորին Բարեհաղթ էին ներբողում։ [Վասիլ պարակիմոմենոսը] Մեծ եկեղեցուց աղատում է Վարդասին՝ Փոկասի հորը, թշվառ փախստականին, որի գլխին դեռ կախված էր վտանգը, իսկ մի փոքր առաջ անչափ վիքված ու գոռոզ պարակիմոմենոս Հովսեփին նրա փոխարեն [Մեծ եկեղեցին] է մտցնում՝ որպես ապաստան հայցող մի ողորմելի մարդու, որի փրկությունը կասկածի տակ էր։ Վասիլ պարակիմոմենոսի մտերիմ մարդիկ տրիերաներ[73] պատրաստելով, կայսերական դրոմոնը[74] վերցնելով, ամբողջ նավատորմիղով անցնում են Խրիսուպոլիս և այնտեղից Նիկեփորին առնելով, բերում են*

14—VIII Հեբդոմոն[75], որտեղից իրենք և քաղաքի համայն դեմոսը, փա-
—963 առաբանություններով, ծափահարություններով, փողահարությամբ ու թմբկահարությամբ, համաժողովրդական շքերթով Ոսկե Դռնից[76] նրան մայրաքաղաք են բերում։ Լինելով Մեծ եկեղեցում, նրանք Պոլիևկտոս պատրիարքին համոզում են կայսերական թագը կապել նրա գլխին[77]։ Պոլիևկտոսը թագադրում է նրան աստծո Մեծ եկեղեցու ամբիոնում[78]։ Օրը կիրակի էր, օգոստոս ամսի 16-ը, ինդիկտիոնի 6-րդ տարին[79]։

# ՆԻԿԵՓՈՐ ՓՈԿԱՍ

## [16 օգոստոս 963—10 դեկտեմբեր 969 թթ.]

1. [Նիկեփորը] վանական ու սինկելլոս Անտոն Ստուդիտեսին ուղարկեց, պալատից Թեոփանոյին իջեցրեց և կարգադրեց Պետրիոնի պալատը[80] տանել։ Մի փոքր անց պարակիմոմենոս Հովսեփին էլ Պափլագոնիա[81] աքսորեց, այնտեղից էլ մի քիչ անց տեղափոխեց Ասեկրետիս կոչվող վանքը՝ Պիթիայում[82]։ Նա ամբողջ երկու տարի այնտեղ ապրեց և հոգին ավանդեց։ [Նիկեփորը] իր հորը՝ Վարդասին կեսար[83] հռչակեց։

963 2. Իսկ սեպտեմբեր ամսի 20-ին դիմակը դեն գցելով, դերասանության վերջ տալով, օրինավոր կարգով ամուսնացավ Թեոփանոյի հետ։ Նա այն ժամանակ միս էլ կերավ (այն օրից, երբ նախկին կնոջից ծնված որդի Վարդասը, դաշտում ձիավարելիս՝ իր զարմիկ Պլևսեսի հետ խաղալիս, պատահմամբ նիզակի հարվածի զոհ էր գնացել, նա հրաժարվել էր միս ուտելուց)։ Նա կամ իսկապես ծոմ էր պահում, կամ էլ կայսրերին խաբելու մտադրությամբ էր այդպես վարվում։ Դա աստված գիտե, մեկ էլ ինքը։ Ամուսնության հանդեսը տեղի ունեցավ պալատի Նոր եկեղեցում[84]։ Նրանք պետք է խորան մտնեին, Պոլիևկտոսը նրա ձեռքից բռնած մոտեցավ սուրբ վանդակապատին, ինքը մտավ սրբության սրբոցը, իսկ [Փոկասին] հրեց, ասելով, թե քանի չի կրել կրկնամուսնացողների վերաբերյալ տույժը, իրեն չի կարելի խորան մտնել։ Այդ բանը Նիկեփորին վշտացրեց և նա մինչև մահ [Պոլիևկտոսի] հանդեպ բարկացած մնաց։ Ամենուրեք լուր էր տարածվել, որը եկեղեցին քիչ չհուզեց, թե Նիկեփորը Թեոփանոյի մի զավակի կնքահայրն է դարձել։ Պոլիևկտոսը դրանից ուզեց

օգտվել և հարց բարձրացրեց, կամ նա կանոնի համաձայն կհրաժարվի կնոջից, կամ կհեռանա եկեղեցուց[85]։ Փոկասը միացավ Թեոփանոյին։ Նա հրավիրեց քաղաքում գտնվող եպիսկոպոսներին ու գլխավոր սենատորներին[86] և առաջարկեց այդ հարցի շուրջ խորհրդակցել։ Բոլորն ասացին, թե դա Կոպրոնիմոսի[87] սահմանած օրենքն է, որից պետք է հրաժարվել։ Դրա վրա նրանք թողության մի լիբելլոս[88] ստորագրեցին, և հանձնեցին նրան։ Երբ Պոլիևկտոսը դարձյալ հրաժարվեց կայսեր հաղորդություն տալ, կեսարը[89] բացեիբաց վկայեց, թե Փոկասը կնքահայր չի եղել։ Մեծ պալատի պրոտոպապաս[90] Ստիլիանոսն էլ, որից, ինչպես ասում են, սկիզբ առավ այդ լուրը, ներկայանալով սինոդին և սենատին, երդվեց, որ ինքը ոչ տեսել է, ոչ էլ լսել, թե Վարդասը կամ Նիկեփորը կնքահայր է եղել։ Պոլիևկտոսը, թեև համոզված էր, որ Ստիլիանոսը բացահայտ սուտ երդում է տալիս, քավություն տվեց կնքահայրության զանցանքին և նա, ով անցյալում հանդես էր գալիս կրկնամուսնության համար տույժ սահմանելու, այս մեծ մեղսագործության կողքով անցավ։

3. Նիկեփորը իր թագավորության առաջին տարին մարտունակ զորք ու նավատորմիղ տալով, Սիկիլիայի սարակինոսների դեմ ուղարկեց պատրիկ Մանուիլին, իր հորեղբայր Լևոնի ապօրինի որդուն, ով նախկինում սխոլերի դոմեստիկոս էր եղել և ծերունի Ռոմանոսի[91] ժամանակ կուրացվել։ [Նիկեփորը] իր անձի համար անպատվություն էր համարում, որ իր իշխանության օրոք հռոմայեցիների կայսրությունը սարակինոսներին հարկատու է։

4. Բայց քանի որ առիթն է ներկայացել, անհրաժեշտ է ասել, թե ինչո՞ւմն է [հռոմայեցիների]՝ սարակինոսներին հարկատու լինելը, և ե՞րբ է այդ բանն սկիզբ առել։ Երբ Սիրակուսա քաղաքը[92] Վասիլ Մակեդոնացու[93] օրոք գրավվեց Աֆրիկայի սարակինոսների կողմից և ողջ կղզին ընկավ նրանց տիրապետության տակ, նրա քաղաքները հիմնահատակ կործանվեցին, բացի Տավորմոսից[94], որը հագարացիները, օգտագործելով որպես ռազմական խարիսխ, դիմացի մայր ցամաքին տիրացան։ Այնտեղից նավելով, նրանք թալանում էին կղզիները մինչև Պելոպոննեսոս և այլ վայրեր, որտեղ դեռևս չէին սպասում նրանց հայտնվելը։ Վասիլ կայսրը, ընկնելով անել վիճակի մեջ, նրանց ընդդիմակայելու կարող մի անձնավորություն էր փնտրում։ Նա նպատակահարմար գտավ այդ գործը վստահել իր նախնիներից

մեկի օրոք աչքի ընկած սխոլերի դոմեստիկոս պատրիկ Նիկեփորին, մականունը՝ Փոկաս[95]։ Այս Նիկեփորը, Նիկեփոր կայսեր պապն էր, մի քաջարի ու խոհեմ մարդ, աստծու հանդեպ բարեպաշտ, իսկ մարդկանց հանդեպ՝ արդար։ Նա մի զորամասով անցավ Իտալիա և կարճ ժամանակամիջոցում սարակինոսներին Իտալիայից դուրս շպրտելով, ստիպեց հանդիստ մնալ Սիկիլիայում։ Պատմում են, թե իտալացիներն այս մարդու առաքինության հավերժական հիշատակի համար տաճար կառուցեցին, ոչ ի նշանավորումն [իրենց ձեռք բերած] ազատության, այլ արժանահիշատակ մի այլ գործի։ Երբ հռոմայեցիները պետք է իրենց զորավարի հետ տուն վերադառնային, նրանք բազում իտալացիների բռնելով, ուզում էին որպես ստրուկ դիմացի ափը հանել։ Երբ այդ բանն իմացվեց, Նիկեփորը մինչև Բրենտեսիոն[96] հասնելը (այնտեղից պետք է նավերին դեպի Իլլիրիա)[97] ոչինչ չասաց, ոչ էլ որևէ կասկած հարուցեց, բայց երբ հասան [Բրենտեսիոն], ինքն անձամբ զինվորներից յուրաքանչյուրին նավ բարձրացնելով ճամփու դրեց, իսկ տեղացիներին թողեց աներկյուղ բնակվել իրենց երկրում։ Իտալիան խաղաղ ապրեց մինչև Կոստանդին Ծիրանածինի և նրա մոր օրերը։ Այն ժամանակներից սկսյալ սարակինոսները դարձյալ ոտքի ելան և որևէ դիմադրության չհանդիպելով, Իտալիայի վրա ասպատակ սփռեցին։ Պետությունը, համոզվելով, որ ի վիճակի չէ միաժամանակ ընդդիմակայել և՛ արևելքի, և՛ արևմուտքի սարակինոսներին, նամանավանդ, որ բուլղարներն էլ վերացրել էին հաշտության պայմանագիրը, որոշեց Սիկիլիայի սարակինոսների հետ դաշինք կնքել։ Կայսերական սենեկապաններից[98] մեկի, Կալաբրիայի[99] զորավար Եվստաթիոսի միջոցով պայմանագիր ստորագրվեց, որի համաձայն [հռոմայեցիները] սարակինոսներին վճարում են տարեկան 22 հազար ոսկի։

5. Պայմանագրի ստորագրումից հետո Կալաբրիայի զորավար նշանակվեց պատրիկ Հովհաննեսը, մականունը Մուզալոն, որին, սակայն, տեղացիները, իրենց հետ դաժան վարվելու պատճառով, սրի քաշեցին և անցան Լոնգիբարդիայի ռեքս Դանդուլֆոսի[100] կողմը։ Այն ժամանակ հռոմայեցիների դայիսոնը դեռ Ռոմանոս ծերունու ձեռքում էր գտնվում, որը նպատակահարմար գտավ նավերով զինվորներ ուղարկել և ամբողջից պոկված մասը վերստին փրկել։ Ուղարկվեց նաև Դանդուլֆոսին ծանոթ Թեսաղոնիկեցի Կոսմաս պատրիկը, որն անցնելով Իտալիա և

հանդիպելով Դանդուլֆոսին, հորդորում էր հրաժարվել հռոմայեցիների հողերից, հաշտվել կայսեր հետ՝ թշնամու փոխարեն բարեկամ դառնալ ու դաշնակից։ Սկզբում նա մերժեց, իսկ Կոսման, լինելով խոհեմ ու ողջամիտ մարդ, Դանդուլֆոսին ասաց. «Իմ պարտքն էր բարեկամական փրկարար խորհուրդներ տալ, իսկ եթե դու չես ուզում ուշադրություն դարձնել իմ օգտակար խոսքերին, ապա ճշմարտության դեմ մեծապես մեղանչելուդ կհամոզվես, երբ քեզ էլ, համայն ժողովուրդին էլ մեծագույն վտանգների ենթարկես, ի վիճակի չլինելով ընդդիմակայել այդպիսի մեծ ու հզոր պետության»։ Դանդուլֆոսը համոզվեց, որ պատրիկը իսկապես լավ խորհուրդ է տալիս, ընդառաջ գնաց նրա հորդորին և դաշինք կնքեց։ Նա խորհուրդ տվեց ապստամբած բանակաթեմերի կառավարիչներին վերադառնալ նախկին իշխանության ներքո, ճանաչել իրենց կայսեր։ Նրանք համոզվեցին, և Իտալիայում ու Լոնգիբարդիայում դարձյալ տիրեց կայուն խաղաղությունը։

6. Բուլղարների առաջնորդ Սիմեոնը[101], որը հռոմայեցիների դեմ բազում հաղթանակներ էր տարել և այդ առթիվ գոռոզացել, երազում էր ձեռք գցել նաև հռոմայեցիների թագավորությունը։ Նա աֆրիկացիների տեր Փատլունի[102] մոտ դեսպանություն ուղարկեց, կոչ անելով մայրաքաղաքի[103] դեմ նավատորմիղ դուրս բերել, խոստանալով իր կողմից բազմաթիվ և ուժեղ զորքով շարժվել Թրակիայի վրայով, և իրար միանալով, ցամաքով ու ծովով պաշարել մայրաքաղաքը, նրա հարստությունը հավասար կերպով իրենց միջև բաժանել, որից հետո Փատլունը պետք է տուն վերադառնար, իսկ ինքը մնար Կոստանդնուպոլսում։ Բուլղարներն ահա թաքուն նավեցին դեպի Աֆրիկա, և համոզված լինելով, որ Սիմեոնի առաջարկությունը օգտակար է, իրենց հետ վերցրին երևելի սարակինոսներից ոմանց՝ որոշումը ամուր հիմքերի վրա դնելու համար։ Վերադարձին, սակայն, նրանք ընկան կալաբրացիների ձեռքը և սարակինոսների հետ Բյուզանդիոն ուղարկվեցին։ Կայսրը (ծերունի Ռոմանոսը), տեսնելով նրանց և ճշգրիտ իմանալով նրանց միջև կայացած համագործակցության մասին և շատ լավ հասկանալով, որ եթե այդ բանն իրականանա ինքը մեծ գլխացավանքի մեջ կընկնի, մտածեց մեծահոգություն ու բարեգործություն ցուցաբերելով, սարակինոսներին սանձել։ Նա բուլղարներին բանտ նետեց, իսկ սարակինոսներին առատ նվերներ տվեց, իրենց տիրոջ թանկարժեք ընծաներ ուղարկեց,

նրանց անվնաս ճամփու դրեց, պատվիրելով հայտնել իրենց տիրոջ, թե հռոմայեցիների կայսրերը սովոր են այդ կերպ փոխհատույց լինել իրենց թշնամիներին։ Նա բացատրություն տվեց նաև տարեկան հարկատվության մասին[104], թե ուշացրել է այն ոչ թե ինչ-որ հետաձգելու կամ ձգձգելու նպատակով, այլ երկրում տիրող տակնուվրայության պատճառով։ Սարակինոսները, վերադառնալով իրենց տիրոջ մոտ, իրենց հանդեպ կայսեր ցուցաբերած վերաբերմունքի մասին պատմեցին, ներբողեցին նրա սիրալիր վերաբերմունքը, հանձնեցին նաև նրա համար նախատեսված ընծաները։ Փատլունը իր լսածից գոհ մնալով, հռոմայեցիներին զիջեց իրեն պարտք մնացած հարկերի կեսը՝ քսաներկու հազարից տասնմեկ [հազարը] կտրեց։ Այդ հարկը սարակինոսներին էր վճարվում [Ռոմանոսի] օրից մինչև Նիկեփորի գահ բարձրանալը։ Իշխողների մեծախոհության, երկրների միջև հաստատված արդար փոխհարաբերությունների պատճառով, հպատակներն էլ անվրդով կյանք էին վարում, իսկ հարկն էլ սարակինոսներին վճարվում էր անխափան։ Եթե իշխանությունը տրվի անարդար և ագահ մարդկանց, ապա դրանից հպատակ ժողովուրդն էլ է տուժում և սարակինոսների հետ կնքված հաշտությունը սասանվում։ Երբ Ծիրանածինը[105] Կրինիտես Խալդին[106] նշանակեց Կալաբրիայի [զորավար], Աֆրիկայի ու Սիկիլիայի սարակինոսները սովի ու Կյուրենեի[107] սարակինոսների հետ ունեցած պատերազմի պատճառով դատապարտված էին կործանման, բայց Կրինիտեսն իր ագահությամբ փրկեց նրանց, իսկ իր հպատակ ժողովրդին էլ անչափ վնասեց։ Նա տեղացիներից շատ էժան գներով սննդամթերք էր գնում և թանկ-թանկ վաճառում սարակինոսներին, որոնք շատ փող ունենալով և ճնշվելով սովից ու թշնամիներից, հանգիստ վճարում էին։ Կրինիտեսը, սակայն, Կոստանդնի[108] կողմից պաշտոնանկ արվեց, խայտառակ կերպով վճարեց փողերը և մեռավ ծերության մեջ։ Պատերազմի ժամանակ հռոմայեցիները ընդունեցին իրենց կողմն անցած փախստական կարքեդոնացիների[109], որոնց կարքեդոնացիները ամենևին էլ չէին պահանջում։ [Սարակինոսները] նույնիսկ տարեկան հարկից հրաժարվեցին, վախենալով, որ դա կխրտնեցնի հռոմայեցիներին և նրանք կդադարեցնեն պարենի վաճառքը, իսկ իրենք սովամահության վտանգի առջև կկանգնեն։ Բայց երբ պատերազմն ավարտվեց, նրանք պահանջեցին և՛ փախստականներին, և՛ հարկը։ Երբ նրանց պահանջին ոչ ոք ուշադրություն չը-

դարձրեց, նրանք վերացրին խաղաղությունը և ամեն օր նավելով ավարառում էին Կալաբրիան։

7. Կոստանդին կայսրը (ինչպես և նրա աները)[110] չուզեց քաղցրությամբ լուծել սարակինոսների հետ ունեցած [վեճը] և վերանորոգել խաղաղությունը, այլ նպատակահարմար գտավ ավելի շուտ հարցը լուծել պատերազմով։ Նա ոտքի հանեց մարտունակ զորք, նրա հրամանատար նշանակեց պատրիկ Մալակենոսին և Կալաբրիա ուղարկեց, հրամայելով միանալ երկրի զորավարին (նա մի փոքր առաջ հիշատակված Պասքալիոսն էր) և միասին գլխավորել կարքեդոնացիների ու սիկիլիացիների հրահրած պատերազմը։ Նավատորմիղ էլ ուղարկվեց Մակրոիոաննեսի հրամանատարությամբ։ Նրանք տեղ հասնելով, իրենց ագահության պատճառով տեղացիների գլխին անթիվ փորձանքներ բերեցին, այլ վատություններ էլ արեցին, ինչ նույնիսկ իրենք թշնամիները չէին անի։ Երբ այդ մասին իմացավ սարակինոսների ամիրա Աբուլխարեն (Փատլունն արդեն մահացել էր), գոտեպնդեց իր մարդկանց, հորդորեց չվախենալ իրենց ազգակիցների գլխին այդպիսի փորձանքներ բերող զորքից և ընդդիմակայելով, ուժեղ մարտ տվեց, փայլուն ու հոյակապ հաղթանակ տարավ։ Քիչ էր մնացել զորավարներն էլ գերի ընկնեին։

8. Դրանից հետո Կոստանդին կայսրը Հովհաննես ասեկրե-
952 տին[111], մականունը Պիղատոս, ուղարկեց սարակինոսների հետ
ամառ խաղաղության շուրջ բանակցություններ վարելու։ [Սարակինոսները] սովոր չեն փքվել տարած հաղթանակներով, այլ հզոր վիճակում էլ խաղաղության կողմնակից են, դրա համար ուրախությամբ ընդառաջ գնացին և որոշ ժամանակով հաշտություն կնքեցին։ [Հաշտության] վերացումից հետո նրանք դարձյալ նավելով, անցնում ու ավարառում էին կալաբրացիներին։ Կոստանդինը նրանց դեմ վերստին հետևակ ու ծովային ուժ է ուղարկում։ Նավատորմիղը ղեկավարում էին Կրամբեաս մականունով մեկը և Մորոլեոնը, իսկ հետևակի զորավարն էր պատրիկ Մարիանոս Արգիրոսը։ Հասնելով Հիգրունտ[112] և նավերը ափ քաշելով, նրանք նախապատրաստվում էին Սիկիլիա նավելու։ Սարակինոսները այդ լուրի վրա շփոթվեցին (այն բերնե բերան տարածվելով ծավալվեց, և իրադրությունը եղածից ավելի սարսափելի ներկայացվեց) և վախենալով փորձանքի հանդիպել, թշնամին իրենց էր մոտեցել անսպասելի կերպով, երբ իրենք անպատրաստ վիճակում էին, խուճապի մատնված լքեցին իրենց ճամբարը և Հռե-

գիոնից[113] փախան անցան Սիկիլիա։ Պանորմոս նավելու ժամանակ նրանց գլխին սոսկալի փոթորիկ պայթեց, նավերն ալեկոծությունից ջարդուփշուր եղան, բայց ավելի շուտ իրենց կողմից անարգվող Քրիստոս աստծուց, և գլխովին կորստյան մատնվեցին։ Դրանից հետո ահա նրանք հռոմայեցիների հետ հաշտություն կնքեցին և խաղաղությունը անխախտ պահպանվեց մինչև Փոկասի գահ բարձրանալը։

9. Երբ նա կայսր հռչակվեց, կատարյալ խայտառակություն համարելով սարակինոսներին հարկատու լինելը, ինչպես ասացինք, Մանուիլին զինական ուժով նրանց դեմ ուղարկեց։ Լինելով երիտասարդ և վերջերս զինվորական ծառայության մեջ մտած, զորավարելու անկարող և բացասական բաղում այլ գծերի տեր, ուշադրություն չդարձնելով լավ խորհուրդ տվողներին, Սիկիլիայի քարքարոտ ու դժվարանցանելի վայրերում իր հա-
964 մայն զորքով շրջապատման մեջ ընկավ ու գլխովին ոչնչացավ։ Գերի ընկավ նաև նավատորմիղի դրունգարը՝[114] ներքինի պատրիկ Նիկետասը և շղթայակապ Աֆրիկա ուղարկվեց։ Ահա այսպիսի փորձանքի մեջ ընկավ Մանուիլը, դառնալով և ողջ զորքի կորստյան պատճառ։

963 վերջ. 10. Կայսրը այդ նույն ժամանակ Կիլիկիայի դեմ ուղարկեց մագիստրոս Հովհաննես Չմշկիկին, որն արդեն արևելից զորքերի դոմեստիկոս էր նշանակված։ Հասնելով Ադանա քաղաքը, նա հանդիպեց համայն Կիլիկիայից զինվորագրված ընտիր հագարացիների և մարտի բռնվելով, գլխովին պարտության մատնեց։ Հագարացիների մի մասը մարտի դաշտում սրի քաշվեց, իսկ մյուսը՝ շուրջ հինգ հազար հոգի, ձիերից ցած իջնելով, փախուստի դիմեց մի գահավեժ ու դժվարանցանելի լեռ և ապավինելով վայրի հարմար դիրքին, սկսեց համառորեն դիմադրել հարձակվողներին։ Հովհաննեսը շրջապատեց նրանց, բայց համոզվելով, որ ձիերով ի վիճակի չէ նրանց դեմ պայքարել, հրամայեց զինվորներին ձիուց ցած իջնել և ինքն էլ նրանց հետ ոտքով բարձրացավ լեռը։ [Հովհաննեսը] նրանց բոլորին պարտության մատնեց ու սրի քաշեց։ [Սարակինոսներից] և ոչ ոք փախուստի չդիմեց, արյունը գետի պես հոսեց բարձրից ցած, որի պատճառով լեռը «Արյան լեռ» կոչվեց։ Այս սխրանքը է՛լ ավելի փառավորեց Հովհաննեսի անունը և սարակինոսների կատարյալ կորստյան պատճառ դարձավ։

964 11. Նիկեփորը իր թագավորության երկրորդ տարին, ինդիկ-

*տիոնի 7-րդ տարվա հուլիս ամսին, հռոմայեցիներից և դաշնակից իբերներից ու հայերից[115] բաղկացած ծանր զինական ուժով Կիլիկիա արշավեց, հետը տանելով նաև իր կնոջ Թեոփանոյին և նրա զավակներին։ [Թեոփանոյին] նա թողեց Կիլիկիայից դուրս գտնվող Դրիզիոն կոչվող ինչ-որ բերդում, իսկ ինքը մուտք գործելով Կիլիկիա, ավերեց Անազարվա, Ռոսսոս, Ադանա քաղաքները և այլ բազում բերդեր։ Նա չհամարձակվեց գնալ դեպի Տարսոն և Մոպսուեստիա[116], քանի որ ձմեռն արդեն վրա էր հասել։ Տեղում անհրաժեշտ քանակությամբ զորք թողնելով, նա գնաց Կապադովկիա՝ ձմեռելու։*

*12. Գարնան սկզբին նա դարձյալ մտավ Կիլիկիա և իր զորքերը երկու մասի բաժանելով, մի մասը իր եղբայր Լևոնի գլխավորությամբ թողեց Տարսոնը պաշարելու, իսկ մնացած մասն էլ ինքը վերցնելով, եկավ Մոպսուեստիա։ Համառ պաշարման ենթարկելով այն, և դաշնակից ունենալով նաև [քաղաքում տարածված] սովը, նա գրավեց քաղաքի մեկ մասը. քաղաքը մեջտեղից կիսում է Սարոս[117] գետը, կարծես այն երկու քաղաք լինի։ Երբ, ինչպես ասվեց, քաղաքի մեկ մասը գրավվեց, սարակինոսները ապաստանեցին մյուս մասում, գրավված կեսը նախօրոք ամեն կողմից կրակի տալով։ Բայց կայսրը ավելի համառ պաշարմամբ գրավեց և մյուս մասը. [թշնամիներից] և ոչ ոք չկարողացավ այնտեղից ճողոպրել։ Ինչ վերաբերում է Տարսոնը պաշարող կայսեր եղբայր Լևոնին, ապա նա իր զորքի մի մասը Մոնաստիրիոտեսի[118] գլխավորությամբ խոտ ու պարեն հայթայթելու ուղարկելով, փորձանքի հանդիպեց, քանզի այդ գործով զբաղվողները անզգուշորեն դես ու դեն ցրվեցին, իսկ տարսոնցիներն էլ գիշերով աննկատ դուրս գալով հարձակվեցին այդպես ցրված վիճակում գտնվողների վրա և շատերին կոտորեցին, այդ թվում և հենց Մոնաստիրիոտեսին։ Տարսոնցիները, տեղեկանալով Մոպսուեստիայի առման մասին, և պաշարումից ու սովից նեղվելով, Լևոնի մոտ պատգամավորություն ուղարկեցին, կոչ անելով կայսեր ու պաղատելով պատժի չենթարկվել, որի դիմաց խոստացան հանձնել իրենց քաղաքը։ Նա թույլ տվեց յուրաքանչյուրին որոշակի [մեծության] բեռով դուրս գալ, իսկ քաղաքի մնացած ողջ հարստության տերը դարձավ։*

*13. Քաղաքի գրավումից երեք օր անց Եգիպտոսից Տարսոնին օգնության հասավ մի հսկայական նավատորմիղ՝ լի ցորենով և այլ պարենամթերքով։ Բայց կայսեր կողմից ծովափին հսկելու*

*նշանակված զինվորները, թույլ չտվեցին նրանց խարիսխ գցել, ոչ
էլ ափ դուրս գալ։ Նրանք չգիտենալով տվյալ դեպքում ինչպես
վարվել, ետ դարձան, հանդիպելով սարսափելի նավաբեկության,
965 նրանք ցրիվ եկան և՛ քամիներից, և՛ կայսեր ռազմանավերի կող-
օգոս. մից հարձակման ենթարկվելով։*

*14. Կայսրը ավարառելով ու մոխրի վերածելով Կիլիկիայի
մնացած քաղաքները, ինդիկտիոնի իններորդ տարվա հոկտեմբեր
966 ամսին վերադարձավ Կոստանդնուպոլիս, իր հետ տանելով նաև
Տարսոնի և Մոպսուեստիայի դարբասները, որոնք ոսկով պատե-
լով, մայրաքաղաքը բերեց որպես զարդ։ Մի [դարբասը] նա
կանգնեցրեց ակրոպոլսի[119] վրա, իսկ մյուսը՝ Ոսկե Դռան պարս-
պի վրա։ Աստծուն էլ նա ընծաներ մատուցեց, որպես իր բանակի
տասանորդ՝ գերի տարված պատվական խաչերը. [Նրանք տարվել
էին այն ժամանակ], երբ սխոլերի գոմեստիկոսը Ստիպիոտեսն
էր, որը Տարսոնը պաշարելիս, իր տխմարությամբ զորքերը կա-
տարյալ կորստյան մատնեց։ Ահա դրանք նա մատուցեց աստծո
Բանի իմաստության[120] ամենասուրբ տաճարին։*

*15. Իր թագավորության նույն երկրորդ տարին Նիկեփորը
Կիպրոս կղզին էլ ամբողջությամբ հռոմայեցիների տիրապետու-
թյանը ենթարկեց[121], պատրիկ Նիկետաս Խալկուցիսի միջոցով
հագարացիներին այնտեղից դուրս շպրտելով։ Իսկ իր թագավո-
րության երրորդ տարին, գարնան սկզբին, կայսրը դարձյալ ներ-
խուժեց Ասորիք։ Նա հասավ Անտիոք, բայց նրա վրա չհարձակ-
վեց, քանզի համոզված էր, որ անտիոքացիք Կիլիկիայի քաղաք-
ների գլխին եկած փորձանքից սարսափած իր անունն անգամ ի
վիճակի չէին լինելու լսել։ Շրջանցելով [Անտիոքը], նա Ասորիքի
խորքերը գնաց, ավերեց Լիբանանին մերձակա ծովափնյա բա-
զում քաղաքներ ու գյուղեր և դեկտեմբեր ամսին վերադարձավ։
Անտիոքացիները սակայն համառ դիմադրություն ցուցաբերեցին,
քանզի շրջակայքից քաղաք էր մտել օգնություն ցուցաբերելու
բազում ժողովուրդ։ Բացի այդ, հռոմայեցիների զորքի անհրա-
ժեշտ պարենն էլ սպառվելու վրա էր, նաև երկնքից տեղացած
անձրևներից մի անանցանելի ճահիճ էր գոյացել։ Ահա դրա
պատճառով [կայսրը] ձեռնունայն մայրաքաղաք վերադարձավ,
իր հետ բերելով նաև Հիերապոլսի[122] առման ժամանակ այնտեղ
գտած աղյուսը[123], որի վրա կար մեր աստծու՝ Քրիստոսի անձե-
ռակերտ պատկերը, ապա նաև Հովհաննես Մկրտչի մազերից ար-
յունաներկ մի փունջ։*

*16. Այսպիսին էր Նիկեփորը, նա նման փայլուն ռազմավարությամբ մեծապես ընդլայնեց հռոմայեցիների տիրապետությունը (նա ավելի քան հարյուր քաղաք ու բերդ գրավեց Կիլիկիայում, Ասորիքում, Լիբանանյան Փյունիկեում, որոնցից խոշորագույններն ու անվանիներն են Անազարվան, Ադանան, Մոպսուեստիան, Տարսոնը, Պագրասը, Սիննեֆիոնը[124], Լավոդիկիան, Հալեպը։ Նա հարկատու դարձրեց Փյունիկեի Տրիպոլիսը և Դամասկոսը)։ Բայց հակառակ այդ բոլորին, նա ամենքի համար ատելի էր, բոլորը ծարավի էին տեսնելու նրա կործանումը։ Թե ինչո՞ւ, այդ մասին խոսք կլինի իր տեղում։*

968 *17. Նիկեփորը Անտիոքից մայրաքաղաք վերադառնալու ճանապարհին Տավրոսը (որ տեղացիները Սև լեռ են անվանում)[125] անցնելիս, լեռան մեջտեղում, մի անառիկ բլրի վրա բերդ կառուցեց, իսկ Միքայել Բուրցիսին[126] պատրիկի աստիճանը շնորհելով, թողեց [այդ] բերդում, անվանելով Սև լեռան զորավար[127]։ Նրան նա կարգադրեց արթուն հսկել ու ամեն միջոցներով խոչընդոտել անտիոքացիների [քաղաքից] դուրս գալը՝ անհրաժեշտ պարենամթերքը ձեռք բերելու նպատակով։ Նա թողեց նաև իր ներքինիներից մեկին, ստրուկ Պետրոսին, մի գործունյա մարդու, նշանակելով Կիլիկիայի ստրատոպեդարխ[128], հրաման տրվեց զորքը ցրել՝ ձմեռելու և սպասել իր գալստյան՝ հաջորդ տարի։ Պատմում էին, թե կայսրը կարող էր գրոհով վերցնել Անտիոքը, բայց դիտմամբ ձգձգել [քաղաքի] առումը, վախենալով տարածում գտած կանխագուշակությունից։ Բոլորի շրթներում այն խոսքն էր, թե Անտիոքի գրավման հետ միասին կայսրը կմահանա։ Հարկավ, նա այդ բանից վախեցած, չհարձակվեց Անտիոքի վրա. Պետրոսին ու Բուրցիսին էլ կարգադրեց [քաղաքի] վրա ոչ մի հարձակում չգործել։ Նիկեփորնահա մեր ասածի պես անելով, մտավ մայրաքաղաք։ Սակայն Բուրցիսը, լինելով Անտիոքի կողքին և ցանկանալով հավերժական փառքի արժանանալ, անուշադրության մատնեց կայսեր խորհուրդները, նա գիշեր ու ցերեկ մտածում էր քաղաքը գրավելու ուղիների մասին։ Նա շարունակ գնում և համաձայնության գալու բանակցություններ էր վարում անտիոքացիների հետ։ Վերջիններս սակայն մեծամըտացած հրաժարվում էին բանակցությունների մեջ մտնել։ Դրա վրա [Բուրցիսը] ծածուկ կերպով բարեկամացավ մի սարակինոսի հետ (նա Ավլաքսն էր), նվերներով ու խոստումներով կաշառեց նրան և կարողացավ [նրանից] ստանալ Անտիոքի*

արևմտյան աշտարակներից մեկի՝ անունը Կալլա[129], չափերը։ Դրանից հետո նա մինչև աշտարակի գագաթը հասնող աստիճաններ շինեց և օգտվելով մի խավար ու անձրևոտ գիշերից, ծածուկ կերպով աստիճանները հենեց պարսպին։ Իր երեք հարյուր մարդկանցով նա վեր բարձրացավ և սրի քաշեց այդ, ինչպես և դրա կողքի աշտարակի պահապաններին։ Իր երեք հարյուր մարդկանցով տիրանալով այս երկու աշտարակներին, նա ստրատոպեդարխի մոտ անհապաղ սուրհանդակ ուղարկեց հայտնելու, որ շտապի համայն զորքով գալ, քանզի քաղաքն արդեն գրավված է։ Պետրոսը, սակայն, այդ տեղեկությունն ստանալով, զլացավ ու խուսափեց, նա երկյուղում էր կայսեր զայրույթից, որ նրա հրամանները դրժելու պատճառով կարող է գլխին փորձանք գա։ Բուրցիսը պնդում էր, իրար ետևից սուրհանդակներ ուղարկում, կոչ անելով շտապ տեղ հասնել, քանզի ի վիճակի չէ այլևս դիմանալ պաշարման (անտիոքացիք, իմանալով աշտարակների գրավման մասին, ամեն տեղից շտապեցին ու ջանում էին պաշարել աշտարակները։ Նրանք բազում նետեր էին արձակում, բաբաններ գործի դնում, կրակ վառում, դիմում ամեն մի քայլի, ինչ պետք է անեին մարդիկ, որոնց գլխին կախված էր կանանց ու երեխաներով հանդերձ կործանվելու վտանգը, ովքեր չէին ուզում կորցնել արևելքի ամենաերևելի քաղաքը)։ Ստրատոպեդարխը, երկյուղելով, որ այսքան ու այսպիսի մարտիկների ու քաղաքի՝ իր անհնազանդության պատճառով տեղի ունենալիք կորուստը հռոմայեցիների պետությանը վնաս կբերի, իր կամքին ու ցանկության հակառակ համայն զորքով շտապ տեղ հասավ։ Նա Բուրցիսի մարդկանց գտավ ուժասպառ վիճակում. նրանք երեք օր ու գիշեր պաշարման մեջ էին։ Անտիոքացիք, իմանալով [Պետրոսի] հարձակման մասին, հուսաբեկ եղան, նրանց թափը կոտրվեց։ Բուրցիսը առիթից օգտվելով, դարբասի մոտ իջավ, թրով կտրեց կղպանքի լծակը, բացեց դարբասները և Պետրոսին համայն զորքով հանդերձ ներս մտցրեց։ Ահա այս ձևով գրավվեց մեծ ու հռչակավոր Անտիոքը[130]։ Նիկեփորը պետք է որ ուրախանար այսպիսի քաղաքի առման առթիվ և իր [ճակատագիրը] աստծուն վստահեր, բայց նա, ընդհակառակը, տխրեց, ստրատոպեդարխին պատասխանատվության ենթարկեց, իսկ Բուրցիսի ոչ միայն եռանդն ու քաջությունը բանի տեղ չդրեց, նրա գործած սխրանքին արժանի պարգև չշնորհեց, այլ գլխին լուտանքներ թափելով, պաշտոնանկ արեց, հրամայեց տնային կալանքի մեջ պահել նրան։

*18. Սրա (և դեռ ավելիքի) պատճառով ահա Նիկեփորը բոլորին ատելի ու գարշելի դարձավ։ Սկզբում նա մարդկանց աչքից ընկավ այն պատճառով, որ իր զինվորների գործած բաղում զանցանքները անպատիժ թողեց, ասելով, թե «զարմանալու ոչինչ չկա, որ այսքան բազմության մեջ մի քանիսն էլ անկարգություններ են գործում»։ Երբ մտավ քաղաք և [իմացավ], որ բաղում թե՛ երևելի և թե՛ շարքային մարդկանց ունեցվածքը հափշտակվել է, նա ոչ մեկին պատասխանատվության չենթարկեց, աչք փակեց անօրեն արարքների հանդեպ։ Նա բավականություն էր զգում այն խայտառակություններից, այն բանից, որ անկարգ մարդիկ քաղաքացիներին վատություններ էին գործում և այն էլ այնպիսի մարդկանց նկատմամբ, որ քիչ բան չարեցին նրան գահ բարձրացնելու համար։ Անվերջ արշավանքների գնալու պատճառով նա չարաչար էր գործածում հպատակ ժողովրդին, ոչ միայն հարկերը բարձրացնելով և ամեն տեսակի միջոցների գանձմամբ ու անհիմն բռնագրավումներով։ Նա ի վերա ամենայնի կրճատեց այն նվերները, որ սենատին էին տրվում, այն պատճառաբանությամբ, որ պատերազմի համար փողի[130] կարիք կա։ Դեռ ավելին. նա կտրեց բարեգործական հիմնարկություններին ու եկեղեցիներին բարեպաշտ կայսրերից ոմանց կող-*
964 *մից օրենքով հաստատված վճարումները, օրենք սահմանեց, որ եկեղեցիներն իրավունք չունեն ընդարձակելու իրենց անշարժ ունեցվածքը[131], պատճառաբանելով, որ եպիսկոպոսները ի չարս են վատնում աղքատների դրամները, որ զինվորների թիվը կրճատվում է[132] և, որ ամենից վատն է, նա օրենք հրապարակեց, որի տակ ստորագրեցին նաև անկայուն ու շողոքորթ մի քանի եպիսկոպոսներ, որի համաձայն առանց իր հավանության ու թույլտվության չի կարելի եպիսկոպոս ընտրել կամ նշանակել։ Երբ որևէ եպիսկոպոս էր վախճանվում, նա կայսերական մարդ էր ուղարկում, հրաման տալով չափավոր թաղում կատարել, իսկ ավելացած գումարն ինքն էր վերցնում։ Նա այլ, անհրաժեշտությունից զուրկ հրամաններ էլ հրապարակեց, որոնց մասնակի շարադրելն անգամ մեծ միտք ու ճարտար լեզու է պահանջում։ Նա ջանաց նաև օրենք հրապարակել պատերազմներում զոհված զինվորներին մարտիրոսական պատիվների արժանացնել, հոգու փրկություն որոնելով միայն պատերազմի և ոչ որևէ այլ բանի մեջ։ Նա ճնշում էր գործադրում նաև պատրիարքի ու եպիսկոպոսների վրա ընդունելու այդ վարդապետությունը։ Բայց նրան-*

ցից ոմանք քաջաբար դիմադրեցին, չթողեցին, որ նրա մտադը-
րածը կատարվի, առաջ քաշելով Բարսեղ Մեծի կանոնը, որի հա-
մաձայն պատերազմում թշնամի սպանողը երեք տարի իրավունք
չունի հաղորդություն ստանալու[133]։ Այդ բոլորից բացի [Նիկե-
964 փորը] արժեքազրկեց և դահեկանը՝ հորինելով, այսպես կոչված,
տետարտերոնը[134]։ Այդ օրվանից ահա շրջանառության մեջ երկու
տեսակի դրամ մտավ. երբ պետք էր պետական հարկերը գանձել,
նա լիարժեքն էր պահանջում, բայց երբ հարցը վճարումներին էր
վերաբերում, արժեքազրկվածն էր բաժանվում։ Թեև ըստ օրենքի
և տիրող սովորության, եթե դրամի վրա կա [որևէ] կայսեր պատ-
կերը, ապա (եթե այդ դրամը քաշով պակաս չէ) նույն արժեքն
ունի, նա օրենք հաստատեց, համաձայն որի նախապատվություն
ունի իր [պատկերը կրող] դրամը, իսկ մյուս կայսրերի [պատ-
կերը] կրող դրամների արժեքը իջեցրեց։ Դրանով նա մեծապես
վնասեց հպատակներին, այսպես կոչված, ռազմագերիների փո-
խանակությունների ժամանակ։ Եվ, որ ամենավատն է, պետու-
թյունը նման բեռի տակ գտնվելու պատճառով, ապրանքների
գների և ոչ մի էժանություն չեղավ։ Թեև վատ բաները շատ-շատ
էին, բայց մարդկանց ամենից շատ գազազեցնողը պալատի պա-
րըսպի կառուցումն էր։ Պալատի շուրջ կային բազում գեղեցիկ ու
հսկա շինություններ, որոնք նա քանդեց և նրանց տեղ թշվառ քա-
ղաքացիների դեմ ուղղված միջնաբերդ, բռնակալի կացարան կա-
ռուցեց, ներսում պահեստներ ու հացահատիկի ամբարներ, որոնք
լցրեց պարենով, կերակուր եփելու և հաց թխելու փռեր։ Նրան
կանխագուշակել էին, թե պալատի ներսում պետք է մահանա։
Նա, թվում է, չգիտեր, որ եթե քաղաքը աստված չպահի, պահա-
պանն իզուր է արթուն մնում[135]։ Պարսպի կառուցումն ավարտելու
օրն էլ նա մեռավ, հենց այն պահին, երբ շինարարության վերա-
կացուն բերեց ու նրան հանձնեց բանալիները։

19. Մի ուրիշ բան էլ պատահեց, որ էլ ավելի գրգռեց նրա
դեմ կուտակված ատելությունը։ Սուրբ Զատկի տոնի օրը նա-
վաստիների ու հայերի միջև տեղի ունեցած ընդհարման ժամա-
նակ բազում մարդիկ սպանվեցին[136], քիչ էր մնացել զոհ դառնար
նաև [քաղաքի] էպարքոս[137] Սիսինիոս մագիստրոսը։ Այդ առթիվ
լուր տարածվեց, որ Նիկեփորը, զայրացած լինելով քաղաքացի-
ների հանդեպ, որպես խառնակությունների առիթ տվողների,
մտադիր է ձիարշավությունների օրը դեմոսին ծուղակը գցել և
պատժել։ Մի փոքր ժամանակ անց, երբ ձիարշավական [մրցում-

ներն] էին տեղի ունենում, Նիկեփորը, ուղենալով քաղաքացիներին ցույց տալ, թե ինչ բան է պատերազմը, գուցե և ավելի ճիշտ քաղաքացիների մեջ երկյուղ սփռելու համար, ոմանց հրամայեց սրերը մերկացնելով, ռազմախաղ կատարել, իբրև թե դիտողներին զվարճացնելու համար։ Երբ դա տեղի ունեցավ, դիտողները, իրենց տեսածի նպատակին անտեղյակ, ենթադրելով, որ տարածված լուրն արդեն կյանքի է կոչվում, վազքով շտապեցին դեպի դիք ու նեղ ելքերը և իրար տրորելով, կոտորվում էին։ Բոլորն էլ իրար ոտնատակ լինելով գլխովին կկոտորվեին, եթե չնկատեին, որ կայսրը հանգիստ ու անշարժ նստած է իր բազկաթոռին։ Դեմոսը նրան անշարժ տեսնելով և համոզվելով, որ տեղի ունեցածը [կայսեր] կամքից անկախ եղավ, դադարեցրին փախուստը։

20. Քրիստոսի Համբարձման տոնի օրը Նիկեփորը Պեգեում[138] պաշտոնական շքերթ կազմակերպեց։ Վերադարձին, ձիարշավարանում սպանված մարդկանց ազգականները նրան հացավաճառների հրապարակում լուտանքներով դիմավորեցին, անվանեցին ոճրագործ ու մարդասպան, ցեղակիցների արյամբ պղծված։ Նրանք նրա վրա հող ու քարեր էին շպրտում՝ մինչև Կոստանդին Մեծի հրապարակը։ [Նիկեփորը] սարսափից կքարանար կմնար, եթե հարգարժան քաղաքացիներից ոմանք չկանխեին դա, և խռովարարներին չքշեին։ Նրանք [կայսեր] ներբողելով մինչև պալատ ուղեկցեցին։ Ահա այս բոլորի պատճառով նա դիտեր, որ ատելի է քաղաքացիներին և նրանց հարձակումից վախենալուց էր, որ միջնաբերդը կառուցեց։ Բայց ճակատագրից նա չխուսափեց։ Երբ թվում էր, թե ամեն ինչ բարվոք վիճակում է, նա վախճանվեց։ Թե ինչպե՞ս, իր տեղում կասվի[139]։ Իր թագավորության չորրորդ տարին, ինդիկտիոնի 10-րդ տարվա հունիս ամսին, [կայսրը] գնաց Թրակիայի քաղաքները շրջելու։ Հասնելով, այսպես կոչված, Մեծ խրամը, նամակ գրեց Բուլղարիայի կառավարիչ Պետրոսին՝[140] թույլ չտալ թուրքերին[141] անցնել Իստրոս գետը[142] և ասպատակել հռոմայեցիների [շրջանները]։ [Պետրոսը] սակայն կայսեր ասածին ականջ չկախեց և ամեն տեսակ պատրվակներ առաջ քաշելով, հրաժարվեց [ենթարկվել], որի վրա Նիկեփորը Խերսոնի կառավարչի որդի Կալոկիրեսին, պատրիկի պատվաստիճանը շնորհելով, Ռուսիայի իշխան Սվյատոսլավի
967 մոտ ուղարկեց[143], նրան բազում նվերներ[144] ու պատիվներ խոստանալով, համոզելու համար բուլղարների դեմ արշավել։ Ռուս-

ները համաձայնվեցին և ինդիկտիոնի 11-րդ տարվա օգոստոս ամսին, Նիկեփորի թագավորության հինգերորդ տարին, հարձակվեցին Բուլղարիայի վրա և բազմաթիվ քաղաքներ ու գյուղեր ավերեցին և հսկայական ավարով իրենց երկիրը վերադարձան։ Նրանք [Նիկեփորի] թագավորության վեցերորդ տարին դարձյալ արշավեցին Բուլղարիայի վրա և նախկինից ավելի մեծ ասպատակ սփռեցին։ Ինդիկտիոնի 11-րդ տարվա սեպտեմբեր ամսի երկուսին, գիշերվա տասներկուերորդ ժամին, երկրի ղարհուրելի եռում ու սասանում եղավ, որի ժամանակ տուժեցին Հոնորիաս[145] ու Պափլագոնիան։ Նույն ինդիկտիոնի մայիս ամսին սաստիկ ու կիզիչ քամիներ փչեցին, որոնք փչացրին բերքը, որթատունկներով ու ծառերով հանդերձ, որի պատճառով ինդիկտիոնի 12-րդ տարում սաստիկ սով եղավ։ Կայսրը պարտավոր էր հոգալ հպատակների փրկության մասին, բայց նա թագավորական [պահեստների] ցորենը քիչ-քիչ էր վաճառում, հպատակների դժբախտությունից օգուտ քաղում և պարծենում, որ ինչ-որ մեծ սխրանք է գործել, որ ցորենի մոդը[146] մեկ դահեկանի վաճառելու փոխարեն, հրամայեց մեկ դահեկանի դիմաց երկու մոդ տալ։ Նա չնմանվեց Վասիլ Մակեդոնացի կայսեր, որ Նոր կիրակիի օրը գնալով մեծ առաքելոց տաճարը և տեսնելով մի քանի արգո ու պատվարժան մարդկանց մռայլ ու գլխակախ, իր մոտ կանչեց և հարցրեց, ինչո՞ւ իրենք էլ պայծառ հանդերձներ հագած չեն մասնակցում տոնին, այլ խոժոռ են, կարծես քաղաքի գլխին մեծ փորձանք է եկել։ Քաղաքացիներից մեկը պատասխանեց. «Քեզ ու քո մերձավորներին է վայել, ո՛վ տեր, պայծառ հանդերձներ հագնելն ու ուրախանալը, նրանք որոնց մահն է սպասում, այդպիսի բաներից հեռու են կանգնած։ Ի՞նչ է, չգիտե՞ս, որ սաստիկ քամիների պատճառով երկու մեդիմն[147] ցորենը մեկ դահեկանով են վաճառում»։ Դրա վրա կայսրը խորը հառաչեց, նրա աչքից կարեկցանքի արցունք կաթեց։ Այդ մարդկանց նա մեծ օգնություն ցուցաբերեց, և պալատ վերադառնալով, հավաքեց քաղաքի ու արքունիքի կարիքները հոգացող մարդկանց[148], նրանց գլխին բյուր լուտանքներ ու անեծքներ թափեց՝ բերքի մասին իրեն տեղյակ չպահելու համար։ Նա կայսերական ու հասարակական ցորենը անհապաղ մեջտեղ հանեց և հրամայեց մեկ դահեկանի դիմաց տասներկու [մեդիմն] տալ։ Աստված հավանություն տրվեց նրա վճռին և մարդկանց մեծ էժանություն պարգևեց։ Այս բոլորը ասվեց [Վասիլ Մակեդոնացուն] ներբողելու համար։ Իսկ

Նիկեփորը տառապյալ հպատակների վրա նայելով, ավելի շուտ ուրախանում էր, քան թե օգնության հասնում։ Ոչ միայն նա, այլև նրա եղբայր Լևոնը գբաղվելով մթերքների չարաշահությամբ[149], երկիրը բազում ու բազմազան փորձանքների ենթարկեց։ Սրանց չարաշահումները քաղաքացիները վարպետորեն ծաղրի ենթարկեցին. մի անգամ, երբ կայսրը զինվորներին մարզելու համար դաշտ դուրս եկավ, ալեհեր մեկը մոտեցավ և ուզեց զինվորների շարքը մտնել։ [Նիկեփորն] ասաց նրան. «Ա՜յ մարդ, դու ծեր ես, ինչո՞ւ ես շտապում դասվելու իմ զինվորների շարքը»։ Նա դիպուկ պատասխանեց. «Այժմ ես ավելի զորեղ եմ, քան երիտասարդ ժամանակ»։ [Կայսեր] հարցին, «ինչպե՞ս թե», նա ասաց. «Առաջ մեկ դահեկանի դիմաց առածս ցորենը երկու ջորիի վրա էի բարձում, իսկ քո թագավորության ժամանակ երկու դահեկանի դիմաց առածս ցորենը իմ ոտքերի վրա շատ հեշտությամբ տանում եմ»։ [Նիկեփորը] հասկացավ հեգնանքի իմաստը և հեռացավ առանց շփոթվելու։

21. Սարակինոսները Ասորիքի ու Կիլիկիայի քաղաքների գրավումից հետո, Երուսաղեմի պատրիարք Հովհաննեսին[150] ողջակեզ արեցին, իբրև թե Նիկեփոր կայսրը սրա հորդորներով էր եկել իրենց վրա։ Նրանք կրակի տվեցին նաև տերունական գերեզմանի գեղեցիկ տաճարը։ Նույն կերպ վարվեցին և անտիոքացիք, որոնք իրենց Քրիստափոր պատրիարքին[151] սպանեցին։ Կայսեր կողմն անցան Գրիգոր ու Բագարատ եղբայրները, նրան ընծեռելով իրենց Տարոն երկիրը[152]։ [Կայսրը] նրանց պատրիկի պատվաստիճան շնորհեց[153], շատ եկամտաբեր կալվածներ նվիրաբերեց։ Արեգակի խավարում էլ եղավ դեկտեմբեր ամսի 22-ին, Շուրջ երրորդ ժամին, այնպես, որ աստղերն էլ երևացին[154]։

22. Իսկ կայսրուհի Թեոփանոն, խորշելով Նիկեփորի հետ մարմնական հարաբերություն ունենալուց, Չմշկիկի մարդկանցից մեկին ուղարկեց և սեփական տանը նստած [Չմշկիկին] իր մոտ հրավիրեց։ Կայսրը ինչ-որ կասկածի հիման վրա զրկել էր նրան դոմեստիկոսի պաշտոնից ու հրամայել սեփական տանը տնային կալանքի մեջ մնալ[155]։ Պոռնիկը [Թեոփանոն]Չմշկիկի համար հատուկ գրություն էլ ձեռք բերեց՝ տնից դուրս գալը թույլատրող։ Այնտեղ ուղարկված մարդը, առնելով [Չմշկիկին]; եկավ Քաղկեդոն։ Այն հարցին, թե կարելի՞ է թողնել [Չմշկիկին] մայրաքաղաք մտնել, կայսրը պատասխանեց, մի քիչ թող սպասի։ 6478
969 թվականի, ինդիկտիոնի 13-րդ տարվա, դեկտեմբեր ամսի 11-ի

գիշերը Թեոփանոն մարդ ուղարկեց և Ջմշկիկին բերեց պալատի ներքևում գտնվող ձեռակերտ նավահանգիստը և կողովի մեջ իր բոլոր մարդկանց հետ վեր քաշեց։ Նրանք էին. պատրիկ Միքայել Բուրցիսը, տաքսիարխ[156] Լևոն Աբալանտեսը, Ջմշկիկի ամենահավատարիմ մարդկանցից՝ Ացիպոթեոդորոսը և երկու ուրիշներ[157]։ Սրանք սրերը քաշած վեր բարձրանալով, մտան կայսեր ննջասենյակը և նրան իր սովորական մահճակալի վրա չգտնելով, սկսեցին մտածել, թե նկատել են իրենց և քիչ էր մնացել իրենց [շենքից] ցած գլորեին։ Կանանց հարկաբաժնի սպասավորներից ինչ-որ մարդուկի[158] ուղեկցությամբ նրանք գնում և Նիկեփորին գտնում են հատակին պառկած՝ կարմիր գույնի թաղիքի ու արջի մորթու վրա, որը նա ստացել էր իր մորեղբայր վանական Միքայել Մալեյինոսից[159]։ [Նիկեփորը] քուն էր մտած, նա ամենևին չզգաց իրեն սպանելու համար եկածների ժամանումը։ Ջմշկիկը ոտքով զարթնեցրեց նրան։ Երբ Նիկեփորը զարթնեց և իր աջ թևի արմունկը դնելով գետնին գլուխը բարձրացրեց, Լևոն Աբալանտեսը մերկացրած սրով ուժեղ հարված հասցրեց նրա բաց գլխին (վեր կենալու ժամանակ նրա գլխանոցն ընկել էր) և ծանր վերք պատճառեց։ Դրանից հետո [Նիկեփորին] ափռոցից բարձրացնելով, տարան Ջմշկիկի մոտ, որ կայսերական մահճակալի վրա էր նստել, գլխին բազում լուտանքներ, հայհոյանքներ ու հիշոցներ թափելով։ Նա մի բան էր միայն ասում. «Տե՛ր, ողորմյա՛» և «Աստվածածի՛ն, օգնյա՛»։ Վերջը, երբ պալատի պահակները նրանց նկատեցին և նրանց դեմ կռվելու դուրս եկան բազում մարդիկ, Նիկեփորին սրի քաշեցին և գլուխը կտրելով ինչ-որ լուսամուտից Նիկեփորին օգնության շտապող մարդկանց ցույց տվեցին։ Ահա այդ ձևով սրանք կանգ առան, իսկ Ջմշկիկի մարդկանց հնարավորություն տրվեց իրենց ուզածը աներկյուղ ու հանգիստ գործելու[160]։

23. Պատմում են, որ մահվանից տասը օր առաջ կայսրը ննջասենյակում մի գրություն գտավ, որ իրեն խորհուրդ էր տալիս զգույշ լինել, քանզի Ջմշկիկն իր դեմ դավադրություն է նախապատրաստում։ Պատմում են նաև, որ մի վանական էլ [կայսեր] սպանության երեկոյան նրան հետևյալ բովանդակությամբ մի նամակ է տվել. «Ո՜վ կայսր, զգույշ եղիր, քանզի այս գիշեր քեզ մեծ վտանգ է սպառնում»։ Ոմանք ասում են, թե կայսրը վերցրեց նամակը, բայց ենթադրելով, որ դիմում է, չընթերցեց, ուրիշներն էլ թե՝ կարդաց, բայց չզգուշացավ, նրան խոշընդոտ

կանչնեց ճակատագիրը։ Նրա մահվանից հետո գտան այդ գրությունը։ Ոմանք էլ ասում են, թե կարդալով այն, պրոտովեստիարիոսին[161] կարգադրեց գտնել և բանտարկել [Չմշկիկին], բացի այդ գրեց և տանը գտնվող իր եղբայր Լևոնին, պատվիրելով զինյալ մարդկանց վերցնել ու շտապել պալատ։ Երբ [Լևոնը] նամակն ստացավ, չբացեց էլ այն (նա զբաղված էր ոմանց հետ վեգ խաղալով, քանզի շատ մոլի խաղացող էր) և դրեց մահճակալի բարձի տակ։ Երբ խաղը վերջացրեց, հիշեց նամակը, ծանոթացավ նրա բովանդակությանը և ինչքան որ կարողացավ մարդկանց հավաքելով, գնաց դեպի պալատ։ Հասնելով ձիարշավարանի սփենդոնե[162], նա լսեց ոմանց խոսակցությունը, թե սպանված է Նիկեփոր կայսրը, լսեց նաև թե ինչպես հրապարակներում և փողոցներում Չմշկիկին [կայսր] էիններբողում։ Անակնկալից ապշած, այլևս չկարողացավ որևէ սխրանք գործելու մասին մտածել և իր որդու՝ Նիկեփորի հետ շտապ Մեծ եկեղեցին գնաց։ Դրա շուրջն եղած խոսակցությունն ահա այս է։ Ես չեմ կարող ասել ճի՞շտ է դա, թե ոչ։ Համենայն դեպս Նիկեփորը սպանվեց պալատի ներսում[163]։

# ՀՈՎՀԱՆՆԵՍ ՉՄՇԿԻԿ

[11 դեկտեմբեր 969—10 հունվար 976 թթ.]

1. Նիկեփորի մահվանից հետո հռոմայեցիների իշխանության հոգսերը վերցրեց Հովհաննես Չմշկիկը[164], որպես կայսերակից ունենալով Ռոմանոսի որդիներ Վասիլին և Կոստանդինին[165]։ Վասիլը յոթ տարեկան էր, իսկ Կոստանդինը՝ հինգ։ [Չմշկիկն] իսկույն Վասիլ պարակիմոմենոսի մոտ գիշերով մարդ ուղարկեց և նրան բերեց դարձրեց իշխանության հաղորդակից[166], քանզի նա [երեխաների] հայր Ռոմանոս ծերունու և նրա փեսա Կոստանդին Ծիրանածինի օրոք երկար տարիներ քաղաքական [պաշտոններ] էր վարել, բազմիցս արշավել հագարացիների դեմ։ Նա դժվարին իրավիճակներից մեծ խոհեմությամբ դուրս գալու հմտություն ուներ։ Սրան Նիկեփոր կայսրը, որպես իրեն գահ բարձրացնելու գործում մեծապես օժանդակած, պրոեդրոսի[167] աստիճանն էր շնորհել, մի աստիճան, որ մինչև այդ գոյություն չուներ և առաջին անգամ ինքն էր հիմնադրել։ Նա ձեռքը վերցնելով պետական գործերը, Նիկեփորի բոլոր համակիրներին հրապարակից հանեց,

Լևոն կուրապաղատին[168] Լեսբոս աքսորեց, նրա որդի վեստ Նիկեփորին՝[169] Իմբրոս, իսկ Նոր Վարդասին՝[170] Խաղդիայի և Կոլոնիայի այն ժամանակվա դուքսին պաշտոնանկ անելով, նամակներով Ամասիա ուղարկեց։ Մնացածներին էլ, ովքեր քաղաքական կամ զինվորական պաշտոններ էին վարում, պաշտոնանկ անելով նրանց տեղում իր մարդկանց և նոր կայսեր համակիրներին նշանակեց։ Նա թույլ տվեց նաև աքսորից վերադառնալ Նիկեփորի կողմից քշվածներին, ամենից առաջ այն եպիսկոպոսներին, որոնք եկեղեցու կործանման ու խայտառակման համար իր սարքած դրության տակ ստորագրել չցանկանալու պատճառով աքսորվել էին, ինչպես այդ մասին տեղում արդեն ասվել է[171]։

2. Հարցերնահա այս լուծումն ստացան և կայսրը այլևս ոչ մի վասկած չունենալով, մի քանի հոգու հետ գնաց Մեծ եկեղեցին, ցանկանալով թագ ստանալ պատրիարքի ձեռքից։ Բայց Պոլիևկտոսը չթողեց նրան [եկեղեցի] մտնել, ասելով, թե արժանի չէ սուրբ տաճարը մտնել նա, ում ձեռքերն իր ազգականի[172] արյամբ դեռ նոր են պղծված, երբ այդ ձեռքերից արյան գոլորշիներ են դեռ բարձրանում. Նա պետք է շտապի ապաշխարելու արարքներ գործել և դրանից հետո նրան թույլ կտրվի ոտք դնել Տիրոջ տան հատակին։ Հովհաննեսը հեզորեն ընդունեց տույժը, խոսք տվեց ամեն ինչ սիրով կատարել, միաժամանակ բացատրություն տվեց, թե ինքն անձամբ չի սպանել Նիկեփորին, այլ կայսրուհու դրդմամբ Աբալանտեսն ու Ացիպոթեոդորոսը։ Պատրիարքը հրաման տվեց պալատից հեռացնել [կայսրուհուն] և արգելափակել ինչ-որ կղզի, ապա պատժել Նիկեփորին սպանողներին, պատռել եկեղեցին տակնուվրա անելու համար Նիկեփորի ներկայացրած հրովարտակը։ Հովհաննեսն առանց հապաղելու նրանց քաղաքից արտաքսեց, իսկ Թեոփանոյին Պրիկոննեսոս աքսորեց։ Հետագայում նա այնտեղից ծածուկ փախավ և մի եկեղեցում ապաստան հայցեց, բայց Վասիլ պարակիմոմենոսը նրան դուրս հանեց ու աքսորեց Արմենիակների բանակաթեմը[173], կայսեր կողմից նոր կառուցված Դամիդիա վանքը։ [Թեոփանոն] կայսեր ու Վասիլի գլխին լուտանքների տարափ թափեց, Վասիլին անվանեց սկյութ ու բարբարոս, նրա գլխին էլ բռունցքի հարված իջեցրեց։ [Թեոփանոյի] հետ Մանտինիա[174] աքսոր ուղարկվեց և նրա մայրը։ [Նիկեփորի կազմած] հրովարտակը բերվեց ու պատռվեց, եկեղեցուն շնորհվեց նախկին ազատությունը[175]։

*3. Հովհաննեսն այնուհետև խոսք տվեց գործած մեղքի քա-
վության համար աղքատներին բաժանել իր անձնական՝ նախքան
կայսր դառնալն ունեցած սեփականությունը, որից հետո Պո-
լիևկտոսը նրան թույլ տվեց մտնել եկեղեցի։ Եվ մեր աստծո Քրիս-
25—XII տոսի ծննդյան տոնին նա մտավ եկեղեցի, որտեղ պատրիարքը
—969 նրա գլխին կապեց թագավորական թագը։ Կայսրությունը և՛ արե-
վելքում, և՛ արևմուտքում մեծ սասանման ու տակնուվրայության
մեջ էր։ Նիկեփորը ժամանակ չունեցավ Կիլիկիայում, Փյունիկեում
և Կյուլե Ասորիքում[176] գրավված հագարացիների քաղաքները
կարգավորել ու ամրացնել, այդ պատճառով նրանք մտադիր էին
ապստամբել, իսկ ռուսներին էլ ժամանակին անխոհեմաբար բուլ-
ղարների դեմ հանելը պետությանը մեծագույն վտանգի առջև
կանգնեցրեց[177]։ Բացի այդ, ամբողջ հինգ տարի հռոմայեցիների
երկրում տարածված սովը սաստիկ նեղում էր քաղաքները։
[Ջմշկիկը] մտածում էր ու խորհում այդ քաղաքների համար
դարման գտնել, վերացնել սպառնալիքը։ Անտիոքի պատրիարքի
մինչ այդ թափուր [աթոռին] նա նստեցրեց բոլոր առաքինություն-
ներով օժտված, իր գահ բարձրանալը կանխագուշակած ոմն Թեո-
դորոս վանականի[178]։ Սա [Ջմշկիկին] խորհուրդ էր տվել չշտա-
պել, քանզի աստված որոշել է իրեն թագավորական բարձրության
հասցնել, նախազգուշացրել անխոհեմաբար չվարվել, թագավորու-
թյունը ձեռք գցելու շտապողականություն հանդես չբերել, քանզի
ոտնձգություն գործած կլինի իր կյանքի դեմ։ [Թեոդորոսը] նրա-
նից պահանջեց համայն արևելքը ողողած և իրենց պիղծ կրոնի
տարածմամբ այն ապականած մանիքեցիներին արևմուտք վե-
րաբնակեցնել, անմարդաբնակ մի ծայրամասում, ինչ որ [Ջմըշ-
կիկն] արեց հետագայում, նրանց տեղափոխելով և բնակեցնելով
Ֆիլիպպուպոլսում[179]։ Ջմշկիկի գահ բարձրանալուց հազիվ 35
օր անց Պոլիևկտոսը վախճանվեց։ Նրա փոխարեն պատրիարք է
նշանակվում վանական Վասիլ Սկամանդրենոսը[180], որի կա-
տարյալ առաքինությունը վկայված է։ Քաղաքական հարցերն
ահա այսպիսի վիճակում էին գտնվում։
4. Անտիոքի և վերևում մեր թվարկած մյուս քաղաքների
գրավման առթիվ վշտացած համայն աշխարհի սարակինոսները
և նույն կրոնը դավանող մյուս ազգերը՝ եգիպտացիները, պար-
սիկները, էլամացի արաբները[181], ինչպես և Երջանիկ կոչված
[Արաբիայում][182] և Սաբայում[183] բնակվողները համաձայնու-
թյան եկան և զինակցություն հաստատեցին, ամեն տեղից մեծ*

զորք հավաքեցին, այն գլխավորել տվեցին ցամաքային ու ծովա-
յին ճակատամարտերի հմուտ մասնագետ համարվող կարքեդո-
նացիներին, որոնց հրամանատարն էր Զոխարը, մի գործունյա
մարդ և հմուտ պատերազմող։ Ահա նրանք բոլոր զինյալ ուժերը՝
հարյուր հազար մարտունակ ռազմիկների մի տեղ հավաքելով,
դուրս եկան հռոմայեցիների դեմ։ Հասնելով Անտիոքի [արվար-
ձան] Դափնե, փութաջանությամբ անցան [քաղաքի] պաշար-
ման։ Պաշարյալները պաշտպանվում էին քաջաբար ու խիզախո-
րեն, որով պաշարումը երկարեց։ Երբ այլազգիների հարձակ-
ման մասին հայտնվեց կայսեր, շտապ կարգով Մեսոպոտամիա-
յի զորավարին[184] նամակներ ուղարկվեցին այնտեղի ուժերը
հավաքելու և պաշարվածներին օգնության գնալու հրամանով։
[Կայսրը] զորքի ընդհանուր հրամանատար նշանակեց, այլ զոր-
քեր էլ տվեց պատրիկ Նիկոլայոսին, իր մտերիմ ներքինիներից
մեկին, որը միանալով մյուս ուժերին և ընդհարվելով բյուրա-
պատիկ ավելի բարբարոսների հետ, փայլուն հաղթանակ տա-
րավ, մի ճակատամարտում նրանց ցիր ու ցան արեց, հռոմայե-
ցիներին հպատակ քաղաքների անվտանգությունն ապահովեց։

5. Իսկ ռուսների ազգը մեր ասած ձևով Բուլղարիան գրա-
վելով և Պետրոսի երկու որդիներին՝ Բորիսին ու Ռոմանոսին գե-
րի վերցնելով, մտադիր չէր այլևս տուն վերադառնալ։ Հիացած
լինելով երկրի բարեբերության վրա, նրանք Նիկեփոր կայսեր
հետ կնքած պայմանագրին մնաս բարով ասացին և նպատակա-
970 հարմար գտան մնալ երկրում և տիրել այն։ Նրանց այդ բանին
էլ ավելի էր դրդում Կալոկիրեսը, ասելով, որ եթե ինքը նրանց
կողմից հռոմայեցիների կայսր հռչակվի, կհրաժարվի Բուլղա-
րիայից, երկարատև խաղաղություն կկնքի, բազմապատիկ ավե-
լի կտա պայմանավորված գումարը և ողջ կյանքում նրանց դաշ-
նակից ու բարեկամ կլինենա։ Ռուսները այդ խոսքերից մեծա-
մըտացած, ուզում էին Բուլղարիան, որպես զենքով տիրացած
երկրի, սեփականացնել, և երբ կայսրը նրանց մոտ դեսպանու-
թյուն ուղարկեց, խոստանալով լրիվ կատարել Նիկեփորի ուխ-
տածը, չընդունեցին, բարբարոսական գոռոզամտությամբ լի
պատասխաններ տալով։ [Կայսրը] ստիպված եղավ հարցը պա-
տերազմով լուծել[185]։ Նա նամակներ գրեց և կարճ ժամանակվա
970 ընթացքում արևելքի զորքերն արևմուտք փոխադրեց, նրանց
մարտ հրամանատար նշանակելով մագիստրոս Վարդաս Սկլերոսին[186],
որին ստրատելատ կոչեց[187]։ [Չմշկիկը] սրա քրոջ՝ Մարիային,

նախքան կայսր դառնալը, օրինական կին էր առել։ Նա որոշել էր գարնանը ինքն էլ պատերազմի դուրս գալ։ Ռուսները և նրանց առաջնորդ Սվյատոսլավը, իմանալով հռոմեական զորքի [արևմուտք] անցնելու մասին, արդեն ստրկացված բուլղարների հետ համագործակցություն հաստատեցին, որպես դաշնակից վերցրին նաև պածինակներին[188] և արևմուտքում՝ Պաննոնիայում բնակված Թուրքերին[189] և հավաքելով երեք հարյուր ութ հազարանոց մարտունակ զորք, անցան Հեմոսը[190] ու համայն Թրակիան կրակի տվեցին ու ասպատակեցին։ Նրանք Արկադիուպոլսի[191] պարիսպներին մոտիկ տեղում բանակեցին, մտադիր լինելով ճակատամարտ տալ հենց այստեղ։ Մագիստրոս Վարդաս Սկլերոսը, զգալով, որ իր զորքը թվական տեսակետից շատ է զիջում [հակառակորդին] (իր ողջ զորքը 12 հազար հոգու էր հասնում), որոշեց ռազմագիտական խորամանկությամբ հաղթահարել հակառակորդներին, ճարտարությամբ ու հնարագիտությամբ բնաջնջել նման բազմությունը։ Այդպես էլ եղավ։ Ինքը զորքով հանդերձ ներփակվելով պարիսպներից ներս, ականջ չկախեց թշնամիների՝ դուրս գալու և վճռական մարտ տալու բազում կոչերին։ Տեսնելով հանդերձ, թե ինչպես թշնամիները հանդիպածը ոտնատակ են անում, այնուամենայնիվ ձևացրեց, որ երկյուղում է և հարմար առիթի էր սպասում։ Սկլերոսի բռնած դիրքը բարբարոսներին [հռոմայեցիների նկատմամբ] մեծ արհամարհանքով լցրեց, նրանք հավատացին, որ Սկլերոսը խուճապահար վախից է հռոմեական փաղանգները պարիսպների մեջ ներփակել ու չի համարձակվում դուրս գալ, դրա համար ահա նրանք առանց վախենալու դեսուդեն ցրվեցին, բանակեցին ոչ ինչպես որ պետք էր, ուշադրություն չդարձրին պահակության վրա, և ամբողջ գիշեր իրենց հանձնեցին բարբարոսական կերուխումի, սրինգների ու թմբուկների նվագին ու պարերին, անհրաժեշտ ոչ մի բանի մասին հոգ չտանելով։ Վարդասը, հարմար առիթ ձեռք գցելով և թշնամիների վրա ինչպես հարձակվելու մասին լավ կշռադատելով, որոշեց [հարձակման] օրն ու ժամը։ Նա գիշերը մի քանի ամենակարևոր տեղերում ծուղակներ ու դարաններ սարքեց, սպատրիկ Հովհաննես Ալակասևսին փոքր զորախմբով ուղարկեց, կարգադրելով առաջ վազել և լրտեսել թշնամիներին, հաճախակի տեղեկացնել, ճշգրիտ հաղորդել նրանց գտնվելու վայրը, ապա և հարձակվել ու ընդհարվել նրանց հետ, բայց մարտի հենց սկզբում նահանջել ու ձևացնել, թե փա-

խուստի է դիմում։ Բայց նա պետք է փախուստի դիմի ոչ թե գլխովին՝ ձիերի սանձերը լրիվ բաց թողած, այլ հանգիստ ու կազմակերպված, իսկ որտեղ որ հնարավոր է, շուռ գա ու կռվի բռնվի թշնամիների հետ։ Այդպես պետք է անել մինչև որ նրանց քաշեն այդ ծուղակներն ու դարանները, որից հետո ահա կարող են փախուստի դիմել խառնիխուռն ու առանց ետ նայելու։ Բարբարոսները երեք մասի բաժանվեցին, առաջին մասը բաղկացած էր բուլղարներից ու ռուսներից[192], իսկ թուրքերն ու պածինակները ամեն մեկն առանձին էին։ Հովհաննեսը ճանապարհին պատահմամբ հանդիպում է պածինակներին ու նրանց հետ կռվի բռնվում և ստացած կարգադրության համաձայն փախուստ է ձևացնում, արագ կերպով նահանջելով։ Պածինակները հետապնդում էին [հռոմայեցիներին] իրենց շարքերը ցրած, որպեսզի, ինչպես իրենք կարծում էին, գլխովին ոչնչացնեն փախուստի դիմողներին։ Իսկ [հռոմայեցիները] մեկ կազմակերպված կերպով նահանջելով, մեկ շուռ գալով ու պաշտպանվելով, շտապում էին դեպի ծուղակները։ Երբ հասան [ծուղակների] մեջտեղը, ահա այն ժամանակ բաց թողնելով սանձերը, քառատրոփ փախուստի դիմեցին, իսկ պածինակներն էլ վրա խուժելով, անկազմակերպ հետապնդում էին։ Հանկարծակի հայտնվեց համայն զորքի գլուխն անցած մագիստրոսը։ [Պածինակները] անակընկալից շանթահարված, հետապնդումը դադարեցրին, բայց փախուստի էլ չդիմեցին, այլ մնացին տեղում. հնարավոր հարձակումն ընդդիմակայելու համար։ Երբ մագիստրոսի զինվորներն ուժեղ թափով նրանց վրա խոյացան, իսկ մնացած փաղանգն էլ կարգ ու կանոնով նրանց ետևից հարձակվեց, սկյութների ամենախիզախներն իսկույն գետին տապալվեցին։ Երբ փաղանգը խորանալով երկուսի բաժանվեց, պածինակներն ընկան այդ ծուղակների մեջ, քանզի [փաղանգի] թևերը իրար միանալով, նրանց օղակեցին։ Նրանք մի փոքր դիմադրեցին, բայց տեղի տալով, գրեթե բոլորն էլ կոտորվեցին։

6. Վարդասն ահա այս կերպ պարտության մատնեց նրանց, իսկ գերիներից իմանալով, որ մնացած թարմ ուժերն էլ կազմ ու պատրաստ պատերազմի են սպասում, քառատրոփ շարժվեց նրանց վրա։ Նրանք իմացած լինելով պածինակների գլխին եկած անսպասելի փորձանքի մասին, սրտաբեկ եղան։ Բայց և այնպես իրենց գոտեպնդելով և փախուստի դիմածներին հավաքելով, հարձակվեցին հռոմայեցիների վրա. առաջից հեծելա-

*զորն էր գնում, ետևից՝ հետևակը։ Երբ առաջին ընդհարման ժամանակ ձիավորների թափը կոտրվեց՝ անակնկալ կերպով հայտնըված հռոմայեցիներից, նրանք նահանջեցին ու միացան հետևակազորին։ Այնտեղ նրանք գարձյալ գոտեպնդվելով, սպասում էին հարձակման անցած հռոմայեցիներին։ Մարտը մոտավորապես հավասար էր, մինչև այն ժամանակ, երբ մի սկյութ, իր աժդահա մարմնի ու քաջասրտության վրա ապավինած, մյուսներից առաջ անցավ ու հարձակվեց ձի հեծած և զորաշարքերը ոգևորող մագիստրոսի վրա և թրով հարված իջեցրեց նրա սաղավարտին։ Բայց թուրը [սաղավարտի վրայով] սահեց և հարվածը նպատակին չհասավ։ Մագիստրոսը թրի հարված իջեցրեց նրա սաղավարտին։ Նրա ձեռքի ուժի և [թրի] երկաթի կոփվածության պատճառով այնպիսի ուժեղ հարված հասցվեց, որ սկյութը վերից վար կիսվեց։ Մագիստրոսի եղբայր Կոստանդինն էլ, որ եղբոր օգնության էր դիմել, շտապեց հարվածել սկյութին օգնության ձեռք մեկնած և ավելի հանդգնություն ցուցաբերող մի այլ սկյութի գլխին, բայց վերջինս մի կողմ թեքվեց, Կոստանդնի թրի հարվածը շեղվեց և իջավ [սկյութի] ձիու պարանոցին ու կտրեց այն։ Սկյութն ընկավ գետին, իսկ [Կոստանդինը] ձիուց իջնելով և բռնելով նրա մորուքը, խողխողեց նրան։ Այս քաջագործությունը ոգևորեց հռոմայեցիներին, նրանց ավելի համարձակ դարձրեց, իսկ սկյութներին ահ ու սարսափով պատեց։ Իսկույն մոռանալով արիության մասին, նրանք խայտառակ կերպով, առանց որևէ կարգ ու կանոնի, փախուստի դիմեցին։ Հռոմայեցիներն ընկան նրանց ետևից և համայն դաշտը դիակներով ծածկեցին։ Սպանվածներից շատ էին գերի ընկածները, մնացած բոլորն էլ, բացի մի քանիսից, վիրավոր։ Վտանգից ոչ ոք չէր պրծնի, եթե վրա չհասներ գիշերը, որի ժամանակ հռոմայեցիները դադարեցրին հետապնդումը։ Ահա այսքան բյուրավոր բարբարոսներից շատ քչերը վերապրեցին, իսկ հռոմայեցիներից մարտի դաշտում ընկան 25 հոգի[193], իսկ վերք ստացան գրեթե բոլորը։*

*7. Սկլերոսի սկյութական պատերազմը դեռ չէր վերջացել,
իսկ հռոմայեցիներն էլ դեռ չէին հասցրել մաքրվել մարտի արյունից, երբ վրա հասավ կայսերական՝ մագիստրոսին կայսեր
970 մոտ կանչող նամակը։ Տեղ հասնելով նա հրաման է ստանում
աշուն անցնել Ասիա, իր հետ վերցնելով այդ պատերազմի համար անհրաժեշտ քանակությամբ զորք[194], քանզի Վարդաս Փո-*

կասր, որ դատապարտվել էր Ամասիայում մնալ, ազգականներով, ընկերներով ու մերձավորներով, այնտեղից փախուստի էր դիմել։ Նրանց միջև գաղտնի պայմանավորվածություն կար՝ Կապադովկիայի Կեսարիան գրավել։ Այնտեղ նա մեծաթիվ վարձկաններ հավաքեց, որոնց գլխավորում էին պատրիկ Թեոդուլոս Պարսակուտենոսի որդիներ Թեոդորոսն ու Նիկեփորը[195], ինչպես և մի այլ պատրիկ՝ Սիմեոն Ամպելասը։ [Փոկասն] իր գլխին թագ դնելով և առնելով կայսերական մյուս նշանակները, կայսեր դեմ ապստամբություն բարձրացրեց[196]։ Իր հայր կուրապաղատ Լևոնը սրանցից ոմանց նվերներ տալով, ոմանց էլ պաշտոններ ու կալվածներ խոստանալով, համոզել էր միանալ նրան, օգտվելով Աբիդոսի եպիսկոպոսի ծառայություններից։ Ինքն էլ մտադիր էր Լեսբոսից իր որդի Նիկեփորի հետ ծածուկ անցնել Թրակիայի շրջանները։ Կայսրն իմացավ այդ մասին, (եպիսկոպոսն էլ, որ ձերբակալվել էր, չկարողանալով քննությունից խուսափել, ամեն ինչ բացահայտեց), որի վրա կուրապաղատին դատավորներին հանձնեցին, որոնք միահամուռ կերպով իրեն և իր որդուն մահվան դատապարտեցին։ Կայսրը, սակայն, բարեսրտություն հանդես բերեց և նրանց երկուսին էլ կուրացման ու ցմահ աքսորի դատապարտեց։ Բայց պատմում են, որ կայսրը դահիճներին թաքուն պատվիրեց նրանց աչքերին ամենևին վնաս չհասցնել, լոկ ձևացնել, որ կուրացնում են, բայց իրականում խնայել նրանց աչքի լույսը, բացի այդ, չասեն, որ կայսրն է այդպես հրամայել, այլ այդ բանը իրենց [դահիճների] իբրև թե մարդասիրության վերագրեն, որ նրանց աչքի լույս է պարգևում[197]։ Կուրապաղատի հարցն ահա այսպես լուծվեց։ Իսկ Սկլերոսն անցնելով Ասիա, և լինելով Դորիլեոնում[198], նախ փորձեց Փոկասին և նրա կողմնակիցներին լավ խոստումներով ետ կանգնեցնել իրենց մտադրությունից (Սկլերոսը կայսրից կարգադրություն էր ստացել ինչքան հնարավոր է ջանալ ձեռքերը եղբայրական արյամբ չպղծել), բայց երբ տեսավ, որ իր ջանքերը արդյունք չեն տալիս (ապստամբները այդ միջնորդություններից ավելի գոռոզ էին դառնում, քան թե տեղի տալիս), որոշեց գործի անցնել։ Զորքն առնելով, նա շարժվեց դեպի Կեսարիա։ Փոկասի մարդիկ իմանալով այդ մասին, նպատակահարմար գտան անորոշ հույսերով օրորվելու փոխարեն, ձեռքում եղածը չփախցնել և կայսեր կողմից իրենց տրված ընծաներն առնելով, գիշերով անցան Սկլերոսի կողմը։ Առաջինը Դիոգենես Ադրալեստոսն էր,

ապա Ամպելասն ու Թեոդուլոսի որդիները, մի խոսքով բոլոր նրանք, ովքեր ապստամբության նախապատրաստմանը առնչություն ունեին, այնուհետև համայն զորքը, այնպես որ Փոկասը իր սպասավորներով մնաց մենակ։ Ոչ մեկից օգնություն չստանալով, նա ընկղմվեց վշտի ու կսկծի մեջ՝ իրեն ոտքի հանողների, բայց հետո դավաճանողների առթիվ։ Երբ գիշեր եղավ ու նա քուն մտավ, երազում տեսավ, որ ինքը զայրացած ու դազաղած աստծո հետ խոսում է իրեն անիրավողների մասին, ասելով. «Դատյա՛ դու, տեր, ինձ անիրավողներին»։ Երբ նա ուզեց շարունակել սաղմոսի խոսքերը, մի ձայն լսեց, որ ասում էր չշարունակել. սաղմոսի շարունակությունը Սկլերոսն ասաց։ [Փոկասը] սարսափահար զարթնեց և համոզվելով, որ ոչ մի հույս չունի, ինչպես որ էր, ձի նստավ և իր մերձավորների հետ փախավ դեպի Տյուրոպիոս[199] բերդը։ Երբ նրա փախուստի մասին տեղեկացրին Վարդաս Սկլերոսին, նա ճարտար ձիավորների ուղարկեց շտապույթ հասնելու նրան նախքան բերդ մտնելը։ Նրանք արագ թափով հետապնդեցին նրան և հասան դաշտում, երբ նա դեռ չէր մոտեցել բերդի պարիսպներին։ Հետապնդողներից ամենից համարձակն ու քաջը, անունը Կոստանդին, մականունը Խարոն, մնացածներին ետևում թողնելով, թափով շարժվեց իր վերջապահ զինվորների մեջ գտնվող Փոկասի վրա՝ պատրաստ իր վրա հարձակվողին դիմադրելու։ Խարոնը հեռվից տեսավ նրան ու ճանաչեց, խայտառակ ու ամոթալի լուտանքներ թափեց գլխին, անվանեց ողորմելի ու վախկոտ, կոչ արեց սպասել մի քիչ, որ ստանա իր ապստամբության մրցանակը։ Փոկասը, լսելով իր հասցեին ուղղված լուտանքները և ճանաչելով իրեն անարգողին, քաշեց սանձը, շուռ եկավ դեպի նա և ասաց. «Դու, ով մարդ, նկատի ունենալով մարդու բախտի փոփոխականությունը, մի հայհոյիր, մի վիրավորիր արդեն դժբախտացած մարդուն, այլ գթա ու ողորմիր ինձ, տարաբախտիս, մի մարդու, որ կուրապաղատ հայր է ունեցել, կեսար պապ, կայսր հորեղբայր[200], մի մարդու, որ ինքն էլ դուքս է եղել, գերագույն ավագանու շարքին դասվել, իսկ այժմ ընկել է կատարյալ դժբախտության ու փորձության մեջ»։ [Խարոնը] պատասխանեց ու ասաց. «Ո՜վ չար գլուխ, այդ բաները լավ է երեխաներին ասես, որոնց կարելի է խաբել, իսկ նման փուչ խոսքերով ինձ չես հիմարացնի»։ Նա խթանեց ձին և ավելի հանդուգն մոտեցավ, իսկ Փոկասը, քաշելով իր էֆեստրիսից[201] կախված լախտը,

դեմը կանգնեց, նրա սաղավարտին հարված իջեցրեց և տեղն ու տեղը սպանեց. սաղավարտը չդիմացավ հարվածի ուժգնությանը։ [Փոկասը] քաշելով սանձերը, շարունակեց ճանապարհը։ Ետևից եկողները, հասնելով խարոնի ընկած տեղը, նրա անակընկալ սպանության վրա ապշեցին և բոլորը դադարեցրին հետապնդումը։ Ոչ ոք չէր համարձակվում առաջանալ։ Այսպիսով, Փոկասը հնարավորություն ստացավ բարձրանալ բերդ։ Ապա տեղ հասավ և Սկլերոսը։ Նա [Փոկասի]՝ մոտ անվերջ մարդ էր ուղարկում, որպես իր խնամու շահագրգռված երդմնագրեր տալիս[202] (Սկլերոսի հարսը, իր որդու Կոստանդնի[203] կինը, [Փոկասի] քույր Սոֆիան էր), խորհուրդ տալիս կայսեր կողմն անցնել և այդ կերպ ձեռք բերել նրա ներողամտությունը։ Իր անձի ապահովության մասին երդումներ ստանալով, նա իր մարդկանցով հանձնվեց Սկլերոսին։ Նա ոչ մի պատիժ չստացավ, այլ միայն, երբ դարձավ վանական, կայսրը նրան Քիոս կղզին աքսորեց, իսկ Սկլերոսին հրաման տվեց թեթևազեն տագմաներով[204] դարձյալ անցնել արևմուտք։

970 8. Հովհաննես կայսրը կնության առավ Ռոմանոսի քույր
նոյեմ. Թեոդորային, Կոստանդին Ծիրանածինի դստեր։ Իր այգ արարքը մայրաքաղաքի բնակիչներին շատ դուր եկավ, քանզի դրանով նա պահպանում էր թագավորական իշխանությունը հարստության[205] համար։

971 9. Իր թագավորության երկրորդ տարին նա վճռեց ռուսների դեմ արշավել։ Նվերներ բաժանելով, նա սիրաշահեց զորքը, զորավար նշանակեց իրենց խոհեմությամբ ու ռազմավարական փորձով անուն հանած մարդկանց և այլ պատրաստություն տեսավ, որպեսզի զորքը ոչ մի բանի պակասը չզգա։ Նա նավատորմիղի դրունգար, հետագայում պրոտովեստիար դարձած Լեոնտիոսի միջոցով նաև նավատորմիղը կարգի բերեց՝ հին նավերը վերանորոգեց, ապա և նորերը շինեց և ուժեղ նավատորմիղ ստեղծեց[206]։ Գարնանն արդեն ամեն ինչ պատրաստ էր և նա աստծուն աղոթելով, քաղաքացիներին հրաժեշտ տվեց ու մայրաքաղաքից դուրս եկավ։ Հասնելով Ռեգեստոս[207], իր մոտ եկան սկյութների երկու դեսպան, որոնք առերես դեսպանության էին ժամանել, բայց իրականում հռոմայեցիներին լրտեսելու։ Սրանք նախատում էին [հռոմայեցիներին], ասում, թե իզուր են իրենց փորձության ենթարկում, որի վրա կայսրը հրամայեց նրանց ողջ ճամբարով մեկ պտույտ կատարել և ականատես լի-

նել զորաշարքերին (նա շատ լավ հասկացավ նրանց գալստյան
նպատակը)։ Երբ նրանք այդպես պտույտ կատարեցին և ամեն
ինչ հետախուզեցին, [կայսրը] նրանց հրամայեց վերադառնալ
և իրենց առաջնորդին հայտնել, թե այդպիսի կազմակերպված
ու կարգապահ զորքով է հռոմայեցիների կայսրը սպառազեն
գալիս նրա դեմ պատերազմելու։ Ահա այսպես նա ճամփու դրեց
դեսպաններին, իսկ ինքն էլ այնուհետև մարտունակ զինվորներ
վերցնելով՝ շուրջ հինգ հազար հետևակ և չորս հազար հեծյալ,
առաջ շարժվեց, մնացած համայն զորքին հրամայելով Վասիլ
պարակիմոմենոսի գլխավորությամբ առանց շտապելու հետևել
իրեն[208]։ Աննկատ Հեմոսն անցնելով, նա ոտք դրեց թշնամու եր-
կիրը ու բանակեց բուլղարների արքայանիստ Մեծ Պրեսլավա[209]
քաղաքի մոտ։ Իր հանկարծակի [գալուստը] սկյութներին ապ-
շեցրեց ու անելանելի վիճակի մեջ գցեց, իսկ այդ փորձություն-
ների կազմակերպիչ ու պատճառ Կալոկիրեսը նախքան պատե-
րազմական փողերի ձայնը լսելը (սա էլ էր այնտեղ գտնվում),
և իմանալով, որ կայսրը եկել է պատերազմին անձամբ մասնակ-
ցելու, քաղաքից ծածուկ ճողոպրեց, փախավ ռուսների ճամբա-
րը[210]։ [Ռուսները], տեսնելով նրան և իմանալով կայսեր ժա-
մանման մասին, մեծ տագնապի մեջ ընկան, բայց Սվյատոսլա-
վի բազում հորդորների, նրա՝ տվյալ իրադրության հարմար
արտասանած ճառի վրա իրենց հավաքելով, գնացին ու բանա-
կեցին հռոմայեցիներին մոտիկ։ Այդ ընթացքում կայսեր հետ
գտնվող զորամասը, հասնելով քաղաքի առջև տարածված դաշ-
12—IV տը, հանկարծակի ու անսպասելի հարձակվեց թշնամիների վրա։
971 Նա հասավ պարիսպներից դուրս զորավարժությամբ զբաղված
ութ հազար հինգ հարյուր հոգուց բաղկացած [թշնամիներին],
որոնք որոշ ժամանակ դիմադրելուց հետո, հոգնատանջ փա-
խուստի դիմեցին։ Նրանցից մի մասը անփառունակ կոտորվեց,
մյուսն էլ փրկություն գտավ քաղաքում։ Այս դեպքերի ժամա-
նակ, քաղաքի ներսում գտնվող սկյութները, իմանալով հռոմա-
յեցիների անակնկալ գալստյան և յուրայինների հետ նրանց
մարտի բռնվելու մասին, յուրաքանչյուրն իրենց ձեռքն անցած
զենքն առնելով, դուրս եկան օգնության։ Հռոմայեցիները, հան-
դիպելով նրանց անկազմակերպ ու ցրված վիճակում, կոտորում
էին։ Չկարողանալով անգամ կարճատև դիմադրություն ցույց
տալ, նրանք փախուստի դիմեցին։ Հռոմեական փաղանգի հեծ-
յալները առաջ անցնելով, փակեցին քաղաք տանող ճանապար-

հը, իսկ դաշտով մեկ ցրված թշնամիները, փորձելով փախուստի դիմել, հռոմայեցիների ձեռքն էին ընկնում ու կոտորվում։ Համայն դաշտը լցվեց դիակներով, իսկ ավելի շատ մարդիկ էլ գերի ընկան։ Պրեսլավայի համայն զորքի առաջնորդ Սֆանգելլոսը (սա Սվյատոսլավից հետո սկյութների մեջ երկրորդ մարդն էր համարվում)[211], երկյուղելով քաղաքի մասին, փակեց դարպասները, լծակներով դրանք ապահովեց և բարձրանալով պարիսպը, ամեն տեսակի նետերով ու քարերով դիմադրում էր հարձակման անցած հռոմայեցիներին։ Երբ վրա հասավ գիշերը, պաշարումը դադարեց։ Վաղ առավոտյան երևաց պրոեդրոս Վասիլը[212], իր գլխավորած համայն զորքով։ Սրա գալստյան վրա կայսրը շատ ուրախացավ, նա մի բլրի վրա բարձրացավ, որպեսզի սկյութներն իրեն տեսնեն, իսկ միացյալ զորքերը քաղաքը օղակի մեջ առան։ Կայսրը նրանց բազմիցս կոչ արեց տեղի տալ, գլխովին չկոտորվել, բայց [սկյութները] չէին համաձայնվում պարիսպից իջնել։ Դրա վրա հռոմայեցիները արդար զայրույթով լցված, շարունակեցին պաշարումը, նետաձգությամբ զսպելով պարիսպների վրա կանգնածներին, և պարիսպներին աստիճաններ հենելով։ Մի քաջարի զինվոր, աջ ձեռքին թուր բռնած, իսկ ձախ ձեռքով էլ իր գլուխը վահանով ծածկած, առաջինը բարձրացավ աստիճաններից մեկից վեր։ Վահանով նա ետ էր մղում հարվածները, իսկ թրով մարտնչում իր վրա հարձակվողների ու ճանապարհը փակել փորձողների դեմ։ Նա բարձրացավ [պարիսպի] ատամնաշարի վրա և այնտեղ գտնվող բոլոր [թշնամիներին] ցիր ու ցան անելով, հնարավորություն ստեղծեց իր ետևից եկողներին բարձրանալու[213]։ Սրա օրինակին հետևեցին և շատ ուրիշներ։ Ընդհարման ժամանակ սկյութները պարտություն կրելով, իրենց պարսպից ցած էին գլորում։ Նախորդների ետանդից վարակված բազում այլ հռոմայեցիներ պարսպի տարբեր տեղերում աստիճաններ հենելով, վեր էին բարձրանում։ Երբ սկյութներն իրարանցման մեջ ընկան, [հռոմայեցիներից] մի քանիսին հաջողվեց աննկատ, առանց որևէ դժվարության մոտենալ դարբասին և բացելով այն, հնարավորություն տալ զորքերին ներս մտնելու։ Այս ձևով ահա քաղաքը գրավվեց։ Սկյութները փախուստի դիմեցին քաղաքի փողոցներով և [հռոմայեցիների] ձեռքն ընկնելով կոտորվում էին, իսկ կանայք ու երեխաները՝ գերեվարվում։ Կնոջ ու երեխաներով գերի ընկավ նաև բուլղարների թագավոր Բորիսը, դեռևս թագավորի

*նշանակները վրան։ Նրան կայսեր մոտ բերեցին, որը մարդասիրաբար վարվեց, կոչելով բուլղարների թագավոր։ Նա ազատ էր արձակում գերի ընկնող ամեն մի բուլղարի, թույլ տալով նրանց գնալ ուր ցանկանան, ասելով, որ ինքը եկել է ոչ թե բուլղարներին ստրկացնելու, այլ նրանց ազատագրելու, որ միայն ռուսներին է նա թշնամի համարում և նրանց նկատմամբ վերաբերվում որպես թշնամիների։*

*10. Սկյութներից ամենաքաջերը, ութ հազար հոգի, տիրելով քաղաքի ներսում գտնվող պալատի ինչ-որ ամրության, որոշ ժամանակ վրիպեցին [հռոմայեցիների] ուշադրությունից և թաքուն բռնելով կոտորում էին բազում [հռոմայեցիների], ովքեր ետ էին մնում կամ դիպվածով այնտեղ էին լինում։ Երբ այդ մասին կայսրն իմացավ, նրանց դեմ ուժեղ զորք ուղարկեց[214], որը, սակայն, եռանդով գործի չլծվեց, վախեցավ պաշարման անցնել, ոչ թե ռուսներից երկյուղելու պատճառով, այլ որովհետև տեղանքը շատ ամուր էր ու անառիկ։ Բայց կայսրը այս հարցն էլ հեշտությամբ լուծեց, զենքն առնելով և մյուսներից առաջ հետիոտն անցնելով։ Զինվորները, տեսնելով դա, իրենք էլ իսկույն զենքերն առան ու վազեցին, յուրաքանչյուրը շտապելով կայսրից առաջ անցնել և աղմուկ աղաղակով բերդի վրա հարձակվեցին։ Ռուսները պաշարողներին համառ դիմադրություն ցույց տվեցին և [հռոմայեցիները] բազում տեղերից հրդեհ գցելով, դիմադրողներին հաղթեցին։ Կրակի ուժին ու հռոմայեցիների զենքին չդիմանալով, նրանք յուրաքանչյուրն իրեն ցած նետելով, փախուստի էր դիմում։ Շատերը հրո զոհ դարձան, գահավիժելով սպանվեցին, իսկ մնացածներն էլ սրի քաշվեցին ու գերի ընկան։ Ահա քաղաքը այս կերպ գրավվեց, այն չկարողացավ ամբողջ երկու օր անգամ դիմագրել։ Գրավված քաղաքին վերստին տիրանալով, կայսրը տեղում ուժեղ կայազոր հաստատեց, առատ պարենով ապահովեց, ապա նշեց սուրբ Հարության տոնը[215], քաղաքն էլ իր անունով Հովհաննուպոլիս կոչելով, հաջորդ օրը ճամփա ընկավ դեպի Դորոստոլոն, որը Դրիստրա էլ է կոչվում։*

*11. Իսկ Սվյատոսլավը, իմանալով Պրեսլավայի առման մասին, ինչպես սպասելի էր, իրարանցման մեջ ընկավ, բայց և այնպես միտքը չփոխեց, այլ իր մարդկանց գոտեպնդեց, կոչ անելով ավելի մեծ քաջություն ցուցաբերել և ինչ հնարավոր է կատարելով, այս և բոլոր կասկածելի բուլղարներին, շուրջ ե-*

րեք հարյուր հոգի, սպանելով, դուրս եկավ հռոմայեցիների դեմ։
Կայսրը իր ճանապարհին ընկած քաղաքները[216] գրավեց, նրանց
մեջ զորավարներ հաստատեց, դրոհով վերցրեց բազմաթիվ
բերդեր ու քաղաքներ, և դրանք հանձնելով զինվորներին թալա-
նելու, առաջ շարժվեց։ Երբ հետախույզներն ասացին, թե ինչ-որ
սկյութներ են գալիս, նա ընտիր զինվորների ուղարկեց։ Թեոդո-
րոս Միսթեացուն նա զորահրամանատար նշանակեց և կարգադ-
րեց գլխավորել զորքը, հետախուզել հակառակորդների քանակը
և իրեն այդ մասին տեղյակ պահել։ Իսկ եթե թշնամին առաջ
անցնի, ապա հեռամարտությամբ գաղափար կազմել նրանց
հզորության մասին։ Ինքը հետևեց նրանց, համայն բանակը
կարգի բերած։ Երբ Թեոդորոսի զորքը բախվեց թշնամիներին,
ուժեղ թափով նրանց վրա խուժեցին։ Ռուսները վախենալով ծու-
ղակի մեջ ընկնել, առաջ չէին գնում և որովհետև նրանցից շա-
տերը վիրավորվել էին, ոմանք էլ սպանվել, տեղի տալով ցրիվ
եկան մերձակայքում գտնվող լեռները, այնտեղի խիտ ու ըն-
դարձակ անտառները և լեռնային [կածանով] ապավինեցին
Դրիստրայում։ Նրանք յոթ հազար հոգի էին, իսկ իրենց հետ
կռվի բռնված ու պարտության մատնած հռոմայեցիները՝ երեք
հարյուր։ Սկյութները միացան Սվյատոսլավին և նրան այնտե-
ղից վերցնելով երեք հարյուր երեսուն հազար հոգուց բաղկացած
համայն զորքով բանակեցին Դորոստոլոնից տասներկու մղոն
առաջ, վճռելով քաջաբար և ուժով իրենց վրա եկող կայսեր ընդ-
դիմակայելու։ Հռոմայեցիները մոտալուտ հաղթանակներից բեր-
կրկրացած, սպասում էին վճռական ճակատամարտին։ Նրանք
վստահ էին, որ աստված իրենց սատար է կանգնելու, քանզի
նա չի սիրում անարդար իշխանավորներին, այլ մշտապես օգ-
նում է նրանց, ում նկատմամբ անարդար են վարվել, այդ իսկ
պատճառով ոչ միայն քաջարիները, այլև վախկոտներն ու թույլ
հոգու տեր մարդիկ պատրաստակամություն հանդես բերեցին,
արիությամբ և մարտին մասնակից դառնալու անհամբերու-
թյամբ լցվեցին։ Հակառակորդ զորքերը, երբ մոտեցան միմյանց, և՛
կայսրը, և՛ Սվյատոսլավը [իրենց զինվորներին] կոչով դիմե-
ցին, ոգևորեցին նրանց, ապա ստեղծված իրադրության կա-
պակցությամբ անհրաժեշտ կարգադրություններն անելով, պա-
23—IV տերազմական փողերը հնչելուց հետո նույն եռանդով բախվե-
—971 ցին միմյանց։ Առաջին ընդհարման ժամանակ հռոմայեցիները
ուժեղ թափով հարձակում գործելով և շատերին դետին տապա-

*լելով, սասանեցին բարբարոսների գորաշարքերը։ Սակայն բարբարոսները չնահանջեցին, հռոմայեցիներն էլ գլխովին չհալածեցին նրանց, և սկյութները, իրենց գարձյալ գոտեպնդելով, աղաղակներով հռոմայեցիների վրա վերստին հարձակվեցին։ Որոշ ժամանակ պայքարը հավասար էր, բայց երբ սկսեց մթնել, հռոմայեցիները իրար ոգևորելով և հորդորներից կարծես ուժ ստացած, խուժեցին սկյութների ձախ թևի վրա և իրենց անկասելի թափով շատերին տապալեցին։ Բայց ռուսները, ընկնելով ծանր դրության մեջ, դեռ դիմադրում էին, դրա համար կայսրն իր մտերիմներից մի քանիսին օգնության ուղարկեց, ինքն էլ, առանց կայսերական նշանակների, նիղակր ձեռքին, ձին խթանելով և զինվորներին ոգևորելով, շտապեց նրանց ետևից։ Համառ ճակատամարտ տեղի ունեցավ, մարտի ելքը բազմիցս փոփոխվեց (պատմում են, որ պայքարի ելքը տասներկու անգամ մեկ այս, մեկ այն կողմ տատանվեց) և ռուսները վտանգներից հուսաբեկ եղած, խայտառակ կերպով փախուստի դիմեցին և դաշտով մեկ ցրիվ եկան։ Հռոմայեցիները, հետապնդելով նրանց, ձեռքն անցածին կոտորում էին։ Շատերն ընկան, դրանցից ավելին էլ գերի վերցվեց, իսկ ովքեր որ կարողացան վտանգից պրծնել, ապավինեցին Դորոստոլոնում։*

*12. Կայսրը հաղթանակի առթիվ բարեհաղթ վկա Գեորգին գոհություն մատուցեց (թշնամիներին նա ճակատամարտ տվեց նրա հիշատակի օրը)[211], իսկ հաջորդ օրը ինքն էլ ճամփա ընկավ դեպի Դորոստոլոն։ Տեղ հասնելով, նա ամուր ճամբար հաստատեց, բայց պաշարման չանցավ, քանզի վախեցավ, որ գետի[212] [ափը] բռնած չլինելով, ռուսներին կհաջողվի նավերով փախուստի դիմել։ Դրա համար նա բանակեց, սպասելով հռոմեական նավատորմիղին։ Այդ միջոցին Սվյատոսլավը, երկյուղելով, որ իր մոտ գտնվող շուրջ 20 հազար բուլղար ռազմագերիները կարող են ապստամբել, նրանց առավ երկաթե և այլ կապանքների մեջ, և նախապատրաստվեց պաշարման [դեմ պայքարելու]։ Երբ նավատորմիղը տեղ հասավ, կայսրն անցավ պարսպամարտի և բազմիցս հարձակման անցած սկյութներին փախուստի մատնեց։ Օրերից մեկը, երբ հռոմայեցիները երեկոյան մոտ ցրվեցին ճաշելու, բարբարոսները երկու մասի բաժանված, ձիավոր ու հետևակ, մարտնչելու համար դուրս եկան քաղաքի երկու փոքր դռներից՝ արևելյանից, որի հսկողությունը դրված էր ստրատոպեդարխ[213] Պետրոսի և նրա թրակացի ու մակեդո-*

նացի [զինվորների] վրա, և արևմտյանից՝ որի հսկողությունը վստահված էր Վարդաս Սկլերոսին և նրա արևելյան զորաբանակին։ [Սկյութները] առաջին անգամ այստեղ ահա ձիավոր հանդես եկան, նախորդ մարտերում նրանք հետևակ մարտնչեցին։ Հռոմայեցիները նրանց համառորեն ընդդիմակայեցին և քաջաբար կռվեցին։ Երկար ժամանակ պայքարը հավասար էր, բայց ի վերջո հռոմայեցիներն իրենց արիությամբ բարբարոսներին փախուստի մատնեցին դեպի պարիսպները։ Այս մարտի ընթացքում նրանցից շատերն ընկան, հատկապես ձիավորներից[220], իսկ հռոմայեցիներից ոչ ոք չվիրավորվեց, միայն երեք ձի սպանվեց։ Բարբարոսներն ահա այսպիսի ջարդ ստանալով, պարիսպներից ներս քշվեցին։ Վրա հասավ գիշերը, բայց նրանք գիշերն անքուն անցկացրին, վայրենի ու սարսափելի կոծով ողբացին մարտում ընկածներին, այն աստիճանի, որ լսողներին թվում էր, թե գազաններ են ոռնում ու կաղկանձում և ոչ թե մարդիկ ողբում ու կոծում։ Երբ լույսը բացվեց, [ռուսները] տարբեր բերդերում հաստատված իրենց բոլոր կայազորները Դորոստոլոն կանչեցին. նրանք շտապ կարգով տեղ հասան։ Իսկ կայսրը վերցնելով իր ողջ զորքը, եկավ քաղաքի առջև փռված դաշտը և բարբարոսներին պատերազմի էր դրդում։ Երբ նրանք չեկան, նա ճամբարը վերադարձավ ու հանգիստ մնաց։ Կոստանտիայից[221] և Իստրոս գետից այն կողմ գտնվող բերդերից նրա մոտ դեսպաններ ժամանեցին, իրենց գործած չարիքների համար ներում աղերսելով և իրենց, ամրություններով հանդերձ [կայսեր] հանձնելով։ Կայսրը նրանց սիրալիր ընդունեց, այդ բերդերը ընդունելու համար մարդկանց ուղարկեց, ինչպես և նրանց պահպանության համար բավարար կայազոր։ Երբ վրա հասավ երեկոն, ռուսները, բացելով քաղաքի բոլոր դարպասները, նախորդներից շատ ավելի մեծ թվով հարձակվեցին հռոմայեցիների վրա, որոնք գիշերվա վրա [հույս դրած] հանգիստ վիճակում էին։ Առաջին ընդհարման ժամանակ, նրանք կարծես գերակշռեցին, բայց փոքր անց հռոմայեցիները գերազանցեցին։ Երբ հերոսաբար կռվող Սֆանգելլոսն սպանվեց, [ռուսները] շփոթվեցին և նրանց թափը կոտրվեց։ Հակառակ դրան, ամբողջ գիշերը նրանք տեղի չտվեցին, ինչպես և հաջորդ օրը՝ մինչև կեսօր։ Երբ կայսրը զորք ուղարկեց փակելու համար բարբարոսների մուտքը դեպի քաղաք և այդ բանը ռուսներն իմացան, դիմեցին փախուստի։ Քաղաք տանող [ճանապարհները] փակված

*գտնելով, նրանք գաշտի վրայով [փորձեցին] փախուստի դիմել, բայց բռնվելով, սպանվում էին։ Սվյատոսլավը գիշերը քաղաքի պարիսպը օղակեց խոր խրամով, որպեսզի խոչընդոտի հռոմայեցիների թափով հարձակումը քաղաքի պարսպի վրա։ Ահա այսպես ապահովելով քաղաքը, նա կարծեց, որ՝ կկարողանա քաջաբար դիմանալ պաշարմանը։ Այն պատճառով, որ նրա զինվորների մեծ մասը վիրավոր լինելով վատ վիճակում էր, որի վրա բարդվեց և սովը (նրանց պարենն արդեն սպառվել էր, իսկ հռոմայեցիներն էլ արգելակում էին նրանց դրսից մատակարարումը), Սվյատոսլավն ահա օգտվելով մութ ու անլուսին մի գիշերից, երբ երկնքից տեղատարափ անձրև ու սարսափելի կարկուտ էր թափվում, սահմռկեցուցիչ որոտ ու կայծակ, երկու հազար հոգով, մտնելով միափայտ նավերը[222], դուրս եկավ պարեն հայթայթելու։ Յուրաքանչյուրն որտեղից որ կարողացավ հացահատիկ, կորեկ և այլ սննդամթերքներ հավաքելով, միափայտ նավակներով, գետի վրայով, վերադառնում էին դեպի Դորոստոլոն։ Վերադարձին նրանք գետափին նկատեցին զինվորների բազում սպասավորների, որոնցից ոմանք ձիերին էին ջրում, ոմանք խոտ հավաքում, ուրիշներն էլ փայտ ջարդում, և նավերից դուրս գալով անշշուկ գնացին և անսպասելիորեն ու թաքուն հարձակվելով, նրանցից շատերին սպանեցին, մնացածներին էլ ստիպեցին ցրվել մերձակա թավուտներում։ Ապա դարձյալ նավերը մտնելով, նպաստավոր քամու օգնությամբ հասան Դորոստոլոն։ Երբ այդ բանն իմացվեց, կայսրն ընկավ մեծ տրտմության մեջ, նա նավատորմիղի հրամանատարներին խիստ պախարակեց այն բանի համար, որ նրանք չիմացան բարբարոսների Դորոստոլոնից դուրս նավելու մասին։ Նա սպառնաց նրանց մահապատժի ենթարկել, եթե այդ բանը մի անգամ ևս կրկնվի։ [Նավատորմիղի հրամանատարները] արդեն ուշադիր հսկում էին գետի երկու ափերն էլ, իսկ կայսրը ամբողջ վաթսուն հինգ օր պաշարման մասնակցելով, ամեն օր համառ մարտ տալով, գտավ որ պետք է օղակմամբ, պաշարյալներին սովի մատնելով փորձել քաղաքին տիրանալ։ Դրա համար նա ամեն տեղից խրամներով փակեց ճանապարհները, պահակություն հաստատեց այդտեղ, որպեսզի և ոչ ոք չկարողանա դուրս գալ պարեն հայթայթելու, իսկ ինքը հանգիստ մընաց։ Դորոստոլոնում ահա դրությունն այսպիսին էր։*

*13. Իսկ Լևոն կուրապաղատը և նրա որդի Նիկեփորը, որոնք*

ինչպես նախապես ասացինք ստից կուրացվել էին, (նրանց աչ-
քի լույսի հետ ոչինչ չէր պատահել), դարձյալ խռովություն են
նախապատրաստում՝ կաշառելով մայրաքաղաքի բազում բնա-
կիչների, ինչպես և արքունիքի պահապանների։ Երբ նրանք վճի-
ռը կայացրին, մի նավ վարձեցին և նրա մեջ մտնելով, նավեցին
971 այն կղզուց, որտեղ ապրելու էին դատապարտվել, և հասան
մայրաքաղաքի դիմացի ափը գտնվող մայր ցամաքը, Պելա-
միդա կոչվող արվարձանը, այնտեղից էլ վաղ առավոտյան
շարժվեցին դեպի Բյուզանդիոն։ Դավադիրներից մեկը այդ մա-
սին տեղյակ պահեց նավատորմիղի դրունգար Լևոնին, որին,
Վասիլ ռեքտորի[223] հետ վստահված էր արքունիքի պահպանու-
թյունը։ [Լևոնը] զգալի ուժեր ուղարկեց կուրապաղատին և նրա
որդուն բռնելու համար։ Երբ վերջիններս այդ բանն իմացան,
ապավինեցին Մեծ եկեղեցում, բայց այնտեղից բռնի դուրս հան-
վելով, տարվեցին Պրոտե կղզին[224] ուր և կուրացվեցին։ Այդ ժամա-
նակները մի բան էլ մեջտեղ եկավ, որի մասին արժե պատմել։
Սենատորներից մեկի այգում պրիկոնեսյան քարից պատրաստ-
ված և անուշադրությամբ գցված մի պնակ գտնվեց, որի վրա
պատկերված էր երկու դեմք՝ մեկը տղամարդու, մյուսը՝ կնոջ։
Պնակի ճակատին գրված էր մոտավորապես հետևյալ արձանա-
գրությունը. «Քրիստոսասեր Հովհաննեսին և Թեոդորային[225] եր-
կար կյանք»։ Այդ բանը ոմանց ապշեցրեց, քանզի շատ պարզ
կերպով կատարվածների մասին էր վկայում։ Ուրիշներն էլ
գտնում էին, որ դա զուրկ չէ խորամանկությունից ու կախար-
դանքից, որ այգու տերը այսպիսի խորամանկությամբ ցանկա-
նում է կայսերական բարեհաճությանն արժանանալ։ Ես չեմ
կարող ասել, թե ովքեր էին իրավացի։

14. Իսկ պաշարված սկյութները ներսում սովից տառապե-
լով, դրսից էլ՝ պարսպավեր մեքենաներից, հատկապես այն
կողմից, որի հսկողությունը դրված էր Ռոմանոս Կուրկուասի
որդի մագիստրոս Հովհաննեսի վրա[226] (այնտեղ գտնվող քարա-
նետ մեքենան շատ էր պաշարվածներին վնաս հասցնում), ա-
ռանձնացնելով ամենաքաջ ծանրազեն զինվորներից ոմանց,
թեթևազենների հետ միասին ուղարկեցին, փորձելու այդ մեքե-
նան ոչնչացնել։ Կուրկուասը, իմանալով դա, վերցրեց իր լավա-
գույն մարդկանց, շտապ օգնության դիմեց, բայց ընկնելով
սկյութների շրջապատման մեջ, նիզակի հարվածից ձին կորց-
րեց, նրա հետ գետին գլորվեց և սրախողխող արվեց։ Վրա հա-

սած Հռոմայեցիները ռուսների հետ կռվի բռնվեցին, մեքենան
փրկեցին, իսկ սկյութներին էլ նետ շպրտելով, [ստիպեցին] քա-
20—VIII ղաքում փակվել։ Հուլիս ամսի քսանին ռուսները հսկայական
971 բազմությամբ [քաղաքից] դուրս եկան և Հռոմայեցիների հետ
կռվի բռնվեցին։ Իրենց դոտեպնդում և մարտի էր պատրաստում
սկյութների մոտ նշանավոր Իկմոր անունով մեկը, որը Սֆան-
գելլոսի սպանությունից հետո նրանց մոտ մեծ պատիվ ուներ։
Նրան բոլորը հարգում էին ոչ թե իր տոհմիկ ծագման պատճա-
ռով, ոչ էլ համակրելով նրան, այլ իր քաջության համար։ Կրե-
տեի ամիրա Կուրուպեսի որդի Անեմասը, որ կայսերական թիկ-
նապահներից մեկն էր, տեսնելով, թե ինչպես [Իկմորը] քաջա-
բար կռվելով և մյուսներին էլ ոգևորելով ու նույն բանին մղե-
լով, սասանում էր Հռոմայեցիների շարքերը, նրա աժդահա կա-
ռուցվածքից ամենևին չերկյուղեց, ոչ էլ նրա արիությունից, և
քաջությամբ լի, ձին դեռուդեն շարժելուց հետո, իր ազդրից
կախված թուրը քաշելով, անզուսպ թափով շարժվեց սկյութի
վրա, հարվածեց նրա ձախ ուսին, անրակի մոտ և կտրեց վիզը։
Գլուխը աջ թևի հետ միասին գետին ընկավ։ Սկյութը գետին
փռվեց, իսկ Անեմասը անվնաս վերադարձավ ճամբար։ Այս
դեպքի առթիվ խառնիճաղանջ աղմուկ բարձրացավ՝ Հռոմայե-
ցիները հաղթականորեն աղաղակեցին, իսկ սկյութները՝ անփա-
ռունակ կոծեցին ու տեղի տվեցին։ Հռոմայեցիների աղաղակնե-
րի տակ նրանք փախուստի դիմեցին և խայտառակ կերպով
քաղաքում ապաստանեցին։ Այդ օրը [նրանցից] շատերը սպան-
վեցին՝ ոմանք տեղի նեղվածքի պատճառով իրար ոտնատակ
անելով, մյուսները ընկնելով Հռոմայեցիների ձեռքը ու սրի
քաշվելով։ Քիչ էր մնացել գերի ընկներ հենց ինքը՝ Սվյատոս-
լավը, բայց վրա հասած գիշերը փրկեց նրան։ Վերապրածները,
ապաստանելով պարիսպների ետևում, Իկմորի սպանության
առթիվ մեծ լացուկոծ բարձրացրին[227]։ Ընկած բարբարոսներին
դիակապտելու ժամանակ Հռոմայեցիները սպանվածների մեջ
կանանց էլ գտան, որոնք տղամարդու շորեր հագած տղամարդ-
կանց հետ Հռոմայեցիների դեմ էին կռվել։

15. Քանի որ պատերազմը բարբարոսների համար անհաջող
էր ընթանում և ոչ մի տեղից օգնության հույս չկար (ցեղակից-
ները հեռու էին գտնվում, իսկ սահմանակից այլազգի բարբա-
րոսները, Հռոմայեցիներից սարսափած, մերժեցին օգնել։ Նը-
րանց պարենն էլ սպառվեց և ոչ մի տեղից հնարավոր էլ չէր

այն ձեռք բերել, քանզի հռոմեական նավատորմիղը ուշադիր կերպով հսկում էր գետի ափերը։ Իսկ հռոմայեցիների համար ամեն օր, կարծես առատ աղբյուրից, հոսում էր ամեն մի բարիք, հեծելազորն ու հետևակը գնալով ստվարանում։ Սկյութները չէին կարող նաև իրենց նավակների մեջ մտնելով փախուստի դիմել, քանզի, ինչպես ասացինք, դուրս գալու տեղերը ուշադիր հսկվում էին), նրանք ժողով արեցին։ Նրանցից ոմանք խորհուրդ էին տալիս գիշերով ծածուկ հեռանալ, մյուսները գտնում էին, որ քանի որ նահանջելու ոչ մի հնարավորություն չկա, հռոմայեցիների հետ պայման կնքեն, երաշխիքներ խնդրեն և այդպես հեռանան դեպի իրենց երկիրը։ Ուրիշներն էլ իրենց կարծիքով ձեռնտու այլ խորհուրդներ էին տալիս։ Բոլորն էլ ցանկանում էին մեկրնդմիշտ վերջ տալ պատերազմին, բայց Սվյատոսլավն ասաց մի անգամ ևս պատերազմել հռոմայեցիների դեմ և կամ հաղթել հակառակորդներին լավ մարտնչելով, կամ էլ պարտության դեպքում գերադասել փառավոր ու երանելի մահը խայտառակ ու ամոթալի կյանքից, քանզի փախուստով փրկվելու դեպքում կյանքն իրենց համար անտանելի կլինի, իրենք արհամարհանքի առարկա կդառնան անցյալում իրենցից սարսափող հարևան ազգերին։ Սվյատոսլավի խորհուրդը նրանց դուր եկավ և բոլորը համաձայնվեցին ամբողջ ուժով մասնակցել մահու կենաց պայքարին։ Հաջորդ օրը նրանք բոլորը միասին դուրս եկան քաղաքից, փակեցին դարբասները, որպեսզի ոչ ոք չկարողանա փախուստի դիմելով ապաստանել քաղաքում, և բախվեցին հռոմայեցիներին։ Տեղի ունեցավ կատաղի մարտ, բարբարոսները քաջաբար էին կռվում, իսկ ծանր սպառազինված հռոմայեցիները, կիզիչ արևից ու ծարավից տանջվելով (միջօրե էր), սկսեցին տեղի տալ։ Կայսրը, տեսնելով դա, իր մարդկանցով շտապեց օգնության, կռվի ամբողջ ծանրությունը նա իր վրա վերցրեց, իսկ արևից ու ծարավից տանջվող զինվորների համար կարգադրեց գինով ու ջրով լի տիկեր բերել։ Իրենց ծարավն հագեցնելով և կիզիչ արևից որոշ ժամանակ խուսափելով, նրանք իրենց կարգի բերեցին և ուժգնությամբ ու թափով խուժեցին սկյութների վրա։ Վերջիններս քաջաբար դիմադրեցին և մարտը հավասար էր։ Կայսրը հասկացավ, որ սկյութների տոկունության պատճառը նեղ տեղանքն է, որը հռոմայեցիներին չի թողնում ծավալվել և իրենց արիությանը վայել մեծագործություններ ցուցաբերել, դրա համար զորավարներին հրամայեց

նահանջել դեպի դաշտը, հեռանալ քաղաքից, փախուստի դիմելու տպավորություն թողնելով, բայց ոչ շտապողականությամբ, այլ հանդարտ ու քիչ-քիչ և երբ [իրենց] հետապնդողներին քաղաքից հեռու քաշեն, հանկարծակի ձգեն սանձերը, շրջեն ձիերին և սկյութների հետ կռվի բռնվեն։ Զորավարները կատարում էին հրամանը, իսկ ռուսները հռոմայեցիների նահանջը փախուստ համարելով, իրար կոչ անելով, աղաղակներով անցան հետապնդման։ Հռոմայեցիները, երբ հասան կանխորոշված վայրը, շրջվեցին ու քաջաբար հարձակվեցին նրանց վրա։ Այստեղ կատաղի մարտ տեղի ունեցավ, որի ժամանակ զորավար Թեոդորոս Միսթեացու ձին նիզակահար եղավ, իսկ Թեոդորոսը գետին ընկավ։ Նրա շուրջը համառ կռիվ տեղի ունեցավ, ռուսները ջանում էին սպանել նրան, իսկ հռոմայեցիները՝ փրկել։ Այս Թեոդորոսը ձիուց ընկնելով սկյութներից մեկի գոտիից բռնեց և կարծես մի թեթև վահանիկ լիներ, իր բազկի զորությամբ այս ու այն կողմ շարժելով, ետ էր մղում իր վրա ուղղված հարվածները, և քիչ քիչ նահանջում դեպի հռոմայեցիները, որոնք ի վերջո դերակշռության հասնելով, սկյութներին ետ մղեցին և մարդուն վտանգից փրկեցին։ Պատերազմը ելք չգտած, զորքերը բաժանվեցին միմյանցից։

16. Կայսրը, տեսնելով, որ սկյութները նախկինից ավելի համառորեն են պայքարում, ցավելով չարչարվող և պատերազմից տառապող հռոմայեցիներին, ապա և ժամավաճառությունից նեղված, վճռեց հարցը մենամարտությամբ լուծել։ Նա Սվյատոսլավի մոտ դեսպանություն ուղարկեց, կոչ անելով մենամարտել, ասելով, թե ավելի լավ է մի մարդու մահվամբ հարցը լուծվի, քան թե ժողովուրդներ սրախողխող արվեն և կամաց կամաց սպառվեն, որ թող հաղթողը տերը լինի ամենայնի։ Սվյատոսլավը սակայն չընդառաջեց կայսեր կոչին և գոռոզաբար պատասխանեց, թե ինքը թշնամուց լավ գիտե իր համար ի՞նչն է ավելի լավ, և եթե [կայսրը] մտահոգված է այս աշխարհից հեռանալու, ապա մահվան բյուր ճանապարհներ կան, թող ուզածն ընտրի։ Ահա այսպես պոռոտախոսելով, նա ավելի եռանդով պատերազմի նախապատրաստություն տեսավ։ Կայսրը մենամարտից հույսը կտրած աշխատում էր բոլոր միջոցներով փակել բարբարոսների մուտքը դեպի քաղաք։ Այդ գործը գլուխ բերելու համար նա ուղարկեց մագիստրոս Վարդաս Սկլերոսին՝ իր գլխավորած տագմաներով։ Իսկ ծերունի Ռոմա-

Նոսի որդի Կոստանդին կայսեր որդի պատրիկ Ռոմանոսին և Պետրոս ստրատոպեդարխին իրենց գլխավորած ուժերով կարգադրեց հարձակվել թշնամիների վրա։ Նրանք համառ կռվի բռնվեցին սկյութների հետ, որոնք դիմադրություն ցույց տվեցին։ Մարտի ելքը շատ փոփոխական էր, երկար ժամանակ հավասար։ Այստեղ ևս Կրետեի ամիրայի որդի Անեմասը ձին այստեղ այնտեղ շարժելով ու ավելի ուժեղ խթանելով, երիտասարդական ավյունով խուժեց հենց Սվյատոսլավի վրա, և թշնամու փաղանգն երկուսի բաժանելով, թրով նրա գլխին հարված իջեցրեց։ Նրան թեև ձիուց ցած գլորեց, բայց չսպանեց, նրա հագած զրահը թույլ չտվեց այդ բանն անել։ [Անեմասին] շրջապատեցին և նա շատերից հարվածներ ստանալով, հերոսաբար զոհվեց, արժանանալով անգամ հակառակորդների մեծ հիացմունքին[228]։

17. Պատմում են, թե հռոմայեցիները ի վերուստ էլ օգնություն ստացան. հարավից սկյութների դեմքին մրրիկ բարձրացավ, որ թույլ չէր տալիս նրանց իրենց ուզածի պես մարտ մղել։ Հռոմայեցիների ողջ բանակին մի ինչ-որ մարդ էլ երևաց, որ սպիտակ ձիու վրա նստած առջևից մարտնչում էր, սասանում ու դղրդացնում թշնամիների փաղանգները։ Նա ո՛չ նախապես, ոչ է՛լ դրանից հետո չճանաչվեց։ Ասում են, թե նա Թեոդորոսներից՝ բարեհաղթ մարտիրոսներից մեկն էր։ Կայսրն ահա մշտապես այսպիսի պաշտպաններ ու սատարներ ուներ թշնամիների դեմ։ Այնպես էր պատահել, որ այս ճակատամարտը տեղի ունեցավ հենց այն օրը, երբ մենք ընդունված կարգի համաձայն նշում ենք ստրատելատի[229] հիշատակը։ Բյուզանդիոնում էլ մի առաքինի կին հաստատեց, որ երևույթը գերագույն ուժից էր, նա ճակատամարտի նախօրեին երազ էր տեսել, իրեն թվաց, թե աստվածածինն է մոտը կանգնել և լսել նրա ասածը ինչ-որ զինվորի, թե «Տեր Թեոդորոս, իմ և քո Հովհաննեսը դժվարին կացության մեջ է, շտապիր նրա օգնությանն»։ Առավոտյան նա իր տեսածը հարևաններին պատմեց։ Այդպիսին էր ահա երազը։ Իսկ սկյութները դարձյալ փախուստի մատնվեցին, բայց քաղաքի դարբասները Սկլերոսի կողմից փակված գտնելով, դաշտով մեկ ցրվեցին ու կոտորվեցին, մի մասը՝ իրար տրորելով, իսկ մեծ մասն էլ հռոմայեցիներից սրի քաշվելով։ Մնացած գրեթե բոլորը վիրավոր էին։ Կայսրը ի պատիվ [Թեոդորոս] մարտիրոսի, նրա օժանդակությանը փոխհատույց լինելով հիմնովին քանդեց

այն տաճարը, որտեղ ամփոփված էր նրա սուրբ մարմինը, և շատ ավելի մեծն ու գեղեցիկը կառուցեց, նրա համար նա առանձնացրեց հոյակապ տիրույթներ, իսկ այդ [քաղաքը] Եվխանիայի փոխարեն վերանվանեց Թեոդորոպոլիս[230]։

18. Իսկ Սվյատոսլավը բոլոր միջոցները փորձելով, բայց ոչ մի արդյունքի չհասնելով, համոզվելով, որ իրեն ոչ մի հույս չի մնացել, որոշեց համաձայնության գալ։ Նա կայսեր մոտ դեսպաններ ուղարկեց՝ ապահովության երաշխիքներ խնդրելով, որ հռոմայեցիների դաշնակիցն ու բարեկամը դառնալով, իրեն թույլ տրվի իր մարդկանց հետ տուն վերադառնալ, իսկ սկյութներից ով ցանկանա առևտուր անելու, առանց վախի [իրավունք ունենա] գալ [Ռոմանիա]։ Կայսրն ընդունեց դեսպաններին, նրանց ասաց ընդունված խոսքը, թե հռոմայեցիները սովորություն ունեն թշնամիներին պարտության մատնել, ոչ թե զենքով, այլ բարերարությամբ։ Նա հաստատեց [Սվյատոսլավի] բոլոր խնդրանքները։ Երբ հաշտությունը կնքվեց[231], Սվյատոսլավը աղերսեց տեսակցել կայսեր հետ։ Նրա այդ խնդրանքն էլ նա բավարարեց և Սվյատոսլավն եկավ կայսեր մոտ։ Հանդիպելով միմյանց, նրանք տեսակցություն ունեցան իրենց ցանկացած նյութի շուրջ և բաժանվեցին[232]։ Դարձյալ Սվյատոսլավի խընդրանքով, կայսրը պածինակների մոտ դեսպանություն ուղարկեց՝ բարեկամություն և դաշնակցություն առաջարկելով, որպեսզի նրանք [այլևս] չանցնեն Իստրոս գետը և չասպատակեն Բուլղարիան, թույլ տան ռուսներին առանց խոչընդոտի անցնել իրենց՝ պածինակների երկրի վրայով և նույն տեղով էլ տուն վերադառնալ։ Դեսպանության գնացողը Եվխայիտների եպիսկոպոս Թեոփիլոսն էր։ [Պածինակները], ընդունելով դեսպանությունը, մերժեցին միայն ռուսներին անցում տալու կետը, իսկ մնացածների վերաբերյալ պայմանագիր կնքեցին։ Ռուսները նավեցին, գնացին, իսկ կայսրը դետի ափին գտնվող բերդերի ու քաղաքների մասին հոգալով, դեպի հռոմայեցիների երկիրը շարժվեց։ Քաղաքի քահանայապետը սինոդով հանդերձ, ապա և բոլոր պաշտոնավոր անձինք հաղթական հիմներով ու ներբողներով, պսակներ հագած ելան նրան ընդառաջ՝ մի շատ հոյակապ, չորս սպիտակ ձիերով լծված կառք պատրաստած։ Նրանք մտադիր էին այդ կառքի վրա կայսեր հաղթական շքերթ կազմակերպել։ Կայսրը սակայն ոչ մի արտակարգ բան չէր ուզում, նա իրեն պարզ էր պահում. նա ընդունեց իրեն մատուցված պսակները,

բայց հաղթական շքերթ կատարեց սպիտակ ձիու վրա նստած,
կառքի վրա նա բուլղար թագավորների հանգերձները դրեց, նը-
րանց վրա՝ քաղաքի պաշտպան աստվածամոր պատկերը և հրա-
մայեց [կառքն] իր առջևից տանել։ Հասնելով Ֆորում[233] կոչվող
տեղը և ըստ արժանվույն ներբողների արժանանալով, հաղթա-
նակի առթիվ աստվածամոր և նրա որդուն գոհություն մատուցե-
լով, քաղաքացիների առաջ բուլղարական թագավորության նշա-
նակները Բորիսի վրայից հանեց. դրանք էին՝ ոսկե պսակ, բարակ
թելից գործած խույր և կարմիր կոշիկներ։ Այնտեղից նա գնաց Մեծ
եկեղեցի, որտեղ բուլղարական թագը աստծուն մատուցեց, Բորիսին
մագիստրոսի պատվաստիճանը շնորհեց և ուղևորվեց պալատ։
Իսկ Սվյատոսլավը պածինակների երկրի միջով իր երկիրը
վերադառնալիս նախօրոք իր համար պատրաստված ծուղակի
մեջ ընկավ և իր համայն բազմությամբ հանդերձ գլխովին կո-
972 տորվեց[234]։ Պածինակները այդ ձևով ահա իրենց վրեժը լուծե-
ցին [Սվյատոսլավից] հռոմայեցիների հետ դաշինք կնքելու
համար։

19. Իսկ կայսրը հաղթանակի առթիվ փրկիչ Քրիստոսին գո-
հություն հայտնելուց հետո, Խալկե կամարից վերև ի նորո տա-
ճար կառուցեց՝ նրա պաճուճանքի ու զարդարանքի համար ոչինչ
չխնայելով։ Նա ողջ հարկատու բնակչությունից դադարեց ծխա-
հարկի՝ այսպես կոչված, կապնիկոնի[235] գանձումը։ Նա հրաման
տվեց դահեկանի և օբոլոսի վրա Փրկչի պատկերը դրոշմել, մի
բան, որ նախապես չէր եղել։ [Դրամի] երկու երեսին էլ հռո-
մեական տառեր գրվեցին[236], որ կարդացվում էին հետևյալ կերպ.
«Հիսուս Քրիստոս թագավոր թագավորաց»։ Այդ սովորությունը
պահպանեցին և հաջորդ կայսրերը։ Իր նկատմամբ առաջ քաշ-
ված մեղադրանքի վրա սինոդով Վասիլ պատրիարքին կարգա-
լույծ արեցին. պատրիարք ձեռնադրվեց Անտոնիոս Ստուդի-
974 տեսը[237]։
975 20. Ինդիկտիոնի երրորդ տարվա օգոստոս ամսին գիսաստղ
երևաց, պոգոնիաս[238] կոչվածը։ Նա երևաց մինչև ինդիկտիոնի
չորրորդ տարվա հոկտեմբեր ամիսը։ Նա կայսեր մահն էր կան-
խագուշակում և եղբայրասպան պատերազմների պատճառով
հռոմայեցիների երկրի գլխին գալիք անմխիթարական փոր-
ձանքները։

21. Նիկեփոր կայսեր կողմից գրավված և հռոմայեցիներին
հարկատու դարձած քաղաքները, ինչպես վերևում ասացինք,

ապստամբություն բարձրացնելով, տապալել էին հռոմեական
գերիշխանությունը։ Ահա սրանց դեմ դուրս եկավ կայսրը և հա-
975 սավ մինչև Դամասկոս[239]։ Համոզելով, [քաղցր] խոսքով, բայց
և պատերազմով ու բռնությամբ նա դրանք վերագրավեց և ամեն
ինչ պետք եղածի պես կարգի բերելով, ճանապարհ ընկավ դե-
պի մայրաքաղաքը[240]։ Հասնելով Անավարզա, նա շրջեց Պոդան-
դոսով[241] և մյուս շրջաններով[242], ամեն ինչ աչքից անցկացրեց,
տեսավ հոյակապ կալվածներ, ծաղկող ու բերքառատ գյուղեր և
իր մոտ գտնվողներին հարցրեց, ու՞մ են դրանք պատկանում։
Երբ իմացավ, որ բոլորը պատկանում են Վասիլ պարակիմո-
մենոսին, որոնցից սրան ու դրան վերջերս հռոմայեցիները տիրա-
ցան Նիկեփոր կայսեր ձեռքով, Իսկ սրան ու դրան սխոլերի այսինչ
դոմեստիկոսի, այս էլ մի ուրիշի, վերջապես սրան ու դրան քո
կողմից, և նվեր են տրվել Վասիլին, երբ տեսավ, որ ձեռք բեր-
վածից պետությանը ոչ մի կարգին՝ բան չի մնացել, նա շատ
տխրեց և խոր հառաչելով ասաց. «Շատ վատ է, ով ներկաներ,
երբ պետական ունեցվածքը այդպես շռայլվում է, հռոմեական
զորքերը այդպես տառապում, կայսրերն անսահման չարչարանք-
ներ են իրենց վրա վերցնում, և այդքան տքնությամբ ու չարչա-
րանքով ձեռք բերվածը մի ներքինու սեփականություն է դառ-
նում»։ Կայսրն այդքանն ասաց, իսկ ներկաներից մեկը կայսեր
ասածը Վասիլին հասցնելով, նրա զայրույթը գրգռեց։ Նա այդ
պահից սկսած առիթ էր որոնում կայսեր մեջտեղից հանելու։ Նա
կարողացավ քաղցր խոսքով ու նվերներով խաբել կայսեր մա-
տռվակին, [նրա միջոցով] կայսեր խմելիք գինու մեջ թույն
խառնել ու խմեցնել, ոչ ազդու և արագ գործող, այլ դանդաղ,
խմողի ուժը կամաց կամաց կործանող։ Նա խմեց, աստիճանա-
բար հիվանդացավ, ուժասպառ եղավ, վերջը նրա ուսերն էլ ած-
խացան, աչքերից մեծ արյունահոսություն ունեցավ, և մայրա-
10—I քաղաք մտնելով վախճանվեց, թագավորելով վեց տարի, այդ-
—976 քան էլ ամիս[243], կյանքի ժառանգ թողնելով Ռոմանոսի որդիներ
Վասիլին և Կոստանդնին։

# ՎԱՍԻԼ ԵՎ ԿՈՍՏԱՆԴԻՆ

**[11 հունվար 976—15 դեկտեմբեր 1025 թթ.]**

1. *Հովհաննեսն ահա ասված ձևով վախճանվեց, իսկ թագավորական իշխանությունը՝ 6484 թվականին, ինդիկտիոնի 4-րդ տարվա դեկտեմբեր ամսին, անցավ Ռոմանոսի որդիներ Վասիլին և Կոստանդնին։ Վասիլի 20-րդ տարին էր ընթանում, Կոստանդինը նրանից երեք տարով փոքր էր։ Սրանք դեռ ջահել էին ու թույլ, ոչ հաստատուն կամքով, և անունով էին կայսրեր, պետական գործերի փաստական տերը պրոեդրոս Վասիլն էր[244]։ Երբ իշխանությունն անցավ Ռոմանոսի որդիներին, [Վասիլը] սուրհանդակներ ուղարկեց և աքսորից պալատ բերեց նրանց մորը։ Նա վախենում էր թագավորության դեմ [հնարավոր] ապստամբություններից, հատկապես մագիստրոս Վարդաս Սկլերոսից, որը թագավորության վրա շարունակ աչք ուներ և մշտապես ապստամբելու ցանկություն (նա դեռ Հովհաննես կայսեր դեմ դավադրություն նյութելու համար ձերբակալվել և դատապարտվել էր կուրացման, բայց [Հովհաննեսը] փրկել էր նրան այդ դատավճռից)։ Ահա Վասիլը ամենից շատ սրանից էր վախենում, քանզի այն ժամանակ հռոմեական բոլոր զինված ուժերը նրա ձեռքում էին, նա հեշտությամբ ցանկացած տեղն էր նրանց տանում (նա նշանակված էր համայն Արևելքի ստրատելատ)։ [Վասիլը] գտավ, որ թագավորության համար նպատակահարմար է ու անհրաժեշտ ջլատել, թուլացնել նրա անսահման հզորությունը, ենթադրվող՝ ապստամբության առնչությամբ։ Նա [Վարդասին] զրկում է ստրատելատի աստիճանից և նշանակում Մեսոպոտամիայի տագմաների դուքս[245], հրամայելով արթուն կերպով հսկել սարակինոսների արշավանքները։ Նա նույնպես վարվեց և կասկածներ հարուցող Միքայել Բուրցիսի հետ. ջանալով հեռացնել նրան Սկլերոսի հետ ունեցած ընկերությունից (Բուրցիսն էլ նրա հետ էր՝ և ինչ-որ զինվորական տագմա էր գլխավորում)։ Ահա [Վասիլը] սրան մագիստրոսի պատվաստիճանը շնորհելով, նշանակեց Օրոնտես [գետի] վրա գտնվող Անտիոքի դուքս, իսկ արևելից համայն զորքերի վերատեսուչ ու վերակացու՝ Փոկասի ստրուկ պատրիկ Պետրոսին, տալով ստրատոպեդարխի կոչումը. սա ներքինի էր, բայց արտակարգ գործունյա և պատերազմական հարցերում*

*շատ հմուտ։ Այդ բանը Սկլերոսին շատ տխրեցրեց, այն աստիճան, որ նա չկարողացավ արիաբար իր մեջ պահել կսկիծը[246]։ Նա պարսավեց ու նախատեց [պետությունը] ասելով, թե իր գործած սխրանքների ու տարած հաղթանակների դիմաց ահա այսպիսի հատուցում է ստանում, փոխանակ առաջ քաշելու, ետ են մղում, և դա պարակիմոմենոսին քիչ, գուցե ամենևին էլ չի հետաքրքրում. [պարակիմոմենոսն] ասել էր, թե [Սկլերոսը] թող բավարարվի տրվածով և ավելին չպահանջի, թե չէ, լինելով սեփական տան տեր, կարող է դրա ծառան դառնալ։*

*2. Պարակիմոմենոսն ահա այդ քայլերին դիմեց։ Վարդասը մայրաքաղաքից վաղվաղակի գնաց ստանձնեց իրեն տրված պաշտոնը։ Անցյալում նա ռազմավարական հարցերում բազմիցս հանդես եկավ որպես խոհուն և գործունյա մարդ, և, բանաստեղծաբար ասած, համայն զորքի սիրելին դարձավ։ Իր գաղտնիքը հայտնեց նրանց, որոնց վստահում էր, հատկապես ստրատելատների տաղմային։ Եվ ահա իր ծրագրերը ի հայտ բերելու համար ժամանակ որսալով, իր մերձավորների հետ խորհրդակցելուց հետո, երկար ժամանակ երկնած ապստամբությունը ծնավ, կայսրերի և ցեղակիցների դեմ զենք բարձրացրեց։ Նա առանց հապաղելու մայրաքաղաք ուղարկեց Անթեսին, մականունը Ալիատես, իր ամենագործունյա սպասավորին, որպեսզի փորձի փախցնել և իր մոտ բերել մայրաքաղաքում գտնվող իր որդուն՝ Ռոմանոսին։ [Անթեսը] լինելով քաղաքում և ջանալով իր իսկությունը ծածկել, սկսեց Սկլերոսի հասցեին վատ լուրեր տարածել, որով հաջողվեց առանց իր վրա կասկած հարուցելու, Ռոմանոսին փախցնել և Սկլերոսի մոտ բերել։ Վարդասն իր մտադրությունները արդեն բացահայտեց, կապեց թագը, վերցրեց թագավորության մնացած նշանակները և իր հետ եղող հռո-*
976 *մեական համայն զորքի կողմից կայսր հռչակվեց[247]։ Առաջինը նրան [կայսր] ներբողեցին հայերը[248]։ Քանի որ այսպիսի վեգ գցողը բազում դրամի կարիք ունի, առանց որի, ինչպես հռետոր [Դեմոսթենեսն] է ասում, ոչինչ չես կարող անել[249], նա իսկույն դիմեց դրամ հավաքելու, բռնեց պետական հարկահավաքներին[250] և սկսեց ինքը գանձել պետական գումարները, ձերբակալել ու պատժել փող ունենալու մեջ ենթադրվող մարդկանց։ Ոմանք կամովին էին բերում ու հանձնում իրենց ունեցվածքը, հույս ունենալով [ապագայում] բազմապատիկն ստանալ։ Եվ ահա կարճ ժամանակամիջոցում նա բազում դրամ է կուտակում։*

Գրավելով Մեսոպոտամիայում գտնվող Խարբերդ անունով անա-
ռիկ բերդը[251], ամեն տեսակետից այն ապահովելով, պետք եղած
կայազորը հաստատելով, այնտեղ էր պահում հավաքված դրամ-
ները, որոշելով անհաջողության դեպքում այն դարձնել ապաս-
տարան և փրկության նավահանգիստ։ Նա հարևան սարակինոս-
ների հետ դաշինք կնքեց, այն է Ամիդի, որ Էմետ է կոչվում, ա-
միրա Աբու Դուլափի, և Մարտիրոպոլսի, որ Մայաֆարիկին են
կոչում, ամիրա Աբու Տաղլիբի հետ[252], նրանց հետ խնամիական
կապեր հաստատեց, որոնցով ամրապնդեց բարեկամությունը,
նրանցից բազում դրամ ստացավ և դաշնակից զորք՝ 300 ա-
րաբ ձիավորներ[253]։ Երբ [ապստամբության] լուրը տարածվեց
ամենուրեք, խառնակությունների սիրահար ամեն մարդ նրա
մոտ հավաքվեց։ Երբ ամառը եկավ, նա հույսերով լի համայն
զորքով շտապ ճամփա ընկավ դեպի մայրաքաղաքը՝ ոչ ավելի,
ոչ պակաս պալատ մտնելու ակնկալությամբ։ Այս քայլին դիմե-
լու հարցում իրեն ավելի համարձակ ու հանդուգն դարձրեց
ինչ-որ առաքինի մարդ լինելու հավակնություն ունեցող մի
վանականի գիշերային տեսիլքը։ Նա [երազում] հրեղեն այրեր
էր տեսել, որոնք Վարդասին առնելով տանում էին դեպի մի
շատ բարձր տեղ, որտեղ տղամարդուց ավելի խոժոռադեմ մի
կին հանդիպեց և նրան ընձեռեց կայսերական խարազանը։ Վար-
դասն այդ խարազանը թագավորության նշանակ համարեց, բայց
իրականում դա աստծու ցասումն էր հռոմայեցիների դեմ։

3. Երբ [ապստամբության] լուրը մայրաքաղաք էլ հասավ,
կայսրերը սարսափահար եղան, պետության ամբողջականու-
թյան մասին մտածող ողջախոհ մարդկանց տագնապ համակեց։
Բերկրանք ապրեցին միայն նրանք, ովքեր պետական հեղաշրր-
ջումների և թալանի սիրահարներ էին։ Անհապաղ Պետրոս ստրա-
976 տոպեդարխին նամակ ուղարկվեց և զորքի առողջ մասը անհա-
ամառ պաղ Կեսարիայում հավաքվեց։ Այդ ընթացքում Նիկոմեդիայի
պրոեդրոս[254] սինկելլոս Ստեփանոսը, մի անվանի, իմաստու-
թյամբ ու առաքինությամբ հռչակված, մարդու դաժան ու ան-
զուսպ մտադրությունները քաղցր խոսքով մեղմել կարողացող
մեկը, Սկլերոսի մոտ դեսպան է ուղարկվում, ջանալու նրան հա-
մոզել, որ զենքը ցած դնի։ Բայց [Սկլերոսը] մի բանի մասին էր
մտածում, թագավորության ձեռք գցելու, և երբ [Ստեփանոսը]
նրա մոտ գալով բազում սիրալիր ու հրապուրիչ խոսքեր ասաց,
նա երկար բարակ պատասխան չտվեց, այլ երկարելով աջ ոտքը

և ցույց տալով կարմիր կոշիկը, ասաց. «Ո՞վ մարդ, բազում մարդկանց ներկայության սա մի անգամ հագնելուց հետո, հնարավոր չէ հեշտությամբ հանել[255]։ Քեզ ուղարկողներին ասա, որ ինձ կամովին կայսր ընդունեն, մեկ է, ես նրանց կամքին հակառակ էլ կջանամ տիրել իշխանության»։ Այդ ասելով և քառասուն օր ժամկետ տալով, հրամայեց նրան բաց թողնել։ Սինկելլոսը վերադարձավ և կայսրերին ու թագավորության ղեկավար Վասիլին[256] հայտնեց Սկլերոսի պատասխանը։ Դրա վրա ստրատոպեդարխին գրություն ուղարկվեց՝ ներքին պատերազմ չսկսել, այլ ապահով կերպով հսկել անցումները և եթե որևէ մեկը պատերազմելու գա, պաշտպանվել։ Սկլերոսը ճամփա ընկնելով դեպի Կեսարիա, առաջընթաց [մարտիկներ] և հետախույզներ ուղարկեց, որպեսզի լրտեսեն, իրեն տեղեկացնեն հակառակորդների գտնված վայրը, հարթեցնեն իր ճանապարհը։ Ուղարկվածների հրամանատար էր նշանակված Անթես Ալիատեսը։ Նրանք մի կիրճ հասան (այդ վայրը կոչում են Կուկոսի քար), որտեղ հանդիպեցին կայսերական բանակի մի զորամասի, որին գլխավորում էր մագիստրոս Եվստաթիոս Մալեյինոսը[257], և հեռամարտի բռնվելով, փորձեցին բախվել։ Որոշ ժամանակ ահա երկու կողմերն էլ այդպես հեռամարտությամբ էին զբաղված և ոչ ոք թիկունք չէր ցույց տալիս, երբ Ալիատեսը, չկարողանալով այլևս իրեն զսպել, տաքացած, խթանեց իր ձին և աննկարագրելի թափով բախվեց հակառակորդների վրա։ Խոսքի արժանի բան չգործած, նա մահացու վերք ստացավ ու ընկավ, իսկ իր ողջ [զորքը] ցրվեց մերձակա անտառներում ու թավուտներում։ Այդ ժամանակ լուր տարածվեց, որ Վարդասի հետերիարխը[258] մտադիր է կայսեր զորքի կողմն անցնել։ Սկլերոսը նրան իր մոտ կանչեց, սպառնացեց, բացահայտ ոչինչ չարած աղատ արձակեց, բայց վարձկան սարակինոսներին ծածուկ կարգադրեց ու սպանեց. օր ցերեկով [փողոցում] անցնելիս նրանք դաշույններով վրա խուժեցին և խողխողեցին։

4. Կայսերական զորաբանակների հրամանատարները որոշեցին նախքան Սկլերոսի հայտնվելը ճանապարհի կարևոր դիրքերը բռնել։ Նրանք ամբողջ զորքով գնացին ու բանակեցին նրա դիմաց, կանխօրոք բռնելով այն ճանապարհները, որոնցով անցնելու էր [Սկլերոսը]։ Երբ այդ բանը Սկլերոսն իմացավ, նրա թափը կոտրվեց, նա այլևս չէր շտապում առաջանալ, և ձդձրգմամբ ժամանակն էր վատնում, սպասելով, թե ի՞նչ ցույց կտա

ապագան։ Նրան ոտքի հանեց ու եռանդն էր բորբոքում իր մոտ եկած դասալիք մի զորավար, անունը Սահակ, մականունը՝ Վահրամ[259]։ Նա [Սկլերոսի] մոտ գալով, խորհուրդ տվեց իզուր տեղ ժամավաճառ չլինել, քանզի, նրա ասելով ժամավաճառությունը անկումայնություն է առաջացնում։ [Սկլերոսը] գտնելով, որ նա իրավացի է, նրան նշանակում է արշավանքի ղեկավար ու առաջնորդ։ Ահա [Սահակը] առջևից էր գնում, իսկ [Սկլերոսը]՝ հետևում նրան։ Երեք օրից նա հասնում է Լապարա[260]։ Սա Կապադովկիայի մի մասն է կազմում, որ այժմ Լիկանդոս է կոչվում։ Նա [Լապարա] է կոչվել իր բարեբերության և բերքառատության պատճառով։ Ստրատոպեդարխը իմանալով այդ մասին և երկյուղելով, որ Սկլերոսը կարող է իրեն շրջանցելով գնալ, գիշերով առաջ շարժվեց ու բանակեց հակառակորդների դեմ դիմաց։ Որոշ ժամանակ երկու կողմերն էլ խուսանավում էին, ձգձգում բացահայտ բախումը և ջանում խորամանկությամբ հաղթանակ տանել։ Վարդասը գերազանցեց իր հակառակորդներին. նա առատ ընթրիք պատրաստեց, ձևացնելով, թե ուզում է իր զորքերին ճաշ տալ, և այդպիսով խաբեց թշնամիներին, որոնք, ենթադրելով, որ [Սկլերոսն] այդ օրը պատերազմ չի ձեռնարկի, իրենք էլ իրենց կերուխումի տվեցին։ Երբ այդ մասին իմացավ Սկլերոսը (նա զորքերը մարտական պատրաստության մեջ էր պահում), հանկարծակի պատերազմական շեփորը հնչեցնելով, հարձակվեց ճաշի նստած թշնամիների վրա, որոնք, յուրաքանչյուրը, պատահած զենքն առնելով, առանց անակնկալից շփոթվելու, հարձակվողներին ընդդիմակայեցին։ Նրանք որոշ ժամանակ համառորեն դիմադրում էին։ Այնուհետև Վարդասը թևանցում կատարելով, թշնամիների մեջ շրջապատման սարսափ գցեց, վարձկաններին ուղարկելով թիկունքից հարձակվելու, նրանց փախուստի մատնեց և մեծ ջարդ տվեց[261]։ Առաջինը նահանջեց Անտիոքի դուքս Բուրցիսը՝ կամ վախկոտությունից, կամ էլ դավաճանելով. երկու վարկածն էլ կար։ [Վարդասը] տիրացավ ամբողջ ճամբարին, իր կայքով հանդերձ. նա ձեռք բերեց անհաշիվ հարստություն։ Այնտեղից այնուհետև նա եկավ Ծամընդավ կոչվող [վայրը][262]։ Ծամնդավը գահավեժ ժայռի վրա գտնվող բազմամարդ ու շատ հարուստ քաղաք է։ Տեղացիք [քաղաքը] նրան տվեցին կամավոր, և նա հսկայական հարստություն հավաքեց։ Այս հաղթանակը կայսեր կողմնակիցներից շատերին ցնցեց և ստիպեց Սկլերոսի կողմն անցնել։ Սկլերոսի կողմն ա-

*ռաջինն անցավ Բուրցիսը, պատրիկ Անդրոնիկոս Դուկաս Լիդոսը՝ որդիներով հանդերձ։ Իսկ ատտալիացիներն էլ կայսեր ծովակալին բանտարկելով, համայն նավատորմիղով անցան Սկլերոսի՝ Կիբիրեոտների բանակաթեմի զորավար նշանակած Միքայել Կուրտիկի կողմը*[263]*։*

*5. Երբ այդ բոլորի մասին հայտնվեց կայսեր և պարակիմոմենոսին, նրանք խորհրդակցելով որոշեցին կայսեր մտերիմներից մեկին կայսերակից դարձնել, ազատելով նրան որևէ պատասխանատվությունից, բայց իրավունք տալ իր կողմն անցած մարդկանց պաշտոններ, առատ ընծաներ շնորհել և շարժվել ապստամբների դեմ։ Այդ միտքը հավանություն գտավ և կայսեր պրոտովեստիարիոս Լևոնն ուղարկվեց։ Նա որպես խորհրդական վերցրեց ոմն պատրիկ Հովհաննեսի, հայտնի, ճարտասան մի մարդու։ [Լևոնը] կայսեր կողմից լիազորություն ստացավ անարգել որպես կայսր գործելու։ Նա դուրս գալով, հասավ Փռյուգիայի Կոտիեոն, միացավ Պետրոս ստրատոպեդարխին ու այնտեղ բանակեց. Վարդասը վրան էր խփել Դիպոտամոսում։ Սա մի կայսերական գյուղ է, որը տեղացիք Մեսանակտա են կոչում։ [Լևոնը] ծածուկ ջանում էր ապստամբներին իր կողմը գրավել և կայսեր կողմնակից դարձնել, նրանց նվերներ ու պաշտոններ խոստանալով, բայց իր հաշիվների մեջ սխալվեց. իր կոչր հակառակորդը թուլության նշան համարելով, է՛լ ավելի գոտեպնդվեց։ Դրա վրա նա հույսը կտրած, գիշերով Կոտիեոնից, Սկլերոսի կողքից անցնելով, շարժվեց դեպի արևելք։ Այդ բանը Սկլերոսի մարդկանց ահուդողի մեջ գցեց, նրանք երկյուղեցին ոչ միայն [իրենց] ունեցվածքի ու կալվածների համար, այլև իրենց ամենաթանկագին բանի։ Բաղում մարդիկ, հրաժարվելով ապստամբությունից, պրոտովեստիարիոսի կողմն էին անցնում, այնպես որ վտանգ առաջացավ ապստամբների փոշիացման։ Սկլերոսը դրանից վախեցած, մագիստրոս Միքայել Բուրցիսին, որ, ինչպես ասացինք, վերջերս իր կողմն էր անցել, ինչպես և պատրիկ Ռոմանոս Տարոնացուն*[264]*, հզոր զորքով ուղարկեց, հրամայելով խոչընդոտել պրոտովեստիարիոսին, նրա վրա հանկարծակի հարձակումներ գործել, ինչքան հնարավոր է խանգարել նրա գրոհները, բայց խուսափել վճռական ճակատամարտից։ Բուրցիսի զինվորները, մոտենալով կայսերական զորքին, հակառակ Սկլերոսի կարգադրության, ստիպված եղան ակամայից կռվի բռնվել։ Պատճառը հետևյալն էր. լուր ստաց-*

*վեց, որ Արևելքի Բերիայի[265] սարակինոսները դուրս են եկել գնալու մայրաքաղաք՝ հռոմայեցիներին տանելու տարեկան հարկը, որ այսինչ օրը նրանք պետք է անցնեն բանակների միջով։ Երբ այդ օրը եկավ և սարակինոսները պետք է Օքսիլիթոս[266] կոչվող բերդի մոտով անցնեին, Բուրցիսի մարդիկ զինեցին իրենց զինվորներին, նույն բանն արեցին նաև պրոտովեստիարիոսի մարդիկ և եռանդագին դիմեցին մարտի։ Նրանց առջև էր դրված, կարծես մրցանակ, սարակինոսների ոսկին։ Երբ [սարակինոսները] մոտեցան, նրանք հարձակվեցին միմյանց վրա և մարտի բռնվեցին։ Բուրցիսը պարտվեց, նրա զինվորներից շատերը սպանվեցին, հատկապես հայերը, քանզի հռոմայեցիները, այն բանի համար, որ հայերն առաջինն անցան ապստամբի կողմը, իրենց ձեռքն ընկած բոլոր հայերին անխնա սրի քաշեցին։*

*6. Երբ պարտության լուրն իրեն հայտնվեց, Վարդասն առանց հապաղելու իր զորքերը վերցնելով, շտապեց օգնության։ Հասնելով Ռագեաս կոչվող ինչ-որ վայր, նա բանակեց, սպասելով մարտ տալու համար պահի։ Կայսերական զորքերի ժամավաճառության պատճառով ճակատամարտի պահը ձգձգվում էր, որի ընթացքում բազում ապստամբներ, նախորդ պարտությունից ցնցված, անցնում էին պրոտովեստիարիոսի կողմը։ Կայսեր բանակում եղած երիտասարդներն ու պատերազմների փորձ չունեցողները մոտալուտ հաղթանակից ամբարտավանացած, կռիվն սկսելու մեծ եռանդ էին ցուցաբերում, իսկ ավելի տարեցներն ու մարտում կոփվածները վախենում էին ու խուսափում ճակատամարտից։ Բայց ինչպես մի մարդ ասել է, «դյուրահավատը փործանքի ետևից է գնում»[267], պրոտովեստիարիոսը ականջ է դնում երիտասարդների խոսքին և պատերազմական շեփորը*
977 աշուն *հնչեցնելով, զորքը կովի է հանում։ Վարդասն իր զորքը երեք մասի բաժանեց, կենտրոնը գլխավորեց ինքը, աջ թևի վրա հրամանատար նշանակեց իր եղբայր Կոստանդինին, իսկ ձախ թևի՝ Կոստանդին Գավրասին[268]։ Բախման ընթացքում թևերի զորավարները հեծելազորով հարձակվեցին հակառակորդների վրա, պրոտովեստիարիոսի զինվորները չկարողանալով դիմագրել, պարտություն կրեցին։ Տեղի ունեցավ մեծ կոտորած։ Այստեղ, ի միջի այլոց ընկան պատրիկ Հովհաննեսը, Պետրոս ստրատոպեդարխը և երևելիներից շատ ուրիշներ։ Պրոտովեստիարիոսը և այլ հրամանատարներ գերի ընկան։ [Վարդասը] հրաման տվեց*

պրոտովեստիարիոսին հսկողության տակ պահել, իսկ եղբայրներ Թեոդորոս ու Նիկետաս Հագիողախարիտներին, որպես թե իր նկատմամբ ուխտադրուժ եղածների և պրոտովեստիարիոսի կողմն անցածների, ամբողջ զորքի ներկայությամբ կուրացրեց։

7. Այս հաղթանակից հետո Վարդասի համբավը մեծացավ ու տարածվեց, բոլորը, այսպես ասաց մեծն ու փոքրը նրա կողմըն էին անցնում։ Իսկ կայսեր համար մի հույս էր մնացել, սուրբ խարիսխը՝ աստծո օգնությունը։ Պարակիմոմենոսը իր ուշադրությունը թեև բևեռել էր ցամաքի վրա, բայց ավելի շատ հոգ էր տանում ծովի մասին, քանզի նրան նեղություն էր պատճառում հակառակորդի նավատորմիղի հրամանատար Միքայել Կուրտիկը, որը գրավելով բոլոր կղզիները, մտադիր էր պաշարել Հելլեսպոնտոսի Աբիդոսը։ Այդ իսկ պատճառով [պարակիմոմենոսն] ահա նավատորմիղը շատ լավ կարգի բերելով, պատրիկ Թեոդորոս Կարանտենոսի ծովակալությամբ Կուրտիկի դեմ է ուղարկում։ [Պատրիկ Թեոդորոսը], նավելով և Հելլեսպոնտոսի նեղուցներն անցնելով, Փոկեայում բախվում է Կուրտիկին։ Տեղի ունեցավ համառ նավամարտ, որտեղ Կուրտիկի մարդիկ պարտություն են կրում ու ցիր ու ցան լինում։ Կարանտենոսը ծովի տերը դարձավ և ծովում անդորր տիրեց։ Ծովում հաջողություն ձեռք բերելուց հետո, պարակիմոմենոսը սկսեց ցամաքի վրա ուշադրություն դարձնել։ Նա պատրիկ Մանուիլ Էրոտիկոսին, ազնվական, իր առաքինությամբ ու արիությամբ անուն հանած մի մարդու, ուղարկեց Նիկիայի պաշտպանության։ Մի փոքր անց տեղ է հասնում նաև Սկլերոսը, որ Նիկիայի շուրջ գտնվող գյուղերը հրկիզելով, վերջը հենց Նիկիայի վրա է հարձակվում, ջանալով քաղաքավեր մեքենաներով գրավել այն։ Մանուիլը արիաբար դիմադրում էր, պարիսպների վրա [հակառակորդի] հենած աստիճաններն ու մեքենաները հունական հրով կրակի տալիս։ Սկլերոսը պաշարումից արդյունքի չհասնելով, հույս ուներ քաղաքը գրավել [բնակչությանը] սովի մատնելով։ Պաշարումը երկարեց,քաղաքացիները պարենի պակասից սկսեցին տառապել, Մանուիլը չգիտեր ի՞նչ անի, Սկլերոսը շատ ուշադիր հսկում էր մուտքերը և ինքը չէր կարող քաղաքը պարեն բերել, և դրա համար որոշեց Սկլերոսին խորամանկությամբ հաղթահարել։ Նա Նիկիայի ցորենի ամբարները ավազով լցրեց, ավազը ցորենով ծածկեց, այնպես արեց, որ դիտողը խաբվի, որից հետո հակառակորդ զորամասից գերի ընկած ոմանց բերեց և ամբարները

ցույց տալով, արձակեց, որ գնան Սկլերոսի մոտ և ասեն, թե
«Ես սովից չեմ վախենում (քանզի երկու տարվա համար բավա-
րար պարեն ունեմ), իսկ պաշարելով քաղաքը առնել հնարավոր
չէ։ Արդ, լինելով քո համախոհը, ես պատրաստ եմ քո օգտին
հեռանալ քաղաքից, եթե դու ինձ և իմ մարդկանց երդումներով
երաշխիք տաս [անվնաս] գնալու ուր որ ցանկանանք»։ Վար-
դասն ուրախությամբ ընդունեց դա, երաշխիքներ տվեց, և Մա-
նուիլը, առնելով նիկիացիներին ու իր զորքը, իրենց ողջ ունեց-
978 վածքով, մտան մայրաքաղաք։ Սկլերոսն առավ Նիկիան, տեսնե-
սկիզբ լով հացահատիկի հետ կապված խորամանկությունը, իր խաբվե-
լու համար տխրեց, բայց և այնպես տեղում ուժեղ կայազոր թող-
նելով, և նրա զորավարը նշանակելով. ոմն Պեգասիոսի, ինքը
անցավ իր անելիքին։

8. Պարակիմոմենոսը ամեն ինչից հույսը կտրած (Սկլերոսն
արդեն մոտենում էր մայրաքաղաքին) մի բանից էր միայն խս-
կական օգնություն ակնկալում, աքսորից Վարդաս Փոկասին
կանչելուց։ Միայն սրան էր նա Սկլերոսի դեմ պայքարելու ըն-
դունակ ուժ համարում։ Նա անհապաղ կանչեց նրան, երդումնե-
րով ապահովեց, մեծ հարստություն տվեց, պատվեց մագիստրո-
սի պատվաստիճանով և սխոլերի դոմեստիկոս նշանակելով,
Սկլերոսի դեմ հանեց[269]։ [Փոկասը] հանուն ամենայնի ընթացող
պայքարը գլխավորելով, նախ և առաջ փորձեց Թրակիայից Աբի-
դոս անցնել։ Հելլեսպոնտոսի շրջանները Սկլերոսի որդի Ռոմա-
նոսն էր պահպանում։ Դիմադրության հանդիպելով[270], այնտե-
ղից նա մայրաքաղաք վերադարձավ, որտեղ նավ նստելով, հա-
կառակորդից ծածուկ անցավ նեղուցների դիմացի ափը, և գիշեր-
ներն ընթանալով, եկավ Կեսարիա, որտեղ մագիստրոս Եվստա-
թիոս Մալեյինոսին և Միքայել Բուրցիսին ընկերանալով (սա
մեղայի գալով դարձյալ կայսեր կողմն էր անցել) նրանց հետ
պատերազմի նախապատրաստություն տեսավ։ Ինչքան որ ժա-
մանակները թույլ էին տալիս զորք հավաքելով, փախուստի դի-
մածներին էլ որսալով, նա եկավ Ամորիոն։ Սկլերոսը, լսելով
սրա դուրս գալու մասին, առաջին անգամ լինելով հասկացավ,
որ մարտնչելու է պատերազմող, քաջարի, ռազմավարության
արվեստի գիտակ մի մարդու հետ, և ոչ ինչպես մինչ այդ էր՝
ձվատ, կանանոցում օրն անցկացնող, փափկասուն մարդուկնե-
19–VI րի։ Նա Նիկիայից դուրս գալով շարժվեց դեպի Ամորիոն և հան-
–978 դիպելով Փոկասին, նրա հետ կռվի բռնվեց։ Փոկասի զինվորնե-

րը, որոնց արիությունն ու հանդգնությունը նախկինում կրած
պարտությունների պատճառով խամրել էր, չդիմացան և Սկլերո-
սը գերակշռեց։ Բայց Փոկասի զորքն անկազմակերպ ցիրուցան
չեղավ, թեև տեղի տվեց, բայց նահանջեց դանդաղորեն, որպես-
զի չստեղծվի այն տպավորությունը, որ վախից դրդված է փախ-
չում, այլ ենթարկվելով զորավարական հրամանին, կարգ ու կա-
նոնով։ Երբ զինվորները թիկունքը շրջելով դիմեցին փախուստի,
նրանց զորաշարքերը եզրափակող Փոկասն ընդդիմակայում էր
հարձակվողներին, թույլ չէր տալիս, որ նրանք մեծ ուժով ու
թափով հարձակվեն։ Պատմում են, որ այդ ընթացքում իր զին-
վորներով փախուստի գիմողներին հետապնդող Կոստանդին
Գավրասը, անտեղի փառամոլությունից դրդված, կարծելով, թե
մեծ փառքի կարժանանա, եթե Փոկասին անձամբ գերեվարի,
խթանելով իր ձին, մեծագույն թափով նետվեց Փոկասի վրա։
[Փոկասը] տեսավ ու ճանաչեց նրան, և ձին հանդարտ մի
կողմ քաշելով, գիմադրեց, գուրզով հարվածեց նրա սաղավար-
տին։ Ուժգին հարվածից նա ուշաթափվեց, իսկույն ձիուց ցած
գլորվեց, իսկ Փոկասը առիթից օգտվելով, առանց շտապելու,
ոտքով գնաց առաջ, ձեռքից բաց չթողնելով սանձերը։ Գավրասի
զինվորները, տեսնելով իրենց զորավարի տապալումը, դադա-
րեցրին հետապնդումը և նրա մասին էին հոգում։ Իսկ Փոկասն
իր զինվորներով հասնելով Խարսիանոն[271] կոչված [նահանգը],
այնտեղ բանակեց և իր անելիքի մասին էր մտածում։ Այնտեղ
նա կայսերական պատիվներ էր շնորհում իր կողմն անցնող
բազում մարդկանց, շնորհներ ցուցաբերելով գրգռում էր [զին-
վորների] ջերմեռանդությունը։ Սկլերոսը ևս հետապնդելով նր-
րան, վրաններ խփեց Թագավորական ջերմուկներ[272] կոչվող
վայրում և իր անվանակցին մարտի հրավիրեց։ Փոկասը
սիրով ընդունեց նրա հրավերը, դարձյալ մարտ տեղի ունեցավ։
Փոկասի զինվորները որոշ ժամանակ ընդդիմակայեցին, [Փոկա-
սը] ձի նստած ամեն տեղ էր հասնում և երկաթե գուրզով ճեղ-
քում հակառակորդի շարքերը, անհամար կոտորած սարքում։
Բայց նրա զինվորները դարձյալ թիկունքը շուռ տալով փախուս-
978 տի գիմեցին։

9. Փոկասն այնտեղից անհապաղ բարձրացավ Իբերիա[273] և
գալով Իբերիայի արխոնտ Դավթի մոտ, նրանից օգնական զորք
խնդրեց[274]։ Նա պատրաստակամորեն ընդառաջեց.(Նա Փոկասի
հետ լավ հարաբերությունների մեջ էր, երբ վերջինս Խալդիայի[275]

դուքսն էր) և [Փոկասը] այնտեղից մեծ զորք առնելով, ապա և
փախուստի ժամանակ ցիրուցան եղած իր զինվորներին հավաքե-
24—III լով, իջավ Պանկալիա, որտեղ Սկլերոսն էր բանակել: Պանկա-
979 լիան բարձրադիր մի վայր է, ձիավարության համար հարմար,
Հալիս գետին շատ մոտիկ: Դարձյալ համառ մարտ է լինում:
Փոկասը այստեղ տեսնելով, թե ինչպես իր զորքը աստիճանա-
բար տեղի է տալիս և մտադիր է փախուստի դիմել, համարելով,
որ փառքով մեռնելը խայտառակ ու ամոթալի ապրելուց լավ է,
հակառակորդների շարքերը ճեղքելով, ուժեղ թափով շարժվեց
Սկլերոսի վրա: [Սկլերոսը] արիաբար դիմադրեց, նրանք ու-
զում էին հարցը լուծել առաջնորդների մենամարտով, առանց
զինվորների որևէ օգնության: (Դիտելու հոյակապ տեսարան էր,
նայողների համար ապշեցուցիչ, մենամարտը իրենց շատ քաջա-
րի ու հոգով հզոր համարող երկու տղամարդկանց): Նրանք իրար
դեմ դիմաց կանգնելով, մոտիկից կռվում էին: Սկլերոսը թրի
հարվածով կտրեց Փոկասի ձիու աջ ականջը սանձով հանդերձ,
իսկ Փոկասը գուրզով հարվածելով նրա գլխին, ծանր վերք հասց-
րեց և ձիու պարանոցի վրա փռեց, ապա խթանելով ձին, ճեղ-
քեց հակառակորդների շարքերը, դուրս եկավ և մի բլուր բարձ-
րանալով, կանչեց փախուստի դիմած իր զինվորներին: Սկլե-
րոսի զինվորները, տեսնելով ստացած վերքից վատ վիճակում,
արդեն ուշաթափվելու վրա գտնվող իրենց [հրամանատարին],
նրան մի աղբյուրի մոտ տարան վերքի արյունը լվանալու:
Ենթադրում էին, որ Փոկասն էլ է գլխովին կործանված, քանզի [նրա]
ձին մի կողմ նետվեց, իր տիրոջ մոտից փախավ, զորքերի մի-
ջով առանց հեծյալի ու արյունլվա, սանձարձակ թափով անցավ
գնաց (ձիուն եգիպտական էին անվանում): [Զինվորները] իմա-
նալով, թե ո՞ւմ ձին է այն և ենթադրելով, որ իրենց հրամանատարը
սպանված է, երբ նրանց ոչ ոք չէր հալածում, անկազմակերպ
փախուստի դիմեցին և իրենց գահավեժ անելով անդունդն ու
Հալիս գետի մեջ, անփառունակ կոտորվեցին[276]: Փոկասը բլրի
վրայից այդ բանին ականատես լինելով և ենթադրելով, որ կա-
տարվածը աստվածուստ է, դա հենց այդպես էր, իր զինվորնե-
րով ցած իջավ և իրար տրորող, արիության մասին կատարելա-
պես մոռացած փախստականներին հալածեց, ոմանց սպանեց,
ոմանց էլ գերի վերցրեց: Իսկ Սկլերոսը փոքրաթիվ մարդկանց
հետ փրկվելով, փախչում է Մարտիրուպոլիս, այնտեղից իր եղ-
բայր Կոստանդինին դեսպանության է ուղարկում Բաբելոնի ար-

*խոնտ Խոսրովի մոտ[277], օգնություն և դաշնակցություն աղերսելով։ Խոսրովը սակայն հարցը ձգձգում էր, ոչ խոստանում էր օգնություն տալ, ոչ էլ մերժում էր այդ։ Կոստանդինը երկար ժամավաճառ եղավ և Սկլերոսն իր բոլոր մարդկանցով ստիպված էր գնալ Խոսրովի մոտ։*

*10. Կայսրը Փոկասի նամակից տեղեկանալով Սկլերոսի պարտության և նրա Բաբելոն գնալու մասին, ընդունեց Փոկասին և ըստ արժանվույն պատվեց, ապա վեստ Նիկեփոր Ուրանոսին*
979 *Բաբելոնի ամիրապետի մոտ դեսպան ուղարկեց, խնդրելով ապստամբին ոչ մի ապաստան չտալ, ապագա սերունդներին վատ օրինակ չդառնալ՝ լինելով թագավոր չանգոսնել անիրավված թագավորին, չմիանալ անիրավ և ապստամբ բռնակալին։ Նա տվեց նաև կայսերական կնքված նամակ, որով նա Սկլերոսին և նրա մարդկանց կատարյալ ներում էր շնորհում, եթե զղջան, ճանաչեն իրենց տիրոջ և հայրենիք վերադառնան։ Երբ Ուրանոսը կայսերական նամակներով եկավ Խոսրովի մոտ, վերջինս և՛ դեսպանին, և՛ Սկլերոսին ու նրա բոլոր հռոմայեցիներին կասկածի տակ առնելով բանտարկեց[278]։ Սրանք ահա բանտ նետվեցին, իսկ Սկլերոսի հետ չգնացող ապստամբները՝ Լևոն Գերին, Անդրոնիկոս Դուկաս Լիդոսի որդիներ Քրիստափոր էպիխտը[279] և Վարդաս Մոնգոսը ([Անդրոնիկոսն] արդեն մահացել էր), Թրակեսիոն բանակաթեմում գտնվող Արմակուրիոն, Տափակ Քալ[280] և այլ անառիկ բերդեր գրավելով, դիմադրում էին մինչև*
980 *Ներկտիոնի ութերորդ տարին, այդ վայրերից հարձակումներ գործելով, ասպատակում էին կայսեր երկիրը։ Նրանք շարունակեցին նահանգների ավարառությունները մինչև որ պատրիկ Նիկեփոր Պարսակուտենոսի միջոցով ներում ստանալով անցան կայսեր կողմը։*

*11. Հենց այդ ժամանակներում վախճանվեց Անտոնիոս պատրիարքը, որ Սկլերոսի ապստամբության ժամանակ հրաժարվել էր աթոռից։ Պատրիարք ձեռնադրվեց Նիկողայոսը, մականունը՝ Խրիսովերգես[281]։ Չորս և կես տարի եկեղեցին անհովիվ էր մնացել։ Միջօրեին արեգակի խավարում էլ եղավ, որ աստ-*
10—I *ղերն անգամ երևացին[282]։ Երբ Հովհաննես կայսրը վախճանվեց,*
976 *բուլղարներն ապստամբեցին, իրենց իշխանությունը վարելու համար առաջ քաշեցին չորս եղբայրների՝ Դավթին, Մովսեսին, Ահարոնին և Սամուիլին, բուլղարների մեջ իր գործունեությամբ աչքի ընկած մի կոմսի որդիներին, որի պատճառով էլ ահա նր-*

րանք կոմսաձագ էին կոչվում. Պետրոսի տոհմին պատկանողնե-
րից մի մասը մահացել էր, իսկ նրա որդիներ Բորիսն ու Ռոմա-
նոսը, ինչպես վերևում ասվել է, քաղաք բերվելով, այնտեղ էին
մնում։ Նրանցից առաջինը Հովհաննես [կայսեր] կողմից մա-
գիստրոսի պատվաստիճանին էր արժանացել, իսկ Ռոմանոսն էլ
նախկին պարակիմոմենոս Հովսեփի կողմից ներքինացվել։ Երբ
Հովհաննես կայսրը վախճանվեց, նրանք [քաղաքից] փախան և
շտապեցին Բուլղարիա հասնել։ Նրանցից Բորիսը, թավուտի մի-
ջով անցնելիս, մի բուլղարի կողմից նետահար եղավ և սպան-
վեց. բուլղարը նրան հռոմայեցու տեղ էր դրել, քանզի նա հռոմեա-
կան հանդերձներ էր հագած, իսկ Ռոմանոսը ողջ առողջ տեղ հա-
սավ, բայց որոշ ժամանակ անց դարձյալ մայրաքաղաք է գա-
լիս, ինչպես այդ մասին իր տեղում կասվի։ Այդ չորս եղբայրնե-
րից Դավիթը շատ չանցած մեռավ, իսկ Մովսեսն էլ Սերրեն[283]
պաշարելու ժամանակ պարսպից նետված մի քարից վիրավոր-
վելով, վախճանվեց։ Ինչ վերաբերում է Ահարոնին, ապա նրան
էլ, ինչպես ասում են, որպես հռոմեասերի, ողջ ընտանիքով
14—VI հանդերձ կոտորեց Սամուիլը[284]։ Սամուիլի որդի Ռադոմիր-Ռո-
976 մանոսի օգնությամբ փրկվեց միայն [Ահարոնի] որդի Հովհան-
նես-Վլադիսլավը[285]։ Համայն Բուլղարիայի վրա միահեծան իշխեց
Սամուիլը[286]։ Սա պատերազմող, անհանգիստ մարդ էր, որ
օգտվելով հռոմեական զորքերի՝ Սկլերոսի դեմ մղվող մարտե-
րով զբաղված լինելու հանգամանքից, բովանդակ արևմուտքը
ոտնատակ արեց, ոչ միայն Թրակիան ու Մակեդոնիան և Թեսա-
ղոնիկեի շրջակայքը, այլև Թեսալիան, Հելլադան և Պելոպոն-
նեսը, գրավեց բազմաթիվ բերդեր, որոնցից ամենագլխավորը
985 Լարիսան էր[287], նրա բնակիչներին տնով տեղով վերաբնակեց-
րեց Բուլղարիայի խորքերը, նրանց զինվորագրեց և հռոմայե-
ցիների դեմ դաշնակից դարձրեց։ Նա Լարիսայի եպիսկոպոս
եղած սուրբ Աքիլլիոսի աճյունը տեղափոխեց ու Պրեսպայում
ամփոփեց, որտեղ որ իր արքունիքն էր գտնվում։

12. Կայսրը մեծ ցանկություն ուներ նրա գործունեության
առաջն առնել և երբ ազատվեց Սկլերոսի հետ կապված հոգսե-
րից, հավաքեց հռոմեական զինված ուժերը և որոշեց անձամբ
Բուլղարիա ներխուժել, բանի տեղ չդնելով դեռևս սխոլերի դո-
մեստիկոսի աստիճանն ունեցող Վարդաս Փոկասին և արևելից
մյուս մեծամեծներին։ Նա մուտք գործեց Բուլղարիա Ռոդոպեի
և Էվրոս գետի մոտ գտնվող ճանապարհով, իսկ իր ետևում

*թողեց Լևոն Մելիսսենոսին՝ կիրճերը պահպանելու հրաման տալով։ Տրիադիցայի[288], հնում Սարդիկե կոչվածի միջև գտնվող կիրճերն ու թավուտները անցնելով, նա հասավ Ստոպոնիոն կոչվող ինչ-որ վայր ու բանակեց, մտածելով՝ ինչպե՞ս ձեռնարկել Սարդիկեի պաշարումը։ Իմացվել էր, որ Սամուիլը շրջակա լեռների գագաթներն է բռնած (նա վախենում էր բացահայտ ու մոտիկից մղվող մարտից), ամենուրեք ծուղակներ էր լարել, հակառակորդներին վնասելու նպատակով։ Այդ ընթացքում, երբ կայսրն ահա այդպիսի մտածմունքի մեջ էր, արևմուտքի սխոլերի դոմեստիկոս Ստեփանոսը, որին իր կարճահասակության պատճառով Կոնտոստեփանոս էին անվանում, Լևոն Մելիսսենոսին անչափ ատող մի մարդ, գիշեր ժամանակ գալիս է կայսեր մոտ և կոչ անում նրան ամեն ինչ երկրորդական համարելով, անհապաղ մայրաքաղաք վերադառնալ, քանզի, իբրև թե Մելիսսենոսը թագավորության վրա աչք ունենալով, քառատրոփ այնտեղ է գնացել։ Այդ բանը ցնցեց կայսեր և նա իսկույն ճանապարհ ընկնելու հրաման տվեց։ Սամուիլը անկազմակերպ հեռանալը փախուստ համարելով, աղմուկ աղաղակով իսկույն հռոմայեցիների վրա հարձակվեց, նրանց երկյուղով պատեց և*
17—VIII *ստիպեց փախուստի դիմել։ Նա գրավեց [հռոմայեցիների]*
—986 *ճամբարը և տիրացավ նրանց ողջ ունեցվածքին, այդ թվում և կայսերական վրանին ու կայսերական նշանակներին։ Կայսրը մի կերպ անցնելով կիրճերը, ողջ առողջ հասավ Փիլիպպուպոլիս[289]։ Հասնելով այնտեղ, նա տեսավ որ Մելիսսենոսը անշարժ տեղում է կանգնած և ուշադիր հսկում է այն, ինչ իրեն էր վստահված, որի վրա նա լուտանքներ թափեց Կոնտոստեփանոսի գլխին՝ համարելով ստախոս և այսպիսի փորձանքի պատճառ։ Վերջինս պարսավանքը հանգիստ չտարավ և է՛լ ավելի համառությամբ պնդում էր իր խորհրդի ճիշտ լինելու վրա։ Կայսրը, նրա անպատկառ ստորությունից զրգռված, գահից վեր թռավ և բռնելով նրա մորուքից ու մազերից գետին փռեց[290]։*

987 *13. Ինդիկտիոնի 15-րդ տարվա հոկտեմբեր ամսին, 6494 թ. ուժեղ երկրաշարժ եղավ, բազմաթիվ տներ ու տաճարներ փլվեցին, նաև աստծո Մեծ եկեղեցու գմբեթի մի մասը։ Կայսրը նախանձախնդրությամբ այն վերականգնեց։ Միայն ամբարձիչ մեքենաների համար (որոնց վրա կանգնած վարպետները ընդունում էին շինանյութն ու վերանորոգում [գմբեթի] փլված մասը) ծախսելով տասը կենտինար ոսկի[291]։*

14. Իսկ հոռոմայեցիների մեծամեծները՝ Վարդաս Փոկասը և նրա մտերիմներից ոմանք կայսեր դեմ զայրացած այն բանի համար, որ նա Բուլղարիա արշավելիս արհամարհեց իրենց և անգամ վարձկանի տեղ չդրեց, ուրիշներն էլ իրենց ստացած տարբեր վիրավորանքների ու անարգանքի, իսկ Եվստաթիոս Մալեյինոսն էլ այն պատճառով, որ խայտառակ կերպով հեռացվեց հիշյալ արշավանքին մասնակցելուց, հավաքվելով հիշյալ
987 Մալեյինոսի տանը՝ Խարսիանոնում, օգոստոս ամսի 15-ին, ինդիկտիոնի 15-րդ տարում, Վարդաս Փոկասին կայսր հռչակեցին, նրան թագ կապելով և տալով կայսերական մյուս նշանակները։ Երբ նա կայսր հռչակվեց, լուր էլ հասավ, թե Ասորիքից Սկլերոսն է գալիս։ Ինչպես ասացինք, Բաբելոնում Խոսրովի կողմից նա և իր մարդիկ բանտ էին նետվել։ Նա ամեն տեսակի հոգատարությունից զրկված, տառապում էր չարչարանքներից ու բանտապանների վայրագություններից։ Հանկարծակի բախտը նրան ժպտաց, նա և իր մարդիկ բանտից տարօրինակ կերպով ազատ արձակվեցին։ Ես այժմ կպատմեմ, թե նա ինչպես կապանքներից ազատվեց և ինչպես ողջ-առողջ վերադարձավ հոռոմեական [պետության] սահմանները։

15. Պարսից ժողովուրդը սարակինոսներից թագավորական իշխանությունից զրկվելով, նրանց նկատմամբ մշտապես թաքուն թշնամություն էր տածում և առիթ ու միջոց որոնում տապալելու նրանց գերիշխանությունը և վերականգնելու սեփական պետականությունը։ Սրանց մեջ ազնվական ծագումով մի մարդ կար, անունը Ինարգոս, որ ճարտար հռետոր էր, բացի այդ նաև պատերազմական գործերին հմուտ ու գործունյա։ Նա պարզ նկատեց, որ Խոսրով թագավորը իշխում է վատ ու անշնորհ և որոշելով, որ պարսիկների սպասած հարմար ժամանակը հենց դա է որ կա, ոտքի է հանում Աքեմենյաններին ողջ տոհմը և սարակինոսների դեմ ապստամբություն բարձրացնում։ Նա ընդունեց նաև արևելքի թուրքերից[292] բաղկացած շուրջ քսան հազարանոց վարձկան զորք և սկսեց ավարառել ու ասպատակել սարակինոսներին, գլխովին կոտորել գերի ընկածներին, չխնայելով երեխաներին անգամ։ Խոսրովը բազմիցս անգամ նրա դեմ իր զորավարներին ուղարկեց, ապա և ինքը անձամբ նրա դեմ դուրս եկավ, բայց բոլոր մարտերում էլ պարտություն կրեց։ Դրա վրա հուսաբեկ եղած և հասկանալով, որ այսուհետև ի վիճակի չէ զենքով մարտնչել պարսիկների դեմ, քանզի զինվորները բա-

*զում անգամ ջարդ ստանալով պարսկի անունից անգամ վախենում էին, մտաբերում է բանտարկյալ հռոմայեցիներին։ Նա միանգամայն խոհեմ կերպով մտածեց, որ բանտարկյալը, եթե նշանավոր ու երևելի, հոգով ու մարմնով հզոր՝ մեկը չլիներ, չէր կարող սեփական տիրոջ դեմ ապստամբել և նրան նման օրի հասցնել, չէր կարող փախստական լինելուց և դժբախտանալուց հետո էլ, այդքան ու այդպիսի մարդկանց կողմից որպես կայսր ներբողվել։ Ահա Խոսրովը խորհրդակցելով իր ծերակուտականների հետ, բանտից ազատում է [Սկլերոսին], նրա նկատմամբ ցուցաբերում ամեն տեսակի հոգատարություն և վերջում պահանջ դնում պատերազմին մասնակցություն ունենալու։ Սկլերոսը նախ սկսեց կոտրտվել և քմծիծաղով ասաց, թե այսքան ժամանակ բանտարկված, բանտի տառապանքները կատարելապես ճաշակած մարդիկ ինչպե՞ս կարող են զենք շարժել։ Խոսրովը դարձյալ իր ասածի վրա էր պնդում, խնդրում նրան վերցնել անհաշիվ դրամ, անթիվ, գերազանց զինված զինվորներ, և գլխավորել պատերազմը, մոռանալ բանտարկության հետ կապված ամեն մի դժվարություն, քանզի ինքը՝ [Խոսրովը] կարող է իր ապագա լավություններով ու պատիվներով կոծկել նախկին վատությունները ու բանտային անտանելի կյանքը։ Սկլերոսն ի վերջո տեղի է տալիս և խոստանում կատարել խնդիրքը։ Նա կտրականապես մերժեց վերցնել արաբ, սարակինոս կամ էլ այլազգի, Խոսրովին ենթակա զինվորների, այլ պահանջեց Ասորիքի քաղաքների բանտերը ստուգել և այնտեղ բանտարկված հռոմայեցիներին ազատ արձակել ու զինել։ Նա ասաց, որ միայն նրանցով, և ոչ այլ ձևով ինքը կարող է նախաձեռնել պատերազմը ընդդեմ պարսիկների։ Խոսրովն ընդունեց նրա պահանջը. բանտերի դռներն անհապաղ բացվեցին և այնտեղ գտնվող հռոմայեցիներն ազատ արձակվեցին։ Նրանցից երեք հազար հոգի հավաքվեց։ Սկլերոսը նրանց բաղանիք ուղարկեց, մաքրեց բանտի աղտեղությունից, նոր հագուստ ու հանդերձներ հագցրեց, յուրաքանչյուրին անհրաժեշտ ու բավարար կերպով զինեց և ճանապարհ ցույց տվողների վերցնելով, շարժվեց ընդդեմ պարսիկների։ Հանդիպելով միմյանց, Սկլերոսի զինվորները ուժեղ թափով հարձակվեցին պարսիկների վրա, որոնք [հակառակորդի] տարօրինակ զենքից, օտար բարբառից, իրենց համար անսովոր մարտական կարգից, ի վերա ամենայնի հռոմայեցիների արտակարգ թափից ու ուժգնությունից ապուշ կտրած, գլխովին*

պարտություն կրեցին ու կոտորվեցին, այն աստիճան, որ, ինչպես ասում են, բոթն անգամ տանող չեղավ։ Այդ մարտում ընկավ նաև Ինարգոսը։ Հսկայական ավար վերցնելով, բազում ձիեր ձեռք բերելով, նրանք վճռեցին այլևս Խոսրովի մոտ չվերադառնալ, այլ բռնեցին դեպի Ռոմանիա[293] տանող ճանապարհը։ Նրանք փութանակի ճանապարհ կտրելով, կարողացան ծածուկ ճողոպրել ու փրկվել իրենց սահմաններում։ Այս առթիվ մի այլ վարկած էլ կա, թե պարսիկների դեմ տարած հաղթանակից հետո նրանք վերադարձան և Խոսրովի կողմից սիրալիր ընդունելության արժանացան, որի փոքր անց վախճանվելուց հետո հաջորդած համանուն որդին[294] նրանց՝ հռոմայեցիներին որպես իրենց դաշնակիցների տվեց զորք և տուն ուղարկեց[295]։ Սկլերոսն ահա, ըստ վերևում ասված երկու վարկածներից մեկի, եկավ հռոմայեցիների երկիրը, գտավ Վարդաս Փոկասին կայսր հռչակ-
987 ված և ինքն էլ այդպիսին հռչակվեց իր մարդկանց կողմից[296]։

սկիզբ 16. [Սկլերոսն] ահա վիճակն այդպիսին գտնելով, տարակուսանքի մեջ էր։ Իրեն նա շատ թույլ էր համարում մեն մենակ շարունակելու ու տանելու ապստամբությունը, բայց և շատ անպատվաբեր ու անարի՝ միանալ Փոկասին կամ կայսեր։ Իր մտերիմների հետ երկար կշռադատելուց հետո նա գտավ, որ իրեն միահեծան կայսր հռչակելը վտանգի հետ է կապված և ձեռնտու չէ՝ անհնարինության պատճառով, իրերի ելքը պարզ չլինելու պատճառով էլ տերերից մեկի կողմն անցնելուն և մյուսին արհամարհելուն ևս դեմ էր, դրա համար ահա վճռեց երկու իշխանությունների հնարավորին չափ սիրաշահել, որպեսզի մեկի անհաջողության դեպքում մյուսի օգնությունն ու սատարն ունենա։ Նա Փոկասին նամակ ուղարկեց, համագործակցության և թագավորությունը իրար մեջ բաժանելու առաջարկությամբ՝ եթե կարողանան հաղթել կայսեր, բայց [միաժամանակ] իր որդի Ռոմանոսին իբրև թե դասալիք, ծածուկ կայսեր մոտ ուղարկեց։ Նա շատ խոհեմ դատեց. եթե Փոկասը գերակշռեր, ինքը [Սկլերոսը] կփրկեր իր որդուն, իսկ եթե կայսեր կողմը հաղթանակեր, ինքը [իր որդու] միջնորդությամբ վտանգից կփրկվեր։ Ահա Ռոմանոսը փախուստ ձևացնելով, գնում է կայսեր մոտ, որը նրան մեծ պատվով և ուրախությամբ ընդունեց, իսկույն մագիստրոսի պատվաստիճանը շնորհեց և պատերազմներում մըշտապես նրա խորհուրդներին էր դիմում։ Սկլերոսի Ասորիք նահանջելուց հետո հոգսերից ազատված կայսրն ավելի արիու-

թյամբ ձեռք գցեց պետական գործերին։ Երբ իմացավ, որ իր
միջոցառումները պարակիմոմենոսին դուր չեն գալիս, որ նա
փնթփնթում է, որ հարմար առիթ ձեռք գցելու դեպքում հնարա-
վոր է, որ սարսափելի գործերի կդիմի, ահա այդ [նկատառում-
985 ներով] նրան պաշտոնանկ է անում և տնային կալանքի դատա-
պարտում, բայց տեսնելով, որ նա դարձյալ հանգիստ չի մնում,
այլ մշտապես սոսկալի բաներ է ծրագրում, ջանքեր թափում
նախկին պաշտոնը ձեռք գցելու, աքսորում է Ստննոն, գրավում
նրա ունեցվածքի մեծ մասը, որպեսզի նա միջոցներից զուրկ լի-
նելով, հնարավորություն չունենա ահավոր արարքներ գործելու։
Իսկ ինքը այլևս խորհրդական չունենալով և ստեղծված իրա-
դրության մեջ ընկերների ու գործակիցների կարիքն զգալով, այն
ժամանակ սրտաբաց ընդունեց Ռոմանոսին, նրա մեջ տեսնելով
փորձառու, գործունյա և պատերազմական հարցերում շատ
հմուտ մարդու։

17. Վարդաս Փոկասը, երբ ստացավ Սկլերոսի վերադարձի
լուրը, նրան նամակ գրեց, հավանություն տվեց նրա առաջարկ-
ներին և երդումներով խոստացավ, թե «եթե մեր ծրագրերն իրա-
կանանան, դու կիշխես Անտիոքի, Փյունիկեի, Կյուլե Ասորիքի,
Պաղեստինի և Միջագետքի վրա, իսկ ես էլ կտիրեմ հենց մայ-
րաքաղաքի և մնացած ազգերի վրա»։ Սկլերոսն ուրախությամբ
ընդունեց այդ խոստումները և տրված երդումներին վստահելով,
գնում է Փոկասի մոտ՝ Կապադովկիա, իբրև թե համագործակցու-
թյունն անհապաղ իրականացնելու։ Սակայն Փոկասը նրան
ծուղակը գցելով, վրայից հանում է կայսերական նշանակները և ու-
ղարկում Տյուրոպիոս բերդը[297], նրան հսկող ուժեղ պահակու-
թյուն սահմանելով[293], ապա բանակի մի մասն էլ տալով պատ-
րիկ Կալոկիրոս Դելֆինասին, ուղարկում է մայրաքաղաքի դիմա-
ցի ափում գտնվող Խրիսուպոլիս։ Ինքն էլ մնացած բա-
988 նակով իջնում է Աբիդոս, հուսալով, որ նեղուցներին տիրանալով,
սկիզբ մայրաքաղաքի բնակիչներին սովի կմատնի։ Կայսրը Դելֆինա-
սին շատ խնդրեց հեռանալ Խրիսուպոլսից, չբանակել մայրա-
քաղաքի դիմաց, բայց չկարողանալով նրան համոզել, գիշեր
ժամանակ նավեր նախապատրաստեց, նրանց մեջ ռուսներին
նստեցրեց (նա նրանց հետ խնամիական կապեր էր հաստատել,
նրանց իշխան Վլադիմիրին կնության տվել իր քրոջ Աննային և
նրանցից օգնություն ստացել)[299] և աննկատ անցնելով դիմացի
ափը, հարձակվում է թշնամիների վրա և դյուրությամբ հաղթա-

նակ տանում։ Դելֆինասին հենց վրան խփած տեղում փայտից կախում է[300], իսկ Փոկասի եղբայր Նիկեփոր Կույրին բանտարկում, մյուս գերվածներին էլ համապատասխան պատիժներ սահմանելով, վերադառնում է մայրաքաղաք։

18. Փոկասը, հասնելով Աբիդոս, տենդագին պաշարման մեջ առավ այն։ Պաշտպանները քաջաբար դիմադրում էին. նախօրոք կայսեր կողմից նրանց մոտ ուղարկված նավատորմիղի դրունգար Կիրիակոսը գոտեպնդում էր պաշարյալներին։ Փոքր անց այնտեղ նավեց նաև կայսեր եղբայր Կոստանդինը, նրանից հետո տեղ հասավ նաև ինքը՝ կայսրը։ Երբ նրանք ահա անցան այս ափը, Փոկասը իր զորքի մի մասին հրաման տալով շարունակել Աբիդոսի պաշարումը, մնացած զորքով կայսրերի դեմ դուրս եկավ[301]։ Ճակատամարտն արդեն սկսվելու վրա էր, երբ Փոկասը ազնվորեն գերադասելով քաջաբար մեռնել, քան թե ամոթով ապրել, հեռվից տեսնելով ձիու վրա նստած և այստեղ այնտեղ գնացող կայսեր, իր զինվորների շարքերը կարգի բերեց, գոտեպնդեց նրանց և դատելով, որ եթե նրան հաղթահարի, ապա մյուսներին պարտության մատնելը դյուրին կլինի, ձին խթանելով սրընթացորեն դիմեց նրա վրա, ցիրուցան արեց իր դիմաց գտնվող շարքերը և բոլորի համար անդիմագրավելի մարդու տպավորություն թողեց։ Նա արդեն կայսեր մոտ էր, երբ հանկարծակի շրջվեց, մի բլուր բարձրացավ, ձիուց ցած իջավ և
13—IV գետին պառկելով, հոգին փչեց։ Նա կամ այս ու այն կողմ գնա-
989 լու ժամանակ զինվորներից մեկից մահացու վերք ստացավ,
կամ էլ ինչ-որ ներքին հիվանդությունից հյուծվելով, քանզի նրա մարմնի վրա ոչ մի վերք չգտան, դրա համար տիրում է այն կարծիքը, որ թունավորեցին նրան։ Ասում են, թե նրա ամենահավատարիմ սպասավորներից Սիմեոնը, կայսեր կողմից նվերներ ստանալով, համարձակվեց նրան թույնով սպանել։ Փոկասը սովորություն ուներ պատերազմների ժամանակ, մարտից առաջ սառը ջուր խմել։ Ըստ իր սովորության նա այստեղ էլ նույն բանն արեց և առանց գիտենալու ջրի հետ միասին թույն խմեց։ Երբ Փոկասը բլրի վրա երկար պառկած մնաց, բոլորը ենթադրեցին, թե վատ զգալով ցանկացել է մի փոքր հանգստանալ, բայց երբ այդ բանը երկար տևեց, մեկը մոտեցավ ու տեսավ, որ նա մեռած է ու անշնչացած[302]։ Բոլորն իմացան նրա մահվան մասին և ապստամբներն իսկույն փախուստի դիմեցին, իսկ կայսեր զորքերը գոտեպնդված կրնկակոխ հետապնդում էին նրանց։

Գերի են վերցվում Լևոն և Թեոգնոստոս Մելիսսենոսները, Թեոդոսիոս Մեսանիկտեսը և շատ ուրիշներ։ Կայսրը սրանց իր հետ մայրաքաղաք տարավ և ավանակների վրա բարձած հրապարակի միջով ծանակեց։ Նա խնայեց միայն Լևոն Մելիսսենոսին։ Պատմում են, թե երբ հակառակորդները դեմ դիմաց էին կանգնած և Լևոնի եղբայր Թեոգնոստոսը ծաղրի էր ենթարկում կայսրերին ու անպարկեշտ լուտանքներ թափում նրանց վրա, Լևոնը արտասվալից աչքերով պարսավում էր նրան, խնդրում փակել բերանը, անպատկառորեն չանարգել սեփական տերերին, բայց երբ չկարողացավ նրանց այդ բանից ետ պահել, նիզակը քաշեց և նրանով բազում հարվածներ իջեցրեց նրանց, այն աստիճան, որ կայսրը, դեպքերին ականատես լինելով, ներկաներին բացականչեց. «Տեսե՛ք, մի փայտից պատրաստված խաչ ու բահ»։ Ահա ասում են, որ այս պատճառով է, որ Լևոնին խայտառակությունից զերծ պահեցին։

19. Արդ, ինդիկտիոնի երկրորդ տարվա ապրիլ ամսին 6497 թ. Փոկասի մահից և նրա ապստամբության վերացումից հետո[303], Սկլերոսը առիթից օգտվելով դարձյալ հրապարակ եկավ և որոշեց շարունակել նախկին ապստամբությունը։ Կայսրը իմանալով այդ մասին, նրան նամակով հորդորեց քրիստոնյաների արյան հեղմանը վերջ տալ, չէ՞ որ ինքն էլ մարդ է, մահկանացու, [վերջին] դատաստանին ենթակա, թեև բավականին ուշացած, գիտենալ, թե ի՞նչն է [իր համար] ձեռնտու, ճանաչել աստվածատուր արքային[304]։ Այդ նամակի վրա նա տեղի տվեց և անձեռնմխելիության մասին երաշխիքներ ստանալով, ցած դրեց զենքերը և հաշտվեց կայսեր հետ՝ կուրապաղատի պատվաստիճանն ստանալով[305]։ Բայց և այնպես նա չարժանացավ կայսրին տեսնելու, քանզի ճանապարհին տեսողությունը կորցրեց, տեսողական զգայարանը այլևս չգործեց և կույր վիճակում կայսեր մոտ բերվեց։ Տեսնելով, թե ինչպես նրան ձեռքից բռնած են առաջնորդում, կայսրը ներկաներին ասաց. «Նըրան, ումից ես սարսափում էի ու դողում, ձեռքից բռնած են բերում»[306]։

20. Կայսրն ահա ներքին պատերազմներից ու հոգսերից ազատված, մտածում էր, թե ինչպես պետք է կարգավորի իր գործերը Սամուիլի և մնացած տոպարխների հետ, որոնք օգտըվելով կայսեր ապստամբություններով զբաղված լինելու հանգամանքից, հռոմեական տիրապետություններին մեծ վնաս

*հասցրին[307]։ Կայսրը դուրս եկավ ու գնաց Թրակիայի և Մա-
կեդոնիայի շրջանները, իջավ Թեսաղոնիկե՝ վկա Դեմետրիո-
սին[308] գոհություն հայտնելու։ Մագիստրոս Գրիգոր Տարոնա-
ցուն[309] թողնելով այնտեղ որպես կառավարիչ, տալով նրան նաև
Սամուիլի ասպատակությունների դեմ պայքարելու և նրանց
ճամփան փակելու մարտունակ զորք, նա մայրաքաղաք վերա-
դարձավ, որտեղից էլ բարձրացավ Իբերիա։ Դավիթ կուրապա-
31—III ղատն արդեն մեռել էր՝ իր տիրույթների ժառանգ կայսեր նշա-
—1000 նակելով[310]։ Նա եղավ տեղում, իրեն տրված ժառանգությունը
կարգի բերեց, Դավիթ կուրապաղատի եղբոր Գեորգիոսին[311]
ներքնագույն Իբերիայի իշխանին[312] համոզեց իր սեփական տի-
րույթներով բավարարվել և աչք չունենալ ուրիշի [ունեցվածքին], նրա հետ դաշինք կնքեց և նրա որդուն պատանդ վերցնե-
լով[313], գնաց Փյունիկե, իր հետ տանելով նաև իրեն պատկանող
Իբերիայի տոհմիկ իշխաններին[314], որոնցից գլխավորներն էին
եղբայրներ Պակուրիանը, Ֆևդատն ու Ֆերսը[315], որոնց նաև
պատրիկի պատվաստիճանը շնորհեց։ Լինելով Փյունիկեում, նա
Տրիպոլսի, Դամասկոսի, Տյուրոսի և Բերիտոսի ամիրաներին
նախկինի պես հռոմայեցիների հպատակության տակ առավ և
նրանցից պատանդ վերցնելով, վերադարձավ Բյուզանդիոն։ Երբ
կայսրը Փոկասի դեմ մղվող պատերազմով էր զբաղված, այդ
[ամիրաները] համաձայնությամբ էին եկել և Անտիոքի դեմ
զենք շարժել, նրանց դիմադրություն ցուցաբերած պատրիկ Դա-
միանոսին, Անտիոքի կառավարչին սպանել և քաղաքի համար
մեծ վտանգ ստեղծել[316]։*

*21. Կապադովկիայի վրայով վերադառնալիս կայսեր և նրա
համայն զորքին իր կալվածներում ընդունեց մագիստրոս Եվստա-
թիոս Մալեյինոսը, որ նրան և նրա զորքին ճոխ հյուրընկալու-
թյուն ցուցաբերեց։ Կայսրը թեև ընդունեց նրան, դրվատեց և իր
հետ մայրաքաղաք բերեց, բայց այլևս չթույլատրեց ետ վերա-
դառնալ. ինչ որ անհրաժեշտ էր նա առատաձեռն կերպով տրա-
մադրում էր նրան, բայց կարծես որջում վայրի գազան էր պա-
հում, այնքան ժամանակ, մինչև որ նրա կյանքի վերջն եկավ։
Նրա մահից հետո ողջ ունեցվածքը գրավվեց։ Կայսրը օրենք էլ
հրապարակեց, որով արգելում էր բոլոր դինատներին[317] ընդար-
ձակելու իրենց հողային տարածությունները։ Անցյալում նույն
բանն էին արել նաև սրա պապը՝ Կոստանդին Ծիրանածինը և
նրա աներ Ռոմանոսը։*

22. Նիկողայոս Խրիսովերգեսը, եկեղեցին 12 տարի և 7 ա-
996 միս հովվելուց և վախճանվելուց հետո, 6503 թվականին, ինդիկ-
տիոնի 8-րդ տարում [պատրիարք] է ձեռնադրվում մագիստրոս
Սիսիննիոսը[318], անվանի, բժշկության ասպարեզում ծայր աստի-
ճան հմուտ մի մարդ։ Սա թույլատրեց չորրորդ ամուսնությունը
և եկեղեցին երեք տարի հովվելուց հետո վախճանվեց։ [Պատ-
998 րիարք] առաջ քաշվեց Սերգիոսը[319], Մանուիլի վանքի վանա-
հայրը, որ ծագումով Փոտ պատրիարքի տոհմին էր պատկանում։

23. Սամուիլը արշավեց Թեսաղոնիկեի վրա, զորքի մեծ մասը նա տեղագրեց դարանակալելու և որոգայթներ լարելու, իսկ քչերին էլ ուղարկեց ասպատակելու ընդհուպ մինչև Թեսաղոնիկե [ընկած շրջանը]։ Դուքս Գրիգորը[320], իմանալով հարձակման մասին, իր հարազատ որդի Աշոտին ուղարկեց տեսնելու և որոշելու [հարձակվողների] քանակը և իրեն այդ մասին տեղյակ պահելու, իսկ ինքն էլ գնաց նրա ետևից։ Աշոտը դուրս եկավ և [բուլղարների] առաջամարտիկ զինվորների հետ կռվի բռնվելով, նրանց փախուստի մատնեց, բայց առանց իմանալու, լարված որոգայթի մեջ ընկավ։ Երբ Գրիգորն իմացավ այդ մասին, անհապաղ օգնության դիմեց՝ որդուն գերի ընկնելուց փրկելու համար։ Սակայն ինքն էլ բուլղարների կողմից շրջապատվեց ու թեև մարտնչեց քաջաբար ու հերոսաբար, այնուամենայնիվ սպանվեց[321]։ Երբ կայսրը լսում է դուքսի սպանության մասին, որպես համայն Արևմուտքի կառավարիչ ուղարկում է մագիստրոս Նիկեփոր Ուրանոսին. սրան էլ հաջողվել էր Բաբելոնից[322] փախչել և մայրաքաղաք գալ։ Լինելով Թեսաղոնիկեում և իմանալով, թե ինչպես Սամուիլը դուքս Գրիգոր Տարոնացու սպանության և նրա որդու գերի վերցնելու առթիվ ամբարտավանանալով անցել է Թետտալիայի Տեմպեն և Պենիոս գետը, ներխուժել Թետտալիա, Բեովտիա, Ատտիկա, ինչպես և Կորնթոսի նեղուցով Պելոպոննես, ամենուրեք ավեր ու ավար սփռելով, ահա ինքն էլ իր զորքերը վերցնելով, Օլիմպոսի փեշերով անցավ եկավ Լարիսա, բեռներն այնտեղ թողեց և թեթևազեն զորքով արագ քայլով անցավ Թետտալիան, Ֆարսալիայի դաշտը, և Ապիդանոս գետը ու բանակեց Սպերխիոս գետի ափին. դիմացի ափին բանակել էր ինքը՝ Սամուիլը։ Երբ երկնքից առատ անձրև տեղաց և գետը հորդացավ ու ծովացավ, հույս չկար, թե հենց հիմի մարտ տեղի կունենա։ Սակայն մագիստրոսը գետը վերից վար ուշադիր զննելով, մի տեղ գտավ, որտեղից իր կար-

ծիքով հնարավոր էր այն անցնել, և գիշերով զորքը ոտքի հանելով, անցավ գետն ու հարձակվեց Սամուիլի անհոգ քնած զինվորների վրա։ Անհամար հոգի սրի քաշվեց, ոչ ոք անգամ չհամարձակվեց արիության մասին մտածել, ինքը՝ Սամուիլն էլ, նրա որդի Ռոմանոսն էլ ծանր վերք ստացան։ Նրանք դերի կընկնեին, եթե սպանվածների դիակներին չխառնվեին և մեռածի պես պառկած չմնային։ Երբ գիշերը վրա հասավ, նրանք ծածուկ Էտոլիայի լեռները փախան, որտեղից, այդ լեռների գագաթների վրայով, Պինդոսն անցնելով ապավինեցին Բուլղարիա։ Մագիստրոսը հռոմայեցի գերիներին ազատեց, ընկած բուլղարներին դիակապտեց, թշնամիների ճամբարը հափշտակեց և հսկայական հարստություն ձեռք բերելով, զորքով Թեսաղոնիկե վերադարձավ։

24. Սամուիլն իր երկիրը գալով, Տարոնացու որդի Աշոտին կապանքներից ազատ արձակեց և իրեն փեսայացրեց՝ կնության տալով իր դստեր[323], որը սիրահարվել էր նրան և սպառնում էր ինքնասպանություն գործել, եթե օրինավոր կերպով [Աշոտի] հետ չամուսնանա։ [Սամուիլը] կատարելով ամուսնությունը, [Աշոտին] իր դստեր հետ Դյուրախիոն[324] է ուղարկում, իբրև թե շրջանները պահպանելու համար։ [Աշոտը] տեղ հասնելով, իր կնոջ հետ խորհրդակցեց, համոզեց և նրա հետ փախավ տըվյալ վայրի ափերի մոտ հսկողություն վարող հռոմեական տրիերաները և նրանցով կայսեր մոտ գալով, նրանից ստացավ մագիստրոսի պատվաստիճանը, իսկ իր կինն էլ՝ զոստեի[325]։ [Աշոտը] իր հետ բերեց նաև Դյուրախիոնի մեծամեծներից Խրիսելիոս անունով մեկի նամակը, որով խոստանում էր կայսեր հանձնել Դյուրախիոն քաղաքը, եթե ինքը և իր երկու որդիները պատրիկի պատվաստիճանն ստանան[326]։ Կայսրը նամակով խոստացավ կատարել նրա խնդրանքը, որով ահա Դյուրախիոնը դավաճանությամբ հանձնվեց պատրիկ Եվստաթիոս Դաֆնոմելեսին։
997 Խրիսելիոսի որդիները ստացան պատրիկի պատվաստիճանը. [Խրիսելիոսը] մինչ այդ արդեն վախճանվել էր։

25. Նույն ժամանակները մագիստրոս Պավլոս Բոբոսը, Թեսաղոնիկեի առաջին մարդը, և պրոտոսպաթար[327] Մալակենոսը, մի խոհեմ ու ճարտարախոս մարդ, բուլղարասիրության մեջ մեղադրվելով, հեռացվեցին [քաղաքից], Պավլոսը Թրակեսիոնի Պեդիադայում, իսկ Մալակենոսը՝ Բյուզանդիոնում։ Ադրիանուպոլսի կասկածելի համարվող իլյուստրիոսներից և զորավարական պաշտոններ վարած մարդկանցից ոմանք, վախենալով, որ

իրենց գլխին էլ նույն փորձանքը կգա, Սամուիլի կողմն անցան,
Բատացեսը՝ հանդերձ ընտանյոք, իսկ Վասիլ Գլաբասը մենակ։
Վերջինիս որդուն կայսրը ամբողջ երեք տարի բանտում պահեց,
որից հետո ազատ արձակեց։ Այդ նույն ժամանակները կայսրը,
ուզենալով [վենետիկցիներին] սիրաշահել, Վենետիկի իշխանին
օրինական կնության տվեց Արգիրոսի դստեր, հետագայում
1004 կայսր դարձած Ռոմանոսի քրոջ։ Կայսրը ներխուժում էլ գործեց
Բուլղարիա՝ Ֆիլիպպուպոլսի վրայով, որի պաշտպանությունը
վստահեց պատրիկ Թեոդորականին[328]։ Տրիադիցայի բազմաթիվ
բերդեր ավերելով, [կայսրը] վերադարձավ Մոսինուպոլիս։
999/ 26. 6508 թվականին, ինդիկտիոնի 13-րդ տարում, կայսրը
1000 Հեմոսից այն կողմ գտնվող բուլղարական բերդերի դեմ պատրիկ Թեոդորականի և պրոտոսպաթար Նիկեփոր Քսիֆիասի առաջնորդությամբ մեծ զորք ուղարկեց և գրավեց Մեծ ու Փոքր Պրեսլավները, Պլիսկովան[329], որից հետո հռոմեական զորքն անվնաս ու հաղթական ետ վերադարձավ։

1001 27. Հաջորդ տարին կայսրը դարձյալ գնաց բուլղարների
դեմ՝ Թեսաղոնիկեի վրայով։ Նրա կողմն անցավ Բերիայի[330] կառավարիչ Դոբրոմիրը, կայսեր հանձնելով քաղաքը և [նրա կողմից] անթիպատոսի[331] պատվաստիճանն ստանալով։ Իսկ Սերվիան[332] պահպանող Նիկոլայոսը, որին իր կարճահասակության պատճառով փաղաքշորեն Նիկոլիցա էին անվանում, քաջաբար դիմանում էր և պատրաստակամությամբ տանում պաշարումը։ Բայց կայսեր եռանդագին գործելու հետևանքով բերդը գրավվեց, իսկ Նիկոլիցան էլ գերի ընկավ։ Կայսրը բուլղարներին այդտեղից վերաբնակեցրեց և [բերդի] պահպանությունը թողեց հռոմայեցիների ձեռքը։ Այդ բոլորը կատարելուց հետո նա մայրաքաղաք վերադարձավ, իր հետ տանելով նաև Նիկոլիցային, որին շնորհեց պատրիկի պատվաստիճանը։ Նիկոլիցան սակայն միտքը փոխելով, այնտեղից փախավ և ծածուկ Սամուիլի մոտ եկավ, որի հետ գնաց պաշարեց Սերվիան։ Բայց կայսրը այս անգամ ևս
1001 եռանդ ցուցաբերելով, ջարդեց պաշարման օղակը. Նիկոլիցան ու
ամառ Սամուիլը փախան, բայց ուխտադրուժ [Նիկոլիցային] այդ բանը մինչև վերջ անել չհաջողվեց. նա ընկավ հռոմայեցիների որոգայթը, գերի վերցվեց և շղթայակապ կայսեր մոտ բերվեց, և Կոստանդնուպոլիս ուղարկվելով, բանտ նետվեց։ Կայսրը, գալով Թեսսալիա, վերականգնեց Սամուիլի կողմից ավերված բերդերը, իսկ բուլղարների ձեռքում գտնվողները պաշարելով, գրա-

վեց, բուլղարներին Վոլերոսում[333] վերաբնակեցրեց և բոլոր [բերդերում] մարտունակ կայազոր թողնելով, վերադարձավ Վոդինա[334] կոչված [վայրը]։ Վոդինան գահավեժ ժայռի վրա գտնվող մի բերդ է, որի մոտից հոսում է Օսարով լճի ջուրը. այն հոսում է դետնի տակով, չի երևում և այնտեղ է երկրի երեսը դուրս գալիս։ Քանի որ [Վոդինայի] պաշտպանները կամավոր կերպով չհանձնվեցին, [կայսրն] այն պաշարմամբ գրավեց։ Սրանց էլ նա Վոլերոսում վերաբնակեցրեց, իսկ [Վոդինան] մարտունակ կայազորով ապահովելով, Թեսաղոնիկե վերադարձավ։

28. Բերդի կառավարիչ Դրաքսանոսը, մի պատերազմող մարդ, խնդրեց, որ իրեն թույլ տան Թեսաղոնիկեում բնակվել։ Կայսրը համաձայնվեց դրան. նա կնության առավ վկա Դեմետրիոսի տաճարի ավագերեցի դստեր, որից երկու երեխա ունեցավ։ [Դրաքսանոսն] այնուհետև փորձեց փախչել, բայց բռնվեց և իր աներոջ միջնորդությամբ ազատ արձակվեց։ Նա երկրորդ անգամ էլ փորձեց փախչել, բայց դարձյալ ներման արժանացավ։ Նա երկու երեխա էլ ունեցավ, բայց երբ փորձեց երրորդ անգամ փախչել, ձերբակալվեց ու ցցահան արվեց։

29. Այն պատճառով, որ նումերիտ և ատաֆիտ արաբները[335] չարաչար ոտնատակ էին անում Կյուլե Ասորիքն ու հենց Անտիոքը, կայսրը մագիստրոս Նիկեփոր Ուրանոսին Անտիոքի կառավարիչ նշանակելով, [Անտիոք] ուղարկեց, նրա փոխարեն Թեսաղոնիկեի կառավարիչ նշանակելով պատրիկ Դավիթ Արիանիտեսին։ Նա Ֆիլիպպուպոլսում զորավար նշանակեց պրոտոսպաթար Նիկեփոր Քսիֆիասին, քանզի Թեոդորականը ծերության պատճառով հրաժարական էր տվել։ Իսկ մագիստրոս Նիկեփոր Ուրանոսը, լինելով Անտիոքում, արաբների առաջնորդ Կիտրինիտեսի հետ երկու երեք անգամ մարտի բռնվեց և նրան պարտության մատնելով, համոզեց հանգիստ մնալ, որով նա կայուն ու անխախտ խաղաղություն հաստատեց։

1002 30. Կայսրը հաջորդ՝ ինդիկտիոնի 15-րդ տարին արշավում է Վիգինի[336] դեմ և ամբողջ ութ ամիս պաշարման մեջ առնելով, գրոհով գրավում է քաղաքը։ Երբ ինքը պաշարմամբ էր զբաղված, Սամուիլը քառատրոփ վրա հասնելով հենց ընթացքից հարձակվում է Ադրիանուպոլսի վրա՝ ամենաանբիծ աստվածածնի հենց ննջման օրը, երբ ամեն տարի ընդունված սովորության համաձայն պետական ծախսերով տոնահանգես է կատարվում, և



11*

հանկարծակի գրոհելով, դրավում է այն և հսկայական ավար
վերցնելով, վերադառնում իր երկիրը։ Կայսրը Վիդինը շատ լավ
ամրացնելով, ողջ առողջ մայրաքաղաք վերադարձավ, ճանա-
պարհին հանդիպած բոլոր բուլղարական բերդերը ավերելով ու
1003 կործանելով։ Մոտենալով Սկոպիա քաղաքին, նա Սամուիլին
անհոգ վրան խփած դտավ Աքսիոս գետի (որին այժմ Վարդար
են կոչում)[337] այն կողմում. նա իրեն ապահով էր զգում, քանզի
գետը վարարել էր և նրա կարծիքով այն անանցանելի էր, դրա
համար նա հանգիստ բանակել էր։ Զինվորներից ոմանք, սակայն,
գետանց գտան և այդտեղով կայսրին դիմացի ափը անցկաց-
րին։ Սամուիլը անակնկալից ապշած գլխովին փախուստի դի-
մեց։ Նրա վրանն ու ողջ ճամբարը ընկավ [հռոմայեցիների]
ձեռքը։ Սկոպիա քաղաքը կայսեր հանձնեց Սամուիլի կողմից
նրա կառավարիչ նշանակված Ռոմանոսը, բուլղարների թագա-
վոր Պետրոսի որդին և Բորիսի եղբայրը, որ պապի անունով
Սիմեոն էր վերանվանվել։ Կայսրը նրա արարքից գոհ, պատրիկի
և պրեպոզիտոսի պատվաստիճանը ավեց և ուղարկեց Աբիդոս
զորավարելու։

31. Կայսրն այնտեղից եկավ Պերնիկ[338], որի պահպանու-
թյունը Կրակրասի ձեռքում էր, պատերազմական գործերում
արտակարգ հմուտ մի մարդու։ Այստեղ նա երկար մնաց, պա-
շարման ընթացքում բազում զինվորներ կորցրեց, և երբ տեսավ,
որ ամրությունն անառիկ է, Կրակրասին էլ շոյող խոսքերով ու
այլ խոստումներով հնարավոր չէ համոզել, գնաց Ֆիլիպպուպո-
լիս, որտեղից էլ դուրս գալով, եկավ Կոստանդնուպոլիս։
1002 32. Ինդիկտիոնի նույն տարին [կայսրը] օրենք հրապարա-
կեց, որի համաձայն հեռացած աղքատների հարկերը դինատներն
են վճարելու։ Այս հարկը ալլիլենգիոն[339] կոչվեց։ Պատրիարք Սեր-
գիոսը, բազում եպիսկոպոսներ ու վանականներ շատ խնդրեցին՝
վերացնել այս անտրամաբանական բեռը, բայց կայսրը չլսեց
նրանց։

1009/ 33. Ինդիկտիոնի ութերորդ տարում, 6518 թվականին, Ե-
1010 գիպտոսի կառավարիչ Ազիզը աննշան ու ոչինչ պատճառաբա-
նություններով, վերացրեց հռոմայեցիների հետ [կնքած] հաշ-
տությունը, քանդեց Երուսաղեմում փրկիչ Քրիստոսի գերեզմանի
[վրա] հսկայական ծախսերով կառուցված սուրբ տաճարը[340],
թալանեց սուրբ վանքերը, իսկ նրանց մեջ ճգնող վանականներին
աշխարհով մեկ ցիրուցան արեց։

34. Հաջորդ տարի շատ ծանր ձմեռ արեց, բոլոր գետերն ու լճերը, անգամ ծովը, սառցակալեցին։ Ինդիկտիոնի նույն տարվա հունվար ամսին ամենասոսկալի երկրաշարժ եղավ և երկիրը սասանվում էր մինչև մարտ ամսի 9-ը։ Այդ օրը ցերեկվա շուրջ տասներորդ ժամին մայրաքաղաքում ու նահանգներում սարսափելի ցնցում ու տակնուվրայություններ եղան, փլվեցին Սրբոց Քառասնորդաց և Ամենայն սրբոց տաճարների գմբեթները։ Կայսրըն իսկույն վերականգնեց դրանք։ Այս բոլորը կանխագուշակությունն էր Իտալիայում կատարվելիք ապստամբության։ Քանդի Բարի քաղաքի նորաբնակներից Մելես անունով մի իշխանավոր Լոնգիբարդիայի ժողովրդին գրգռեց ու հռոմայեցիների դեմ զենք բարձրացրեց։ Վասիլ կայսրը նրանց դեմ ուղարկեց Սամոսի զորավար Արգիրոսին և Կեֆալոնիայի զորավար Կոնտոլեոնին՝ հռոմեական տիրապետությունը վերականգնելու համար։ Մելեսը նրանց դեմ դուրս գալով, փառավոր հաղթանակ տարավ, հակառակորդներից շատերն ընկան, ոչ քչերն էլ գերի վերցվեցին։ Մնացածները ամոթալի կյանքը նախընտրելով դիմեցին փախուստի։

35. Կայսրը չէր դադարում ամեն տարի Բուլղարիա ներխուժել և հանդիպածն ավերել ու ասպատակել։ Սամուիլը ի վիճակի չլինելով բաց դաշտում դիմադրություն ցույց տալ, ոչ էլ կայսեր բացեիբաց՝ ճակատամարտ, ամեն տեղից ջարդ կրելով և կորցնելով սեփական հզորությունը, որոշեց խրամներով ու պատնեշներով փակել նրա ճանապարհը դեպի Բուլղարիա։ Գիտենալով, որ կայսրը սովորաբար, այսպես կոչված, Կիավա Լոնդոսի և Կլիդիոնի[341] միջով է ներխուժում, ահա որոշեց այդ կիրճը պարսպապատել և կայսեր մուտքը փակել։ Նա շատ լայն մի պատնեշ կառուցեց, և այնտեղ կարող պահապաններ հաստատելով, սպասում էր կայսեր։ Նա ժամանեց ու փորձեց մուտք գործել, բայց քանի որ պահապանները քաջաբար դիմադրում էին և հարձակվողներին բարձրից հարվածելով ու խոցելով կոտորում, իսկ կայսրն էլ անցումը [հաղթահարելու] հույս չուներ, այն ժամանակվա Ֆիլիպպուպոլսի զորավար Նիկեփոր Քսիֆիասը, որ կայսեր հետ արշավանքի էր դուրս եկել, խորհուրդ տվեց մնալ տեղում և անդադար հարձակումներ գործել կառույցի վրա, իսկ ինքն ասաց, թե գնում է որևէ օգտակար ու փրկարար գործ կատարելու։ Իր զորքը վերցնելով և շրջանցելով Կլիգիոնից հարավ գտնվող բարձրագույն լեռը, որին Բալասիցա են անվանում,

*կտրելով դժվարանցանելի ու ճանապարհներից զուրկ տեղերը,*
1014 *նա ինդիկտիոնի 12-րդ տարվա հուլիս ամսի 29-ինի, վերևից*
*հանկարծակի աղմուկ աղաղակով անցնում է բուլղարների թի-*
*կունքը, որոնք անակնկալից շփոթված, դիմում են փախուստի։*
*Իսկ կայսրն էլ անպաշտպան մնացած պարիսպը քանդելով, ըս-*
*կըսեց [թշնամուն] հետապնդել։ Շատերն սպանվեցին, դրանցից*
*ավելին էլ գերի ընկան։ Հազիվ հազ կարողացավ վտանգից խու-*
*սափել Սամուիլը՝ իր որդու օգնությամբ, որ քաջաբար դիմադ-*
*րում էր հետապնդողներին*[342]*. Նա [Սամուիլին] ձի նստեցնելով*
*բերեց Պրիլապոս կոչվող բերդը։ Կայսրը, ինչպես պատմում են,*
*շուրջ 15 հազար գերված բուլղարների կուրացրեց*[343]*, յուրաքան-*
*չյուր հարյուրյակին առաջնորդել հրամայեց մեկ միականու և*
*Սամուիլին ուղարկեց։ Վերջինս տեսնելով ժամանողների քանակն*
*ու վիճակը, չկարողացավ արհավիրքին արիաբար ու քաջաբար*
*տոկալ, նվաղեց, ուշաթափվեց ու գետին ընկավ։ Ներկաները*
*ջրով ու վարդաջրով նրան մի փոքր սթափեցրին, ուշքի բերեցին։*
*Ուշքի գալով, նա սառը ջուր ուզեց խմել, խմեց, բայց սրտի կաթ-*
6—X— *ված ստանալով, երկու օր հետո մեռավ։ Բուլղարների իշխանու-*
1014 *թյունը վերցնում է նրա որդի Գաբրիել-Ռոմանոսը, որը թեև ֆի-*
*զիկական ուժով ու կարողությամբ գերազանցում էր հորը, բայց*
*մտավոր ընդունակություններով նրան շատ էր զիջում։ Սամուիլն*
*այդ որդուն ունեցավ լարիսացի ինչ-որ գերուհուց։ Նա իշխանու-*
*թյունն ստացավ ինդիկտիոնի 13-րդ տարվա սեպտեմբեր ամսի*
*15-ին, բայց մի տարին էլ չբոլորելով, որսի ժամանակ սրախող-*
*խող արվեց Ահարոնի որդի Հովհաննես-Վլադիսլավի կողմից, ո-*
*րին [Գաբրիելը] ժամանակին մահից փրկել էր։*

*36. Այս դեպքերից առաջ Արիանիտեսի փոխարեն Թեսաղո-նիկեի կառավարիչ էր նշանակվել Թեոփիլակտոս Բոտանիատե-սը, իսկ բուլղար մեծամեծներից Դավիթ Նեստորիցեսը, Սամուի-լի կողմից մեծ ուժով Թեսաղոնիկեի վրա էր ուղարկվել։ Թեոփի-լակտոսը, իր որդի Միքայելի հետ ընդդիմակայեց նրանց և կռվի բռնվելով, գլխովին պարտության մատնեց, ձեռք բերեց մեծ ավար ու բազմաթիվ գերիների, որոնց ուղարկեց այն ժամանակ Կլիդիոնի կլեյսուրում գտնվող կառույցը պաշարող կայսեր։ Այդ կառույցն անցնելով, ինչպես ասվեց, կայսրը հասնում է Ստրում-պիցա, պաշարում Ստրումպիցայի մոտիկ գտնվող Մացուկի բեր-դը, իսկ Թեսաղոնիկեի դուքս Թեովփիլակտոս Բոտանիատեսին հրամայում է զորքով անցնել Ստրումպիցայի լեռները, նրանց*

մոտի ճանապարհներում գտնվող կառույցները կրակի տալ, հարթել իր ճանապարհը դեպի Թեսաղոնիկե։ Վայրը պահպանող բուլղարները, առանց խոչընդոտելու, թույլ տվեցին նրան մուտք գործել, բայց երբ նա հրամանը կատարելուց հետո ուզեց կայսեր մոտ վերադառնալ, մի երկար կիրճում ընկավ նրա համար հատուկ դարան մտած [բուլղարների] ծուղակը։ Ընկնելով ահա այդ ծուղակը, նա բոլոր կողմերից շրջապատվեց, նրա վրա վերևից սկսեցին շպրտել քարեր և նետեր արձակել։ Կիրճի անանցելիության ու [զինվորների] խտության պատճառով ոչ ոք չէր կարողանում մարտնչել. ինքը՝ [Թեոփիլակտոսը] ընկավ, չկարողանալով անգամ իր ձեռքերը գործի դնել, նրա հետ ոչնչացավ նաև զորքի մեծ մասը։ Երբ այդ մասին տեղեկացրին կայսեր, նա մեծ կսկիծ ապրեց ու որոշեց այլևս չխորանալ, և նահանջելով եկավ Ջագորա, որտեղ մի ժայռի վրա, բոլոր կողմերից խորագույն անդունդներով ու կիրճերով շրջապատված, կառուցված է ամենաանառիկ Մելնիկոս բերդը[344]։ Շրջակայքի բոլոր բուլղարներն այստեղ էին ապավինել, ամենևին ուշադրություն չդարձնելով հռոմայեցիների [կարգադրություններին]։ Կայսրը սրանց մոտ ներքինի ոմն Սերգիոսի, իր ամենամտերիմ սենեկապաններից մեկին, խոհեմ, ճարտարախոս մի մարդու ուղարկեց, որպեսզի փորձի խելքի բերել։ Լինելով տեղում, բազում խոստումներով նա կարողացավ համոզել նրանց ճիշտ ընտրություն կատարելու, զենքերը ցած դնելու, իրենց էլ, բերդն էլ կայսեր հանձնելու։ Կայսրը սիրալիր ու պատվով ընդունեց նրանց և բերդում անհրաժեշտ կայազոր թողնելով, շարժվեց դեպի Մոսինուպոլիս։ Այդտեղ գտնվելու ժամանակ հոկտեմբեր ամսի 24-ին նրան հայտնեցին Սամուիլի մահվան լուրը։ Կայսրը Մոսինուպոլսից անհապաղ դուրս գալով, իջնում է Թեսաղոնիկե, այնտեղից էլ գնում է Պելագոնիա, ճանապարհին ոչինչ չասպատակելով։ Նա կրակի տվեց միայն Բուտելիում գտնվող Գաբրիելի ապարանքը։ Այնուհետև նա զորք ուղարկեց ու գրավեց Պրիլապոն ու Ստիպիոն բերդերը, ապա հասավ Ջեռնա կոչվող գետը, լաստերի ու փչած տիկերի օգնությամբ անցավ այն և վերադարձավ Վոդինա, այնտեղից էլ՝ հունվարի 9-ին եկավ Թեսաղոնիկե։

1015 37. Գարնանը նա դարձյալ վերադարձավ Բուլղարիա և դեմ արեց Վոդինա բերդին, քանզի նրանք հասցրել էին կայսեր հանդեպ հայտնած իրենց հպատակությունը դրժել և հռոմայեցիների դեմ զենք բարձրացնել։ Համառ պաշարման ենթարկելով նր-

րանց ստիպեց, երաշխիքներ ստանալով, հանձնել ներսում գըտ-
նըվողներին։ [Կայսրը] սրանց դարձյալ Վոլերոսում վերաբնա-
կեցրեց, դժվարանցանելի վայրերի մեջտեղում երկու այլ բերդեր
կառուցեց, որոնցից մեկն անվանեց Կարդիա, մյուսը՝ Սուրբ Ե-
ղիա, որից հետո Թեսաղոնիկե վերադարձավ։ Այստեղ Ռոմանոս-
Գաբրիելի կողմից մի ոմն կոնատ Հռոմայեցի էր ուղարկվել, հպա-
տակություն ու հնազանդություն հայտնելու։ Կայսրը կասկածեց
նամակի [խսկության] վրա, դրա համար պատրիկ Նիկեփոր
Քսիֆիասին, Բոտանիատեսից հետո Թեսաղոնիկեի զորավար
նշանակված Կոստանդին Դիոգենեսի հետ զորքով Մոգլենայի[345]
նահանգն ուղարկեց, որի ողջ շրջանն ասպատակելու և քաղաքը
պաշարելու ժամանակ, վրա հասավ նաև կայսրը։ Նա քաղաքի
մոտով հոսող գետի հունը փոխելով, քայքայեց պարիսպների
հիմքերը, քանդված տեղերում ցախ ու այլ դյուրավառ նյութ դը-
րեց և կրակի տալով պարիսպն ավերեց։ Ներսում եղողները,
տեսնելով դա, աղիողորմ կայսեր ողորմածության դիմեցին
և բերդն ու իրենց նրան հանձնեցին։ Գերի վերցվեց մի իշխանա-
վոր, Գաբրիելի սիմպարեդրոս կավխան[346] Դոմետիանոսը, Մոգ-
1015 լենայի կառավարիչ Իլիցեսը և բազում այլ իշխանավորներ, ու
ամառ անթիվ մարտիկներ։ Զենք կրելու ընդունակ մարդկանց կայսրը
Վասպուրական ուղարկեց[347], հրամայեց մնացած ամբոխի ունեց-
վածքը թալանել, իսկ բերդն էլ կրակի տալ։ Գրավվեց նաև Մոգ-
լենայի մոտիկ գտնվող մի այլ բերդ՝ Էնոտիա կոչվողը։

38. Հինգերորդ օրը եկավ կոնատ Հռոմայեցին՝ Ահարոնի
որդի Հովհաննես-Վլադիսլավի ծառաներով, նամակ բերելով,
որով հայտնվում էր, թե ինքը սպանել է Գաբրիելին, ողջ իշխա-
նությունն իր ձեռքը վերցրել։ Նա խոստանում էր ինչպես պետքն է
հպատակություն ու հնազանդություն հայտնել կայսեր։ Կարդա-
լով դա, կայսրը խրիսովուլ նամակ գրեց՝ անհրաժեշտ երաշխիք-
ները տալով և այն Հովհաննեսին ուղարկեց։ Մի քանի օր անց
կոնատ Հռոմայեցին դարձյալ վերադարձավ, բերելով Հովհան-
նեսի և Բուլղարիայի իշխանների գրությունները, որոնցով նը-
րանք խոստանում էին լինել կայսեր հպատակներն ու ծառանե-
րը։ Կայսեր կողմն անցավ նաև Մոգլենայում գերի ընկած Դոմե-
տիանոսի եղբայր Կավխանը[348]։ [Կայսրը] սրան սիրալիր ընդու-
նեց ու պատիվների արժանացրեց։ Իմանալով, որ Հովհաննեսի
գրածը անկեղծ չէ, այլ հետին մտքեր է հետապնդում, որ նա իր
գրածի հակառակն է մտադիր անել, նա դարձյալ Բուլղարիա վե-

բադարձավ, ասպատակեց Օստրովի և Սոսկոսի շրջակայքը, Պելագոնիայի դաշտավայրը, կուրացնելով դերի ընկնող բոլոր բուլղարներին։ Նա հասավ մինչև Ախրիդա քաղաքը, որտեղ գտնվում էին Բուլղարիայի թագավորների ապարանքները։ Նա առավ քաղաքը, ամեն ինչ կարգի բերեց և մտադիր էր առաջ անցնել ու Դյուրախիոնի շրջանով էլ զբաղվել, քանզի այդ շրջաններն իր ներկայության կարիքն էին զգում։ Քանի Տրիվալիայի և Սերբիայի անմիջապես հարող շրջանների վրա իշխում էր Սամուիլի փեսան՝ նրա դստեր ամուսին Վլադիմիրը[349], մի հեզ, խաղաղասեր ու առաքինի մարդ, Դյուրախիոնի շրջանը անդորրության մեջ էր։ Հովհաննեսը Գաբրիելին սպանեց, իսկ երբ Վլադիմիրն էլ Բուլղարիայի արքեպիսկոպոս Դավթի միջնորդությամբ Հովհաննեսի տված պատիր երդումներից խաբվելով հանձնվեց ու փոքր անց զոհվեց, այդ շրջանները մեծ խառնաշփոթության ու տակնուվրայության մեջ էին։ Հովհաննեսն անձամբ կամ իր զորավարների հետ, շարունակ փորձեր էր անում վերագրավելու քաղաքը։ Ահա սրա համար էր կայսրն ուզում գնալ և օգնել, բայց մի ծանրակշիռ պատճառ խանգարեց դրան։ Նա Ախրիդա գնալիս, բազում զինվորներով իր ետևում թողեց զորավար Գեորգիոս Գոնիցիատեսին և պրոտոսպաթար Օրեստես Գճրիին, նրանց հրաման տալով ասպատակել Պելագոնիայի հարթավայրերը։ Բուլղարները մի շատ երևելի ու փորձված մարդու, զորավար Իվացեսի գլխավորությամբ սրանց ծուղակն են գցում և բոլորին կոտորում։ Կայսրը այդ բանից կսկիծով լի, Պելագոնիա վերադարձավ, հարձակվեց Իվացեսի վրա և հալածական անելով, գնաց Թեսաղոնիկե, այնտեղից էլ անցավ Մոսինուպոլիս, [Նախապես] Ստրումպիցայի դեմ պատրիկ Դավիթ Արիանիտեսի գլխավորությամբ զորք ուղարկելով։ Սա հանկարծակի հայտնվելով, գրավեց Թերմիցա կոչվող բերդը։ [Կայսրը] Քսիֆիասի գլխավորությամբ մի ուրիշ զորք էլ Տրիադիցայի բերդերի դեմ ուղարկեց։ Սա բաց տեղանքներում ինչ հանդիպեց ավերեց, իսկ պաշարմամբ գրավեց Բոյիո[350] կոչվող ամրոցը։

1016 39. Կայսրը 6524 թ. հունվարին Կոստանդնուպոլիս գնաց և Անդրոնիկոս Դուկաս Լյուդոսի որդի Մոնդոսի գլխավորությամբ Խազարիա նավատորմիղ ուղարկեց։ Սա թագավորի փեսա Վլադիմիրի[351] եղբայր Սֆենգոսի համագործակցությամբ հպատակեցրեց երկիրը. հենց առաջին ընդհարման ժամանակ նահանգի կառավարիչ Գեորգիոս Ցուլեսը[351ա] գերի ընկավ։ Ահա այդ ժա-

մանակներում էր, որ Վերին Մարաստանի (որին այժմ Վասպուրական են անվանում) արխոնտ Սենեքերիմը, ամբողջ տոհմով
1021/ կայսեր կողմն անցավ, նրան հանձնեց իրեն պատկանող համայն
1022 երկիրը և ստացավ պատրիկի պատվաստիճանը և Կապադովկիայի զորավարի [պաշտոնը], տվածի դիմաց որպես տիրություն ստանալով հետևյալ քաղաքները. Սեբաստիան, Լարիսան, Աբարան և այլ բազում տիրույթներ։ Նեղվելով հարևան հագարացիներից և ի վիճակի չլինելով նրանց ընդդիմակայել, նա կայսեր կողմն անցավ, նրան հանձնելով իր երկիրը[352]։ Այնտեղ որպես կառավարիչ ուղարկվեց պատրիկ Վասիլ Արգիրոսը, որն ամեն ինչում սխալներ թույլ տալու պատճառով, պաշտոնանկ արվեց։ Նրան փոխարինելու ուղարկվեց պրոտոսպաթար Նիկեփոր Կոմնենոսը, որ տեղ հասնելով, և գործի գնելով և՛ քաղցր խոսքը, և՛ բռնությունը, կարողացավ երկիրը կայսրին հպատակեցնել։

40. 6524 թ. ինդիկտիոնի 14-րդ տարին, կայսրը մայրաքաղաքից դուրս գալով, գնում է դեպի Տրիադիցա, պաշարում Պերնիկ ամրոցը, որի պաշտպանները հաստատակամ ու քաջարի դիմադրություն ցուցաբերեցին. բազում հռոմայեցիներ ընկան։ Կայսրը ամբողջ ութսունութ օր համառորեն պաշարեց, բայց համոզվելով, որ անկարելին է ձեռնարկում, ձեռնունայն նահանջեց, իջավ Մոսինուպոլիս։ Այստեղ նա զորքերին հանգիստ տվեց, իսկ գարնանը Մոսինուպոլսից դուրս գալով, մուտք գործեց Բուլղարիա և պաշարելով Լոնգան կոչվող բերդը, գրավեց այն։ Դավիթ Արիանիտեսին և Կոստանդին Դիոգենեսին նա Պելագոնիայի դաշտերն ուղարկեց և բազում անասուններ ու գերիներ ձեռք բերեց։ Կայսրը գրավված բերդը կրակի տվեց, գերիներին երեք մասի բաժանեց, մի մասը տվեց դաշնակից ռուսներին[353], մյուսը՝ հռոմայեցիներին, իսկ երրորդն էլ ինքը վերցնելով, առաջ շարժվեց։ Հասնելով մինչև Կաստորիա[354], նա փորձ արեց գրավել քաղաքը, բայց համոզվելով, որ դա անհնարին է, վերադարձավ։ Կայսրը Դորոստոլի զորավար Ջոջիկից, իբերացի պատրիկ Թևդատի[355] որդուց նամակ ստացավ, թե Գրակրասը բազում զորք հավաքելով, և Հովհաննեսին միանալով, պածինակների էլ վերցնելով, մտադիր է Ռոմանիա ներխուժել։ Այս նամակի վրա իրար անցած, [կայսրը] շտապ կարգով վերադարձավ։ Ճանապարհին նա գրավեց Բոսոգրադ բերդը, որը կրակի տվեց, գրավեց Բերիան, ասպատակ սփռեց ու ավերակ դարձրեց Օստրովի և Մո-

լիսկոսի շրջակայքը, որից հետո կանգ առավ, քանզի իրեն հայտնեցին, որ Կրակրասի ու Հովհաննեսի նախատեսած հարձակումը հոռմայեցիների դեմ խոչընդոտի հանդիպեց՝ պածինակների նրանց զինական օգնություն չտալու պատճառով։ Ահա դրա համար [կայսրը] վերադառնալով, մի այլ բերդ պաշարեց՝ Սետենան, որտեղ Սամուիլի ապարանքն էր գտնվում, մեծ քանակությամբ հացահատիկ, որը հրամայեց իր զինվորներին հափշտակել, իսկ մնացած ամեն ինչը նա կրակի· տվեց։ Նա մոտիկ գտնվող Հովհաննեսի դեմ Արևմուտքի սխոլերի տագման ուղարկեց, ինչպես և Թեսաղոնիկեի՝ Կոստանդին Դիոգենեսի գլխավորությամբ։ Երբ սրանք ճամփա ելան, Հովհաննեսը դարանակալեց։ Կայսրը, իմանալով այդ մասին ձի նստեց և միայն, «ով կռվող է, թող ինձ հետևի» ասելով, անհապաղ ճամփա ընկավ։ Հովհաննեսի հետախույզները, իմանալով այդ մասին, սարսափահար Հովհաննեսի ճամբարն եկան, այն ահով ու իրարանցմամբ լցրին, միայն մի բան աղաղակելով. «Բեժիտե, ցեսարը»[356]։ Բոլորը Հովհաննեսի հետ խառնիճաղանջ փախուստի դիմեցին, իսկ Դիոգենեսի զինվորները գոտեպնդված հալածում էին նրանց։ Նրանք շատերին սպանեցին, երկու հարյուր հոգու կատարյալ սպառազինությամբ գերեցին, ձեռք գցեցին Հովհաննեսի ձիերն ու հանդերձանքը և նրա եղբորորդուն։ Այգ գործը կատարելուց հետո նա վերադարձավ Վոդինա և այդտեղի ամեն ինչը կարգի բերելով, վերադարձավ Բյուզանդիոն՝ ինդիկտիոնի 15-րդ տարին, 6526 թվականի[357], հունվար ամսի 9-ին։

41. Հովհաննեսը առիթ ձեռք բերելով, բարբարոսին հատուկ
փքվածությամբ ու գոռոզությամբ գնում է Դյուրախիոնը պաշա-
րելու։ Պաշարման ժամանակ տեղի ունեցած ընդհարման ըն-
1018 թացքում նա սպանվեց. ոչ ոք չիմացավ, ո՞վ էր նրան սպա-
փետր. նողը[358]։ Նա բուլղարների վրա իշխեց 2 տարի և 5 ամիս։ Երբ
կայսրը Դյուրախիոնի զորավար պատրիկ Նիկետաս Պեգոնիտեսի[359] միջոցով իմացավ Հովհաննեսի մահվան մասին, իսկույն դուրս եկավ և երբ հասավ Ադրիանուպոլիս, նրան ընդառաջ ելան համբավավոր Կրակրասի եղբայրն ու որդին, ավետելով նշանավոր Պերնիկ բերդի և ուրիշ երեսունհինգ [բերդերի] հանձնման մասին։ [Կայսրը] նրանց ըստ արժանվույն պատվեց, Կրակրասին պատրիկի պատվաստիճան շնորհեց և եկավ Մոսինուպոլիս։ Այստեղ Պելագոնիայից, Մորովիսգոսից, և Լիպենիոնից դեսպաններ եկան՝ քաղաքները կայսեր հանձնելու։

Այստեղից կայսրը գնաց Սերրև, որտեղ ժամանեց Կրակրասը՝ հանձնվելու [համաձայնություն տված] 35 արխոնտների հետ։ Նա լավ ընդունելության արժանացավ. Հանձնվեց և Դրագոմուժոսը, որը Ստրումպիցայի [բերդերը] տվեց. նա պատրիկի պատվաստիճան ստացավ։ Սա իր հետ բերեց և պատրիկ Հովհաննես Խալդին, որ երկարամյա բանտարկությունից ազատ էր արձակվել։ Սամուիլն էր նրան բռնել և նա քսաներկու տարի բանտում էր մնացել։ Երբ կայսրը մոտեցավ Ստրումպիցային, նրա մոտ եկավ Բուլղարիայի արքեպիսկոպոս Դավիթը՝ Հովհաննեսի կին Մարիայի նամակով. նա խոստանում էր հեռանալ Բուլղարիայից, եթե իր մտադրությունն իրականանա։ Ընդառաջ եկավ նաև երկրի խորքում գտնվող բերդերի տոպարխ Բոգդանը, որը ևս ստացավ պատրիկի պատվաստիճան, որպես հին կայսերասեր և իր աներոջ սպանող։ [Կայսրն] այնտեղից գնաց Սկոպիա, քաղաքում զորավար-ավտոկրատոր[60] թողեց պատրիկ Դավիթ Արիանիտեսին և Ստիպիոն ու Պրոսակ բերդերի վրայով ետ վերադարձավ, աղոթքների, փառաբանությունների ու պատիվների արժանանալով։ Ապա քաջաբար գնաց Ախրիդա, ուր և բանակեց. համայն բնակչությունը նրան ընդառաջ ելավ՝ հաղթական երգերով, ծափահարություններով ու փառաբանություններով։ Ախրիդա քաղաքը բարձր բլրի վրա է կառուցված, շատ մոտ մեծագույն մի լճի, որտեղից սկիզբ է առնում դեպի հյուսիս հոսող Դրինոս գետը, որն այնուհետև արևմուտք շրջվելով, Էլիսոս բերդի մոտ Օրինոն է թափվում։ [Ախրիգան] համայն Բուլղարիայի մայրաքաղաքն է, այնտեղ են գտնվում Բուլղարիայի թագավորների ապարանքներն ու գանձարանը, որը կայսրը բացելով, բազում դրամ գտավ, մարգարտյա թագեր, ոսկեհյուս հանդերձներ, և հարյուր կենտինար ոսկեդրամ, որն ամբողջությամբ որպես ռոճիկ տվեց իր զինվորներին։ Քաղաքի կառավարիչ հաստատելով պատրիկ Եվստաթիոս Դաֆնոմելեսին, նրան թողնելով ուժեղ կայազոր, նա դուրս եկավ ճամբար, ուր ընդունեց իր մոտ առաջնորդված Հովհաննես-Վլադիսլավի կնոջը, որն իր հետ էր բերել նաև երեք որդիներին ու վեց դուստրերին, Սամուիլի ապօրինածին որդուն, Սամուիլի որդի Ռադոմիրի երկու դուստրերին ու հինգ որդիներին, որոնցից մեկը, Հովհաննեսի ձեռքն ընկնելով, կուրացվել էր. դա այն ժամանակ էր եղել, երբ [Հովհաննեսը] սպանել էր Սամուիլի որդի Ռադոմիրին, վերջինիս կնոջը և [Սամուիլի] փեսա Վլադիմիրին։ Մարիան Հովհաննեսից երեք

որդի էլ ուներ, բայց նրանց հաջողվել էր փախուստի դիմել Տմորոս լեռը, Կնրավնիա լեռնաշղթայի գագաթը։ [Կայսրը Մարիային] մեղմ ու սիրալիր ընդունեց և հրամայեց պահպանել նրան մյուսների հետ միասին։ Կայսեր մոտ եկան բուլղարների և այլ մեծամեծներ՝ Նեստորիցեսը, Լազարիցեսը, կրտսեր Դոբրոմիրը, յուրաքանչյուրն իր տագմաներով, որոնք սիրալիր ընդունելության արժանացան և թագավորավայել պատվի։ Այն ժամանակները նաև Վլադիսլավի Տմորոս փախած, (այդ մասին ասվեց), որդիներ՝ Պրուսիանը և նրա երկու եղբայրները, երկարատև շրջապատման մեջ ընկնելով (կայսեր հրամանով զինվորները հսկում էին լեռից իջնելու ուղիները), կայսեր դիմեցին և երաշխիքներ խնդրեցին, խոստանալով հանձնվել։ Կայսրը նրանց մարդասիրական պատասխան տվեց։ Ախրիդայից դուրս գալով, նա եկավ Պրեսպա կոչվող լիճը, մեջտեղում գտնվող լեռն անցնելիս նրա վրա բերդ կառուցեց, որը Վասիլիդա կոչեց, մի ուրիշն էլ հիշյալ լճի [ափին]։ Պրեսպայից կայսրը գնաց Դիաբոլիս[361]։ Այստեղ մի բարձր բեմ շինեցին [որի վրա կայսրն] ընդունեց ներս մտած Պրուսիանին և նրա եղբայրներին, մեղմ ու մարդասիրական խոսքերով մխիթարեց։ [Պրուսիանին] նա մագիստրոսի, իսկ մյուսներին պատրիկի պատվաստիճան շնորհեց։ Այստեղ բերվեց և կուրացված Իվացեսը։ Արժե պատմել նրա կուրացման մանրամասնությունների մասին, դրա պատմությունը հետաքրքիր է և զարմանալի։

42. Հովհաննես-Վլադիսլավի մահից, նրա կնոջ Մարիայի և վերջինիս երեխաների [կայսեր] կողմն անցնելուց և համայն Բուլղարիայի մյուս արխոնտների հպատակվելուց հետո, այս Իվացեսը փախուստի դիմեց և ապավինեց դժվարանցանելի մի լեռ (Բրոխոտոս է այն կոչվում), որտեղ կան շատ գեղեցիկ ապարանքներ (նրանց Պրոնիստա են կոչում), պարտեզներ ու հաճույքի վայրեր։ Նա չէր ուզում տեղի տալ ստոր կամքին և կամաց-կամաց զորք հավաքելով, տակնուվրա էր անում շրջակայքը, ապստամբություն ծրագրում, երազում բուլղարական իշխանության տիրանալ։ Այդ բանը շատ էր անհանգստացնում կայսեր և նա ուղիղ ճանապարհը թողած թեքվեց դեպի հարավ և հասավ վերոհիշյալ Դիաբոլիսը, վճռելով կամ ստիպել ապստամբին զենքերը ցած դնել, կա՛մ պատերազմով նրան ոչնչացնել։ Կայսրնահա հիշյալ վայրում կանգ առնելով, Իվացեսին նամակ ուղարկեց, նրան հորդորելով, քանի որ արդեն Բուլղարիան

*հպատակվել է, զենք չբարձրացնել, անկարելին չերազել, իմա-
նալ, որ իր ձեռնարկած գործն անհաջողության կմատնվի։ Նա
նամակն ստանալով, պատասխան գրեց, բազմապիսի պատճա-
ռաբանություններ առաջ քաշեց, սկսեց ձգձգել ու խուսանավել,
ստիպելու համար կայսեր իր՝ [Իվացեսի] տված խոստումներից
խաբված այդ տեղում հիսուն հինգ օր մնալ։ Իրերի դրության
մասին տեղյակ պահվեց Աքրիդայի կառավարիչ Եվստաթիոս
Դաֆնոմելեսը, որին հայտնվեց, թե կայսրը վճռել է Իվացեսին
ոչնչացնել։ [Եվստաթիոսը] հարմար առիթ որսալով, խորհրր-
դակցեց իր ամենահավատարիմ սպասավորներից երկուսի հետ,
նրանց բացահայտեց նպատակը և գործի անցավ։ Իվացեսը նր-
շում էր ամենասուրբ աստվածամոր Ննջման համաժողովրդական
15—VIII տոնը։ Այդ օրը նա սովորություն ուներ ճաշկերույթի հրավիրել
—1018 ոչ միայն մոտիկ հարևաններին, այլև բազում մարդկանց հեռա-
վոր շրջաններից։ Եվստաթիոսն ահա ինքնագլուխ գնում է տոնին
մասնակից դառնալու։ Հանդիպելով անցումների պահապաննե-
րին, նա հրամայում է զեկուցել իր ով լինելը, ասել, թե ուզում է
արքոնտի հետ ճաշկերույթին մասնակցել։ Սրանց զեկուցման
վրա Իվացեսն ապշեց, [խորհելով], թե ինչպես իրեն թշնամա-
բար տրամադրված մի մարդ կամավոր կերպով գալիս ու իրեն
ընձեռում է ոսոխին։ Հակառակ դրան նա թույլ է տալիս նրան
գալ, ուրախությամբ ընդունում ու ողջագուրվում։ Առավոտվա
աղոթքից հետո, երբ բոլոր հավաքվածներն իրենց կացարաննե-
րը ցրվեցին, Եվստաթիոսը մտավ Իվացեսի մոտ և պահանջեց,
որ բոլորը կարճ ժամանակով դուրս գան, իբրև թե ուզում է
Իվացեսի հետ առանձին խոսակցել նրա համար շատ կարևոր
ու օգտաշատ մի հարցի շուրջը։ [Իվացեսը] առանց որևէ նենգու-
թյուն ու խաբեություն կասկածելու, հավատաց, որ նա իսկապես
ուզում է միանալ իր բարձրացրած ապստամբության, և հրամա-
յեց սպասավորներին կարճ ժամանակով հեռանալ, ապա բռնելով
]Եվստաթիոսի] ձեռքից, ծառախիտ, փոս մի տեղ տարավ, որ-
տեղից ծառերի խտության պատճառով ոչ մի ձայն լսելի չէր
դառնա։ Եվստաթիոսն ահա լինելով այդ վայրում, օգտվեց Իվա-
ցեսի մենակ լինելու հանգամանքից, և նրան իսկույն գետին տա-
պալեց, ծունկը դրեց նրա կրծքին (ֆիզիկապես նա ուժեղ էր) և
սկսեց խեղդել, [միաժամանակ] կոչ անելով իր երկու սպասա-
վորներին՝ շտապ օգնության հասնել։ Նրանք, պայմանավորվա-
ծության համաձայն, կանգնած հետամուտ էին դեպքերի ընթաց-*

քին և երբ լսեցին տիրոջ ձայնը, շտապ վազեցին, բռնեցին Իվացեսին, նրա բերանը պատմուճանով փակեցին, որպեսզի նա հանկարծ չգոռա, չկանչի իր մարդկանց և գործը չխափանվի, և կուրացրին։ Ահա այդպես կույր նրան պարտեզից հանեցին, բակը բերեցին, իրենք էլ մի բարձր շենքի վերին հարկը փախչելով ու թուրը քաշելով, պատրաստվեցին ընդդիմակայելու։ Երբ աղետի մասին իմացվեց, անհամար բազմություն վրա խուժեց, ոմանք թրերով, ոմանք նիզակներով ու աղեղներով, ուրիշներն էլ քարերով, փայտերով ու վառված ջահերով, դյուրավառ նյութերով, գոռում գոչյունով վազեցին, աղաղակելով. «խողխողել, այրել, կտոր-կտոր, քարկոծ անել ոճրագործներին ու սրիկաներին, չխնայել չարագործներին»։ Հսկայական ամբոխը տեսնելով և փրկության հույսը կտրելով, Եվստաթիոսը իր մարգկանց կոչ արեց արիանալ, թուլամորթություն հանդես չբերել, չհանձնվել, չընկնել իրենց կորստին ծարավի մարդկանց ձեռքը, իրենց պետք չէ ոչ նրանց տալիք փրկությունը, ոչ էլ եղկելի ու տանջալից մահը։ Նա ինչ-որ փոքր լուսամուտից գլուխն հանեց ու ձեռքի նշանով լռեցնելով ամբոխին, նրանց դիմեց հետևյալ խոսքերով. «Ո՜վ հավաքված այրեր, ես ոչ մի թշնամություն չէի տածում ձեր իշխանավորի հանդեպ, դուք բոլորդ վկան եք դրան, որ նա բուլղար է, իսկ ես՝ հռոմայեցի, այն էլ ոչ Թրակիայի և Մակեդոնիայի, այլ Փոքր Ասիայի, ձեր մեջ կլինեն իմացողներ, թե ձեզնից ինչքան հեռու է այն գտնվում։ Ես նման բանի դիմեցի ոչ անխոհեմաբար ու անտեղի, այդ բանին ինձ պարագաներն ստիպեցին, թող ձեր ամենախոհեմները միտք անեն։ Ես այդպես խելահեղորեն ինձ վտանգի մեջ չէի գցի, իմ կյանքից ձեռք չէի քաշի, եթե այդ բանին դրդող պատճառ չլիներ։ Դուք իմացեք, որ դա կայսեր հրամանով տեղի ունեցավ, որին ես ենթարկվեցի որպես կարգապահ գործակալ։ Արդ, եթե դուք որոշել եք ինձ սպանել, ահա ես ձեր կողմից շրջապատված եմ։ Բայց իմացեք, ես իմ կյանքը հեշտ ու խաղաղ չեմ տա, ոչ էլ զենքերը ցած դնելով կհանձնվեմ ձեզ, որպեսզի դուք իմ անձի նկատմամբ ցանկացածն անեք։ Ես կմաքառեմ իմ կյանքի համար իմ մարդկանց հետ մինչև մահ, կընդդիմակայեմ իմ վրա եկողներին։ Եթե նույնիսկ զոհվենք, այդ էլ հնարավոր է, քանի որ շրջապատված ենք քանակապես ավելի շատերի կողմից, ապա մահը մենք երջանիկ ու երանելի ենք համարում, քանզի գիտենք, որ կա մեր արյան վրեժն առնողը, իսկ թե դուք կարո՞ղ եք նրան երկար գիմադրել, ապա

մտածեք»։ Հավաքվածները, լսելով նման խոսքերը, կայսեր երկյուղից սարսափած, քիչ-քիչ ցրվեցին, ավելի տարեցներն ու խոհեմները փառաբանելով կայսեր հնազանդություն հայտնեցին, իսկ Եվստաթիոսն էլ հեշտ ու հանգիստ Իվացեսին առնելով, բերեց կայսեր, որը գնահատելով [Եվստաթիոսի] խիզախությունը, նրան իսկույն Դյուրախիոնի զորավար նշանակեց, Իվացեսի շարժական ողջ ունեցվածքը նվիրեց, [Իվացեսին] էլ բանտ նետեց։

43. Այն ժամանակ էր, որ բազում անգամ բռնված և նույնքան էլ ազատ արձակված Նիկոլիցան ինքնաբերաբար իջավ կայսեր ճամբարը և իր ձեռքով թակելով դուռը, հայտնեց իր իսկությունը և ասաց, թե կամովին հանձնում է իր մարմինը կայսեր։ Նա ինչ-որ լեռներում էր թաքնվում և նման քայլին գիմեց այն բանից հետո, երբ նրա և նրա հետ եղողների դեմ զորք ուղարկվեց և մի մասը կամովին հանձնվեց, մյուսն էլ գերի վերցվեց։ Կայսրը սակայն չուզեց նրան տեսնել անգամ, և Թեսաղոնիկե ուղարկեց, հրամայելով բանտարկել, ապա Դյուրախիոնի, Կոլոնիայի[362] և Դրյուինուպոլսի գործերը իր կարծիքով հնարավորին չափ լավ կարգավորելով, բանակաթեմերում կայազորեր ու զորավարներ հաստատելով, ռազմագերի հռոմայեցիներից[363] ով որ ցանկացավ տեղում մնալ թողնելով, մյուսներին հրամայեց իրեն հետևել։ Նա եկավ Կաստորիա, որտեղ իր մոտ բերվեցին Սամուիլի երկու դուստրերը, որոնք տեսնելով կայսեր մոտ կանգնած Մարիային, Հովհաննեսի կնոջ, վրան հարձակվեցին սպանելու։ Կայսրը նրանց զայրույթը մեղմեց, խոստանալով պատիվների ու անչափ հարստության արժանացնել։ Նա Մարիային տվեց զոստե պատրկուհու պատվաստիճան և որդիներով մայրաքաղաք ուղարկեց։ Կայսրը Քսիֆիասի ձեռքով քանդեց, գետնին հավասարեցրեց Սերբիայում[364] և Սոսկոսում գտնվող բոլոր բերդերը։ Ապա եկավ Ստագուս բերդը, որտեղ իր իշխանավորներով ժամանեց ու նրան հնազանդություն հայտնեց Բելգրադի արխոնտ Էլեմագոսը։ [Կայսրն] այդտեղից ելավ եկավ Աթենք։ Զետունիոնի միջով անցնելիս, նա տեսավ ու ապշեց այնտեղ ընկած բուլղարների ոսկորների վրա, այն բուլղարների, որոնք [սպանվեցին], երբ մագիստրոս Նիկեփոր Ուրանոսը պարտության մատնեց Սամուիլին։ Նա հիացավ նաև բուլղարների առաջն առնելու համար Թերմոպիլեում Ռուբենի կողմից կառուցված պարսպի վրա[365], որն այժմ Սկելոս է կոչվում։ Լինելով Աթենքում, նա հաղթանակի առթիվ աստվածածնին գոհություն հայտնեց, բա-

զում, փառահեղ ու արժեքավոր նվերներով պերճացրեց նրա
տաճարը[366], որից հետո վերադարձավ Կոստանդնուպոլիս։ Նա
Ոսկե դռան մեծ դարբասներով, ցցունքով ոսկե պսակը գլխին
հաղթական երթ կազմակերպեց։ Առջևից գնում էին Վլադիսլավի
կին Մարիան, Սամուիլի դուստրերը և մնացած բուլղարները։
1019 Ինդիկտիոնի 2-րդ տարին էր, 6527 թվականը։ Ահա այդպես հաղ-
թավարով ու հաղթական նա մտավ Մեծ եկեղեցին, աստծուն գո-
հություն հայտնեց ու գնաց արքունիք[367]։ Պատրիարք Սերգիոսը
հաղթական վերադարձած կայսեր շատ էր աղաչում՝ վերացնել ալ-
լիլենգիոնը[368] (նա խոստացել էր այդ բանը, եթե հաղթեր բուլղար-
ներին), բայց չկարողացավ նրան համոզել։ Աստծու եկեղեցին ամ-
բողջ քսան տարի հովվելուց հետո, ինդիկտիոնի 2-րդ տարում,
6527 թվականի հուլիս ամսին նա փոխեցավ առ տեր։ Պատ-
րիարք առաջ քաշվեց Եվստաթիոսը, պալատի տաճարի ավագ
երեցը[369]։

44. Բուլղարիայի հպատակվելուց հետո, կայսեր կողմն անցան նաև սահմանակից խորվաթների ցեղերը, որոնց արխոնտներն էին երկու եղբայրներ. երբ նրանք հնազանդություն հայտնեցին և պաշտոններ ու լայնատարած կալվածներ ստացան, ապա այդ ցեղերն էլ հպատակ դարձան[370]։ Չուզեց հնազանդություն հայտնել միայն Նեստոնգի եղբայր Սերմոնը[371], Սիրմիոնի տերը։ Այդ շրջանների կառավարիչ Կոստանդին Դիոգենեսը, բարեկամություն ձևացնելով, նրա մոտ դեսպան ուղարկեց և երդումներով հավաստիացրեց, թե ցանկություն ունի նրան հանդիպել և խորհրդակցել կարևոր հարցերի շուրջը։ Եթե նա որևէ երկյուղ է տածում, երեք սպասավորներով թող իրեն հանդիպի մոտիկում հոսող գետի մեջտեղում, որտեղ ինքը ևս պիտի գար երեք սպասավորներով։ [Սերմոնը] հավատաց նրան և եկավ գետը ու հանդիպեց Դիոգենեսին։ Երբ նրանք պետք է բանակցությունների սկսեին, Դիոգենեսը հանկարծակի քաշեց ծոցում պահած դաշույնը և նրա կողքին հարվածելով, իսկույն ըսպանեց։ [Սիրմիոնի] մարդիկ փախուստի դիմեցին, իսկ Դիոգենեսն էլ մոտիկ կանգնած զինվորներին հավաքելով, թափով գալիս է Սիրմիոն, վախճանվածի ապուշ կտրած կնոջ խոստումներով հանգստացնում և համոզում [կայսեր] կողմն անցնել և Սիրմիոնը նրան հանձնել։ Նա Բյուզանդիոն ուղարկվեց և կնության տրվեց մայրաքաղաքի մեծամեծներից մեկին, իսկ Դիոգենեսն էլ նշանակվեց նորանված շրջանի կառավարիչ։

45. Կայսրը վերանորոգեց Վալենտինոս կայսեր ջրատարը,
քաղաքացիներին[372] առատ ջրով ապահովելու համար։ Երբ Ա-
բազգիայի արխոնտ Գեորգիոսը[373] խախտեց հռոմայեցիների հետ
1021 ունեցած պայմանագիրը և սկսեց ասպատակել սահմանակից
շրջանները, կայսրը համայն բանակով նրա դեմ դուրս եկավ, իր
հետ չվերցնելով պատրիկ Նիկեփոր Քսիֆիասին և Վարդաս Փո-
կասի որդի պատրիկ Նիկեփորին։ Նրանք, արշավանքին չընդ-
գըրկվելու համար մեծապես վիրավորված, Կապադովկիայից,
Ռոդանդոնից և շրջակա շրջաններից պատահած զինվորներին
հավաքելով, ապստամբություն բարձրացրին։ Երբ այդ բանը հա-
ղորդվեց կայսեր, ճամբարում ահ ու սարսափ տարածվեց, նը-
րանք վախեցան, որ կընկնեն աբազգների ու ապստամբների
արանքը (լուր էր տարածվել, որ Քսիֆիասի մարդիկ այգ հար-
ցի շուրջը պայմանավորվել են Աբազգիայի արխոնտի հետ)
և փորձանքի կհանդիպեն։ Կայսրը Քսիֆիասին ու Փոկասին նա-
1022 մակներ ուղարկեց, նամակատարին կարդադրելով դրանք մեկը
մյուսից թաքուն առանձին-առանձին հանձնել։ Նա հրամանի
համաձայն էլ կատարեց, թաքուն հանձնեց նամակները։ Փոկասն
իսկույն իր ստացած [նամակը] ընթերցեց Քսիֆիասին, վերջինս
սակայն իր ստացածը թաքցրեց, նա բացարձակապես ուրացավ
իր նամակ ստանալը և օրերից մեկը նրան խորհրդակցության
հրավիրեց. [Փոկասը] եկավ, բայց [Քսիֆիասը] նրան նախօրոք
լարած թակարդի մեջ գցելով, սպանեց։ Ապստամբների կազմա-
կերպությունն իսկույն ցրիվ եկավ։ Երբ Փոկասի սպանության
մասին կայսրն իմացավ, ուղարկվեց Դամիանոս Դալասսենոսի
որդի Թեոփիլակտոսը, որը Քսիֆիասին ձերբակալելով, շղթայա-
կապ մայրաքաղաք ուղարկեց՝ պրոտոնոտարիոս Հովհաննեսին,
որը նրան Անտիգոնոսի կղզում վանական խուզեց[374]։ Կայսրը ա-
պըստամբների վտանգից ձերբազատվելով, աբազգների վրա է
հարձակվում. բազում հռոմայեցիներ են ընկնում։ Հակառակորդ
զորքերը ցրվեցին և հաղթանակը անորոշ էր։ Դրանից հետո տե-
ղի ունեցավ երկրորդ ընդհարում ինդիկտիոսի 6-րդ տարում,
1022 6531 թվականի սեպտեմբեր ամսի 11-ին, [որտեղ] սպանվում է
Լիպարիտը[375] (սա Գեորգիոսի սպարապետն էր), նրա հետ նաև
աբազգների ողջ ընտրանին։ Գեորգիոսը փախուստի դիմեց դե-
պի Իբերիայի խորքերում գտնվող լեռները։ Փոքր անց նա [կայ-
սեր մոտ] դեսպանություն ուղարկեց, նրան զիջեց ինչքան տա-

րածություն որ նա ցանկանում էր և հաշտություն կնքեց, որպես պատանդ տալով իր որդի Բագարատին[376]։ Կայսրը սրան մագիստրրոս անելով, ետ վերադարձրեց։ [Կայսրը] Քսիֆիասի և Փոկասի հետ ապստամբություն բարձրացնողների ունեցվածքը գրավելով, բանտ նետեց, մահապատժի ենթարկեց միայն պատրիկ Ֆերսին[377], որպես ապստամբներին առաջինը հարողի, հարևան արխոնտների չորս կուրատորների սպանողի և կայսերական մի ներքինու անձամբ գլխատողի։ Առյուծներին կուր տրվեց մի կայսերական սենեկապան. Նա մեղադրվեց այն բանում, թե Քսիֆիասի օգտին կամեցել է կայսեր թունավորել։

46. Երբ կայսեր քույր Աննան մահացավ Ռուսիայում, իսկ նրանից առաջ՝ նրա ամուսին Վլադիմիրը, վերջինիս ազգականներից ոմն Խրիսոխիր, ութ հարյուր հոգու հավաքագրելով և նավերի մեջ նստեցնելով, եկավ Կոստանդնուպոլիս իբրև թե վարձով բանակում ծառայելու։ Կայսրը պահանջեց նախ զենքերը ցած դնել, որից հետո իրեն հանդիպել, բայց նա չուզենալով այդ բանն անել, անցավ Պրոպոնտիս։ Լինելով Աբիդոսում և կռվի բռնվելով ափերի պաշտպան զորավարի հետ, հեշտությամբ հաղթեց, ապա իջավ Լեմնոս, որտեղ սակայն ուխտադրժորեն բոլորն էլ սրի քաշվեցին Կիբիրրեոտների նավատորմիղի, Սամոսի զորավար Դավիթ Ախրիդացու և Թեսաղոնիկեի դուքս Նիկեփոր Կավասիլասի կողմից։

47. Կայսրը, ցանկանալով արշավել Սիկիլիայի դեմ, նախա-
պես մեծ ուժով Օրեստեսին, իր ամենահավատարիմ ներքինինե-
րից մեկին ուղարկեց, ինքը սակայն չհասցրեց գնալ մահկանա-
ցուն կնքելուն պատճառով։ Նա հանկարծակի հիվանդացավ ու
վախճանվեց ինդիկտիոնի 9-րդ տարում, 6534 թվականի դեկ-
15—XII տեմբեր ամսին։ Իրենից մի քանի օր առաջ մեռել էր պատրիարք
—1025 Եվստաթիոսը[378], որի աթոռին կայսրը վանական Ալեքսիոսին,
Ստուդիոնի վանքի վանահորը նշանակեց[379], իր մոտ նա այցե-
լության էր եկել՝ Կարապետի պատվական գանգով։ Ահա սրան
ճամփու դնելով [պատրիարքական] աթոռին նստեցրեց ձեռամբ
Հովհաննես պրոտոնոտարիոսի, որին կայսրը հասարակաց գոր-
ծերի տնօրինության մեջ օգնական ուներ։ Կայսրը նույն երեկո-
յան վախճանվեց, ապրելով 70 տարի, բոլորն էլ որպես կայսր,
իսկ միահեծան՝ 50 տարի։ Նա իր եղբորը (որին իշխանությու-

*նր ժառանգեց) խնդրեց իրեն թաղել Հեբգոմոնում գտնվող [Հովհաննես] Աստվածաբան ավետարանիչի տաճարում, ինչ որ կատարվեց*[380]*։*

# ԿՈՍՏԱՆԴԻՆ՝ ԵՂԲԱՅՐԸ ՎԱՍԻԼԻ

## [16 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1025—11 ՆՈՅԵՄԲԵՐ 1028 ԹԹ.]

*1. Կոստանդինն իր ձեռքն առնելով համայն իշխանությունը և ցանկացածն անելու հնարավորությունը և ունենալով արտառոց արարքներ գործելու սեր, պետության գլխին եկած բազում փորձանքների պատճառ դարձավ։ Նա ինչ անհրաժեշտ էր չէր անում, ոչ էլ մտածում այդ մասին, այլ զվարճանում էր ձիարշավներով, միմոսներով ու խեղկատակներով, գիշերները լուսացնում կոտտաբ խաղալով։ Նա քաղաքների ու բանակաթեմերի ղեկավար պաշտոնները տալիս էր մարդկանց ոչ թե նկատի ունենալով նրանց գործնական ու մտավոր կարողությունները, այլ ամեն տեսակի աղտեղությամբ ու գարշանքով լի հարբեցող ու ձվատ ստրկամիտ մարդկանց։ Նա նրանց ամենաբարձր պաշտոններին էր առաջ քաշում, բանի տեղ չդնելով [ազնվական] ծագում, առաքինություն ու փորձ ունեցողներին։ Իր առաջին սենեկապան Նիկոլայոսին սխոլերի դոմեստիկոս նշանակեց և պարակիմոմենոս, նրանից հետո երկրորդ տեղը գրավող մարդուն, Նիկեփորին՝ պրոտովեստիարիոս, իսկ երրորդ տեղում գտնվող Սիմեոնին՝ վիգլայի դրունգար*[381]*։ Բոլորին պրոեդրոսի պատվաստիճան շնորհեց, իսկ իրենից ոչինչ չներկայացնող Եվստրատիոսին տվեց հաջորդ՝ մեծ հետերիարխի [աստիճանը]։ Նա Անտիոքի դուքս նշանակեց մի ոմն ներքինու՝ անունը Սպոն-*
*1027 դիլես, իսկ Իբերիայի՝ Նիկետաս Պիսիդացուն*[382]*. երկուսն էլ խայտառակ ու նենգ մարդիկ էին։ Ահա սրանք երկիրը տականքությամբ ու խառնաշփոթությամբ լցրին և քիչ էր մնացել կործանեին կայսրությունը, որ երկու կայսրերի հայր Ռոմանոսի ինքնակալությունից սկսած հաջորդաբար գայիսոնն ստացած Նիկեփորի, Հովհաննեսի և Վասիլի օրերում լավ էր կառավարվում և անգամ սարսափելի դառնում մերձակա ազգերի համար։ Նա ոչ միայն անտարբեր էր իշխանավորների պաշտոնների նշանակման հարցում, այն պաշտոնների, որոնք նա անցյալից ժառանգեց, այլ*

դավեր նյութելով առավել նշանավոր ու փորձառու, բարի անուն հանած մարդկանց նկատմամբ, անվերջ հալածում էր նրանց։ Նա կուրացրեց պատրիկ Կոստանդնին՝ մագիստրոս Միքայել Բուրցիսի որդուն, որովհետև նախքան իր ինքնակալ դառնալը նա հակառակվում էր իրեն և իր խայտառակ արարքների մասին տեղյակ պահում Վասիլ կայսեր։ Նա ոչնչացրեց շատ ուրիշ առաքինի մարդկանց, այդ մասին կասվի։ Եթե իր թագավորության սկզբինահա այսպիսին էր, ապա ո՞ր պատմությունն ի վիճակի է ըստ արժանվույն ներկայացնելու դրանից հետո կատարվածը։ Ինչպես ասվեց, նրա խելքն ու միտքը խեղկատակներն ու միմոսներն էին, ձիարշավների սրանից մեծ սիրահար չկար, նա ամենակարևոր բանը ձիարշավներն էր համարում, իսկ մնացածների վրա ոչ մի ուշադրություն չէր դարձնում, գտնում, որ մնացած ամեն ինչ իր խայտառակ արարքների համեմատությամբ երկրորդական նշանակություն ունի։ Նա առանց որևէ էական պատճառի, պարզապես առաքինությունից նախանձելով, գերագույն դավաճանության մեջ մեղադրեց ու կուրացրեց Նիկեփոր Կոմնենոսին, խոհեմ, իր առաքինությամբ ու քաջությամբ հռչակված մի մարդու, [Վերին] Մարաստանի՝ այն է Վասպուրականի կառավարչին, հարևան ազգերին հպատակեցնողին։ Սա բազմիցս բախվել էր [Վերին] Մարաստանում հարևան սարակինոսներին և տեսնելով իր փափկասուն զինվորներին, որոնք խայտառակ կերպով թիկունքն էին ցույց տալիս ու փախուստի դիմում, ոմանց ամոթանք էր տալիս, մյուսներին կոչ անում այդպես խայտառակ կերպով չփախչել, այլ քաջաբար ընդդիմակայել հակառակորդներին, որով նրան հաջողվեց համոզել նրանց իր հետ լինել։ Նա նրանցից պահանջում էր երդումներով հաստատեն, թե իր հետ կզոհվեն պայքարելով թշնամիների դեմ։ Եվ նրանք գրավոր՝ սարսափելի անեծքներով ու սոսկալի երդումներով նրան հավաստիացրեցին, թե քաջաբար կկանգնեն զորաշարքում և իրենց զորավարի հետ կմեռնեն։ Երբ այդ բանը հասավ Կոստանդնի ականջին, Նիկեփորն իսկույն պաշտոնանկ արվեց, բերվեց մայրաքաղաք, դատի տրվեց և կայսեր դեմ դավ նյութելու մեղադրանքով կուրացվեց[383]։ Զարացած լինելով մագիստրոս Վարդաս Փոկասի թոռ պատրիկ Վարդասի[384], ինչպես և մի քանի ուրիշների դեմ, նա [իր] մակաբույծ զրպարտիչներից մեկի միջոցով նրա դեմ գործ սարքեց, թե նա իբր իր դեմ խռովություն է նախապատրաստում և իսկույն կուրացրեց և՛ նրան, և՛

Նրա հետ զրպարտվածներին։ Իր թեթևամտության պատճառով Մորոգեորգիոս[385] կոչվող Նավպակտոսի զորավար Գեորգիոսի դեմ խռովություն բարձրացավ, զորավարը սպանվեց, նրա ողջ ունեցվածքը հափշտակվեց. նա տեղական բնակչության հետ վատ էր վարվում, կեղեքում անհիմն ու անվերջ հարկապահանջությամբ։ Կայսրը ոճրագործներին խստորեն չպատժեց, այլ հենց Նավպակտոսի եպիսկոպոսին կուրացրեց։ Ռոմանոս Սկլերոսի որդի պատրիկ Վասիլը[386] ընդհարվել էր Բուկելլարների զորավար մագիստրոս Պրուսիան բուլղարի հետ, և նա այն աստիճան հանդուգն էր դարձել, որ անգամ մարտ տվեց նրան։ Կոստանդին կայսրը սրանց վեճը թագավորության նկատմամբ անպատվություն որակելով, երկուսին էլ աքսորում է, մեկին Օքսիա կղզում, մյուսին՝ Պլատե։ Փոքր անց փախուստի փորձ կատարելու մեջ ՝ամբաստանելով, Վասիլին կուրացրեց, իսկ Պրուսիանին, որ քիչ էր մնացել նույն բախտին արժանանար, ազատ արձակեց։ Նա կուրացրեց նաև Ռոմանոս Կուրկուասին, որ Պրուսիանի քրոջ ամուսինն էր, Բոգդանին, Գլաբասին և Գուդելիոսին, իսկ վեստ Թևդատի ազգական Զաքարիա վանականի լեզուն կտրեց։ Բոլորն էլ մեղադրվեցին իր դեմ դավ նյութելու մեջ[387]։

2. Այդ տարի պածինակներն էլ ներխուժեցին Բուլղարիա. նրանք սրի քաշեցին ու գերի վերցրին բազում զինվորների, զորավարների ու տագմատարխների։ Դրա համար Կոստանդին կայսրը Սիրմիոնի կառավարիչ Դիոգենեսին դարձրեց նաև Բուլղարիայի դուքս։ Սա բազմիցս բախվեց երկրով մեկ ցրված [պածինակների] հետ և նրանց փախուստի մատնեց, ստիպեց անցնել Իստրոս գետը և հանգիստ մնալ։ Կոստանդին կայսեր թագավորության բոլոր տարիների ընթացքում սարսափելի երաշտ եղավ, այն աստիճան, որ ցամաքեցին մշտահոս աղբյուրներն ու գետերը։ Վասիլ կայսրը, գթալով չքավորներին, ժամանակին չէր գանձել պետական հարկերը, նա դադարեցրել ու հետաձգել էր հարկերի գանձումը, և երբոր վախճանվեց [հարկատուների վրա] երկու տարվա [չմուծված] հարկ էր մնացել, որը Կոստանդինն իսկույն գանձեց։ Նա գանձեց նաև երեք տարվա [հարկեր] (նա այդքան ժամանակ իշխեց), որով կեղեքվեցին ոչ միայն չքավորներն ու աղքատները, այլև ունևորները, քանզի երեք տարում հինգ տարվա հարկ վճարեցին։ Հագարացիների նավատորմիղ էլ դուրս եկավ Կիկլադյան կղզիների դեմ։

*Սրանց հետ բախվեց Սամոսի զորավար Գեորգիոս Թեոդորականը՝ Քիոսի զորավար Բերիբոեսի հետ միասին և նրանց պարտության մատնեց, տասներկու [նավ] անձնակազմով հանդերձ գրավեց, մնացածներն էլ ցրիվ արեց։*

1928 *3. 6537 թվականի նոյեմբեր ամսի իննին, ինդիկտիոնի 12-րդ տարին, Կոստանդինը հանկարծակի հիվանդացավ։ Բժիշկները դտան, որ նա չի լավանա և նա արդեն մտածում էր թագավորության ժառանգի մասին։ Նա որոշեց կանչել Արմենիակների [բանակաթեմում] սեփական ապարանքում մասնավոր կյանք վարող պատրիկ Կոստանդին Դալասսենոսին, նրան կնության տալ իր դուստրերից մեկին և կայսր հռչակել։ Նրան [քաղաք] բերելու համար ուղարկվում է ամենահավատարիմ ներքինիներից մեկը, էրգոդոտես[388] կոչվածը։ Բայց պատրիկ Ռոմանոս Արգիրոսի նկատմամբ բարեկամաբար տրամադրված Սիմեոնի ջանքերով այդ որոշումն անուշադրության մատնվեց։ Դալասսենոսի մոտ ինչ-որ մեկն ուղարկվեց, իբրև թե կայսեր կողմից, մինչև իր նամակի ստանալը տեղում մնալու կարգադրությամբ, որի ընթացքում ահա Ռոմանոսին բերեցին արքունիք և առաջարկեցին ընտրություն կատարել. կամ բաժանվել իր օրինավոր կնոջից, ամուսնանալ կայսեր դստեր հետ և կայսր հռչակվել, կամ դատապարտվել կուրացման։ Ռոմանոսը քիչ մնաց ուշաթափվի, նա ոչ մեկն էր ուզում, ոչ մյուսը։ Կինը վախենալով, որ ամուսնու գլխին փորձանք կգա, իսկույն հրաժարվեց աշխարհիկ կյանքից, [վանք մտավ], որով նա ոչ միայն իր ամուսնու աչքի լույսը փրկեց, այլև նրան թագավորություն շնորհեց։ Կոստանդինը պատրիկ Ալիպիոսի դստրից, (որի հետ ամուսնացել էր դեռ Վասիլի կենդանության օրոք), երեք դուստր ուներ, որոնցից մեծը Եվդոկիան վանք էր մտել, փոքրը՝ Թեոդորան հրաժարվել էր ամուսնանալ Ռոմանոսի հետ, պատճառաբանելով, ինչպես ասում են, իրենց ունեցած արենակցական կապը, կամ էլ այն պատճառով, որ նրա՝ Ռոմանոսի կինը դեռ կենդանի էր։ Իսկ միջնեկ դուստրը, Զոեն, հաճույքով ընդունեց ամուսնության մասին առաջարկը։ Երբ արենակցության հարց մեջտեղ եկավ, եկեղեցին՝ պատրիարքի միջոցով արգելքը վերացրեց և Ռոմանոսը պսակվե-*
12—XI *լով Զոեի հետ, ինքնակալ կայսր հռչակվեց։ Երեք օր անց Կոս-*
1028 *տանդինը մեռավ։ Նա ապրեց 70 տարի, իսկ [միահեծան] թագավորեց երեք տարուց մեկ ամիս պակաս։*

# ՌՈՄԱ՛ՆՈՍ ԱՐԳԻՐՈՍ

## [12 ՆՈՅԵՄԲԵՐ 1028—11 ԱՊՐԻԼ 1034 թթ.]

1. Ահա այսպես անակնկալ ու անսպասելի կուրացման վտանգից պրծնելով, Ռոմանոսը իր ձեռքն է վերցնում թագավորական իշխանությունը և Կոստանդնի դուստր Զոեի հետ հռչակվում ինքնակալ կայսր։ Նստելով կայսերական գահին, նա լավ սկիզբ, գովելի հիմք դնելով սկսեց կառավարել հպատակ ժողովրդին՝ իր բարեգործությունները բարեպաշտությունից սկսելով։ Տեսնելով, որ Մեծ եկեղեցին քիչ եկամուտներ ունի (ինքն անցյալում նրա տնտեսն էր եղել), ինչպես և սակավ է զգում տարբեր բաների, որոնք սովորաբար սպասարկության համար անհրաժեշտ են նրա կղերին, նա կարգադրեց պետական գանձարանից տարեկան հավելյալ ութսուն լիտր ոսկի[389] տալ այդ [ծախսերի] համար։ Նա վերացրեց, կատարելապես արմատախիլ արեց ալլիլենգիոնը, որը Կոստանդինը մտադիր էր իրականացնել, բայց չհասցրեց։ Նա բանտերը դատարկեց այլևայլ զանցանքների համար կալանավորված մարդկանցից, շնորհեց պետության հանդեպ ունեցած նրանց պարտքերը և փոխհատուցելով նրանց մասնավոր մարդկանց տալիքը, փրկագնեց Պածինակիայում գտնըվող ռազմագերիներին։ Նա երեք մետրոպոլիտների սինկելլոսի[390] պատիվ շնորհեց, Եփեսոսի Կիրիակոսին, որպես պատրիարքի եղբոր, Կյուզիկոսի Դեմետրիոսին, որին նա շատ էր սիրում դեռ կայսր չդարձած, և Եվխայիտների [մետրոպոլիտ] Միքայելին, որպես իր արյունակցի. նա ծագում էր, այսպես կոչված, Իսադենոսներից։ Վասիլ կայսեր պրոտոնոտարիոս Հովհաննեսին, որ վանական էր դարձել, [վանքից] կանչեց և սինկելլոսի պատիվը շնորհելով, իր քենի Թեոդորային հսկող նշանակեց։ Նա ոտքի կանգնեցրեց ալլիլենգիոնից ծայր աստիճան աղքատացած աստծու բազմաթիվ սպասավորների, իսկ մյուսներին՝ չքավորությունից դժգոհ ու ճնշվածներին, մխիթարեց։ Նա իր աներոջ հոգու փրկության համար անհամար դրամ տրամադրեց, ավելիով օժանդակեց նրա կողմից տուժածներին. ոմանց պաշտոններ տալով, ոմանց կալվածներ, ուրիշներին էլ դրամով սփոփեց։ Նա մագիստրոսի փառավոր աստիճանին բարձրացրեց իր քրոջ ամուսին Ռոմանոս Սկլերոսին, որին Կոստանդինը, ինչպես ասացինք, կուրացրել էր։ Երկարատև աքսորից նա ետ կանչեց

Նիկեփոր Քսիֆիասին, որ կամավոր կերպով Ստուդիոնի վան-
քում վանականի սքեմն հագավ։
2. Այդ տարի աստված չափավոր անձրև տեղաց և պտուղ-
ների առատ բերք եղավ, հատկապես ձիթենու։ Սուրբ Պենտեկոս-
տեի օրը տակնուվրայություն եղավ՝ պատարագի ժամանակ կա-
թեգրայում նստելու առնչությամբ. մետրոպոլիտները չուզեցին,
որ սինթրոնոնի բարձր տեղում սինկելլոսները նստեն։
3. Այդ տարի մագիստրոս Պրուսիան բուլղարը, ամբաս-
տանվելով, թե թագուհու քույր Թեոդորայի հետ գործակցության
մեջ է մտել՝ կայսրության տիրանալու մտադրությամբ, արգե-
լափակվեց Մանուիլի վանքում[391]։ Երբ այդ մեղադրանքը հաս-
տատվեց, [Պրուսիանը] կուրացվեց, իսկ նրա մայրը, զոստեն,
քաղաքից վտարվեց։ Կայսեր փեսա Կոստանդին Դիոգենեսը[392],
(կայսեր եղբոր Վասիլի դստեր ամուսինը), որ Սիրմիոնից փո-
խադրվելով Թեսաղոնիկե, դարձել էր նրա դուքսը, Վասիլ կայ-
սեր սպասավոր Օրեստեսի կողմից ամբաստանվելով ապստամ-
բություն նախապատրաստելու մեջ, ուղարկվում է որպես Թրա-
կեսիոն [բանակաթեմի] զորավար։ Երբ այդ մեղադրանքը հաս-
տատվեց, նա շղթայակապ մայրաքաղաք բերվեց և բանտ նետ-
վեց։ Նրա դավակիցները՝ պրոտոնոտարիոս և սինկելլոս Հով-
հաննեսը, պատրիկ և զորավար Եվստաթիոս Դաֆնոմելեսը, Մի-
քայել Բուրցեսի որդիներ Միքայելը, Թեոգնոստոսն ու Սամուիլը,
պատրիկ Թևդատի եղբորորդիներ Գեորգն ու Վարազվաչեն[393],
(որ Աթոս լեռան վրա իբերների վանքը հիմնադրեց)[394], սաստիկ
գանակոծվելով, Մեսե պողոտայով ծանակվելով, աքսոր ուղարկ-
վեցին։ Թեոդորան էլ պալատից դուրս հանվեց և Պետրիոնի
1029 [պալատում] արգելափակվեց։ Հոկտեմբեր ամսի 31-ին աստղի
թափում եղավ։ Նա ընթանում էր արևմուտքից արևելք։ Նույն
օրը Ասորիքում հռոմեական զորքի մեծ կոտորած եղավ. ավաղ
Անտիոքի զորավարն էր Միքայել Սպոնդիլեսը։ Հորդառատ
անձրևներ էլ տեղացին, որոնք տևեցին մինչև մարտ ամիսը,
գետերն հորդեցին, ցածրագիր վայրերը ողողվեցին, գրեթե բոլոր
անասունները ջրահեղձ եղան, ցանքերը ոչնչացան, որով մյուս
տարին հաջորդեց սոսկալի սովը։ Կայսրը ուզենալով Ասորիքի
1030 պատահարը դարմանած լինել, արշավեց Բերիայի դեմ։ Նա
զգալի ուժով [այնտեղ]ուղարկեց իր քրոջ ամուսին պատրիկ
Կոստանդին Կարանտենոսին, կարգադրելով գնալ, հետախուզել
անցման վայրերը, հնարավորին չափ վնաս պատճառել թշնա-

միներին, բայց մինչև իր՝ [կայսեր] գալը ճակատ առ ճակատ մարտնչելուց ձեռնպահ մնալ։ Զորահավաքի միջոցին հիվանդացավ ու վախճանվեց Աբազգիայի արխոնտ Գեորգիոսը[394ա], իսկ նրա կինը նվերներով դեսպաններ ուղարկեց կայսեր մոտ, խնդրելով խաղաղության դաշինք կնքել, ինչպես և իր որդի Բագարատի համար՝ կին։ Կայսրն ընդունեց նրա դեսպանությունը, հաստատեց դաշինքը, իսկ իր եղբոր Վասիլի դուստր Հելենեին հարսնության ուղարկեց Աբաղգիա, [նրան] փեսայացած Բագարատին բարձրացնելով կուրապաղատի աստիճանին։

4. Այգ տարի Թրակեսիոն [բանակաթեմում] մի զարմանալի հրաշք եղավ։ Կուղինա լեռան ստորոտին, որտեղ շատ լավ ու զուլալ ջրի աղբյուր կա, լաց ու կոծի ձայն էր լսվում, վայնասուն, կնոջ ողբի նման։ Դա ոչ թե մեկ, կամ երկու անգամ տեղի ունեցավ, այլ մարտ ամսից մինչև հունիսը՝ օր ու գիշեր։ Երբ ոմանք գնացին զննելու վայրը, որտեղից ձայնն էր գալիս, այս անգամ աղաղակը սկսեց այլ տեղից դուրս գալ։ Ըստ երևույթին դա կանխագուշակությունն էր Կյուլե Ասորիքում հռոմայեցիների գլխին պայթելիք փորձանքի։ Նիկեփոր կայսրը գրավել էր Ասորիքի և Փյունիկեի բազմաթիվ քաղաքները, նրանից հետո Հովհաննես [Չմշկիկը] գրավված [վայրերում] ամրապնդեց [հռոմայեցիների գերիշխանությունը], սահմաններն ընդարձակեց մինչև Դամասկոս, բայց նրանց հաջորդող Վասիլը, սկզբնական շրջանում զբաղված լինելով ներքին պատերազմներով, ապա Սամուիլի դեմ գործելով, ժամանակ չունեցավ լավ, ինչպես որ պետքն էր ապահովել դրությունն Արևելքում։ Նա այնտեղ եղավ ուրվականի պես և ժամանակի պահանջների չափով կարգի բերելով, վերադարձավ, նրա մշտական զբաղմունքն ու հոգսը բուլղար ժողովրդին հնազանդեցնելն էր։ Ահա դա պատճառ եղավ, որ համեմատաբար ավելի ուժեղ քաղաքները թոթափեն լուծը, ջանան ազատություն ձեռք բերել։ Քանի [Վասիլը] կենդանի էր, ապստամբությունը ծրագրվում էր, բայց ծածուկ և ոչ բացահայտ։ Իսկ երբ նա հոգին ավանդեց, նրա եղբայր Կոստանդինն էլ սկսեց անշնորհք ու թույլ կերպով թագավորել՝ խելքը միտքը ունենալով այն հարցերի վրա, որոնց մասին արդեն ասվել է, իսկ մնացածն էլ մեծ անուշադրության մատնել, սարակինոսներն, ահա, առիթից օգտվելով, քաղաքի կայազորերին պարտության մատնեցին ու կոտորեցին։ Նրանցից հատկապես աչքի ընկավ Բերիայի (որին Հալեպ էլ են ասում) առաջնորդը։ Նա ան-

վերջ հարձակումներ էր գործում, վնասներ հասցնում Անտիոքին, ինչպես և հռոմայեցիներին հարևան ու մերձակա ժողովուրդներին։ Ահա, ինչպես ասվեց, Անտիոքի դուքս Սպոնդիլեսը նրա վրա արշավեց՝ դեռ Կոստանդնի կենդանության օրոք, մտադիր լինելով սխրանք ու քաջագործություն ցուցաբերել։ Նա մարտ տվեց Բերիայի առաջնորդին, բայց պարտվեց, նրա զինվորներից շատերը սպանվեցին, իսկ ինքն էլ խայտառակ կերպով պրծավ Անտիոքում։ Նրան ռազմավարական պարտության մատնեց և ոմն արաբ, անունը Մուսարաֆ[395] ահա թե ինչպես։ Այս Մուսարաֆը ռազմագերի էր Անտիոքում (նրան գերի էր վերցրել Պոթոս Արգիրոսը)։ Երբ [Անտիոքի] կառավարչի պաշտոնն անցավ Սպոնդիլեսի ձեռքը, [Մուսարաֆը] քաջատեղյակ լինելով [Սպոնդիլեսի] անկայուն նկարագրին, խոստացավ մեծապես օգտակար լինել հռոմայեցիներին, ամեն ինչ կատարել, եթե ազատեն իրեն կապանքներից։ Նա խոստացավ վնասել իր ազգակիցներին, ցույց տվեց մի վայր և ասաց, որ եթե այնտեղ բերդ կառուցվի և տրվի իրեն, դրանից հռոմայեցիները մեծ օգուտ կքաղեն։ Սպոնդիլեսը նրա նենգությանն անտեղյակ, բանտից ազատեց, նրա ասածի պես բերդը կառուցեց[396], պաշտպանությունը վստահեց նրան՝ տեղում հազար հռոմայեցիներից բաղկացած կայազոր հաստատելով։ Մուսարաֆը, սպասած առիթը ձեռք գցելով, ծածուկ բանակցությունների մեջ մտավ Տրիպոլսի ամիրայի և Եգիպտոսի սպարապետ Տուբերի[397] հետ և նրանց ուղարկված զորքով կոտորեց այդ հազար հոգուն, իսկ բերդն էլ նրանց հանձնեց։ Ահա այդ բարձրադիր տեղում գտնվող բերդից սարակինոսներն անդադար ավերում ու ավարառում էին Ասորիքի՝ հռոմայեցիներին հպատակ շրջանները։

5. Ռոմանոսը [Սպոնդիլեսին] պաշտոնանկ է անում և նրա փոխարեն [դուքս] նշանակում իր քրոջ ամուսին Կոստանդին Կարանտենոսին, իսկ ինքը նախապատրաստություն էր տեսնում նրանից հետո սարակինոսների վրա արշավելու։ Երբ նա հասավ Ֆիլոմիլիոն, Բերիայից առատ նվերներով դեսպաններ եկան, թողություն աղերսելով, [խոստանալով] դարձյալ հպատակություն հայտնել և պատրաստակամություն՝ տարեկան հարկերը վճարելու։ [Ռոմանոսի] հետ արշավանքի դուրս եկած բազում ու խոհեմ զինվորականներ (նրանցից մեկը պատրիկ Հովհաննես Խալդոսն էր) կայսեր կոչ էին անում ամառ ժամանակ չարշավել Ասորիքի վրա, քանզի այդ ժամանակ ջրի պակասություն է

զգացվում, բացի այդ, արաբ ժողովուրդն անպարտելի է, քանզի
նա սովոր է քաջաբար տոկալու տեղական շոգին ու տապին, իսկ
հռոմայեցիները լրիվ զինվածությամբ ի վիճակի չեն դիմանալու
այդ եղանակին։ [Կայսրը սակայն] ասվածի վրա ուշադրություն
չդարձրեց, հիշելով իրենից առաջ թագավորածների սխրագոր-
ծությունները և ջանալով ինքն էլ ինչ-որ հերոսություն գործել,
գնաց Ասորիք։ Նա Բերիայից երկու օրվա ճանապարհ հեռավո-
րության վրա գտնվող ինչ-որ բերդում (բերդի անունը Ազազ էր)
բանակեց՝ անելիքի մասին մտածելով։ Ահա այս բերդում
վրան խփած [Ռոմանոսը], էքսկուբիտների հրամանատար պատ-
րիկ Լևոն Խիրոսֆակտեսին սեփական տագմայով հետախուզու-
թյան ուղարկեց, իմանալու գալի՞ս են արդյոք ինչ-որ արաբներ և
որտե՞ղ է ավելի նպատակահարմար տեղափոխելու ճամբարը։
Բայց դարանակալած ու մոտակա դաշտերի վրա հսկող արաբնե-
րը, հարմար առիթ ձեռք գցելով, հանկարծակի հարձակվեցին,
բռնեցին [Լևոնին], իսկ նրա զինվորներին ցիրուցան արեցին։
Նրանք այնքան հանդգնություն ու անամոթություն ունեցան, որ
բացահայտորեն չէին թողնում հռոմայեցիներին [ձիերի] հա-
մար խոտ հավաքեն և անհրաժեշտ այլ պարեն ձեռք բերեն։
Բայց նրանք ավելի մեծ վնաս էին հասցնում ջրի գնացած
հռոմայեցիներին. նրանք, իրենց ձիերն ու գրաստները ծարա-
վից նեղվելով, բացահայտ վտանգի էին իրենց ենթարկում,
[արաբների] ձեռքն ընկնողները սպանվում էին։ Այդ պատճա-
ռով պատրիկ Կոստանդին Դալասսենոսն ուղարկվեց՝ եա մղելու
հարձակվողներին, քաջություն ու սխրանք գործելու, բայց նրանց
բախվելով, նա անփառունակ փախուստի դիմեց, հռոմայեցինե-
րի · անգամ կայսեր մեծ իրարանցման ու շփոթության մեջ
գցելով. երբ նա շվարած վերադարձավ և ողջ ճամբարը ահ ու
դողի մեջ գցեց ու անկարգությամբ լցրեց, այլևս պատե-
րազմի մասին խոսք լինել չէր կարող և յուրաքանչյուրը, ինչպես
կարող էր, իր գլխի ճարն էր տեսնում։ Առաջարկություն եղավ
հենց արշալույսին վերացնել ճամբարը, վերադառնալ Անտիոք։
1030 Եվ ահա 6538 թվականի օգոստոս ամսի տասին, ինդիկտիոնի
13-րդ տարին, ընդունած որոշման համաձայն ամեն տեղից ճամ-
բարի դռները բացելով, դեպի Անտիոք շտապեցին։ Նրանցից
շատերը ոտնավայնային հիվանդությամբ էին տառապում, շատերն
էլ ծարավից էին հյուծված։ Արաբները ուժեղ թափով հարձակ-
վեցին ճամբարից դուրս եկողների վրա, որոնք ամենևին չկա-

րողացան այդ թափի առաջն առնել և սարսափելի պարտություն կրեցին. ոմանք մահը գտան իրար տրորելով, մյուսներն էլ գերի ընկան։ Այստեղ մի գեղեցիկ բան էլ տեղի ունեցավ։ Այն ժամանակ, երբ քաջի անուն հանած զորավարներն ու բոլոր զինվորները չէին համարձակվում իրենց վտանգի ենթարկել, այլ անփառունակ կերպով փախուստի էին դիմում, կայսերական սենեկապաններից մի ներքինի, տեսնելով, թե ինչպես են տանում իր իրերն ու ծառաներին, և այդ բանը շատ ծանր տանելով, իր ձին այստեղ ու այնտեղ շարժելով, ուժեղ թափով հարձակվում է սարակինոսների վրա, ձգելով աղեղը սպանում է մեկին, իսկ մյուսներին փախուստի մատնում, և փրկելով իրեն պատկանածը, ուրախությամբ ետ վերադառնում։ Իսկ կայսրը գերվելուց հազիվ պրծած, մի կերպ փրկվում է Անտիոքում. այդ բանում [օգնեցին] կայսեր մերձավորները, որոնք քաջաբար կռվելով, փրկեցին և՛ իրենց, և՛ կայսեր[398]։

6. Այն ժամանակները Տլուքի բանակաթեմի զորավար Գեորգիոս Մանիակեսի[399] մոտ հաղթանակից գլխապտույտ ստացած ութ հարյուր արաբներ եկան, կոչ անելով անհապաղ հեռանալ, թողնել քաղաքը, քանզի կայսրը գերի է ընկել, հռոմեական ողջ բանակը գլխովին կորել, բացահայտ վտանգի չենթարկել իրեն, քանզի հենց որ լույսը բացվեց, ինքն էլ, իր զինվորներն էլ օղակի մեջ առնվելով, չարաչար կոտորվելու են։ [Մանիակեսը] ձևացրեց, որ ընդունում է նրանց առաջարկը, մտադիր է ընդառաջ գնալ նրանց կոչին, և նրանց բազում հաց ու խմիչք ուղարկելով, ասաց հանգստանան և հենց որ լուսացավ, ինքն իր զինվորներով կհեռանա, [արաբներին] դարձնելով Տլուք քաղաքի և հռոմեական բովանդակ ունեցվածքի տերը։ Նրանք [Մանիակեսի] ասածից ու արածից խաբված, համոզված, որ հաջորդ օրը ձեռք կբերեն ամեն ինչ, իրենց հարբեցողության տվեցին և գիշերն էին անցկացնում միանգամայն անփույթ ու անհոգ։ Իսկ [Մանիակեսը] կես գիշերին հարձակվեց այդ գինով ու անհոգ քնածների վրա ու բոլորին սրի քաշեց, ձեռք գցեց հռոմեական ամեն տեսակի բարիքներով բարձված ու լի երկու հարյուր ութսուն ուղտ, ապա սպանվածների ականջներն ու քթերը կտրելով, տարավ Կապադովկիա՝ կայսեր։ Նա փախուստի դիմելով, ապաստանել էր Փոկասի տանը, ուր և մնում էր։ Կայսրը հավանություն տալով [Մանիակեսի] արածին, նրան նշանակեց Ստորին Մարաստանի[400] կատապան[401]։

*7. [Կայսրը], հեռանալով Ասորիքից, սխոլերի դոմեստիկոս նշանակեց իր աներոջ Կոստանդնի սպասավոր Սիմեոնին, իսկ Անտիոքի կառավարիչ՝ Միսթիացի[402] Նիկետասին։ Սրանց նա կարգադրեց հնարավոր բոլոր միջոցներով փորձել գրավել Մուսարաֆի կառուցած բերդը, որի անունը Մենիկոս էր, Ասորիքը ազատելու համար Մուսարաֆի ասպատակություններից։ Բայց նրանք պետք եղածը չարեցին, պաշարումը կատարեցին ապաշնորհ կերպով. Մուսարաֆը գիշեր ժամանակ բերդից դուրս գալով կրակի տվեց բաբանները և նրանց խայտառակ կերպով այնտեղից քշեց։ Երբ դա կայսրն իմացավ, չկարողացավ խայտառակությունը տանել և իր ամենահավատարիմ սպասավորներից մեկին, պրոտոսպաթար Թեոկտիստոսին, որ այն ժամանակ մեծ հետերիարխ էր, զորավար-ավտոկրատոր նշանակելով, հռոմայեցիներից և այլազգիներից բաղկացած ծանր ուժով Ասորիքի դեմ ուղարկեց, կարգադրելով միանալ Տրիպոլսի ամիրա Իբն Ջարախին[403] և նրա հետ ավարառել արաբների շրջանները։ Այս Իբն Ջարախը ինչ-որ վիրավորանքի պատճառով, մի փոքր առաջ ապստամբություն էր բարձրացրել Եգիպտոսի ամիր ուլ մումնիի դեմ և նրա դեմ զենք բարձրացրել։ Երբ Եգիպտոսի [ամիր ուլ մումնին] իր գնդերի հրամանատար թուրք Տուսպերին մեծ ուժով Իբն Ջարախի դեմ ուղարկեց, նրան ոչնչացնելու համար, իսկ վերջինս համոզված լինելով, որ միայնակ ի վիճակի չէ ընդդիմակայելու եգիպտացիների ուժերին, դիմում է հռոմայեցիների կայսեր և զինակցություն աղերսում։ Ռոմանոսը ընդառաջ գնաց նրա աղերսանքին և ուժեղ զորքով Թեոկտիստոսին ուղարկեց, կարգադրելով զինական օգնություն ցուցաբերել Իբն Ջարախին և այդ ընթացքում գրավել Մենիկոս բերդը։ [Թեոկտիստոսը] գնաց միացավ Իբն Ջարախին և գործի անցավ։ Եգիպտացիների սպարապետ Տուսպերը անակնկալ հարձակումից ու [հակառակորդի] բազմաթվությունից սարսափած, իր երկիրը նահանջեց։ Իր հերթին Մուսարաֆն էլ չկարողացավ ընդդիմակայել թշնամիների հարձակման և լքելով Մենիկոս [բերդը] փախուստի դիմեց, բայց Տրիպոլսի սահմաններում բռնվելով, րսպանվեց։ Թեոկտիստոսի զինվորները գրավեցին և Մենիկոսը, որ նրանց հանձնվեց Մուսարաֆի եղբորորդու կողմից, և զառիթափ ժայռի վրա գտնվող մի այլ բերդ, որ Արգիրոկաստրոն է կոչվում։ Ահա այդ բոլորը կատարելուց հետո, Թեոկտիստոսը*
1030 *մտավ մայրաքաղաք, իր հետ բերելով Իբն Ջարախի որդուն՝*

Ալախին։ Ինքնակալը նրան պատրիկի աստիճանին արժանացրեց։ Այնուհետև, Անտիոքի կառավարիչ դարձած Միսթիացի Նիկետասի առաջնորդությամբ ու ուղեկցությամբ ժամանեց նաև Իբն Ջարախը, որին կայսրը սիրալիր ընդունեց, տվեց մեծ նվերներ, բազում բարերարություններ ցուցաբերեց և նրան դոհացած տուն ուղարկեց։ [Կայսրը] փրկագնմամբ գերությունից ազատեց Խիրոսֆակտեսին և հանձնեց նրա հարազատներին։

8. Պրոտոսպաթար Օրեստեսը, որին, ինչպես վերևում ասվեց, Վասիլ կայսրը Սիկիլիա էր ուղարկել, պատերազմական հարցերում լինելով անփորձ, գործերը ապաշնորհ կերպով էր վարում, այդ պատճառով Սիկիլիայի սարակինոսները համարձակ ձեռք գցելով, հանկարծակի հարձակվեցին հռոմայեցի [զինվորների] վրա, որոնք, ի դեպ, վարելով շվայտ կյանք[404], որովայնային հիվանդությամբ էին տառապում, և մեծ ջարդ տվեցին։ Դժբախտությունը դարմանելու համար կայսրը Իտալիա ուղարկեց Հելլադայում ու Մակեդոնիայում հավաքած զգալի զորք, որը սակայն զորավարի ապաշնորհության ու վախկոտության պատճառով խոսքի արժանի ոչինչ անել չկարողացավ։ Այդ 6539 թ. ինդիկտիոնի 14-րդ տարին, Պրուսիանը կամավոր կերպով վանական է դառնում, նրա մայրը Բուկելլարների [բանակաթեմում] գտնվող Մանտինիոն վանքից Թրակեսիոն [բանակաթեմն] է փոխադրվում, իսկ պատրիկ Կոստանդին Դիոգենեսն էլ, բանտից հանվելով, Ստուդիոն վանքում վանական է դառնում։ Ռոմանոս կայսրը, գնելով Տրիակոնտաֆիլլոսի տունը[405], այն վանքի վերածեց հանուն մեր տիրուհի աստվածածնի, ոչ մի ծախսի առաջ չկանգնեց. նա այդ պատրվակի տակ քիչ չտանջեց ու չչարչարեց հպատակներին քարերի և այլ նյութերի փոխադրմամբ։ Ռոմանոսը արծաթով ու ոսկով պայծառացրեց նաև Մեծ եկեղեցու, ինչպես և Վլախերնայի ամենասրբուհի աստվածածնի [տաճարի] սյուների խոյակները։ Երբ նա զբաղված էր Վլախերնայի [տաճարի] բեմի վերաշինությամբ, կախված մի հին սրբապատկեր գտավ և հրամայեց նորոգել այն։ Տեսնելով, որ պատի ծեփը փչացած է, նա հրամայեց քանդել այն և նորն անել։ Երբ հին ծեփը հանեցին, նրա տակ գտան փայտե մոմանկար մի սրբապատկեր, որի վրա պատկերված էր աստվածածինը՝ մեր տեր աստծուն կրծքին սեղմած։ Նա Կոպրոնիմոսի[406] ժամանակներից մինչև օրս անաղարտ էր մնացել, հակառակ որ անցել էր երեք հարյուր տարի։

9. 6540 թվականի սեպտեմբեր ամսին, ինդիկտիոնի 15-րդ
տարին բազում նվերներով Ռոմանոս կայսեր մոտ եկավ Հալեպի
1031 [ամիրայի] որդի Ամերը, խնդրելով նորոգել հաշտության պայ-
մանագիրը, խոստանալով վճարել անցյալում հաստատված
հարկերը։ Այդ խնդրով [Հալեպ] է ուղարկվում պրոտոսպաթար
Թեոփիլակտոս Աթենացին, որը պայմանագիրը կնքեց և հալեպ-
ցիների հետ համագործակցություն հաստատեց։ Իսկ թագուհի
Զոեն սպատվական խաչի վերացումից [խաչվերացից] հետո
հանկարծակի գնաց Պետրիոն[407] և իր քրոջ Թեոդորային վանա-
կան խուզեց, ասելով, որ այլ կերպ հնարավոր չէ տանել նրա
ոտնձգությունները ու գայթակղությունները։ Ռոմանոս կայսրը
1030 իր զարմուհուն մեծ օժիտով կնության տվեց Մեծ Հայքի էքսու-
սիարխին[408]։ Կայսրը վճռելով անհապաղ երկրորդ անգամ ներ-
խուժել Ասորիք, դուրս եկավ Մեսանակտա։ Իր այդտեղ լինելու
ժամանակ, Թեոփանես Թեսաղոնիկեցին թագուհի Զոեին տեղե-
կացնում է, թե Կոստանդին Դիոգենեսը, համաձայնության գալով
իր քրոջ Թեոդորայի հետ, մտադիր է փախչել Իլլիրիայի [բանա-
կաթեմը], որ այդ մասին տեղյակ է Դյուրախիոնի մետրոպո-
լիտն ու Պերիթեորիոնի եպիսկոպոսը։ Ե՛վ եպիսկոպոսները, և՛
Դիոգենեսը իսկույն ձերբակալվում են։ Երբ պրեպոզիտոս Հով-
հաննեսը (ապագա կայսր Միքայելի եղբայրը, որ այնուհետև Օր-
ֆանոտրոֆոս[409] դարձավ) Վլախերնայի պալատում քննության
էր ենթարկում Կոստանդնին, նա իրեն պարսպից ցած դցեց և
սպանվեց։ Նրան նետեցին ինքնասպանների գերեզմանոցը[410],
իսկ եպիսկոպոսներին ուղարկեցին կայսեր մոտ Մեսանակտա,
որտեղ և նրանք ազատ արձակվեցին։

10. Հուլիս ամսի 28-ին, [շաբաթվա] վեցերորդ օրը, գիշեր-վա 2-րդ ժամին, աստղի թափում եղավ՝ հարավից հյուսիս. Նա ողջ երկիրը լուսավորեց։ Փոքր անց լուր է հասնում հռոմայեցիների գլխին եկած դժբախտությունների մասին. թե արաբները ավարառեցին Միջագետքը՝ մինչև Մելիտենե, պածինակները անցնելով Իստրոսը, Մյուսիան տակնուվրա արեցին, իսկ սարակինոսներն էլ հարձակվեցին Իլլիրիայի [բանակաթեմի] ծովափնյա շրջանների վրա՝ մինչև Կերկիրա, որը և կրակի տվեցին։ Թեև մյուսներն անվնաս տուն վերադարձան, սակայն սարակինոսները ռաուսցիների[411] և Նավպլիոնի զորավար պատրիկ Նիկեփոր Կարանտենոսի կողմից ջարդ ստացան, պարտություն կրելով կորցրին իրենց նավերի մեծ մասը։ Իսկ ովքեր էլ որ պըր-

ծան, սպանեցին իրենց ձեռքն անցան հռոմայեցի ռազմագերիներին։ Վերադարձի ճանապարհին, սակայն, նրանք նավաբեկ եղան և ոչնչացան Սիկիլիական ծովում։

11. Այդ տարի սով ու համաճարակ էլ ներխուժեց՝ Կապադովկիա, Պափլագոնիա, Արմենիակների [բանակաթեմ] և Հոնորիաս, այն աստիճան, որ բանակաթեմերի բնակիչներն անգամ իրենց հայրենի օջախները թողած վերաբնակեցում էին պահանջում։ Կայսրը Մեսանակաայից մայրաքաղաք վերադառնալիս հանդիպելով նրանց և իմանալով նրանց տեղաշարժի պատճառը, ստիպեց տուն վերադառնալ, օժանդակություն ցուցաբերելով՝ դրամով ու պարենով։ Անկյուրայի եկեղեցու այն ժամանակվա ղեկավար Միքայելը առաքինի գործեր կատարեց, ոչինչ չխնայեց սովի ու համաճարակի հետևանքները վերացնելու համար։

12. 6540 թ. օգոստոս ամսի 13-ին, կիրակի օրը, գիշերվա առաջին ժամին ուժեղ երկրաշարժ եղավ։ Կայսրը մտավ մայրաքաղաք և իր նախկին կնոջ՝ Հելենեի մահվան առթիվ նրա համար առատ հոգեդրամ բաժանեց։ Նույն տարվա փետրվար ամսի 28-ին մի աստղ աղմուկ թնդյունով հյուսիսից հարավ շարժվեց։ Նա [երկնակամարում] երևաց մինչև մարտի 15-ը, նրա վրա աղեղ կար։ Իսկ մարտի 6-ին, երեքշաբթի օրը երկրաշարժ եղավ։

13. Նույն տարին Աֆրիկայի սարակինոսների հարձակում էլ եղավ. հազար նավ, տասը հազար մարտիկներով բազում կղզիներ ու ծովափնյա շրջաններ ավերեցին։ Նրանց հետ ինչ-որ տեղում բախվեց Նիկեփոր Կարանտենոսը և նրանց պարտության մատնեց, հինգ հարյուր սարակինոսների շղթայակապ կայսեր ուղարկեց։ Նույն տարին Գուդելիոս Մանիակեսի որդի պրոտոսպաթար Գեորգիոս Մանիակեսը, որ Մերձեփրատյան քաղաքների զորավարն էր և հաստատված էր Սամոսատ քաղաքում, փորձեց գրավել Օսրոենի Եդեսիա քաղաքը։ Այն գտնվում էր թուրք Սալամանի ձեռքում, նրան քաղաքի կառավարիչ էր նշանակել Մարտիրուպոլսի, այն է Մայաֆարիկինի ամիրան։ Մանիակեսը նվերներով, խոստումներով ու պատիվներով կաշառեց Սալամանին, որը մի խավար գիշեր քաղաքը նրան հանձնեց։ Մա-
1032 նիակեսը, տիրանալով երեք շատ ամուր աշտարակների, իրեն օղակի մեջ առնողների դեմ քաջաբար պաշտպանվում էր և դրսից օգնություն աղերսում։ Մայաֆարիկինի ամիրա Աբու Մրրվանը[412], իմանալով քաղաքի առման մասին, մեծ զորքով

*շտապ տեղ հասավ և ձեռնարկեց աշտարակները պաշարելու գործին։ Գեորգիոսը քաջաբար նրան ետ մղեց և [Աբու Մրվանը], չգիտենալով ինչ անել, ավերեց ամենագեղեցիկ ապարանքները, ոչնչացրեց քաղաքի զարդերը, այդ թվում և Մեծ եկեղեցու[413], իսկ լավագույն [իրերն էլ] ուղտերի վրա բարձելով, քաղաքի մնացած մասն էլ կրակի տալով, վերադարձավ Մարտիրուպոլիս։ Մանիակեսը հարմար առիթ ձեռք գցելով, գրավեց քաղաքի մեջտեղում, ժայռոտ բլրի վրա գտնվող բերդը, դրսից օգնություն աղերսելով, ապահով կերպով տիրացավ քաղաքին[414]։ [Մանիակեսը Եդեսիայում] գտավ տիրոջ Հիսուս Քրիստոսի՝ Աբգարին ուղղված ինքնագիր նամակը, որը կայսեր ուղարկեց Բյուզանդիոն[415]։*

*14. Եգիպտոսի [ամիրապետ] Ազիզը[416] գազազած, քրիստոնյաների գլխին անհամար փորձություններ բերեց, ավերակ դարձրեց մեր տիրոջ՝ Փրկիչ Հիսուս Քրիստոսի տաճարը Երուսաղեմում, իսկ երբ խայտառակ կերպով հոգին ավանդեց, նրա որդին, որ ծնվել էր ինչ-որ հռոմայեցի գերի տարված կնոջից, ցանկացողներին թույլ տվեց տաճարը վերակառուցել։ Կայսրը մարդիկ ուղարկեց և բարեպաշտորեն ջանաց կառուցել տաճարը, բայց մահը վրա հասավ, իսկ գործը ավարտին հասցրեց իրեն հաջորդող Միքայել [կայսրը]։*

*15. Մագիստրոս Վասիլ Սկլերոսը, կայսեր քրոջ ամուսինը, որ Կոստանդնի կողմից կուրացվել էր, հեղհեղուկ ու փոփոխական մտածողության տեր մի մարդ, հակառակ, որ Ռոմանոսի կողմից ստացել էր մագիստրոսի պատվաստիճան և արժանացել նրա բազում բարերարություններին, նրա դեմ դավադրություն էր նյութում։ Երբ այդ բանը բացահայտվեց, նա իր կնոջ հետ քաղաքից արտաքսվեց։*

*16. Եդեսիայից Մանիակեսը կայսեր ուղարկեց տարեկան հարկը՝ հիսուն լիտր [ոսկի][417]։ Տրիպոլսի ամիրա Իբն Ջարախը, եգիպտացիներից պարտություն կրելով, փախավ եկավ մայրաքաղաք։ Կայսրը մեծ գործով նրան հետերիարխ Թեոկտիստոսի հետ դարձյալ Ասորիք ուղարկեց, իսկ աբիդոսցի սլրոտոսպաթար Տենեսին նավատորմիղով Եգիպտոս, Նեղոսի գետաբերանը, և հենց Ալեքսանդրիան, հնարավորին չափ ավերելու։ Նա ուղիղ նավեց, հասավ ընդհուպ մինչև Ալեքսանդրիա և գրավելով բազում նավեր ու ավար, վերադարձավ անվնաս։ Բարելոնի[418] մոտ գտնվող Բեռլերի կոչվող բերդի տեր սարակինոս Ալիմը բերդը*

Ռոմանոս կայսեր հանձնեց, հուսալով դրա դիմաց նրանից պատրիկություն ստանալ և բազում այլ պարգևներ։ Այդ գործով նա կայսեր մոտ ուղարկեց իր որդուն։ Բերդը ստացավ պատրիկ Նիկոլայոս Բուլղարը, մականունը՝ Խրիսելիոս[419], բայց սարակինոսի որդին, դալով Բյուզանդիոն և կայսեր հիվանդության պատճառով ոչ մի ուշադրության չարժանանալով, զայրացած ետ վերադարձավ և հորը համոզեց ետ վերցնել սեփական բերդը։ [Ալիմը] սահմանակից պարսիկների հետ համաձայնության գալով, և օգտվելով [բերդին] տիրացած Խրիսելիոսի անփութությունից ու անհոգությունից, գիշեր ժամանակ գրավեց բերդը և կոտորեց հռոմայեցի վեց հազար ռազմիկների[420]։ Փոքր անց այդտեղի կառավարիչ նշանակվեց Նիկետաս Պեգոնիտեսը, որը ռուսներից ու հռոմեական այլ ուժերից բաղկացած զորքով պաշարումից հետո գրոհով գրավեց բերդը, իսկ Ալիմին իր որդու հետ մահապատժի ենթարկեց[421]։ Այն ժամանակ Գեորգիոս Աբազգի[422] կին Ալդեն, որ ծագումով ալան էր[423], կայսեր կողմն անցավ, նրան հանձնելով ամրագույն Անակուֆիա[424] բերդը։ Կայսրը նրա որդի Դեմետրիոսին[425] շնորհեց մագիստրոսի պատվաստիճանը։ Կարանտենոսը դարձյալ հաղթանակ տարավ, [այս անգամ] ավարառության համար դուրս եկած սարակինոսների դեմ և նրանցից վեց հարյուր հոգու շղթայակապ կայսեր ուղարկեց։

1034 17. 6542 թվին[426], փետրվար ամսի 17-ին երկրաշարժից տուժեցին Ասորիքի քաղաքները։ Օրեստեսի պաշտոնանկ արվելու առնչությամբ որպես Իտալիայի հետևակի հրամանատար ուղարկվեց Լևոնը, մականունը Օպոս, իսկ նավատորմիղի հրամանատար՝ Վասիլ կայսեր սենեկապաններից մեկը։ Այն պատճառով, որ մորեխը երկար ժամանակ ավերում էր արևելյան բանակաթեմերը, նրանց բնակիչներն ստիպված էին վաճառել իրենց երեխաներին և վերաբնակվել Թրակիայում։ Կայսրը, յուրաքանչյուրին երեքական դահեկան տալով, նախապատրաստեց նրանց տուն վերադառնալը, երբ մորեխը ուժեղ քամուց ոչնչացավ Հելլեսպոնտոսի ծովում և ափ դուրս գալով, ծածկեց ծովափնյա ավազը։ Կայսրը սարքեց քաղաքին ջուր մատակարարող և երկրաշարժից տուժած ջրատարը, ջրամբարտակները, [վերականգնեց] ուրկանոցները, որբանոցները և բոլոր հյուրանոցները, մի խոսքով ձեռնարկեց ամեն տեսակի բարի գործեր։ Նա հիվանդացավ տևական ախտով, նրա գլխի մազերն ու մո-

*բուքը թափվեց։ Ասում են, թե նրա գլուխը Հովհաննեսը կերավ,
որն այնուհետև Օրֆանոտրոֆոս դարձավ։ Այս Հովհաննեսը ծա-
ռայում էր Ռոմանոսին նախքան նրա կայսր դառնալը, և երբ նա
իշխանության գլուխն անցավ, մեծ ազդեցություն ձեռք բերեց։
Նա ուներ եղբայրներ՝ Միքայելին, Նիկետասին, Կոստանդնին և
Գեորգին։ Հիշյալ Հովհաննեսը, ապա Կոստանդինն ու Գեորգը
ներքինիներ էին, խաբեբա մարդիկ։ Նիկետասը ներքինի չէր,
նրա աղվամազը նոր էր բուսնում, իսկ Միքայելն արդեն տղա-
մարդ էր, շատ գեղեցիկ դիմագծերով։ Երկուսն էլ լումայափո-
խությամբ էին զբաղվում և դրամ կեղծում։ Բոլորն էլ Հովհան-
նեսի միջոցով կայսեր մտերիմները դարձան, իսկ բախտը, որ
վկայում էր սրանց ապագայում իշխանության հասնելու մասին,
հզորության գագաթնակետին բարձրացրեց։ Նրանք տարբեր
պաշտոններ ստացան, իսկ Միքայելին կայսրը նշանակեց պան-
թեոնի[427] արխոնտ։ Ահա սրա նկատմամբ թագուհին սատանա-
յական ու մոլեգին սեր տածեց, նրա հետ գաղտնի հանդիպում-
ներ ունեցավ ու ծածուկ խառնակվեց նրան։ Այս բանը նկատի
ունենալով է, որ մարդիկ ասում են, թե կայսեր [առողջությու-
նը] քայքայվեց դանդաղ գործող թույներով, նա չարաչար տա-
ռապեց և որ կայսրուհին հարմար առիթ էր որոնում առանց
կասկածներ հարուցելու կայսեր մեջտեղից վերացնել, իսկ Մի-
քայելին կայսերական գահին նստեցնել։ Դրա համար էլ նա, ինչ-
պես ասում են, նրան թունավորեց ոչ թե արագ, այլ կամաց
կամաց գործող թույնով, դանդաղ սպանող։ Եվ նա քայքայվեց,
մնացած կյանքն ապրեց թշվառ ու ցավալից, անկողնին գամ-
ված, ամբողջ հոգով մահ աղերսելով։ Նա ապրեց մինչև ինդիկ-
1034 տիոնի 2-րդ տարին, 6542 թվականի ապրիլ ամսի 11-ը։ Ավագ
հինգշաբթի օրը նա սենատորների հռոգը[428] բաժանեց, ապա ցան-
կություն հայտնեց լոգանք ընդունելու մեծ պալատի բաղանիքում,
որի ավազանում Միքայելի մարդիկ նրան ջրահեղձ արեցին[429]։
Նա թագավորեց 5 տարի և 6 ամիս։ Գիշերը [Քրիստոսի] սուրբ
չարչարանքների երգասացության պահին պատրիարք Ալեքսիո-
սին լուր բերեցին, իբրև թե Ռոմանոս կայսրը իրեն կանչում է
արքունիք։ Բարձրանալով այնտեղ նա Ռոմանոս արքային գտավ
մեռած։ Խրիստոտրիկլինը զարդարեցին, Զոեն բազմեց գահին,
ներս բերեց Միքայելին, իսկ պատրիարքին էլ ստիպեց կատա-
րել պսակի արարողությունը։ Պատրիարքը այդ խոսքի վրա
ապշած, պասլանձվեց և չէր համարձակվում նրանց պսակել։*

*Բայց Հովհաննեսն ու Զոեն պարիարքին հիսուն լիտր ոսկի տալով, հիսուն էլ կղերին, համոզեցին կատարել իրենց պսակի արարողությունը։*

# ՄԻՔԱՅԵԼ ՊԱՓԼԱԳՈՆԱՑԻ

## [12 ԱՊՐԻԼ 1034—10 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1041 ԹԹ.]

*1. Ռոմանոս կայսրն ահա այդպես սպանվելով հողին հանձնըվեց՝ իր կողմից նորոգված Պերիբլեպտոս վանքում[430] հենց ավագ ուրբաթ օրը։*

*2. Զոեն Միքայելին կայսերական գահին նստեցնելով կարծում էր, որ ամուսնու և կայսեր փոխարեն մի ծառա ու սպասավոր կունենա։ Նա իր հոր ներքինիներին պալատ մտցնելով, ավելի համարձակ լծվեց գործի։ Բայց ամեն ինչ իր համար բացահայտորեն հակառակ ընթացքն ունեցավ, քանզի կայսեր եղբայր Հովհաննեսը, մի գործունյա և վճռական մարդ, պալատ մտնելուն պես և իր եղբոր մասին երկյուղ կրելով, որ հանկարծ նրա գլխին փորձանք չգա (Ռոմանոսն իր համար դաս էր), կայսրուհու ներքինիներին պալատից դուրս է հանում, հեռացնում նաև նրա ամենահավատարիմ աղախիններին, իր ազգական կանանց նշանակում թագուհու պահակ և հսկող։ Ոչ մի բան, փոքր թե մեծ, չէր կատարվում առանց [Հովհաննեսի] համաձայնության։ Նա թագուհուն թույլ չէր տալիս զբոսնելու, բաղնիք էր գնում միայն նրա թույլտվությամբ, նա բացարձակապես զրկված էր ամեն տեսակի զվարճություններից։ Ահա բոլոր ներքին գործերը կարգի բերելով, նա աշխարհով մեկ գրություններ է ուղարկում, տեղեկացնելով Ռոմանոսի մահվան, Միքայելի՝ դեռ [Ռոմանոսի] կենդանության օրոք և նրա կամքով գահ բարձրանալու և Միքայելի թագուհի Զոեի հետ ամուսնանալու մասին։ Բոլորը հպատակություն հայտնեցին [Միքայելին] և նրան կայսր ներբողեցին, բացի պատրիկ Կոստանդին Դալասսենոսից, որ իր տանն[431] էր մնում։ Նա այդ լուրը վատ ընդունեց, հավատ չընծայեց դրան, մնաց ապշած, թե ինչպես եղավ, որ բազում, փառավոր, հայտնի ընտանիքներից սերող հոյակապ մարդկանց առկայության դեպքում ինչ-որ հասարակ ու չնչին արժեք ունե-*

ցող մեկը մյուս բոլորից ավելի նախընտրելի է համարվել և հռչա-
կվել տեր ու կայսր։ Հովհաննեսը իմանալով այդ մասին, հաս-
կանալի է, մտահոգության ու իրարանցման մեջ ընկավ և ըս-
կըսեց մտածել ու խորհել այդ մարդուն ևս իր ցանցը գցելու մա-
սին։ Կոստանդին Դալասսենոսի մոտ է ուղարկվում ներքինի-
ներից մեկը՝ Էրգոդոտես կոչվածը, նման գործերում փորձառու
մի մարդ, որ առաջադրանք ստացավ երդումներ տալով մարդուն
կայսեր մոտ բերել։ [Էրգոդոտեսն] ահա գնում է Դալասսենոսի
մոտ, իսկ Հովհաննեսը սկսում է սիրաշահել սենատին ու ժողո-
վրդին. գլխավոր սենատորների աստիճանները բարձրացնելով,
հասարակ ժողովրդին էլ նվերներ ու շնորհներ բաժանելով, նա
շատերի համակրանքը շահեց, հպատակ ժողովրդին մեկընդմիշտ
իր կողմը թեքեց։ Թե կատարվածը աստծուն հաճելի չէր պարզ ի
պարզո երևաց հետևյալ կանխանշաններից. ավագ կիրակի օրվա
11-րդ ժամին սարսափելի, ուժեղ կարկուտ տեղաց, այն աստի-
ճան, որ ջարդ ու փշուր եղան ոչ միայն պտղատու և ոչ պտղատու
ծառերը, այլ փուլ եկան նաև տներ ու տաճարներ, գետնին հա-
վասարվեցին ցանքսերն ու այգիները, որով այդ տարի ամեն տե-
սակի երկրագործական մթերքների անբերություն եղավ։ Աստղի
թափում էլ եղավ՝ զատկի հաջորդ կիրակի օրը՝ գիշերվա երրորդ
ժամին։ Նա իր պայծառությամբ այն աստիճան խավարեցրեց
մնացած բոլոր աստղերը, որ շատերին թվաց, թե արև ծագեց։
Կայսրն էլ այսահար եղավ։ Նրա մերձավորները հիվանդությանը
ավելի վերամբարձ անուն տալով, մոլեգնություն անվանեցին։
10—XII Նա այդպես [հիվանդ] մնաց մինչև իր կյանքի վերջը, բուժում
—1041 չստացավ ոչ աստվածային զորությունից, ոչ էլ բժիշկներից, այլ
եղկելիորեն քարշ եկավ ու տառապեց[432]։

3. Էրգոդոտեսը ժամանեց Դալասսենոսի մոտ, բայց վերջինս
չուզեց հավատալ երդումներին և նրա հետ Բյուզանդիոն գնալ։
Նա իր ամենահավատարիմ մարդկանցից ոմանց ուղարկեց՝ ա-
վելի մեծ երդումներ պահանջելով, այն մասին, որ իրեն ոչ մի
վատ բան չի պատահի, որից հետո խոստացավ գնալ։ [Դալաս-
սենոսի] մոտ ուղարկվեց ներքինի Կոստանդին Ֆագիցեսը, պափ-
լագոնացի, կայսեր մտերիմը. նա իր հետ տարավ սուրբ խաչա-
փայտը, սուրբ վարշամակը, մեր տիրոջ ու Փրկչի Հիսուս Քրիս-
տոսի՝ Աբգարին ուղարկած ինքնագիր նամակը և ամենասրբուհի
աստվածածնի պատկերը։ Ահա նա եկավ, Կոստանդնին փոխա-
դարձաբար երդումներ տվեց ու ստացավ և նրա հետ եկավ Բյու-

զանդիոն։ Կայսրը նրան սիրալիր ընդունեց, շնորհեց անթիպատոսի պատվաստիճան, պարգևեց մեծագույն ընծաներ և թույլ տվեց խաղաղ ու աներկյուղ ապրել Կյուրոսում գտնվող իր տանը[433]։

4. Այդ տարին պատմելու արժանի մի այլ բան էլ տեղի ունեցավ։ Թրակեսիոն բանակաթեմում ձմեռելու ցրված վարյագներից մեկը անմարդ մի վայրում տեղացի մի կնոջ հանդիպելով, փորձեց տիրանալ նրան։ Երբ իր նպատակին չհասավ, դիմեց բռնության, կինը, սակայն, քաշելով նրա դաշույնը, խրեց այն վարյագի սրտին և բարբարոսին տեղն ու տեղը սպանեց։ Երբ կատարվածի լուրը շրջակայքում տարածվեց, վարյագները հավաքվեցին, կնոջ գլխին պսակ դրեցին, բռնաբարության փորձ կատարողի ողջ ունեցվածքը տվեցին այդ կնոջ, իսկ [սպանված վարյագին] էլ անթաղ թողեցին՝ ինքնասպանների վերաբերյալ օրենքի համաձայն։ Ինչ վերաբերում է Հելլեսպոնտոսի ափի ավազներում ոչնչացած մորեխի երամներին, որոնց մասին վերևում խոսք եղավ, նրանք հանկարծակի երևացին և դարձյալ ողողեցին Հելլեսպոնտոսի ծովափը և ամբողջ մի եռամյակ ավերեցին Թրակեսիոն բանակաթեմը։ Գալով Պերգամոն, նրանք ոչնչացան։ Սրանց վերաբերյալ եպիսկոպոսի սպասավորներից մեկը տեսիլք էր տեսել, ոչ թե քնի մեջ, այլ արթուն ժամանակ[434]։ Նրան սպիտակ հանդերձներ հագած մի պայծառադեմ ներքինի երևաց, որը հրամայեց քանդել իր առջև գտնվող երեք պարկերից մեկի կապը և դատարկել այն, նաև երկրորդի, և վերջապես՝ երրորդի։ Մարդը հրամանի համաձայն էլ կատարեց. առաջին պարկի միջից դուրս ժայթքեցին օձեր, իժեր և կարիճներ, երկրորդի միջից՝ սև թունավոր գորտեր, ասպիդներ, քարբեր, եղջյուրավոր օձեր և այլ թունավոր [սողուններ], իսկ երրորդի միջից՝ բզեզներ, մժեղներ և այլ, ետևում խայթոց ունեցող [միջատներ]։ Տեսածի վրա նա ապշեց, իսկ ուրախադեմ այդ մարդը, մոտենալով իրեն, ասաց. «սրանք եկել են և գալու են ձեր գլխին, քանզի դուք ուրացել եք աստծու պատվիրանները, ինչպես և այն անսուրբ գործի համար, ինչ կատարվեց Ռոմանոս կայսեր և նրա մահիճի հետ»։ Այդ բանն էլ ահա այդտեղ եղավ։

5. Միքայել կայսրը, տառապելով այսահարության ախտից, ի վիճակի չէր զբաղվելու պետական գործերով, նա անունով էր կայսր, իսկ ողջ իշխանությունը՝ և՛ քաղաքական, և՛ ռազմական, գտնվում էր Հովհաննեսի ձեռքում։ Սա իր եղբայր Նիկետասին իսկույն նշանակում է Անտիոքի դուքս, անտիոքացիք սակայն

չթողեցին, որ նա քաղաք մտնի, քանզի մի փոքր առաջ Սալիբաս անունով մեկը, որ իրենց վրա հարկահավաք էր նշանակված և կեղեքում էր մարդկանց, սպանվել էր Անտիոքի բնակչության կողմից։ Ահա վախենալով, որ այս սպանության համար իրենց գլխին կարող է փորձանք գա, Նիկետասին չթողեցին Անտիոք մտնել։ Երբ Նիկետասը նրանց երդումներով հավաստիացրեց, թե ինքը նրանց ներում կշնորհի, որ Սալիբասի սպանության համար ոչ ոք չի տուժի, նրանք թույլ տվեցին նրան մտնել։ [Նիկետասը], սակայն, ոտք դնելով [քաղաք] և իրերի տերը դառնալով, իր տված երդումների մասին քիչ, գուցե ամենևին էլ չմտածեց և մոտ 100 հոգու մահապատժի ենթարկեց՝ գլխատմամբ ու ցցահան անելով, [քաղաքի] տասնյակ նշանավոր, մեծահարուստ անվանի ընտանիքներից սերող մարդկանց, որոնցից ամենանշանավորը պատրիկ Էլպիդիոսն էր, և շղթայակապ Բյուզանդիոն ուղարկեց, իր եղբոր՝ Հովհաննեսին գրելով, թե իրեն չէին թողնում քաղաք մտնել ոչ թե Սալիբասի սպանության պատճառով, այլ Դալասսենոսի նկատմամբ [իրենց] տածած սիրո։ Այս բանը ավելի բոնկեց ու բորբոքեց Հովհաննեսի՝ Դալասսենոսի հանդեպ արդեն ունեցած կասկածը։ [Դալասսենոսին] իսկույն կայսեր
1034 մոտ են բերում և ինդիկտիոնի երկրորդ տարվա օգոստոս ամսի երեքին արգելափակում Պլատե կղզում։ Մի ինչ-որ աշտարակում է բանտարկվում նաև նրա դստեր ամուսին Կոստանդին Դուկասը, այն պատճառով, որ նա դատապարտում էր անօրինությունը, ընդդատում երդմնազանցությունը և աստծուն վկայության կոչում։ Նրա պատճառով տուժեցին երեք հոգի էլ՝ Փոքր Ասիայից սերող ազնվական ու հարուստ մարդիկ՝ Գուդելիսը, Բայանոսը և Պրովատաս կոչվողը, որոնց ունեցվածքը բռնագրավվեց ու հանձնըվեց արքաեղբայր Կոստանդինին։ Այդ ժամանակները քաղաքից վտարվեց և պրոտոնոտար Սիմեոնը, Կոստանդին կայսեր սպասավորներից մեկը, այն պատճառով, որ նա հավանություն չէր տալիս տեղի ունեցածներին, դատապարտում էր Դալասսենոսի անձի նկատմամբ կատարված անօրինությունը, արքունիքի թույլ տված երդմնազանցությունը։ Նա եկավ Օլիմպոս[435] և հրաժարվելով աշխարհիկ կյանքից, իր կողմից նորոգված վանքում վանական դարձավ։

6. Նույն տարին երկրաշարժ էլ եղավ, որի ժամանակ տուժեց Երուսաղեմը, եկեղեցիների և տների փլատակների տակ բազում մարդիկ սպանվեցին։ Երկիրը շուրջ քառասուն օր ցրնց-

վում էր։ Իսկ 6543 թ. սեպտեմբեր ամսին, արևելքում հրեղեն սյուն էր երևում, գլուխը դեպի հարավ թեքած։ Այդ օրերին սաբակինոսները գրավեցին Մյուրան, իսկ բերիացիք, որ և հալեպցիք, վռնդեցին կայսեր կողմից իրենց վրա նշանակված կառավարչին։ Իսկ աբազգ Բագարատը[436] Ռոմանոս կայսեր [սպանության] վրեժն առնելու պատրվակի տակ (կայսրը իր կնոջ հորեղբայրն էր) վերացրեց հռոմայեցիների հետ ունեցած հաշտությունը և վերագրավեց անցյալում հռոմայեցիներին հանձնված բոլոր բերդերն ու ամրոցները։ Պածինակներն էլ, անցնելով Իստրոս գետը, ամբողջությամբ ավարառեցին Մյուսիան մինչև Թեսաղոնիկե, իսկ աֆրիկացիների նավերն էլ սաստիկ ավերեցին Կյուկլադները։ Այս բոլորն ամենևին էլ Հովհաննեսի փույթը չէր, նրա միակ ու մշտական մտահոգությունը Դալասսենոսին ապահով հսկելն էր, այն, որ իրենից թաքուն չմնան նրա մեքենայությունները, դրա համար Պլատե կղզուց նրան փոխադրում ու բանտարկում է ապահով մի աշտարակում, նրա վրա կարգելով ոչ շարքային պահակների։ Նա Եդեսիայից տեղափոխում է պատրիկ Գեորգիոս Մանիակեսին, նրան նշանակում Վերին Մարաստանի՝ այն է Վասպուրականի կառավարիչ, իսկ Եդեսիայի՝ Լևոն Լեպենդրինոսին[437]։ Օրֆանոտրոֆոսը տառապում էր բերանում դուրս եկած խոցից, բոլոր բժշկական միջոցները անկարող դուրս եկան և նա երազում տեսավ նշանավոր սքանչելագործ Նիկողայոսին, որն իրեն հրամայում է փութանակի Մյուրա գնալ, քանզի նա այդտեղ է գտնելու ապաքինումը։ [Օրֆանոտրոֆոսը] անհապաղ տեղ հասավ, մյուռոն և այլ թանկարժեք ընծաներ տվեց մեծ [սրբի] սուրբ տաճարին, մյուրոնցիների քաղաքը շրջապատեց ամենաամուր պարսպով և ապաքինում գտնելով, առողջ ետ վերադարձավ։

7. Ասորիքի Անտիոք [քաղաքի] զորավար Նիկետասի վախճանվելու առթիվ նրան փոխարինեց մյուս եղբայրը՝ Կոստանդինը[438], իսկ վերջինը՝ Գեորգիոսը դարձավ պրոտովեստիարիոս, քանզի, ինչպես ասացինք, Սիմեոնը վանականի սքեմն էր հագել։ Կայսրը երկարամյա բանտարկությունից ազատ արձակեց անտիոքացիներին, իսկ իր քրոջ՝ Մարիայի որդի Միքայելին բարձրացրեց կեսարի փառավոր աստիճանին։ Նա անվերջ ողբում էր Ռոմանոս կայսեր նկատմամբ իր գործած մեղքի համար, ուզում էր աստծուն իր նկատմամբ ողորմած դարձնել՝ բարեգործություններով, աղքատներին դրամ բաժանելով, նոր վանքեր կա-

ռուցելով և նրանցում վանականներ բնակեցնելով, գործելով այլ, աստվածահաճո արարքներ։ Այդ արածներն, իհարկե, օգտակար կլինեին, եթե նա նաև հրաժարվեր թագավորությունից, որի սիրույն կատարվեցին այդպիսի ոճիրներ, վտարեր անառակ կնոջ և ներքուստ ողբար գործած մեղքը։ Սրանցից և ոչ մեկը չկատարեց, ընդհակառակը, նա շարունակում էր կենակցել այդ կնոջ հետ, ամուր բռնել թագավորության սանձերը, իսկ բարերարություններ էր գործում ի հաշիվ պետական ու հասարակական միջոցների, և այդ բոլորից հետո նա հույս ուներ քավության արժանանալ, կարծում էր, թե աստված անմիտ է ու անարդար, նա ուրիշի դրամով էր ուզում ապաշխարություն գնած լինել։

1035 8. 6543 թվականի մայիս ամսին, ինդիկտիոնի 3-րդ տարին աֆրիկացիներ ու սիկիլիացիներ ասպատակեցին Կյուկլադներն ու Թրակեսիոն [բանակաթեմի] ափերը, բայց ի վերջո այդտեղ պահապանների կողմից պարտություն կրեցին. Նրանցից հինգ հարյուր հոգի գերի տարվեցին կայսեր, իսկ մնացած բոլորը ծովափում ցցահան արվեցին՝ Ատրամյուտիոնից մինչև Ստրոբիլոս։ Հովհաննեսը Գեորգիոս Պրովատասին[439] որպես դեսպան Սիկիլիա է ուղարկում նրա ամիրայի հետ հաշտության մասին բանակցություններ վարելու։ Նա գնաց և ճարտարորեն բանակցություններ վարեց, ամիրայի որդուն առնելով, մայրաքաղաք բերեց։ Այդ տարի Բուկելլարների բանակաթեմում երկրաշարժի հետևանքով գետնի վրա ճեղքվածքներ առաջացան, որոնց մեջ կուլ գնաց ամբողջ հինգ գյուղ։ Կոստանդին կայսեր ներքինի պրոեդրոս Նիկեփորը, որ այնտեղ էր գտնվում, քիչ էր մնացել փորձանքի հանդիպեր և անսպասելիորեն պրծնելով, Ստուդիոնի վանքում վանական դարձավ։

9. Սիկիլիայի ամիրա Աբուլաֆար Մոհամմեդը, որ կայսեր հետ դաշնակցություն էր կնքել, մագիստրոսի պատվաստիճանն ստացավ։ Նեղվելով իր դեմ ապստամբություն բարձրացրած իր եղբայր Աբու Խաֆսից, նա դիմեց կայսեր օգնության։ Զինական ուժով Լոնգիբարդիա է ուղարկվում որպես զորավար-ավտոկրատոր պատրիկ Գեորգիոս Մանիակեսը, նրա հետ նաև ծովակալ պատրիկ Ստեփանոսը՝ կայսեր քրոջ ամուսինը։ Երբ աֆրիկացի ու սիկիլիացի սարակինոսները բազում նավերով հարձակում գործեցին կղզիների ու ծովափնյա շրջանների վրա, Կիբիրեոտների [բանակաթեմի] զորավար Կոստանդին Խայեն[440] տեղական նավատորմիղով բախվեց նրանց, գլխովին պարտության մատ-

նեց, հինգ հարյուր ռազմագերիների կայսեր ուղարկեց, իսկ մնացածներին ծովահեղձ արեց։ Սարսափելի սառնամանիքի պատճառով Իստրոս գետը սառցակալեց և պածինակները նրա վրայով անցնելով, մեծապես վնասեցին Մյուսիային, Թրակիային՝ մինչև Մակեդոնիա։ Թրակեսիոն [բանակաթեմի] վրա դարձյալ մորեխը խուժեց և բերքը փչացրեց։

1036 10. 6544 թվականին, ինդիկտիոնի 4-րդ տարում, գարնանը, պածինակները հռոմայեցիների վրա երիցս ներխուժեցին և պատահածը կատարելապես ավերեցին, բռնած տղամարդուն կոտորեցին, գերի ընկածներին աննկարագրելի տանջանքների ենթարկեցին։ Նրանք գերի վերցրին նաև հինգ զորավարների՝ Հովհաննես Դերմոկայիտեսին, Վարդաս Պիցեսին[441], Լևոն Խալկուցեսին, Կոստանդին Պտերոտոսին և Միքայել Ստրավոտրիխարեսին։ Վախճանվեցին ռուսաց իշխաններ Մստիսլավն ու Յարոսլավը, ռուսաց իշխան ընտրվեց վախճանվածների ազգական Զինոսլավը[442]։ Սերբիան, որ Ռոմանոս կայսեր մահից հետո ապստամբել էր, դարձյալ հանդարտվեց։ Վախճանվեց Եգիպտոսի ամերմումնի Ամերը, իսկ նրա կինը, որ քրիստոնյա էր, իր որդուն կայսեր մոտ դեսպանության ուղարկեց՝ խաղաղության հարցով։ Կայսրը ընդառաջեց այդ կնոջ առաջարկին և նրա հետ երեսնամյա պայմանագիր կնքեց։ 6545 թվականի դեկտեմբեր ամսի 18-ին, ինդիկտիոնի 5-րդ տարին, գիշերվա չորրորդ ժամին երեք երկրաշարժ եղավ, երկուսը թույլ, մեկը՝ ուժեղ։ Այն բանից հետո, երբ պատրիկ Գեորգիոս Մանիակեսը, որ, ինչպես ասացինք, Եդեսիայից տեղափոխվեց և նրա փոխարեն [քաղաքի] կառավարիչ նշանակվեց Լեպենդրինոսը, Միջագետքում բնակվող արաբները, համագործակցություն հաստատելով, Եդեսիայի վրա հարձակվեցին և պաշարեցին քաղաքը։ Այն քիչ էր մնացել գրավվեր, բայց կայսեր եղբայր Կոստանդինը Անտիոքից անհրաժեշտ օգնությունն ուղարկելով, անակնկալորեն փրկեց [Եդեսիան]։ Կայսրը, գնահատելով նրա արարքը, արևելից սխոլերի դոմեստիկոս նշանակեց։ Նիկոմեդիայի եպիսկոպոս ձեռնադրվեց ներքինի Անտոնիոս Պախեսը, որ կայսեր ազգականն էր, եպիսկոպոսի և ոչ մի շնորհք չունեցող, խոսելու անընդունակ մի մարդ։ Ամբողջ վեց ամիս չորային եղանակ արեց, ոչ մի կաթիլ անձրև չտեղաց, ահա դրա համար կայսեր եղբայրները թափոր կազմած դուրս եկան՝ Հովհաննեսը սուրբ վարշամակը բռնած, մեծ դոմեստիկոսը՝ Քրիստոսի Աբգարին ուղարկած նամակը[443], իսկ պրոտովես-

տիարիոսը՝ սուրբ պարուրը։ Նրանք ոտքով Մեծ պալատից գնացին հասան Վլախերնայի ամենասրբուհի աստվածածնի տաճարը։ Մի այլ թափոր էլ պատրիարքն ու կղերը կազմեցին։ Ոչ միայն անձրև չէր տեղացել, այլև անչափ մեծության կարկուտ էր եկել ու ջարդուփշուր արել ծառերն ու քաղաքի տների կղմինդրները։ Այն պատճառով, որ քաղաքը սկսեց հացի պակասություն զգալ, Հովհաննեսը Պելոպոննեսում ու Հելլադայում 100 հազար [մոդ] ցորեն գնեց և օգնության հասավ քաղաքի բնակիչներին։

11. Ինչպես ասվեց, Սիկիլիայում երկու եղբայրներն իրար դեմ էին կռվում և երբ գերակշռության հասավ Աբուլաֆարը, մյուս եղբայրը օգնության կանչեց Աֆրիկայի արխոնտ Ումարին։ Վերջինս խոստանում էր դաշնակցել, պայմանով, որ կղզում որևէ կալված ստանա։ Սիկիլիացին սիրով համաձայնվեց և նա տեղ հասնելով, բախվեց Աբուլաֆարին։ Օգտվելով այն բանից, որ պատրիկ Գեորգիոս Մանիակեսի հետ [Աբուլաֆարին] ուղարկված օգնական զորքն ուշանում էր, [Ումարը] նրան գլխովին պարտության մատնեց և նա ապաստան գտավ Լոնգիբարդիայի արխոնտ Լևոն Օպոսի մոտ, որից և օգնություն էր խնդրում։ [Լևոն Օպոսը] հնարավորության սահմաններում զորք հավաքելով, անցնում է Սիկիլիա և բազմիցս բախվելով աֆրիկացիների առաջնորդի հետ և գերակշռության հասնելով, կոտրում նրա անսանձելի թափը։ Հետագայում, երբ նա իմացավ, որ երկու եղբայրները դաշինք են կնքում և նպատակ ունեն միացյալ ուժերով հռոմայեցիների վրա հարձակվել, նա դարձյալ Իտալիա է անցնում։ Նրա հետ նավ նստեցին և 15 հազար հռոմայեցի ռազմագերիներ, որոնք Իտալիայում փրկվեցին և իրենց տները վերադարձան։ Կարքեդոնացին հարմար առիթ ձեռք բերելով, նեղում էր Սիկիլիան և իրեն շատ ազատ զգալով, ավերում այն։ Սիկիլիայում ահա գործերն այսպիսի վիճակում էին։

12. Երբ Հովհաննեսն սկսեց սուր քննադատության ենթարկել Կոստանդնուպոլսի պատրիարքին, Կյուզիկոսի եպիսկոպոս Դեմետրիոսը, Նիկոմեդիայի Անտոնիոսը, Սիդեսի և Անկյուրայի եղբայր [եպիսկոպոսները], այլ մետրոպոլիտների հետ համաձայնության գալով, որոշեցին Ալեքսիոսին աթոռից իջեցնել և նրա տեղում Հովհաննեսին նստեցնել։ Ալեքսիոս պատրիարքը կղերի մնացած մասով սրանց նամակներ ուղարկեց, որտեղ ասված էր. «Քանի որ, ըստ ձեզ, [պատրիարքական] աթոռին

*ես նստել եմ ոչ եպիսկոպոսների ընտրությամբ, այլ ոչ կանոնական ճանապարհով՝ Վասիլ կայսեր հրամանով, ապա թող իմ տասնմեկ և կեսամյա աթոռակալության ընթացքում ձեռնադրված մետրոպոլիտները կարգալույծ լինեն, նզովյալ լինեն նաև թագադրված երեք կայսրերը, որից հետո, եթե ուզում եք, ես կհրաժարվեմ աթոռից»։ Դեմետրիոսի գործակիցները այդ գրությունն ստանալով, ամոթահար եղան, ցվեցին երկյուղով (քանզի իրենցից շատերը նրա կողմից էին ձեռնադրված), լռեցին և այսուհետև Հովհաննեսը աթոռին տիրանալու իր ախորժակները սանձեց։*

1037 *13. 6546 թվականի նոյեմբերի 2-ին, ինդիկտիոնի 6-րդ տարվա, օրվա 10-րդ ժամին երկրաշարժ եղավ։ Երկիրը ցնցվում էր ամբողջ հունվար ամսի ընթացքում։ Սով էլ եղավ՝ Թրակիայում, Մակեդոնիայում, Ստրիմոնում և Թեսաղոնիկեում՝ մինչև Թեսալիա։ Երբ Թեսաղոնիկեի հոգևորականները բողոքեցին մետրոպոլիտ Թեոփանեսի դեմ՝ իրենց օրինավոր ռոճիկը չտալու համար, Թեսաղոնիկեում գտնվող կայսրը [Թեոփանեսին] դիմեց հորդորական խոսքերով, խորհուրդ տվեց չղրկել եկեղեցու սպասավորներին օրենքով սահմանված ռոճիկից։ Թեոփանեսը համառում էր, չէր զիջում, դրա համար էլ կայսրը որոշեց խաբել նրան ու պատժել նրա ագահությունը։ Նա իր սպասավորներից մեկին Թեոֆանեսի մոտ ուղարկեց, խնդրելով իրեն պարտքով մեկ կենտինար ոսկի տա՝ մինչև Բյուզանդիոնից դրամ կբերվեր։ [Թեոփանեսը] երդվեց, թե ունեցածը ընդամենը երեսուն լիտր [ոսկի] է։ Կայսրը նրան հեռացրեց, մարդ ուղարկեց նրա գանձարանը ստուգելու, ուր գտնվեց երեսուներեք կենտինար ոսկի։ Դրանից նա վճարեց Թեոփանեսի աթոռակալության առաջին տարուց մինչև ներկա պահը ընկած ժամանակաշրջանի համար հոգևորականներին պարտք մնացած գումարը, իսկ մնացածն էլ բաժանեց աղքատներին, մետրոպոլիտին էլ եկեղեցուց վտարելով, արգելափակեց ինչ-որ կալվածքում։ Նա մետրոպոլիտ նշանակեց Պրոմեթևսին, որից [Թեոփանեսը] որոշման համաձայն պետք է ստանար իր ռոճիկը և մասնավոր կյանք վարեր։*

*14. Այն պատճառով, որ Աբազգիայի էքսուսիաստես Բագարատը[444] սաստիկ նեղում էր Իբերիայի[445] կատապան Իասիտեսին[446], Հովհաննեսը բոլոր զորքերով[447] նրա մոտ է ուղարկում իր եղբոր, սխոլերի դոմեստիկոս Կոստանդնին, խոստանալով նրա հետ ուղարկել նաև Դալասսենոսին՝ որպես պատերազմա-*

կան խորհրդատու և օգնական։ Բայց այդ բանը նա չարեց, դրա համար դոմեստիկոսը ձեռնունայն ետ վերադարձավ։

15. Հովհաննեսը պետք է լուծողական դեղ առներ։ Թագուհի Զոեն իմանալով այդ մասին, իր ամենամտերիմ ներքինիներից մեկի՝ Սգուրիցես կոչվածի միջոցով բազում նվերներով կաշառում է բժշկին, խոստանալով բարձր պաշտոններ ու շատ դրամ, եթե դեղի մեջ թույն խառնի։ Բժշկի մոտ ծառայող երեխան Հովհաննեսին տեղյակ պահեց խարդավանքի մասին։ Դավադրությունը բացահայտվեց և բժիշկը իր հայրենիքը՝ Անտիոք աքսորվեց, թույնը պատրաստող պրոտոսպաթար Կոստանդին Մուկուպելեսը քաղաքից արտաքսվեց, իսկ թագուհին իր վրա մեծ կասկածներ հարուցեց։

16. Այս միջոցին, երբ Սիկիլիա ժամանեց պատրիկ Գեորգիոս Մանիակեսը, [կղզու] իշխանները՝ հարազատ եղբայրները միմյանց հետ դաշինք կնքելով, աշխատում էին նրան կղզուց դուրս շպրտել. այդ բանի համար նրանք Աֆրիկայից հիսուն հազարանոց օգնական զորք խնդրեցին։ Երբ այդ օգնությունը տեղ հասավ, Ռեմատա կոչվող տեղում ուժեղ բախում տեղի ունեցավ, Մանիակեսը կարքեդոնացիներին գլխովին պարտության մատնեց։ Ջարդն այնպիսի ծավալ ստացավ, որ մոտիկից հոսող գետը արյամբ հորդացավ։ Դրանից հետո Մանիակեսը
1037 գրավեց 13 սիկիլիական քաղաք և կամաց-կամաց տիրացավ ողջ կղզուն[448]։

17. 6546 թվականին, ինդիկտիոնի 6-րդ տարին, խարդա-
1038 վանք տեղի ունեցավ Եդեսիա քաղաքի դեմ և քիչ մնաց գրավվեր, եթե աստված այն չփրկեր։ [Քաղաքի] զորավար պրոտոսպաթար Վարաղվաշե իբերացու[449] օրոք Եդեսիա ժամանեցին արաբների 12 իշխաններ։ Նրանք 500 ձիավոր և 500 ուղտ ունեին, ուղտերի վրա բարձած հազար սնդուկ, որոնց մեջ [թաքնըված] էին հազար զինվոր[450]։ [Իշխաններն] ասացին, թե կայսեր նվերներ են տանում։ Նրանց նպատակը սնդուկները քաղաք մտցնելն էր և գիշերը զինվորներին դուրս հանելով, քաղաքը գրավելը։ Զորավարը [արաբ] իշխաններին սիրալիր ընդունեց, սեղան տվեց, իսկ ձիավորներին ու գումակը կարգադրեց դրսում մնալ։ Ողորմություն խնդրող մի ոմն հայ, լինելով այն տեղում, որտեղ սարակինոսներն էին գտնվում, լսեց սնդուկի մեջ գտնվող մեկի հարցը մի ուրիշին՝ թե որտե՞ղ են գտնվում (հայը արաբերեն գիտեր) և վազելով հայտնեց զորավարին։

Վերջինս իշխաններին թողնելով շարունակել ճաշը, զինվորներով դուրս եկավ և ջարդելով սնդուկները, գտավ նրանց մեջ թաքնված [արաբ] զինվորներին և բոլորին սրի քաշեց՝ ձիավորներով ու ուղտապաններով հանդերձ, ապա վերադարձավ քաղաք, իշխաններից տասնմեկին սպանեց, իսկ մեկին, նրանցից ամենամեծի ձեռքերը, ականջներն ու քիթը կտրելով, տուն ուղարկեց, կատարվածի բոթը տանելու։

1038/ 18. 6547 թվականին, ինդիկտիոնի 7-րդ տարին, Հովհաննե-
1039 սը առավել ևս խորացնելով Դալասսենոսի դեմ տածած իր թշնա-
մությունը, աքսորում է նրա եղբայր պատրիկ Թեոփիլակտոսին
էլ, նրա մյուս եղբայր պատրիկ Ռոմանոսին, եղբորորդի Ադ-
րիանոսին և նրա մնացած ազգականներին. Նա ջանք էր թափում
բնաջնջել [Դալասսենոսի] տոհմը։ Ամեն տեսակի վատության
ընդունակ մարդ լինելով, նա ապօրինության բազում ձևեր էր
հորինում։ Նա յուրաքանչյուր գյուղից, ըստ նրա որակի ու կա-
1039 րողության, բացի պետական հարկերից, որպես աերիկոն[451] պա-
հանջեց մեկից՝ չորս, մյուսից՝ վեց, մինչև քսան դահեկան։ Նաև
սեփական շահի համար նա այլ խայտառակ եկամուտների էլ
դիմեց, որոնց թվարկելն անգամ ամոթ է։ Իսկ այսահարությու-
նից տառապող կայսրը փրկություն չգտնելով, յուրաքանչյուր
բանակաթեմում և կղզում գտնվող երեցներին երկուական դա-
հեկան ուղարկեց, վանականներին՝ մեկական։ Նա սկսեց
նորածիններին մկրտել, տալով մեկական դահեկան և չորսական
միլիարեսիա։ Բայց դրանցից ոչ մեկն էլ իրեն չօգնեց։ Հիվան-
դությունը գնալով ծանրանում էր, դրա վրա բարդվեց և ջրգողու-
թյունը։ Այդ տարի անդադար երկրաշարժներ էլ եղան, սաստիկ
անձրևներ տեղացին, մի քանի բանակաթեմերում մղձուկն էլ
տարածվեց, այն աստիճան, որ կենդանի մնացած մարդիկ ի
վիճակի չէին վախճանվածներին թաղել։

1040 19. 6548 թ. փետրվար ամսի 2-ին, ինդիկտիոնի 8-րդ տա-
րին, սարսափելի երկրաշարժ եղավ, տուժեցին գավառներ ու
քաղաքներ, Զմյուռնիան ողբալի տեսարան էր ներկայացնում,
նրա ամենագեղեցիկ շենքերը փուլ եկան ու փլատակների տակ
բազում բնակիչներ սպանվեցին։

20. Կարքեդոնացիների [առաջնորդը] իրեն կարգի բերելով, հավաքեց նախկինից էլ շատ զինական ուժ և Սիկիլիա եկավ Մանիակեսին այնտեղից դուրս շպրտելու։ Նա բանակեց ցածրադիր ու չայնարձակ մի դաշտում (դաշտը կոչվում էր Դրագինե)

և պատերազմն սկսելու համար պահի էր սպասում։ Մանիակեսը լսելով այդ մասին, վերցրեց իր զինվորներին ու դնաց նրան ընդառաջ, նախապես կարգադրելով կայսեր փեսա պատրիկ Ստեփանոսին, որն, ինչպես ասել ենք, ծովակալն էր, ուշադիր հսկել ծովափը, որպեսզի եթե հանկարծ պատերազմ լինի և կարքեդոնացիների [իշխանը] պարտություն կրի, չկարողանա աննըկատ փախուստի դիմել և վերադառնալ իր երկիրը։ [Մանիակեսն] ահա կռվի բռնվելով, [կարքեդոնացուն] գլխովին պարտության է մատնում։ Աֆրիկացիներից սպանվեց 50 հազար հոգուց ավելի բազմություն։ Նրանց առաջնորդը վտանգից ազատվելով գալիս է ծովափ, մտնում արագընթաց մի նավի մեջ ու Ստեփանոսի հսկողությունից խուսափելով, փախչում իր երկիրը։ Մանիակեսը, իմանալով այդ մասին, շատ զայրացավ, հանդիպելով Ստեփանոսին նրա վրա սարսափելի լուտանքներ թափեց, սիրոմաստեսը բարձրացնելով գլխին բազում հարվածներ իջեցրեց, նրան անվանեց անհոգ, անարի և կայսեր գործերի դավաճան։ [Ստեփանոսը] չկարողանալով տանել գանահարությունն ու անարգանքը, շտապ նամակ է գրում Օրֆանոտրոֆոսին հաղորդելով, թե Մանիակեսը կայսեր դեմ ապստամբություն է ծրագրում։ Մանիակեսն իսկույն շղթայակապ մայրաքաղաք է բերվում և պատրիկ Վասիլ Թեոդորականի հետ բանտ նետվում, իսկ ողջ իշխանությունը տրվում է Ստեփանոսին, որի մոտ ուղարկվեց և ոմն ներքինի պրեպոզիտոս Վասիլ Պեդիադիտես[452]։ Ահա սրանք շուտով ամեն ինչ քարուքանդ արեցին, [իրենց] ագահությամբ, վախկոտությամբ ու անհոգությամբ դավաճանորեն լքեցին Սիկիլիան։ Մանիակեսը գրավելով կղզու քաղաքները, նրա մեջ միջնաբերդեր էր կառուցում, կարող կայազորներ հաստատում, որպեսզի տեղացիները չկարողանան դավով վերստին տիրանալ քաղաքներին։ Երբ նրան, ինչպես ասվեց, շղթայակապ Բյուզանդիոն բերեցին, տեղացիները կառավարիչների թերացումից ու անհոգությունից օգտվելով, կարքեդոնացիներից զինական ուժ ստանալով, հարձակվեցին քաղաքների վրա, գերեցին պահապան զինվորներին, հիմնահատակ ավերեցին միջնաբերդերը և վերագրավեցին բոլոր քաղաքները՝ բացառյալ Մեսենեի, որի պահպանությունը վիճակված էր Արմենիակների տագմայի զորահրամանատար պրոտոսպաթար Կատակալոնին, մականունը Կեկավմենոս[453]. Նա իր հետ ուներ երեքհարյուր հեծյալ ու հիսուն հետևակ։ Կղզու բնակիչները, ջանք թափելով, որպեսզի կղզում

որջացած հռոմեական զինական ուժի հետքն անգամ չմնա, հավաքելով զենք կրելու ընդունակ ամեն մեկին, և ունենալով կարքեդոնացիների մեծաթիվ դաշնակից զորք, գնացին ու պաշարեցին Մեսենե քաղաքը։ [Կատակալոնը] երեք օր փակ պահեց դարբասները, ոչ ոքի չթողեց խրամից այն կողմ գնալ, ձևացրեց թե վախենում է, որի հետևանքով սարակինոսները աներկյուղ ցրիվ եկան, օր ու գիշեր գինարբուքով, սրինգ ու թմբուկով էին տարված, հավատացած լինելով, թե վաղն իսկ քաղաքը գրավվելու է։ Զորեքշաբթի օրը, երբ մեր սովորության համաձայն նշում ենք մեսե Պենտեկոստեն[454], Կեկավմենոսը նկատելով սարակինոսների անհոգությունն ու անփութությունը, այն, որ նրանք շատ հանգիստ են իրենց զգում՝ պարսպից ներս գտնվողներից չեն վախենում, գոտեպնդեց իր զինվորներին, հրամայեց քահանաներին հաղորդություն տալ և ինքն էլ բոլորի հետ հաղորդվելով, ճաշի ժամանակ բաց արեց քաղաքի դարբասները և ուժեղ թափով հարձակվեց հարբած, ուղեղները մթագնված հակառակորդների վրա։ Առաջինն ինքը՝ [Կեկավմենոսը] իր զինվորներով ձի նստած եկավ կղզու կառավարիչ Աբուլաֆարի վրանը։ Աբուլաֆարը հարբած էր ու երերվում էր, նրան տեղն ու տեղը սպանում են, վրանն էլ թրատում։ Սարակինոսներից ուրիշներն էլ հարբածությունից երերվող, խմբերով կոտորվում էին, հարձակման անակնկալության պատճառով նրանք չկարողացան զենքի դիմել։ Ճամբարած ողջ զորքը դիմեց փախուստի, սարակինոսները տրորվելով, սպանում էին միմյանց, դաշտը, մերձակա կիրճերն ու գետերը դիակներով ծածկվեցին։ Եվ այդքան բյուր մարդկանցից շատ քչերը կարողացան հասնել Պանորմոս ու փրկվել։ Գրավվեց ոսկով, արծաթով, մարգարիտներով, թանկագին քարերով լի ողջ ճամբարը։ Պատմում են, որ զինվորներն այդ բոլորը մեդիմներով բաժանեցին իրենց մեջ։ Ահա այսպես կարճ ժամանակում ողջ Սիկիլիան գրավվեց Մանիակեսի կողմից, բայց շուտով զորավարների անփութության ու վատության պատճառով դարձյալ սարակինոսների ձեռքն անցավ։ Մնաց միայն Մեսենեն, թե ինչպես, մենք ասել ենք, իսկ Ստեփանոսն ու Պեդիադիտեսը փախան Լոնգիբարդիա։ Այսպիսին էր վիճակը Սիկիլիայում։

21. Իսկ Միքայել կայսրը երկար ժամանակ Թեսաղոնիկեում էր մնում՝[455] հիվանդությունից ապաքինում ստանալու ակնկալությամբ, պաղատելով մեծահաղթ վկա Դեմետրիոսի գերեզմանին։

Պետական գործերին նա բացարձակապես ձեռք չէր տալիս,
կարծես դրա կարիքն ամենևին չկար և երկրի կառավարումն ու
հասարակաց գործերը Հովհաննեսի ձեռքում էին գտնվում։ Նա
կանգ չառավ հպատակ ժողովրդին կեղեքելու ու վնասելու հա-
մար ոչ մի խայտառակ ու անօրեն միջոցի առաջ, որոնցից յու-
րաքանչյուրի մասին պատմելը հերակլյան սխրանք է։ Այդ դա-
ժան բռնակալությունից բոլոր մարդիկ երկար տառապեցին,
աստծուց փրկություն աղերսելով։ Իսկ աստված շարունակ եր-
կիրն էր ցնցում, աշխարհին վախ ու սարսափ էր պատել, երկըն-
քում գիսավոր աստղեր էին հայտնվում, ուժեղ քամիներ փչում
ու տեղատարափ անձրևներ տեղում, իսկ երկրի մեջ՝ ցնցումներ
ու սասանում։ Իմ կարծիքով այդ բոլորը կանխագուշակում էին
1040 բռնակալների աննախադեպ կործանումը։ 6548 թ. մայիս ամ-
սին, ինդիկտիոնի 8-րդ տարին, կայսեր քույր Մարիան՝ կեսարի
մայրը, Եփեսոս գնաց երկրպագելու սիրելի [Հովհան ավետա-
րանչին]։ Ճանապարհին նա տեղեկացավ երկրում կատարվող
բազում անօրինությունների մասին և, վերադառնալով Բյուզան-
դիոն, ամեն ինչ պատմեց իր եղբայր Հովհաննեսին, աղաչեց այդ
վատառողջ վիճակի մի փոքր առաջն առնել։ [Հովհաննեսը] ծի-
ծաղելով նրան ճամփու դրեց, ասելով, թե նա կնոջ պես է դա-
տում, նա չգիտե, թե հռոմայեցիների պետությունն ինչի կարիքն
է զգում։ Այն պատճառով, որ, ինչպես ասացինք, կայսրը Թեսա-
ղոնիկեում էր գտնվում, Հովհաննեսը տասը կենտինար ոսկի
ուղարկեց, բայց նավը, ալեկոծության հանդիպելով, շպրտվեց
Իլլիրիայի ափերին ու ջարդուփշուր եղավ։ Ոսկին ձեռք գցեց
սերբերի իշխան Ստեփան-Վոյիսլավը[456], որ մի փոքր առաջ մայ-
րաքաղաքից փախուստի էր դիմել և տիրացել սերբերի երկրին,
այնտեղից վռնդելով Թեոփիլոս էրոտիկոսին[457]։ Իսկ Հովհաննեսը
պաշտոնները վաճառքի առարկա դարձնելով, բոլորի ձեռքում
անօրինության սանձեր տվեց և երկիրը բյուր փորձանքներով
ողողեց. դատավորները[458] աներկյուղ հարկադրում էին նահանգ-
ների բնակիչներին։ Ոչ ոք չէր մտածում այդ վիճակին վերջ տա-
լու մասին։

22. Կայսրը Թեսաղոնիկեում տեղեկանալով ոսկու կորըստ-
յան մասին, Ստեփանին նամակ գրեց, կոչ անելով վերադարձնել
իրեն, կայսրին, պատկանածը և պատերազմի առիթ չտալ։ [Ստե-
փանը] ոչինչ չվերադարձրեց, դրա պատճառով կայսրը նրա դեմ
զորք ուղարկեց ներքինի Գեորգիոս Պրովատասի գլխավորու-

*թյամբ։ Նա տեղ հասնելով, անխոհեմաբար ընկավ վատ տեղանքների, կիրճերի ու դժվարանցանելի վայրերի մեջ, կորցրեց ողջ զորքը, իսկ ինքը մի կերպ փրկվեց։*

1040 *23. Այդ տարին Բուլղարիայում ապստամբություն ծագեց հետևյալ կերպ. Պետրոս անունով մի բուլղար, մականունը Դելյան[459], մի բյուզանդացու ստրուկը, մայրաքաղաքից փախուստ դիմելով, թափառում էր Բուլղարիայով մեկ։ Նա ի վերջո հասավ Մորավոն և Բելգրադ (սրանք Պաննոնիայի բերդեր են, Իստրոսի այն ափին գտնվող, Թուրքիայի կրալին[460] հարևան)։ Իրեն հայտարարելով Սամուիլի որդի Ռոմանոսի որդին, նա ոտքի հանեց բուլղար ժողովրդին, որը մի փոքր առաջ ստրկության լուծն էր դրել իր վզին, բայց ազատության մեծ ցանկություն ուներ։ Բուլղարները հավատալով նրա խոսքերին, Բուլղարիայի թագավոր հռչակեցին և այնտեղից դուրս գալով, Նայսոսի և Բուլղարիայի մայրաքաղաք Սկոպլիեի վրայով, շարժվեցին առաջ, սրան [թագավոր] հայտարարելով ու ներբողելով, իսկ հանդիպած հռոմայեցուն էլ անխնա ու գազանաբար սպանելով։ Դյուրախիոնի զորավար Վասիլ Սյունադենոսը, իմանալով այդ մասին, վերցրեց տեղական ուժերը և շտապեց ընդդիմակայելու Դելյանին, նախքան փորձանքի տարածվելն ու հրդեհի բռնկվելը։ Հասնելով Դեբրե կոչվող [վայրը], նա ինչ որ հարցում վեճի բռնվեց Միքայել Դերմոկայիտեսի հյուպոստրատեգոսներից[461] մեկի հետ, դրա համար էլ առիթ տվեց զրպարտվելու կայսեր, թե խռովություն է ծրագրում։ [Վասիլ Սյունադենոսը] իսկույն պաշտոնանկ է արվում և Թեսաղոնիկե բերվելով, բանտ նետվում, իսկ նրա փոխարեն զորավար է նշանակվում Դերմոկայիտեսը, որը, սակայն, իշխանությունը վարելով անփորձ ու ապաշնորհ, կարճ ժամանակամիջոցում ամեն ինչ փչացրեց, նրա զինվորները ագահության ու անօրինության զոհ էին դառնում, նրանց ձիերը, զենքերը և ինչ-որ արժեքավոր բան ունեին, խլվում էր իրենցից, որի պատճառով նրանք ապստամբեցին զորավարի դեմ։ Վերջինս, զգալով, որ իր դեմ դավադրություն է նյութվում, գիշերով ծածուկ փախավ։ Իսկ [զինվորները], վախենալով կայսեր հաշվեհարդարից, որոշում են ապստամբել և իրենց հետ եղած զինվորներից մեկին, անունը Տիխոմիր, քաջությամբ ու խոհեմությամբ փորձված մի մարդու, Բուլղարիայի թագավոր հռչակում։ Այսպիսով բուլղարների երկու ապստամբություն ծագեց, մեկի կողմնակիցները թագավոր էին ճանաչում Դելյանին,*

մյուսի՝ Տիխոմիրին։ Դելյանը բարեկամական նամակ գրեց Տիխոմիրին, կոչ արեց դաշնակցել և համոզեց իր մոտ գալ։ Երբ բուլղարների երկու խմբերը միացան իրար, Դելյանը հրավիրեց բոլորին և դիմեց նրանց հետևյալ կոչով. եթե նրանք հավատացած են, որ ինքը Սամուիլից է սերում և համամիտ են, որ ինքը լինի նրանց թագավորը, վերացնեն Տիխոմիրին, իսկ եթե համամիտ չեն այդ բանին, ապա իրեն վերացնեն և ընդունեն Տիխոմիրի իշխանությունը։ Նա ասաց, թե «մի արտը չի կարող երկու թռչուն կերակրել, մի երկիր բարօրության չի հասնի, եթե այն կառավարվի երկու առաջնորդների կողմից»։ Այդ խոսքերի վրա մեծ աղմուկ բարձրացավ, բոլորն ասացին, թե միայն նրան, [Դելյանին] են ուզում ունենալ միահեծան առաջնորդ։ Այդպիսի վճիռ արձակելուն հետ միասին նրանք քարեր առան ու քարկոծելով սպանեցին թշվառ Տիխոմիրին, որ երազելով իշխել, իշխանության հետ կյանքն էլ կորցրեց։ Ողջ իշխանությունն անցավ Դելյանի ձեռքը, որը, վերցնելով համայն ուժերը, շարժվեց դեպի Թեսաղոնիկե՝ կայսեր դեմ։ Վերջինս, իմանալով այդ մասին, անկազմակերպ հեռացավ դեպի Բյուզանդիոն, տեղում թողնելով ողջ գույքը, վրանը, եղած ոսկին, արծաթը, կերպասները։ Կայսեր մտերիմ Մանուիլ Իվացեսը հրաման ստացավ առնել այդ բոլորը և իրեն հետևել։ Բայց նա, վերցնելով դա, ոմն կիտոնիտի՝ ներքինի սենեկապաններից մեկի հետ անցավ Դելյանի կողմը։

24. Այդ տարի երաշտ էլ եղավ, այն աստիճան, որ ցամաքեցին հորդառատ աղբյուրներն ու մշտահոս գետերը։ Օգոստոս ամսի 6-ին հրդեհ էլ ծագեց Էքսարտեսիսում և այնտեղ եղած բոլոր տրիերները իրենց հանդերձանքով հրո ճարակ դարձան։

25. Իսկ Դելյանը, ինչպես ասացինք, մեջտեղից վերացնելով Տիխոմիրին, և իրերի տերը դառնալով, ամբողջ եռանդով լծվեց գործի։ Նախ և առաջ նա մի զորամաս ուղարկեց Կավխան[462] կոչվածի գլխավորությամբ և գրավեց Դյուրախիոնը։ Մի այլ զորաբանակ էլ Անթիմոսի զորավարությամբ Հելլադա[463] ուղարկեց։ Այդ զորաբանակին ընդառաջ ելավ և Թեբեում կռվի բռնվեց Ալլակասևսը, բայց պարտություն կրեց։ Թեբեցիներից շատ շատերը սպանվեցին։ Այն ժամանակ Նիկոպոլսի բանակաթեմն էլ[464], բացառյալ Նավպակտոսի, բուլղարների կողմն անցավ, թե ինչու՞, ես կասեմ։ Մի ոմն բյուզանդացի, անունը Հովհաննես, մականունը Կուցոմիտես, որպես պրակտոր[465] ուղարկվել էր

այնտեղ պետական հարկերը գանձելու։ Բայց կեղեքելով տեղացիներին նա և իր կործանման պատճառ դարձավ, և նիկոպոլսեցիների ապստամբության, քանզի չկարողանալով դիմանալ նրա ագահությանը, ապստամբում են, [Կուցոմիտեսին] կտոր կտոր անում և հռոմայեցիների կայսեր վատաբանելով, անցնում բուլղարների կողմը։ Նրանք հռոմեական լուծը թոթափեցին և Դելյանի կողմն անցան ոչ թե նրան սիրելու պատճառով, այլ Օրֆանոտրոֆոսի ագահության և հարկերի ծանրության։ Վասիլ կայսրը, երբ հպատակեցրեց բուլղարներին, բացարձակապես չուզեց նորամուծություններ կատարել, ոչ էլ որևէ փոփոխությունների դիմել, նա հրամայեց կառավարել, ամեն ինչ թողնել այնպես, ինչպես Սամուիլն էր սահմանել՝ մեկ զույգ եզի տեր բուլղարը պետությանը պետք է վճարեր մեկ մոդ ցորեն, այդքան կորեկ և մեկ փարչ գինի, բայց Օրֆանոտրոֆոսը բնահարկի փոխարեն դրամ էր պահանջում։ Տեղացիներն ահա այդ բանը չկարողանալով հանգիստ տանել, Դելյանի հանդես գալը հարմար առիթ համարեցին, թոթափեցին հռոմեական գերիշխանությունը և վերադարձան նախկին վիճակին։

26. Այս ժամանակներր կայսեր դեմ խռովություն նյութվեց, որը գլխավորեցին Կերուլարիոս կոչվող Միքայելը և Հովհաննես Մակրեմբոլիտեսը, ինչպես և բազում այլ քաղաքացիներ, որոնց ունեցվածքը գրավվեց, իսկ նրանք էլ աքսորվեցին։ Մի այլ խռովություն էլ տեղի ունեցավ Մեսանակտոնում՝ ընդդեմ մեծ դոմեստիկոս Կոստանդնի։ Երբ այդ բանի մասին Կոստանդնին տեղյակ պահեցին, Միքայել Գսւվրասը, Թեոդոսիոս Մեսանյուկտեսը և տագմաների բազում հրամանատարներ կուրացվեցին, իսկ պատրիկ Գրիգոր Տարոնացուն, որ համարվում էր խռովության կազմակերպիչն ու ղեկավարը, Կոստանդինը ամբողջությամբ խցկեց եղան մորթու մեջ, թողեց միայն շնչելու տեղ և ուղարկեց Օրֆանոտրոֆոսին։

27. 6549 թվականի սեպտեմբեր ամսին, ինդիկտիոնի 9-րդ տարին, Թեոդոսուպոլսի զորավար պատրիկ Ալուսիանը[466], Ահարոնի երկրորդ որդին, հանկարծակի քաղաքից փախավ ու հարեց Դելյանին։ Պատճառը հետևյալն էր. նա Թեոդոսուպոլսի զորավարն էր և ամբաստանվեց անօրինություններ գործելու մեջ, իսկ Հովհաննեսն էլ նախքան նրան ներկայացված ամբաստանությունը քննվելը, նրանից 50 լիտր ոսկի պահանջեց, նրա ձեռքից խլեց նաև իր կնոջ պատկանող և Խարսիանոն [բանակաթեմում]

գտնվող շատ գեղեցիկ մի գյուղ։ Այգ գյուղը ետ ստանալու համար [Ալուսիանը] բաղում անգամ դիմեց կայսեր, բայց ապարդյուն։ Ահա ամեն ինչից հույսը կտրած, նա հայկական համաղգեստ հագավ[467] և որպես Վասիլ Թեոդորականի սպասավոր, ճանապարհ ընկավ իբրև թե դեպի կայսրը՝ Թեսաղոնիկե, բայց բոլորից ծածուկ փախավ ու ապաստանեց Օստրովում, որտեղ ամբողջ զորքով բանակել էր Դելյանը։ Դելյանը նրան սիրալիր ընդունեց (նա վախենում էր, որ բուլղարները նրան կհարեն, որպես թագավորական արյունի տեր մարդու) և, որպես թագավորության գործակցի, նրան քառասուն հազարանոց զորք տալով, հրամայեց գնալ, պաշարել ու գրավել Թեսաղոնիկեն։ Այն ժամանակ Թեսաղոնիկե քաղաքի կառավարիչն էր կայսեր եղբորորդի պատրիկ Կոստանդինը։ [Ալուսիանը] քաղաքը խրամով շրջապատեց և աչալրջորեն ձեռնամուխ եղավ պաշարման։ Նա վեց օր շարունակ գործի գրեց քաղաքավեր մեքենաներն ու բաբանները, բայց ամեն տեղից դիմադրության հանդիպեց և բացարձակապես հուսաբեկված, փորձեց հաջողության հասնել երկարատև պաշարմամբ։ Օրերից մի օր [քաղաքի] բնակիչներն եկան մեծ վկա Դեմետրիոսի գերեզմանը, ամբողջ գիշերը հսկեցին և սուրբ գերեզմանից բխող մեռոնով օծվելով, մեկ թափով բացեցին դարբասները և դուրս եկան բուլղարների դեմ։ Թեսաղոնիկեցինարի հետ էր քաջաց գունդը[468]։ Դուրս գալով, նրանք անակնկալից բուլղարներին սարսափահար արեցին և փախուստի մատնեցին։ Վերջիններս չուզեցին անգամ պաշտպանվել կամ կռվել։ Հռոմեական բանակին առաջնորդում էր և նրա ուղին հարթում վկա [Դեմետրիոսը], այդ բանը երդումներով հաստատեցին գերի ընկած բուլղարները։ Նրանք ասում էին, թե հռոմեական զորաշարքի առջևից գնացող մի ձիավոր պատանի տեսան, որից հուր էր ցայտում և հրո ճարակ դարձնում հակառակորդներին։ 15 հազար հոգուց ավելին սպանվեց, դրանցից ոչ պակասը գերի ընկավ, մնացածներն էլ խայտառակ կերպով Ալուսիանի հետ ապաստան գտան Դելյանի մոտ։

28. Այդ տարի, հունիսի 10-ին, ինդիկտիոնի 9-րդ տարին, օրվա 12-րդ ժամին երկրաշարժ եղավ։

29. Երբ պարտությունից հետո Դելյանն ու Ալուսիանը միացան իրար, սկսեցին մեկը մյուսի վրա կասկածով նայել։ [Ալուսիանը] ամոթ էր զգում [իր կրած] պարտության համար, իսկ [Դելյանն] էլ կասկածում էր, որ նա դավաճանել է, որով եր-

կուսն էլ իրար նկատմամբ դավ էին նյութում և հարմար առիթի սպասում։ Ալուսիանն իր մտերիմներից ոմանց հետ սեղան տըվեց և ճաշի հրավիրեց Դելյանին, որին, երբ նա արդեն խմած էր ու հարբած, բռնեց ու կուրացրեց. բուլղարները կատարվածի մասին չիմացան իսկ, որից հետո [Ալուսիանը] փախավ Մոսինուպոլիս՝ կայսեր մոտ։ Կայսրը նրան Բյուզանդիոն ուղարկեց, Օրֆանոտրոֆոսի մոտ, շնորհելով մագիստրոսի բարձր պատվաստիճան, իսկ ինքն էլ դուրս գալով Մոսինուպոլսից, գնաց Թեսաղոնիկե, այնտեղից էլ մտավ Բուլղարիա և Դելյանին բռնելով ուղարկեց Թեսաղոնիկե։ Ինքն էլ ավելի խորացավ երկրում։ Մանուիլ Իվացեսը Պրիլապոսում փայտյա մի պատնեշ էր պատրաստել, մտածելով կասեցնել կայսերական բանակի առաջխաղացումը և ներքին [նահանգների] գրավումը։ Բայց կայսրը, լինելով տեղում, շատ հեշտությամբ քանդեց փայտե պարիսպը, ցիրուցան արեց բուլղարների զորքը, Իվացեսին էլ գերի վերցրեց։ Բուլղարիայի բոլոր հարցերը կարգավորելով, նա բանակաթեմերում զորավարներ հաստատեց, որից հետո մտավ մայրաքաղաք, իր հետ տանելով Դելյանին և Իվացեսին։ Երբ հիվանդությունը կայսեր կատարելապես հյուծեց և նրան փրկության հույս չմնաց, նա վանական խուզվեց վանական Կոսմաս Ծնճղուկի[469] կողմից, որը մշտապես իր հետ էր լինում և անհրաժեշտ խրատներ տա-
10—XII լիս։ Եվ ահա 6550 թվականի դեկտեմբերի տասին, ինդիկտիոնի
—1041 10-րդ տարին նա ապաշխարությամբ ու [մեղքերի] խոստովա-
նությամբ (նա ողբում էր Ռոմանոս կայսեր հանդեպ իր գործած մեղքը) մեռավ, թագավորելով 7 տարի և 8 ամիս։ Նա ընդհանուր առմամբ բարի ու լավ մարդ էր, բարեպաշտ, եթե չհաշվենք Ռոմանոս կայսեր հանդեպ գործած նրա մեղքը։ Շատերը սակայն այդ մեղքն էլ Օրֆանոտրոֆոսի վրա են բարդում[470]

## ՄԻՔԱՅԵԼ ԿԱԼԱՓԱՏԵՍ

### [10 դեկտեմբեր 1041—21 ապրիլ 1042 թթ.]

1. Միքայելն ահա այսպիսի վախճան ունեցավ, իսկ ողջ իշխանությունն անցավ ժառանգի՝ Թագուհի Զոեի ձեռքը։ Նա մեծ եռանդով լծվեց գործի, որպես աջակից ունենալով հոր ներքինիներին, որոնց մասին նախապես բազմիցս խոսվել է։ Բայց նա առաջվա պես այլևս չէր մտածում։ Նա հայացք գցելով թագավո-

րության հսկա չափերի վրա, հասկացավ, որ ինքը երբեք էլ չի կարողանա մենակ ինչպես որ պետքն է վարել հասարակաց գործերը, գտավ, որ օգտաբեր չէ երկրի գլխից կայսեր բացակայությունը և անհրաժեշտ համարեց կայսր առաջ քաշել մեկին, ով ի վիճակի կլինի դժվարին պայմաններում պետության գործերը վարելու, և ամբողջ երեք օր այդ մասին մտածելուց հետո [վախճանված] կայսեր համանուն եղբորորդուն, Սիկիլիայի գործերը քարուքանդ անող Ստեփանոսի որդուն, որը կեսար էր և գործունյա ու եռանդուն մարդ համարվում, որդեգրեց ու հռչակեց հռոմայեցիների կայսր, կայսերական թագը դնելով գլխին, կանխավ նրանից սարսափելի երդումներով հավաստիացում ստանալով, թե իրեն ողջ կյանքում պետք է վերաբերվի որպես տիրուհու, թագուհու և մոր, որ ինքը, Զոեն, պիտի գործի ինչպես որ ցանկանա։ [Զոեն] նախքան այդ հեռացրել և Մոնոբատների վանքն էր աքսորել Օրֆանոտրոֆոսին, պաշտոնանկ արել սխոլերի դոմեստիկոս Կոստանդնին և արգելափակել նրան Օպսիկիոն [բանակաթեմում] գտնվող նրա կալվածներում, նույն ձևով նաև պրոտովեստիարիոս Գեորգիոսին, որին ուղարկել էր Պափլագոնիայում գտնվող նրա կալվածները։ Այն պահին, երբ Միքայելի գլխին թագ էին դնում, նրա աչքերը սևացան, նա գլխապտույտ ունեցավ ու քիչ մնաց ընկներ. անուշահոտություններով, օծանելիքներով ու անուշաբույր այլ բաներով հազիվ ուշքի բերեցին նրան։ Նրա թագավորության բոլոր չորս ամիսների ընթացքում երկիրը ցնցվում էր։ Բայց և այնպես, թագադրվելով ձեռամբ պատրիարքի և կայսր դառնալով, սա սկսեց սիրաշահել սենատը՝ պատիվներ ու պաշտոններ բաժանելով, իսկ ժողովրդին էլ՝ ընծաներ։ Նա իր տիրուհուն խնդրեց և աքսորից ետ կանչեց դոմեստիկոս Կոստանդնին, որին շնորհեց նոբելիսսիմոսի[471] պատվաստիճանը և իր մոտ էր պահում։ Չնայած իրեն թվում էր, թե ամուր է կանգնած, բայց հանկարծակի ընկավ, քանզի նա ականջ դրեց Օրֆանոտրոֆոսի նամակներին ու գոմեստիկոսի հաճախակի խորհուրդներին՝ չհավատալ տիրուհուն, ավելին՝ զգույշ լինել նրանից, որպեսզի իր գլխին էլ չգա այն փորձանքը, ինչ իր հորեղբոր՝ Միքայել կայսեր, նրանից առաջ էլ՝ Ռոմանոսի։ Նրանք, ինչպես ասում են, կախարդեցին նրան, խորհուրդ տվեցին, եթե հնարավոր է, [Զոեին] հրապարակից վերացնել, շտապել կանխելու նրան։ Նրանք անվերջ նույն բանն էին նրա գլուխը թխմում և կարողացան համոզել դավ նյութել նրա դեմ։

Նա նպատակահարմար համարեց նախապես փորձել մայրաքա-
ղաքի բնակիչների տրամադրությունները, իմանալ նրանց կար-
ծիքն իր մասին և եթե տեսնի, որ իր նկատմամբ իսկական բա-
րեկամություն են տածում, այդ դեպքում միայն ձեռնարկել իրա-
կանացնելու ծրագիրը, հակառակ դեպքում հանգիստ մնալ։
Սուրբ Զատկին հաջորդող կիրակի օրը նա սուրբ Առաքելոց տա-
ճարում[472] համաժողովրդական թափոր հայտարարեց, գտնելով,
որ նրա ընթացքում հնարավոր կլինի որոշել քաղաքացիների
տրամադրությունները։ Նա թագը գլխին, [սենատի] անդամների
հետ գնաց [սուրբ Առաքելոց տաճարը]։ Քաղաքի ողջ բնակչու-
թյունը հավաքվել էր դիտելու, իսկ գլխավոր պողոտայի բնակիչ-
ները [պատուհաններից] կախել էին ոսկե և արծաթե սպասք,
սփռոցներ և այլ ոսկեհյուս կերպասներ։ Նրանք այնպես բարձ-
րաձայն կեցցեներ էին աղաղակում, կարծես եթե գա հնարավոր
լիներ, իրենց հոգին էլ կդատարկեին։ Այդ ամենը թշվառականին
թյուրիմացության մեջ գցեցին, նա կարծեց, թե այդ բոլորը իր
նկատմամբ տածվող սիրո արտահայտություն է և վերադառնա-
լով մեծ պալատը, հայտնեց պատրիարքին գնալ իր Ստենոնի
վանքը[473], հաջորդ օրն իրեն ընդունելու համար։ Նրան նա տվեց
նաև չորս լիտր ոսկի իբրև թե իր ընդունելության [ծախսերի]
համար։ Իսկ դիշերը նա թագուհուն գահընկեց արեց և արգելա-
փակեց Իշխանաց կղզում, հրամայելով տանողներին խուզել նրա
մազերը և դրանք իրեն բերել։ Գնացողներն հրամանն ի կատար
ածեցին, իսկ [կայսրը] արշալույսին ուղերձ[474] գրեց, տվեց քա-
ղաքի էպարքոսին, հրամայելով նրան այն ընթերցել քաղաքացի-
19—IV ներին Կոստանդին Մեծի հրապարակում։ Դիմումի մեջ ասված
—1042 էր, թե «Զոեն չարամտաբար էր տրամադրված իմ թագավորու-
թյանը, դրա համար իմ կողմից նա աքսորվեց[475]։ Քանի որ նրան
համախոհ էր նաև Ալեքսիոսը, այդ իսկ պատճառով ահա նա էլ
եկեղեցուց վռնդվեց։ Իսկ դուք, իմ ժողովուրդ, եթե իմ նկատ-
մամբ այդպես բարյացակամ լինեք, ապա կարժանանաք մեծ
պատիվների ու բարիքների, անհոգ ու անամպ կյանք կունենաք»։
Երբ էպարքոսը կարդաց դիմումը ժողովրդին, մի ձայն լսվեց,
բայց ձայն տվողին չգտան, թե «մենք խաչակոխ կալաֆատ[476]
կայսր չենք ուզում, մենք ուզում ենք իսկական թագաժառանգ
Զոեին, մեր մորը»։ Իսկույն, ժողովուրդը միահամուռ կերպով
գոչեց. «Փորփրվեն կալաֆատի ոսկորները»։ Ամեն մեկը քարեր
առած ու աթոռներ, պատահած փայտերը, քիչ էր մնացել էպար-

*քոսին սպանեին (նա պատրիկ Անաստասիոսն էր, որ դեռ Զոեի հոր մոտ էր ծառայել)։ Նա փախուստի դիմեց և այդպես գլուխը փրկեց։ Քաղաքացիները շտապեցին Մեծ եկեղեցին. պատրիարքն էլ հաջողացրել էր վերադառնալ, նա վատաբանում էր կայսեր և պահանջում թագուհուն ետ բերել։ Շտապեցին նաև [թագուհու] հոր բոլոր ներքինիները, պատրիկ Կոստանդին Կավասիլասը, սենատի մնացած ողջ բազմությունը, որոնք միահամուռ կերպով Պետրիոնից Մեծ եկեղեցի բերեցին Թեոդորային, թագավորական ծիրանի հագցրին և իր քրոջ՝ Զոեի հետ միասին կայսրուհի հռչակեցին։ Այնուհետև հարձակվելով պալատի վրա, ջանում էին Միքայելին պալատից դուրս հանել։ [Միքայելը], ժողովրդի ցասումից ու զայրույթից սարսափած, Զոեին պալատ բերել տվեց և հանելով նրա վանականի սքեմը, թագավորական հանդերձներ հագցրեց։ Բայց երբ փորձեց ձիարշավարանի իր աթոռից խոսքով դիմել ժողովրդին, ասել, թե թագուհին բերվել է, թե ամեն ինչ լավ է՝ ըստ ժողովրդի ցանկության, ժողովուրդը թույլ չտվեց նրան, ամեն կողմից նրա գլխին լուտանքներ էին թափվում, ցածից նրա վրա քարեր էին շպրտում և նետեր արձակում։ Հուսաբեկ եղած նա որոշեց գնալ Ստուդիոնի վանքը և վանական դառնալ։ Բայց դոմեստիկոսը չթույլատրեց, ասաց, թե պետք չէ այդպես հեշտությամբ լքել իշխանությունն ու հեռանալ, այլ պետք է քաջաբար դիմադրել և հաղթանակ տանել, կամ էլ արիաբար ու արքայավայել զոհվել՝ ինչպես վայել է թագավորին։ Այդ կարծիքն ընդունվեց և նա, ինչքան որ հնարավորություն էին տալիս պայմանները, զինելով պալատում գտնվող բոլորին, նոբելիսսիմոսն էլ իր բոլոր զինվորներին իր տնից ուղարկեց (հենց այդ օրերին Սիկիլիայից ժամանել էր նաև զորավար Կատակալոն Կեկավմենոսը, որ Մեսենեի մասին ավետիս էր բերել) քաջաբար գործի լծվեց։ Այն պատճառով, որ դեմոսը երեք մասի էր բաժանվել, մեկը հարձակման էր անցել ձիարշավարանում, մյուսը՝ էքսկուբիտայում[477], իսկ երրորդն էլ՝ ցուկանիստերիոնում[478], կայսեր կողմնակիցներն էլ ահա իրենց ուժերը երեք մասի բաժանելով, համառորեն պաշտպանվում էին։ Տեղի ունեցավ քաղաքացիների մեծ կոտորած, քանզի նրանք անզեն լինելով, սպառազինվածների դեմ էին փորձում կռվել փայտերով, քարերով և պատահած առարկաներով։ Պատմում են, թե այդ օրը (դա անտիպասքայի[479] երեքշաբթի օրն էր) կոտորվեց շուրջ երեք հազար հոգի։ Բայց ի վերջո թվական տեսակետից գերա-*

կշիռ քաղաքացիները կայսեր կողմնակիցների նկատմամբ առավելություն հասնելով, ջարդեցին պալատի դարբասները, ներս մտան ու հափշտակեցին սեկրետներում[480] գտնվող ոսկին և մնացած պատահած իրերը, պատառ-պատառ արեցին պետական հարկացուցակները, ջանացին ձերբակալել կայսեր։ Վերջինս, երբ համոզվեց, որ պարտություն է կրում, Զոեին պալատում թողնելով, նոբելիսսիմոսի և իր շատ մտերիմներից մի քանիսի հետ չորեքշաբթի առավոտյան կայսերական դրոմոնը մտավ, փախավ դեպի Ստուդիոնի վանքը և անհապաղ իր հորեղբոր հետ միասին հագավ վանականի սքեմը[481]։

2. Պատերազմնահա, որ սկսվեց անտիպա՞ւքայի երկուշաբթի օրվա երկրորդ ժամին, ավարտվեց երեքշաբթի օրվա գիշերը։ Զոեն վերստին ձեռք գցելով թագավորությունը, մտածում էր իր քրոջ Թեոդորային հեռացնել, բայց հանդիպեց ժողովրդի դիմադրությանը, որը պահանջում էր, որ նա էլ իր հետ թագավորի։ Թեոդորան Մեծ եկեղեցուց գալիս է պալատ։ Երբ գումարվեց սենատը, Զոեն ճառով դիմեց նախ սենատին, այնուհետև ինչ-որ նկատառումներով նաև ժողովրդին, շնորհակալություն հայտնեց նրանց և բարեմաղթություններ՝ իր հանդեպ ցուցաբերած բարյացակամության համար, ապա հարցրեց՝ կայսեր հետ ինչպե՞ս վարվել։ Բոլորը միաբերան աղաղակեցին. «Սպանիր մարդասպանին, մեջտեղից վերացրու սրիկային, թող ցցահան լինի նա, խաչվի, կուրացվի»։ [Կայսրուհին], սակայն, չէր շտապում նրան պատժել, նա դթացող եղավ դժբախտի նկատմամբ։ Բայց բարկությամբ ու համարձակությամբ լցված Թեոդորան հրամայեց նոր նշանակված էպարքոսին (նա Կամպանարեսն էր) շտապ գնալ ու կուրացնել՝ նրան էլ, նրա հորեղբորն էլ։ Էպարքոսը եկավ և ողջ դեմոսի ուղեկցությամբ գնաց Ստուդիոնի [վանքը]։ Միքայելն ու նրա հորեղբայրը հենց որ իմացան ժողովրդի ներկայության մասին, ապավինեցին Կարապետի տաճարի ադիտոնում[482]։ Բայց դեմոսը, որի զայրույթը կոտորված մարդկանց պատճառով դեռ չէր իջել, բռնությամբ մտնելով սուրբ տաճարը և նրանց հափշտակելով, քարշ տվեց ոտքերից հրապարակով և Պերիբլեպտոսի վանքից վերև Սիգմա կոչ-
20—IV ված տեղը տանելով, երկուսին էլ կուրացրեց։ Միքայելը շատ էր
—1042 պաղատում նախ իր հորեղբորը կուրացնեն, որպես բոլոր տեղի ունեցած դժբախտությունների նախաձեռնողի ու պատճառի։ Այդպես էլ արեցին։ Կուրացնելուց հետո նրանց աքսորեցին,

Միքայելին էլեգմոն վանքը՝ 6550 թվականի ապրիլ ամսի քսանմեկին, ինդիկտիոնի 10-րդ տարին (Նա թագավորեց 4 ամիս և 5 օր)։ Նրա ազգականներն այստեղ, այնտեղ ցրվեցին։

## ԿՈՍՏԱՆԴԻՆ ՄՈՆՈՄԱԽ

### [12 հունիս 1042—11 հունվար 1055 թթ.]

1. Իշխանությունը դարձյալ Զոեի ձեռքն անցավ, որը, ինչպես արդեն ասացինք, իր ցանկության հակառակ կայսերակից ուներ քրոջ Թեոդորային։ Սենատը պատիվներ ու պաշտոններ ստացավ, իսկ ժողովուրդը՝ ընծաներ։ Պետական գործերը անհրաժեշտ հոգատարության արժանացան, ամենուրեք նամակներ ու կարգադրություններ էին ուղարկվում, որոնցով խոստումներ էին տրվում, թե պաշտոնները առաջվա պես վաճառքի առարկա չեն լինելու և հրամայվում էր ամեն տեսակի ապօրինությունները վերացնել։ Երբ ամեն ինչ կատարվեց իշխողների ցանկության համաձայն, աքսորից [քաղաք] բերվեց նոբելիսսիմոս Կոստանդինը, նրան պետական դրամների շուրջ հարցաքննության ենթարկեցին և նա սպառնալիքներից վախեցած, մատնացույց արեց սուրբ Առաքելոց [տաճարի մոտ] գտնվող իր տան մի ինչոր ավազանի մեջ պահած 53 կենտինար ոսկին։ Այդ գումարը բերվեց թագուհուն, իսկ [Կոստանդինն] էլ դարձյալ աքսոր ուղարկվեց։ Թագուհին արևելից սխոլերի գոմեստիկոս նշանակեց պրոեդրոս Նիկոլայոսին, իր հոր ներքինուն, իսկ արևմուտքի դուքս՝ պատրիկ Կոստանդին Կավասիլասին։ Պատրիկ Գեորգիոս Մանիակեսին, որին դեռ Միքայելն էր կալանքից ազատել, մագիստրոսի պատվաստիճան տալով, ուղարկեց որպես Իտալիայի տագմաների զորավար-ավտոկրատոր։ Այդ հարցերնահա այսպես լուծվեցին։ Երբ կայսեր մասին հարց բարձրացավ, և բոլորը որոշեցին կայսր ունենալ, որը օրինավոր կերպով պետք է ամուսնանար Զոեի հետ, վերջինս շտապեց կատապան Կոստանդնին առնել, որին իր վարած նախկին պաշտոնից ելնելով, Արտոկլինես[483] էին անվանում։ Նա գեղեցիկ էր, և ասում էին, թե գաղտնի հարաբերվում է Զոեի հետ։ Սակայն [կատապան Կոստանդնի] կինը թունավորում է ու սպանում ամուսնուն, ոչ թե

որովհետև չէր սիրում նրան, այլ որովհետև ինքը պիտի զրկվեր դեռևս կենդանի ամուսնուց։ Թագուհու ծրագիրն այդպիսով ի դերև եկավ, որի վրա նա աքսորից բերել տվեց Կոստանդին Մոնոմախին, որին Օրֆանոտրոֆոսը այն պատճառով, որ բոլորի մոտ լուրեր էին տարածվում, թե իշխանության է տիրանալու, դատապարտել էր բնակվելու Միտիլենե կղզում։ Թագուհին, երբ մտադրել էր մյուս Կոստանդնին կայսերական գահին նստեցնել, սրան նշանակել էր Հելլադայի դատավոր, բայց քանի որ, ինչպես ասացինք, այդ [Կոստանդինը] թունավորվեց ու մեռավ, հիշյալ Մոնոմախը, վախճանվածի անվանակիցը, կայսրուհու կողմից հարմար համարվեց։ [Մոնոմախը] բերվեց Աթիրոսին շատ մոտիկ գտնվող Դամոկրանիայի Հրեշտակապետի տաճարը, իսկ Թագուհու ներքինի սենեկապաններից մեկը, Ստեփանոս Պերգամացին, այնտեղ ուղարկվեց։ Նա հանեց [Կոստանդին Մոնոմախի] սովորական զգեստը, կայսերական ծիրանին հագցրեց և դրոմոն նստեցնելով, պալատ բերեց[484]։ Երբ նա բերվեց, կայսրուհին ամուսնացավ հետը. պսակադրությունը կատարվեց ձեռամբ Նոր եկեղեցու[485] ավագերեց Ստյուպես կոչվածի։ 6550 թվականի հունիս ամսի 11-ն էր։ Իսկ հաջորդ օրն էլ նրան թագադրեց պատրիարքը[486]։

2. Իշխանության գայիսոնն իր ձեռքը վերցնելով, նա բոլոր սենատորների աստիճանները համապատասխան ձևով բարձրացրեց[487], սիրաշահեց ժողովրդին դրամ բաժանելով։ Նա բոլոր բանակաթեմերը զեկուցագրեր ուղարկեց՝ իր գահ բարձրանալը տեղեկացնող, ամեն տեսակի բարիքների հույս ու առատություն, ամեն տեսակի վատության վերացում խոստացող։ Նա Հովհաննես Օրֆանոտրոֆոսին իր ողջ ունեցվածքով Մոնոբատների վանքից Լեսբոս կղզին փոխադրեց, նախկին կայսր Միքայելին՝ Քիոս, իսկ նոբելիսսիմոս Կոստանդնին՝ Սամոս։ Այդ բոլորը Մոնոմախն արեց իր իշխանության հենց սկզբում, ինդիկտիոնի 10-րդ տա-
1042 րին։ Իսկ 6551 թվականի հոկտեմբեր ամսի 6-ին, ինդիկտիոնի 11-րդ տարին երկնքում՝ արևելքից արևմուտք ընթացող գիսավոր աստղ հայտնվեց, որ այդ ամսում պայծառ երևաց։ Նա կանխագուշակեց աշխարհի գլխին գալիք փորձանքները։ Ստեփանոս-Վոյիսլավը, ինչպես վերևում ասվեց, փախչելով Բյուզանդիոնից և հասնելով Իլլիրիայի լեռները, ասպատակել էր ու ավարառել տրիվալլոսներին[488], սերբերին և հռոմայեցիներին հպատակ հարևան ժողովուրդներին։ Մոնոմախը չկարողանալով տանել

նրա ասպատակությունները, Դյուրախիոնի այն ժամանակվա կառավարիչ (սա պատրիկ Միքայելն էր, լոգոթետ[489] Անաստասիոսի որդին), նամակով կարգադրում է հավաքել Դյուրախիոնի իր զորքերը, ինչպես նաև հարևան բանակաթեմերի՝ իրեն ենթակա զորքերը[490] և հյուսյոստրատեգոսների հետ միասին գնալ տրիվալլոսների [երկիրը]՝ Ստեփանոսի դեմ պատերազմելու։ [Միքայելը], սակայն, ռազմական արվեստից շատ հեռու կանգնած, ստվերի տակ փափուկ մեծացած մարդ էր, այդ իսկ պատճառով նա ապաշնորհ ու ապիկարորեն գործի անցավ և մեծ դժբախտության պատճառ դարձավ հռոմայեցիների պետության։ Նա ստացած հրամանի համաձայն հավաքեց զինված ուժերը, որոնք, ինչպես ասում են, շուրջ վաթսուն հազար հոգի էին, և մըտավ տրիվալլոսների երկիրը, անցնելով զառիվեր, քարքարոտ, գահավեժ ճանապարհներով, այն աստիճանի նեղ, որ երկու ձիավորներ չէին կարող կողք-կողքի գնալ։ Ինչպես պատմում են, սերբերը դիտմամբ նահանջեցին, թույլ տվեցին հռոմայեցիներին մուտք գործել, իսկ [Միքայելն] էլ նահանջի [անվտանգության մասին] հոգ չտարավ, կիրճերում մարտունակ պահպանություն չհաստատեց, այլ մտնելով ավերում ու հրկիզում էր դաշտերը։ Իսկ սերբերը վրա հասնելով, բռնեցին ճանապարհի նեղ ու գահավեժ տեղերը և սպասում էին [հռոմայեցիների] վերադարձին։ Միքայելը գտավ, որ արդեն բավական ասպատակել է, ձեռք բերել բազում ավար ու գերիների, և որ վերադառնալու ժամանակն է։ Բայց երբ [հռոմայեցիները] հասան ճանապարհի նեղ տեղերը, թշնամիներն ահա բարձրից սկսեցին նրանց վրա շպրտել ժայռաբեկորներ, գործի դրեցին աղեղներն ու այլ արձակող զենքերը։ Հսկայական քարեր գլորելով, նրանք կոտորում էին հռոմայեցիներին, իսկ Միքայելի զինվորներն ի վիճակի չէին գործի դնել ո՛չ իրենց ձեռքերը, ո՛չ զենքերը, ո՛չ էլ որևէ առաքինություն ցուցաբերել։ Հարված ստացողները տեղն ու տեղը ընկնում էին, ոմանք գահավեժ էին լինում ու եղկելիորեն սպանվում. մերձակա կիրճերն ու առվակները դիակներով լցվեցին և հալածողների համար անցանելի դարձան։ Մոտ 40 հազար հոգի ըսպանվեց, այդ թվում նաև յոթ զորավար։ Մնացածները, սլահվելով թփուտների, անտառների և ձորերի մեջ, խուսափեցին թշնամիներից և լեռների գագաթները մագլցելով, գիշերով փրկվեցին անձի ու անզեն։ Նրանք ողորմելի ու ողբալի տեսարան էին ներ-

կայացնում։ Փրկվեց նաև Միքայելը՝ նրանց դժբախտությունը կիսած։

3. Մագիստրոս Գեորգիոս Մանիակեսը, որն, ինչպես ասվեց[491], Թագուհի Զոեի կողմից Իտալիա էր ուղարկվել տեղի դրությունը բարելավելու համար (կառավարիչների անփորձության ու ապաշնորհության պատճառով ամեն ինչ տակնուվրա էր եղել և վատ վիճակում էր գտնվում), որոշեց ապստամբություն բարձրացնել։ Անհրաժեշտ է ասել և դրա պատճառների մասին, որպեսզի ընթերցողները ճշգրիտ իմանան։ Երբ Միքայելի կողմից առաջին անգամ Իտալիա ուղարկվեց՝ դաշնակցելու Սիկիլիայի ամիրա Աբուլաֆար Մոհամմեդին, որի դեմ պատերազմ էին մղում հարազատ եղբայրը և աֆրիկացիները, Մանիակեսը իր ծառայության մեջ էր առել Գալլիայի Ալպերի այն կողմի մի երկրամասի անկախ իշխանի՝ Արդուինոսի գլխավորությամբ ուղարկված հինգ հարյուր ֆրանկների, որոնցով սարակինոսներին պարտության էր մատնել։ Երբ իր դեմ ներկայացված ամբաստանության հիման վրա նա պաշտոնանկ արվեց և քաղաք բերվելով բանտ նետվեց, նրա փոխարեն որպես Իտալիայի կառավարիչ պրոտոսպաթար Միքայել Դոկիանոսն ուղարկվեց, անկարող, կառավարելու անընդունակ մի մարդ, որը կարճ ժամանակամիջոցում ամեն ինչ տակնուվրա արեց ու փչացրեց։ Նա ֆրանկներին չէր վճարում սահմանված ամսական ռոճիկը[492], դեռ ավելին, ինչպես պատմում են, նա անարգեց ու խայտառակ կերպով մտրակահար արեց նրանց առաջնորդին, որն իր մոտ էր եկել խնդրելու՝ մեղմ վարվել զինվորների հետ, չզրկել նրանց իրենց աշխատանքի վարձից, որով և ստիպեց այդ մարդկանց ապստամբելու։ Երբ նրանք զենք բարձրացրին, նա չուզեց հավաքել հռոմեական բովանդակ ուժերը և նրանց վրա հարձակվել, այլ Օպսիկիոնի մեկ տագմա վերցնելով և Թրակեսիոնի մի մասը Կաննեում[493], Ամֆիս գետի մոտ, այնտեղ, որտեղ հնում Հաննիբալը կոտորել էր բազմաբյուր հռոմայեցիների, նրանց մարտ տվեց, պարտություն կրեց և կորցնելով իր բանակի մեծ մասը, խայտառակ կերպով փրկվեց հենց Կաննեում։ Այսպիսի հարված ստանալուց հետո էլ նա առակի ձկնորսի խոհեմությունը չունեցավ. նա թշնամիների վրա հարձակվեց ոչ թե իրեն ապահոված լինելով բովանդակ բանակով, այլ հանդգնությունից դրդված։ Վերցնելով պարտություն կրած զինվորներին, ինչպես և պիսիդացիներին ու լիկաոնացիներին, որոնք ֆեդերատ-

ների[494] տագման են կազմում, նա թշնամիների վրա հարձակվեց Հորե կոչվող վայրում, բայց դարձյալ գլխովին պարտվեց. ֆրանկները մեծաթիվ զինակցություն էին ստացել Պադոս գետի շուրջ և Ալպերիստորոտներում բնակվող իտալացիներից։ Երբ կատարվածի մասին իմացավ Միքայել կայսրը, նրան պաշտոնանկ արեց, [նրա փոխարեն] Բոյանին ուղարկեց, որը համարվում էր գործունյա մարդ և հաջող պատերազմող։ Նա սերում էր Բոյանի այն տոհմից, որին Վասիլ կայսրը Իտալիա էր ուղարկել և որը կայսեր համար նվաճել էր ողջ Իտալիան՝ ընդհուպ մինչև Հռոմը։ Բայց սա ևս այդ երկիրը գնալով և իր հետ վերցրած չլինելով ուժեղ ու թարմ զինական ուժ, ստիպված էր Մոնոպոլիսում նախկինում պարտված [հռոմայեցիներով] մարտ տալ թշնամիներին, որոնք ավելի հզոր էին դարձել և պաշտպանում էին երկիրը, այն համարելով իրենց սեփականը։ Բոյանն ահա պարտություն կրեց և իր զորքի հետ գերի ընկավ, իսկ ովքեր կարողացան սրից խուսափել, դեսուդեն ցրվեցին, փրկություն գտնելով դեռևս հռոմայեցիներին հավատարիմ մնացած բերդերում։ Այսպիսով ահա ֆրանկները Իտալիան համարում էին զենքի ուժով նվաճված տիրույթ, տեղաբնիկները, ոմանք կամովին, ոմանք բռնությամբ կամ ստիպված, իրենց կողմն էին անցնում, բացի Բրենտեսիոնից, Հիդրունտից, Տարանտից ու Բարիից։ Այս չորս քաղաքները հավատարիմ մնացին հռոմայեցիներին։ Երբ Միքայել կայսրը վախճանվեց, նրա հաջորդն էլ հեռացվեց թագավորությունից, Մանիակեսը, ինչպես վերևում ասվեց, Զոեի կողմից Իտալիա ուղարկվեց և չնայած կարգին զինական ուժ չուներ, եղած զորքով և զորավարի տաղանդով կարողացավ Իտալիայից դուրս շպրտել ֆրանկներին՝ Կապուայի, Բենեվենդոնի ու Նեապոլի շրջաններից, և որոշ չափով դադար ու անդորր հաստատել։ Այս Մանիակեսը բնակվում էր Անատոլիկոն բանակաթեմում, նա հարևանն էր Ռոմանոս Սկլերոսի և նրա հետ գժտված լինելով, բազում անգամներ փորձել էր սպանել նրան [և կսպաներ], եթե նա իր փրկությունը չապահովեր փախուստի գիմելով։ Երբ հռոմեական պետության գայիսոնն անցավ Կոստանդին Մոնոմախի ձեռքը և Սկլերոսը բարձր դիրքի հասավ (Սկլերոսի քույրը Մոնոմախի հոմանուհին էր), ստանալով մագիստրոսի և պրոտոստրատորի պատվաստիճանները, նա հիշեց Գեորգիոսի՝ իր վրա կատարած հարձակումները, սկսեց չարաշահել իր դիրքը, օգտագործել Մանիակեսի բացակայու-

թյունը։ Նա սկսեց կողոպտել ու ավերել Մանիակեսին պատկանող գյուղերը և անգամ առանց քաշվելու պղծեց նրա մահիճը։ [Մանիակեսն] Իտալիայում իմացավ այդ մասին և զայրույթից ու բարկությունից եռում էր։ Այդ բոլորի վրա, երբ Ռոմանոսի
1042 ջանքերով նա պաշտոնանկ էլ եղավ և ամեն ինչից հույսը կտրեց
հոկտ. (նա գիտեր, որ եթե Բյուզանդիոն վերադառնա, գլխին փորձանք կգա), Իտալիայի [հռոմեական] ուժերը[495] ոտքի հանեց ու գայթակղեցրեց (զինվորները շատ էին ուզում վերադառնալ իրենց հայրենիքը) և կայսեր դեմ զենք բարձրացրեց։ Նրան, ով ուղարկվել էր իր պաշտոնն առնելու, նա սպանեց (սա պրոտոսպաթար Պարդոսն էր, մի բյուզանդացի[496] և ուղարկվել էր կառավարելու նման մի երկիր ոչ թե ինչ-որ իր արժանիքների պատճառով, այլ պարզապես որովհետև կայսեր ծանոթն էր) և գլխին թագ կապելով, առնելով կայսերական նշանակները, կայսրը է հռչակվում, իսկ զինական ուժերն էլ նավ նստեցնելով,
1043 անցնում է Բուլղարիա։ Կայսրը, իմանալով այդ մասին, ընկավ
փետր. անասելի ահ ու սարսափի մեջ, նա [Մանիակեսին] և նրա զինվորներին անվտանգության երաշխիքներ բովանդակող նամակ գրեց՝ զենքերը ցած դնելու կոչով, ամեն տեսակի բարիքների խոստումներով։ Բայց քանի որ Մառնիակեսը անզիջում էր և իր մտադրությունից ետ չկանգնեց, նա էլ հավաքելով իր ուժերը և նրանց վրա զորավար-ավտոկրատոր հաստատելով Դամոկրանիայում իր կայսր դառնալու մասին ավետիսները բերող սևաստոֆորոս[497] Ստեփանոսին ապստամբի դեմ ուղարկեց։ Բանակներն իրար հանդիպեցին Մարմարիոնի Օստրովոս կոչվող տեղում, ճակատամարտում Ստեփանոսի զորքերը պարտություն կրեցին։ Մանիակեսը գնում էր զորքի առջևից և հատանում [հակառակորդի] ռազմաշարքերը։ Նրան կայսր էին ներբողում։ Բայց այդ միջոցին Մանիակեսը հանկարծակի ձիուց գլորվեց ու մեռավ, ոչ ոք չտեսավ ո՞վ նրան խոցեց. նրա կրծքին մահացու վերք կար։ Երբ հակառակորդ զորքը լսում է կատարվածի մասին, կտրում են Գեորգիոսի գլուխը, գերեվարում բոլոր նրանց, ովքեր [Մանիակեսի] հետ զենք էին բարձրացրել. իրենց առաջնորդի սպանությունից հետո նրանք զենքերը ցած գցեցին ու հանձնվեցին։ Կայսեր հաղթանակի ավետիսները տանող սուրհանդակ ուղարկվեց, իսկ մի քանի օր անց [քաղաք] մտավ Ստեփանոսը՝ բերելով Մանիակեսի գլուխը և ռազմագերիներին։ Ստեփանոսը Մեսե պողոտայով հաղթական շքերթ կազմա-



559—15

*կերպեց, որի առջևից նիզակի վրա տանում էին Մանիակեսի գլուխը, իսկ ապստամբներին՝ ավանակների վրա նստեցրած։ Նրանց ետևից սպիտակ ձի նստած գալիս էր [Ստեփանոսը]։ Մանիակեսի [ապստամբությունն] ահա այսպիսի վախճան ունեցավ*[498]*։*

*4. Նույն տարին մի ապստամբություն էլ Կիպրոսում բռնկվեց, որի կազմակերպիչն էր Թեոփիլոս Էրոտիկոսը։ Սա կղզու զորավարն էր, խառը գործեր նախաձեռնող։ Երբ իմացավ Կալաֆատեսի կործանման և պետության մեջ տիրող խառը իրավիճակի մասին, նա դտավ, որ իր ծրագիրն իրականացնելու համար պահը հնչել է, և ոտքի հանելով կիպրացի ողջ ժողովրդին, կազմակերպում է պետական հարկերի պրակտոր*[499] *պրոտոսպաթար Թեոփիլոսի սպանությունը, նրան մեղադրանք ներկայացնելով, թե բարձրացրել է հարկերի չափը։ Բայց Մոնոմախի համար նա մեծ գլխացավանք չեղավ, այնտեղ ուղարկված ծովակալ պատրիկ Կոստանդին Խայեին հաջողվեց կիպրացի համայն ժողովրդին սիրաշահել, ձերբակալել նրան և կայսեր մոտ բերել։ Կայսրը նրան կանացի շորեր հագցրեց, մրցումների ժամանակ ձիարշավարանում ծաղր ու ծանակի ենթարկեց և ունեցվածքը գրավելով, արձակեց։*

1043 *5. Ինդիկտիոնի 11-րդ տարվա փետրվար ամսի 20-ին վախճանվեց Ալեքսիոս պատրիարքը։ Ավետման տոնի օրը նրա աթոռին նստեցրին Միքայել Կերուլարիոսին*[500]*, որը վանական էր. նրան իր նյութած դավերի համար վանք էր աքսորել Օրֆանոտրոֆոսը։ Կայսեր հայտնեցին, թե Ալեքսիոսի վանքում դանձ է հայտնաբերվել. նա մարդ ուղարկեց և առավ այն՝ 25 կենտինարի հասնող մի գումար։ Նույն ինդիկտիոնի մայիսի երկուսին կուրացվում է և Օրֆանոտրոֆոսը՝ Մարյուկատոն կոչվող գյուղում, ինչպես ասում են ոմանք, Թեոդորայի հրամանով. կայսեր կամքին հակառակ։ Բայց շատերի մոտ այն համոզմունքն է տիրում, թե հենց [կայսրն է] նրան կուրացրել, զայրացած լինելով [իրեն] աքսոր ուղարկած լինելու համար։ [Օրֆանոտրոֆոսը] վախճանվում է նույն ամսի 13-ին։ Ինդիկտիոնի նույն տարվա հուլիս ամսին սևաստոֆորոս Ստեփանոսը մեղադրվում է կայսեր դեմ դավադրություն նյութելու մեջ, որ նա ուզում է կայսր դարձնել Մելիտենեի զորավար Լևոն պատրիկին, Լամպրոսի որդուն։ Ստեփանոսի ունեցվածքը գրավվեց և նա վանական խուզվելով, աքսորվեց, իսկ Լամպրոսն էլ անողոքաբար*

*գանահարվեց, կուրացվեց և հրապարակայնորեն ծաղր ու ծանակի ենթարկվելով, փոքր անց մեռավ։*

1043 *6. Ինդիկտիոնի նույն տարվա հուլիս ամսին մայրաքաղաքի վրա ռուս ազգի հարձակում էլ եղավ*[501]*։ [Ռուսները] մինչև այդ համագործակցում էին հռոմայեցիների հետ, հաշտ ու խաղաղ ապրում, աներկյուղ հարաբերվում միմյանց և առևտրականներ ուղարկում ու ընդունում։ Այս ժամանակները, սակայն, Բյուզանդիոնում սկյութ առևտրականների հետ տեղի ունեցած ինչ-որ վեճի ժամանակ կռիվ առաջացավ, որի ընթացքում սպանվեց մի երևելի սկյութ։ Նրանց ազգի այն ժամանակվա իշխան Վլադիմիրը, մի բարկացկոտ ու շատ տաքարյուն մարդ, իմանալով կատարվածի մասին և ազդվելով, առանց հապաղելու վերցրեց իր ողջ զորքը, ինչպես և Օվկիանոսի հյուսիսում գտնվող կղզիների բնակիչներից դաշնակից ռազմիկների, դումարեց, ինչպես ասում են, շուրջ հարյուր հազար հոգու և տեղավորելով մոնոքսիլոն կոչվող նավերի մեջ*[502]*, արշավեց քաղաքի վրա։ Կայսրը, իմանալով այդ մասին, դեսպաններ ուղարկեց, խնդրեց ցած դնել զենքերը, խոստացավ, եթե տեղի է ունեցել որևէ վատ բան, կարգավորել այն, կոչ արեց թույլ չտալ, որ մի աննշան դեպքի համար երկար ժամանակվա ընթացքում ամրապնդված խաղաղությունը վերանա և ժողովուրդներին իրար դեմ չհանել։ Երբ [Վլադիմիրը] ստանալով նամակը, խայտառակ կերպով վռնդեց դեսպաններին, գոռոզ ու ամբարտավան պատասխան տվեց, կայսրը այլևս խաղաղությունն ապահովելու մասին հույսը կտրած, ինքն էլ հնարավորին չափ պատրաստվեց ընդդիմակայելու։ Նախ և առաջ նա մայրաքաղաքում գտնվող սկյութ առևտրականներին, ապա և [սկյութ] դաշնակցային զորքերը ցրիվ տվեց բանակաթեմերում, այդ ձևով նա ապահովեց իրեն ներքին, տվյալ իրավիճակում շատ հավանական վտանգից։ Նա հանդերձեց կայսերական տրիերաները, ինչպես և այլ բազում թեթև ու արագընթաց [նավեր], նրանց մեջ նստեցրեց այն ժամանակ Բյուզանդիոնում գտնվող զինվորներին, ինքն էլ կայսերական դրոմոնը մտնելով, դուրս եկավ սկյութներին ընդառաջ՝ Պոնտոսի մուտքում նավագնացների կողմից Փարոս կոչվող տեղում։ Նրա կողքից ցամաքով առաջ էր շարժվում նաև մեծաթիվ հեծելազոր։ Երբ հակառակորդ ուժերը կանգնեցին դեմառդեմ, ոչ ոք նախահարձակ չեղավ։ Սկյութները հանգիստ կանգնել էին խարիսխ գցած իրենց նավահանգստում, իսկ կայ-*



15*

*սըրն էլ նրանց շարժվելուն էր սպասում։ Քանի որ ժամանակը գնում էր և արդեն ուշ էր, կայսրը դարձյալ դեսպաններ ուղարկեց խաղաղության մասին խոսելու, բայց բարբարոսը վերստին նրանց անարգելով ետ ուղարկեց, հայտնելով, որ եթե կայսրն ուզում է, որ ինքը զենքերը ցած դնի, թող իր յուրաքանչյուր զինվորին երեքական լիտր ոսկի վճարի։ Նման պահանջը կայսըրն անիրագործելի համարելով, որոշեց անցնել գործի։ Քանի որ [սկյութները] անշարժ կանգնած էին, կայսրը մագիստրոս Վասիլ Թեոդորականին[503] հրամայեց երեք արագընթաց տրիերա վերցնել, գնալ և հեռամարտությամբ փորձել սկյութներին մարտի ներքաշել։ Վասիլը, վերցնելով տրիերաները և սկյութներին մոտենալով, ոչ թե հեռամարտությամբ ուզեց նրանց ներքաշել, այլ խուժելով նրանց շարքերը, արհեստական կրակով[504] հրկիզեց նավերից յոթը, իսկ երեք նավ մարդկանցով հանդերձ ջրասույզ արեց։ Նա տիրացավ նաև մի այլ նավի, անձամբ նրա մեջ թռնելով։ Նավի մեջ եղածների մի մասին նա սրի քաշեց, մյուսները զենքերը ցած դրեցին՝ Վասիլի հանդգնության վրա զարմացած։ Սկյութները նավատորմիղով առաջ շարժվող կայսրին տեսնելով և, բնական է, մտածելով, որ եթե լոկ երեք տրիերաներ իրենց այդ օրը գցեցին, ապա ի՞նչ կլինի, երբ ստիպված լինեն մարտի բռնվել ողջ նավատորմիղի հետ, որոշեցին փախուստի դիմել։ Ընկնելով խութեր ու ստորջրյա ժայռեր ունեցող վայրեր, նրանք կորցրին նավերի մեծ մասը. բացի այդ, նրանց վրա սկսեցին հարձակվել ու կոտորել նաև ցամաքով մոտիկից ընթացող զինվորները։ [Պատերազմից] հետո ծովի ափերին մնաց շուրջ 15 հազար դիակ։ Սկյութների պարտությունից հետո կայսրը ամբողջ երկու օր մնաց այնտեղ, իսկ երրորդ օրը պարակիմոմենոս Նիկոլայոսի և մագիստրոս Վասիլ Թեոդորականի հրամանատարության ներքո երկու տագմա և, այսպես կոչված, հետերիաները թողնելով ափերը հսկելու, շրջելու և պահպանելու, որպեսզի հանկարծ բարբարոսների ափհանում չլինի, բովանդակ նավատորմիղին էլ հրամայելով մնալ Փարոսում, վերադարձավ մայրաքաղաք։ Կայսրն ահա այդ բանն անելուց հետո մտավ Բյուզանդիոն, իսկ պարակիմոմենոսի և Թեոդորականի զորքերը շրջում էին այն ափերով, որտեղ [թշնամու] պարտությունից հետո ալիքները ափ էին նետել բարբարոսների դիակները։ Նրանք ձեռք գցեցին բաղում ավար ու կապուտ։ Նավատորմիղից անջատված քսանչորս տրիերաներ սկսեցին հե-*

տապնդել փախուստի դիմող բարբարոսներին։ Բարբարոսները մի ծոցում խարիսխ էին գցել, երբ իրենց կողքից անցան այդ հետապնդող [նավերը]։ Սկյութները տեսան նրանց փոքրաթվությունը, հաստատ համոզվեցին, որ հենց այդքանն են, և թերակղզու երկու կողմից, թևերից առաջ անցնելով և արագ թիավարելով, ջանում էին հակառակորդներին օղակի մեջ առնել։ Թիավարությունից ու հետապնդումից ուժասպառ հռոմայեցիները բարբարոսական նավերի մեծաթվության առաջ ահ ու դողի մեջ ընկան ու դիմեցին փախուստի։ Բայց բարբարոսների նավերը հասցրին փակել ծոցի բերանը և այլևս անհնարին էր դեպի բաց ծով դուրս գալը։ Կիբիրրեոտների [բանակաթեմի] զորավար պատրիկ Կոստանդին Կավալլարիոսը իր մնացած տասը տրիերներով քաջաբար մարտի նետվեց և արիաբար մարտնչելով, սրախողխող արվեց։ [Թշնամու] ձեռքն անցան չորս տրիերա և ծովակալի նավն անձնակազմով հանդերձ, որ սրի քաշվեց։ Հռոմեական մնացած նավերը շպրտվելով ժայռերի, քարքարոտ ափերի և ապառաժների վրա, ջարդուփշուր եղան, նրանց անձնակազմի մի մասը ջրասույզ եղավ, մյուսն էլ՝ ընկնելով բարբարոսների ձեռքը, խողխողվեց ու ստրկության քշվեց։ Վերապրողները ցամաքի վրայով անզեն ու մերկ ապաստան գտան իրենց ճամբարում։ Սկյութներր տեսնելով, որ իրենց ծրագրերը չեն իրականանում, որոշեցին տունդարձի ճանապարհը բռնել։ Նրանք վերադառնում էին ոչ միայն ծովով, այլև ցամաքով (նրանց նավերը բոլորին չէին բավականացնում, քանզի մի մասը անցած ժամանակ ջրասույզ արվեց կամ ընկավ [հակառակորդի] ձեռքը, մյուսն էլ ալեկոծության ու փոթորիկի ժամանակ ջարդ ու փշուր եղավ, դրա պատճառով էլ նրանցից շատերը ցամաքով էր դնում)։ Վառնա[505] կոչվածի ծովափին նրանց հանդիպեց վեստ Կատակալոն Կեկավմենոսը, Իստրոս [գետի] շրջանի քաղաքների ու շրջանների կառավարիչը և կռվի բռնվելով, պարտության մատնեց, շատերին կոտորեց, իսկ ութ հարյուր հոգու գերի վերցրեց և շղթայակապ կայսեր ուղարկեց։ Այս այրը, (երբ սրանից առաջ սկյութները ելնելով իրենց երկրից, շարժվում էին դեպի մայրաքաղաքը և ոտք դնելով իրեն ենթակա շրջանները, ավարառություններ էին գործում), հավաքելով իր զորքերը, նրանց հետ կռվի բռնվեց և արիաբար մարտնչելով, գլխովին պարտության մատնեց թշնամուն, ստիպեց փախուստի դիմել դեպի իրենց նավերը։ Տվյալ դեպքում էլ նա հսկում էր իրեն ենթակա

ծովափնյա շրջաններին, սպասում իրերի վախճանին և ընդդիմակայելով վերադարձի ճամփան բռնած [սկյութներին], քաջաբար մարտնչեց ու արեց այն, ինչ վերևում ասացինք[506]։

1043 7. 6552 թվականի սեպտեմբեր ամսին, ինդիկտիոնի 12-րդ
տարին, սաստիկ քամի փչեց, այն աստիճան, որ փչացավ այ-
1044 գիների բերքը։ Այդ տարվա մարտ ամսի 9-ին, 40 վկաների տոնակատարության ժամանակ, երբ կայսրը որոշել էր թափորով գնալ սրբերի երկրպագության, դեմոսը նրա դեմ խռովություն բարձրացրեց։ Կայսրը մեծ շքախմբով ու փառաբանությամբ հետիոտն պալատից դուրս եկավ, հասավ Խալկեի Փրկչի տաճարը և այնտեղից պետք է ձի նստեր ու գնար մարտիրոսնեփի սրբարանը, երբ հանկարծակի ամբոխի միջից մի ձայն լսվեց. «Մենք չենք ուզում Սկլերենային[507] թագուհի, ոչ էլ այն, որ նրա պատճառով մեռնեն մեր մայրեր՝ ծիրանածիններ Զոեն և Թեոդորան»։ Ամեն ինչ իսկույն խառնվեց իրար, ամբոխն ընկավ խուճապի մեջ. ուզում էին կայսեր սպանել։ Եթե թագուհիները շտապ կարգով պատշգամբ դուրս գալով չհանգստացնեին ամբոխին, շատերը զոհ կգնային, գուցե և հենց ինքը՝ կայսրը։ Երբ կրքերը խաղաղվեցին, [կայսրը] պալատ վերադարձավ, հրաժարվելով մարտիրոսների [սրբարանը] գնալու մտքից։

1044/ 8. Ինդիկտիոնի 13-րդ տարին սկիզբ առավ պատերազմն
1045 ընդդեմ Անիի։ Բայց նախապես պատմենք, թե ի՞նչն էր պատճառը, որ Անիի տոպարխը[508] հանգիստ նստած, ոչ մի արտառոց բան չարած, Կոստանդին կայսրը դիմեց պատերազմի։ Երբ իբերների[509] առաջնորդ Գեորգիոսը[510] հռոմայեցիների դեմ զենք բարձրացրեց, նրան զինակցություն ցուցաբերեց Անիի շրջանին տիրող Հովհաննեսիկը[511]։ Բայց երբ, ինչպես նախապես ասվեց, Վասիլ
1021/ կայսրը բարձրանալով Իբերիա, ճակատեց Գեորդիոսի դեմ, նրան
1022 պարտության մատնեց ու ոչնչացրեց, Հովհաննեսիկը ահ ու դողի մեջ ընկավ, մտածելով, որ կայսրը Գեորգիոսին՝ իր ցուցաբերած զինակցության համար գլխին փորձանք կբերի։ Դրա համար ահա, վերցնելով քաղաքի բանալիները, անձամբ գնում է կայսեր մոտ, կամավոր հանձնվում նրան և ընձեռում բանալիները։ [Կայսրը] ընդառաջ գնաց նրա խելամտությանը, մագիստրոսի պատվաստիճան շնորհեց և նշանակեց Անիի ու Մեծ Հայք կոչվածի ցմահ կառավարիչ, նրանից գրավոր փաստաթուղթ պահանջելով, թե իր՝ Հովհաննեսիկի մահից հետո համայն իշխանությունը դառնում է հռոմեական պետության բաղկացուցիչ

մասը։ Այդպես էլ եղավ[512]։ Կայսրը վախճանվում է, բազում տարիներ անց վախճանվում է և Հովհաննեսիկը, որի մահից հետո նրա իշխանությունը ժառանգած որդի Գագիկը[513], թեև [շարունակում էր] հռոմայեցիների հետ խաղաղություն ու զինակցություն պահպանել, բայց իր ձեռքում էր պահում նաև հորենական իշխանությունը և չէր ուզում այն հռոմայեցիներին զիջել, հակառակ հոր թողած փաստաթղթի։ Մոնոմախը արքունիքում գտնելով այդ փաստաթուղթը, և՛ Անին էր պահանջում, և՛ բովանդակ Մեծ Հայքը՝[514] որպես Վասիլ կայսեր ժառանգորդը։ Այն պատճառով, որ [Գագիկը], թեև իրեն հռոմայեցիների ծառան[515] էր խոստովանում, չէր ուզում հրաժարվել հորենական իշխանությունից, կայսրը վճռեց պատերազմել։ Նա զորահավաք արեց, զորքը հանձնեց վեստ Միքայել Իասիտեսին, որը մինչ այդ Իբերիայի[516] կառավարիչ էր նշանակվել, մտադիր լինելով Գագիկի դեմ պատերազմել։ [Իասիտեսը] գնաց և ջանաց հնարավորության սահմաններում ի կատար ածելու հրամանը։ Գագիկն իմանալով այդ, տեսնելով, որ բարեկամի և զինակցի փոխարեն թշնամի է համարվել, ինքն էլ իր զինական ուժերը հավաքելով, իր կարողությունների սահմաններում գիմադրում էր իր վրա հարձակվողներին։ Այն պատճառով, որ Իասիտեսի գործերը վատ էին ընթանում, ծանր ուժով ուղարկվեց սխոլերի դոմեստիկոս պրոեդրոս Նիկոլայոսը[517], Կոստանդին կայսեր պարակիմոմենոսը, որպեսզի քանակական ու զորության [գերակշռությամբ] Գագիկին պարտության մատնի[518]։ Միաժամանակ Դվինի և Արաքս գետի շուրջ ընկած Պերսարմենիայի կառավարիչ Ապլեսփարեսին կայսեր նամակն ուղարկվեց, որով կոչ էր արվում ասպատակել Մեծ Հայքը և Գագիկին ենթակա երկիրը[519]։ Նիկոլայոսը գնաց ու գործի անցավ, նամակն էլ ուղարկեց Ապլեսփարեսին, իր կողմից էլ գրեց ու հրահրեց, նվերներով ու խոստումներով նրան դրդեց՝ կյանքի կոչեց կայսեր կամքը։ [Ապլեսփարեսը], ստանալով նամակները, պատասխանեց, թե հրամանը կկատարի, եթե իրեն կայսերական հրովարտակ ուղարկվի այն բանը հաստատող, թե ինքը որպես տեր կտիրի Գագիկին պատկանող բոլոր այն բերդերին ու շրջաններին, որոնք կկարողանա գրավել պատերազմի օրենքով։ Կայսրը համաձայնվեց դրան և խրիսովուլ գրությամբ հաստատեց Ապլեսփարեսի պահանջը, որը փաստաթուղթն ստանալուց հետո, գործի լծվեց։ Նա պաշարմամբ գրավեց Գագիկին պատկանող բազմաթիվ ամրոցներ ու շրջաններ։

Գագիկը մի կողմից պատերազմ մղելով հռոմեական բանակի դեմ, մյուս կողմից ենթարկվելով Դվինի կառավարչի ասպատակություններին, կատարյալ հուսաբեկ եղած, պարակիմոմենոսի հետ հաշտություն է կնքում և նրա միջոցով հանձնվում կայսեր ու տալիս [Անի] քաղաքը։ Գալով կայսեր մոտ, նա մագիստրոսի պատվաստիճան ստացավ, շատ եկամտաբեր շրջաններ Կապադովկիայում, Խարսիանոնում, Լիկանդոսում, և այսուհետև խաղաղ ու անվրդով կյանք ապրեց[520]։ Մոնոմախը սկսեց պահանջել Դվնեցու[521] գրաված բերդերն ու շրջանները՝ որպես Անիի բաղկացուցիչ մասեր, և քանի որ [Դվնեցին] չէր ուզում կամովին հրաժարվել դրանցից՝ ներկայացնելով խրիսովուլ փաստաթուղթը, նրան պատերազմ է հայտարարում։ Մոնոմախը դարձյալ հրաման է տալիս պարակիմոմենոսին[522] հռոմեական զինական ուժով, իբերական զորքով[523], ինչպես և Մեծ Հայքի առկա և Անեցու հրամանատարության տակ գտնվող ուժով[524], պատերազմել Ապլեսփարեսի դեմ։ Պարակիմոմենոսը հավաքեց բոլոր ուժերը, և նրանց հրամանատար կարգելով վեստարխ Միքայել Իասիտեսին[525] և իր ծառա[526] մագիստրոս Կոստանդին Ալանին, Դվինի դեմ ուղարկեց։ Ապլեսփարեսը արտակարգ հմուտ, անօրինակ զորական էր, թշնամու զենքն ու միտքը հաղթահարելու ընդունակ։ Գիտակցելով, որ ինքն ի վիճակի չէ ընդդիմակայելու հռոմայեցիների զինյալ ուժերին, փակվեց [քաղաքի] պարիսպների ետևում, մոտիկից հոսող գետի հունը փոխեց, ողողեց համայն դաշտը և այն տիղմի վերածելով (այն կավային էր ու ճահճոտ), սպասեց հակառակորդների գալստյան։ Նա հետևակ նետաձիգներին ցրեց քաղաքի շուրջն ընկած այգիներում, հրամայեց նրանց թաքնվել ու սպասել իր շեփորի ձայնին։ Հռոմայեցիների զորահրամանատարները նրանց քաղաքում փակվելը և դաշտը ողողելը վախի ու հուսալքության ապացույց համարելով, անկազմակերպ ու ցրված, ոմանք ձիուց ցած իջած, ոմանք ձի նստած, ցանկացած տեղով շտապում էին դեպի քաղաք՝ մեկ հարվածով այն գրավելու։ Երբ նրանք գտնվում էին այգիների մեջ ընկած շավիղներում և ընդհուպ մոտեցել էին քաղաքին, Ապլեսփարեսը հնչեցրեց շեփորը և հրամայեց գործի անցնել։ Դարան մտած հետևակայինները դուրս գալով՝ ոմանք աղեղով, ոմանք քարերով հարվածում էին [հռոմայեցիներին], որոնք չէին կարող թշնամիներին դիմադրել, քանզի ուրիշներն էլ խոցում էին իրենց պարսպի ատամնաշարի վրայից։ Հռոմայե-

ցիները կատարյալ պարտություն կրեցին, նրանցից անհամար
բազմություն սրի քաշվեց, քանզի ձիերը ընկնելով ցեխի ու ճա-
հիճների մեջ, չէին կարողանում փախչել։ Իասիտեսն ու Կոստան-
դինը հազիվ փախան Անի և բոթը բերեցին Նիկոլայոսին։ Երբ աղե-
տի մասին կայսրն իմացավ, Նիկոլայոսին ու Իասիտեսին պաշտո-
նանկ արեց. Իասիտեսի փոխարեն Իբերիայի դուքս նշանակվեց Կե-
կավմենոսը[527], իսկ Նիկոլայոսի փոխարեն զորավար-ավտոկրատոր
նշանակվեց մեծ հետերիարխ[528], ներքինի Կոստանդինը, ծագու-
մով սարակինոս։ Նա կայսեր ծառայել էր նախքան նրա դահ բարձ-
րանալը և նրան հավատարիմ էր։ Սրանք ահա տեղ հասնելով և
հավաքելով զինված ուժերը, գործի անցան։ Նրանք չուզեցին
հարձակվել Դվին քաղաքի վրա[529], որը համայն ազգի մայրա-
քաղաքն է, այլ փորձեցին [տիրանալ] Անիի ստորանկյալ բեր-
դերին, դրավեցին գահավեժ տեղանքում գտնվող շատ անառիկ
Սուրբ Մարիամը[530], Ամբերդ կոչվածը[531], Սուրբ Գրիգորը[532]։ Ապ-
լեսֆարեսը բազմիցս անգամ փորձեց պաշարյալներին օգնու-
թյան հասնել, բայց ամեն անգամ պարտություն կրեց։ Նրանք
եկան նաև Խելիդոնիոն կոչվող բերդը[533], որը գահավեժ լեռան
վրա է կառուցված և գտնվում է Դվինից ոչ հեռու։ Ահա այդ
բերդը խրամատներով ու ցանկապատով օղակի մեջ առնելով,
ջանում էին [երկարատև] պաշարմամբ տիրանալ. պաշարյալնե-
րը պարենի սպակաս էին դգում, անակնկալ հարձակման պատ-
ճառով նրանք չէին հասցրել իրենց պարենով ապահովել։ [Հռո-
մայեցիները] այս [բերդն] էլ կգրավեին, եթե Արևմուտքում
1047 հանկարծակի չբռնկվեր պատրիկ Լևոն Թոռնիկի ապստամբու-
թյունը[534]։ Սա, երբ Իբերիայի զորավարն էր[535], ամբաստանվեց
ապստամբություն նախապատրաստելու մեջ, որի համար պաշ-
տոնանկ արվեց, բռնի վանական խուզվեց և քաղաք բերվելով,
տնային կալանքի դատապարտվեց իր տանը՝ Ադրիանուպոլ-
սում[536]։ [Թոռնիկը] իր նկատմամբ կատարված անօրինություն-
ները հանգիստ չտարավ։ Աստիճանաբար նա սիրաշահեց Ադ-
րիանուպոլսի շնորհազրկված ու պաշտոնազուրկ զորավարներին,
ապա նրանց և իր ազգականների միջոցով կամաց-կամաց գաղ-
թակղեցրեց մակեդոնական և թրակական տագմաների հրամա-
նատարներին, զորացրված զինվորներին, հափշտակությունների
ու թալանի սիրահարներին և զգալի ուժ կազմելով կայսր հռչակ-
վեց, որից հետո իր ամբողջ զորքը վերցնելով, հանկարծակի
հայտնվեց մայրաքաղաքի առջև։ Կայսրը նրան ընդդիմակայե-

լու բավարար զորք չուներ, ոչ էլ հավատում էր, թե քաղաքացի-
ները իր նկատմամբ սեր ու հավատարմություն կցուցաբերեն,
դրա համար Իբերիա՝ Կոստանդնի մոտ պետական ձիերով սուր-
1047 հանդակ է ուղարկվում՝ կայսերական նամակով, որով հրամայ-
սեպտ. վում էր ձեռքի գործը թողնել և [զինական] ուժերով շտապ
մայրաքաղաք վերադառնալ։ [Կոստանդինն] նամակն ստանա-
լով, հակառակ այն բանի, որ համարյա գրավել էր բերդը, վե-
րացնում է պաշարումը, Ապլեսփարեսի հետ հաշտություն կըն-
քում, ստանում նրա ուխտ ու երդումով հաստատված [հավաս-
տիացումը] կայսեր հանդեպ տածելիք բարյացակամության մա-
սին, որ երբևիցե չի ծրագրելու որևէ վատություն ընդդեմ հռո-
մայեցիների, որից հետո վերցնելով զորքերը շտապում է դեպի
մայրաքաղաք։ Խելիդոնիոնն ահա այսպես խույս տվեց գրավու-
մից։ Կոստանդինը արևելից տագմաներով և բովանդակ զորքով
վերադարձավ, ինքը մտավ մայրաքաղաք, իսկ ողջ բանակը, կայ-
սեր հրամանով տեղափոխվեց Թրակիա. մինչ այգ, հիշյալ
զորքի մի մասը մայրաքաղաքի, նեղուցի դիմացի ափը գտնվող
Խրիսուպոլսում էր մնում, մյուսը՝ Հելլեսպոնտոսում գտնվող
Աբյուդոսում։ Բայց [դրանք Թրակիա տեղափոխվեցին] հետա-
գայում։ Նախքան զինված ուժերի տեղ հասնելը, սեպտեմբեր
ամսին, ինդիկտիոնի առաջին տարին Թոռնիկը, ինչպես ասվեց,
կայսր հռչակվելով, կայծակի արագությամբ քաղաք է հասնում,
հույս ունենալով մեկ հարվածով այն գրավել, քանզի կայսրն
անհրաժեշտ զորք չուներ։ Նա Վլախերնայի դիմաց, Սուրբ Անար-
ծաթից վանքին շատ մոտ խարաքս[537] դրեց և սկզբում փորձում
էր խոսք ու խոստումով քաղաքացիներին սիրաշահել, բայց երբ
ոչ ոք ուշադրություն չդարձրեց իր ասածին, անցավ գործի։
Կայսրը քաղաքացիներով և պատահաբար տեղում հայտնված
զինվորներով [հակառակորդի] դեմ կանգնեց։ Քաղաքացիներին
ու դեմոսին նա պարսպի վրա դասավորեց, իսկ տեղում հայտնված
զինվորներին, ինչպես և նրանց, ովքեր իր հրամանով սենատի գրլ-
խավորները զինեցին, հազարից ոչ ավելի մարդ, Վլախերնայի
դարբասի միջով պարսպից դուրս հանելով, կանգնեցրեց ապրս-
տամբին դեմառդեմ, նրանց առջև հակառակորդի հարձակմանը
խոչընդոտող խրամ փորելով, թեև անհրաժեշտ էր, որ նրանք
դարբասից ներս գտնվեին և պարիսպներից պաշտպանվեին։ Մա-
գիստրոս Արգիրոս Իտալոսը աղաչում էր դուրս չգալ, մնալ ներ-
սում և փոքրաթիվ զինվորներով, պատերազմելու փորձ չունե-

ցող ժողովրդով չճակատել մոլեգնած, բռնկված, պատերազմական փորձ ունեցող զորքի հետ։ Բայց նա չկարողացավ նրան համոզել, քանզի իրեն հակադրվում էր Կոստանդինը, Լիխուդես մականվանյալը, որ այն ժամանակ կայսեր կողմից գլխավոր էր նշանակված և նրա վրա մեծ ազդեցություն ուներ, բացի այդ [դրսում կռվելու] միտքն իրենն էր։ Եվ ահա, երբ ապստամբն իմացավ, որ նրանք երեկոյան դուրս են եկել, զինեց իր զինվորներին և ուժեղ թափով հարձակվեց՝ կայծակի արագությամբ անցնելով խրամը, պարտության մատնեց նրա ետևում գտնվողներին, որոնց մի մասը գերի ընկավ, իսկ մյուսը՝ փախչելով դեպի քաղաքի խրամը, վայր ընկավ և չարաչար կոտորվեց։ Փախուստի էին դիմում քաղաքացիները՝ իրենց պարսպից ցած գահավիժելով, նաև՝ Վլախերնայի պարսպի դարբասպանները՝ դարբասները բացելով։ Եթե բախտը ինչ որ տեղում չդավաճաներ Թոռնիկին, նա հեշտությամբ մուտք կգործեր և ամեն ինչի տերը կդառնար։ Բայց նա [հակառակորդներին] հետապնդելով մինչև պարսպի մոտ գտնվող խրամը, կանգ առավ, որի ընթացքում կայսեր կողմնակիցները դարձյալ գոտեպնդվելով, տիրացան դարբասներին և զբաղվեցին պարիսպների պահպանությամբ։ Այն ժամանակ կայսրն էլ քիչ էր մնացել նետահար լիներ ու սպանվեր, բայց իսկապես աստված փրկեց նրան. նետը խրվեց սպասավորներից մեկի կոնաձև գլխանոցին, որը փրկեց և գլխանոցը կրողին, և կայսեր։ Ընկնելու մոտ գտնվող քաղաքն ահա այսպես փրկվեց, ապստամբը ճամբարում մի քանի օր մնալուց հետո, այնտեղից վեր կացավ ու վերադարձավ Արկադիուպոլիս։ Պատճառն այն էր, որ իր մարդիկ կամաց-կամաց հեռանում էին, կամովին կայսեր կողմն անցնում, նա վախեցավ, որ բոլորն էլ իրեն կլքեն, կհեռանան, գուցե անգամ կբռնեն ու կայսեր ձեռքը կհանձնեն։ Թոռնիկը Հովհաննես Բատացեսի հետ բանակեց այնտեղ ու սպասողական վիճակում էր, իսկ իր արյունակից ազգականներ՝ արևմտյան տագմաների հրամանատարներ Թեոդորոսին (մականունը Ստրավոմիտես), Պոլյուս կոչվածին և Մարիանոս Բրանասին ուղարկեց պաշարելու Ռեդեստոս քաղաքը։ Այնպես պատահեց, որ մակեդոնական ու թրակական քաղաքներն իր կողմն էին անցել բացի [Ռեդեստոսից], որը քաղաքի եպիսկոպոսի և տեղացի ոմն մեծատան՝ Բատացիս կոչվածի՝ Թոռնիկի ազգականի ջանքերով հավատարիմ էր մնացել կայսեր։ Այն պատճառով, որ նրանք գնալով այնտեղ ժամավաճառ եղան

և ոչինչ գլուխ չբերեցին, նա էլ բովանդակ բանակով գնաց այնտեղ, քաղաքի վրա գրոհեց, գործի գրեց ամեն տեսակի մեքենաներ, բայց չորս կողմից դիմադրության հանդիպեց (պաշարյալները քաջաբար ետ էին մղում մեքենաները), դրա համար նա վերացնելով պաշարումը Արկադիուպոլիս վերադարձավ։ Հենց այդ միջոցին արևելյան զորքերը Խրիսուպոլսից ու Աբյուգոսից անցան Թրակիա։ Կայսրը նրանց զորավար նշանակելով մագիստրոս Միքայել Իասիտեսին[538], ապստամբի դեմ ուղարկեց։ Վերջինս ուժերը մի տեղում հավաքելով, ապստամբների դեմ հանդիման, նախահարձակ չէր լինում, այլ միայն ասպատակում էր ապստամբներին պատկանող շրջանները, իր ձեռքն ընկնողների նկատմամբ մարդասիրաբար էր վարվում, [ապստամբներին] ծածուկ նամակներ էր ուղարկում՝ ներում խոստանալով և առատ պարգևատրություն։ Երբ վրա հասավ ձմեռը և իրենք ապրստամբներն ու նրանց գրաստներն ու ձիերը պարենի պակաս զգացին, ի վիճակի չլինելով ընդդիմակայել և՛ սառնամանիքին, և՛ սովին, և՛ հակառակորդներին, կամաց-կամաց սկսեցին անցնել մագիստրոսի կողմը։ Քանի դեռ դասալքությունն անկարևոր մարդկանց շարքերում էր և ոչ անվանիների, Թոռնիկը ապաստողական վիճակում էր և սնվում էր հույսերով։ Բայց երբ Մարիանոս Բրանասը, Պոլյուսը, Թեոգորոս Ստավրոմիտեսը, Գլավայի ընտանիքին պատկանողները և նշանավոր այլ անձինք, իրեն լքեցին ու Իասիտեսի կողմն անցան, Թոռնիկը ապըստամբների ճամբարում իրենից հետո երկրորդ մարդը համարվող Հովհաննես Բատացեսի հետ դիմեց փախուստի, բայց քանի որ հնարավոր չեղավ ճողոպրել, ապավինեց ինչ-որ եկեղեցում, իսկ ապստամբների խաժամուժը ցրվեց։ Իասիտեսը մարդ ուղարկեց և ձերբակալելով նրանց, շղթայակապ կայսեր ուղարկեց, իսկ զինվորներից յուրաքանչյուրը կայսեր հրամանով իր հայրենիքը վերադարձավ։ Թոռնիկն ու Բատացեսը կուրացվեցին Քրիստոսի
25—XII ծննդյան օրվա երեկոյան[539], ապստամբին մինչև վերջ հավատա-
—1047 րիմ մնացածները հրապարակայնորեն ծաղր ու ծանակի ենթարկվելով, աքսոր ուղարկվեցին, իսկ նրանց ունեցվածքն էլ բռնագրավվեց։ Ապստամբությունն ահա այսպիսի վախճան ունեցավ[540], որին հաջորդեցին թուրքերի փորձանքները։

9. Ովքե՞ր են թուրքերը և ի՞նչ ձևով սկսեցին պատերազմել հռոմայեցիների դեմ, ես հեռվից սկսելով, կպատմեմ։ Թուրքաց ազգը հոնական է և բնակվում է Կովկասյան լեռների հյուսիսում։

Այն բազմամարդ է, ինքնավար և ոչ մի ժամանակ, ոչ մի ազգի կողմից չի հպատակվել։ Երբ սարակինոսները վերացրին պարսից իշխանությունը և սարակինոսների տիրապետությունը տարածվեց ոչ միայն Պարսկաստանի, Մարաստանի, Բաբելոնի և Ասորեստանի, այլև Եգիպտոսի, Լիբիայի և Եվրոպայի ոչ փոքր մասի վրա, և այն պատճառով, որ տարբեր ժամանակներում նրանք իրար դեմ պատերազմելով այդ միասնական, մեծագույն իշխանությունը բազում մասերի տրոհվեց, Իսպանիան ունեցավ մի առաջնորդ, Լիբիան՝ մի ուրիշը, նույն ձևով առանձին առաջնորդներ ունեցան Եգիպտոսը, Բաբելոնը, Պարսկաստանը։ Նրանց միջև համերաշխություն չկար, դեռ ավելին, հարևանը հարևանի դեմ էր պատերազմում։ Վասիլ կայսեր ժամանակ Պարսկաստանի, խորեզմցիների, օրետանների և Մարաստանի առաջնորդ Մոհամմեդը՝ Իմբրայելի որդին, պատերազմ էր մղում հնդիկների և բաբելացիների դեմ, բայց պարտություն էր կրում, դրա համար նա որոշեց դեսպանություն ուղարկել Թուրքիայի իշխանի մոտ և նրանից զինական օգնություն աղերսել։ Նա դեսպանություն է առաքում նրա մոտ, թանկագին ընծաներ և խնդրում իրեն երեք հազար հոգուց բաղկացած զինական օգնություն։ [Թուրք իշխանը] շատ սիրալիր ընդունեց դեսպանությանը, ուրախացավ նվերների վրա, և նրան ուղարկեց երեք հազար մարդ. նրանց առաջնորդն էր Միքեէլի[541] որդի Տողրուլ բեկ[542] Մուկալետը։ [Թուրք իշխանը] հույս ուներ, որ եթե այդ [երեք հազար հոգին] կարողանան ետ մղել սարակինոսների վրա հարձակվողներին, շատ հեշտությամբ մատչելի կդարձնեն Արաքս գետի կամուրջը, որը երկու կողմից աշտարակներով ու ամեն կողմից պահապաններով պաշտպանված լինելով, խոչընդոտում է թուրքերի մուտքը Պարսկաստան[543]։ Նա հույս ուներ, որ նրանք կոչնչացնեն պահապաններին և պարսից երկիրն իրեն կհպատակեցնեն։ Երբ վարձկանները տեղ հասան, Մուհամմեդը նրանցով ու իր ուժերով հարձակվում է արաբների իշխան Պիսասիրիոսի[544] վրա և հեշտությամբ պարտության մատնում. արաբները չկարողացան դիմանալ նետաձգությանը։ Վերադառնալով իր տեղը, նա ջանում էր [թուրքերի] օգնությամբ ընկճել նաև իր դեմ պատերազմող հնդիկներին։ Բայց [թուրքերը], որոնց վստահված էր Արաքսի կամրջի պահպանությունը, նրանից խնդրեցին թույլ տալ վերադառնան իրենց երկիրը, բայց քանի որ նա չընդառաջեց նրանց և մտադիր էր իրենց նկատմամբ բռնություն բանեցնել,

Նրանք երկյուղելով հնարավոր փորձանքից, ապստամբեցին։ Նրանք մուտք գործեցին Կարբոնիտես անապատը, բայց լինելով փոքրաթիվ, չհամարձակվեցին այդքան բյուրավորների դեմ ճակատել, դրա համար սկսեցին այնտեղից հարձակումներ գործել, ասպատակել ու տակնուվրա անել սարակինոսների [շրջանները]։ Այդ բանը Մոհամմեդին զայրացրեց և նա 20 հազարանոց զորք հավաքելով, Թուրքերի դեմ ուղարկեց, նրա վրա նշանակելով ամենատոհմիկ ու խոհեմ, սարակինոսների շրջանում արիությամբ աչքի ընկած տասը զորավարների։ Ահա սրանք ճանապարհ ընկան պատերազմելու, բայց մտածելով, որ ձեռնտու չէ մուտք գործել անապատ, որտեղ ջրի ու պարենի պակասություն կզգային, բանակեցին անապատի մուտքին մոտիկ, խորհելով իրենց անելիքի շուրջը։ Տողրուլ բեկը բանակել էր անապատի խորքում։ Իմանալով պատրաստված արշավանքի մասին, նա խորհրդակցեց իր մարդկանց հետ և գտավ, որ սարակինոսների և պարսիկների վրա նպատակահարմար է գիշեր ժամանակ հարձակվել։ Նա երկու օր արագ քայլով գնաց և երրորդ օրվա գիշերը հարձակվեց վրանների տակ անհոգ նստածների և ոչ մի վտանգ չակնկալողների վրա։ Նա իսկույն նրանց պարտության մատնեց, տիրացավ բազում զենքերի, ձիերի, հարստության և այսուհետև ասպատակում էր ոչ թե փախստականի կամ ավազակի նման թաքուն կերպով, այլ ակնհայտ ու բաց դաշտում, քանզի իր կողմն էին անցնում նաև իրենց գործած ոճրի համար մահապատժից խուսափող մարդիկ, ստրուկներ, ավազակության սիրահարներ, այնպես, որ կարճ ժամանակվա ընթացքում նա մեծագույն ուժ կազմեց, շուրջ 50 հազար հոգի։ Նրա վիճակն ահա այսպիսին էր։ Իսկ պարտությունից անչափ ղգացված, խոր տրտմության մեջ ընկած Մոհամմեդը կուրացրեց տասը ղորավարներին, փախուստով վերապրած զինվորներին սպառնաց կանացի շորեր հագցնել ու ծանակել։ Եվ նախապատրաստվեց ճակատելու։ Պարտություն կրած ղինվորները, իմանալով սպառնալիքների մասին, Տողրուլ բեկի կողմն են անցում։ Ահա այդքան ու այսպիսի հսկայական ուժ ձեռք բերելով, [Տողրուլ բեկը] վերցնելով իր բովանդակ զորքը, Մուհամմեդի դեմ շտապեց, ջանալով ճակատամարտում վճռել հարցը։ [Մուհամմեդն] իր հերթին զինելով սարակինոսների, պարսիկների, կաբիրների և արաբների՝ մոտ հինգ հարյուր հազարանոց բանակ կազմեց։ Նա ուներ նաև հարյուր աշտարակակիր փղեր, ահա բոլորին վերցնելով, ընդդի-

*մակայում է Ասպահան կոչվող [տեղում]։ Սահմռկելի ճակատամարտ է տեղի ունենում, երկու կողմից էլ շատերն են ընկնում, այդ թվում և ինքը՝ Մոհամմեդը։ Նա ձի նստած այստեղ, այնտեղ էր գնում իր զորքերին գոտեպնդելու, բայց ձիով հանդերձ դետին տապալվելով, մեռավ։ Նրա անկումից հետո նրա ամբողջ զորքը հակառակորդի հետ հաշտվեց և Տողրուլ բեկը բոլորի կողմից Պարսկաստանի թագավոր հռչակվեց։ Թագավոր հռչակվելով, նա [զորք] ուղարկեց ու վերացրեց Արաքսի կամրջի պահպանությունը, որով հնարավորություն տրվեց թուրքերին հանգիստ մուտք գործել Պարսկաստան։ Եվ նրանք, խոչընդոտից ազատված, զանգվածորեն ներխուժեցին (բացի նրանցից, ովքեր չէին ուզում հեռանալ իրենց հայրենիքից), տապալեցին պարսից ու սարակինոսների իշխանությունը, Պարսկաստանի տերը դարձան, իսկ Տողրուլ բեկին սուլթան կոչեցին, ասել է՝ ամենակալ և արքայից արքա։ Սա բոլոր պաշտոնները տեղացիների ձեռքից խլեց ու տվեց թուրքերին, համայն Պարսկաստանը նրանց միջև բաժանեց, տեղացիներին կատարյալապես տապալեց ու ընկճեց։*

*10. Երբ նա որոշեց, որ իրավիճակն իր օգտին է, նախ ըսկըսեց իր սահմանակից տիրակալների դեմ պատերազմել. ինքն անձամբ ճակատեց Բաբելոնի արխոնտ Պիսասիրիոսի դեմ և տարբեր մարտերում նրան հաղթելով և ոչնչացնելով, դարձավ բաբելացվոց երկրի տիրակալը, իսկ արաբների առաջնորդ Կարվեսեսի դեմ Կուտլումուշին[545] ուղարկեց, իր հարազատ հորեղբորորդուն, տալով հզոր բանակ։ Սա գնաց, արաբներին պատերազմ տվեց, բայց պարտվեց ու խայտառակ կերպով փախուստի դիմեց։ Պարտությունից հետո ետ վերադառնալիս, նա պետք է Մեդիայի, այն է Վասպուրականի միջով անցներ (այս նահանգի կառավարիչն էր կայսեր կողմից ուղարկված պատրիկ Ստեփանոսը, կայսեր պարադինաստեոն[546] Կոստանդին Լիխուդեսի որդին), դրա համար [Կուտլումուշը] նրա մոտ պատվիրակներ ուղարկեց, խնդրելով թույլ տալ առանց որևէ խոչընդոտի անցնել, ամենասարսափելի երդումներով խոստանալով ձեռք չտալ, անվնաս թողնել նահանգը։ [Ստեփանոսն] ընդունեց պատվիրակներին և նրա խնդրանքը երկյուղի նշան համարելով, հավաքեց տեղական զորքը, թուրքերին պատերազմով դիմավորելու համար։ Այդ բանը Կուտլումուշին գցեց խոր մտահոգության մեջ (իր ողջ զորքը, որ պարտությունից էր վերադառնում,*

անձի էր ու անզեն), բայց կամա-ակամա ստիպված եղավ ճակատել։ Մարտում Ստեփանոսի զինվորները պարտություն են կրում, հենց ինքը [Ստեփանոսը] բազում ուրիշների հետ գերի է ընկնում։ Թավրիզի վրայով անցնելիս [Կուտլումուշը] նրան երկրի տոպարխին է ծախում[547], իսկ ինքը վերադառնում սուլթանի մոտ, զեկուցում իր պարտության մասին, պարտության մեղքը ուրիշների վրա գցում և խոստանում, որ եթե ինքը դարձյալ զորք ստանա և արշավի Կարվեսեսի դեմ, Արաբիան հեշտությամբ [սուլթանին] կհպատակեցնի։ Ի միջի այլոց նա պատմեց նաև Վասպուրականի մասին, թե շատ բարեբեր երկիր է, բայց գտնվում է կանանց ձեռքում, իր դեմ '-.ված զինվորներին ակնարկելով[548]։ Սուլթանը, սակայն, նրա կրած խայտառակ պարտությունից գազազած, ծրագրում էր բռնել ու սպանել նրան, բայց և երկյուղում էր հռոմայեցիների դեմ զենք շարժել, նա վախենում ու սարսափում էր նախորդ Ñրեք կայսրերի՝ Նիկեփորի, Հովհաննեսի և Վասիլի քաջագործությունների համբավից միայն, կարծում, թե հռոմայեցիները դեռ այդ նույն արիության ու հզորության տեր են։ Նա տատանողական վիճակո.մ էր, երկմտության մեջ և իր անելիքի մասին էր մտածում։ Կուտլումուշը, իմանալով սուլթանի խարդավանքի մասին, իր մարդկանց հետ փախուստի է դիմում և խորեզմցիների [երկրում] գտնվող մի ամրագույն քաղաք գրավելով, անունը Պասար, դառնում է սուլթանի հակառակորդը։ [Սուլթանը] տվյալ պահին զբաղված լինելով, չփորձեց Նրա դեմ պատերազմել, և հավաքելով իր բովանդակ ուժերը, դուրս եկավ ընդդեմ արաբների, բայց ճակատամարտում ինքը Ñս պարտվեց։ Պարտությունից :երադառնալով և չկարողանալով հաշտվել խայտառակության հետ, ինչպես և Կուտլումուշից կրած անարգանքի, վերցնելով զորքի մեծ մասը, անձամբ գնում է Պասար և երկարատև պատերազմ մղում հարազատ հորեղբորորդու դեմ, որը վստահ լինելով քաղաքի ամրությանը, հաճախ բաց էր անում դարբասներն ու դուրս գալով մեծ վնաս հասցնում սուլթանի զորքերին։ Իսկ հռոմայեցիների դեմ սուլթանը շուրջ 20 հազար հոգուց բաղկացած մի այլ բանակ է ուղարկում, զորավար նշանակելով իր եղբորորդի Հասանին՝ մականունը Խուլ, կարգադրելով շատ շտապ տեղ հասնել և եթե հաջողվի, իրեն ենթարկել Մեդիան[549]։ Ահա այս վիճակն էր տիրում Պարսկաստանում։

11. Իբերիայի[550] առաջնորդ Բագարատը, մի անառակ մարդ,

պղծել էր Լիպարիտի մահիճը (Լիպարիտը որդին էր Վասիլ կայսեր օրոք Գեորգիոսի դեմ մղված պատերազմում սպանված Օրատիոս Լիպարիտի, իր ողջամտությամբ ու արիությամբ հռչակված մի մարդ, որն իբերների մեջ Բագարատից հետո ամենամեծ ուժն ուներ)[551] և իր այդ արարքից անչափ զայրացած Լիպարիտին ստիպել իր դեմ ապստամբություն բարձրացնել։ Պատերազմում հաղթելով, [Լիպարիտը] նրան շպրտում է Կովկասյան լեռները և խորին Աբազգիա, իսկ մտնելով արքունիք, բռնաբարում իր տիրուհուն՝ Բագարատի մորը և Իբերիայի տերն ու տիրականը դառնում։ Նա նամակ է գրում կայսեր, խնդրելով դառնալ հռոմայեցիների բարեկամն ու դաշնակիցը։ [Կայ-
1047 սրըն] ընդունեց նրա դեսպանությունը և [Լիպարիտի] հետ հա-
սեպտ. մագործակցություն հաստատեց։ Որոշ ժամանակ անց, Բագարատը Փասիս գետի վրայով, սվանների և կոլխերի երկրով ընթանալով, գալիս է Տրապիզոն, որտեղից կայսեր սուրհանդակներ է ուղարկում, հայտնելով, թե ցանկություն ունի մայրաքաղաք գալ և նրան հանդիպել։ [Կայսրը] թույլ տվեց և նա գալով [մայրաքաղաք], հանդիպեց կայսեր, նախ շատ պարսավեց նրան՝ ասելով, թե նա կայսր լինելով և Աբազգիայի նման մի մեծ երկրի առաջնորդի հետ դաշինք ունենալով, դրժեց այդ և անցավ հասարակ մի մարդու, ապստամբ ստրուկի կողմը։ Վերջում նա խնդրեց, որ կայսրն իրենց հաշտեցնի։ Կայսեր ջանքերով նրանք համաձայնություն կնքեցին, որով Բագարատը համայն Իբերիայի և Աբազգիայի տերն ու առաջնորդն է, իսկ [Լիպարիտը]՝ Մեսխիայի մի մասի կառավարիչը, որ ցմահ տեր և թագավոր է ճանաչելու իրեն՝ [Բագարատին]։ Ահա Աբազգիայի հարցն էլ այսպես լուծվեց[552]։

2. Սուլթանի կողմից հռոմայեցիների դեմ ուղարկված Հա-
1048 սանը, անցնելով Թավրիզն ու Թիֆլիս[553] կոչվողը, եկավ Վասպուրական, հանդիպածն ավերելով ու կրակի տալով, ձեռքն ընկնողին սպանելով, չխնայելով անգամ երեխաներին։ Նահանգի կառավարիչ վեստ Ահարոնը՝ Վլադիսլավի որդին և Պրուսիանի եղբայրը[554], տեսնելով, որ ինքը կարող չէ պետք եղածին պես պատերազմելու և ընդդիմակայելու թուրքերի այդպիսի բազմության, նամակ ուղարկեց Անիի և Իբերիայի կառավարիչ վեստ Կատակալոն Կեկավմենոսին, կոչ անելով հնարավոր բոլոր ուժերով օգնության հասնել։ Նա, ստանալով նամակը, անհապաղ իր զորքերը հավաքեց, շտապ կարգով ճամփա ընկավ ու միացավ

Ահարոնին։ Նրանք խորհրդակցեցին, ինչպե՞ս անել, գիշեր ժամանակ մարտ տալ, թե՞ ցերեկով։ Կեկավմենոսը դեմ էր և մեկ, և մյուս առաջարկին, նա մտածում էր այլ ձևով հաղթահարել թշնամիներին։ Նա խորհուրդ տվեց թողնել ճամբարը ինչպես որ կա՝ վրաններով, գրաստներով ու մնացած հանդերձանքով և գիշեր ժամանակ ամենակարևոր տեղերում դարանակալել։ Թուրքերը տեղ հասնելով կսկսեն հափշտակությամբ զբաղվել, ահա այդ միջոցին պետք է դարաններից դուրս գալ և հարձակվել նրանց վրա։ Նրա ենթադրությունը ճիշտ դուրս եկավ։ Հասանն արշալույսին դուրս գալով Ստրագնա գետի[555] մոտ գտնվող իր ճամբարից, գնում է պատերազմելու։ Երբ նրան ոչ ոք դեմ չելավ, նա մոտեցավ հռոմայեցիների ճամբարին, որը ո՛չ պահակություն ուներ, ո՛չ էլ որևէ տեղից ձայն էր լսվում։ Այնտեղ չկար և ոչ մի զինվոր։ Ենթադրելով, որ հռոմայեցիները փախուստի են դիմել, նա բազում տեղերից քանդում է ցանկապատը և հրամայում ավարը հափշտակել։ Հռոմայեցիները երեկոյան մոտ դարաններից դուրս գալով, կազմ ու պատրաստ հարձակվում են անկազմակերպ թուրքերի վրա և իսկույն փախուստի մատնում նրանց, որ չկարողացան ընդդիմակայել հռոմայեցիների անընկճելի թափին։ Առաջինն ընկնում է Հասանը, որ առաջին շարքի վրա էր կռվում, ընկնում է նաև թուրքերի զորքի ամբողջ ծաղիկը։ Շատ քչերն ազատվեցին և անզեն, լեռների վրայով ապաստան գտան Պերսարմենիայի քաղաքներում։

13. Սուլթանը աղետի մասին փախստականներից տեղեկանալով, մեծ տագնապի մեջ ընկավ և մտածում էր ինչպես դուրս գալ ծանր վիճակից։ Նա թուրքերից, կաբիրներից և դայլամցիներից բաղկացած 100 հազարանոց ընտիր զորք կազմեց, այն տրվեց իր խորթ եղբայր Աբրահամ Ալիմին[556] և հռոմայեցիների դեմ ուղարկեց։ Երբ [թուրքերի] արշավանքի մասին լուրը տեղ հասավ, զորքերի վերոհիշյալ զորահրամանատարները դարձյալ միանալով, նստեցին խորհրդակցության՝ վճռելու իրենց անելիքը։ Կեկավմենոսը գտնում էր, որ առկա զորքով պետք է թուրքերին ընդդիմակայել հռոմեական սահմաններից դուրս և այնտեղ պատերազմել, քանի դեռ հակառակորդների մեծ մասը անձի է, իսկ մնացած զորքն էլ երկար ճանապարհորդությունից հոգնած։ Բացի այդ, թուրքերը զգում են երկաթների պակաս, որոնցով նրանք սովորություն ունեն ծածկել իրենց անասունների սմբակները։ Ինչ վերաբերում է հռոմայեցիներին, ապա նրանք

իրենց տարած հաղթանակից արիացած ու գոտեպնդված, թշնամիների հետ կռվի բռնվելու ցանկություն ունեն։ Ահարոնը ընդհակառակը, ասում էր գործի չդնել զորքերը, այլ գտնում էր, որ պետք է ամրացնել քաղաքներն ու բերդերը[557], ամեն ինչ ներփակել պարիսպների ետևում, վիճակի մասին հայտնել կայսեր և առանց նրա համաձայնության փոքրաթիվ ուժերով չպատերազմել բարբարոսների այդքան մեծաթիվ զորքերի դեմ։ Զորավարներն այդպես ասացին և ընդունվեց Ահարոնի առաջարկը։ Նրանք բանակով գնացին Իբերիա և տեղացիներից Ուրտրու կոչվող[558] դաշտում, բաց երկնքի տակ, հանգիստ մնացին, նախապես ամրությունների մեջ առնելով մշակ ժողովրդին, կանանց ու երեխաներին և արժեք ներկայացնող ամեն մի առարկա։ Ապա սուրհանդակով կայսեր նամակ ուղարկեցին, հայտնելով նրան հակառակորդների հարձակման մասին։ Կայսրը, ստանալով նամակը, հրամայեց սպասել, մինչև որ Լիպարիտը իբերական զորքով կմիանա հռոմեական զորքերի։, իսկ [Լիպարիտին] էլ նամակ ուղարկեց՝ կարգադրելով, որ եթե նա իրեն հռոմայեցիների բարեկամն է համարում և դաշնակիցը, ապա անհապաղ վերցնի իր համայն զորքը, միանա հռոմայեցիների զորավարներին և նրանց հետ պատերազմի բարբարոսների դեմ։ Զորավարները նամակն ստանալով, հրամանի համաձայն հանգիստ էին, սպասելով Լիպարիտի գալստյան, իսկ վերջինս, ստանալով կայսեր հրամանը, եռանդագին հավաքեց իր զորքը և սկսեց այն զինել։ Քանի դեռ նա հավաքում էր իր ուժերը, ժամանակն անցնում էր, և այդ միջոցին Աբրահամը հասավ Վասպուրական։ Իմանալով, որ հռոմայեցիները նախապես այնտեղ էին կենտրոնացած և իր գալստյան մասին իմանալով, նահանջեցին Իբերիա, բնական է, այդ բանը երկյուղի նշան համարեց և թալանն ու ավարառությունը մի կողմ թողած, ընկավ նրանց ետևից, ջանալով ճակատամարտ տալ նախքան նոր ուժեր կմիանային նրանց։ Հռոմայեցիների զորավարները, իմանալով այդ մասին, երկյուղեցին, որ չլինի թե ստիպված լինեն պատերազմի բռնվել նախքան Լիպարիտի հասնելը։ Նրանք իջան մի գահավեժ, չորս կողմից կիրճերով շրջապատված դժվարանցանելի վայր, հանգիստ մնացին, միաժամանակ նամակ գրեցին Լիպարիտին՝ առանց հապաղելու դալ։ Աբրահամը, չհանդիպելով հռոմեական բանակին, եկավ Արծն կոչվող [տեղը]։ Արծնը բազմաբյուր բնակչություն ունեցող շատ հարուստ մի գյուղաքաղաք է, այստեղ բնակվում էին

բնիկ վաճառականներ և ասորիների, հայերի ու այլ ազգերի մե-
ծաթիվ ժողովուրդ։ Մոտիկ էր գտնվում Թեոդոսուպոլիսը, ամուր
ու անառիկ պարիսպ ունեցող մեծագույն մի քաղաք, և հակա-
ռակ որ Կեկավմենոսը նամակ գրելով սպառնաց ու հրամայեց
նրանց պատսպարվել [այդ քաղաքի] պարիսպների մեջ, նրանք.
հույսը դնելով իրենց բազմաթվության վրա, չուզեցին այդ անել։
Թուրքերը վրա հասնելով, գործի անցան, իսկ Արծնի բնակիչնե-
րը փակելով ճանապարհները և բարձրանալով տների [տանիք-
ների], քարերով, փայտերով ու աղեղներով ընդդիմակայում
էին հարձակվողներին։ Նրանք ամբողջ վեց օր մարտնչեցին։
Երբ այդ բանը հայտնեցին զորավարներին, Կեկավմենոսը շատ
էր պնդում ու հորդորում գնալ, հարձակվել թուրքերի վրա, որոնք
մտադիր էին սլաշարման անցնել, իզուր չնստել ու ժամավաճառ
չլինել՝ սպասելով Լիպարիտի փուչ օգնությանը, հարմար առիթը
ձեռքից բաց չթողնել, որը դժվար կլինի դարձյալ ձեռք բերել։
Նրան հակադրվեց Ահարոնը, որն ասում էր, թե չպետք է կայսեր
հրամանին հակառակ որևէ բան անել, դրա վրա ահա [Կեկավ-
մենոսն] էլ հանգիստ նստել էր։ Աբրահամը, տեսնելով որ դեպ-
քերն իր ուզածին հակառակ են ընթանում, չի կարողանում պա-
շարմամբ գրավել գյուղաքաղաքը, արհամարհեց հարստությունն
ու ավարը և հրամայեց տները կրակի տալ։ Թուրքերն անհապաղ
ջահեր վերցնելով և դյուրավառ նյութեր կրակի տալով, գցում
էին տների վրա։ Չորս կողմից հուրը բորբոքվեց, հսկայական
հրդեհ բռնկվեց։ Արծնցիք, չկարողանալով դիմանալ կրակին ու
նետահարության, դիմեցին փախուստի։ Ասում են, թե կորավ
1049 շուրջ 150 հազար տղամարդ, որոնց մի մասը սրի, մյուսը՝ կրա-
կի զոհ դարձավ։ Նրանք, երբ համոզվեցին, որ պարտվելու են,
կանանց ու երեխաներին սրի քաշելուց հետո, իրենց կրակն էին
նետում։ Ահա այսպես գրավվեց Արծնը, Աբրահամն այնտեղ
շատ ոսկի, զենք և այլ պիտանի մետաղյա իրեր գտավ, ինչ որ
կրակից չէր վնասվել, նա ձեռք բերեց նաև մեծ թվով ձիեր ու
գրաստներ և իր զորքը պետք եղածին պես զինելով, հեռացավ՝
փնտրելով հռոմեական զորքը[559]։

14. Լիպարիտը վերջը տեղ հասավ և [հռոմեական բանակը],
իջնելով հիշյալ ամրությունից, բանակեց մի դաշտում, մի լեռան
ստորոտին, որտեղ գտնվում է Կապետռու բերդը[560]։ Թուրքերն
անկազմակերպ առաջանում էին. Կեկավմենոսը դարձյալ խոր-
հուրդ էր տալիս, քանի նրանք ցրված են և անկազմակերպ, հար-

ձակվել նրանց վրա։ Բայց Լիպարիտը չէր ուզում, որովհետև օրը
1049 շաբաթ էր, ինդիկտիոնի 2-րդ տարվա սեպտեմբեր ամսի 18-ը։
Լիպարիտի համար շաբաթը չարագուշակ օր էր[561] և նա վախենա-
լով դրանից, խուսափում էր պատերազմելՙ Հռոմայեցիների
դրությունն ահա այսպիսին էր, իսկ Աբրահամը առաջ ուղարկ-
վածներից իմանալով հռոմայեցիների ճամբարած վայրը և այն
մասին, թե նրանք հանգիստ նստած են, հավաքեց իր ուժերը և
կազմ ու պատրաստ շարժվեց պատերազմելու։ Հակառակորդ
բանակը այդ տեսնելով, ակամայից ինքն էլ ճակատեց։ Աջ թևը
գլխավորում էր Կեկավմենոսը, ձախը՝ Ահարոնը, իսկ կենտրո-
նում կանգնեց Լիպարիտը։ Երեկոյան մոտ էր։ Կեկավմենոսի դի-
մաց կանգնած էր Աբրահամը, Ահարոնի դիմաց՝ Խորոսանտե-
սը՝[562] մյուս զորավարը, իսկ Լիպարիտի դիմաց՝ Ասպան Սալա-
րիոսը[563], Աբրահամի խորթ եղբայրը։ Երբ մարտն սկսվեց, Կե-
կավմենոսն ու Ահարոնն իրենց դիմացի [թշնամի] թևերը պար-
տության մատնեցին և մինչև արշալույս հետապնդում էին։ Իսկ
Լիպարիտը, որի քեռորդին[564] [մարտում] ընկած լինելու պատ-
ճառով վիշտ էր ապրում, ուժեղ թափով հարձակվեց, բայց իր
ձին խոցվեց ու ընկավ, ինքն էլ գերի վերցվեց[565]։ Այստեղ վի-
ճակն այսպիսին էր, իսկ հռոմայեցիները դադարեցնելով [թշնա-
մու] հետապնդումը, իջան ձիերից և հաղթանակի առթիվ աստծուն
գոհություն հայտնեցին, միաբերան երգեցին «Մեր աստծուց մեծ
աստված չկա» հիմնը։ Նրանք Լիպարիտին էին սպասում, վստահ
լինելով, որ նա ևս հետապնդում է թշնամիներին։ Բայց երբ նա
ոչ մի տեղից չերևաց, դժվարին վիճակի մեջ ընկան, չգիտեին,
ի՞նչ կարող է պատահած լինել։ Նրանք այդպես շվարած մնա-
ցել էին, երբ Լիպարիտի զինվորներից մեկն եկավ ու զորա-
վարներին հայտնեց նրա պարտվելու և գերեվարվելու մասին, թե
ինչպես Աբրահամը փախուստից վերադառնալով և միանալով իր
հարազատ եղբորը (մարտում Հասանն սպանվել էր), վերցրեց
Լիպարիտին և գերի ընկած իբերներին ու արագ շարժվեց
Կաստրոկոմե կոչված վայրը[566]։ Զորահրամանատարներն այս
լուրը լսելով ապշեցին, գիշերն անքուն անցկացրին, իսկ երբ
լույսը բացվեց, նստեցին խորհրդակցության։ Բոլորը նպատակա-
հարմար գտան, որ յուրաքանչյուրն իր տեղը գնա։ Ահարոնն ա-
հա վերցնելով իր զինվորներին գնաց Վան (սա Վասպուրականի
մայրաքաղաքն է), իսկ Կեկավմենոսն իր [զինվորներով] բարձ-
րացավ Անի[567]։ Աբրահամը բավարարվեց գերի վերցրած Լիպա-

րիտով, այդ բախտավորության համար իրեն ամենաերջանիկ մարդն համարեց և առանց երկար-բարակ մտածելու, արագացրած քայլով, հինգ օրում հասավ Ռե[568] կոչվող [տեղը], այնտեղից էլ գնաց սուլթանի մոտ, նախապես հաղթանակի մասին ավետիս ուղարկելով և Լիպարիտին գերելու մասին լուրը հայտնելով։ Սուլթանը Լիպարիտին գերի վերցնելու կապակցությամբ արտաքուստ ուրախացավ ու բերկրեց, բայց չար նախանձով լցվեց նման հաջողության հասած իր եղբոր դեմ, և շարունակ մտածում էր, առիթ որոնում նրան մեջտեղից վերացնելու։

15. Կայսրը, իմանալով Լիպարիտի գերվելու մասին, մեծ փափագ ուներ նրան փրկելու։ Նա Գեորգիոսի՝ մականունը Դրոսոս (Դրոսոսը Ահարոնի հյուպոդրամատևսն էր)[569], միջոցով սուլթանին թանկագին ընծաներ ու փրկագին ուղարկեց, խնդրելով Լիպարիտին ազատ արձակել և հաշտություն կնքել։ Սուլթանն ընդունեց դեսպանությունը և ուզենալով ցույց տալ, որ ինքը թագավոր է փառավոր և ոչ անազատ մի փերեզակ, [Լիպարիտին] նվիրում է կայսեր։ [Սուլթանը] թեև վերցրեց փրկագինը, բայց այն ամբողջությամբ Լիպարիտին հանձնեց, նրան խորհուրդ տալով միշտ հիշել այս օրը և այսուհետև չցանկալ թուրքերի դեմ զենք շարժել[570]։ Կայսեր մոտ ուղարկված դեսպանությանը մասնակցեց նաև նրանց մոտ սերիֆոս[571] կոչվողը։ Այս պաշտոնը կրողն այն ուժն ունի նրանց խալիֆայի մոտ, ինչ ժամանակին մեզ մոտ սինկելլոսը՝ պատրիարքի։ [Խալիֆայի] մահվան դեպքում [սերիֆոսն է] նրա աթոռին նստում։ Ահա այս սերիֆոսը մայրաքաղաք մտնելով, հանդիպելով ու խոսակցելով կայսեր հետ, մեծ ամբարտավանություն ու պոռոտախոսություն հանդես բերեց, վերջը նա նկրտեց հռոմայեցիների երկիրն իր սուլթանին հարկատու դարձնել։ Երբ տեսավ, որ կայսրը հեռու է այդ մտքից, ձեռնունայն վերադարձավ իրեն ուղարկողի մոտ։ Իսկ կայսրը դրա հիման վրա սուլթանի կողմից պատերազմ ակնկալելով, ինչքան որ դա հնարավոր էր, [զորք] ուղարկեց ու ապահովեց Պարսկաստանի սահմանակից շրջանները։ Այս նույն ժամա-
1048 նակ տեղի ունեցավ նաև պածինակների հարձակումը։ Թե ինչպե՞ս և ի՞նչ ձևով, այժմ կասվի։

16. Պածինակները սկյութական ցեղ է, նա սերում է արքայական կոչվող սկյութներից, այն մեծ է ու բազմամարդ, նրան իր ուժերով ի վիճակի չէ ընդդիմակայել սկյութական և ոչ մի ցեղ։ Նա բաժանվում է տասներեք տոհմի, որոնք թեև բոլորն էլ

նույն [պածինակ] անունն են կրում, բայց յուրաքանչյուրն ունի նաև սեփական հաջորջում՝ իր նախահոր և առաջնորդի անունից։ Նրանք տարածվում են Իստրոսից այն կողմ ընկած շրջաններում, Բորիսթենես[572] գետից մինչև Պաննոնիա ձգվող դաշտերում, քոչվոր են և բացարձակապես վրանաբնակ։ Այդ ժամանակները հիշյալ ցեղի առաջնորդն էր Վիլտերի որդի Տյուրախը, մեծատոհմիկ, բայց թուլամորթ և անդորր սիրող մի մարդ։ Այդ ցեղի մեջ, սակայն, կար և մի ուրիշը՝ անունը Կեգեն, Վալցարի որդին, որ, թեև ծագումով աննշան մեկն էր ու անհայտ, բայց պատերազմական ու ռազմավարական գործերում չտեսնված կարող։ Սա ընդդիմակայեց, հաղթեց ու ետ շպրտեց բազում անգամներ պածինակների վրա արշաված ուզերին[573] (ուզերը հոնական ցեղ են), այն ժամանակ, երբ Տյուրախը չհամարձակվեց նրանց դեմ դուրս գալ, դեռ ավելին, թաքնվեց Իստրոսի մոտ տարածվող ճահճուտներում ու լճերի շուրջ։ Պածինակները Տյուրախին հարգում էին իր ազնվական ծագման համար, բայց Կեգենի նկատմամբ հատուկ սեր էին տածում՝ նրա անչափ արիության և պատերազմներում ցուցաբերած կարողության համար։ Այդ բանը լսում ու տեսնում էր Տյուրախը, նրա հոգին խոցվում էր, նա վախենում էր իշխանությունը կորցնել և միջոց էր որոնում Կեգենին մեջտեղից վերացնելու։ Նա բազում անգամ նրա դեմ որոգայթներ լարեց, բայց ոչ մեկն էլ արդյունք չտվեց։ Երբ նրա բազում ծածուկ փորձերը ի դերև ելան, նա որոշեց չձգձգել և բաշահայտ գործել։ Նա բազում մարդկանց ուղարկեց նրան բռնելու և սպանելու հրամանով։ [Կեգենը] կանխավ իմանալով ոտնձգության մասին, փախուստի դիմեց Բորիսթենեսի ճահճուտները և այդ ձևով խուսափեց ոչնչացումից։ Թաքնված լինելով այնտեղ և իր ազգականների ու տոհմի հետ ծածուկ կապեր հաստատելով, նա կարողացավ իր ցեղն անջատել թագավորի բարյացակամությունից (ցեղը կոչվում էր Վելեմարնիս), ապա նաև Պագումանիս [ցեղը], և զինական ուժ ստանալով, այդ երկու ցեղերով դուրս եկավ Տյուրախի դեմ, որի [կողմում էին] 11 ցեղ։ [Կեգենը] բազում ժամեր դիմադրեց, բայց չկարողանալով հաղթահարել [հակառակորդի] մեծաթվությունը, պարտություն կրեց։ Թափառելով ճահճուտներում և փրկություն փնտրելով, նա իր և իր մարդկանց փրկության համար միայն մի ելք գտավ, ապաստանել հռոմայեցիների կայսեր մոտ։ Հասնելով Դորոստոլոն, ապահովության համար իր մարդկանցով

*պարփակվեց գետի կղզիներից մեկում (նրանք 20 հազար հոգի էին) և շրջանի կառավարչին լուր ուղարկեց (նա Անաստասիոսի որդի Միքայելն էր), հայտնեց նրան իր ով լինելը, թե ինչպիսի վտանգից խուսափելով է հասել, որ ուզում է կամովին հանձնվել կայսեր, և որ իր ընդունվելը մեծապես օգտակար կլինի նրան։ Միքայելը նրա ասածն անհապաղ կայսեր հաղորդեց և իսկույն հրաման ստացավ ընդունել [Կեգենին], նրա մարդկանցով հանդերձ, տալ նրանց ինչ-որ անհրաժեշտ է[574], [Կեգենին] էլ առոք-փառոք Բյուզանդիոն ուղարկել։ [Միքայելը] գործեց ըստ հրամանի։ Կեգենն եկավ մայրաքաղաք, կայսեր կողմից սիրով ու պատվով հյուրընկալվեց, խոստացավ ընդունել սուրբ մկրտությունը և համոզել իր մարդկանց նույնն անել։ Նա պատրիկի պատվաստիճան ստացավ, Իստրոսի ափերին գտնվող երեք բերդ, բազում ասպարեզ տարածությամբ հողեր և դասվեց հռոմայեցիների բարեկամների ու դաշնակիցների շարքը։ Այնուհետև, ըստ իր տված խոստումի, ինքն էլ, իր մարդիկն էլ ընդունեցին սուրբ մկրտությունը. այդ գործի համար նրանց մոտ ուղարկվեց մի բարեպաշտ վանական, ոմն Եվթիմիոս, որը Իստրոս գետի ափին կատարեց սուրբ խորհուրդը, բոլորին հաղորդեց սուրբ մկրտությամբ։*

*17. Իրեն ապահով զգալով և հանկարծակի հարձակումներից անվտանգ, նա սկսեց թշնամուց վրեժ առնել, անցնելով Իստրոս գետը, հազար կամ երկու հազար, դրանից ավելի կամ պակաս մարդկանցով և հանկարծակի ներխուժելով, Տյուրախին ենթակա պածինակներին սոսկալի վնաս էր հասցնում, թալանում, գերի ընկած տղամարդկանց սպանում, կանանց ու երեխաներին տրկացնում, վաճառում հռոմայեցիներին։ Տյուրախն ի վիճակի չլինելով տանել Կեգենի այս անակնկալ հարձակումները, դեսպանություն է ուղարկում կայսեր մոտ, մեղադրանք ներկայացնելով, թե կայսրը, պածինակների ցեղի հետ սլայմանագիր ունի կնքած, որով ամենևին չպետք է ապաստան տար իրենց ապըստամբին, և եթե տվել է, ապա թող թույլ չտա նրան անցնել [գետը] և ավարառել մի [ժողովրդի], որի հետ [կայսրը] պայմանագիր ունի։ Արդ, պետք է [Կեգենին] թույլ չտալ այդպես գործել, հակառակ դեպքում իրենք հրաժարվում են դաշնակցությունից։ Կայսրը թող իմանա, որ իրեն էլ, իր երկիրն էլ ծանրագույն պատերազմի մեջ է ներքաշում։ Ահա սրանք էին Տյուրախի մեղադրանքները։ Կայսրն այդ տեղեկությունն ստանալով, ծիծա-*

ղեց այն բանի վրա, որ պածինակի սպառնալիքն իրեն պետք է
ստիպեր իր կողմն անցած մարդուն դավաճանել, արգելեր վնա-
սողներին վնասելը։ Նա դեսպաններին ձեռնունայն ճամփու դր-
րեց։ Նա Պարիստրիոն քաղաքների[575] կառավարիչ Միքայելին,
1048 ինչպես և հենց իրեն՝ Կեղենին նամակ գրեց՝ արթուն կերպով
ամառ պահպանել գետի ափերը, եթե մեծ ուժով հարձակում տեղի ու-
նենա, նամակով հայտնել, որպեսզի արևմտյան տագմաներից
մի քանիսը ուղարկի, որոնց հետ նրանք արգելակեն պածինակ-
ների գետանցմանը։ [Կայսրը] հարյուր տրիերաներ էլ ուղար-
կեց. կարգադրելով նավարկել Իստրոս գետով և չթողնել պածի-
նակներին անցնել։ Երբ դեսպանները ձեռնունայն վերադարձան,
Տյուրախը ղայրացավ, գազազեց ու մաղթեց, որ ժամ առաջ
ձմեռ գա։ Աշունը վերջանում էր և վրա հասավ ձմեռը, արեգակն
Այծեղջյուրում էր, փչեց հյուսիսային ուժեղ քամի և գետը մինչև
տասնհինգ կանգուն խորության սառցակալեց։ [Գետին] հսկելը
բացարձակապես անհնարին դարձավ և Տյուրախը ձեռք բերե-
լով իր աղերսած առիթը, անցնում է Իստրոսը բոլոր պածինակ-
ներով, որոնք, ինչպես ասում են, ութ հարյուր հազար հոգի էին
և դիրքեր գրավելով դիմացի կողմում, հանդիպածն ավերում ու
ոչնչացնում էր։ Կայսեր նամակներ ուղարկվեցին, շտապ օգնու-
թյան հասնելու խնդրանքով։ Նա անհապաղ Ադրիանուպոլսի
դուքսին (նա մագիստրոս Կոստանդին Արիանիտեսն էր) նա-
մակ գրեց՝ վերցնել մակեդոնական ուժերը, ինչպես և Բուլղարիա-
յի հեգեմոն Վասիլ Մոնախոսին՝ բուլղարական զորքը, գնալ
միանալ Միքայելին ու Կեգենին, և նրանց հետ կռվել պածինակ-
ների դեմ։ Նրանք կայսեր հրամանի համաձայն իրար միացան։
Կեգենը, վերցնելով հռոմեական փաղանգները, բացօթյա բանա-
կեց և ամեն օր հանկարծակի հարձակումներ գործելով, մեծ
վնաս էր հասցնում պածինակներին։ Սրանք գետն անցնելով,
ձեռք բերեցին հսկայական քանակությամբ անասուններ, գինի,
մեղրից պատրաստված խմիչքներ, որոնց անունն անգամ չէին
լսել։ Առատորեն օգտագործելով այդ բոլորը, նրանք որովայնա-
յին ինչ-որ ախտով հիվանդացան. ամեն օր նրանցից անհամար
մարդիկ էին մեռնում։ Կեգենը, մի ոմն դասալիքից այդ մասին
իմանալով և գտնելով, որ սառնամանիքից ու հիվանդությունից
ընկճված թշնամու վրա հարձակվելը հարմար է, համոզեց հռո-
մայեցիներին, որոնք ծուլանում էին ու վախենում այդքան բյուր
մարդկանց դեմ դուրս գալու և հարձակվեց թշնամիների վրա։

*Նրանք ուժգին հարձակումից ապշած, երկյուղեցին մարտ տալ և Տյուրախն էլ, բոլոր հրամանատարներն ու մնացած բազմությունը զենքերը ցած գցելով, գերի են հանձնվում։ Կեգենը խորհուրդ էր տալիս, պնդում, բոլորին սրի քաշել։ Նա թեև բարբարոսական, բայց շատ խոր իմաստ ունեցող առակ էլ ասաց, թե օձին պետք է սպանել քանի ձմեռ է, երբ նա դեռ ի վիճակի չէ պոչը շարժել, քանզի արևից տաքանալուց հետո, նա գործ ու գլխացավանք կպատճառի։ Հռոմայեցիների հրամանատարները դրան դեմ էին, այդ բանը նրանք բարբարոսական համարեցին ու մեղսական, հռոմեական մարդասիրությանը ոչ վայել։ Նրանք գտան, որ ավելի ձեռնտու է նրանց ցրել Բուլղարիայի անմարդաբնակ դաշտերով մեկ, բնակեցնել տարբեր վայրերում և հարկատու դարձնել, համոզված լինելով, որ նրանցից գանձված հարկը հսկայական կլինի։ Բացի այդ, եթե կայսրը թուրքերի և ուրիշ այլազգիների դեմ զորքի կարիք զգա, ապա կարող է նրանց զինվորագրել։ Թեր ու դեմ բազում կարծիքներ արտահայտվեցին, բայց հաղթեց հռոմայեցիներինը։ Կեգենն իր բոլոր գերի վերցրածներին, բացի նրանցից, որոնց վաճառեց, սրի քաշեց ու տուն վերադարձավ։ Բյուրավոր պածինակներին Բուլղարիայի կառավարիչ Վասիլ Մոնախոսը բնակեցրեց Սերդիկայի, Նայսոսի և Օվցապոլսի[576] դաշտերում՝ ցիր ու ցան անելով և նրանց հնարավոր ոտընձգության առաջն առնելու համար ամեն տեսակի զենքերը նրանց ձեռքից վերցնելով։ Ինչ վերաբերում է Տյուրախին, ապա նա և այլ հարյուր քառասուն հոգի կայսեր բերվեցին։ Վերջինս նրանց սիրալիր ընդունեց, մկրտեց և ամենաբարձր պաշտոններ շնորհելով, հաճելի կյանք պարգևեց[577]։*

*18։ Սուլթանը, իր դեսպանների ձեռնունայն վերադարձից վիրավորված, ի մի հավաքեց Պարսկաստանում գտնվող բովանդակ ուժերը, ինչպես և բաբելական, ու ներխուժեց հռոմայեցիների երկիրը։ Մոնոմախը կանխավ իմանալով այդ մասին փութաց իր ուժերով ընդդիմակայել թշնամուն, նա 15 հազար հոգու էլ պածինակներից զինեց։ Նրանց վրա հրամանատար կարգելով Կոստանդնուպոլսում գտնվող պածինակներից չորս հոգու՝ Սուլցուին, Սելտեին, Կարամանին և Կատալիմին, և շատ մեծ նվերներ պարգևելով, տալով հոյակապ զենքեր ու փառավոր ձիեր, նրանց անցկացրեց Խրիսուպոլիս, առաջնորդ կարգելով պատրիկ Կոստանդին Հադրոբալանոսին, որը պետք է նրանց Իբերիա տաներ։ Նրանք անցան [Խրիսուպոլիս], ձի նստան և*

բռնեցին դեպի արևելք տանող ճանապարհը։ Մի քանի մղոն կտրելով, նրանք մոտեցան Դամատրիս կոչվող [վայրին], կանգ առան ճանապարհին և նստեցին խորհրդակցության, որը իրենց մոտ կոմենտոն[578] է կոչվում։ Ոմանք նպատակահարմար էին գտնում շարժվել առաջ, կայսեր տարածքի վրա չհակադրվել կայսերական հրամաններին՝ քանզի իրենց մյուս ազգակիցներից հեռու են գտնվում, սեփական ուժերով հռոմեական ուժերին դիմագրելու անկարող, անհաջողության դեպքում հենարանից զուրկ։ Ուրիշներն էլ գտնում էին, որ ավելի նպատակահարմար է տիրանալ Բյութանիայի մի քանի լեռներին, այնտեղ մնալ և պաշտպանվել հարձակվողներից, ոչ մի դեպքում Իբերիա չբարձրանալ՝ հեռավոր ու սարսափելի մի երկիր, որտեղ իրենց թշնամի կունենան՝ ոչ միայն հռոմայեցիների թշնամիներին, այլև հենց նրանց՝ հռոմայեցիներին։ Միայն Կատալիմն էր, որ խորհուրդ տվեց վերադառնալ և միանալ ցեղակիցներին։ Մեկի հարցին, թե «ինչպե՞ս կանցնենք ծովի վրայով», նա չպատասխանեց և հրամայեց իրեն հետևել։ Նրանք փորձ արեցին հարձակվել ու սպանել Հադրոբալանոսին, բայց չկարողացան (նա փախուստի դիմելով ապաստանեց Դամատրիսի ինչ-որ եռհարկանի ապարանքներից մեկի ձեղնահարկում) և հետևելով Կատալիմին իջան ծովը, իհարկե որևէ հույս չունենալով, թե նա կարող է պատրաստի նավեր ունենալ, որոնք կհեշտացնեն իրենց ծովով անցնելը, այլ պարզապես իրենց համար հետաքրքիր էր իմանալ, թե ի՞նչ ձևով պիտի անցնեն։ Երբ եղան ծովափում, Կատալիմը մի խոսք ասաց միայն. «Ով ուզում է իրեն փրկել և բոլոր պածինակներին՝ թող հետևի»։ Եվ ձին խթանելով, մտավ ծով։ Նրա օրինակին մի ուրիշն էլ հետևեց, երրորդը և ապա համայն բազմությունը։ Եվ այդպես լողալով, ոմանք զենքերով, ոմանք նախապես զենքերը գցելով, անցնում են Սուրբ Տարասիոս և շարունակելով ճանապարհը, կարողանում են ողջ-առողջ հասնել իրենց ցեղակիցներին՝ Տրիադիցա. ոչ ոք չհամարձակվեց ընդդիմակայել նրանց և խոչընդոտել, քանզի հարձակման հանկարծակիությունը հեշտացրեց նրանց ճանապարհը։ Այսպիսով ահա միանալով Տրիադիցայի պածինակներին, նրանք բանագնացներ են ուղարկում այլ շրջաններում հաստատված [պածինակներին] և բոլորը միանալով միմյանց, և արտերից երկրագործական կացիններ, մանգաղներ և այլ երկաթե առարկաներ վերցնելով ու զինվելով, գալիս են Ֆիլիպպուպոլիս, ողջ բազմությամբ անցնում Հեմոսի վրայով և

*վրաններ խփում Օսմոս կոչվող գետի մոտ, մերձդանուբյան դաշ-
տում։ Միայն Սելտեն էր, որ հանգիստ մնաց Լովիցոսում։ Արիա-
նիտեսը, հավաքելով մակեդոնական ուժերը, սկսեց հետապնդել
նրան։ Լովիցոսում վրան խփած Սելտեի վրա նա հարձակվեց,
բայց չկարողացավ բռնել (նրան հաջողվեց փախուստի դիմել),
և վերցնելով նրա ողջ ճամբարը, վերադարձավ։ Արևմուտքում
ահա վիճակն այսպիսին էր։*

*19. Իսկ սուլթանը, ինչպես ասացինք, իր դեսպանների ներ-
կատմամբ ցուցաբերված արհամարհական վերաբերմունքից, իր
ցանկությունների ի դերև դուրս գալուց զայրացած, բովանդակ
ուժերով արշավում է հռոմեական տիրապետությունների վրա։
Իջնելով մինչև Կոմիու[579] կոչված [վայրը], նա խոսքի արժանի
ոչինչ անել չկարողացավ (երկրի բնակիչները հասցրեցին նախօ-
րոք ապաստան գտնել բերդերում և այնտեղ կուտակել պետք
եղած պաշարը. Իբերիան լի է ամենաանառիկ բերդերով), նա
չհամարձակվեց խորանալ, քանզի իմացել էր, որ հռոմեական
ուժերը կենտրոնանում են Կեսարիայում, վերադարձավ կատա-
ղությունից փրփրած, ինչ-որ մեծ բան կատարելու ցանկությամբ։
Հասնելով Վասպուրական և այդ տեղում էլ ամեն ինչ նույն ձե-
վով պարսպապատված գտնելով, որոշեց դիմել պաշարման։ Նա
1054 ամենից առաջ փորձեց Մանծկերտը[580] [գրավել]։ Մանծկերտը
հարթ տարածության վրա է գտնվում, պարսպապատված է երեք
շարք պարիսպներով և ներսում ունի հորդառատ աղբյուրներ։
Այդ պահին քաղաքին հաջողվել էր առատ պարենով ապա-
հովել իրեն։ Ենթադրելով, որ դյուրին կլինի այն պաշարել՝ [քա-
ղաքի] մատչելի տեղում կառուցված լինելու պատճառով, [սուլ-
թանը պարսպին] շատ մոտիկ տեղում ցանկապատեց այն, ան-
ցավ պաշարման և երեսուն օր շարունակ օղակի մեջ պահեց,
գործի դնելով ամեն տեսակի բաբաններ ու քաղաքավեր մեքե-
նաներ։ Պաշարյալները [իրենց] զորավարի (նա Վասիլ Ապու-
քապն էր)[581] փորձառությամբ ու խոհեմությամբ հաջող կերպով
ընդդիմակայում էին [թշնամու] հարձակումներին և [սուլթա-
նը], համոզվելով, որ անհնարին բան է ձեռնարկել, որոշեց վե-
րացնել պաշարումը և վերադառնալ։ Նրան ընդունած վճռից ետ
կանգնեցրեց խորեզմցիների առաջնորդ Ալկանը, որը խնդրեց
մեկ օր էլ մնալ և իրեն վստահել քաղաքի դեմ մղվող պատե-
րազմը։ Սուլթանին դա դուր եկավ և նա որոշեց չհեռանալ։
Ալկանն արշալույսին հավաքեց իր ողջ զորքը, սուլթանին ու*

*Թուրքերի երևելիներին թողեց արևելյան դարբասի դիմաց գտնվող մի բլրի վրա՝ դիտելու, վերցրեց քաղաքավեր մեքենաները և գնաց հիշյալ դարբասի դեմ։ Նա գտնում էր, որ այս վայրում քաղաքի պարիսպները ավելի ցածրադիր են ու թույլ, [դրսում էլ] վայրն ավելի բարձրադիր՝ պաշարմանն օժանդակող, պարիսպի ետևում գտնվողներին դրսից հարվածելու հնարավորություն ընձեռող։ Նա զորքը երկուսի բաժանեց, մի մասը տեղագրեց բարձունքի վրա, հրամայելով անդադար նետաձգությամբ զբաղվել, իսկ ինքը ուռիների ճյուղերից հյուսված, եզան կաշիներով պատված, իրենց սյուների տակ անիվներ ունեցող վրանները (այս մեքենաները լեսա են անվանում)[582], երկատամնավոր քլունգներ, փորիչներ և երկրագործական այլ գործիքներ ունեցող զինվորներով լցրեց, որոշելով այդ վրանները կամաց-կամաց հրել ու հենել պարիսպներին և այդպես հանգիստ ու աներկյուղ փորել դրանց հիմքերը, համոզված լինելով, որ նետերի տարափը պաշարյալներից և ոչ մեկին թույլ չի տա պարիսպի վրա երևալ։ Ահա նա այս կերպ էր ենթադրում գրավել քաղաքը։ Ապուքապը պարիսպներից այդ բանը տեսնելով, հրամայում է պարսպապահներին հաստատուն մնալ և չերևալ, միայն պատրաստ ունենալ հսկայական քարաբեկորներ, աղեղներ ու այլ արձակող գործիքներ և սպասել իր ազդանշանին (դա «Քրիստոս, օգնի՛ր»-ն էր), որի տրվելուց հետո գործի անցնել։ [Ապուքապն] իր մոտ ուներ նաև ծայրերը սրած հսկայական գերաններ։ Ահա այսպիսի կարգադրություն արեց Ապուքապը, իսկ Ալկանը դրսի Թուրքերի պաշարյալներին ետ մղելու նպատակով կարկուտի պես նետեր արձակելու ժամանակ, կամաց-կամաց լեսաները տակից հրելով, հենեց պարսպին։ Երբ վրանները կպան [պատին] և արդեն թվում է այլևս հնարավոր չէ դրանք ետ քաշել, Ապուքապը հանկարծակի ազդանշան տվեց և գերանները գործի դնողները դրանք բաց թողեցին վրանների վրա, մյուսներն էլ սկսեցին նետեր ու քարեր արձակել։ Այն վրանը, որի մեջ էր Ալկանը, ծածկի վրա բազմաթիվ գերաններից խոցվելով նրանց ծանրությունից շուռ եկավ, իսկ նրա մեջ գտնվողները, մնալով անծածկ, ամեն կողմից քարերի ու նետերի հարվածներ էին ստանում, որոնցից պաշտպանվելու ի վիճակի չէին։ Մնացած բոլորը տեղն ու տեղը սպանվեցին, իսկ Ալկանը գերի ընկավ. նրան ճանաչեցին իր փառահեղ զենքերից[583]։ Երկու քաջարի պատանիներ, քաղաքի դարբասից դուրս թռնելով, նրան բռնե-*

*ցին մազերից և քարշ տալով քաղաք բերեցին։ Վասիլը նրա գլուխն իսկույն կտրեց ու Թուրքերին շպրտեց[584]։ Սուլթանը փորձանքի վրա շատ վշտացած, վերացրեց պաշարումը ու ճամփա ընկավ, անհետաձգելի պատճառներ հորինելով, որոնք իրեն իբրև թե ստիպում էին անհապաղ տուն վերադառնալ, սպառնալով հաջորդ գարնան ավելի մեծ ուժերով արշավել հռոմայեցիների դեմ[585]։*

*20. Մոնոմախը, բացի այդ, մտահոգված էր նաև Դվինի արխոնտ Ապլեսփարեսով, որը Կոստանդնի ժամանակ կնքված պայմանագիրը խախտել էր[586] և հռոմայեցիներից վրեժ առնելով, տակնուվրա էր անում նրանց երկիրը։ Կայսրը հավաքելով արևելից բոլոր տագմաները, նրանց հրամանատար նշանակեց մի ոմն ներքինի Նիկեփորի. սա անցյալում քահանա էր և ծառայում էր կայսեր՝ նախքան նրա գահ բարձրանալը, բայց հետագայում աշխարհիկ կյանքի ու փառքի սիրույն հրաժարվել էր հոգևոր կոչումից։ Կայսրը տալով նրան ռեքտորի պատվաստիճան ու ստրատոպեդարխի կոչում, արևելք ուղարկեց՝[587] ոչ թե այն պատճառով, որ նա պատերազմական հարցերում գործունյա ու կարող մեկն էր, այլ պարզապես այն բանի համար, որ նա կայսեր հանդեպ լավ էր տրամադրված։ [Նիկեփորը] զորքով բարձրացավ մինչև, այսպես կոչված, Երկաթե կամուրջը[588] և Գանձակ[589], բայց Թուրքերի չհանդիպեց, քանզի նրանք ոմն Աբիմելեք զորավարի՝[590] Կուտլումուշի եղբոր հետ բանակել էին Պերսարմենիայի ինչ-որ դաշտում և լսելով հռոմայեցիների ծանր ուժով արշավելու մասին, չհամարձակվեցին նրան ընդդիմակայել և տուն վերադարձան։ Իսկ հռոմեական բանակը, Ապլեսփարեսին [ստիպելով] ներփակվել պարիսպների ետևում, ասպատակեցին բովանդակ շրջակայքը և նրան հարկադրեցին ակամայից վերանորոգել դաշինքը՝ որպես պատանդ տալով իր եղբոր Փատլունի՝ Գանձակի շրջանի արխոնտի որդի Արտաշիրին[591]։ Ահա Նիկեփորը նրան վերցնելով, վերադարձավ քաղաք։*

*21. Իսկ պածինակները, ինչպես ասացինք, Հեմոսն անցնելով, և հետախուզելով այդ [լեռան] ու Իստրոսի միջև՝ մինչև ծովը ձգվող դաշտավայրը, այնտեղ գտան ամեն տեսակ ծառաշատ հովիտներ, անտառներ, պուրակներ, թավուտներ, ջուր ու արոտավայրեր (տեղացիներն այգ վայրն անվանում են Հարյուր լեռ), հաստատվեցին և այնտեղից արշավանքներ կազմակերպելով, մեծ վնաս էին հասցնում հռոմայեցիների տիրապետություն-*

ներին։ Կայսրը խորհրդակցելու համար Կեղենին մայրաքաղաք է կանչում։ Նա իր համայն սեփական զորքով անհապաղ մուտք է գործում և վրաններ խփում բյուզանդացիների՝ մրցումների համար հատկացված դաշտում (տեղը Մայտաս[592] է կոչվում)։ Սակայն նա կայսրին չհանդիպեց, ոչ էլ իմացավ իր կանչվելու նպատակը, բայց գիշերով երեք պածինակներ նրա դեմ մահափորձ կատարեցին. իր քնած ժամանակ նրանք սրերով հարձակվեցին և խոցեցին նրան, բայց ոչ մահացու, քանզի երբ այդ մասին իմացան Կեգենի թիկնապահները, ահաբեկիչները չկարողացան ուժգին հարվածել, փախուստի դիմեցին. Կեգենի որդի Վալցարի հետ օգնության հասած բազմությունը բռնեց նրանց։ Վալցարն առավոտյան իր հորը քառանիվ կառքի վրա դրեց, իսկ դավադիրներին շղթայակապ քարշ տալով կառքի ետևից (նա ուրիշ բան նրանց անել չհամարձակվեց, քանզի նրանք կոչ էին անում կայսեր), ամբողջ հեծելազորով, իսկ ինքը՝ իր եղբայր Գուլինոսի հետ ոտքով, երկու ձիերով քաշվող կառքի ետևից, կայսեր մոտ եկավ։ Հասնելով ձիարշավարան նա կառքը թողեց այդտեղ, իսկ ինքը մտավ կայսեր մոտ. կատարվածի լուրը կանխավ տեղ էր հասել և նախապատրաստել իր մուտքը։ Երբ նրան ներս բերեցին, կայսրը պարսավեց նրան, ինչու՞ անհապաղ չպատժեց իր հոր ոճրագործներին։ Նա պատասխանեց, թե «նրանք անվերջ կոչ էին անում քո անվան». կայսրը անտեղի կասկածների մեջ ընկավ, շտապ մարդ ուղարկեց և նրանց շղթայակապ իր մոտ բերեց ու հարցրեց՝ ինչո՞ւ պատրիկին սպանելու փորձ արեցին։ Նրանք պատասխանեցին, թե նա դավեր էր նյութում թագավորությանդ ու քաղաքի դեմ։ Նա ծրագրում էր արշալույսին մուտք գործել և բոլոր բնակիչներին սրի քաշել, թալանել քաղաքը և պածինակների մոտ վերադառնալ։ Կայսրը պետք է ստուգեր նրանց ասածը և ճշմարտությունը մեջտեղ բերեր, բայց նա այդ բանը չարեց, անհիմն ու անտեղի զրպարտությանը հավատ ընծայելով, Կեղենին արքունիք բերեց՝ [բժշկական] օգնություն ցուցաբերելու և դարմանելու պատրվակով, և արգելափակեց էլեֆանտինե կոչվող [բանտում], նրա որդիներին էլ նրանից հեռու գտնվող տարբեր տեղերում։ Իսկ պածինակների բազմությանը տալով ամեն տեսակ ուտելիքներ ու խմիչքներ՝ նրանց նկատմամբ իր ունեցած սիրահոժարությունը ընդգծելու պատրվակով, շահեց նրանց համակրանքը, բայց նպատակը, եթե հնարավոր է, նրանց զինաթափելն էր, ձիերը

խլելը, ապա նրանց բռնելն ու հսկողության տակ առնելը։ Նա հրամայեց ոճրի մասնակիցներին, որպեսզի գնան իրենց ցանկացած տեղը և ինչպես ուզեն խաղաղ ու ազատ ապրեն։ Նրան թվում էր, թե իր արածը գաղտնի է մնում, բայց այդ մասին պաճինակներն իմացան։ Նրանք չարագուշակ էին համարում իրենց առաջնորդի վար դրվելը, նրա որդիների՝ տարբեր տեղերում [արգելափակվելը], իսկ դավադիրների ազատ արձակումը նրանք համարում էին չարամտության բացահայտ նշան։ Նրանք, թեև իրենց ուղարկվածը ընդունեցին սիրով, կայսեր ներբողեցին, ցույց տվեցին, թե հավանություն են տալիս կատարվածին, սակայն, երբ գիշերը վրա հասավ, առանց որևէ կասկած հարուցելու, ճամբարից դուրս եկան և ամբողջ գիշերը արագ քայլելով, երեք օր հետո անցնում են Հեմոսը և իրենք ևս միանում պաճինակների բազմության։ Բոլորն ահա մի տեղ գումարվելով և ձեռք բերելով բավարար քանակությամբ զենք, անցնում են Հեմոսը և բանակում Ավլեում (Ավլեն Հեմոսի ստորոտին, Ադրիանուպոլսից ոչ հեռու գտնվող մի բերդ է) և սկսում ասպատակությամբ ու ավարառությամբ զբաղվել։

22. Երբ այդ մասին իմացավ արևմուտքի արխոնտ մագիստրոս Կոստանդին Արիանիտեսը, նա ևս պատրաստ ունենալով իր ուժերը, Ադրիանուպոլսից եկավ նրանց վրա։ Ճանապարհին նրանց առանձին [ջոկատների] հանդիպելով հաջողություն ունեցավ, բայց Դամպոլիս կոչվող բերդի մոտ հանդիպելով նրանց բազմության և բախվելով, պարտություն կրեց։ Մարտում բազմաթիվ մակեդոնացիներ ու թրակացիներ ընկան, այդ թվում և Թեոդորոս Ստրավոմիտիսը, Պոլյուսը՝ փառավոր տոհմերից սերող մարդիկ, որոնք բարձր աստիճանների արժանացան Թոռնիկի[593] նկատմամբ ցուցաբերած իրենց անհավատարմության համար։ Մագիստրոսը Ադրիանուպոլիս վերադարձավ և նամակով կայսեր հայտնեց պատահարի մասին, տեղեկացրեց նաև, որ կարիք ունի թարմ ուժերի, քանզի եղած ուժերով, այն էլ մի անգամ պարտություն կրած, հնարավոր չէ ընդդիմակայել այդքան բազմության։ Կայսրը կատարվածի մասին գիտեր նախքան [մագիստրոսի] նամակները, նա Տյուրախին և քաղաքում պահվող պաճինակների իշխաններին նվերներով ու շնորհատրությամբ սիրաշահելով, (Նրանք երդումներով խոստանում էին խաղաղացնել ցեղը) ճամփու դրեց, ապա նամակ գրելով արևելից բոլոր տագմաները ետ կանչեց։ Նրանք եկան, Աբյուդոսի և Խրիսու-

պոլսի վրայով դիմացի ափն անցան։ Կայսրը նրանց զորավար-ավտոկրատոր նշանակեց ռեքտոր Նիկեփորին և պածինակների դեմ ուղարկեց։ Նրա հետ [կայսրն] ուղարկեց Կատակալոն Կեկավմենոսին, որին արևելից ստրատելատ էր նշանակած, ինչպես և Էրվեվիոս Ֆրանկոպուլոսին՝[594] ցեղակիցների այն ժամանակվա արխոնտին, հրամայելով նրան միանալ ռեքտորին, գործել նրա վճիռների համաձայն, հետևել նրա հրամաններին ու կամքին։ Նա վերցնելով ուժերը և Սիդերա կոչվող [տեղով] անցնելով Հեմոսը, շարժվեց պածինակների վրա։ Տեղ հասնելով, նա վրաններ խփեց Դիակենե կոչվող վայրում՝ Հարյուր լեռներից ոչ հեռու։ Ահա այդտեղ ամուր ցանկապատ կառուցելով, նպատակ ուներ հաջորդ օրը գումակն ու զորքի ավելորդ մասը այնտեղ թողնելով, ինքը մարտունակ զորքով գնալ և մարտ տալ հակառակորդներին։ Նա անխոհեմաբար ենթադրում էր, որ իսկույն պարտության կմատնի նրանց։ Նա նույնիսկ վախենում էր ու մտահոգված, որ չլինի հանկարծ հակառակորդներից որևէ մեկին հաջողվի թաքուն փախուստի դիմել։ Եվ այդպես էր մտածում ոչ միայն ինքը, այլև համայն զորքը։ Նրանք իրենց հետ վերցրին նույնիսկ պարաններ ու փոկեր, ձեռք գցածին կապելու համար։ Այդպես վստահ լինելու պատճառը նախկինում, Կեգենի ժամանակ, նրանց կրած պարտությունն էր։ Հասկանալի է, պածինակներն իմացան հռոմայեցիների արշավանքի մասին (Տյուրախն ու նրա հետ քաղաքից հեռացած արխոնտներն արդեն միացել էին [պածինակներին] և նրանց օգտին էին աշխատում, մնաս բարով ասելով Մոնոմախին տված իրենց խոստումներին) և ամենաքաջերը ելան նրանց ընդառաջ։ Կեկավմենոսը պաղատագին խնդրում էր, կոչ անում թե մարտ տալու հարմար առիթը հենց հիմա է, երբ [պածինակները] ցրված են ու սփռված, չպետք է սպասել նրանց ի մի գումարվելուն։ Բայց հռոմայեցիների մնացած բազմությունը հավանություն չէր տալիս նրա խոսքերին, իսկ ռեքտորը բացահայտ ծիծաղում էր նրա վրա, ասելով. «Ով ստրատելատ, վերջ տուր, քանի ես եմ զորավարը, մի խառնվիր իմ գործերին, պետք չէ հարձակվել ցիր ու ցան եղած պածինակների վրա, քանզի հնարավոր է, որ նրանք երկյուղելով, կթաքնըվեն թավուտների մեջ, իսկ ես, սիրելիս, հետապնդելով նրանց, չունեմ որևկան շներ, որոնք հոտ քաշելով, նրանց դուրս հանեն թաքստոցներից»։ Հռոմայեցիներն ահա այսպիսի վիճակում էին, իսկ պածինակների առաջամարտիկները, մոտենալով հռո-

մայեցիների ճամբարին, մի փոքր հեռավորության վրա, իրենք
ևս բանակում են և ետևից եկողներին հայտնում շտապ տեղ
հասնել։ Երբ բոլորն եկան ու միացան իրար, հաջորդ օրը ռեք-
տորը հանեց հռոմեական ուժերը, [պածինակները] շարժվեցին
նրանց դեմ։ Հռոմեական փաղանգի կենտրոնը գլխավորեց ինքը՝
ռեքտորը, աջ թևը՝ Կեկավմենոսը, իսկ ձախը՝ Ֆրանկոպոլոսը։
Մարտի ժամանակ հռոմայեցիները փախուստի դիմեցին, ամե-
նից առաջ ստրատելատները։ Նրանք, ինչպես ասում են, չդիմա-
ցան ձիերի սմբակների ձայնին անգամ ու փախան։ Միայն Կե-
կավմենոսն էր, որ իր սպասավորների ու փոքրաթիվ ազգական-
ների հետ կանգնեց ու, հերոսաբար մարտնչելով, ընկավ իր բո-
լոր մարգկանց հետ միասին։ Պածինակները, երկյուղելով, որ
կարող են թակարդի մեջ ընկնել, նրան[ց] չհետապնդեցին և
այդ պատճառով հռոմայեցիները կարողացան անվնաս փրկվել։
[Պածինակները] այդ միջոցին սպանվածներին դիակապուտ
արեցին, տիրացան բազում զենքերի, հենց հռոմեական ճամբա-
րին՝ ողջ հանդերձանքով, վրաններ խփեցին հռոմեական խրամի
տակ։ Մի պածինակ, անունը Կուլինոս[595], որը դեմքով ճանաչում էր
Կեկավմենոսին՝ այն ժամանակվանից, երբ վերջինս Պարիս-
տրիոնի բերդերի կառավարիչն էր, երբ դեռ ցեղերը իրար հետ
շփում ունեին, դիակապտությամբ զբաղված ժամանակ դիակնե-
րի մեջ գտավ նրան, մարմինը շուռ տալով դեմքից ճանա-
չեց։ Նա դեռ շնչում էր. մահացու վերք ստացած լինելով,, ան-
ձայն գետին էր տապալված. մի հարված գլխին էր ստացել
(նրա սաղավարտն ընկել էր)՝ գագաթից մինչև հոնքերը, իսկ
մյուսը՝ պարանոցին, լեզվի արմատին։ Հարվածը կտրել էր պա-
րանոցը և լեզուն, որը բերանի մեջ էր ընկել։ Նա արյունլվա էր։
Պածինակը Կեկավմենոսին ձիու վրա դնելով, տարավ իր
վրանը և հոգատարություն ու խնամք ցուցաբերեց[596]։ Պածինակ-
ներն այնպես հեշտությամբ ոչնչացնելով իրենց դեմ ու-
ղարկված զորքը, այսուհետև աներկյուղ ասպատակում էին հռո-
մայեցիների երկիրը։ Կայսրը փախստականներից իմանալով
պատահարի մասին, բնական է, տխրեց։ Նա դարձյալ զորքեր
հավաքեց, վերցրեց ինչ որ մնացել էր, ջանալով կրած պարտու-
թյան տեղը հաջորդ տարի հատուցել։ Երբ եկավ 6558 թվականը,
1050 ինդիկտիոնի երրորդ տարին, կայսրը, հետերիարխ Կոստանդի-
նին՝ զորավար-ավտոկրատոր նշանակելով, պածինակների դեմ
ուղարկեց։ Սա, վերցնելով արևելքից դիմացի ափը նոր անցած

ուժերը, ապա և հավաքելով արևմուտքում ձմեռող զորքերը, հասնում է Ադրիանուպոլիս, ուր խոր խրամ փորելով, գլխավորների հետ խորհուրդ էր անում՝ որտեղից առաջ շարժվել։ Երբ նա այդ բանի շուրջն էր մտածում, հանկարծակի, հունիս ամսի ութին, պածինակներն անցնելով Հեմոսը, հայտնվում են Ադրիանուպոլսի առաջ։ Նրանց հարձակման մասին ժամապահները Կոստանդնին տեղյակ պահեցին և հարց դրվեց, մարտի բռնվել նրանց հետ, թե՞ ոչ։ Երբ գլխավորները հետերիարխի վրանում նստած իրենց անելիքի շուրջն էին խորհրդակցում, պատրիկ Սամուիլ Բուրցեսը, մի ինքնավստահ ու հանդուգն մարդ, որն այն ժամանակ հետևակազորի հրամանատարն էր և նշանակված ճամբարի վրա հսկելու, առանց հրամանատարի ազդանշանն ստանալու, շարքերը թողնելով և ճամբարը վերացնելով, հետևակազորով դուրս է գալիս և մարտի բռնվում պածինակների հետ, որոնց ուժեղ ճնշման տակ հետևակներն սկսում են տեղի տալ։ Ահա այդ պատճառով Սամուիլը իրար ետևից մարդ էր ուղարկում հետերիարխի մոտ՝ օգնություն խնդրելով։ [Հետերիարխը] ստիպվեց ակամայից պատերազմի ազդանշան տալ։ Բովանդակ զորքը դուրս եկավ Թագավորական Լիվադա կոչվող տեղը։ Ճակատամարտում հռոմայեցիները սարսափելի պարտություն կրեցին, քանզի մարտի դիմեցին անակնկալ ու անկազմակերպ, բացի այդ, որովհետև հետևակազորը մինչև այդ պարտություն էր կրել, դրանից պածինակները գոտեպնդվել էին։ Հռոմայեցիներից քիչ մարդ սպանվեց, նրանք խայտառակ կերպով ներփակվեցին ճամբարի մեջ։ [Մարտում] ընկավ նաև պատրիկ Միքայել Դոկիանոսը, իսկ մագիստրոս Կոստանդին Արիանիտեսը կրծքին մահացու հարված ստանալով, երեք օր անց մեռավ։ Մարտում ընկան նաև փոքրաթիվ շարքային մարդիկ։ Մնացած համայն զորքը անփառունակ կերպով ներփակվելով ճամբարի մեջ, պածինակների կողմից օղակի մեջ առնվեց, նրանք սկսեցին խրամը լցնել քարերով ու ճյուղերով, ջանալով ճնշում գործադրելով գրավել ճամբարը։ Այդ բանը շուտով կիրականանար, եթե Սույցուն իր ձիու հետ միասին չշամփուրվեր բաղիստրից արձակված նետով, մի բան, որ մեծապես շշմեցրեց այդ բանին ականատես եղած պածինակներին։ Ադրիանուպոլսից օգնության դիմեց պրոտոսպաթար Նիկետաս Գլաբասը, սխոլերի տագմայի տոպոտերետեսը[596]։ Պածինակները, տեսնելով նրան, և կարծելով, որ Վասիլ սինկելլոսն է բուլղարական ուժերով տեղ հասել

*(սրա գալստյանն էլ էին սպասում) և երկյուղելով, ցիրուցան
եղած նահանջեցին, այլապես հռոմեակաս բանակը գլխովին կո-
րած էր։*

*23. Այգ տարի խռովություն էլ նյութվեց քաղաքի արխոնտն-
ներից ոմանց կողմից, որոնց պարագլուխներն էին Եվթիմիոսի
որդիներ Նիկեփորն ու Միքայելը և նրանց մի քանի այլ ազգա-
կաններ։ Թեև մնացած բոլորը պրծան, բայց Նիկեփորին միայն,
առանց դատ-դատաստանի, աքսորեցին, նախապես գրավելով
նրա ունեցվածքը։*

*24. Կայսրը, մտահոգված լինելով պածինակներին հաղթահա-
1051-ի րելու, Կեգենին բանտից ազատելով, պածինակների մոտ ուղար-
սկիզբ կեց. նա խոստանում էր նրանց մեջ սեպ խրել և կայսեր վստահե-
լի դարձնելը։ Այնուհետև [կայսրը] հավաքելով բովանդակ դաշնա-
կից [զորքերը], ես նկատի ունեմ ֆրանկներին ու վարյագնե-
րին[597], ապա և կանչելով Տլուքից, Սև լեռից և Կարկառից[598] շուրջ
քսան հազար հեծյալ աղեղնավորների, յուրաքանչյուր ազգի վրա
հայտնի մարդկանց կարգելով, իսկ ընդհանուր հրամանատարու-
թյունը տալով պատրիկ Բրիեննիոսին, որին ազգապետ[599] կո-
չեց, ուղարկեց խափանելու և կասեցնելու պածինակների հար-
ձակումները։ Պածինակները Ադրիանուպոլսի ճակատամար-
տից հետո բացարձակապես արհամարհում էին հռոմայեցինե-
րին, աներկյուղ ավերում ու կրակի ճարակ դարձնում Մակեդո-
նիան ու Թրակիան, անգթաբար կոտորում անգամ ծծկեր երե-
խաներին։ Նրանց մի զորամասը նույնիսկ Կատասիրտա հասավ
(Կատասիրտան մայրաքաղաքին շատ մոտիկ է գտնվում)։ Սը-
րանց սակայն շատ շուտով ջարդ ու փշուր արեցին. կայսրը զինե-
լով արքունիքի պահապաններից և դիպվածով տեղում գտնվող-
ներից ոմանց, և նրանց տալով թագուհի Զոեի ներքինի սենեկա-
պաններից մեկին՝ պատրիկ Հովհաննեսին, մականունը՝ Փիլի-
սոփա, հեշտությամբ ոչնչացրեց. նա գիշեր ժամանակ վրա հա-
սավ և բոլորին գտնելով գինարբուքի մեջ կամ քնած՝ սրի քա-
շեց, նրանց գլուխները սայլերի վրա բարձեց ու կայսեր բերեց։*

*25. Ինչ վերաբերում է Կեգենին, նա գնաց ու բանակցու-
թյունների մեջ մտավ պածինակների հետ, որոնք երդումներով
խոստացան կատարել նրա ցանկությունները։ [Կեգենը]. հավա-
տաց երդումներին ու նրանց մոտ գնաց, բայց իսկույն սպանվեց,
նրան կտոր-կտոր արեցին։ Իսկ Բրիեննիոսը, վերցնելով իրեն
վստահված ուժերը և լինելով Ադրիանուպոլսում, հոգում էր*

գյուղերի պահպանությունը։ Այնտեղ ուղարկվեց նաև գլխավոր հրամանատար պատրիկ Միքայել Ակոլութոսը[600], նա ևս հրաման ստացավ ճակատամարտ չտալ, այլ փակել [պածինակների ճանապարհը] և ետ մղել [նրանց] արշավանքները։ [Միքայելը քաղաքից] դուրս գալով և միանալով Բրիեննիոսին, գործի անցավ։ Նախ և առաջ նա Գոլոեյում հանդիպեց պածինակների մի զորամասի, պարտության մատնեց այն ու ոչնչացրեց, ապա պածինակների մի անջատված զորամասի էլ հանդիպելով Տոպլիցայում (սա Էվրոսի մոտ գտնվող բերդ է) կոտորեց։ Պածինակներն արդեն սկսեցին վախենալ նման ուժերից և հրաժարվելով Հեմոսի ստորոտներում ընկած գյուղերը ասպատակելուց, ամբողջ ուժով հարձակվեցին Մակեդոնիայի վրա։ Նրանց ամենառազմունակ մասը առանձնանալով, ոտնատակ էր անում Մակեդոնիայի գյուղերը և մտադիր էր, եթե գործը դրան հասնի, քաջաբար ճակատամարտ տալ։ Բրիեննիոսն ու Միքայելը, իմանալով այդ մասին, գիշերով ճամփա ընկան, այնպես որ ոչ ոք չիմանա, թե ու՞ր են գնում, արագ քայլով հասան Խարիուպոլիս և զորքով այնտեղ մտնելով, հարմար առիթի էին սպասում։ Պածինակները բոլոր գյուղերում ու պրոաստիոններում ասպատակ սփռելով, երեկոյան մոտ վերադարձան Խարիուպոլիսին շատ մոտիկ և բանակեցին, բացարձակապես անգիտանալով, որ [քաղաքում] զորք կա։ Դրա համար նրանք աներկյուղ իրենց խրախճանքի տվեցին, սրինգ թմբուկով։ Երբ գիշերը վրա հասավ, Բրիեննիոսի ու Միքայելի [զինվորները] քաղաքից դուրս գալով և նրանց խումփալով քնած գտնելով, բոլորին կոտորեցին։ Այս պատահարը պածինակներին ընկճեց ու սարսափով պատեց և նրանք առաջվա նման ասպատակությունները խաղաղ ու հան-
1051/ գիստ չէին կատարում, այլ վախով՝ ինդիկտիոնի 4-րդ և 5-րդ
1052 տարիներում։

26. Այդ ժամանակները հանկարծակի մեջտեղ եկավ Ռոմանոսի՝ Բոյիլաս[601] կոչվածի դավադրությունը։ Սա տագմաներում էր ծառայում. ունենալով թույլ լեզու, սրամիտ ու ծաղրասեր էր համարվում։ Երբ նա մի անգամ անձամբ հանդիպեց կայսեր և խոսակցեց նրա հետ, շատ դուրեկան մարդու տպավորություն թողեց, և այդ օրվանից կայսրից անբաժան էր, կայսրը նրան օգտագործում էր որպես խորհրդականի, սպասավորի և գործակատարի՝ ամեն տեսակի ծառայություններում։ Կայսրը աստիճանաբար առաջ քաշելով, նրան շատ բարձրացրեց ու վեհաց-

րեց, նա դարձավ արքունիքի ամենաբարձր պաշտոնյան։ Լինելով հնարամիտ ու խորամանկ, ի սկզբանե անտի գահի վրա աչք ունեցող, փորձում էր իր կողմը քաշել բոլոր այն սենատորներին, որոնք ընդհարվել էին կայսեր հետ և նրանց բացահայտում էր իր գաղտնիքները։ Ովքեր որ հարում էին դավադիր առաջարկություններին, անաղմուկ ու հեզորեն իր կողմն էր քաշում և երդումներով ապահովում նրանց հավատարմությունը, իսկ ովքեր չէին ուզում անգամ լսել այդ մասին, ձևացնում էր, թե հավանություն է տալիս նրանց և հիանում նրանց՝ դեպի կայսրն ունեցած բարյացակամության վրա, ասում, թե ինքը պարզապես փորձում է նրանց և երդվում կայսեր առաջ խոսել նրանց օգտին։ Ի վերջո նա քաղաքացիներից շատերին գայթակղեցրեց և դավադրության նախապատրաստություն տեսնելիս, բացահայտվեց։ Նրա բոլոր գործակիցների գլխին փորձանք եկավ՝ նրանք գանակոծվեցին, ունեցվածքից զրկվեցին և աքսորվեցին, իսկ Ռոմանոսին ոչինչ էլ չեղավ։ Կայսրը կարճ ժամանակով նրանից երես թեքեց, բայց նա ներում ստանալով, մնաց նախկին պաշտոնում։

27. Իսկ սուլթանը, ինչպես ասվեց, իր եղբոր Աբրահամի հանդեպ նախանձով լցված, նրա կյանքի դեմ դավեր էր նյութում և անվերջ մտածում նրան սպանելու մասին։ [Աբրահամն] իմացավ այդ, փախավ իր եղբորորդի Կուտլումուշի մոտ և նրա հետ միասին պատերազմ սկսեցին սուլթանի դեմ, որը նրանց մարտ տվեց Պասար կոչված [վայրում], պարտության մատնեց, Աբրահամին գերի վերցնելով սպանեց։ Կուտլումուշը 6 հազար հոգով փախուստի դիմելով, Աբրահամի որդի Մելեքին[602] կայսեր մոտ պատգամավոր ուղարկեց, խնդրելով նրան իրեն ընդունել և համարել հռոմայեցիների դաշնակիցն ու բարեկամը, իսկ ինքը եկավ Պերսարմենիա՝ Կարս կոչված [քաղաքը], սպասելով
6—I—1054 պատգամավորության արդյունքներին։ Այդ ընթացքում նա պաշարեց Կարսը և գրավեց այն՝ բացի միջնաբերդից[603]։ Նրան հետապնդող սուլթանն իր զորքերով եկավ Իբերիա[604]։ Կուտլումուշը իմանալով դա, փախավ Սաբա և Երջանիկ Արաբիա։ Իսկ սուլթանը, մուտք գործելով Իբերիա, հանդիպածն ասպատակում ու կրակի էր տալիս։ Այդ պատճառով կայսրը շտապ կարգով արևմուտքից կանչեց և Իբերիա ուղարկեց Միքայել Ակոլութոսին, որը տեղ հասնելով և խաղտիքում ու Իբերիայում ցրված ֆրանկներին ու վարյագներին[605] առաջնորդելով, հնարավորին չափ

ջանում էր խոչընդոտել սուլթանի հարձակումները։ Սուլթանն, իմանալով նրա սրընթաց հարձակման մասին, այն մասին, թե նա զորք հավաքելով շտապում է իր հետ կռվի բռնվել, մտածեց, որ երկու ելքն էլ իր համար անփառունակ են՝ հաղթելու դեպքում հաղթած է լինելու կայսեր ծառային, իսկ պարտվելու դեպքում մեծապես խայտառակվելու է, ուստի և համայն զորքը վերցնելով, վերադարձավ Թավրեզ[606]։

28. Այդ ժամանակներում Ստեփանոսի որդի Միքայելասը, իր հոր [մահից] հետո դառնալով տրիբալների ու սերբերի ա-
1052 ռաջնորդը, կայսեր հետ դաշինք է կնքում և դառնում հռոմայեցիների դաշնակիցն ու բարեկամը՝ ստանալով պրոտոսպաթարի պատվաստիճան։ Եգիպտոսից, նրա առաջնորդի կողմից կայսեր [նվեր] ուղարկվեցին մի փիղ և մի ընձուղտ[607]։ Կայսրը, ուզենալով վերջնականապես դուրս շպրտել պածինակներին, հավաքեց արևելքի և արևմուտքի առկա ուժերը, նրանք տվեց Միքայել Ակոլութոսին, ապա հրամայեց Վասիլ Սինկելլոսին վերցնել բուլղարական զորքերը, և երկուսին էլ պածինակների դեմ ուղարկեց։ Նրանք, իմանալով այդ մասին, բանակեցին Մեծ Պրեսլավայում և [ճամբարը] խոր խրամով ու ցանկապատով ամրացրեցին։ Երբ հռոմայեցիները տեղ հասան, նրանք փակվեցին խրամից ներս և պաշարման օղակի մեջ առնվեցին։ Հռոմայեցիները իզուր ժամավաճառ էին լինում, ոչ մի խոսքի արժանի բան չէին կատարում, բացի այդ սկսեցին նաև պարենի պակաս զգալ, դրա համար նստեցին խորհրդակցելու՝ իրենց անելիքի մասին։ Նրանք միահամուռ կերպով որոշեցին վերադառնալ, և ուշ գիշերով առանց աղմուկի ցանկապատի դռները բացելով, բռնեցին նահանջի ճանապարհը։ Այդ բանը Տյուրախից թաքուն չմնաց։ Իմանալով, որ հռոմայեցիները որոշել են գնալ, նա խարաքսից բազում զորք հանեց և ուղարկեց դեպի անցատեղիները, որոնցով պետք է հռոմայեցիներն անցնեին։ Երբ հռոմայեցիները դուրս եկան, [Տյուրախն] իսկույն նրանց վրա հարձակվեց։ Հռոմայեցիները դիմեցին սարսափելի փախուստի, ոմանք ընկնելով հետապնդողների ձեռքը, սրի էին քաշվում, մյուսները դժվարանցանելի ճանապարհները կանխօրոք բռնածներին հանդիպելով, կոտորվում։ Հսկայական քանակությամբ զորք սպանվեց, այդ թվում և Սինկելլոսը, իսկ մնացածները Միքայել Ակոլութոսի հետ փրկվեցին Ադրիանուպոլսում։ Այս աղետի վրա կայսրը մեծ ցավ զգաց, նա վիրապրածներին սրտապնդեց, զինվորագրեց այլ

զորք, հավաքեց վարձկանների, դտնելով, որ կյանքն անտանելի է, քանի գլխովին չի վերացրել պածինակների ցեղը։ [Պածինակները] ոմն դասալիքի կողմից իմանալով [կայսեր] վճռի մասին, դեսպանություն ուղարկեցին հաշտություն խնդրելով։ Կայսրն ընդունեց նրանց դեսպանությունը և նրանց հետ երեսնամյա
1053 հաշտություն կնքեց։

29. Կայսրը Մանգանա կոչված վայրում մեծ վկա Գեորգիոսի անվան վանք կառուցելով[608] և շինարարությունների վրա անխնա դրամ ծախսելով, մեկ՝ կառուցելով, մեկ՝ քանդելով, մեծ կարիքի առաջ կանգնեց, որից դուրս գալու համար ամեն տեսակ փերեզակության դիմեց, հրեշային ու խաբեբա հարկապահանջություն հորինեց։ Նա պետական հոգացողների պաշտոնում նշանակեց ամբարիշտ ու մեղսագործ մարդկանց, որոնց միջոցով ապօրինի ճանապարհով դրամական միջոցներ էր հավաքում։ Նա Լևոն Սերվլիասի միջոցով լուծարքի ենթարկեց շուրջ հիսուն հազարի հասնող իբերական զորքը[609], և զինվորների փոխարեն այդ վայրերից բազում հարկեր էր հավաքում[610]։ Նա բազմաթիվ այլ ստոր ու անօրեն հարկապահանջություններ հորինեց, որոնց մասին պատմելն անգամ ամոթաբեր է։ Բայց մի բան պետք է ասել, այն, որ այս կայսրից սկսած, նրա շվայտության ու պոռնտախոսության պատճառով, հռոմայեցիների գործերն սկսեցին վատանալ և այդ օրից սկսած մինչև այժմ աստիճանաբար կատարյալ անզորության հասան[611]։ Կոպիտ կերպով առատաձեռնության ձգտելը կատարյալ անառակության կհասցնի։ Համենայն դեպս նա ամենևին էլ զուրկ չէր բարի գործերից, պատմության մեջ հիշատակելի են նրա որոշ գործեր, օրինակ՝ վերոհիշյալ վանքի կառուցումը, այդ վանքի ծերանոցները, հյուրանոցներն ու աղքատանոցները արժանի են գովքի, չի կարելի չներբողել նաև Մեծ եկեղեցում կատարված աշխատանքը։ Մինչև նրա իշխանությունը այգ եկնղեցում սուրբ պատարագ էր մատուցվում միմիայն պաշտոնական տոներին, ինչպես և շաբաթ ու կիրակի օրերին, իսկ մնացած օրերին՝ ոչ։ Դրա պատճառը եկամուտների պակասն էր։ [Մոնոմախը] նրան բավարար, առատ միջոցներ հատկացրեց և հնարավորություն տվեց, որ ամեն օր մատուցվի սուրբ պատարագը։ Այդ բանը մինչև օրս էլ հարատևում է։ Նա այդ եկեղեցուն նվիրաբերեց ոսկուց, թանկագին մարգարիտներով ու ակներով պատրաստված սուրբ հաղորդության սպասքներ, որոնք և՛ իրենց չափերով, և՛ գեղեցկու-

*թյամբ, և՛ արժեքով շատ ու շատ էին գերազանցում մնացածները։ Նա զարդարեց այն բաղում այլ թանկագին առարկաներով։ [Մոնոմախի] մասին ահա այսպես։*

1054/ *30. Ինդիկտիոնի 7-րդ և 8-րդ տարիներում մայրաքաղաքում*
1055 *մահ տարաժամ տարածվեց, այն աստիճան սուր, որ մարդիկ*
*չէին հասցնում մահացածներին թաղել։ Ինդիկտիոնի 7-րդ տար-*
*վա ամռանը շատ խոշոր կարկուտ էլ տեղաց, որը ոչ միայն բա-*
*զում անասունների, այլև մարդկանց կոտորեց։ Կայսրը տառա-*
*պում էր իր հիվանդությամբ՝ հոդատապով և պառկած էր իր*
*կողմից նորոգված Մանգանայի վանքում։ Երբ նա ունեցավ մի*
*նոպա ևս և մահն արդեն շեմին էր, արքունիքի մեծավորները՝*
*լոգոթետ Հովհաննեսը, որին կայսրը պարադինաստևոն էր դարձ-*
*րել, հեռացնելով Լիխուդեսին, դրոմոսի պրոտոնոտար Կոստան-*
*դինը, կանիկլիոնի*[612] *Վասիլը և մյուս մերձավորները, մտածում*
*էին՝ ու՞մ նստեցնեն կայսերական գահին։ Բոլորը գտան, որ ա-*
*մենից հարմարը Նիկեփոր Պրոտևոնն է։ Սուրհանդակ է ուղարկ-*
*վում Բուլղարիա՝ նրան այնտեղից բերելու. այն ժամանակ նա*
*Բուլղարիայի կառավարիչն էր։ Երբ այդ մասին իմացան կայս-*
*րուհի Թեոդորայի սպասավորները (Զոեն արդեն վախճանված էր),*
*այն է Նիկետաս Քսիլինիտեսը, Թեոդորոսն ու Մանուիլը, [Թեո-*
*դորային] դրոմոնի վրա նստեցնելով, բերում են մեծ պալատի*
11—I *ապարանքը և հռչակում ինքնակալ։ Կայսրը վախճանվեց և ար-*
—1055 *ժանացավ սովորական թաղման՝ Մանգանայում, իսկ կայսրու-*
*հու կողմնակիցները մարդ ուղարկեցին և Պրոտևոնին Թեսաղո-*
*նիկեում բռնելով, բերեցին Թրակեսիոն բանակաթեմը, Կուզե-*
*նայի վանքը, ուր և արգելափակեցին։*

# ԹԵՈԴՈՐԱ

**[11 հունվար 1055—21 օգոստոս 1056 թթ.]**

*1. Թեոդորան, տիրանալով պապենական թագավորության*[613]*, անհապաղ հեռացրեց Պրոտևոնին կայսր հռչակելու կողմնակիցներին, գրավեց նրանց ունեցվածքն ու աքսորեց։ Նա իր բոլոր ներքինիներին տվեց ամենաբարձր պաշտոնները՝ Թեոդորոսին դարձրեց արևելից սխոլերի դոմեստիկոս և ուղարկեց արևելք՝ թուրքերի արշավանքները կասեցնելու, մագիստրոս Իսա-*

հակ Կոմնենոսին հեռացնելով ստրատոպեդարխի պաշտոնից։ Մոնոմախը մակեդոնական բովանդակ ուժերը արևելք էր տեղափոխել, նրանց բոլոր հրամանատարները մակեդոնացիներ էին, որոնցից մեկը Բրիեննիոսն էր։ Թուրքերի մեջ լուր էր տարածվել, թե ճակատագիրն այնպես է կանխորոշել, որ թուրքերի ցեղը կործանվելու է այնպիսի ուժից, որպիսով Ալեքսանդր Մակեդոնացին կործանեց պարսիկներին[614]։ [Թեոդորան] դրոմոսի լոգոթետի պաշտոնում առաջ քաշեց Նիկետասին, իսկ վիգլայի դրունգարի՝ Մանուիլին։ Իր մեծ փորձը նկատի ունենալով, հասարակաց գործերի ղեկավարությունը տվեց սինկելլոս Լևոնին՝ մականունը Ստրավոսպոնդիլոս, որն անցյալում ծառայել էր Միքայել կայսեր։ Քաղաքում վիճակն ահա այսպիսին էր։ Իսկ Բրիեննիոսը, լսելով կայսեր մահվան մասին, վերցնելով մակեդոնացիներին, իջավ Խրիսուպոլիս։ Կայսրուհին մեղադրելով նրան անկազմակերպ հեռանալու մեջ, բռնեց, ունեցվածքը գրավեց և աքսոր ուղարկեց, իսկ [նրա] զինվորներին կարգադրեց ետ վերադառնալ։ Ահա 6564 թվականի, ինդիկտիոնի ամբողջ 9-րդ տարին ապրելով, նույն ինդիկտիոնի օգոստոս ամ-
21—VIII սի վերջին աղիքների ոլորումից թագուհին մեռավ։

—1056 2. Երբ նա դեռ հոգեվարքի մեջ էր, իր ներքինիները Լևոն սինկելլոսի հետ կայսերական գահին են նստեցնում պատրիկ Միքայել Ստրատիոտիկոսին, որը թեև ծագումով Բյուզանդիոնից էր, բայց պարզ ու միամիտ մի անձնավորություն էր, որ դեռ մանուկ հասակից զինվորական դաստիարակություն ստացած լինելով, այլ բաների անտեղյակ էր, բացի այդ, նա արդեն տարեց էր, ծեր հասակում, որի անգործությունն ու պիտանի լինելու մասին ասել է պոետ Արքիլոքոսը։ Ներքինիներն այդպես արեցին, որպեսզի նա ձևական, անունով միայն կայսր լինի, իսկ իրենք իրենց ցանկացածի պես տնօրինեն հասարակաց գործերը և ամեն ինչի տերը լինեն։ [Միքայելը] նախօրոք երդում էր տվել, թե իրենց կամքին ու ցանկության հակառակ ոչինչ չի անի։

# ՄԻՔԱՅԵԼ ԾԵՐՈՒՆԻ

## [21 օգոստոս 1056—31 օգոստոս 1057 թթ.]

*1. Միքայելը ինդիկտիոնի 9-րդ տարվա օգոստոս ամսի 21-ին դարձավ ինքնակալ, իսկ պրոեդրոս Թեոդոսիոսը, Կոստանդին Մոնոմախ կայսեր հորեղբորորդին, լսելով նրա կայսր հռչակվելու մասին և վատ զգալով, իր ձեռնարկելիք գործի դժվարությունների ու հնարավոր տապալման մասին առանց երկար մտածելու, վերցնում է իր ընդոծիններին, ստրուկներին և մյուս սպասավորներին, նաև բազմաթիվ հարևանների ու ծանոթների, ովքեր որ խելքից թեթև էին, և երեկոյան դուրս գալով տնից (այն գտնվում է Լեոմակելլիոն կոչվածի մոտ), պողոտայով զայրացած ու վրդովված շարժվում դեպի պալատ, հանդիպածին բարձրաձայն հայտնելով իր հանդեպ ցուցաբերված անսահման անարդարության մասին, ասելով, որ թագավորությունն իբրև թե իր ժառանգական իրավունքն է և իրեն է վերաբերում, քանզի ինքը վախճանված կայսեր ամենամոտիկ արյունակիցն է։ Հասնելով Պրետորիոն, նա ջարդեց բանտի դռները, բանտարկյալներին դուրս հանեց, հույս ունենալով նրանց օգնությամբ ինչ-որ մեծագործություն ու սխրանք կատարել։ Նա նույն բանն արեց նաև հասնելով Խալկե[615]։ Ապստամբության լուրը հասավ արքունիքի ներքիններին և պալատի պահակախումբը՝ հռոմայեցիներ ու վարյագներ (վարյագները կելտական ցեղ են և վարձով ծառայում են հռոմայեցիների բանակում) շտապ կարգով զինվեցին, անհապաղ ոտքի հանվեցին նաև կայսերական տրիերաներում ծառայողները։ Հավաքվեց բավական կարող ուժ, որը պետք է Թեոդոսիոսի դեմ ուղարկվեր։ Վերջինս, իմանալով այդ մասին, այլևս չուղղվեց դեպի պալատ, այլ շրջվեց դեպի աստծու Մեծ եկեղեցին։ Նա հույս ուներ, որ մտնելով այնտեղ, պատրիարքի ու կղերի կողմից ընդունելության կարժանանա, որ բաղում ժողովուրդ կհավաքվի և իրեն կայսր կհռչակեն։ Բայց ամեն ինչ հակառակ ընթացքն ունեցավ։ Պատրիարքն ու եկեղեցու կղերը նրա առաջ փակեցին դռները, սովորաբար նման դեպքերի սիրահարներն ու հարողները ոչ մի տեղ չէին երևում, իսկ մինչև այդ վայրը նրա ետևից գնացողները, իմանալով իրենց դեմ ուղարկվելիք ուժի մասին, կամաց-կամաց հեռացան, ցրվեցին։ Այսպիսով, նա մնաց մեն-մենակ և եղկելի ապաստան*

աղերսողի նման, իր որդու հետ նստեց եկեղեցում։ Փութանակի մարդիկ ուղարկելով, նրան եկեղեցուց դուրս հանեցին և Պերգամոն աքսորեցին։ Նույն կերպ վարվեցին նաև նրան հարած հայտնի մարդկանց հետ։ Ահա սրանից հետո Միքայելը միահամուռ կերպով հռչակվեց ինքնակալ։

2. Կայսրության սանձերն իր ձեռքն առնելով, նա սենատի[616] բոլոր գլխավորների աստիճանները բարձրացրեց, իսկ դեմոսին էլ սիրաշահում էր բաղում բարիքներ խոստանալով։ Լինելով զառամյալ և հիշելով հին-հին սովորույթները, նա փորձեց վերստին կյանքի կոչել նրանցից շատերը, որոնք որպես կայսրության կամ հասարակության ոչ մի օգուտ չտվող, դադարել էին գոյություն ունենալուց։ Նա հրաման տվեց վերանորոգել, այսպես կոչված, Ստրատեգիոնը[617], որի առթիվ քաղաքացիները ծիծաղելով ասում էին, թե նա հողն է մաղում, փնտրելով խաղալու ժամանակ այնտե՛ղ կորցրած իր վեգը։ Նա կարգադրեց, որ քաղաքացիներն իրենց գլուխները ծածկեն բարակ թելով գործած կարմիր, մեծ գծեր ունեցող ծածկոցներով և ոչ անգիծ, ինչպես այժմ։ Նա հանրային հոգացողների պաշտոնին նշանակեց ոչ թե սենատորներին, այլ ամեն մի դիվանում բազմացած արագագիրների։ Եվ նման շատ բաներ, որոնցից յուրաքանչյուրի մասին եթե ուզենամ պատմել, ունկնդիրներին տաղտկալի պիտի դառնամ։ Ահա այդպես միամիտ ու ապաշնորհ էր նա վարում գայիսոնն ու կառավարում։ Երբ հասավ կայսերական նվերներ բաժանելու ժամանակը, որոնք ամեն տարի՝ Զատկի օրը կայսրերը սովորության համաձայն բաժանում էին սենատորներին, ներս մտան [ազնվական] ծագմամբ ու արիությամբ անուն հանած զորահրամանատարները, այն է՝ մագիստրոս Իսահակ Կոմնենոսը, մագիստրոս Կատակալոն Կեկավմենոսը (սա Անտիոքի դուքսն էր, որի պաշտոնանկ արվելուց հետո, նրա տեղը գրավեց կայսեր եղբորորդի Միքայելը, որին, պաշտոնը ստանալուց հետո, կայսրը մականվանեց Ուրանոս, իբրև թե նա, ինչպես և ինքը, սերում էր Ուրանոսների հին տոհմից, և տալով, ինչպես իր նախորդը, Անտիոքի մագիստրոսի պատվաստիճան ուղարկեց Կեկավմենոսին փոխարինելու), վեստարխ Միքայել Բուրցիսը[618], արևելքի՝ Դուկասի ընտանիքից սերող Կոստանդինն ու Հովհաննեսը, և այլ մեծամեծ իշխանավորներ։ Բոլորը եկան տեսնելու նոր կայսեր և նրա նվերներին արժանանալու, քանզի բոլորի մոտ տարածվել էր նրա առատաձեռնության, մեծահոգա-

բար բարեգործություններ կատարելու և ազատամտության համբավը։ Կայսրը խոսակցություն ունեցավ Կոմնենոսի և Կեկավմենոսի հետ, դրվատեց նրանց, անվանեց քաջ ու առաքինի զորավարներ, հատկապես Կեկավմենոսին, ասելով, որ նման աստիճանի բարձրացավ ոչ թե իր ծագման շնորհիվ, ոչ էլ որևէ մեկի օժանդակությամբ, այլ սեփական քաջագործություններով։ Նա նույնպես վարվեց նաև մնացած ազնվականների հետ, բայց ոչ ոքի խնդրանքին չընդառաջեց, նա հավանություն չտվեց Կոմնենոսի և Կեկավմենոսի աղերսին՝ իրենց պրոեգրոսի աստիճանը շնորհելու, նա ամենքի խնդրանքներն էլ անպատասխան թողնելով, ճամփու դրեց և բոլորին իր դեմ գրգռեց։ Ահա այսպես նա վարվեց արևելից զորավարների հետ։

3. Աքսորից կանչելով Բրիեննիոսին, նրան Կապադովկիայի կառավարիչ նշանակեց, ապա մակեդոնական տագմաների զորավար-ավտոկրատոր և ուղարկեց թուրքերի դեմ։ Մի ոմն թուրք, անունը Սամուխ, ծագմամբ աննշան, բայց պատերազմական հարցերում քաջ ու գործունյա, որ զինակցել էր սուլթանին, երբ վերջինս երկրորդ անգամ ներխուժել էր հռոմայեցիների երկիրը, սուլթանի՝ Պարսկաստան վերադառնալուց հետո երեք հազար զինվորներով մնաց տեղում և դեգերելով Մեծ Հայքի սարահարթներով ու ցածրադիր վայրերով, հանկարծակի հարձակումներ էր գործում, տակնուվրա անում ու ասպատակում հռոմայեցիների [նահանգները][619]։ Կայսրը չկարողացավ Բրիեննիոսին անգամ օգտակար լինել, վիրավորված ու իրենց հոգում զայրույթ թաքցրած մարդկանց պատրելու և սիրաշահելու մեջ նա շատ ապաշնորհ էր։ Բրիեննիոսը պաղատագին աղերսում էր՝ վերադարձնել Թեոդորա թագուհու կողմից ըրենից խլված դրամը, բայց կայսրը դրան ականջ չկախեց, այդպես քաշվելով, պաղատագին աղերսողին դիմեց ժողովրդական մաշված ասացվածքով, թե «Գործ արա, հետո վարձ պահանջիր»[620] ու ճամփու դրեց։ Ահա Բրիեննիոսն էլ այս ձևով արհամարհանքի արժանացած հեռացավ, շատ զայրացած և վրեժ առնելու առիթի սպասելով։

4. Նա այդ կերպ վարվեց նաև Էրվեվիոս Ֆրանկոպուլոսի հետ, մի մարդու, որ Մանիակեսի հետ Սիկիլիա էր արշավել, մեծ հաղթանակներ տարել և այդ օրվանից մինչև այժմ հռոմեասիրություն ցուցաբերել։ Սա ևս խնդրում, աղաչում էր արժանանալ մագիստրոսի պատվաստիճանին, բայց կայսրը ոչ միայն արժանի չգտավ նրան ընդունել, այլ շատ ծաղրուծանակի ենթար-

կելով ու անարգելով, ճամփու դրեց։ Խնդրանքների հարցում նա այդպես անխոհեմ էր, և դժվարամատչելի։ Էրվեվիոսը որպես բարբարոս և ղայրույթը զսպելու անկարող, վիրավորանքը հեշտությամբ չտարավ, ու թեպետև հռոմայեցիների ծրագրած մեքենայություններին անտեղյակ էր, ջանաց վրիժառու լինել անարգողից։ Նա խնդրեց թույլ տան իրեն գնալ տուն և թույլտվություն ստանալով, կայսեր մնաս բարով ասաց ու [քաղաքից] իսկույն դուրս եկավ։ Անցնելով արևելք, նա բարձրացավ Արմենիակների [բանակաթեմում] գտնվող իր տունը՝[621] Դագարաբե, և ձմեռելու համար այնտեղ ցրված ֆրանկներից մի քանիսի հետ համաձայնության գալով, կարողացավ նրանցից երեք հարյուր հոգու գայթակղեցնել։ Այնտեղից դուրս գալով նա բարձրացավ Մարաստան[622] ու համագործակցություն հաստատեց այնտեղ գտնվող Սամուխի հետ՝ հռոմայեցիների դեմ պատերազմելու համար։ Որոշ ժամանակ [նրանց] դաշինքը մնաց անսասան, բայց երբ մի անգամ ֆրանկների ու թուրքերի միջև ընդհարում տեղի ունեցավ, այդ երկու ցեղերը սկսեցին միմյանց նկատմամբ դավեր նյութել։ Սամուխը ձևացնում էր, թե անխախտ է պահում դաշինքը, բայց Էրվեվիոսը շատ էր կասկածում և հանկարծակի հարձակում ակնկալում։ Նա խնդրում էր ֆրանկներին անհոգ չքնել, այլ հենց զենքերի վրա։ Այդ բանը նա ծածուկ էր անում, Սամուխին բացարձակապես զգացնել չտալով դա, մինչև որ վերջինս կարծելով, որ իր [ծրագիրը] թաքուն է մնացել, այն ի հայտ չբերեց։ Մի օր, զինելով իր ունեցած բոլոր թուրքերին, նա հարձակվեց ճաշի նստած ֆրանկների վրա, որոնք իրենց զորավարի կարգադրության համաձայն, ձիերին կազմ ու պատրաստ ունենալով, հենց որ զգացին թուրքերի հարձակումը, անհապաղ նստեցին ձիերի վրա և դուրս եկան նրանց ընդառաջ։ Տեղի ունեցավ սաստիկ մարտ և թուրքերը, մի փոքր դիմադրելուց հետո, դիմեցին փախուստի։ Նրանցից շատերը սպանվեցին, մնացածները, անձի ու անզեն փրկվեցին Խլաթում։ Էրվեվիոսը ֆրանկների հետ հետապնդումից վերադառնալով, խորհուրդ տրվեց վրանները խփել ցանկապատված ճամբարում, բայց ֆրանկները սլնդում էին ու ստիպում Խլաթ քաղաքը մտնել՝ (նրա ամիրայի հետ իրենք երդումներով հաստատված դաշինք ունեին), որպեսզի հանգստանան, բաղնիք ընդունեն, մաքրվեն պատերազմի արյուններից։ [Էրվեվիոսը] համառում էր ասածի վրա, խնդրում այդ մտքից հրաժարվել, ամենևին հավատ չընծա-

յել այլադեն ու այլազգի մարդկանց երդումներին, մարդկանց, որոնք համոզված են, թե բարեպաշտություն է բազում քրիստոնյաների սպանությունը։ Երբ իր ասածի վրա ոչ ոք ուշադրություն չդարձրեց և բոլորը միահամուռ գտնում էին, որ անհրաժեշտ է քաղաք մտնել, նա էլ վեր կացավ ու նրանց հետ մտավ, նախապես հանում՝ աստծո շատ պաղատելով, աղաչելով ու հորդորելով նրանց լինել շատ զգույշ, զենքը [միշտ] ձեռքում բռնած ունենալ։ Բայց ֆրանկները, մտնելով [քաղաք], անգոսնեցին զորավարի կարգադրությունները և իրենց նետեցին բաղնիքներն ու կերուխումի։ Ամիրա Ապոնասարը[623], Սամուխի և քաղաքի սարակինոսների հետ խորհրդակցելով, կարգադրություն արեց պանդոկապաններին՝ երբ ազդանշանը տրվի, բռնել հյուրընկալվողներին, շղթայել նրանց, կամ, եթե դա հնարավոր չէ, սրի քաշել։ Սկզբում նա հանգիստ էր մնում, բայց երբ ֆրանկները բավարար չափով զվարճացած քուն մտան, նա տալով ազդանշանը, հարձակման անցավ։ Ֆրանկների մի մասն իսկույն սրի քաշվեց, մյուսը՝ բռնվեց, ոմանք էլ իրենց պարսպից դուրս նետելով, կարողացան փրկվել։ Բռնվեց և Էրվեվիոսը, որը շղթայվեց ու հսկողության տակ առնրվեց։ Ամիրան այդ բանն անելուց հետո, լուր ուղարկեց կայսեր, թե իբր նրա հանդեպ բարեկամական զգացումներ տածելով, իր, կայսեր դեմ դավեր նյութողներին ոչնչացրեց և նրանց առաջնորդին բռնեց։ Ահա այդ էր, ինչ տեղի ունեցավ Ֆրանկոպոլոսի հետ[624]։

5. Իսկ արևելից զորավարները, ինչպես վերևում ասվեց, կայսեր կողմից ճամփու դրվելուց հետո, որոշեցին մի անգամ ևս փորձել. նրանք եկան պրոտոսինկելլոս Լևոն Ստրավոսպոնդիլոսի մոտ, որն այն ժամանակ հասարակաց հոգացողն էր, նրան միջնորդ դարձրին կայսեր առջև՝ խնդրելու, որ իրենց հանդեպ խտրականություն հանդես չբերի, իրենց աչքաթող չանի, անարգ կերպով չմերժի։ Նրանք իրենց այլ իրավունքներն էլ առաջադրեցին և վերջում ասացին, թե լավ չէ, որ կայսերական պատիվների են արժանանում քաղաքացիական անձինք, մարդիկ, որոնք [պարսպի] ատամնաշարի մոտն անգամ չեն կանգնել, թշնամիների դեմ երբևիցե չեն մարտնչել, իսկ իրենք, որ մանուկ հասակից պատերազմներում են անցկացրել, անքուն մնացել, որպեսզի նրանք հանգիստ քնեն, քամահրվեն ու զրկվեն կայսերական պատվից։ Բայց կայսրը լինելով դժկամ ու ան-

մատչելի, ոչ միայն բարեհամբույր կերպով չընդառաջեց խընդրանքին, այլ խնդրարկուներին հայհոյանքներով վռնդեց, բազում անարգանքներ էլ թափեց յուրաքանչյուր այրի գլխին։ Նըրանք, երկրորդ անգամ վիրավորված և կատարելապես հուսաբեկ եղած, գազազել, կատաղությունից եռում էին։ Սկզբում ամեն մեկր ուր էլ լիներ, խոսակցությունների ժամանակ քթի տակից այպանում էր կայսեր, ամեն մեկին կոչ անում անպատասխան չթողնել յուրաքանչյուր վիրավորանքը, դրդում ոտքի կանգնել՝ արդար վրեժխնդրության։ Այնուհետև, հավաքվելով Մեծ եկեղեցում, երդվեցին չլռել, ոչ էլ կուլ տալ [անարգանքը], այլ պատժել նշավակողներին և, ինչպես ասում են, ադամանդյա կապերով հաստատեցին դավադրությունը։ Կեկավմենոսը նպատակահարմար էր գտնում դավադրության մասնակից դարձնել նաև Բրիեննիոսին, քանզի նա նշանակվել էր մակեդոնական տագմաների մեծաթիվ զորքի հրամանատար և նա ծրագրի իրականացման գործում մեծ դեր կարող էր խաղալ։ Երբ նա էլ իսկույն համաձայնություն հայտնեց առաջարկին, այս անգամ սկսեցին մտածել այն մասին, թե ու՞մ հռչակեն ·կայսր, երբ իրենց ծրագիրը հաջողությամբ պսակվի։ Բոլոր դավադիրների համար պարզ էր, որ այդ բանին արժանի է Կեկավմենոսը, որ մյուսներից ավելի շատ էր աչքի ընկնում և՛ փառքով, և՛ քաջությամբ, և՛ փորձով։ Բայց Կեկավմենոսը ջանալով իր վրայից գցել այդ բեռը, մի քանի բառով վերջ տվեց շաղակրատությանը։ Նա ոտքի կանգնելով, առանց այլևայլի հռոմայեցիների կայսր հռչակեց մագիստրոս Իսահակ Կոմնենոսին և այնպես արեց, որ մյուսներն էլ դրան համաձայնություն տան։ Ահա այսպիսի ուխտով իրար կապվելով, և վճիռը հնարավոր չափով ապահովելով, կայսեր մնաս բարով ասելով, յուրաքանչյուրն եկավ գնաց իր տեղը՝ ուզածն անելու։

6. Արդ, քանի որ Բրիեննիոսի գործերն ընթանում էին կայսեր սպասածի պես, նա անցնում է արևելք, որ հետ ունենալով նաև պատրիկ Հովհաննես Օպսարասին, որին կայսրը ոսկով ուղարկել էր զինվորներին ռոճիկ[625] բաժանելու։ Լինելով Անատոլիկոն բանակաթեմի ինչ-որ ընդարձակ ու ցածրադիր վայրում [Բրիեննիոսը] կապադովկացիների մեջ բաժանեց դրամը։ Նա բարձրացրեց ռոճիկը, հրամայեց վճարել սահմանվածից ավելի, մի բան, որին հակադրվեց և որը կատարել չուզեց Օպսարասը։ Նա ասում էր, թե չպետք է հանդգնել հավելում տալ զինվորներին, քանզի կայ-

սըրն այդ մասին ոչ մի հրաման չի տվել։ Բրիեննիոսն ասաց, թե չպետք է վախենալ և հավաստիացրեց, թե այդ բանը ոչ ոք չի իմանա։ Օպսարասը, սակայն, դրա դեմ դուրս եկավ, հանդուգն հակաճառեց, որի վրա [Բրիեննիոսը] զայրացած, նստած տեղից վեր թռավ ու բռունցքով հարվածեց նրան, վերջում էլ բռնեց նրա մազերից ու մորուքից, գետին փռեց, ապա շղթայեց, իր վրանի մեջ արգելափակեց և վերցնելով կայսերական ոսկին, սկսեց ուզածին պես ավելիով բաժանել։ Այն ժամանակ դիպվածով նրա մոտ էր բանակած պատրիկ Լյուկանթեսը՝ պիսիդացիների ու լիկաոնացիների հրամանատարը։ Լսելով Օպսարասի գլխին եկածի մասին, նա, ինչպես պետք էր սպասել, դա խռովության փորձ համարեց (նա անտեղյակ էր. արևելքի զորավարների ծրագրերին) և զինելով արևելից երկու տագմաները, հարձակվեց Բրիեննիոսի վրանի վրա՝ կայսր փառաբանելով Միքայելին։ Լյուկանթեսը բռնեց ու շղթայեց Բրիեննիոսին, կապանքներից ազատեց Օպսարասին, որի ձեռքը հանձնելով կապյալ Բրիեննիոսին, հրամայեց ուզածն անել։ Կապանքներից ազատված [Օպսարասը], ստանալով ուզածն անելու հնարավորությունը, իսկույն կուրացնում է Բրիեննիոսին և շղթայակապ ուղարկում կայսեր, հայտնելով նաև, թե նա հանդգնել է ապըստամբություն բարձրացնել։ Ինքը մնաց տեղում՝ իբրև թե մնացած զինվորներին ռոճիկ բաժանելու։ Բրիեննիոսն ահա իր անհաշվենկատությամբ ու ինքնավստահությամբ, որպեսզի չասեմ անմտությամբ, այսպիսի պատժի արժանացավ։ Անատոլիկոն բանակաթեմում բնակվող արխոնտներ պրոեդրոս Ռոմանոս Սկլերոսը (նույնիսկ սա հարել էր դավադիրներին), Բուրցեսը, Բոտանիատեսը, Վասիլ Արգիրոսի որդիները և մնացած ընկերությունը առայժմ հանգիստ էին մնում, այլուստ սպասելով ապըստամբության բռնկմանը։ Իմանալով Բրիեննիոսի գլխին եկածի մասին, թե նա հիմարաբար իրեն ինչպիսի փորձանքի մեջ գցեց, խոհեմաբար դատեցին, թե նա, խոշտանգումների ենթարկվելով, կարող է բացահայտել դավադրությունը և դավադիրների վերջը վատ կլինի։ Այդ պատճառով բոլորը վեր կենալով, գնացին Պափլագոնիա՝ Կաստամոն[626]։ Կաստամոնը մագիստրոս Իսահակ Կոմնենոսի կալվածն էր։ Նրան էլ գտնելով հանգիստ նստած, հակառակ իր կամքին առնում ու նրա հետ գալիս են մի բավական լայնատարած հարթավայր, որ Գունարիա է կոչվում։ Ահա այստեղ, հավաքելով մերձակայքի զինվորներին, ինչպես և նը-



559—18

րանց, ովքեր լսելով ապստամբության մասին կամավոր եկան,
միահամուռ կերպով [Իսահակ Կոմնենոսին] հռոմայեցիների
ինքնակալ կայսր են հռչակում։ 6565 թվականի հունիս ամսի
8—VI ութն էր, ինդիկտիոնի 10-րդ տարվա։
—1057 7. Կայսր հռչակվելով, նա ամուր բանակատեղի հաստա-
տեց, մնաց տեղում, սպասելով դավադրության մնացած մասնակիցների հավաքվելուն։ Նրան մնալ և տեղից չշարժվել էր ստիպում Կեկավմենոսի դանդաղելը։ Երբ նա մտածմունքի մեջ էր և ուզում էր իմանալ նրա հապաղելու պատճառը, արևելքից սուրհանդակ ժամանեց, որն ասաց, թե նա դրժել է երդումը, միաբան է կայսեր և ապստամբների վրա հարձակվելու համար զորք է հավաքում։ Այս լուրը Կոմնենոսի կողմնակիցների շարքերում մեծ տագնապ ու իրարանցում առաջացրեց, քանզի տեսնում էին, որ իրենց թիկունքում ունենալու են նման մի թշնամի։ Այդ իսկ պատճառով նրանք խարաքսում նստած սպասում էին, հետամուտ լինելով իմանալ ճշմարտությունը։ Սրանք ահա այդպիսի դրության մեջ էին, իսկ Կեկավմենոսը հավատարիմ էր մնացել դավադիրներին տված խոստումին, բայց սպասողական դրության մեջ էր ու հապաղում էր հետևյալ պատճառով։ Երբ նա մայրաքաղաքից դուրս գալով տուն էր վերադառնում, Նիկոմեդիայում կայսերական մի սուրհանդակի հանդիպեց, որի միջոցով հայտնեց դրոմոսի լոգոթետ Նիկետաս Քսիլինիտեսին միամիտ և զինվորին վայել խոսքերով, թե «ինչպես լսել եմ, եղբայր, քո կայսրը բանի տեղ չդնելով Կոմնենոսին և ինձ, մերժեց մեր խնդրանքը, վիրավորեց ու տուն ուղարկեց։ Արդ, իմացիր, մենք գնում ենք, բայց եթե դու և քո [տերը] ուրախանում եք մեր հեռանալու առթիվ, այլա կարող եք նաև մեզ ստիպած լինել հակառակ մեր կամքին վերադառնալ, եթե [մեր ետևից] ուժ ուղարկեք»։ Ահա սուրհանդակին այսպես ասելով, նա ավելի արագ ճամփան շարունակեց։ Երբ նա տուն հասավ և տեսավ, որ Կոմնենոսը հանգիստ տեղում է նստած, կարծես գործին ոչ մի մասնակցություն չունի, ընկավ ահ ու վախի մեջ, երկյուղեց, թե Կոմնենոսն ու դավադրության մյուս մասնակիցները փոխել են իրենց միտքը և պետք է ջանան թաքցնել դավադրության [գաղտնիքը], ապստամբության ամբողջ պատասխանատվությունը իր վրա է ընկնելու, չէ՞ որ ինքը սուրհանդակի միջոցով հայտնածից իրեն արդեն բացահայտել էր։ Նա մտածում ու խորհում էր, թե ինչպես ապահովի իր անձի անվտանգությունը, քանզի նա պատ-

րատի զորք չուներ, եղածն էլ անբավարար էր ընդդիմակայելու հռոմայեցիների կայսեր, բայց ամենից ավելի այն պատճառով, որ համաձայնության չէր եկել տեղական զորքերի հետ, ոչ էլ կատարյալ վստահություն ուներ, որ նրանք իրեն ընդառաջ կգնան։ Ահա դրա համար նա տեղից չէր շարժվում և իրեն լավ չճանաչողների մոտ այն տպավորությունն էր թողնում, որ նա խույս է տալիս։ Այն ժամանակ այդ վայրում ձմեռում էին երկու ֆրանկական ու մեկ ռուսական տագմա, որոնք իրեն շատ էին մտահոգում, այն պատճառով, որ նրանք հանկարծ կարող է գլխի ընկնեն, բռնեն իրեն և կայսեր ուղարկեն։ Ահա այդ բոլորից երկյուղ կրելով զսպում էր իրեն, մինչև որ կապահովվեր իր անձի անվտանգությունը։ Երբ որոշեց գործի անցնել, նա նախապես դավադրության գաղտնիքը բացահայտեց իր սպասավորներին ու ազգականներին և հազար հոգուց բաղկացած զորամաս կազմելով, սկսեց փորձել նրանց, որոնց վրա այնքան վստահ չէր։ Նա կապեր հաստատեց տեղի մեծավորների հետ, ապա աստիճանաբար փորձեց [գայթակղեցնել] ավելի քաջերին ու ռազմունակներին։ Երբ իրեն հաջողվեց սիրաշահել մեծավորներին, անցավ շարքայիններին։ Նա կայսերական մի նամակ հորինեց, որով իբր իրեն հրաման էր տրվում վերցնել դաշնակից երեք տագմաները, ինչպես և կոլոնիացվոց ու խաղտիացվոց երկուսը, և շարժվել Սամուխի դեմ։ Նա հրամայեց այդ հինգ տագմաններին հավաքվել Նիկոպոլսի դաշտում, որից հետո անցավ գործի։ Նա ամեն օր ժողով էր հրավիրում և առավոտյան, ձի նստած հեռանում էր մյուսներից և [տագմայի] հրամանատարին իր մոտ կանչելով, բացահայտում գաղտնիքը, նրան առաջարկելով երկուսից մեկը, կամ հավանություն տալ իր ասածներին, կամ զրկվել գլխից։ Ապա իրար ետևից կանչում էր տաքսիները[627] և նույն կերպ վարվելով, բոլորին [ստիպում] իրենց կամքին հակառակ [հավատարմության] երդումներ տալ։ Սկզբում նա գայթակղեցրեց հռոմեական երկու տագմա, այնուհետև՝ իր սեփական զորքերին[628], և այլազգիների օժանդակ զորքերին։ Ահա առանց դժվարության շշմեցնելով ու երդումներով նրանց [մասնակցությունն] ապահովելով և այլևս ոչնչից չվախենալով, նա հավաքեց սեբաստացի, մելիտենացի, Տեֆրիկեի և մնացած հայերի հրամանատարներին ու զինվորներին և ճամփա ընկավ, նախապես Կոմնենոսի մոտ սուրհանդակ ուղարկելով՝ ասելու, թե ամեն ինչ բարեհաջող կարգավորել է և արդեն ծանր ուժով

ճանապարհ է ընկել։ Այդ լուրերը Կոմնենոսին ուրախությամբ լցրին ու գոտեպնդեցին։ Կոմնենոսը, որ մինչ այդ անչափ անարի էր ու երկչոտ, դարձավ ավելի համարձակ ու արի։ Բոլոր դեպքերում սակայն նա սպասում էր նրա գալստյան։ Կեկավմենոսը իջնելու ժամանակ Արմենիակների տագման էլ ստիպեց իր հետ գնալ, բանակաթեմի գլխավորներին էլ՝ ոմանց կամովին, ոմանց իրենց կամքին հակառակ, և ընթացքն արագացնելով, եկավ միացավ Կոմնենոսին, որն արդեն գտնելով, որ իր գործերը ապահով վիճակում են, կնոջ[629] և իր ունեցած գանձերը հանձնեց հարազատ եղբորը՝ Հովհաննեսին և ուղարկեց Պեմոլիսսա բերդը (Պեմոլիսսան Հալիս գետի ափին գտնվող մի քարափ է), իսկ ինքը վերցնելով բովանդակ զորքը, անցնում է Սանգարիոս գետը, քայլով փութանակի գնում դեպի Նիկիա, կայսր ներբողվելով ու փառաբանվելով։ Նա գտնում էր, որ տիրելով [Նիկիային], բախտի քմահաճույքների հանդեպ այն հենակետի կվերածի և ապա առաջ կշարժվի։ Նա կայսեր հավատարիմ մնացած զինվորներին ու զորավարներին հնարավորություն տվեց հեռանալու։ Սրանք, իմանալով [Կոմնենոսի] Նիկիա գալու մասին, խաղաղ նահանջում էին ու ցրվում՝ զինվորները տուն էին գնում, յուրաքանչյուրը մտահոգված կնոջ, երեխաների և այլ կարևորագույն հարցերով, իսկ զորավարներն էլ՝ դեպի կայսրը, նրան Կոմնենոսի գալուստը ազդարարելով։ Նրանք էին Անատոլիկոն [բանակաթեմի] տագմաների հրամանատար Լյուկանթեսը, Թեոփիլակտոս Մանիակեսը խարսիանացվոց փաղանգի հրամանատար Պնյուեմիոս իբերացին, և շատ ուրիշներ՝ ոչ այնքան էլ հայտնի մարդիկ։

8. Կայսրը, իմանալով ապստամբության մասին, թե հռոմեական արևելից համայն զորքերը, չնչին բացառություններով, իր վրա են գալիս, չփորձեց հաշտության բանակցություններ վարել, և երբ արդեն ապստամբությունը բռնկվել էր, և դեպքերը տենդագին զարգացման մեջ էին, ինքն էլ նախապատրաստություն տեսավ և ինչքան հնարավոր էր զինվեց ընդդիմակայելու համար։ Նա կանչեց արևմտական բոլոր ուժերը, նրանց վրա հրամանատար նշանակեց մակեդոնական փառավոր ընտանիքներից սերող մարդկանց, ովքեր նախկինում աչքի էին ընկել իրենց քաջագործություններով։ Նա աստիճաններ ու նվերներ շնորհեց, առատ դրամ բաժանեց և՛ հրամանատարներին, և՛ զինվորներին, նմանապես նաև Կոմնենոսին չհարած արևելյան

տագմաների, այն է՝ Անատոլիկոն և Խարսիանոն [բանակաթեմերի] և նրանց վրա զորավար-ավտոկրատոր նշանակելով արեվելից դոմեստիկոս Թեոդորոսին, Թեոդորա կայսրուհու ներքինուն, նրան տալով որպես սյունարխոն[630] ու խորհրդական Կոմնենոսի աներձագ մագիստրոս Ահարոն Դուկասին, բազում մարտերում կոփված մի մարդու, Կոմնենոսի դեմ ուղարկեց։ Ահա այդ երկուսը, վերցնելով հիշյալ ուժերը, քաղաքի դիմաց գտնվող Խրիսուպոլսի վրայով գնացին Նիկոմեդիա։ Տեղ հասնելով, նրանք [զորք] ուղարկեցին ու քանդեցին Սանդարիոս գետի կամուրջը, դժվարացնելու համար Կոմնենոսի հարձակումը իրենց վրա, որպեսզի Կոմնենոսը ստիպված լինի շրջանցման դիմել, որով նրա հարձակումը թաքուն չի մնա։ Այնտեղից էլ վեր կենալով, նրանք բարձրացան Սոֆոն լեռը և ամուր ճամբար դնելով, պատերազմի պատրաստություն էին տեսնում։

9. Կոմնենոսն ամենուր հետախույզներ ու լրտեսներ էր ուղարկում, որպեսզի ՚ոչ մի բան իր ուշադրությունից չվրիպի։ Իմանալով, որ դոմեստիկոսի զինվորները տիրել են Սոֆոնի գագաթին, արագ քայլով հասավ Նիկիա, գրոհով վերցրեց այն և իր ունեցած գանձերը այնտեղ թողնելով ու ապահովելով, ինչպես նաև ավելորդ հանդերձանքը, բանակեց Նիկիայի հյուսիսային կողմում՝ մոտ տասներկու ասպարեզ հեռավորության վրա։ Երկու ճամբարներից էլ՝ և՛ Կոմնենոսի զինվորները, և՛ հակադիր կողմի, դուրս էին գալիս խոտ հավաքելու, նրանք հանդիպում էին իրար, համացեղ, ազգական ու բարեկամի պես, միմյանց կոչ անում, կայսեր կողմնակիցները՝ լքել Կոմնենոսին, բռնակալին ու ապստամբին, կայսեր կողմն անցնել, մի մարդու քմահաճույքի ու ախորժակների պատճառով իրենց մեծ վտանգի չենթարկեն, քանզի մի փոքր անց իրենք կարող են զրկվել ոչ միայն բանակում ծառայելու իրավունքից ու ունեցվածքից, այլև աչքերի ամենաքաղցր լույսից։ Հակադիր կողմի զինվորները հորդորում էին մյուսներին լքել կայսեր, որ անունով է կայսր, իսկ իրականում փտած, զառամյալ շաղակրատ ու անպետք, ներքինիների կողմից ղեկավարվող մի մարդու, և անցնել Կոմնենոսի կողմը՝ քաջ ու փառավոր, իր ռազմավարական արվեստով աչքի ընկած մի մարդու, ի դեմս որի հռոմայեցիների բովանդակ հզորությունը, ինչպես շրջանակի գծերը հանդիպում են մի կետում, հավասար ու անփոփոխելի կամքի մեջ[631]։ Բայց ոչ մի կողմին էլ չէր հաջողվում համոզել մյուսին, թեև երկու

բանակների առաջնորդներն էլ համառում էին այդ գործում և հմուտ մարդկանց ուղարկելով, զրույցի բռնվում հակառակորդ բանակի զինվորների հետ, որպեսզի ում կարողացան, իրենց կողմը քաշեն։ Որոշ ժամանակ նրանք այդպես իրար էին փորձում, բայց ոչ ոք ասվածների մտքին ուշադրություն չէր դարձնում։ Կոմնենոսը խորհուրդ տվեց մեծ խնայողությամբ գործածել անտառանյութն ու խոտը, ճամբարից շատ չհեռանալ։ Դոմեստիկոսի զինվորները, հատկապես մակեդոնացիները, ենթադրելով, որ [հակառակորդի] տատանվելը նրա վհատության, վախկոտության մասին է վկայում, գտնում էին, որ պետք է մարտի դիմել։ [Մնացածները], հակառակ իրենց կամքի, համաձայնվեցին նրանց ասածին և բանակեցին Պետրոե կոչվող [վայրում], հակառակորդի ճամբարից ոչ շատ հեռու, մոտ տասնհինգ ասպարեզ հեռավորության վրա։ Ահա զորքերը իրար շատ մոտեցան և ստիպում էին իրենց զորավարներին մարտի դուրս գալ ու չխանգարել։ Կոմնենոսը, համոզվելով նրանց խոսքին, դուրս հանեց իր փաղանգները և շարքի դրեց. ձախ թևի հրամանատարությունր նա տվեց Կեկավմենոսին, աջը գտնվում էր Ռոմանոս Սկլերոսի ձեռքում, իսկ ինքը կանգնեց կենտրոնում։ Իրենց զինվորների խոսքը լսեցին նաև դոմեստիկոսն ու Ահարոնը, որ դուրս հանելով իր զորքը, կանգնեցրեց հակառակորդների դեմ ճակատ առ ճակատ։ Աջ թևի հրամանատարն էր Վասիլ Տարխանիոտեսը[632], այն ժամանակվա արևմուտքի ստրատելատր, մակեդոնացիներից ամենաերևելին և՛ ծագմամբ, և՛ խոհեմությամբ, և՛ փորձառությամբ ամենափառավորը։ Ձախ թևը վերցրեց Ահարոն մագիստրոսը, ունենալով փոխզորավարներ Լյուկանթեսին, Պնյուեմիոսին ու պատրիկ Ֆրանկ Ռանդուլֆոսին։ Զորքերն ահա այսպես շարքի կանգնեցին։ Երբ տրրվեց պատերազմի ազդանշանը, նրանք բախվեցին միմյանց՝ տեղացիների կողմից Հադես կոչվող մի ինչ-որ վայրում։ Ահարոնը պարտության մատնեց [հակառակորդի] աջ թևը և հալածեց մինչև խարաքսը, գերի վերցնելով նաև Ռոմանոս Սկլերոսին։ Նա շատ շուտով լրիվ հաղթանակ կտաներ, եթե ավելորդ զգուշավորություն հանդես չբերեր և հրաժարվեր ճամբարը թալանելուց, նամանավանդ, որ Կոմնենոսը ջարդ էր ստացել և մտադիր էր Նիկիա փախչել։ Ինչ վերաբերում է Կեկավմենոսին, ապա նա թևև պարտության մատնեց իր դիմացի [հակառակորդին], բայց մինչև վերջ նրան չհետապնդեց. հասնելով խարաքսը,

նա քանդեց այն, մտավ ներս, թալանեց վրանները և դրանք գետին տապալեց։ Երբ այդ բանը տեսան հեռվում գտնվողները (բանակատեղին գտնվում էր բարձրադիր վայրում), Կոմնենոսի մարդիկ սրտապնդվեցին, իսկ Ահարոնի մարդիկ երկյուղով լցվեցին։ Խարաքսը թալանված տեսնելով, մի կողմը ուռա գոչեց, իսկ մյուսը՝ դիմեց փախուստի։ Կայսեր կողմնակիցներից բազմաթիվ զինվորներ ընկան, հատկապես մակեդոնացիներ, ոչ միայն շարքայիններ, այլև բազում զորավարներ, Մավրոկատակալոսը[633], Պնյուեմիոսը, Կացամունտեսը և շատ ուրիշներ, սպանվածներից շատ ավելին էլ գերի ընկավ։

10. Պատմում են, որ այս ճակատամարտի ժամանակ կայսեր փախուստի դիմած կողմնակիցներից ֆրանկ Ռանդուլֆոսը, դեգերելով փախստականների ու նրանց հետապնդողների մեջ, ուզում էր մենամարտել անվանի զորականներից մեկի դեմ։ Իմանալով, որ Նիկեփոր Բոտանիատեսն է անցնում, մյուսներին թողնելով գնաց դեպի նա, հեռվից ձայն տվեց, կոչ արեց կանգնել, հայտնելով իր ով լինելը և նրան կանչելու նպատակը։ Բոտանիատեսը կանգ առավ, երբ մոտեցավ Ռանդուլֆոսը, բախվեց նրան, թրով հարվածեց ու երկու կես արեց Ռանդուլֆոսի վահանը, բայց և Ռանդուլֆոսը հարվածեց նրա սաղավարտին, բայց թուրը սահելով, վնաս չհասցրեց։ Դրա վրա դեպի Բոտանիատեսը մարդիկ շտապեցին, որոնք Ռանդուլֆոսին բռնելով, Կոմնենոսի մոտ բերեցին։ Կոմնենոսի կողմնակիցներից ընկավ մի զորավար՝ Լևոն Անտիոքոսը և մի քանի զինվոր։

11. Պարտությունից հետո, երբ պատերազմից փախուստով փրկվողները դոմեստիկոսի ու Ահարոնի հետ եկան կայսեր մոտ, վերջինս հուսաբեկ եղավ և արդեն մտածում էր ամեն ինչից հրաժարվելով, ապաստարան ու փրկություն փնտրել։ Նրա մերձավորները, սակայն, թույլ չէին տալիս այդ բանն անել, այլ կոչ էին անում մնալ և եթե պետք է պատվավոր մահն ընդունել՝ թագավորության սիրույն։ Դարձյալ զորք հավաքել և երկրորդ անգամ մարտ տալ նպատակահարմար ու ձեռնտու չէր համարվում, ենթադրվում էր, որ հաջողության կհասնեն, եթե շահեն քաղաքացիների բարյացակամությունը։ Այդ նպատակով ահա նա նրանց հանդեպ հոգատարություն ցուցաբերեց, նվերներով ու պատիվներով զսպեց։ Իսկ Կոմնենոսը, ջարդ տալով ու ցրելով հակառակորդի զորքերը, Նիկիայից վեր կացավ և երեք օր հետո հասավ Նիկոմեդիա։ Նրա այնտեղ լինելու ժամանակ տեղ են

հասնում կայսեր դեսպանները՝ պրոեդրոս Կոստանդին Լիխուդեսը, պրոեդրոս Թեոդորոս Ալոպոսը և փիլիսոփաների հյուպատոս[634] Կոստանդին Պսելլոսը[635]։ Նպատակահարմար գտնվեց հենց այս երեքին դեսպանության ուղարկել, նկատի ունենալով այն հանգամանքը, որ այդ ժամանակներում և՛ իմաստությամբ, և՛ ճարտար լեզվով նրանք ամենակարողն էին համարվում, հատկապես Պսելլոսը։ Կայսրը հույս ուներ սրանց ճարտարախոսությամբ ու բարեմասնությամբ կարևոր արդյունքի հասնել։ Դեսպանությունը Կոմնենոսին խոստացավ կայսեր կողմից որդեգրում և կեսար հռչակել, եթե նա զենքերը ցած դնի, ապա և ներում շնորհել նրան հարած բոլորին[636]։ Քանի որ նրանց ասածի վրա ոչ ոք ուշադրություն չդարձրեց, նրանք վերադառնալով կայսեր մոտ, նոր դեսպանությամբ գնում են դեպի [Կոմնենոսը], որին հանդիպում են Ռեաս գյուղում։ Դեսպանությունը հայտնեց, թե Կոմնենոսը որդեգրյալ կայսր կհռչակվի, իսկ իր զինակիցներին՝ Կոմնենոսի կողմից տրված աստիճանները կհաստատվեն կայսերական հրովարտակով։ Երբ կայսեր խոստումների մասին հայտարարություն արվեց, Կոմնենոսը և նրա բոլոր իշխանավորները հավանություն տվեցին և պահանջեցին, որ այդ խոստումները հաստատվեն խրիսովուլ գրությամբ։ Միայն Կեկավմենոսն էր, որ դեմ էր ամեն ինչի, նա պնդում էր, որ զառամյալ կայսրը պետք է հրաժարվի թագավորությունից ու հեռանա, քանզի արդեն գահընկեց արվածին, սարսափելի երդումներով մերժվածին, չի կարելի թույլ տալ, որ վերստին թագավորի հռոմայեցիների վրա։ Նա ասում էր, որ երդմնազանցությունը կգրգռի աստծո բարկությունը, բացի այդ զենքերը ցած դնելն էլ իրենց համար ձեռնտու չէ. Կոմնենոսին որդեգրելուց հետո նրան պետք է թունավորեն, նա շուտով այս աշխարհից պետք է հեռանա, իսկ նրան համագործակցած ամեն ոք՝ կուրացվի։ Պատմում են, որ դեսպաններն էլ, դավաճանելով իրենց կոչմանը, մի անգամ մեկը, մյուս անգամ՝ մյուսը, ծածուկ Կեկավմենոսի մոտ էին գալիս ու խնդրում համառել իր առարկության վրա և ամենևին տեղի չտալ։ Իբերին քաջատեղյակ մարդիկ էլ նույն բանն էին ասում, մարդիկ, որոնց ազնվության վրա կասկած չկար։ Սրանք հենց իրեն՝ Կոմնենոսին երդումներով վստահեցնում էին, թե քաղաքի ողջ բնակչությունը նրա կողմն է և հենց որ նա մոտենա քաղաքին, ծերունուն դուրս շպրտելով, հաղթական երգերով ու փառաբանու-

թյամբ նրան կդիմավորի։ Պատմում են, թե այդ բոլորը ճամբարում տեղի ունեցան։

12. Իսկ ծերունին նվերներով, դրամով, աստիճանների բարձրացմամբ, կարճ ասած՝ ամեն բանով, ինչով կարելի է հրապուրել ու պատրել ամբոխին, սիրաշահում էր քաղաքացիների բարյացակամությունը և հավատարմությունը։ Բայց ցանկանալով այդ բարյացակամության կապն ավելի ուժեղ ու անքակտելի դարձնել, նա կազմեց սարսափելի երդումներ, սոսկալի անեծքներ բովանդակող մի դրություն, թե Կոմնենոսին երբեք կայսր կամ տեր չեն անվանելու, նրա հանդեպ չեն ցուցաբերելու կայսեր վայել պատիվներ, և ստիպեց սենատորներին մեկ-մեկ ստորագրել ու բովանդակությունը հաստատել։ Բոլորն էլ, հնազանդվելով իշխանության, և այն պատճառով, որ Կոմնենոսը դեռ հեռու էր գտնվում, ստորագրեցին։ Բայց երբ նա հասավ Ալմեաս կոչվող ինչ-որ գյուղ և հաջորդ օրը պետք է օթևաներ Դամատրիսի ապարանքներում, նրանք՝ Անաստասիոսի որդի մագիստրոս Միքայելը, պատրիկ Թեոդորոս Խրիսելիոսը, պատրիկ Խրիստոֆոր Պյուրրոսը, բոլոր հետերիարխները և ոչ նշանավոր այլ անձինք, արշալույսին եկան աստծու Մեծ եկեղեցին և ներքևից կոչ էին անում պատրիարքին՝ իրենց մոտ իջնել, քանզի նրա հետ ուզում են կարևոր հարցերի շուրջ խոսել։ Պատրիարքը չուզեց իջնել և, փակելով իր դռները ու եկեղեցու վերնատունը տանող լաբիրինթոսի մուտքը, նրանց մոտ իր եղբորորդիներ Նիկեփոր և Կոստանդին եղբայրներին ուղարկեց՝ հրամայելով նրանց միջոցով հայտնել իրենց ասելիքը։ Հավաքվածներն իրենց հետ վերցրին և մի այլ բազմություն (երբ լուրը տարածվեց, բազմությունն սկսեց հոսել, ոչ միայն խառնակությունների սիրահարները, այլև ոչ քիչ կարգին մարդիկ, բազում սենատորներ՝ ովքեր կայսեր կողմից բավարար ուշադրության չէին արժանացել)։ Ահա սրանք, բռնելով պատրիարքի եղբորորդիներին, սպառնում էին նրանց իրենց հետ տանել[637], եթե [պատրիարքը] անհապաղ չիջնի իրենց մոտ։ Պատրիարքը ակամա, գուցե և, ինչպես ասում են շատերը, ուզելով, ես չեմ կարող ճիշտն ասել, հագնելով քահանայական պատմուճանը և առնելով պատրիարքական մնացած նշանակները, կոտրտվելով և իրեն զայրացած ձևացնելով ցած իջավ։ Բայց, ինչպես պարզվեց, այդ բոլորը դերասանություն էր։ Երբ նա ցած իջավ, ամբոխավարները նրան բռնեցին և աթոռ բերելով նստեցրին սուրբ բեմի աջ կողմում։ Ամենից

առաջ, իբրև թե որպես պատրվակ, նրանից խնդրեցին միջնորդել կայսեր առջև՝ ետ ստանալու իրենց ստորագրած փաստաթուղթը, քանի որ կայսրն արդեն համաձայնություն է եկել Կոմնենոսի հետ և նրան կայսր հռչակել։ Նրանք ասում էին, թե այդ փաստաթղթի առկայության դեպքում անխուսափելիորեն հետևում է երկու սարսափելի բան. եթե իրենք Կոմնենոսին կայսր փառաբանեն, ապա երդմնազանց պիտի եղած լինեն Միքայելի հանդեպ, իսկ եթե անարգեն, ապա անարգած կլինեն կայսեր անձը, որով պետք է պատժի ենթարկվեն։ [Պատրիարքը] ընդառաջեց և խոստացավ կատարել նրանց խնդիրքը։ Մի փոքր անց բոլորն ամեն ինչ մի կողմ թողած, Կոմնենոսին կայսր են հռչակում, իսկ նրանց, ովքեր դեմ էին, հռոմայեցիների թշնամի և ապստամբ անվանելով, փորձում են ամբոխի միջոցով թալանել նրանց տները։ Ամենից առաջ հենց ինքը՝ պատրիարքն էր, որ եկեղեցու երկրորդ մարդու՝ Ստեփանոսի միջոցով համաձայնություն ու հավանություն տվեց դրան, իսկ Անտիոքի պատրիարք Թեոդորոսը բարձրագոչ փառաբանեց Կոմնենոսի կայսր հռչակվելը և դրդեց ավերել ու թալանել ապարանքներն այն մեծամեծների, ովքեր կատարվածին հավանություն չէին տալիս։ [Պատրիարքը] դա կատարեց սուրբ և հռչակավոր տաճարի ներսում։ Միաժամանակ նա Կոմնենոսի մոտ սուրհանդակ ուղարկեց, ինչպես և այլ սուրհանդակներ՝ ծերունու մոտ, [Կոմնենոսին] ասաց, որ անհապաղ գա՝ իր համագործակցության համար վարձ պահանջելով, քանզի նա հասավ իր նպատակին, իսկ Միքայելին էլ հրամայեց հեռանալ արքունիքից, քանզի այն իրեն ամենևին չի պատկանում։ Սրանից բոլորին միանգամայն պարզ դարձավ, որ պատրիարքը ոչ միայն մասնակից էր ապստամբության, այլև հիմնական նախաձեռնողն էր[638]։ [Միքայելը] իր մոտ ուղարկված մետրոպոլիտներին հարցրեց. «Պատրիարքը թագավորության դիմաց ինձ ի՞նչ է տալիս»։ Երբ նրանք պատասխանեցին, թե «Երկնից թագավորությունը», նա հանեց ծիրանին ու կարմիր
31—VIII կոշիկները, հագավ սովորական զգեստներ ու հեռացավ [արքու-
—1057 նիքից][639]։ Բոլոր դեպքերում նա կարժանանար [երկնից թագավորության], դրան նա դեմ չէր, մետրոպոլիտներն էլ էին այդ բանը խոստանում, եթե ապստամբության հենց սկզբում նա թողներ և հեռանար արքունիքից։ Բայց նա մնաց այնքան, մինչև պատերազմը բռնկվեց, արժանացավ ականատես լինելու այդքան հայրենակիցների սպանությանը, և ապա սասանվելով ու

խորտակվելով քաղաքացիների կողմից, հակառակ իր կամքին, աստիճանաբար հեռացավ իշխանությունից և որպես փոխհատուցում երկրային թագավորության հազիվ թե ստանա երկնից թագավորությունը։ Բայց թող կատարվի այնպես, ինչպես աստված է կամենում։ [Միքայելը] ինգիկտիոնի տասներորդ տարվա օգոստոս ամսի երեսունմեկին, չորեքշաբթի օր, գնաց ակրոպոլսում[640] գտնվող իր բնակարանը, իսկ Կեկավմենոսը, որ Կոմնենոսի կողմից կուրապաղատի պատվաստիճանին էր արժանացել, բազում աղնվականների հետ հինգշաբթի առավոտյան գրոմոնով ուղարկվում է [քաղաք] և մուտք գործելով, գրավում արքունիքը, ուր երեկոյան գալիս է Կոմնենոսը։ Հաջորդ օրը,
1—IX սեպտեմբեր ամսի առաջին օրն էր, համաժողովրդական շքեր-
—1057 թով նա գնաց Մեծ եկեղեցին, որտեղ ամբիոնի վրա, ձեռամբ պատրիարքի կայսերական թագը կապվեց և հռչակվեց հռոմայեցիների ինքնակալ կայսր։

# ΙΩΑΝΝΟΥ ΣΚΥΛΙΤΖΗ
# ΧΡΟΝΟΓΡΑΦΙΑΣ ΣΥΝΕΧΕΙΑ

# ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԿԻԼԻՑԵՍԻ
# ՇԱՐՈՒՆԱԿՈՂ

# ԻՍԱՀԱԿ ԿՈՄՆԵՆՈՍ

**[1 սեպտեմբեր 1057—25 դեկտեմբեր 1059 թթ.]**

*Կոմնենոսն ահա այսպիսի ձևով տիրացավ թագավորությանը, հանդես բերելով արիություն և պատերազմական փորձառություն, դրա համար էլ կայսերական ոսկեդրամի վրա անհապաղ իր սուսերակիր պատկերը դրոշմեց. նա իր բոլոր հաղթանակները վերագրեց ոչ թե աստծուն, այլ անձնական զորությանը[641], պատերազմական փորձին։ Որպես միահեծան տեր նա լծվեց կայսրության վերաբերող գործերին, նախապես մեծ պատիվների արժանացնելով նրանց, ովքեր իրեն սատար կանգնեցին, ապա նաև անհրաժեշտ հոգատարություն ցուցաբերեց դեմոսի հանդեպ. հասարակաց գործերին հոգացող բազմաթիվ մարդիկ նշանակեց։ Մեծ ակնածանք տածելով պատրիարքի նկատմամբ, նրան հոր պես էր պատվում, դրա համար էլ նրա զարմիկներին շնորհեց առաջին աստիճանները և նշանավոր պաշտոնների նշանակեց։ Նա Մեծ եկեղեցուն թույլ տվեց իր սեփական գործերը ինքը տնօրինի, պետությունից միանգամայն անկախ դարձրեց, ոչ ոք իրավունք չուներ միջամտել նրա տնտեսության, սրբազան ըսպասքների հոգացության ու պահպանության հարցում. ամեն ինչ ենթակա է պատրիարքի կամքին՝ և՛ մարդկանց նշանակելու, և՛ գործերը տնօրինելու հարցում։ Նա կնոջը Պեմոլիսսա բերդից բերեց [քաղաք] և ավգուստա[642] հռչակեց։ Իր եղբոր Հովհաննեսին և Կատակալոն Կեկավմենոսին շնորհեց կուրապաղատի պատվաստիճան, իսկ եղբորը [նաև] մեծ դոմեստիկոս նշանակեց։ Տեսնելով, որ փողի կարիք կա, առանց որի, ինչպես հռետորն է ասում, ոչինչ գլուխ չի գա[643], որ փողի պակասության, կայսրությունը կատարելապես աղքատանալու պատճառով բանակը թուլացել է՝ որ ամեն ոք ամեն տեղից հռոմայեցիների վրա հարձակում է գործում, մի բան, որ նա նվաստացուցիչ էր համարում և ամենից անտանելին, նա պետությանը պարտք ունեցողների հանդեպ դաժան հարկահան դարձավ։ Առաջինը նա էր,*

որ կրճատեց օֆֆիկիաների[644] հատկացումները։ Նա ջանաց նաև խնայող լինել, հոգ տանել թագավորության վարելահողերի ավելացման մասին։ Այդ նպատակով նա բազում մասնավոր սեփականատերերի զրկեց կալվածքներից՝ անտեսելով նրանց իրավունքներն հաստատող խրիսովուլ փաստաթղթերը, նա ձեռք դրեց նաև մի քանի վանքերի [հողերին], գրավեց նրանց կալվածներից շատերը, ասելով, թե այն, ինչ անհրաժեշտ է վանականներին, նա թողնում է, ավելորդն է նա պետականացնում։ Թեև այդ քայլը անխորաթափանց մարդկանց կարող է ամբարիշտ, ապօրինի, սրբապիղծ արարք թվալ, բայց խոր ու խոհեմորեն դատողները դրա մեջ ոչ մի անպատշաճ բան չեն տեսնի, քանզի դա չի տանում դեպի սեփականազրկում, ինչպես ասում են նրանք, նա չէր զրկում նրանց անհրաժեշտ [կայքից], այլ [լոկ] փակում էր սյուբարիտական[645] փափկակեցության, հղփության դուռը, ազատում հարևան գյուղացիներին վանականների կեղեքումից ու ագահությունից։ Երանի թե նա այդ գործը մինչև վերջ գլուխ բերեր, ոչ միայն վանքերի, այլ ընդհանրապես ողջ եկեղեցականների նկատմամբ։ Ահա այսպես էր կայսրը տնօրինում գործերը, և այսպիսին էր վիճակը մայրաքաղաքում։

Պատրիարքն իր նկատմամբ կայսեր տածած անսահման բարյացակամության վրա հույս դրած նույնիսկ նրա դեմ ամբարտավանացավ, նրան նա չէր դիմում խնդրելով ու աղերսելով՝ երբ պետք էր որևէ հարցի կամ որևէ մեկի օգտի համար նրան դիմել։ Երբ իր անվերջ ու տաղտկալի դիմումները շատ հաճախ մերժվում էին, նա անցնում էր սպառնալիքներին ու կոպիտ պարսավանքներին և երբ, հակառակ այդ բոլորին, իրեն դարձյալ չէր հաջողվում նրան համոզել, սպառնում էր գահընկեց անել, վրա բերելով ռամկական մաշված ասացվածքը. «Փուռ, ես եմ քեզ շինել, ես էլ կքանդեմ»[646]։ Ի վերա ամենայնի նա ցանկացավ կարմիր կոշիկներ էլ հագնել, ասելով, թե հնում հոգևորականներն այդպիսի սովորություն ունեին և որ քահանայապետը պետք է վերստին այդպիսիք օգտագործի։ Նա ասում էր, թե հոգևորի և թագավորականի միջև շատ չնչին, ավելի շուտ ոչ մի տարբերություն չկա, իսկ հարգության հարցերում հոգևորն ավելի բարձր է ու վեհ։ Կայսրը քթի տակ ասված այդ խոսքերը լսելով, շտապեց ավելի շուտ գործել, քան փորձվել։ Հրեշտակապետաց տոնին պատրիարքը գնաց քաղաքի առջև իր կողմից կառուցված վանքը, տոնակատարության հետ կապված արարո-

ղությունը ըստ արժանվույն կատարելու։ Կայսրը, օգտվելով առանց աղմուկի ու իրարանցման գործելու համար առիթից, մի զորամաս ուղարկեց (ժողովուրդը սրանց վարյագներ է կոչում), որոնք [պատրիարքին] խայտառակ ձևով աթոռից ցած առնելով և մի ջորու վրա նստեցնելով, նրա եղբորորդիների հետ մինչև Վլախերնայի քարափը ուղեկցեցին, որտեղ մի մակույկի մեջ նստեցնելով, Պրիկոնեսոսում արգելափակեցին։ Կայսրը բանակցությունների մեջ մտավ, խորհրդակցեց մի քանի մետրոպոլիտների հետ, նրան պաշտոնազրկելու շուրջ, նրանց ամենախոհեմների միջոցով դիմեց [պատրիարքին], որ հրաժարական տա, քանի այդ բանը չի արել խայտառակ ձևով՝ ժողովական որոշման և նրա դեմ հրապարակված մեղադրանքների հիման վրա։ Պատրիարքը տեղի չտվեց, չխոնարհվեց և նրա հրաժարականից հույսերը կտրեցին։ Կայսրը անվերջ դրա շուրջն էր մտածում, երբ այդ միջոցին պատրիարքը խաղաղությամբ հոգին ավանդեց։ Կայսրը, ցանկանալով ապաշխարած լինել, հանգուցյալի մարմինը առոք փառոք նրա վանքում ամփոփեց՝ կատարված հրաշքի վրա ապշելով ինքն էլ, իր հետ եղած մարդիկ էլ. պատրիարքի աջը խաչի նշանն արած մնաց, այնպես, ինչպես սովորաբար երբ օրհնում է ժողովրդին՝ «խաղաղություն ամենեցուն» ասելով. մարմնի մահացմամբ այն փոփոխություն չէր կրել։

Նրա փոխարեն պատրիարք է ձեռնադրվում պրոեդրոս և պրոտովեստիարիոս Կոստանդին Լիխուդեսը[647] մետրոպոլիտների, հոգևորականության և համայն ժողովրդի ընտրությամբ։ Նա կայսերական ու քաղաքական գործերում մեծ անուն վաստակած մարդ էր՝ Մոնոմախի օրերից սկսած մինչև այդ ժամանակները, նա մեծ փառքի արժանացավ համայն գործերը տնօրինելու հարցում ցույց տված իր մասնակցությամբ, նա հիշյալ կայսեր կողմից Մանգանայի վանքի) հոգացությունն[648] ու նրա իրավունքների պահպանությունն էր ստացել։ Նա [պատրիարք] ձեռնադրվեց, թեև քահանայապետության ու պատրիարքության նրա [իրավունքը] կասկածելի էր։ Բայց կայսրը, ջանալով, որ նա այդ իրավունքը ձեռք բերի, պա՞ը նպատակահարմար համարելով, նրան երեց ձեռնադրել տվեց, քահանայապետության լիակատար իրավունքներ չտվեց, «մինչև որ,— ասաց,— քո դեմ քթի տակ ասվող ասեկոսեները վերջ գտնեն եկեղեցական ժողովով ու կանոնական հանապարհով»։ Կոստանդինը շատ լավ



559—19

գիտեր, թե ինչու է կայսրը նման արգելքներ դնում իր առաջ և որպեսզի հանկարծ անհարմար դրության մեջ չընկնի, ընդառաջ է գնում կայսեր պահանջներին, որից հետո աներկբա ու առանց պատճառանքի ձեռնադրվում ընդունված կարգի համաձայն։ Նա առատաձեռն էր և հոգատար ոչ միայն եկեղեցական, այլ ընդհանրապես բոլոր հարցերում, նրա հոգացությունից ոչ ոք անմասն չմնաց, բոլորն արժանացան նրա շնորհատրության։

Հունգարացիները, խախտելով հռոմայեցիների հետ կնքած հաշտությունը, իսկ պածինակներն էլ՝ դուրս սողոսկելով իրենց թաքնված որջերից, ասպատակում էին իրենց հարևան երկիրը։ Կայսրը արշավանքի նախապատրաստություն տեսնելով ամբողջ ուժով շարժվեց դեպի Տրիադիցա։ Այնտեղ նա ընդունեց հունգարացիների դեսպաններին և ամրապնդեց ու վերահաստատեց նախկին դաշինքը, որից հետո հարձակվեց պածինակների վրա։ Նրանք ցեղերի ու տոհմերի էին բաժանված, որոնց իշխանները, հպատակվելով կայսեր, խաղաղ ու բարեկամական հարաբերություններ էին հաստատել։ Նրանցից միայն Սելտեն չուզեց հաշտվել կայսեր հետ. նա ամրացավ Իստրոսի ճահճուտներում, ուր փախել էր և այնտեղի գահավեժ ժայռում, և նրանց ապավինելով, իջավ դաշտ՝ ցանկանալով կայսեր հետ կռվի բռնվել։ Բայց իր սեփական անմտության հետևանքները նա շատ շուտ զգաց։ Նրա դեմ դուրս եկավ կայսերական զորքի մի փոքր մասը, որի առջև Սելտեն փախուստի դիմեց, նրա ապաստարանը գրավվեց և հիմնահատակ կործանվեց։ Կայսրը նրան պարտության մատնելուց ու ոչնչացնելուց հետո վերադարձավ ու բանակեց Լովիցոսում, [լեռան] ստորոտին։ Ճամբարի վրա հորդառատ անձրև տեղաց, տարաժամ ձյուն (սեպտեմբերի քսանչորսն էր, քրիստոնյաների կողմից նշվող սուրբ Նախավկա Թեկլայի տոնի օրը), որը զորքին մեծ վնաս ու կորուստ պատճառեց։ Գրեթե բոլոր ձիերը սատակեցին, զինվորներից շատերը սառնամանիքին ու անձրևին անպատրաստ, թեթև հագնված, կոտորվեցին։ Անսպասելի կերպով կորավ նաև պարենը՝ [հորդացած] գետի հոսանքից ու սառնամանիքից[649]։ Երբ եղանակը մի փոքր լավացավ և ձյունը դադարեց, կայսրը դուրս եկավ, [իր զինվորներից] շատերին գետում կորցրեց, իսկ ինքը, իր մերձավորների հետ կանգնեց ծառի ստվերում։ Մի փոքր անց այդ կաղնու ծառից ինչ-որ ճարճատյուն լսվեց, կայսրը մի կողմ քաշվեց, այնքան, որ ծառի երկարությունից հեռու լինի, երբ ծառը արմատա-

*խիլ եղավ և գետին տապալվեց։ Կայսրը պապանձվեց, պատկերացնելով, թե ինչպես քիչ էր մնացել չարաչար մահվան արժանանար։ Պատահածը չարագուշակ նշան էր, այն կանխագուշակում էր կայսեր գլխին շուտով գալիք փորձանքի մասին, գա արդեն գործվածների հատուցումն էր ու պատիժը։ Իր [փրկության համար] նա «գոհանամ» ասաց աստծուն և Վլախերնայի պալատում նախավկա Թեկլայի անվան հոյակապ տաճար կառուցեց։ Առաջնորդելով զորքը, նա փութանակի շարժվեց դեպի մայրաքաղաք, քանզի սուտ լուր էր ստացել, թե արևելքում ապստամբություն են բարձրացրել։ Հասնելով [քաղաք] և համոզվելով, որ դա խաբեություն է, նա իրեն տվեց որսորդության հաճույքներին ու հանգստին՝ բարձրանալով քաղաքի դիմաց գտնվող նեղուցը։ Ճաշի ժամանակ այդ վայրերում (նրանք հայտնի են Նեապոլիս անունով) փայլատակող լույս սփռվեց, կայսեր ուշադրությունը գրավեց ինչ-որ տեղից դուրս պրծած մի վարազ, որին հալածելով նա ծով հասավ։ Վարազը ծով մտավ ու աներևութացավ, իսկ կայսրը հանկարծ կայծակնահար լինելով, ձիուց ցած ընկավ, գետին գլորվեց փրփուրը բերանին։ Խեղված ու անզգայացած նրան նավակ մտցրեցին և պալատ հասցրին։ Մի քանի օր նա հիվանդության դեմ պայքարեց և հույսը կտրած, աստծուն սիրաշահելու համար ապաշխարեց՝ կամովին հրաժարվեց ապօրինի ձեռք գցած թագավորական իշխանությունից (և դա ճիշտ էր) ու վանական դարձավ, իր կամքով նախկին փառքն ու փափկակեցությունը խեղճությամբ ու ժուժկալությամբ փոխարինեց[650]։ Ապացուցելու համար, որ ինքն իր արարքների համար անկեղծորեն, ամբողջ հոգով է ապաշխարում, նա կայսր նշանակեց ոչ թե իր եղբոր Հովհաննեսին, ոչ էլ իր եղբորորդի Թեոդորոս Դոկիանոսին, իր դստեր էլ նա չամուսնացրեց, ոչ էլ իր որևէ մի ազգականին, այլ պրոեդրոս Կոստանդինին, որի մականունը ի սկզբանե անտի Դուկաս էր՝ որպես իր գործակցի ու զինակցի, մի մարդու, որ իր կողմից գահին տիրանալու համար իրեն առատորեն դրամ մատակարարեց[651]։ Կոմնենոսը թեև վանականի քրձեր հագավ, կարծելով, որ հիվանդությունից կազատվի, սակայն համոզվելով, որ դրանից փրկություն չկա, դեռ հիվանդությամբ տառապյալ, մտնում է Ստուդիոնի վանքը։ Այդ բանն անելու մեջ նրան շատ հորդորեց ավդուստա Էկատերինեն, ասելով, որ երկրային թագավորությունից հրաժարվելով, նա կվայելի երկնայինը։ Նա թագավորեց երկու*

տարի և երեք ամիս, դրանից պակաս էլ նա ապրեց վանականի սքեմն հագած՝ լիակատար հնազանդություն ցուցաբերելով վանահոր։ Լինելով շատ խոնարհ ու համեստ, նա համաձայնվեց անգամ դռնապան լինել և սպասավորի այլ ծառայություններ մատուցել։ Պատմում են, որ նա չափից շատ հլու հնազանդ դարձավ։ Ասում են, թե երբ նա ստրատոպեդարխ էր ինչ-որ երիկամների սուր հիվանդություն ունեցավ, այն աստիճան, որ անգամ ապրելու հույսը կտրեց, քանզի կատարյալ թուլացել էր ու անշարժացել։ Բժիշկները բոլոր միջոցներին դիմելուց հետո համոզվեցին, որ ոչնչի չեն հասնում, այդ պատճառով նրան խորհուրդ տվեցին կնոջ հետ հարաբերություն ունենալ, բայց նա չլսեց նրանց։ Երբ բժիշկներն ասացին. «Եթե դու այդ բանին չդիմես, ապա ստիպված կլինես դաղվել, որի հետևանքը դառն ամլությունն է ու անսերությունը», նա պատասխանեց. «Ինձ բավական են Մանուիլն ու Մարիան, աստծո ինձ պարգևած երեխաները։ Առանց [երեխաների] մարդ կարժանանա երկնից թագավորության, սակայն առանց ժուժկալության Տիրոջ չի տեսնի և ոչ ոք»։ Բայց կայսրուհի Էկատերինեն և նրա դուստր Մարիան իրենց մազերը խուզելով, միանձնուհիների կյանք էին վարում Մյուրելեոնի պալատում[65]։

Կայսեր վախճանվելուց հետո նրա դագաղը թացությամբ լցվեց և շատերը ենթադրեցին, թե դա [աստծո] պատժի ու պատուհասման ապացույց է՝ նրա յարքած եղբայրասպան պատերազմի, կոտորածի, ինչպես և գահին տիրանալուց հետո նրա գործած արարքների համար, այն է՝ սենատին իր վաղնջական պարգևներից զրկելու, աստծո տաճարներն ու սուրբ վանքերը հարստահարելու, որի մասին արդեն ասել ենք։ Մտահոգված լինելով նրանց ուռճացման առաջն առնելու և ինքնաբավ դարձնելու, պետությանր սակայն տվեց բեռի չնչին թեթևացում։ Ուրիշներն էլ դագաղի մեջ հոսածը սրբության գործ համարեցին, ապացույց այն բանի, որ նա իր արարքները մաքուր սրտով ու անվարան ապաշխարեց, քանզի չկա այնպիսի մեղք, որ կարողանա հաղթել աստծո մարդասիրությունը։ Ես գովում եմ ու ընդունում երկու կարծիքներն էլ, որից մեկը ապագա դանցանքների ճանապարհն է փակում, իսկ մյուսը՝ դրդում վատից հրաժարվելով, դեպի լավը գնալ։

Կայսրուհի Էկատերինեն, որը, դառնալով միանձնուհի, Քսենե վերանվանվեց, ամեն տարի կատարում էր կայսեր-հոդեհան-

գիստը, որի առթիվ հրավիրում էր մի քանի վանականների, ինչպես և Ստուդիոնի վանքի բոլոր ճգնավորներին։ Վերջին անգամ սովորականի պես և ընդունված կարգի համաձայն նա կատարում էր կայսեր հոգեհանգիստը, բայց զգալով իր վախճանի վերահաս լինելը, կարգադրեց, որ վանականներին սահմանվածի կրկնապատիկը տրվի։ Վանահոր զարմանքին և նրա խոնարհ հարցին՝ կրկնապատիկը տրվելու պատճառի մասին, [Էկատերինեն] պատասխանեց. «Դա այն պատճառով է, ով գերապատիվ, որ չգիտեմ, թե մյուս տարի ես ձեզ հետ կլինե՞մ, թե ոչ, քանզի աստված մարդկանց գործերը տնօրինում է այլ կերպ, իր ցանկության համաձայն»։ Այդպես էլ եղավ, Էկատերինեն այդ միջոցին վախճանվեց, կարգադրելով իրեն թաղել եղբայրներին մոտ՝ Ստուդիոնի վանքի գերեզմանոցում։ Երկուսն էլ՝ և՛ [Էկատերինեն], և՛ կայսրը պճնազարդել էին Կարապետի ամենասուրբ տաճարը, որի մասին մանրամասն պատմելը սխրանք է հերակլյան։

Կայսրը կայուն բարքերի տեր մարդ էր, ուներ բարի հոգի, սուր միտք, գործունյա ձեռք, նա արագ կողմնորոշվող էր, ռազմական գործի մեծ գիտակ, թշնամու համար սարսափելի, իր շրջապատի մարդկանց նկատմամբ՝ բարյացակամ, նրանց խոսքին վստահող և այդ գծերը նրա համար հատուկ էին ոչ ի սկզբանե։ Նա ասում էր, թե կայսրը պետք է սարսափելի լինի դրսեցիների համար, բայց իր սեփական [ժողովրդի] համար՝ մատչելի։ Բռնակալ կայսրերի վերաբերյալ նա ասում էր, թե նրանք շտապում են ստրկից ազատ դառնալ։ Երբ նրան մեղադրեցին, թե՝ չէ՞ որ ինքը բռնատիրեց Միքայելի վրա, նա պատասխանեց. «Ինձ համար ցանկալի չէր ստրկություն անել ստրկության ընկերոջ և չարժանանալ դրան, ինչին արժանի էի»։ Ծաղրելով [իր] կնոջ, նա ասում էր, թե նախկինում աղախին էր, իսկ այժմ ինքն է նրան ազատել, իսկ ազգականների մասին ասում էր, որ նրանք ուրիշների համար փուշ են, իսկ բռնակալի համար՝ օգուտ։ Նա ասում էր նաև, որ եթե կայսրուհի Էկատերինեն երկրային թագավորությունը փոխարինի երկնային թագավորությամբ, ապա նրա հետ ոչ մի զարմանալի բան կատարված չի լինի։

# ԿՈՍՏԱՆԴԻՆ X ԴՈՒԿԱՍ

## [25 դեկտեմբեր 1059—21 մայիս 1067 թթ.]

Կոմնենոսից հետո գահը առանց արյունահեղության, թոհուբոհի ու իրարանցման ստացավ պրոեդրոս Կոստանդին Դուկասը։ Նա հեզությամբ լի խոսքով դիմեց սենատին, քաղաքի համայն դեմոսին ու հանրությանը։ Իշխանությունը վերցնելու օրից նա մեղմ էր ու չափավորից այն կողմ չանցավ, ամեն կերպ հավատարիմ մնաց դրան։ Նա սենատորներից ու դեմոսից շատերին պատվեց, վերականգնեց Կոմնենոսի ժամանակ շնորհազրկվածներին. [Կոմնենոսը] փառավոր մարդկանց անփառունակ էր դարձրել, պատվականներին՝ պատվազուրկ։ Մեծ վկա
23—IV սուրբ Գեորգի տոնին կայսրը, ընդունված կարգի համաձայն,
—1060 վկային հարգանք մատուցելու համար գնաց Մանգանա։ Տոնակատարությունից հետո փչացած ու նենգավոր մարդիկ կայսեր դեմ դավ նյութեցին, բայց հաջողություն չունեցան. աստված հողմացրիվ արեց նենգ ու անաստված մեքենայությունները ու հրոսակախումբը։ Նրանք նպատակ ունեին ջրահեղձ անել նրան հանդերձ ընտանյոք (նա որոշել էր պալատ վերադառնալ ծովով)։ Երբ այդ առթիվ հարցափորձ ու հետաքննություն կատարվեց, մեծամեծներից շատերը, այդ թվում և էպարքոսը ձերբակալվեցին որպես դավադիրներ և դատապարտվեցին՝ զրկվեցին սեփական տիրույթներից ու ողջ ունեցվածքից[653]։

Կայսրը ամենից շատ մտահոգված էր, ջանք ու եռանդ թափում պետական եկամուտների ավելացման ուղղությամբ, նա սիրում էր մասնավոր անձանց դատական գործերը լսել, թեև դա կայսեր ժամանակի մեծ մասն էր խլում և նա այլ գործերով քիչ էր զբաղվում։ Ես նկատի ունեմ ռազմավարությունն ու զինվորական սխրանքները։ Այդ էր պատճառը, որ հռոմեական պետությունը սասանվում էր ու ցնցվում զրպարտչական բանսարկություններից, սոփեստություններից, դատավարությունների առատությունից, սեկրետական[654] խառնաշփոթ հարցերից, այն աստիճան, որ զինվորականներն անգամ զենքերն ու զինծառայությունը մի կողմ թողած, փաստաբաններ դարձան և իրավաբանական հարցերի ու խնդիրների սիրահարներ, մնաս բարով ասելով պատերազմական շեփորի ձայնին, ռազմապարին ու շուրջպարին։ Լինելով ամենաբարեպաշտ մարդը, վանականնե-

րին սիրող, աղքատասեր, ժուժկալ, նա այլ հարցերում անկարող էր ու թուլակամ, անչափ ժլատ, բայց միջոցներ հավաքելու ընդունակ և պետական դրամները բազմապատկող։ Նա դատավարությունն իր բռի մեջ էր առել և հաճախ, նայած դատվողին, փոխում էր ընդունված վճիռները. նա դինատների[655] նկատմամբ դաժան ու անտանելի դարձավ։

Ահա անվերջ նման գործերով զբաղված լինելով և անուշադրության ու անգոսնության մատնելով ռազմական գործերը, Հռոմեական կայսրության արևելյան, հատկապես սահմանամերձ շրջանները տակնուվրա էին լինում ու թալանվում թշնամիների կողմից, թուրքերի հարձակումների ու գերակշռության, աչքաթող, սարսափահար եղած զինվորների [թշնամու] ճնշման տակ նահանջելու հետևանքով ամեն ինչ ավարի ու ավերման էր ենթարկվում։ Արշավանքներն անդադրում էին, ավարառությունները՝ հաճախակի, հանդիպածը ոչնչացվում էր։ Այդ պատճառով էր, որ Իբերիայի հարուստ երկիրը[656], որն արդեն դրանից առաջ էլ ավերվել էր ու թուլացել, աստիճանաբար հյուծվեց ու կործանման ճամփան բռնեց, ամբողջությամբ ավերակ դարձավ ու ոչնչացավ։ Նույն բախտին արժանացան նաև մերձակա շրջանները՝ Միջագետքն ու Խաղտիքը, նաև Մելիտենեն ու Կոլոնիան, Եփրատ գետին մոտիկ գտնվողները, ապա նաև Արմենիակոնն ու Վասպուրականը[657]։ Եվ եթե շատ անգամ զորքերով, երբեմն էլ սոսկ ուժերի [գալստյան] մասին լուրերով բարբարոսները չկանգնեցվեին, նրանց առաջնորդներից Խորոսալարն[658] ու Սամուխը բախտի բերմամբ պարտության չմատնվեին, ապա հակառակորդը մինչև Գալատիան, Հոնորիասն ու հենց Փռյուգիան ոտքի տակ կտար։ Նրանց դեմ ուղարկված զորքը թեթև էր զինված կամ անզեն էր ու անվարժ, իսկ լավագույններին էլ շարունակ վտարում էին՝ բարձր ռոճիկներ ու բարձր աստիճաններ պահանջելու պատճառով։ Դա դատապարտելի քայլ էր, քանզի դրա հետևանքով ոչ մի քաջարի ու խոսքի արժանի բան չէր արվում։ Դա պատճառ էր դառնում մի կողմից հռոմայեցիների խեղճանալուն ու երկչոտ լինելուն, իսկ մյուս կողմից՝ բարբարոսների փքման ու ամբարտավանացման և ավելի վստահ կռվի նետվելուն։ Ահա այն ժամանակներն էր, որ Անի է ուղարկվում Բագարատ անունով ոմն հայազգի դուքս[659], որ խոստացել էր տեղի զորքերը եղածով ապահովել։ Երբ սուլթանը [Անիի] մոտով էր անցնում և դեռ չէր նախաձեռնել հռո-

*մեական երկիրն ասպատակելուն, Բագարատի մարդկանցից
ոմանք դուրս գալով, սուլթանի բանակի վերջապահ զինվորնե-
րին մեծ վնաս հասցրին ու կոտորած սարքեցին։ Սուլթանը դրա
վրա զայրացած, առաջխաղացումը կանգնեցրեց, վերադարձավ
Անի և մի քանի օրվա ընթացքում Անին էլ, նրա ողջ շրջակայքն
16—VIII էլ նվաճեց[660], կայազոր հաստատեց այդ շրջանների վրա, հմուտ
—1064 զորավարների նշանակեց և [Անիից] ու նրա շրջակա երկրի
վրայից վերացրեց հռոմեական տիրապետությունը։ Իբերի դրու-
թյունն ահա այդպիսին էր, հռոմայեցիների երկիրն Ասիայում և
ողջ արևելքում այսպես հոշոտվում էր։*

1065 *Իսկ արևմուտքում, ինդիկտիոնի երրորդ տարին Մերձիստ-
րոսյան քաղաքների կառավարիչներ մագիստրոս Վասիլ Ա-
պոկապի[661] և մագիստրոս Նիկեփոր Բոտանիատեսի օրոք, ուզե-
րի ազգը (սրանք էլ սկյութական ցեղ են, պածինակներից ավելի
քաղաքակիրթ ու բազմամարդ) տնով տեղով, սեփական ինչքով,
երկար գերանների, միակտուր նավակների ու տների վրա, ան-
ցան Իստրոսը[662] և անակնկալ կերպով հարձակվեցին իրենց
անցումը խոչընդոտելու համար նշանակված զինվորների՝ բուլ-
ղարների, հռոմայեցիների և նրանց հետ եղող մյուսների վրա,
գերի վերցրին ու տարան նրանց առաջնորդներ Վասիլ Ապոկա-
պին[663] և Նիկեփոր Բոտանիատեսին, ողողեցին Իստրոսի շուրջ
ընկած ողջ տարածությունը։ Իրազեկ մարդկանց ասելով, բար-
բարոսները վաթսուն բյուր կռվող մարդիկ էին ու մարտիկներ։
Մի մեծ զորամաս անջատվելով նրանցից, խորացավ մինչև Թե-
սաղոնիկե ու հենց Հելլադա, ինչ որ ճանապարհին հանդիպեց
թալանեց ու ոչնչացրեց, անհաշիվ ավար ձեռք բերեց։ Իրենց
ցեղակիցների մոտ վերադառնալիս, վրա հասավ սաստիկ ձմեռը
և նրանք ոչ միայն թալանածը կորցրեցին, այլ գրեթե ողջ սեփա-
կանը և սարսափելի վիճակում վերադարձան բանակատեղի։
Կայսրը, լսելով [թշնամու] բազմաթվության մասին, վրդովվեց
ու անհանգստացավ, բայց զլացավ զորք հավաքել և նրանց դեմ
մարտունակ ուժեր ուղարկել։ Ոմանք այդ բացատրում են դրա-
նով, որ նա չէր ուզում միջոցներ ծախսել (ինչպես ասացինք, նա
դրամասեր էր և ամեն ինչից բարձր փողն էր դասում), բայց ու-
րիշներն էլ գտնում են, որ նա չհամարձակվեց ընդդիմակայել
այդպիսի հզորության, քանզի բոլորը համոզված էին, որ հակա-
ռակորդի այդ բազմությունը անհաղթահարելի է, որ փրկություն
չկա և շատերը մտածում էին գաղթելու մասին։ Կայսրը նրանց*

ցեղապետների մոտ դեսպանություն ուղարկեց, փորձեց մի կերպ հեռացնել նրանց ու զսպել, բազմաթիվ նվերներ ու ընծաներ ուղարկելով, [ցեղապետներից] ոմանց նա բաղում նվերներով պատվեց։ Հիշյալ ցեղը անչափ բազմամարդ լինելով, օրեցօր պարենի պակաս էր զգում, դրա համար Բուլղարիայի բազմաթիվ շրջանները, ապա նաև Թրակիան ու Մակեդոնիան էր ճնշում։ Կայսրը, չկարողանալով տանել իր հասցեին ասվող խոսքերը (բոլորը բացահայտ կերպով նրան ծանակում էին ու մեղադրում ծլատության ու կծծիության մեջ), մայրաքաղաքից դուրս է դալիս և բանակում Խիրովակքի կոչվող վայրում, իր հետ տանելով հարյուր հիսունից ոչ ավելի զինվորներ։ Այդ քայլով նա շատերին զարմացրեց, թե ինչպես նա համարձակվեց այդքան [քիչ] մարդուկներով նման բազմության դեմ դուրս գալ։ Երբ նա այդպիսի պատրաստության մեջ էր, և մտածում էր զորք հավաքել, շտապ կարգով կայսեր մոտ մարդիկ եկան և զեկուցեցին իշխանների փրկության[664] և [ուղերի] ողջ ազգի կորստյան մասին, ասացին, որ նրանց առաջնորդները նավ նստելով անցան Իստրոսը, իսկ մնացած բազմությունը սովից, մահ տարաժամից, մոտակայքում գտնվող բուլղարների ու պածինակների հարվածներից գլխովին կոտորվեց։ Ամեն ինչ աստվածն արեց. պատմում են, որ կայսրը, ամեն ինչից հույսը կտրած, կարդադրելով զինվորներին ծոմ պահել, ինքն էլ նույնն անելով, եկեղեցական թափոր կազմակերպեց, որին ինքն էլ մասնակցեց և բոլորի հետ ոտքով գնաց, արտասվալից աչքերով ու սրտաբեկ, հենց այն օրը, երբ Ցուրուլոսում բանակած ուղերի վրա սլացող օդագնաց բազում զորքեր երևացին, նրանց վրա նետերի տարափ արձակելով, այն աստիճան, որ նրանցից և ոչ ոք անխոցելի չմնաց։ Կայսրը աստծուն և Աստվածածնին գոհանամ ասելով, շարժվեց ուղիղ դեպի մայրաքաղաք, որի բնակիչներին գտավ ապշած, փրկության համար աստծուն գոհություն հայտնելիս։ Բոլորն անխտիր տեղի ունեցածը աստվածուստ կատարված էին համարում, ամեն ինչ վերագրում կայսեր բարեպաշտության[665]։ Աստված արձագանքեց նրա առաքինության, աստվածավախության ու աստվածապաշտության։

Նման կոտորածից հետո նրանցից ոմանք եկան կայսեր մոտ և Մակեդոնիայում պետական հողեր ստանալով, հռոմայեցիներին հնազանդվեցին, այսուհետև նրանց դաշնակիցներն ու հպատակները դարձան, արժանացան սենատորական վեհ աստիճան-

*ների։ Դա տեղի ունեցավ Դուկասի թագավորության վեցերորդ*
1065 *տարին, ինդիկտիոնի երրորդ տարին, աշխարհի արարչագործության 6573 թվականին։*

*Նախորդ՝ ինդիկտիոնի երկրորդ տարվա սեպտեմբեր ամսի քսաներեքին, գիշերվա երկրորդ պահին, նախընթացը չունեցող սաստիկ երկրաշարժ եղավ. Նա սկիզբ առավ արևմտյան շրջաններում։ Նա այնքան ուժեղ էր, որ բազում տներ, տաճարներ ու սյուներ տապալեց։ Նման փորձության հանդիպեցին նաև Ռեգեստոսը, Պանիոնն ու Մյուրիոֆիտոնը, հիմնահատակ տապալվեցին պարիսպների առանձին մասեր, բազում տներ, շատ շատերը ողհվեցին։ [Տուժեց] նաև Կյուզիկոսը, որտեղ սասանվեց, բազում տեղերից փուլ եկավ հեթանոսական տաճարը, որի ամրակուռությունը, շինարարության համար օգտագործված լավագույն ու հսկայական մեծության քարը, համաչափությունը, կառուցողական արվեստը, բարձրությունն ու չափերը տեսնելու բան էր։ Դրանից հետո երկու տարվա ընթացքում այստեղ այնտեղ ցնցումներ էին լինում, որոնց նմանը չէին հիշում զառամյալներն անգամ։ Նույն բախտին արժանացավ նաև Նիկիան, որտեղ սաստիկ սասանվեց սուրբ Սոֆիայի անվան տաճարը, այսպես կոչված սուրբ Հարանց սրբարանը, փլվեցին պարիսպներն ու քաղաքի տները, որից հետո վերջապես ցնցումները դադարեցին։ Այդ բոլորը հատուցումն է մեր մեղքերի, արտահայտությունը՝ աստվածային ցասման, [ուղերի] հիշյալ ազգի ներխուժման ու ավերման մասին ակնարկություն։ Աստվածային նշանները ոչ միայն ներկան են կանխատեսում ու կանխանշում, այլև ապագան։*

*Ինդիկտիոնի 4-րդ տարվա մայիս ամսին գիսավոր աստղ երևաց[666], որ մայր էր մտնում արեգակի ետևից։ Նա լիալուսնի չափ էր։ Թվում էր, թե նա սկզբում ծուխ ու մշուշ է արձակում, իսկ հաջորդ օրը սկսեց ցույց տալ մի քանի խոպոպներ, որոնք ինչքան ձգվում էին, աստղի մեծությունը փոքրանում էր։ Նրա ճառագայթները ձգվեցին մինչև արևելք և դեպի այն կողմ էր շարժվում։ Նա քառասուն օր երևաց։*

*Կոստանդին պատրիարքի մահից հետո ձեռնադրվում է վանական Հովհաննեսը, մականունը Քսիֆիլինոս[667]։ Ծագումով նա Տրապիզոնից էր, իմաստուն, ծայր աստիճան զարգացած, քաղաքական հարցերում անուն հանած, առաքինության մասին խո-*

հիմորեն հոգացող մի մարդ. հենց լավ օրի հասնելու, տարիքի
ծաղկուն ժամանակ նա վանական դարձավ և երկարատև ճգնա-
վորական կյանք վարեց Օլիմպոս[668] լեռան մոտ։ Դրա համար
էլ ահա նրանից բացի ոչ ոք արժանի չհամարվեց պատրիարքի
բարձր աստիճանին, թեև նա հրաժարվում էր ու փախչում այդ
պատվից։ Բուլղարիայի արքեպիսկոպոս Թեոդուլոսն էլ ննջեց և
նրա փոխարեն կայսրը նշանակեց ոմն վանական Հովհաննեսի,
ծագումով Լամպեից, որ Քսիֆիլինոսի ճգնակիցն էր ու սիմպո-
նոսր[669]։

Հոկտեմբեր ամսին կայսեր վրա եկած հիվանդությունը նը-
րան շատ էր տանջում մինչև մայիս ամիսը, հյուծեց նրան և այս
21—V աշխարհից տարավ։ Նրա աճյունը թաղեցին ոչ իր ցանկացած
—1067 տեղում, ծովով այն տարան ու ամփոփեցին սուրբ Նիկողայոսի
վանքում, որ Մոլիբոտոս է կոչվում։ Նա թագավորեց յոթ տարի
և վեց ամիս։ Նա Եվդոկիա թագուհուց, որի հետ ամուսնացել էր
դեռ գահին չտիրած, ուներ երեք որդի՝ Միքայել, Անդրոնիկոս,
Կոստանդիոս (սրանցից ծիրանածին էր[670] Կոստանդիոսը, բոլո-
րին էլ նա կայսր էր հռչակել) և երեք դուստր՝ Աննա, Թեոդո-
րա և Զոե։ Նա իր եղբոր, Հովհաննեսին, կեսար էր նշանակել,
գաղտնի գործերի և ծրագրերի գործակից։ Մահվան անկողնում
նա բոլորից գրավոր փաստաթուղթ պահանջեց, թե իր զավակ-
ներից բացի ոչ ոքի կայսր չեն ճանաչելու։ Բոլորն էլ ստորագ-
րեցին, այդ թվում և կայսրուհի Եվդոկիան, թե երկրորդ անգամ
չի ամուսնանա[671]։ Կազմելով այդ [փաստաթուղթը] պատրիար-
քին ի պահ տվեցին։ Նա ամեն ինչ կտակեց կնոջ՝ կայսրուհուն,
քանզի ամուսինը նրան շատ խոհեմ էր համարում, երեխաների
լավ դաստիարակ, պետության գործերի կառավարման համար
անչափ կարող։ Կայսրը վախճանվեց վաթսուն տարեկանից մի
փոքր ավելի հասակում։ Նա սովորություն ուներ իրեն ենթակա-
ների մասին ասել, թե նրանց պատվից ու ունեցվածքից թեև չի
զրկի, բայց անազատ արծաթագին [ստրուկների] կվերածի։ «Ես
չեմ զրկել նրանց ազատությունից, ասում էր նա, այլ օրենք-
ներն են նրանց իրավազուրկ դարձրել»։ Լինելով սրամիտ, նա
ասում էր. «Սրանք ինձ ավելի օգուտ տվեցին, քան թագավորու-
թյունը»։ Նա քաջ մարդ էր, և երբ մեկը նրան ասաց, թե մարտում
ինքը սիրով սեփական մարմնով կպաշտպանի կայսեր, նա
պատասխանեց. «Հաճոյախոսիր, թեև երբ ես ընկնեմ, մի հար-

*ված էլ դու կիջեցնես»։ Իսկ մեկին, որ շատ էր պրպտում օրենքները, նպատակ ունենալով անիրավություն գործել, ասաց. «Մեր տունը քանդողը հենց օրենքներն են»։*

## ԵՎԴՈԿԻԱ ԴՈՒԿԵ՛ՆԱ

### [21 մայիս 1067—31 դեկտեմբեր 1067 թթ.]

*Կայսրության գայիսոնն անցավ նրա կնոջ ու երեխաների ձեռքը։ Արևելքն ասպատակող թուրքերը դարձյալ աչքերը հառեցին Միջագետքի շուրջ գտնվողների վրա, հատկապես Մելիտենեի շուրջ բանակած հռոմեական զորքերի, որոնք ռոճիկ ստացած չլինելով, ընդունված կարգի համաձայն իրենց ստանալիք կերակուրից զրկված, վատ ու խղճուկ դրության մեջ էին, գազազած՝ թշվառության համար, այլև այն բանի, որ տեղացի զինվորները[672] չէին ուզում իրենց միանալ և միասին անցնել Եփրատ գետը։ Երբ վրա եկան թուրքերը, մելիտենացիք միայնակ ընդդիմակայեցին, նրանք նետարձակ բարբարոսների կողմից հեշտությամբ ջարդ կերան ու խոցվեցին, իսկ [թուրքերն] անվնաս մնացին։ [Մելիտենացիք] ստիպված փախուստի դիմեցին դեպի գետը, ակամայից կռվի բռնվեցին և ճնշման տակ թիկունք դարձրին։ Պարտություն կրելով, նրանցից շատերը սպանվեցին, ոմանք բարբարոսների ձեռքը գերի ընկան, իսկ մնացածները ապաստանեցին Մելիտենե քաղաքում։ Բարբարոսները արհամարհելով այդ ջարդվածներին ու անզորացածներին, արշավում են մինչև Կեսարիա, ամեն ինչ ավերելով ու հրկիզելով։ Նրանք խուժեցին Բարսեղ Մեծի հռչակավոր տաճարը, ամեն ինչ ջարդ ու փշուր արեցին, հափշտակեցին սուրբ սպասքը, հարձակվեցին նրա սուրբ գերեզմանի վրա, բայց նրա աճյունին չկարողացան որևէ վնաս հասցնել, քանզի գերեզմանը շատ ապահով էր կառուցված, նրա շուրջը շինված էին ամուր կառույցներ, որոնք քանդելու համար շատ ժամանակ էր պետք։ Ոսկով, մարգարիտներով և թանկագին քարերով ագուցված պատուհանները, սակայն, տեղից հանեցին և բոլոր զարդերը մի տեղ հավաքելով, թողեցին գնացին, կեսարացիներից շատերին սրի քաշելով ու տաճարը [նրանց արյամբ] ներկելով։ Այնտեղից ետ գնալով, անցան Կիլիկիա տանող կիրճերով։ Նրանց արշավանքի մասին ոչ ոք չգիտեր և հայտնվելով՝ կիլիկեցիներին սարսա-*

փախար արեցին՝ հանդիպածին կոտորելով։ Նրանք որոշ ժամանակ այդ երկրում մնացին, թալանեցին այն, լիացան ռազմավարով, ավարով ու գերեվարությամբ, որից հետո հռոմայեցիների նկատմամբ թշնամաբար տրամադրված Ամերտիկի[673] կոչվող մի դասալիքի առաջնորդությամբ շարժվեցին Հալեպ։ Ամերտիկին հռոմայեցիների կողմն էր անցել Միքայել Ծերունու ժամանակ ու արժանացել սիրալիր ընդունելության, բազում նվերների ու պատիվների։ Հետագայում, սակայն, մեղադրվելով Կոստանդին Դուկաս կայսեր դաշունահարելու մտադրության մեջ, ցմահ աքսորի դատապարտվեց, բայց դարձյալ ետ կանչվելով, Թուրքերի դեմ ուղարկվեց։ Ինչ անհրաժեշտ էր չստանալով, նա միացավ Թուրքերին ու սկսեց վնասներ պատճառել երկրին։ Թուրքերն ու հալեպցիք միանալով և դաշինք կնքելով, սկսեցին ամայացնել Ասորիքի Անտիոքն ու նրա շրջակայքը՝ սրի քաշելով, հրկիզելով, ստրկացնելով, ասպատակ սփռելով, գերեվարելով, ամեն տեսակի վատություն գործելով։ Նրանց դեմ [քաղաքի] դուքս Նիկեփոր Բոտանիատեսի գլխավորությամբ խոսքի արժանի զորք հավաքվեց, բայց ժլատությունն ու կծծությունը դարձյալ ամեն ինչ անգործության մատնեցին։ [Զինվորների] ռոճիկը լրիվ չէր տրված[674], այլ փոքր մասը միայն, և դա գցեց նրանց տրամադրությունը։ Առնելով ինչ տվեցին, նրանք ցրվեցին իրենց տները և բարբարոսները դարձյալ սկսեցին ավերել երկիրը, աներկյուղ ասպատակ սփռել։ Փոքրաթիվ պատանիներ, փախչելով իրենց դպրոցներից, հավաքեցին չնչին միջոցներ, որոնք հանձնեցին Անտիոքի դքսին։ Նրանք պատանեկան անխոհեմ հանդգնությունից դրդված, ցանկանում էին ինչ-որ բան անել, բայց չունենալով պատերազմի փորձ, ձիեր, զենք ու զրահ, օրվա հացի կարոտ, մեծ փորձությունների հանդիպեցին և անփառունակ իրենց տեղերը վերադարձան. դուքս Բոտանիատեսը իր թիկնապահներով և ինչ-որ օտարերկրացի զինվորներով կարողացան նրանց մի քիչ վախեցնել։ Երբ [Բոտանիատեսը] պաշտոնանկ եղավ, բարբարոսներն էլ ավելի լկտիացան, նամանավանդ որ քաղաքները տառապում էին պարենի ու անհրաժեշտ այլ միջոցների պակասից։

Պետության գործերը դժվարին կացության մեջ էին, քանի որ չկար կայսր, որը կարողանար որոշ չափով վիճակը բարելավել ու կարգավորել՝ նման վատ ժամանակներում, ամենից նպատակահարմար համարվեց Բոտանիատեսը և շատ ուրիշներ,

*բայց հաղթեց ատածո կամքը. կայսր է դառնում վեստարխ Ռոմանոսը, Կոստանդին Դիոգենեսի որդին։ Այժմ ես կպատմեմ նրա գահ բարձրանալու մանրամասնությունները։ Դիոգենեսը Սարդիկայի դուքսն էր և լինելով պատրիկ, Կոստանդին Դուկաս կայսրից խնդրեց վեստարխի պատվաստիճան։ Կայսրը մերժեց նրա խնդիրքը և ձեռնունայն ճամփու դրեց, ասելով. «Գործ արա, հետո վարձ պահանջիր»։ Դիոգենեսը գնաց Սարդիկա և հանդիպելով արշավանքի դուրս եկած և երկիրն ավարառող պածինակների, նրանց գլխովին պարտության մատնեց, բազում դերիների և սպանվածների գլուխներ կայսեր ուղարկեց, որով արժանացավ վեստարխի աստիճանին։ Կայսրը այդ առթիվ նրան նամակ դրեց, թե «Դա իմ նվերը չէ, ով Դիոգենես, այլ քո անձնական առաքինության ու սխրանքի արդյունքը»։ Մնալով [Սարդիկայում, նա որոշեց կայսեր դեմ ապստամբություն բարձրացնել, բայց այդ մտքից ետ կանգնեց, քանզի վախենում էր, թե ծրագրածը կբացահայտվի։ Սակայն երբ կայսրը վախճանվեց և գահը մնաց թափուր, [Դիոգենեսն] իր նպատակը դրսևորեց իրեն շատ հավատարիմ մի մարդու և նրա միջոցով ծրագրերին հաղորդակից դարձրեց հարևան այլազգիներին, որոնք դեռ այն ժամանակներից, երբ ինքն այդ շրջանների կառավարիչն էր և իր արիության մասին քաջատեղյակ, իր հանդեպ լավ էին տրամադրված։ Մի հայ սակայն հայտնում է այդ մասին [կայսրուհուն] և [Դիոգենեսը] ձերբակալվելով, բերվում է կայսրուհու մոտ։ Քննությամբ նրա հանցանքը հաստատվեց և նա որպես դավադիր մահվան դատապարտվեց ու քաղաքից արտաքսվեց, տխրությամբ լցնելով բոլոր նրանց, ովքեր փորձով համոզվում էին նրա քաջության ու արիությանը։ Իսկ նրանք, ովքեր անտեղյակ էին, իմացողներից էին այդ մասին տեղեկանում և նրա կողմնակից դառնում։ Ուստի և բոլորը մաղթում էին, որ նա պատժի չարժանանա և նրան շնորհվի հռոմայեցիների իշխանությունը։ Քանի որ նրանց մղողը եսասիրությունը չէր, այլ աստված, որ ցավում էր քրիստոնյաների մեծամասնության տառապանքների, հագարացիների[675] կողմից [նրանց] շարունակ ու չարաչար կոտորվելու առթիվ, այդ մաղթանքն իրականացավ։ Երբ նա դարձյալ կանգնեց կայսերական ատյանի առջև,ավգուստա Եվդոկիան այդ մարդու նկատմամբ ողորմածությամբ լցվեց, քանզի նա ի վերա ամենայնի փառավոր էր, բարձրահասակ ու թիկնեղ, շատ գեղաշըյա, ո՛չ սպիտակ, ո՛չ էլ թուխ դեմ-*

քով, այլ կարծես այդ երկու դույները հավասար չափով իրար խառնված։ Նա կոչ էր անում ներող լինել փորձության համար։ Ներկա գտնվող սենատորները կարեկցեցին նրան, և իսկույն հաջորդեց ներումը։ Այսպիսով վտանգից խույս տալով, նա անկնկալ ու անսպասելի կերպով թագավորական պատիվների արժանացավ։ Նա ազատ արձակվեց և բոլորի կողմից ողջունվեց։ Գնալով Կապադովկիա, որտեղ որ ծնվել էր, նա վերստին կանչվեց և մուտք գործելով մայրաքաղաք, փրկիչ Քրիստոսի ծննդյան տոնին ստանում է մագիստրոսի պատվաստիճանն ու ստրատելատ նշանակվում թագուհու կողմից, որն իր զավակների հետ թագավորական հանդիսավորությամբ մեծագույն և հրաշակավոր սուրբ Սոֆիայի տաճարն էր եկել։

Կայսրուհին, վախենալով սենատից, պատրիարքից և նրանցից, ովքեր ստորագրել էին փաստաթուղթն ու երդումներով հաստատել, չէր համարձակվում ամուսնանալ երևելի մարդկանցից մեկի հետ և նրան կայսր հռչակել, դրա համար գտավ, որ անհրաժեշտ է կնոջ նման չդատել, պետք է խորամանկության դիմել և նենգությամբ ու խարդախությամբ պատրիարքին սիրաշահել, այդ ձևով և՛ իր ցանկությունը կատարել, և՛ այլազգիների թափը որոշ չափով սանձել։ Նա այդ մասին տեղյակ պահեց պալատի՝ կանանց բաժնի՝ այդ գործի համար հարմար մի աշխատողի, որը խոստացավ ամեն կերպ օժանդակել նրան, նման գործերի մեջ, ինչպես ասում են, շանորդի լինելով[676]։ Պատրիարքը մի եղբայր ուներ, անունը Վարդաս[677], շատ բարոյազուրկ, խելքը միտքը հաճույքներին տված, կատարյալ ապաշնորհ մի մարդ։ Ներքինին գալիս է պատրիարքի մոտ, ծածուկ տեղեկացնում հարցի մասին, ասում, որ եթե նա ցանկանա, ավելի ճիշտ համաձայնվի գործին ընթացք տալ, ապա ոչ մի վտանգ չի գա այդ սարսափելի փաստաթղթից. [պատրիարքի] եղբայրը պետք է ամուսնանա կայսրուհու հետ և իսկույն կայսր հռչակվի։ Երբ նրան հաջողվեց պատրիարքին կատարելապես հիմարացնել, այնպես անել, որ նա այլ բանի մասին չմտածի, այլ միայն ամուսնության արագացման, որոշում է ձեռք գցել նաև սենատի համաձայնությունը։ Պատրիարքը առանձին-առանձին իր մոտ է հրավիրում սենատորներին, իբրև թե գործի անհրաժեշտությունը ընդգծում, ծանակում փաստաթուղթը որպես ապօրինի ու անօրինական, մեկ այրի խանդի հիման վրա, ի անտեսումն հասարակաց օգուտի կազմված, որ այդ օգուտը

*կլինի, եթե կայսրուհին ամուսնանա քաջարի ու խիզախ մեկի
հետ, որով իսկույն դարձյալ կփթթեն հռոմայեցիների գործերը,
որոնք արդեն թառամելու և հանգելու վրա են։ Երբ ստացավ բո-
լորի համաձայնությունը՝ մի մասին քաղցր խոսքով ու շողոքոր-
թությամբ, մյուս մասին՝ կաշառքով ու առատ խոստումներով, և
այլևս լինելիքի շուրջ որևէ վախ չկար, գիշեր ժամանակ զենքերը
կապած պալատ է բերվում Դիոգենեսը, ամուսնանում կայսրու-*
1—I— *հու հետ և իսկույն կայսր հռչակվում՝ 6576 թվականի հունվար*
1068 *ամսի մեկին, ինդիկտիոնի վեցերորդ տարին, շրջանցելով կայ-
սրրուհու բոլոր որդիներին։ Իսկույն մեծ խռովություն են բարձ-
րացնում վարյագները, որոնք չեն ուզում ընդունված կարգին
հակառակ նրան կայսր հռչակել։ Բայց երբ հանդես եկավ կայ-
սրրուհու որդի Միքայելն իր եղբայրներով և ասաց, որ իրենց
գիտությամբ է փաստը կատարվել, նրանք տեղի տալով բարձ-
րաձայն ու մեծագոչ նրան կայսր հռչակեցին։ Դրանից պարզ
դարձավ, որ իզուր են շատերը նրա հետ հույսեր կապել։ Կայ-
սրրուհին իր որդիներով իշխեց յոթ ամսից մի քիչ ավելի։*

## ՌՈՄԱ՛ՆՈՍ IV ԴԻՈԳԵ՛ՆԵՍ

**[1 հունվար 1068—19 օգոստոս 1071 թթ.]**

*Ռոմանոս Դիոգենեսն ահա այդ ձևով գահիսոնին տիրանալով, առօրյա հարցերից ոչ պակաս մեծ հոգ տարավ նաև զինվորական գործերը կարգի բերելու և ոտքի կանգնեցնելու մասին, հակառակ որ իր գործակիցները, որոնց ավելի ճիշտ կլիներ հակառակորդներ անվանել, կնոջ որդիներն էին, ինչպես և նախկին կայսեր եղբայր կեսար Հովհաննեսը։ Սրանք առաջին օրից մինչև վերջը իր համար խոչընդոտներ էին, հռոմեական պետության գործերը վատթարացրին և հասցրին այսօրվա վիճակին։ Նա սկսեց աջակցել երևելի [զինվորականներին], շփվել խոհեմ ու փորձառու զինվորների հետ, ուշադրություն դարձնել պատերազմական գործերին, դեսպաններ պատրաստել և ամեն կողմից փակել հակառակորդների ճանապարհը։ Այդ էր պատճառը, որ երկու ամիս անց նա գնաց արևելքի Պրոպոնտիս. վրիժառության զգացումը հաղթեց մայրաքաղաքի փափկակեցությունն ու վայելքը։ Բոլորն ապշել էին պետությունը դժվարին վիճակից դուրս*

բերելու համար նրա արագ պատրաստություն տեսնելու և ամեն ինչ կարգի բերելու ջանքերի վրա։

Անտիոքն ու Կիլիկիան վերոհիշյալ ասպատակությունների ժամանակ թուլացել և սարսափելի վտանգի առաջ էին կանգնել, իսկ հյուսիսում սուլթանը[678] համայն զորքով՝ հզոր ու ծանր ուժերով աշնան ժամանակ եկավ հռոմեական սահմանները, մտադիր լինելով ձմեռել այնտեղ և գարնան ․կզբին շարունակ հարձակվել և գլխովին տապալել ու վերացնել հռոմայեցիների [պետությունը]։ Կայսրը հռոմայեցիների կայսեր համար ոչ ավանդական, այլ տվյալ իրավիճակում ինչպես որ հնարավոր էր՝ մակեդոնացիներից, բուլղարներից, կապադովկացիներից, ուզերից, պատահած այլազգիներից, ապա նաև ֆրանկներից ու վարյագներից հավաքագրված զորքերով փութանակի ճանապարհ ընկավ[679]։ Կայսերական հրամանով բոլորն էլ հավաքվեցին Փռյուգիայում, այսինքն Անատոլիկոն բանակաթեմում[680]։ Այստեղ կարելի էր տեսնել մի ապշեցուցիչ բան. հռոմայեցիների՝ ողջ արևելքն ու արևմուտքը հպատակեցնող հռչակավոր մարտիկները շատ փոքրաթիվ էին, այն էլ թշվառությունից ու տառապանքներից գլխիկոր, անզրահ, սուրբ գրքի ասածի պես նրանք թրերի և այլ զենքերի տեղ, պատերազմի ժամանակ կրում էին խոփեր ու մանգաղներ[681], չունեին պատերազմական ձիեր և և այլ անհրաժեշտ հանդերձանք։ Դրա պատճառն այն էր, որ վաղուց է ինչ կայսրը պատերազմի չէր գնացել, նրանք որպես ոչ պետքական ու ոչ զինապարտ ռոճիկ էլ չէին ստանում, ինչպես և սովորական ուտեստը։ Նրանք անարի էին ու վախկոտ, ոչ մի սխրանքի ընդունակ, այդ բանի լուռ վկան անգամ նրանց կեղտոտ, կարծես ծխից մրոտված դրոշներն էին, որոնց հետևում էին փոքրաթիվ ու խղճուկ զինվորներ։ Այդ բանին ականատես եղողները շատ էին ընկճվում, տեսնում, թե ինչպիսի վեհությունից ինչ օրի են ընկել հռոմեական զորքերը, մտածում, թե ինչ ձևով, ինչքան դրամով և ինչքան ժամանակվա ընթացքում հնարավոր կլինի վերականգնել վաղեմին, չէ՞ որ ավելի տարեցներն ու պատերազմի փորձն ունեցողները անձի էին ու անզեն, իսկ երիտասարդ զինվորները՝ պատերազմի փորձից զուրկ ու մարտերում չկոփված, և այդ բոլորն այն ժամանակ, երբ հակադիր կողմում կանգնած են վտանգներն արհամարհող, պատերազմներում համառ, փորձառու ու կարող [զորքեր]։ Կայսրը թեև ամեն ինչի կարիքն էր զգում, հասարակաց օգուտի համար չուզեց

հանգիստ մնալ, վճռեց, որ անհրաժեշտ է եղածով թշնամու դեմ մարտի դուրս գալ և նրա թափը մասամբ սանձել ու ղսպել։ Հակառակորդները անտեղյակ լինելով կայսրին ճնշող ու տրտմեցնող ներքին դրության մասին, նրա թափն ու արշավանքի դուրս գալը շատ զարմացրեց, նրանք, ինչպես հետո իմացանք, կարծեցին, որ այդ մարդը վտանգներից ամենևին չի վախենում, և լինելով Արեսի[682] աշակերտը, պետք է բարելավի ու երիտասարդացնի հռոմեական կայսրության վիճակը, փոխհատուցի թշնամիներին իրենց կատարածների համար։ Այդ պատճառով է, որ սուլթանը նահանջեց՝ մի մեծ զորամաս առանձնացնելով և այն երկու մասի բաժանելով, մեկն ուղարկեց դեպի վերին՝ հարավային Ասիա, իսկ մյուսին հրամայեց լինել հյուսիսային [Ասիայում]։ Կայսրը, ինչպես որ կար, իր զինվորներին արագ շարժման մեջ դրեց, նրանց ոգևորեց ստրիճաններ ու նվերներ բաշխելով, յուրաքանչյուր տագմայի վրա փութով կարող լոխագոսներ ու տաքսիարխներ նշանակեց, և կարճ ժամանակամիջոցում ուժեղ բանակ ստեղծեց, որի գլուխն անցնելով, ավելի եռանդագին շարժվեց պարսիկների դեմ։ Երբ պարսիկների հյուսիսային բանակը (որ նախապես ասպատակ էր սփռել) ձևացրեց, թե նահանջում է՝ կայսեր առաջխաղացման պատճառով, Դիոգենեսը որոշեց հարձակվել հարավայինների՝ Կյուլե Ասորիքը, Կիլիկիան և հենց Անտիոքը ավարառողների վրա։ Հրաժարվելով ուղիղ Կոլոնիայի և Սեբաստիայի վրա գնալուց, նա ամառ ժամանակ մտավ Լիկանդոս բանակաթեմը, քանզի մտադիր էր դեպի Ասորիքի շրջանները ուղղվել աշնանը, որպեսզի զորքը շոգից չտառապի և այդ պատճառով անհաջողության չմատնվի ու չվնասվի։ Այդ միջոցին թուրքերն անսպասելիորեն հարձակվում են Նեոկեսարիայի վրա և ավերում այն, ձեռք բերում բազում դրամ ու գերիներ, տանում հսկայական ավար։ Այգ բանի լուրը հասավ կայսեր և նրան շատ տխրեցրեց, որովհետև ինքը թեև անձամբ է արշավանքի դուրս եկել, հակառակ դրան թշնամիները իր ներկայության լափում են իր երկիրը։ Համենայն դեպս, վերցնելով իր զորքերը, նա դժվարանցանելի կածաններով, երասանակները թողած գնաց նրանց ետևից։ Մոտենալով Սեբաստիային, ռազմական հանդերձանքն ու ողջ հետևակը թողեց այնտեղ՝ իր հետ եղող կնոջ որդի Անդրոնիկոսին, որին նա կայսր նշանակելով, իր մոտ էր պահում որպես պատանդ կամ համազորավար, որպեսզի բազում արշավանքների ժամանակ, եթե հանկարծ իրեն

բան պատահի, նա իր վրա վերցնի ղեկավարությունը։ Ինքը ավելի ռազմունակ զինվորներով Տեֆրիկեի և Արգաուսի[683] բազում ու շատ բարձր լեռների վրայով սկսեց հետապնդել թշնամիներին, ջանալով հարձակվել կողքից, անսպասելի կերպով նրանց վրա խուժեց, իր ներկայության մասին համբավով բոլորի մեջ սարսափ տարածեց և ստիպեց նրանց իսկույն թիկունքը շրջել ու փախուստի դիմել։ Սակայն նրանցից քչերը սպանվեցին, քանզի կայսեր զինվորները ճանապարհազուրկ վայրերով գնալիս հոգնել էին, բայց բազում գերիներ վերցրին, որոնք սրի չքաշվեցին, կենդանի մնացին։ Ողջ ավարը՝ լինի այն մարդ, թե անասուն, աղատ արձակվեց. [գերիները] հրաշքի առթիվ փառաբանեցին կայսեր։ Տեղի ունեցածը հակառակորդների համար ապշեցուցիչ էր, այն, թե ինչպես հռոմայեցիների կայսրը անզսպելիորեն իրենց վրա արշավեց թեթևազեն ռազմիկի նման։ Կայսրը իր զորքին Սեբաստիայում լոկ երեք օր հանգիստ տալով, շարժվեց դեպի Ասորիք, Կուկուսոսի[684] կիրճերով նա հասավ Գերմանիկիա[685] և ներխուժեց Տլուք կոչվող բանակաթեմը[686], նախօրոք մի մեծ զորամաս առանձնացնելով սինտագմատարխի[687] գլխավորությամբ Մելիտենե ուղարկեց՝ ի պաշտպանություն արևելքի և [քաղաքը] պաշարող նենգ ու պատերազմող Ապսինալիոս անունով մեկի[688] հրամանատարության տակ գտնվող թշնամիներին ընդդիմակայելու։ Այդ էր պատճառը, որ կայսրը, իր լավագույն ռազմիկներին, այդ թվում հենց ֆրանկներին՝ արյունռուշտ և պատերազմասեր մարդկանց [սինտագմատարխին] հանձնեց։ Բայց հրամանատարը երկյուղ կրելով անհաջողության մատնվելուց (նա տատանվում էր և ապագայից վախենում) բարեխղճորեն գործի չլծվեց և քիչ էր մնացել, որ կայսրը կրկնակի պատերազմի մեջ ընկներ, զրկված լինելով նման ուժից։ Թշնամիներին նրանք բազմիցս կոչ էին անում՝ հեռանալ Մելիտենե քաղաքից, բայց երբ վերջիններս տեսան, որ [հռոմայեցիները] անգործության են մատնված, հանգիստ նստած, կարծես նիրհած, թաքուն վայրերով աննկատելիորեն հանդգնեցին հարձակվել կայսերական զորաբանակի վրա։ Նրանք պարեն գնելու դուրս եկած մի փոքր զորամասի հանդիպեցին, և նրա վրա հարձակվեցին։ Հռոմայեցիներն առանց դիմադրություն ցուցաբերելու փախուստի դիմեցին։ Այդ զինվորներից շատերը կկոտորվեին, եթե շտապ կարգով օգնության չհասներ կայսրը, որը նրանց հարձակումից փրկեց։ Եթե որևէ մեկը, ընդհանրապես ա-



20*

սած, զորավարներին վերագրի փրկության փաստը, ասի, թե նրանք լավ են արել, կամ վատ են արել, որ մի տեղ են հավաքվել, նա սխալած չի լինի։ Հները լավ են ասել, թե գերադասելի է, որ առյուծը իշխի եղնիկների վրա, քան թե եղնիկը՝ առյուծների։ Կայսրն ահա այսպես փրկվելով ու զորքը փրկելով, համայն զորքով բանակեց Հալեպի առաջ ընկած տարածության վրա։ Նախքան ձիուց ցած իջնելը նա սկյութներին[689] ու բազում հռոմայեցիների ուղարկեց երկիրն ասպատակելու։ Նրանք այդպես էլ արեցին ու քշեցին, բերեցին տղամարդկանց, կանանց բազմություն և բազում անասունների։ Այնտեղից կայսրը թշնամական երկրի վրայով երեք օր անց հասնում է Հիերապոլիս[690]։ Այնտեղ գտնվող զորքը՝ արաբներն ու թուրքերը և նրանց գլխավորող Ամերտիկիսը, որն իրեն Պարսկաստանի թագավորներից սերող էր համարում[691], ձևացնելով որ ուզում են հարձակման անցնել, այնուամենայնիվ չհամարձակվեցին հռոմայեցիների հետ մոտիկից մարտի բռնվել, այլ հեռամարտությամբ ու մեկ-մեկ առաջ անցնելով։ [Կայսրը] հողաթմբերի օգնությամբ, պարսպամարտով ու գրոհներով գրավեց Հիերապոլիսը, օտարազգի զորքը, պայմանի համաձայն, առանց զենքի ու զրահի արձակեց։ Այդ բոլոր գործերում միջնորդի դեր էր խաղում մագիստրոս Պետրոս Լիբելլիոսը, հունական ու ասորական փայլուն կրթություն ստացած մի մարդ, որ ծնվել ու մեծացել էր Անտիոք քաղաքում, այդ քաղաքի առաջին մարդկանցից մեկի որդին։ Հալեպի, այն է Բերիայի ամիրան, միանալով արաբներին ու թուրքերին և հզոր բանակ ստեղծելով, մտածում էր կայսեր հետ մարտի բռնվել ու պատերազմել։ Կայսրը գրավված քաղաքում էր գտնվում և մարտնչում էր դեռևս դիմադրություն ցուցաբերող մի աշտարակի պաշտպանների դեմ. երկու մարտական զորամասեր էին առանձնացվել հակառակորդներին հսկելու և նրանց առջև ճամփան փակելու։ Հիերապոլսի շուրջ կան լայնատարած դաշտեր, որտեղ երևացին մի քանի ձիավոր սարակինոսներ, կան բլուրներ, բայց և ոչ մի բարձր լեռ։ Վայրը տոթակեզ է, ջուրը՝ օդի ջերմության ու շոգի պատճառով՝ գոլ։ Թշնամիները ստեպ-ստեպ մոտենալով մարտաշարքերին, վերստին ետ էին վերադառնում, քանզի դեռևս բացակայում էր Մահմուդ ամիրան, և հեռվից նետեր արձակելով հռոմայեցիներից ոմանց ստիպեցին հեռանալ։ Այդ բանը նրանք երկու, երեք անգամ արեցին։ Մի այլ ընդհարման ժամանակ նրանք չբավարարվեցին հռոմայեցիներին մի

փոքր հետապնդելով ու կանգնելով, այլ քշելով նրանց, մարտի
բռնվեցին ստրատելատների տագմայի հետ, թևանցելով սխոլե-
րի տագման, շատերին կոտորեցին, իսկ մնացածներին ստիպե-
ցին խայտառակ փախուստի դիմել՝ աջ կողմում թողնելով սխոլե-
րի սինտագման, որը հակառակ որ ականատես էր լինում հռո-
մայեցիների պարտության, տեղից չշարժվեց և կարծես բան չէր
պատահել, հանգիստ կանգնել էր, թվում է մտահոգված լինելով,
որ չնկատվի թշնամու կողմից, ջանում ամեն կերպ խուսափել
նրա ուշադրությունից։ Բայց թշնամիները փութանակի վերա-
դառնալով, այն էլ պարտության մատնեցին, շատերին կոտորե-
ցին, մնացածներին [ստիպեցին] ճամբարում փակվել, խորա-
մանկությամբ տիրանալով նրանց դրոշներին։ Նրանք բազում
զինվորների գլուխները կտրեցին և հալեպցիներին՝ ուղարկեցին։
Ապշել կարելի էր, տեսնելով, թե ինչպես, երբ հռոմայեցիները
այդպիսի հարվածներ էին ստանում ու պարտություն կրում,
մնացած լոխոսներից ու լոխագոսներից և ոչ ոք օգնության չդիմեց,
բոլորը ներսում նստած, կարծես բարեկամական երկրում վրան-
ներ խփած, լոկ իրենց մասին էին մտածում, նրանց մոտ բա-
ցարձակապես բացակայում էր հոգու բռնկումը, հոգատարու-
թյունն ու խռովահուզությունը։ Կայսրը, որ քաղաքի ներսում էր
գտնվում, իմանալով այդ մասին, շատ տխրեց և փութանակի իր
հետ եղող կապադովկացիների հետ վերադարձավ, խորհելով պա-
տահածի համար դարման գտնել։ Այդ գիշերը բոլորի համար
չարագուշակ էր, նամանավանդ որ հայկական հետևակն էլ, որին
հրաման էր տրվել խրամի մոտ գիշերել, որոշեց ապստամբել[692]։
Դեռ լույսը չծագած, թշնամիները օղակեցին խարաքսը։ Հալեպի
ամիրան, իմանալով կատարվածի մասին, իր ողջ զինական ու-
ժով եկավ, մեկ հարվածով կայսեր բռնելու։ Կայսրը, որ վրանի
ներսում մարտի պլանն էր կազմում, երրորդ ժամին հանկարծ
20—XI ձի նստած դուրս եկավ։ Նոյեմբեր ամսի քսանն էր, ինդիկտիոնի
—1069 7-րդ տարին։ Երբ դեռ բացահայտ կերպով ո՛չ փողերը, ո՛չ էլ
շեփորներն էին հնչել, ո՛չ էլ որևէ ազդանշան տրվել, բայց զորքի
դրոշները բարձրացված բանակը շարք կազմած դուրս եկավ,
թշնամիներն սկսեցին մի տեղ կենտրոնանալ, այն կողմում, որ-
տեղից հռոմայեցիներն էին շարժվում։ Բոլորի հոգին խռովված
էր, պատկերացնում էին, թե ինչպիսին կլինի ճակատամարտը,
ինչպիսի ելք կունենա այն։ Ճակատողները պատերազմական կոչե-
րով հարձակման անցան և հռոմայեցիները հակառակորդներից

շատերին հաղթեցին ու կոտորեցին։ Երբ մնացած զորքն էլ հարձակման անցավ, [թշնամին] գլխովին փախուստի դիմեց։ Նրանց հետապնդողները շատերին կոտորեցին ու գերի վերցրին[693]։ Սակայն հակառակորդի հետապնդումը չշարունակվելու պատճառով, հռոմայեցիները խոշոր հաջողություն, փառավոր հաղթանակ ձեռքից բաց թողեցին, մեծագույն պարծանքից զրկվեցին։ Արաբական ձիերը, թեև արագավազ են, բայց անվեհեր չեն, ոչ էլ վազքում տոկուն, իսկ հռոմայեցիները չուզեցին նրանց թուլությունից օգտվել։ Կայսերական հրամանով շրջելով իրենց ձիերին, նրանք անավարտ թողեցին իրենց հաղթանակը, բավարարվեցին հակառակորդին լոկ փախուստի մատնելով։ Կայսրը գտնում էր, որ դա էլ մեծ բարեբախտություն է, որ վեհերոտները սրտապնդվեցին և մեռածները, այսպես ասած, վերակենդանացան։ Կայսրը թշնամիների փախուստից հետո վերադառնալով խարաքս , որոշեց բնակեցնել Հիերապոլսի միջնաբերդը[694]։ Այնտեղ հաստատելով ծագումով իբերացի այն վեստ Փարեսման Ապոկապին[695], [կայսրը] հենակետ ստեղծեց շարունակելու հակառակորդներին պարտության մատնելը և նրանց ընդդիմակայելը։ Քանի դեռ հռոմեական զորքը բանակած մնում էր, թվում էր, թե արաբները տեղում անշարժ են, բայց երբ կայսրը զորքն առնելով շարժվեց ուղիղ Ազազ բերդի վրա, նրանք սկսեցին իրենց սովորության համաձայն որոշ հեռավորության վրա տեղ-տեղ երևալ և հաճախակի գրոհելով վերջապահ զորքի վրա, վնասել պարենը փոխադրողներին, նեղել հռոմայեցիներին, քանզի հարձակվում էին հանկարծակի, դարան մտած ու թաքուն։ Կայսրը ճամբարը առնելով նետաձիգների ու վահանակիրների պաշտպանության մեջ, ողջ զորքով, ղրահը հագած հարձակվում է Ազազ բերդի վրա, նախօրոք իմանալով, որ վայրը հարմար է օթևանելու։ Սակայն, երբ մոտեցավ ու տեսավ, որ այն շատ ամուր է և անմատչելի, գտնվում է բլրի գագաթին՝ երկու շարք պարիսպներով պատսպարված, կարծես ժայռերով ամրացված դարբասը տանող քարե ճանապարհով, հոսող ջուրն էլ՝ սակավիկ, այդքան զորքի համար ոչ բավարար, հեռացավ գնաց ու բանակեց մի տեղում, որտեղ ավելի առատ էր հոսում ջուրը։ Այնտեղից էլ շարժվեց դեպի Ավսոնիտիսի սահմանները, հրկիզեց հնուց Հալեպի ամիրային հատկացված Կատմա կոչված մի մեծ գյուղ և կանգ առավ Տերխոլա կոչվող մի այլ գյուղում։ Ցանկապատը շինելու ժամանակ, երբ կայսրը աջ կողմում էր

կանգնած, երկու արաբներ աննկատ բարձունքի ետևից ձիերով
քառատրոփ եկան ու երկու հետևակայինների նիզակահար արե-
ցին։ Կայսրը առաջինը տեսնելով նրանց, զինվորներին ոտքի
հանեց նրանց հետապնդելու։ Բայց արաբները իրենց արագա-
վազ ձիերով փրկվեցին ճամբարում։ Այնտեղից էլ վեր կենալով,
գնացին ուղիղ դեպի Արտախ, որը գտնվում էր իրենց զորավա-
րին քշած արաբների ձեռքում։ Բայց դրա պահապանները դարձ-
յալ փախուստի դիմեցին, որով կայսրը վերագրավեց սեփական
ավանը, որտեղ կայազոր հաստատելով և թողնելով բավարար
պարեն, ամեն ինչ կարգավորեց իրադրության համեմատ։ Հռո-
մայեցիները հենց այս կայսեր օրոք սկսեցին թշնամիներին դի-
մադրություն ցուցաբերել, արիություն հանդես բերել, հավաքվել
դիմադրելու համար, իսկ մի փոքր անց թագավորող կայսրերը
իրենց ցույց տալուց ու զորքեր կուտակելուց բացի, ոչ մի տեղ
հանդուգն մարտ չտվեցին, որից որոշ է, որ ընդհանրապես
ասած, ամեն ինչում հաջողության գրավականը հենց վեհապետն է։
Կայսրն այնտեղից չկարողացավ Անտիոք գնալ, քանզի սովից ու
բազում պատահարներից արդեն կոտորվել էր, և դաշտերի վրա-
յով ու մի քանի դժվարանցանելի կիրճերի միջով հասնում է
Կիլիկիայի Ալեքսանդրոս[696] կոչվող քաղաքը և այնտեղ բանա-
կում, ապա Տավրոս լեռան վրայով ամբողջ զորքով մուտք է
գործում հռոմայեցիների երկիրը։ Նրանք անսպասելիորեն եղան
ցուրտ վայրերում և եկած լինելով տոթակեզ ու շոգ տեղերից,
զգացին ջերմաստիճանի զգալի տարբերությունը։ Դրա պատճա-
ռով բազում մարդիկ մեռան և բազում անասուններ սատկե-
ցին։ Պոդանդոս կլեյսուրի Գյուտարիոն կոչվող մի գյուղ դուրս
գալով, կայսրը լսեց Ամորիոն քաղաքում տեղի ունեցած ավա-
րառության և անթիվ անհամար մարդկանց կոտորածի մասին։
[Թշնամու] ճամբարը գտնվում էր Խալկեա կայանում, բայց Մե-
լիտենեի զորահրամանատարը ամենևին չցանկացավ նրա վրա
հարձակվել, այն էլ այն ժամանակ, երբ իր զորքը կենտրոնա-
ցած էր Ծամնդավ քաղաքում։ [Կայսրը] այդ բոլորի վրա շատ
տխրեց, բայց չկարողանալով որևէ օգնություն ցույց տալ, զոր-
քի գործը հնարավորության սահմաններում լավ կարգավորելով,
նրա մեծ մասը ուղարկեց ձմեռելու, իսկ ինքն էլ գնաց Բյուզան-
1070 դիոն, տեղ հասնելով հունվար ամսի վերջերին։

Որոշ ժամանակ մնալով այնտեղ և հնարավորության սահ-
մաններում կարգավորելով քաղաքական գործերը, սենատորնե-

րից ոմանց պատիվների ու ընդունելության արժանացնելով, տա-
րեկան նվերները բաժանելով և չսպասելով անգամ Զատկի տո-
ներին, նավեց քաղաքի դիմաց գտնվող Էրիոն ապարանքը։ Մի
այլ դեպք էլ պատահեց, որն ստիպեց իրեն շտապել արշավանքի
գնալու։ Մի ոմն լատին, անունը Կրիսպինոս, որը կայսեր մոտ
էր ժամանել Իտալիայից, Արևելք ուղարկվեց այնտեղ ձմեռելու։
Իր սպասած փառք ու պատվին չարժանանալով, նա ապստամ-
բություն ծրագրեց և առանց այլևայլի հանդիպած հարկահա-
վաքներին և այլ մարդկանց սկսեց կողոպտել ու թալանել։ Սա-
կայն ոչ մի հռոմայեցու չսպանեց։ Շատերը նրա դեմ մարտի
գնացին, բայց պարտվեցին։ Այդ միջոցին Արմենիակների բա-
նակաթեմում ձմեռող վեստարխ Սամուիլ Ալուսիան բուլղարը,
եղբայրը կայսեր կնոջ, որին կայսրը կնության էր առել դեռ
նախքան գահին տիրանալը, արևմտական հինգ տագմաներով
4—IV Հարության մեծ օրը, այն է Զատկի, ընթացքից Կրիսպինոսի վրա
—1070 է հարձակվում։ Ֆրանկները համախմբվեցին, հռոմայեցիները
փախուստի դիմեցին, նրանցից շատերը սպանվեցին ու անթիվ,
անհամար մարդիկ էլ գերի ընկան։ [Կրիսպինոսը], սակայն, նը-
րանց հանդեպ մարդասիրաբար վարվեց, բոլորին ազատ արձա-
կեց, դեռ ավելին, վիրավորներին ուղարկեց դարմանվելու։
Կայսրը, ժամանելով Դորիլեոն[697], ընդունեց Կրիսպինոսի պատ-
վիրակությունը, որի միջոցով նա խոստովանում էր իր հնազան-
դությունը, պարզում ապստամբություն բարձրացնելու պատճառ-
ները և խնդրում ներում՝ կամա կամ ակամա գործած վատ
արարքների համար։ Կայսրը նրան ընդառաջ գնաց, բոլոր
խնդրածը կատարեց, գնահատելով մարդու քաջությունն ու պա-
տերազմական հմտությունը. ապստամբություն բարձրացրած
միջոցին մեծաթիվ թուրքերի հանդիպելով, մարտում նա մեծ սըխ-
րանքներ էր գործել։ Նա կայսեր դիմավորեց ծառայի պես, բարեկա-
մաբար հետևեց նրան, իր հետ տանելով փոքրաթիվ զինվորնե-
րի. մնացածներին նա թողել էր Արմենիակների [բանակաթե-
մում] մի բարձր բլրի վրա գտնվող և իր կողմից գրավված Մավ-
րոկաստրոն քաղաքում[698]։ Բայց շատ չանցած կասկածվելով իր
ծրագրերին մասնակցություն ունենալուց հրաժարվող ցեղակից-
ների հանդեպ ինչ-որ դաժանություն գործելու մեջ (ֆրանկների
ազգը անհավատ է ու ագահ, դեռ ավելին՝ ապերախտ, չնչին ա-
ռիթով մեծ ոճիրներ գործող՝ խռովություններ ու ապստամբու-
թյուններ բարձրացնող և դրանից հաճույք ստացող), հեռացվեց

բանակից։ Նրան բացեիբաց որևէ մեղադրանք չներկայացվեց, այլ պարզապես երևելի ոմն Նեմիցի[699] ամբաստանության հիման վրա։ Կրիսպինոսի ընկերները կատարվածից դժգոհ, թողնելով բերդը եկան Միջագետք և բնակիչների գլխին բազում փորձանք բերեցին։ Երբ կայսրը, իմանալով, որ Թուրքերի մեծաթիվ բազմություն ավարառում է երկիրը, զորքով եկավ Կեսարիա[700] և նրա մի մասը նրանց դեմ ուղարկեց։ Ոչինչ գլուխ չբերած և ենթադրելով, որ [թշնամին] փախուստի է դիմում, կարգ ու կանոնով շտապեց առաջ, բայց դեռ ոչ մի խրամ չփորած, ոչ էլ վրան խփած, թշնամիներն երևացին՝ վայրերի ամենաամուր տեղերը և բլուրների գագաթները բռնած։ Աղմուկ բարձրացավ, կայսրը դեռ չհանգստացած, մարտի շեփորը հնչեցրեց և փաղանգները դրոշները բարձրացրած շարքով առաջ շարժվեցին։ Հակառակորդներից շատերը դուրս եկան, բայց վրա հասած տագմաները՝ մեկը լիկաոնացիների կոչվածը, մյուսը՝ արևմտյան արիթմոսների, սովորականից ավելի հանդուգն հարձակվեցին և ստիպեցին նրանց անհապաղ փախուստի դիմել. կայսրը [մարտի մտցրեց] նաև մնացած զորքերը և թշնամիների մյուս զինվորներն էլ փախստականների հետ թիկունք դարձրին։ Երբ անցնում էին զինվորները և վարձկան սկյութները, ես նկատի ունեմ ուզերին, թուրքական մի մեծ զորամաս հարձակվեց հռոմայեցիների վրա։ Նրանց ընդդիմակայեցին պահակության համար առանձնացված զինվորները, հատկապես ֆրանկները, որոնք ձեռնամարտի բռնվելով և համառորեն մարտնչելով, փախուստի մատնեցին. այնտեղ կանգնած հռոմեական տագմաներից և ոչ մեկը ֆրանկներին ամենափոքր օգնությունն անգամ ցույց չտվեց։ Այդ միջոցին, երեկոյան մոտ՝ [թշնամուն] հետապնդելուց վերադարձավ և կայսրը. պատերազմը երեկոյան մոտ տեղի ունեցավ։ Հաջորդ օրը կայսրը հրապարակային դատաստան տեսավ թշնամի ռազմագերիների հետ, նրանց մահվան դատապարտեց, նա այլևս ոչ ոքի չխնայեց. նույնիսկ նրանց հրամանատարին, հակառակ, որ նա իր կյանքի համար հսկայական փրկագին էր խոստանում։ Կայսրը բանակատեղիում մնաց երեք օր և ունեցած հաջողությունից կշտացած, հնարավորություն տվեց բազում հակառակորդների փախուստի դիմելու և իրենց հետ տանելու անգամ ավարը։ Նա Մելիտենեից երկու օրվա ճանապարհ հեռավորության վրա բանակեց, մտածեց իր զորքի մի մասը առանձնացնել, թողնել որպես հակառակորդների

դեմ պատվար, իսկ ինքը՝ մնացած ողջ զորքով վերադառնալ արքունիք։ Բայց այդ որոշումն անարի համարվեց, ոչ ձեռնտու, դրա համար փոխելով իր միտքը, շարժվեց դեպի Եփրատ, քանզի թշնամիները նրա ափերին էին վրաններ խփել, բայց իմանալով կայսեր իրենց վրա դիմելու մասին, իսկույն հեռացան։ Կայսրը շարժվեց դեպի Ռոմանուպոլիս[701] և մտադիր լինելով այնտեղից գնալ դեպի Խլաթ[702], մի վայրում բանակեց, իսկ Ֆիլարետոսին[703] (նա Վահրամյանների տոհմից էր) զորավար-ավտոկրատոր նշանակեց։ Կայսրը զորքը երկու մասի բաժանեց, ավելի հզոր մասը տվեց [Ֆիլարետոսին], մի մարդու, որ պարծենում էր իր զորավարական տաղանդով, բայց խայտառակ ու ամոթալի բարքերի տեր էր, վարում էր ամենաանառակ կյանք։ Թեև նա արտակարգ կռվեց թուրքերի դեմ, բայց ամենակարևոր մարտում պարտություն կրեց, որի պատճառով էլ արհամարհվեց, բայց հակառակ դրան նա չփոխեց իր կենցաղավարությունը և լինելով շահամոլ ու փառասեր, ձգտում էր իշխանության։ Իսկ կայսրը գնաց ավելի հյուսիսային շրջանները՝ ձյուն ու սառը աղբյուրներ գտնելու. նա շատ էր շոգում, նրա մարմինը մեծապես դրանց պահանջն էր զգում։ Անցնելով քարքարոտ ու դժվարանցանելի վայրերով, նա հասավ Անթիաս կոչված մի վայր. այն խոտառատ է ու հացառատ, այստեղ եկողներին մեծ բավականություն պատճառող, կարծես երկրի պորտը լինի։ Այնտեղից նա Տավրոս լեռան վրայով, որին տեղացիները Մունզարոս են կոչում[704], հասնում է Կելցենե[705] կոչված երկիրը՝ երկրորդ անգամ անցնելով Եփրատ գետը, որը մոտիկից է հոսում և ջրբաժան է լեռան ու Կելցենեի միջև։ Ֆիլարետոսի մոտ մնացած զինվորները, հակառակորդների հայտնվելուց վեհերոտած ու սրտաճաք եղած, շարժվեցին կայսեր ետևից, լքելով այն վայրերը, որոնց պահպանության համար էին թողնված, և հասան վերոհիշյալ Անթիաս վայրը։ Այստեղ, երբ թշնամիներն երևացին վերջապահ զինվորներին, նրանք առանց մարտ տալու, խայտառակ կերպով փախուստի դիմեցին և ոտքով հասան Կելցենեում գտնվող կայսեր։ Հակառակորդները տիրացան սրանց հանդերձանքին։ Երբ այդ բոլորի մասին հայտնեցին կայսեր, նա մեծ իրարանցման մեջ ընկավ, մեծապես տխրեց և՛ իր զինվորների կրած պարտության, և՛ հակառակորդների ձեռք բերած հաղթանակի առթիվ։ Եվ եթե չլիներ նրանց սարսափեցնող և մասամբ սթափեցնող կայսեր համբավը, առանց որևէ խոչընդոտի կավարա-

ռերին և հիմնովին կավերեին այդ շրջանը։ Նահանջելով նրանք ուղիղ, ըստ իրենց սովորության, մեծ թափով կապադովկացիների բանակաթեմի վրա արշավեցին[706], երբից հանդիպածը ավարառեցին, ապա ամբողջ բանակով գրոհեցին մարդաշատ ու բազմատուն, պիտանի ու ցանկալի ամեն ինչով հարուստ Իկոնիոն քաղաքի վրա։ Կայսրը Կելցեններում ընդունեց փախուստի դիմած ու ցիր ու ցան եղած զինվորներին և որպեսզի նրանք հանկարծ մենակ մնալով հայերի զոհը չդառնան[707], շրջվեց ու շարժվեց հակառակորդների ետևից։ Վեհապետի և նրա [հրամանատարների] խորհրդակցությունը ոչ մի արդյունք չունեցավ, միայն մեկ բան պարզ դարձավ, որ կայսրից բացի հռոմայեցիներից ոչ ոք պատերազմի մասին չի մտածում, քանզի զորքի մեծ մասը արդեն շարքից դուրս էր եկել, իսկ հրամանատարներն էլ ջանք էին թափում մի փոքր ու պատահական հաջողության դիմաց իրենց և իրենց ազգականների համար ամենաբարձրագույն աստիճաններն ու պատիվները կորզել, որի պատճառով էլ մյուսները ոչ մի ցանկություն չէին ցուցաբերում սխրալի, տղամարդուն վայել որևէ արարք գործել։ Բայց քանի որ ներկա էր կայսրը, նման բան չէր էլ լինի, քանզի ինքն անձամբ էր տնօրինում ամեն ինչ, հանապազ հետևում իրերին և հատուցում մարդկանց ըստ իրենց գործադրած ջանքերի։ Կայսրը զորքով Կոլոնիայի և Արմենիական բանակաթեմերի[708] վրայով հասավ Սեբաստիա։ Այստեղ իմանալով, որ թուրքերը Պիսիդիայի և Լիկաոնիայի վրա արշավելով ծրագրում են [գրավել] Իկոնիոնը, հետապնդեց նրանց՝ մինչև Հերակլեսի կոչված գյուղաքաղաքը[709], որտեղ իմացավ, որ թուրքերը արդեն ավերակ են դարձրել Իկոնիոնը և, վախենալով իր հետապնդումից, թողել հեռացել են։ Դրա վրա կայսրը տագմաներից մի զորամաս Կիլիկիա ուղարկեց՝ միանալու Անտիոքի դուքս Խաչատուրին[710], մի քաջարի մարդու, որ դեռ անցյալում ցույց էր տվել իր բազում աչքի ընկնող առաքինությունները, հրաման տալով նրան փութանակի Մոպսուեստիայում ընդդիմակայել [հակառակորդին], քանզի սպասվում էր, որ թուրքերն այնտեղից պետք է անցնեն, այնտեղ սպասել նրանց և ամեն գնով ջարդ տալ։ Նրանք Սելևկիայի լեռների վրայով անցնելով, Տարսոնի դաշտում ջարդ կերան, հենց այդտեղ պատահմամբ հայերին հանդիպելով[711], գրեթե ողջ ավարը կորցրին։ Թշնամիները իմանալով հռոմայեցիների Մոպ-

*սուեստիայում բանակելու մասին, առանց ժամանակ կորցնե-*
*լու, ինչքան հնարավոր էր հանգստանալով Վալտոլիվադիում,*
*գիշերով ճանապարհ ընկան և անցնելով Սարվանդիկոն լեռը*[712]*,*
*ինչպես և շուտափույթ Հալեպի սահմանները, մի կերպ վտանգից*
*պրծան։ Մոպսուեստիայում գտնվող զորքի անգործությունը տրխ-*
*րեցրեց կայսեր, նա ուղիղ գնաց Սելևկիայի Կլավդիուպոլիսը և*
*իմանալով նրանց փախուստի մասին, հույսը կտրած, Բյուզան-*
*դիոն վերադառնալու ճանապարհը բռնեց։ Նա շտապում էր, աշու-*
1070 *նը արդեն վրա էր հասել, ետևում թողնելով զորքեր, քանզի ա-*
*վազակախմբերի ու հրոսակների բաժանված ուրիշ թուրքեր էլ*
*ավարառում էին հռոմեական երկիրը, գողերի ու ավազակների*
*նման ասպատակում, հանդիպածը ավերում ու թալանում։ Այդ*
*իսկ պատճառով դժվար էր նրանց արգելք կանգնելը՝ նրանք*
*դարան էին դրել բոլոր ճանապարհներին, հռոմեական զորքե-*
*րը մեկուսացած վիճակում էին և չէին կարող նրանց դիմադրել,*
*իսկ կայսրն էլ չէր կարող մի քանի կտոր լինել, նա մի տեղում*
*միայն կարող էր հայտնվել։ Երբ նա մայրաքաղաք մտավ, մնա-*
*ցած զորքն էլ տուն վերադարձավ։ 6578 թ. էր, ինդիկտիոնի ու-*
*թերորդ տարին, երբ Վլախերնայի մեծագույն տաճարը հրդեհվեց*
*և հիմնահատակ կործանվեց։*
1071 *Գարնան սկզբին կայսրը որոշեց մայրաքաղաքում մնալ։ Ա-*
*ռաջ քաշելով պրոտոպրոեդրոս Մանուիլ Կոմնենոսին, նրան կու-*
*րապաղատի աստիճան շնորհեց և նշանակեց զորավար ու սպա-*
*րապետ։ Ահա սրանից հետո է, որ սկսեցին հռոմայեցիների կայ-*
*սրրության գլխին թափվել փորձանքները, դժվարություններն ու*
*դառնությունները։ Սպարապետը թեև երիտասարդ էր, այդու-*
*հանդերձ ոչ մի սխալ ու մանկամիտ բան չարեց, ընդհակառակը,*
*անում էր, ինչ պետք էր. հավաքելով զորքերը նա ամբողջ զինա-*
*կան ուժով հաստատվեց Կեսարիայում, հոգ տանելով ոչ միայն*
*օրինականության մասին, այլև անհրաժեշտ չափով նաև զորքի,*
*պատժում էր զանցագործ զինվորներին։ Մի քանի մարտերում*
*նա հաղթող էլ եղավ և ջանաց իր բարի հռչակը է՛լ ավելի ծա-*
*վալել ու մեծացնել։ Ինքնակալը, իմանալով այդ մասին, թեև*
*արտաքուստ ցույց էր տալիս, որ գոհ է, բայց թաքուն նախան-*
*ձում էր։ Իբրև թե Հիերապոլսի պաշարումը վերացնելու և [քա-*
*ղաքը] պարենով ապահովելու նպատակով, նա բանակից մի մեծ*
*զորամաս առանձնացրեց և կարգադրեց Ասորիքի դեմ գնալ, ո-*
*րով զորավարին զրկեց այդ ուժից։ Երբ զորավարը մնացած*

զինական ուժով եկավ Սեբաստիա ու բանակեց քաղաքի շուրջ, վրա հասավ Թուրքական մի մեծաթիվ [զորք]։ Կուրապաղատը նրանց դեմ դուրս եկավ։ Թշնամիները պայմանավորված ազդանշանով փախուստ ձևացրին և երբ հռոմայեցիները ցրիվ եկած իրենց էին հետապնդում, նրանք հանկարծակի շուռ եկան և պարտվածի փոխարեն հաղթող դարձան։ Հռոմայեցիներից շատերը դերի ընկան, մեծ մասը սրի քաշվեց։ Ի միջի այլոց գերի ընկավ նաև հենց ինքը կուրապաղատը[713], ճամբարում եղողները փախուստի դիմեցին, իսկ ճամբարն էլ հափշտակվեց ու թալանվեց։ Եվ եթե կողքին չլիներ քաղաքը, որտեղ ապաստանելով շատերը փրկվեցին, ապա հիշյալ արշավանքին մասնակցած հռոմեական ողջ զորքը վտանգի էր ենթարկվելու։ Երբ այդ բանի լուրը հասավ կայսեր, նա մեծ տրտմության մեջ ընկավ։ Այդ պատուհասի բոթը դեռ չտարածված, շատ ավելի սարսափելին ու ազդուն հասավ. թե թուրքերը զենքի ուժով խուժել են Խոնե[714] քաղաքի, իր հրաշագործությամբ ու հարստությամբ հռչակավոր Հրեշտակապետի տաճարը, որ ամեն ինչ ողողվել է սպանվածների դիակներով ու արյան ճապաղիքով, որ ամենասուրբ տաճարը սրբապղծվել է [թուրքերի] կողմից՝ վերածվել ախոռի։ Բայց ամենասարսափելին այն էր, որ ծերպերն էլ չկարողացան այդտեղ ապաստանածներին պաշտպանել և վտանգից փրկել։ Ծերպերի կողքով հոսող գետերը թափվում են մի փոսի մեջ։ Նրանց հոսանքը հնում այստեղ այցելած Հրեշտակապետի հրաշքով կարծես կանգնած է, հոսում է սահուն։ Բայց այս անգամ աննախադեպ մի բան պատահեց, ջուրը հորդացավ, ծովացավ, ժխորով իր մեջ քաշեց, ողողեց ու ջրատակ արեց բոլոր ապաստանածներին։ Երբ այդ մասին պատմեցին, մենք մեծ մտորումների մեջ ընկանք, մտածելով, որ տեղի ունեցածը աստվածային նշան է, աստծո ցասման ու բարկության հետևանք, որ մեր դեմ մաքառում են ոչ միայն թշնամիները, այլև բնության տարրերը։ Սրանից առաջ այլազգիների այսքան մեծ ուժն ու փքվածությունը, հռոմեական հպատակների կոտորածը համարվում էր Իբերիայում, Միջագետքում, մինչև Լիկանդոս ու Մելիտենե և կից Հայաստանում ապրող հերետիկոս բնակիչների[715], Նեստորի հրեադավան և Ակեֆալների[716] հերձվածը պաշտողների դեմ ուղղված աստծո ցասման հետևանք, քանզի այդ շրջանները վխտում են նման չարափառությամբ։ Բայց երբ փորձանքն սկսեց թափվել նաև ուղղափառների գլխին, բոլոր հունադավաններն ընկան տա-

րակուսանքի մեջ, նրանք ենթադրում էին ու հավատացած, որ Ամովրացիների[717] նման իրենց էլ գործած [մեղքերի] բաժակը լցվել է, որ ուղղափառ հավատքը դավանելը դեռ բավական չէ, անհրաժեշտ է նաև այդ հավատքին չհակասող ապրելակերպ։ Այդ պատճառով երկուսն էլ, այսինքն և հավատքի հարցում սըխալվողը, և կյանքում կաղացողն ու թերացողը, նույն պատժին են արժանանում։ Իսկ արարողն ու վարդապետողը ներբողվում ու փառավորվում։ Կայսրը, լսելով այդ մասին, անհապաղ արշավելու և իր երկրին սատար կանգնելու պատրաստակամություն ցուցաբերեց, բայց հակառակորդի քանակը չիմանալու պատճառով, ինչպես և խորհրդականների հորդորով, հրաժարվեց։ Նրանք էին. Նիկեփոր Պալեոլոգոսը, գերապատիվ, փիլիսոփաների հյուպատոս Կոստանդին Պսելլոսը[718] և ի վերա ամենայնի կեսար [Հովհաննեսը], նախորդ կայսեր եղբայրը։ Եթե նրանց մնար, ապա կհամոզեին չասլրել անգամ։ [Կայսեր] շատ աչքի ընկնելը իրենց համար անտանելի էր, նրանք շատ էին ատում նրան, քանզի նա քաջ էր ու հանդուգն, իր ափի մեջ էր առել ախոյաններին, ես նկատի ունեմ Դուկասի զավակներին։ Բայց չէին էլ համարձակվում բացահայտ կերպով նրան վնասաբեր խորհուրդ տալ։ Մի քանի օր անց ժամանեց և Մանուիլ կուրապաղատը, հետը բերելով իրեն բռնող թուրքին[719], որը կամովին նախընտրել էր կայսեր ծառայել. սուլթանը թշնամաբար էր տրամադրված իր նկատմամբ՝ ինչ-որ զանցանքի մեջ էր մեղադրում և նրա դեմ զորահրամանատարի գլխավորությամբ զորք էր ուղարկել բոլոր միջոցներով նրան բռնելու։ Ահա դրանից սարսափած թուրքը ապաստանեց կայսեր մոտ և իսկույն պրոեդրոսի աստիճանին արժանացավ։ Նա երիտասարդ էր, գաճաճ հասակով, սկյութական տգեղ դեմքով։ Կայսրը հույս ուներ, որ իր առաջիկա արշավանքի ժամանակ նա իրեն կհամագործակցի ընդդեմ թուրքերի։

1071 Կայսրը զորահավաք անելով, գարնան սկզբին նավեց Էրիոն ապարանքը, ուր հասավ հենց Ուղղափառության [տոնի] օրը[720]. նախորդ օրը նա զորքին ու սենատին բաժանել էր նրանց տարեկան ռոճիկը, բայց ոչ ամբողջությամբ ոսկով, պակասող մասը նա համալրեց մետաքսե գործվածքներով։ Նավելիս ոչ սպիտակ, ավելի սև գույնի մի աղավնի ինչ-որ տեղից թռչելով ճախրում էր կայսեր տրիերայի շուրջ մինչև որ իջավ ու կանգնեց նրա ձեռքերին։ Կայսրը աղավնուն կայսրուհուն ուղարկեց,

որ հակառակ սովորության պալատում էր մնացել՝ կանացի ինչ-որ թուլության, կամ նազուտուզի պատճառով։ Աղավնին չարագուշակ համարվեց և՛ ուղարկողի, և՛ ստացողի համար։ Կայսրուհին, որի թուլությունը շինծու էր, զղջացած գնաց կայսեր մոտ նրան բարի ճանապարհ մաղթելու և ճանապարհելու։ Կայսրը այնտեղից դուրս գալով, խարիսխ գցեց ո՛չ Նեակոմեում, ո՛չ էլ ինչ-որ կոնսուլար կամ կայսերական վայրերում, այլ Հելենուպոլսում, որին տեղացիները ռամկորեն էլեյնուպոլիս[721] են անվանում։ Սա էլ վատ նշան համարվեց։ Մի ուրիշ բան էլ պատահեց. կայսերական վրանը պահող հսկա գերանը ջարդվեց և վրանը հանկարծակի գետին տապալվեց։ Բայց մարդկանց տրխմարությունն ու վատությունը թույլ չտվեցին, որ այդ նշանների մեջ տեսնեն իրենց ծայրահեղ անհավատությունը, նրանց թվում էր, թե ջերմեռանդ են հավատքի հարցերում, ճակատագիրն էր ամենուր խոշրնդոտ կանգնում, թույլ չէր տալիս կռահել անգամ, թե ինչ օրի են ընկնելու։ Կայսրը շարժվեց առաջ, դեպի արևելք և հասավ Անատոլիկոն նահանգը, բոլորի հանդեպ ցուցաբերելով անտեղի ժլատություն։ Նկատելով, որ անդադրում նախանշաններն իրեն են վերաբերում, նա տեղավորվեց ո՛չ վրանում, ո՛չ էլ բաց դաշտում, այլ բլուրների վրա և տնակներում։ Բայց այնտեղ էլ պակաս վատ նշաններ չեղան։ Չգիտես ինչպես այն տների մեջ, որտեղ կայսրը ապավինեց, հրդեհ բռնկվեց ու ավերակ դարձրեց. նրանց հետ կրակի զոհ դարձան նաև այնտեղ գտնվող ձիերը, կայսերական էֆեստրիսները[722], արտասովոր սանձերը։ Բոլորը կարճ ժամանակում հրո ճարակ դարձան։ Բանակած զինվորները ականատես եղան կիսակեզ եղած ձիերի սարսափելի տեսարանին։ Ցումպոս կոչվող կամրջի վրայով անցնելով Սանգարիոս գետը, որի մոտիկ վայրում տեղի ունեցավ վերոհիշյալ դեպքը, կայսրը սկսեց հավաքել թշնամիների հարձակման պատճառով ցիրուցան եղած իր զորքերը։ Նրանցից ընտրելով ինչքան որ ցանկացավ, մնացածներին՝ զինվորներին ու լոխագոսներին ճամփու դրեց, զինվորներին որպես անցյալում կրած պարտություններից ջախջախված, իսկ լոխագոսներին էլ, որովհետև վախենում էր նրանց իր հետ տանել, որպես ախոյանների[723] կողմնակիցների։ Երանի թե այդ բանը բոլորի նկատմամբ կատարվեր։ Ճիշտ է, անհնարին է փախչել ասածո սահմանածից, խուսափել պատրաստված բաժակից, բայց այնուամենայնիվ նա ճիշտ արած կլիներ։ Թեև Նիկեփոր Բոտանիատե-

սին[724] և մի քանի նրա նմանների, որպես կասկածելիների, հեռացրեց, բայց նենգությամբ ու վատաբարոյությամբ լի մարդկանց իր հետ տարավ, սրանց մասին դեռ ասվելու է։ Իսկ նա, իր գլխին գալիք փորձանքին անտեղյակ, այդպես շարժվեց առաջ, զորքն անցկացրեց Ալիս կոչված գետը, իսկ ինքը մնաց ու օթևանեց իր կողմից կառուցված մի նորաշեն բերդում։ Այնուհետև ինքն էլ անցավ բաժանող գետը և մյուս զինվորների հետ դասավորվեց սեփական տիրույթներում։ Անցնելով կեսարացվոց [քաղաքը], նա հասավ Պաղ Աղբյուր[725] կոչվող վայրը, որը զորք ընդունելու համար շատ հարմար էր, այնտեղ առատորեն կային ամեն տեսակի մթերքներ և իր բազմազան կարողությունների շնորհիվ հայտնի է և՛ որպես քաղաքագյուղ, և՛ գյուղաքաղաք։ Զինվորները թալանում ու ավերում էին շրջանը, որի համար ավելի անողոքաբար պատժեցին նեմիցների տագմայից ոմանց։ Դրանից վրդովված, նրանք խռովություն բարձրացրին։ Երբ այդ բանն իմացվեց, կայսրը ձի նստեց և զորք հավաքելով, օտարերկրացիներին ճնշեց ու վերստին դաշնակից դարձրեց։ Նրանց կրած միակ պատիժն այն էր, որ նրանց, ովքեր մինչ այդ իրեն մոտիկ էին կանգնած և թիկնապահների թվում, այժմ [զորաշարքում] ամենից վերջում կանգնեցրեց։ Այնտեղից նա շտապելով Իբերիա հասնել, գնաց Սեբաստիա, որտեղ ականատես եղավ կուրապաղատ Մանուիլ Կոմնենոսի ընկած զինվորների դիակներին։ Այնտեղից ոտքով, առանց շտապելու նա հասավ Թեոդոսուպոլիս[726], որն անցյալում երեսի վրա էր թողնված, բայց այն ժամանակվանից, երբ պաշարման ենթարկվեց Արծնը, վերակառուցվել էր ու ամրացվել։ Այստեղ կայսրը նկատի ունենալով, որ գնալու են անմարդաբնակ ու ավերակ դարձած երկրի միջով, կարգադրեց վերցնել յուրաքանչյուր զինվորի համար երկու ամսվա պարեն։ Երբ բոլորը կատարեցին կարգադրությունը, վարձկան ուզերին ու ֆրանկներին քաջ ու պատերազմող Ռուսելիոսի[727] գլխավորությամբ նա ուղարկեց դեպի Խլաթ՝ անասունների համար կեր հայթայթելու։ Այդ բանր նա դրանից առաջ էլ էր արել։ Կայսրը նրա ետևից գնալով, հասավ Մանծկերտ[728], հռոմեական մի քաղաք, որը, սակայն, նախապես գրավվել էր սուլթանի կողմից[729], այնտեղ թուրքեր էին հաստատվել[730]։ [Կայսրը] արհամարհեց նրանց՝ վերջիններիս փոքրաթվությունը նկատի ունենալով, և բանակից մի ուրիշ, բավականին մեծ զորամաս առանձնացնելով, հանձնեց մա-

դիստրոս Հովսեփ Տարխանիոտեսին, ինչպես և զգալի քանակությամբ հետևակայինների մի զորաբաժին և հեծյալների լավագույն ու մարտունակ մասը, որ պատերազմներում միշտ առաջինն էր իրեն կրակի մեջ գցում ու առաջամարտիկ լինում։ Տարխանիոտեսը ելավ գնաց Խլաթ[731]՝ ուզերին, ֆրանկներին և ողջ վարձկան զորքին օգնության, քանզի կայսրը լսել էր, որ նրանց դեմ [թուրքերի] բյուրավոր զորք է շարժվում։ Կայսրը զորքը մաս-մաս արեց, հուսալով շտապ Մանծկերտ հասնել (ինչ որ եղավ), և օգնել Խլաթում գտնվողներին, եթե անհրաժեշտություն զգացվի, անհապաղ նրանց կանչել (զորքերը մոտիկ տեղում էին վրաններ խփել), քանզի լսել էր, որ սուլթանը շտապում է իր դեմ։ Թեև զորքի մասնատումը անխոհեմ քայլ չէր, ռազմագիտական առումով էլ ոչ անիմաստ[732], բայց ճակատագիրը, ավելի ճիշտ՝ աստծո ցասումը, կամ էլ մեզ համար անիմանալի ինչ-որ պատճառ հակառակ արդյունքի բերեց և՛ գործի ելքի առումով, և՛ զորքերի անհապաղ միացման հարցում, և այն բանում, որ նրան թուրքերի սուլթան կարգեց և արդյունքը հանդիսացավ, որ իրականություն դառնա այն, ինչ ակընկալվում էր։ Կայսրը առավ Մանծկերտը[733]. թուրքերն ապշել ու սարսափել էին նրա գալստյան առթիվ։ Նրանք երաշխիքներ խնդրեցին և ստանալով [տվեցին քաղաքը][734]։ Այստեղ մի հռոմայեցու քիթը կտրեցին այն պատճառով, որ նա թուրքի քուռակ էր խլել, իսկ կայսրը ուզեց իր տված երդման տեր կանգնած լինել (նա երդվել էր աստվածածնի և Քրիստոսի անվամբ, բոլոր սրբերի միջնորդությամբ)։ Այն միջոցին, երբ կայսրն այստեղ զորքը շարք էր կանգնեցնում, թուրքական մի մեծաթիվ զորամաս հարձակվեց ավարի գուրս եկած հռոմայեցի զինվորների վրա։ Կայսրը ենթադրելով, որ [զինական] ուժով սուլթանի ինչ-որ հրամանատար է հասել և նեղում է դեսուդեն ցրված կայսերական զինվորներին, նրանց դեմ բավարար զորքով մագիստրոս Նիկեփոր Բրիեննիոսին ուղարկեց, որը բախվելով նրանց, թեև տեղի չտվեց, բայց իր զինվորներից շատերը վիրավորվեցին, դրանցից ոչ պակասն էլ սպանվեց։ Այս [թուրքերը] մեր իմացածներից ավելի հզոր երևացին, սրանք ավելի հանդուգն էին բախվում՝ մոտիկ մարտ մղելու զենքերով։ Ահա սարսափահար եղած Բրիեննիոսը կայսրից օգնություն էր խնդրում։ Կայսրը պարսավեց նրան վախկոտության համար (իրականությանը նա տեղյակ չէր) և ժողով գումարելով ճառախոսեց պատերազմի



559—21

*շուրջ, ի միջի այլոց, ավելի խիստ խոսքեր էլ ասաց։ Այդ միջոցին քահանան էլ արտասանեց ավետարանի ընթերցվածը։ Մանրամասնությունները մի կողմ թողած, ավետարանում հետևյալն էր ասված. «Եթէ զիս հալածեցին, ապա և զձեզ հալածեսցեն. եթէ զբանն իմ պահեցին, ապա և զձերն պահեսցեն» մինչև «համարիցի պաշտօն մատուցանել Աստուծոյ» խոսքը։ Ավելի խոհեմները հենց սրա վրա կանգ առնելով, գտան, որ դա ճշմարիտ է և աստվածահաճո։ Մարտի թեժ պահին կայսրը ուղարկեց նաև Թեոդոսուպոլսի դուքս մագիստրոս Նիկեփոր Վասիլակին, բնիկ զորքերով[735]։ Բրիեննիոսը օգնություն ստանալուց հետո որոշ ժամանակ կռիվը հեռամարտության բնույթ էր կրում և հավասար էր, իսկ ելքը՝ անորոշ։ Երբ զինվորները համաձայնվեցին զորավարների ետևից գնալ, նա խոստացավ նախամարտիկ լինել և սկսեց հետապնդել փախուստի դիմող հակառակորդներին։ Երբ Բրիեննիոսը իր զինվորներին հրաման տվեց քաշել սանձերը, Վասիլակը այդ բանին անտեղյակ, շարունակում էր միայնակ հալածել։ Երբ նա մոտեցավ հակառակորդների խարաքսին, ձին գետին տապալվեց իր հետ գլորելով նաև ծանր զենքեր կրող [Վասիլակին]։ Թշնամիները վրան թափվեցին, գերի վերցրին և կապելով սուլթանի մոտ տարան[736]։ Նա նրան ներկայացավ ո՛չ որպես արդեն ստրուկ դարձած, ո՛չ էլ որպես ռազմագերի տարված։ Նա սուլթանին հնազանդություն հայտնեց, սուլթանն էլ իր հերթին նրան չվերաբերվեց ինչպես ստրկի կամ ռազմագերու, այլ շարունակ իր մոտ կանչելով, կայսեր մասին հարցեր էր տալիս, ցուցադրում սեփական հզորությունը և ահ ու սարսափ սփռում։ Վասիլակը թեև դրվատում էր ու գովաբանում նրա ամեն ինչը, բայց խորհուրդ չէր տալիս հռոմայեցիների կայսեր դեմ մարտի դուրս գալ, համարելով դա ոչ ձեռնտու։ [Վասիլակի] մասին ահա այսքան։ Իսկ կայսրն ստիպված մնացած զորքով դուրս եկավ անձամբ տեսնելու տեղի ունեցածը։ Նա մինչև երեկո ինչ-որ բլուրների վրա կանգնած մնաց, և տեսնելով, որ ընդդիմակայող չկա, վերադարձավ ճամբարը։ Թուրքերն իսկույն խուժեցին և նետաձգությամբ, ձիերով թևանցումներ կատարելով, [հռոմայեցիների] բանակը մեծապես ահաբեկեցին, եռանդ թափեցին մուտք գործել խարաքսի մեջ։ Այս բոլորը տեղի էր ունենում անլուսին գիշերը և հնարավոր չէր զանազանել օտարին ծանոթից, փախուստի դիմողներին՝ հալածողներից։ Թուրքերն ամբողջ գիշեր հռոմայեցիների*

ճամբարը պատեցին խառնափնթոր հաչոցներով, այնպես որ բոլորն էլ ստիպված եղան արթուն մնալ ու աչք չփակել։ Առավոտյան ուզական մի զորամաս, որի հրամանատարն էր Թոռնիկ Կոտերղին ստորադաս Տամես անունով մի սկյութ, հակառակորդների կողմն անցավ[737]։ Դա սարսափի մեջ գցեց հռոմայեցիներին, քանզի նրանք կասկածեցին, որ մնացած այլազգիներն էլ թշնամաբար են տրամադրված։ Հետևակայիններից ոմանք դուրս գալով նետ ու աղեղով և մոտիկից մարտնչելու զենքերով թուրքերից շատերին սպանեցին և ստիպեցին հեռանալ ճամբարից։ Կայսրը խլաթ սուրհանդակներ ուղարկեց և այնտեղի հրամանատարներին կանչեց ժամանեն իրենց ուժերով։ Նա ցանկանում էր հենց այստեղ՝ ճակատամարտում վճռել հարցը։ Նրանց օգնությանն սպասելով (Նրանք պատերազմի փորձ ունեցող ռազմիկներ էին) նա իզուր ժամավաճառ էր լինում։ Երբ նրանցից օգնություն սաանալու հույսը կտրեց, ենթադրելով, որ ինչ-որ բան խոչընդոտում է դրան, որոշեց իր առկա ուժերով մահու և կենաց ճակատամարտ տալ[738]։ [Կայսրը] տեղյակ չէր, որ Տարխանիոտեսը, իմանալով սուլթանի ժամանման և նրա՝ կայսեր դեմ շարժվելու մասին, իր ողջ զորքերը վերցնելով, Միջագետքի վրայով հռոմայեցիների երկիրն է մտել, համոզել [նույն բանն անել] նաև կայսեր միանալու ցանկություն ունեցող Ռուսելիոսին. կայսեր և ոչ մի հրամանը այդ խայտառակը բանի տեղ չդրեց։ Կայսրն իր վճռի համաձայն վաղվա ճակատամարտի համար պատրաստություն տեսավ, դեռևս գտնվելով կայսերական վրանում, [ճակատամարտի] մասին կարգադրություններ արեց։ Նա իր մոտ ծառայող սկյութներին, այն է՝ ուզերին, իրենց կրոնին հատուկ երդումներով երդվեցնելով, նրանցից սպասված վտանգից ձերբազատվեց[739] և նրանց [հավատարմությունն] ապահովեց։ Այդ ընթացքում, երբ զինվորները զենքերն առած ձի էին նստում ու շարվում ըստ տաքսիսների ու լոխոսների, սուլթանի դեսպանները ժամանեցին՝ երկու կողմերի միջև խաղաղություն հաստատելու կոչով[740]։ Կայսրն ընդունեց նրանց ոչ շատ մարդասիրաբար, թեև դիմեց այն խոսքերով, ինչ ընդունված է ասել դեսպաններին։ Նա հավանություն տվեց [սուլթանի կոչին], դեսպաններին մի խաչ տվեց, որպեսզի հռոմայեցիներին այն ցույց տալով, անվտանգ վերադառնան իր՝ կայսեր մոտ, բերելով սուլթանի պատասխանը։ Կայսրը սուլթանի անսպասելի առաջարկն ստանալով, փքվեց, նրանից արդեն պահանջում

*էր հեռանալ իր ճամբարից. ավելի հեռու տեղում բանակել, իսկ կայսրը իր խարաքսը հաստատի այն տեղում, որտեղ նախապես սուլթանն էր բանակել, որից հետո նա համաձայնվում էր նրա հետ բանակցություններ վարել։ Բայց հակառակորդների նկատմամբ ցուցաբերած իր մեծամտությամբ, ինչպես ասում են այդ հարցերում գիտակ մարդիկ, նա ձեռքից բաց թողեց հաղթանակը, քանզի [սուլթանին] ուղարկեց ամենահաղթ խաչի նշանը։ Դեռ հարցը չլուծված և դեսպանները չվերադարձած, կայսեր ամենամտերիմ մարդիկ նրան խորհուրդ տվեցին ձեռք քաշել խաղաղությունից՝ որպես անիրական ու ավելի մոլորության մեջ գցող, քան օգուտ բերող։ Նրանք կասկածում էին, որ սուլթանը, ըստ երևույթին բավարար զորքեր չունի և սպասելով օժանդակ ուժերի, ժամանակ է ուզում շահել՝ խաղաղության պատրվակի տակ։ Երբ դեսպանները վերադարձան իրենց տեղը և սուլթանի մարդիկ խորհրդակցում էին խաղաղության շուրջը, ամբողջությամբ այդ հարցով էին կլանված, կայսրը առանց պատերազմ հայտարարելու, պատերազմական փողերը հնչեցրեց և անսպասելիորեն մարտ տվեց։ Այդ լուրը ապշեցրեց հակառակորդներին, որոնք էլ իրենց հերթին զինվելով, անմարտունակ ամբոխը ետ ուղարկեցին, իրենք էլ նրանց ետևից՝ կազմակերպված ռազմաշարքի տպավորություն ստեղծելով։ Բայց իրականում նրանք փախուստի էին դիմում՝ տեսնելով հռոմեական փաղանգների կարգն ու կանոնը, ռազմական հոյակապ զորաշարքերը։ [Թուրքերն ահա] նահանջի ճամփան բռնեցին, իսկ կայսրն ամբողջ զորքով սկսեց նրանց հետապնդել, մինչև վրա հասավ ուշ երեկոն։ Երբ կայսրը տեսավ, որ իր դեմ շարված ու մարտնչող զորք չկա, ապա և գիտենալով, որ իր բանակած տեղում շատ քիչ զինվորներ են մնացել ու սլահապան հետևակայիններ, ինքն էլ բավարար քանակությամբ զորք չուներ, որ ճամբարում թողներ, տագմաներն արդեն նոսրացել էին, որոշեց այլևս չշարունակել հետապնդումը, որպեսզի թուրքերը հարձակում չգործեն անպաշտպան մնացած [ճամբարի] վրա։ Բացի այդ, նա մտածում էր, որ եթե ավելի շատ հեռանա, վրա կհասնի գիշերը և այս անգամ թուրքերը կանցնեն հարձակման՝ լինելով հմուտ նետաձիգներ։ Այդ նկատառումներով ահա նա ետ բերել տվեց կայսերական դրոշը, կարգադրելով հիշել վերադարձի մասին։ Առաջ ընկած զինվորների փաղանգները տեսնելով ետ տարվող դրոշները, ենթադրեցին, որ կայսրը պարտություն է կրել։ Բայց ա-*

վելի շուտ իր ախոյաններից մեկը՝ կեսարի որդի Անդրոնիկոսը՝ կայսրերի[741] Հորեղբորորդին, դավադրություն նյութած լինելով, ինքը տարածեց այդ լուրը և իր զինվորներին առնելով, շտապ կարգով վերադարձավ ճամբար։ Մնացածներն էլ նրա օրինակին հետևելով, մեկ առ մեկ առանց մարտի բռնվելու, փախուստի դիմեցին։ Կայսրը այդ տարօրինակ դեպքերին ականատես լինելով, բնական է, հրաման տվեց իր զինվորներին կանգնել, բայց իրեն լսող չկար։ Բլրի վրա կանգնած հակառակորդները, հանկարծ տեսնելով արտասովոր դեպքը, հռոմայեցիների գլխին եկած անսպասելի փորձանքը, իրենց տեսածը շուտափույթ հաղորդում են սուլթանին և շտապեցնում նրան վերադառնալ. Նա ևս փախուստի էր դիմել և սեփական բանակատեղից հեռու էր
19—VIII գտնվում։ Նա իսկույն վերադարձավ և կայսրը ճակատամարտի
—1071 բռնվեց։ Նա կոչ արեց իր զինվորներին չընկրկել, թուլամորթություն հանդես չբերել, իսկական տղամարդու պես կռվել։ Նա Երկար քաջաբար մարտնչեց։ Այդ ընթացքում ուրիշներն էլ փախան, ողողեցին խարաքսից դուրս ընկած տարածությունը. ոչ մի խելքը գլխին բան չէր լսվում, ամեն մեկը մի բան էր ասում, ոմանք պարտության մասին էին խոսում, ուրիշները՝ հաղթանակի, անկապ ու խառնափնթոր բաներ պատմում, մինչև որ կապադովկացիներից էլ ոմանք սկսեցին այստեղ վերադառնալ իրենց խմբերով ու ջոկատներով։ [Ճամբար] էին վերադառնում նաև կայսերական ձիապաններից շատերը՝ ձիերով հանդերձ, պատճառաբանելով, թե կայսեր չեն տեսել։ Կարծես երկրաշարժ լիներ, աննկարագրելի ողբ ու սարսափ, թուրքերն էլ ամեն կողմից վրա էին թափվում։ Եվ [հռոմայեցիներից] յուրաքանչյուրն իր կարողության չափ սեփական անձի փրկության մասին էր մտածում։ Հակառակորդները, հետապնդելով նրանց, ոմանց կոտորում էին, ոմանց՝ գերեվարում, ուրիշներին էլ ոտնատակ անում։ Վիճակը շատ էր եղերական, գերողբալի ու գերկոծելի։ Շրջապատելով կայսեր, թշնամիները նրան հեշտությամբ և իսկույն չբռնեցին. լինելով ռազմական ու պատերազմական գործերին գիտակ, նա համառորեն երկար մարտնչեց, քաջաբար պաշտպանվեց, շատերին սպանեց, բայց վերջիվերջո ձեռքին թրի հարված ստացավ, բացի այդ ձին էլ նիզակահար էր եղել և նա ստիպված հետիոտն էր կռվում։ Նա ուժասպառ եղավ և երեկոյան մոտ արդեն դժվար չէր նրան գերել։ Ավա՜ղ դժբախտություն, հռոմայեցիների հռչակավոր կայսրը գերվեց[742]։ Այդ գի-

շերը նա շատերի նման անարգորեն ու ցավատանջ գետնին պառկած անցկացրեց, կսկծալի բյուրավոր կոհակներով ողողված։ Հաջորդ օրը, երբ սուլթանին հայտնեցին, որ ի միջի այլոց կայսեր էլ են գերի վերցրել, նրան անհատնում ուրախություն ու կասկած պատեց, մտածելով, որ դա իսկապես շատ մեծ, հսկայական բան է, դա այդպես էլ էր, նա չէր հավատում, որ այդքան մեծ ու այդպիսի [հզոր] բանակ պարտության մատնելուց բացի, հենց իրեն կայսրին է գերի վերցրել ու ենթարկել։ Բայց եղելությանը նա մարդկայնորեն վերաբերվեց, հաղթանակով չգոռոզացավ, հաջողության առթիվ նա ավելի շուտ իրեն ճնշված զգաց և բարեհոգություն, բարությամբ լի բարքեր ցույց տված լինելու համար, ամեն ինչ վերադրեց աստծուն, քանզի իր կարողություններից վեր եղող հաղթանակ է ձեռք բերել։ Այդ էր պատճառը, որ երբ հռոմայեցիների կայսրը հասարակ, զինվորական զգեստներ հագած բերվեց սուլթան Արսլանի մոտ, նա չհավատաց և նրա [իսկության] մասին վկայություն էր պահանջում։ Երբ այդ բանը հաստատեցին և՛ դեսպանները, և՛ Վասիլակը, որը կայսեր ոտքերին ընկնելով եղկելիորեն կոծեց, սուլթանը մոլեգնորեն գահից ելավ ու կանգնեց։ Երբ [կայսրին] նրա ոտքերին բերեցին, [սուլթանը], սովորության համաձայն ոտքը դրեց նրա վրա, ապա կանգնեցնելով, նրան ողջագուրեց ու ասաց. «Ո՜վ կայսր, մի՛ վախեցիր, վստահ եղի՛ր, որ մարմնական և ոչ մի վնաս չես կրի, քո բարձր դիրքի համեմատ պատիվների կարժանանաս։ Ես տխմար եմ համարում նրան, ով հաշվի չի նստում բախտի փոփոխականության հետ և չի երկյուղում դրանից»։ Նա կարգադրեց կայսեր համար վրան հատկացնեն, նրան վայել սպասավորություն անեն և այսուհետև իր սեղանակիցն ու համակիցը դարձրեց, նստեցնելով ոչ թե ինչ-որ տեղում, այլ հենց իր գահին կից, ընտրանիի շարքին և այդ ընտրանիին հավասար պատիվների արժանացրեց։ Նա օրը երկու անգամ նրա հետ էր լինում, նրա հետ զրուցում ու մխիթարող խոսքերով սրտապնդում։ Նա ութ օր այդպես զրուցեց նրա հետ ու սեղանակիցը դարձավ, մինչև անգամ հարբած վիճակում մի քանի խոսքով հիշեցրեց իր կարծիքով մի քանի սխալների մասին, որ [կայսրը] թույլ էր տվել զորքը արշավանքի առաջնորդելիս։ Օրերից մի օր սուլթանը հարց տվեց կայսեր, թե՝ «Դու ի՞նչ կանեիր, եթե ինձ գերի վերցնեիր»։ Նրան կայսրը միանգամայն անկեղծ, առանց հաճոյախոսելու ասաց. «Իմացի՛ր,

բաղում հարվածներով կանչնչացնեի մարմինդ»։ «Ես սակայն,— ասաց սուլթանը,— չեմ լինի քեզ պես խիստ ու դաժան։ Բայց լսել եմ, որ ձեր Քրիստոսը խաղաղություն է ձեզ քարոզել, անհիշաչարություն, որ նա հակառակ է ամբարտավաններին, խոնարհներին շնորհ պարգևող»[743]։ Այնուհետև նրանք հաշտություն կնքեցին, երկարատև խաղաղություն և խնամիական կապեր հաստատեցին, ի սկզբանե անտի որոշված յուրաքանչյուր տերության իրավունքները, բարիդրացիական հարաբերություններ, որ այսուհետև թուրքերը հռոմեական տերության սահմաններում ոչ մի ասպատակություն չեն կատարելու, ետ են վերադառնալու բոլոր նրանք, ովքեր երբևիցե հռոմայեցիների երկիր էին ուղարկվել, պիտի վերադարձվեն բոլոր գերիները, հատկապես գերի ընկած հռոմայեցիների մեծամեծներն ու ընտրանին։ Կայսրը սուլթանին առատ նվերներ խոստացավ։ Այն ժամանակները [պատերազմում] սպանվեցին Լևոն էպի տոն դեիսեոնը[744], մագիստրոս Եվստաթիոսը և պրոտասեկրետ Խիրոսֆակտեսը, իսկ պրոտովեստիարիոս Վասիլ Մալեսիսը գերվեց[745]։

Ամեն ինչ ահա այդպես կատարվելուց և համաձայնություն կնքվելուց հետո, սուլթանը ողջագուրվելով կայսեր, ճամփու դրեց և որպես պատվի նշան, իր դեսպաններին տվեց նրան ուղեկցելու։ Մանծկերտը հռոմայեցիների ձեռքում էր գտնվում։ Երբ կայսրը այլ ճանապարհով վերադարձավ [Մանծկերտ], այնտեղի հռոմայեցիները գիշեր ժամանակ թողեցին հեռացան, բայց հանդիպելով թշնամիների, վտանգի ենթարկվեցին։ Կայսրը թուրքական հանդերձ հագած հասավ Թեոդոսուպոլիս և ջերմ ընդունելության արժանացավ։ Նա մի քանի օր այնտեղ մնաց, հոգ տարավ ձեռքը բուժել և իրեն կարգի բերել, ինչքան հնարավոր էր ավելի հռոմեական տեսք ընդունել։ Այնտեղից նա գնաց իբերական գյուղերը. իր հետ էին նաև սուլթանի դեսպանները[746], այնտեղից էլ հենց Կոլոնիա։ Երբ հասավ Մելիսսոպետրիոն[747], Եդեսիայի կատապան պրոեդրոս Պետրոսը[748], գիշերով լքեց նրան ու փախավ Կոստանդնուպոլիս, քանզի արդեն տեղյակ էր այնտեղ կատարված խարդավանքների մասին։ Կեսար Հովհաննեսն ու նրա որդիները, ինչպես և համախոհ սենատորները կայսրուհուն բռնի խուզել և աքսոր էին ուղարկել, իր՝ կայսրուհու հիմնադրած Պիպերուդիոն կոչվող վանքը, իսկ Միքայելին միահեծան ինքնակալ հռչակելով, ամենուրեք կարգադրություններ էին ուղարկել՝ չընդունել վերադարձող [Դիոգենես]

կայսեր, ոչ էլ որպես ․կայսր պատվել։ [Դիոգենեսին] առաջինը գահընկեց հայտարարեց փիլիսոփաների հյուպատոս Պսելլոսը, այդ մասին նա հոխորտում է իր գրվածքներից մեկում։ Պատմում են, որ հենց ինքը՝ կայսրուհին էլ նույն նպատակն ուներ՝ չընդունել վերադարձող Դիոգենեսին։ Այդ լուրը կայծակի արագությամբ հասավ Դիոգենեսին, նա իմացավ. որ ինքը բոլորի կողմից գահընկեց է հայտարարված, որի վրա տիրացավ Դոկիա կոչվող բերդին[749] և բանակեց այնտեղ։

Կեսարը թագավորության գործերն իր կարծիքով լավագույն ձևով ամրապնդելով, [իր] որդիներից ամենակրտսերին՝ պրոեդրոս Կոստանդնին հզոր զինական ուժով Դիոդենեսի դեմ ուղարկեց, որը, սակայն, հանդիպելով Դիոգենեսին Դոկիայում, վախենում էր պատերազմ սկսել։ Դիոդենեսը, տեսնելով, որ Կոստանդինն իրենից հզոր է, այնտեղից ելավ եկավ Կապադովկիա։ Այդ միջոցին Կոստանդնին միացավ ֆրանկների մի բազմություն[750], ապա և հենց ինքը՝ Կրիսպինոսը իր ազգակիցների հետ. սրան անցյալում Դիոգենեսը Աբյուդոս էր աքսորել։ [Դիոգենեսը] նրանց դեմ ուղարկեց Թեոդորոս Ալիատեսին, քաջ ու նշանավոր, զարմանալի հասակ ու արտաքին ունեցող մի մարդու։ Կոստանդնի զինվորները քաջաբար կռվելով, պարտության մատնեցին Ալիատեսի զինվորներին, ինքը Ալիատեսն էլ գերի ընկնելով՝ կուրացվեց վրանի երկաթե ցցերով։ Դիոդենեսը կատարվածից վշտահար մտավ Կապադովկիա, ամեն տեղից կանչելով իր զինվորներին։ Ինքը մնում էր Տիրոպիոսում[751]. սա զառիթափ տեղում կառուցված մի շատ ամուր բերդ է։ Կոստանդինը Դիոգենեսի դեմ դաշնակցելու կոչ արեց նաև Անտիոքի դուքս Խաչատուրին[752], բայց նա մերժեց, քանզի Դիոգենեսի կողմն էր անցել։ Դիոգենեսը վերցնելով Խաչատուրին, գալիս է Կիլիկիա, որտեղ սպասում էր սուլթանի օգնության, միաժամանակ մտադիր լինելով այնտեղ ձմեռել՝ Կիլիկիայում ավելի տաք լինելու պատճառով։ Այստեղ նա դարձյալ զբաղվեց զորք հավաքելու գործով։ Իսկ Կոստանդինը Դիոդենեսի հեռանալուց հետո Բյուզանդիոն վերադարձավ։ Նրա փոխարեն Դիոգենեսի դեմ ուղարկվեց կեսարի որդի պրոեդրոս Անդրոնիկոսը։ Նա զինվորներին ռոճիկ բաժանելուց հետո, Պոդանդոսի կլեյսուրով հասնում է Կիլիկիա, որտեղ նրան ընդդիմակայում է Խաչատուրը, բայց մի փոքր մարտնչելուց հետո գերվում[753] է Անդրոնիկոսի զինվորների կողմից։ Մնացածները փախչում են Ադանա, Դիոդենեսն

այնտեղ էր գտնվում։ Անդրոնիկոսը պաշարման է ենթարկում քաղաքը։ Համաձայնություն է կնքվում, որով Դիոդենեսը հրաժարվում է թագավորությունից և մազերը խուզելով մասնավոր կյանք է վարելու, որից հետո նա սևեր հագած, իր բախտը ողբալով, բերդից դուրս է գալիս[754]։ Անգրոնիկոսն իսկույն որոշում է վերադառնալ և սևազգեստ Դիոգենեսին հասարակ կառքով տանում էր այն գյուղերով ու քաղաքներով, որտեղ նրան անցյալում աստվածացնում էին։ Մինչև Կոտիեոն[755] նա ցավատանջ ճամփա անցավ (նա աղիքային հիվանդությամբ էր տառապում, նրան չարանենգորեն թույն էին խմացրել), ուր կանգ առան, սպասելով նրա նկատմամբ կայսեր վճռին։ Օրեր անց տեղ հասավ իր կամքից անկախ դժբախտացածին կուրացնելու վճիռը։ Տեղն ու տեղը կուրացվում է նա, իսկ այն [միջնորդ[ եպիսկոպոսները, որոնք ուղարկվել էին [Դիոգենեսին[ ներման համար միջնորդելու, ոչ մի օգնություն չցուցաբերեցին։ Նրանք էին՝ Քաղկեդոնի եպիսկոպոսը, Հերակլիայի եպիսկոպոսը և Կոլոնիայի [եպիսկոպոս] Թեոփիլոսը։ Դիոգենեսը հիշեցնում էր նրանց՝ տված երդումների մասին, աստծո հատուցումը։ [Եպիսկոպոսներն] ուզում էին օգնած լինել, բայց թույլ էին ու անկարող Դիոգենեսին կալանավորած արյունռուշտ և դաժան մարգկանց նկատմամբ, որոնք անգթորեն ու տմարդորեն կուրացրին նրան։ [Դիոգենեսը] այգ հասարակ կառքով բերվեց մինչև Պրոպոնտիս. նա նեխել էր, կարծես դիակ լիներ, փորած աչքերով ուռած գլխով ու երեսով՝ որդերով վխտացող ու գարշահոտ։ Նա մի քանի օր ցավատանջ ապրեց, վախճանվելուց առաջ հոտեց և կյանքին հրաժեշտ տալով հողին հանձնվեց Պրոտե կղզում, որտեղ նա նոր վանք էր կառուցել։ Նա թաղվեց շուքով իր կողակցի՝ կայսրուհի Եվգոկիայի կողմից, չլսված փորձությունների ու դժբախտությունների մասին հիշատակ թողնելով։ Թեև նա մեծ դժբախտությունների հանդիպեց, սակայն չասաց ոչ մի ամբարիշտ ու վատ խոսք, նա գոհություն էր հայտնում [աստծուն] և իր գլխին եկածը հեզաբար տանում։ Խոսք է տարածված, թե իր դեմ կատարվածը Միքայել կայսեր կամքին հակառակ էր, հետագայում նա այդ բանը երդումներով էր հաստատում, որ կեսարն է այդ մասին կարգադրություն տվել և ի կատար ածել՝ թաքուն ու գաղտնի։ Այդ կայսրը մետրոպոլիտության իրավունք շնորհեց Նազիանզոսի եպիսկոպոսության ։ Նա թագավորեց (մինչև իր գերվելը) երեք տարի և ութ ամիս։

# ՄԻՔԱՅԵԼ VII ԴՈՒԿԱՍ ՊԱՐԱՊԻՆԱԿԵՍ

## [26 օգոստոս 1071—7 հունվար 1078 թթ.]

*Միքայելն ահա այս կերպ ժառանգեց թագավորությունը։ Նա բարեհամբույր էր երևում, իսկ երիտասարդների մեջ՝ ծեր՝ իր թուլամարմնությամբ, նստակեցությամբ ու փափկակեցությամբ։ Այդ իսկ պատճառով հասարակաց գործերը տնօրինելու համար առաջ քաշեց Սիդեի մետրոպոլիտ Հովհաննեսին, ներքինի, բայց գործունյա ու շատ հմուտ մի մարդու։ Նա պրոտոսինկելլոսների պրոտոպրոեդրոսն[756] էր, ամեն տեսակ առաքինություններով օժտված։ Կայսեր ալարկոտությունը, հասարակաց գործերը վարելու նրա անկարողությունը, անշարժությունն ու անհմտությունն այս մարդու ընդունակությունը, փորձառությունն ու եռանդը ծածկում, պակասը լրացնում էր։ Բայց՝ այս ցորենին էլ որոմ խառնվեց, Նիկեփոր անունով մի ներքինի, որին փաղաքշորեն Նիկեփորիցես էին անվանում, ծագումով Բուկելլարների [բանակաթեմից], խռովություն, մեքենայություններ նյութելու, խաղաղ ու անդորր ժամանակ փոթորիկ բարձրացնելու, անկարգություններ ստեղծելու վարպետ մի մարդ։ Նա Միքայելի մոտ սեկրետիկոսի պաշտոն էր վարել, աչքի ընկել իր վատթարությամբ ու խառնակչությամբ, վատություն հորինելու իր աղվեսությամբ։ Նա նախանձով լցված լինելով իր պաշտոնակից [Միքայել Նիկոմեդացու] դեմ, կայսեր հուշեց, թե կայսրուհին շնության մեղք է գործել, և երկու անգամ Անտիոքի դուքս նշանակվելով, պատճառ դարձավ Ասորիքի բյուր տակնուվրայությունների ու անկարգությունների։ Ամբաստանվելով, նա այնտեղ ձերբակալվեց ու մահվան դատապարտվեց։ Որոշ ժամանակ նա, նախկինում երևելի այդ մարդը արգելափակված մնաց։ Երբ Դիոգենեսը գահ բարձրացավ, նա մահից փրկվեց և մի ինչ-որ կղզի աքսորվեց, բայց դրամ խոստանալով, Հելլադայի և Հելլեսպոնտոսի դատավոր նշանակվեց և այնտեղ էր պաշտոնավարում։ Միքայել կայսրը սրան հռոմայեցիների պետության գլխին փորձանք դառնալու համար կանչեց և լոգոթետ[757] դարձրեց՝ հասարակաց գործերը տնօրինելու։ Կայսրը, լինելով թույլ ու տատանվող, ընկնում էր նրա զառանցանքների ու կախարգանքների ցանցը, Սիդեի մետրոպոլիտը հեռացվում է պաշտոնից, ամեն ինչ անցնում է [Նիկեփորիցեսի] ձեռքը, քանզի Միքայելը*

*երեխայական խաղ ու զվարճություններով էր տարված. փիլիսոփաների հյուպատոս Կոստանդին Պսելլոսը նրան դարձրել էր բոլոր գործերի համար անընդունակ ու անճարակ։ [Նիկեփորիցեսը] հեռացրեց նաև կայսեր հորեղբոր՝ կեսար Հովհաննեսին, այնպես արեց, որ նրա վրա զարմիկ-կայսրը կասկածանքով նայի։ Մի խուսքով կայսեր ամենամոտիկ մարդկանց նա զըրպարտեց՝ համարեց իր [կայսեր] հանդեպ ծայրահեղ թշնամաբար տրամադրված, բոլորին օտարացրեց նրա համակրանքից և երեխա ինքնակալին իր ձեռքում խաղալիք դարձրեց։ Իսկական կայսերական էր համարվում այն հրամանը, որին հավանություն էր տվել այդ խարդավանողը։ Սրանից էլ ահա սկիզբ առան անմեղ ու արդար մարդկանց դեմ ամբաստանություններ ու նրանցից պահանջներ, անպարտավորներից՝ գանձումներ, վճիռներ, որոնք հօգուտ արդարության չէին, այլ ավելի շուտ պետության, ամբողջական ու մասնակի բռնագրավումներ, հաճախակի մեղադրանքներ, փաստաբանություններ պետական գանձարանի օգտին[758], տուժողների ողբ ու կոծ, ունեցվածքից մերկացվողների անտանելի ու արտասվաշատ կական։*

*Դրությունն այսպիսին էր, երբ արևելքի գլխին աստվածասաստ բարկությունը թափվեց։ Թուրքերը, տեսնելով, որ Դիոգենեսի հետ կնքված հաշտության պայմանները չիրագործվեցին և թղթի վրա մնացին, ապա նաև գազազած այն պատճառով, որ իրենք՝ թեև Դիոգենեսին որպես թշնամի, դերի վերցրին, բայց արժանացրին ամեն մի հոգատարության ու պատվի և սեփական պետության վրա վերստին հաստատեցին, իսկ իր հարազատները նրան վայրագորեն, որպես ոխերիմ թշնամու վերաբերվեցին, այն ինչ իրենց՝ [Թուրքերի] կողմից պետք էր նա կրեր նրա մտերիմներն ու ազգականները, խաղաղության օրենքները պաշտողները կատարեցին՝[759] ամենասարսափելի ու ցավատանջ մահվան ենթարկեցին (օտարներն էլ ծայր աստիճան տխրեցին [Դիոգենեսի] կրած բազում պատուհասների, անմխիթարելի փորձանքի համար) ամբողջ բազմությամբ Պարսկաստանից դուրս գալով և ընդդիմակայողի բացակայությունից օգտվելով, արշավեցին հռոմեական բանակաթեմերի վրա և գլխովին ավարառեցին։ Նրանք արդեն առաջվա պես չէին գործում, այստեղ ու այնտեղ ցրվելով իսկույն փախուստի դիմում, այլ նվաճածի վրա տիրություն անում։ Կայսրը, լսելով այդ մասին, բավական մեծ զորք ոտքի հանեց, դրա զորավար նշանակեց Իսա-*

հակ Կոմնենոսին, որին որպես օգնություն տվեց նաև լատին Ռուսելիոսին՝ չորս հարյուր ֆրանկներից բաղկացած ֆրանկական սինտագմայով։ Ամբողջ զորքը կենտրոնացավ Իկոնիոնում, բայց մի վեճի առնչությամբ, Ռուսելիոսը բացեիբաց ապստամբում է և ֆրանկներին առնելով, գնում այլ ճանապարհով, իր ենթականերին ցանկացածը կարգագրելով։ Բարձրանալով Մելիտենե[760], նա հանդիպում է թուրքերի և ընթացքից նրանց վրա հարձակվելով, հաղթանակ տանում։ Մնացած զորքը շարժվում է դեպի Կեսարիա։ Կոմնենոսը որոշում է հակառակորդների վրա հարձակվել ընթացքից և գիշերով առաջ շարժվում, նպատակ ունենալով նրանց վրա խոյանալ, երբ նրանք դեռ անպատրաստ վիճակում են գտնվում, բայց իր հաշիվները ի դերև են ղալիս, քանզի նրանք կազմ ու պատրաստ վիճակում էին գտնվում։ Նրանց հետ ակամայից մարտի բռնվելով, իսկույն պարտություն է կրում և դերի ընկնում։ Թշնամու ձեռքն է ընկնում նաև խաբաքսի ողջ հանդերձանքը, հռոմայեցիներից շատերը սպանվում են, ոմանք գերի ընկնում, իսկ մի մասն էլ փրկվում է փախուստի դիմելով։ Երբ եղելության լուրը հասավ կայսեր, նա կարծես տխրեց, բայց այնուամենայնիվ Նիկեփորի խրատով ձեռք չքաշեց քաղաքական անարդարություններից ու անօրեն բարքերից. զուրկ լինելով սեփական նկարագրից, կշռադատելու կարողությունից, հստակ մտքից, ստրկի նման կատարում էր այն, ինչ Նիփեփորն էր կարգադրում։ Այդ ժամանակվանից սկսած ահա արևելքը ոտնատակ անող հագարացիներն առանց դադարի ամեն օր այն ավերում ու ասպատակում էին։ Իսահակը մեծ փրկագնով գերությունից ազատվեց, իսկ կեսար Հովհաննեսը վերստին զորավար-ավտոկրատոր նշանակվելով, անցավ դիմացի ափը, գնաց մինչև Դորիլեոն, այնտեղից էլ դուրս գալով ավելի առաջ անցավ ու հասավ Զոմպոսի կամուրջը։ Նախքան Սանգարիոս գետն անցնելը, շտապ կարգով Արմենիակների բանակաթեմից վրա է հասնում Ռուսելիոսը և այնտեղ բանակում։ Կեսարը նրա մոտ մարդ ուղարկեց, իր անհնազանդության ու զանցանքի համար ներումն ու մեղքերի քավություն խոստացավ, եթե ձեռք քաշի իր նախկին մտագրություններից և ճանաչի սեփական տիրոջ։ Բարբարոսը ապավինելով իր բազկի և իր [զինվորների] մեծաթվության վրա, ամբարտավանացավ, որով դեսպանությունը ձեռնունայն ետ վերադարձավ։ Ամեն ինչ պատերազմի դաշտում պետք է լուծվեր։ Կեսարը և նրա համաղորավար Նիկեփոր Բո-

տանիատեսր մնացած բազմությամբ անցնելով գետը, տեղն ու տեղը Ռուսելիոսի հետ կռվի են բռնվում։ Հոռմայեցիները, չկարողանալով ընդդիմակայել ֆրանկների հարձակումը, գլխովին փախուստի են դիմում։ Կեսարը և այլ բազմաթիվ մարդիկ ընկան Ռուսելիոսի ձեռքը, միայն Բոտանիատեսին հաջողվեց փոքրաթիվ մարդկանցով փախուստի դիմել։ Այս մեծ հաղթանակի առթիվ Ռուսելիոսի համբավը տարածվեց ու ծովացավ։ Ռուսելիոսը բազում տառապանքներից ու անվերջ տանջանքների կոհակների հարվածներից հյուծված, շղթայակապ կեսարով շարժվեց ուղիղ Բյուզանդիոնի վրա։ Այս անձնական դժբախտության և ֆրանկի ժամանման մասին կայսեր հայտնված լուրը բոլորին ապշեցրեց, [կայսեր] և մյուս բոլորին մեծ վհատություն ու տագնապ համակեց։ Ռուսելիոսը իր հետ տանելով կեսարին և Դիոգենեսի հետ գերությունից հենց նոր ազատ արձակված Վասիլ Մալեսեսին, շարունակեց ճանապարհը և վրան խփեց Խրիսուպոլսում, կրակի տալով այնտեղի տները, բնակիչների մեծ լաց ու կոծի պատճառ դառնալով։ Կայսրը, ջանալով մեղմել բարբարոսի հանդգնությունը, նրան կուրապաղատի աստիճան է խոստանում, ուղարկում նրա կնոջն ու երեխաներին։ Բայց ծածուկ դիմում է նաև թուրքերին[761], բազում խոստումներով համոզելով նրանց մարտնչել Ռուսելիոսի դեմ։ Վերջինս, տեսնելով, որ ինքն ի վիճակի չէ ընդդիմակայելու այդպիսի բազմությանը, կեսարին կապանքներից ազատելով, կայսր է հռչակում, մեծագոչ ու ուժգնաձայն փառաբանություններով իշխանության կոչում։ Երբ դեռ կեսարի կայսր հռչակելու համբավը չէր տարածվել, որի պատճառով զինվորներ էլ դեռ չէին անցել [նրա կողմը], հանկարծ Սոֆոն լեռան մոտից թուրքերի բազմություն երևաց՝ մոտավորապես հինգ, կամ վեց հազար հոգի։ Ռուսելիոսը տեղն ու տեղը պատերազմի պատրաստություն տեսավ։ Կեսարը և երևելիներից ոմանք ջանում էին զսպել նրան՝ նախապես իմանալու համար հարձակվողների թիվը։ Ռուսելիոսը չհամաձայնվեց նրանց, նա մեծ փոքրություն համարեց այն, թե՛ վեց, թե՛ տասը հազարի դեմ է [կռվելու] և ֆրանկների հետ մեծ թափով հարձակվեց հակառակորդների վրա։ Թուրքերից շատերն ընկան, ֆրանկներից և ոչ մեկի նիզակն անգործ չմնաց, իսկ մնացածները դիմեցին փախուստի։ Ռուսելիոսը հակառակ ֆրանկների զորվորության, երկար տարածության վրա հետապնդեց [թշնամիներին], այն էլ անանցանելի ու դժվարամատչելի լեռներով, ա-

ռանց իմանալու իր զինվորներից շատերին ետևում թողեց, որով կեսարի ու փոքրաթիվ մարդկանց հետ մնաց մենակ, այն էլ անդադար ու երկարատև հետապնդումից հոգնած ձիերի վրա։ Այդպիսին էր դրությունը, երբ թուրքերի մի ուրիշ, անհամար բազմություն երևաց, հավանաբար հարյուր հազարի հասնող։ Օղակի մեջ ընկնելով, նա ակամայից բախվեց նրանց՝ իր չափազանց փոքրաթիվ մարդկանցով։ Թուրքերը. տեղի չտվեցին, թեև այդ ընթացքում շատերն ընկան։ Այդպիսի բազմությամբ շրջապատվելով և հեռարձակ նետերից [խոցվելով], նրանք կորցրին իրենց ձիերին, բայց այդ վիճակում էլ չընկրկեցին։ Շատերն սպանվեցին, իսկ թուրքերից՝ տասնապատիկ անգամ ավելի։ Կեսարը, Ռուսելիոսը և նրա մերձավորները գերի ընկան, իսկ փրկված ֆրանկները Ռուսելիոսի կնոջ հետ ապաստանեցին Մետաբոլե բերդում և ջանում էին պահել ու պահպանել այն։ Թուրքերը Ռուսելիոսի ոտքերը կալանդների մեջ առան, իսկ կեսարին՝ ոչ, նրա անձին վայել պատիվներ ցուցաբերեցին։ Թշնամիները գերվածների համար փրկագին պահանջեցին, և կայսրը շտապեց նրանց գնել։ Տեղ հասավ և Մալեսեսը, որ նոր էր արձակվել կեսարի կողմից, որին իսկույն աքսորեցին, իսկ ունեցվածքը բռնագրավեցին. Դիոգենեսի հետ այժմ գերությունը փոխելով Ռուսելիոսի հետ, ունեցվածքի բռնագրավմամբ ու աքսորով։ Բայց Ռուսելիոսի կինը մեծ ջանք թափեց ու փրկեց իր ամուսնուն։ Այդ իսկ պատճառով կայսեր կողմից ուղարկված մարդիկ միայն կեսարին փրկագնելով վերադարձան։ Երբ [կեսարը] հասավ Պրոպոնտիս, երկյուղ զգալով, որ համարվելով՝ ապստամբ ու կասկածելի մարդ, կարող է փորձանքի հանդիպել, աշխարհիկ հանդերձները փոխելով, վանականի սքեմ է հագնում, մազերը խուզում և այդպիսի խղճուկ արտաքինով ժամանում արքունիք։ Այս բոլորից ելնելով խոհեմ մարդիկ դա ատնծո պատիժ էին համարում, որ ատտված է իրենց դեմ մաքառում, քանզի աչքաթող են արել, չեն պահպանել աստծո պատվիրաններն ու պատգամները, որոնք թեև մեծ պատերազմների ու վտանգների ժամանակ շատ լավ մտաբերում են, բայց հռոմեական զորքերը [մարտի են նետում] առանց նախապես շարժելու [աստծո] գթասրտությունը, և փորձանքի հանդիպելով կամ չարաչար պարտության մատնվելով, չեն հասկանում, որ դա աստծո պատիժն է։ Հնում հռոմայեցիները այդպես չէին վարվում, դրա համար էլ գլուխ էին բերում այդ ահեղ, երգ դարձած ռազմավարությունները, նրանք սատար

չէին կանգնում առաքինության. արդարության, սիրո ու ճշմարտության, մի խոսքով նրանք, ինչքան հնարավոր էր, լավն ու բարին էին գործում, դրա համար էլ աստված նրանց հետ էր և նրանք ամեն կերպ հակառակորդներին պարտության էին մատնում։

Երբ կեսարը մտավ [քաղաք], կայսրը որոշեց, որ ամեն ինչ եղել, վերջացել է։ Նա միայն վշտացել էր Ռուսելիոսի հարցում եղած անհաջողության առնչությամբ։ Նրա համար ազգակիցների կործանումը, կայսրության [հողերի] կորուստը, քրիստոնյաների սրի քաշվելը, գյուղերի ու շրջանների ավերումը, խորտակումն ու քարուքանդ լինելը երկրորդական բան էր։ Ռուսելիոսը մնացած ֆրանկ զինվորների, կնոջ ու երեխաների հետ և իր ունեցվածքով դուրս գալով Մետաբոլե բերդից, երկրի միջով աներկյուղ շարժվեց առաջ և հասնելով Արմենիակների բանակաթեմը, հաստատվեց իր նախկին բերդերում, որտեղից հարձակումներ գործելով թուրքերի դեմ, կանգնեցրեց նրանց ասպատակությունները այդ բանակաթեմի վրա։ Կայսրը, լսելով այդ մասին, գտնում էր, որ ավելի ձեռնտու է թուրքերը տիրեն հռոմայեցիների շրջաններին, քան թե Ռուսելիոսը հաստատվի մի վայրում. այդ միտքը Նիկեփորն էր նրա գլուխը մտցրել։ [Կայսրը] ահա, թեև երիտասարդ, բայց գործունյա ու խելամիտ մի ազնվականի՝ պրոեդրոս Ալեքսիոս Կոմնենոսին[762] ուղարկեց, որն Ամասիա քաղաքը գալով, սպասողական վիճակի մեջ էր։ Ռուսելիոսը թուրքերի առաջնորդի[763] հետ բարեկամական դաշինք կնքած լինելով, որպես արդեն նրա ծանոթ ու մտերիմ, առանց զինվորների նրա մոտ գնաց։ Մի օր նրանց հետ ընթրելիս, նա ձերբակալվեց և կապանքների մեջ առնվեց։ Թուրքերի համար հռոմայեցիներին երդվել և երդումը դրժելով խաբելը սովորական բան է։ Պրոեդրոս Ալեքսիոսը [Ռուսելիոսին] մեծ գումարով գնելով, կապյալ վիճակում բերեց կայսեր[764], որը կարծես Ռուսելիոսը փախստական ստրուկ լիներ, հանձնեց դահիճներին, որոնք արջառաջիլերով սարսափելի խոշտանգումների ենթարկեցին, ապա ամենախավարչտին մի աշտարակում բանտարկեցին, շղթայակապ, առանց որևէ հոգածության։

Իսկ լոգոթետը, որ, ինչպես ասվեց, կայսեր մոտ հսկայական ազդեցություն ուներ, ուզածին պես ամեն ինչ թալանում էր։ Նա խնդրեց և կայսրից որպես նվեր ստացավ Հեբդոմոնի վանքը, ապա ջանաց բոլոր կալվածները, արևի տակ եղած բոլոր

հողերը այդ վանքին ամրացնել, ապահովել այն հսկայական եկամուտներով, նենգաբար մտադիր լինելով սեփականացնել և հսկայական շահույթ ձեռք բերել, օգտվելով կայսեր տխմարությունից, վանքի պատրվակի տակ մեծ հարստություն դիզել։ Վատություն գործելու մեջ արտակարգ ընդունակ մարդ լինելով, ինչպես ոչ ոք, և շահի համար ոչնչից չխրտչելով, նա Ռեդեստոսում ֆունդաքս և մոնոպոլիոն հաստատեց[765], արգելեց բոլոր վաճառականներին առևտրով զբաղվել, կյանքի կոչեց լոկ կայսերական վաճառանոցը, որի պատճառով աննախընթաց, սարսափելի սով առաջացավ և [Պարապինակեսը] կայսեր համար մականուն դարձավ. հետագա մարդիկ ավելի շուտ այդ մականվամբ էին նրան ճանաչում, քան թե տոհմանունով կամ ազգանունով։ Եթե մեկը Միքայելի անվան կողքին չավելացնի Պարապինակեսը, հայտնի չի լինի թե ում մասին է խոսքը։ Նա Պարապինակես կոչվեց, քանզի այն ժամանակ հացի մոդը՝ մեկ պնակ պակաս, մեկ ոսկեդրամ արժեր[766]։

1073 Նրա թագավորության երրորդ՝ ինդիկտիոնի տասնմեկերորդ
օգոստ. տարին սերբերի ազգը, որոնց նաև խրվաթներ են կոչում, դուրս
եկավ Բուլղարիայի դեմ՝ այն ստրկացնելու համար։ Թե ի՞նչ
ձևով, ես մի փոքր հեռվից կպատմեմ։ Երբ Վասիլ կայսրը Բուլ-
1018 ղարիան հպատակեցրեց, չուզեց այնտեղ որևէ նորամուծություն
անել, այլ կարգադրեց, որ կառավարվեն սեփական իշխանավորների կողմից, իրենց սովորության համաձայն, այնպես, ինչպես իրենց առաջնորդ Սամուիլի օրոք էր։ [Բուլղարների] ազգը սակայն, սրանից առաջ հուզումների մեջ էր, չէր կարող տանել Օրֆանոտրոֆոսի ընչաքաղցությունը, դրա համար թագավոր
1040 հռչակեց Դելյանին։ Այդ մասին իր տեղում ասվել է։ Իսկ այժմ էլ որոշեց ապստամբել։ [Բուլղարները] չէին կարողանում տանել Նիկեփորի ընչաքաղցությունը, նրա՝ բոլորի դեմ ուղղված մեքենայությունները, որոնց և ոչ մեկի առաջը կայսրը չէր առնում, տարված լինելով երեխայական խաղերով միայն։ Բուլղարիայի մեծամեծներն ահա Միքայելասից, վերոհիշյալ խրվաթների առաջնորդից, որ բնակվում էր Դեկատերոնում ու Պրապրատոնում և իր [տիրապետության] տակ ուներ ոչ փոքր երկիր, խնդրում էին օգնել իրենց ու գործակցել, տալ իր որդուն, որպեսզի Բուլղարիայի թագավոր հռչակեն և ազատագրվեն հոռմայեցիների լծից ու ստրկությունից։ [Միքայելասը] ուրախությամբ ընդունում է նրանց առաջարկը և իր մարդկանցից երեք

Հարյուր հոգու ընտրելով, հանձնում է իր հարազատ որդի Կոստանդնին, որին նաև Վոդինոս էին կոչում, և Բուլղարիա ուղարկում։ Նրանք հասնում են Պրիսդրիանա, այնտեղ են հավաքվում նաև Սկոպիեի մեծամեծները՝ Կոպխանների[767] տոհմին պատկանող Գեորգ Վոյթախի գլխավորությամբ և նրան Բուլղարիայի թագավոր հռչակում, Կոստանդնի փոխարեն Պետրոս վերանվանելով։ Սկոպիեում դուքսի իշխանությունն ունեցող Նիկեփոր Կարանտենոսը, իմանալով այդ մասին, վերցրեց իրեն ենթակա զորավարներին և բուլղարական ուժերով գնաց Պրիսդրիանա։ Երբ նա պատերազմի նախապատրաստություն էր տեսնում, ժամանեց նրան փոխարինող Դամիանոս Դալասսենոսը։ Նա հանդիպելով Կարանտենոսին, նրան ծաղր ու ծանակի ենթարկեց, նրա զորավարներից յուրաքանչյուրին բազում վիրավորանքներ հասցրեց, խայտառակ արեց որպես վախկոտների, որից հետո զորքը կարգի բերելով, անմիջապես կռվի բռնվեց սերբերի հետ։ Տեղի ունեցավ սարսափելի ճակատամարտ և առավել սարսափելի՝ հռոմայեցիների փախուստ։ Հռոմայեցիներից ու բուլղարներից բազում մարդիկ սպանվեցին, շատերն էլ գերի ընկան, այդ թվում և Դամիանոս Դալասսենոսը, նաև Պրովատաս կոչեցյալը, Լոնգիբարդոպուլոսը և նրանց հետ ուրիշ շատ շատերը։ Ողջ ճամբարը [թշնամու] ձեռքն ընկավ ու ամբողջովին թալանվեց։ Դրանից հետո ահա բուլղարները Վոդինոսին բացեիբաց թագավոր հռչակեցին, ինչպես ասվեց, վերանվանելով Պետրոս։ Երկու մասի բաժանվելով, մի մասը Վոդինոսի հետ Նիշ գնաց, մյուսը՝ ոմն Պետրիլոսի, Վոդինոսի առաջին մարդու հետ շարժվեցին Կաստորիայում գտնվող հռոմայեցիների դեմ. հռոմեասերները, նկատի ունենալով քաղաքի պարսպապատ լինելը, այնտեղ էին հավաքվել։ Պետրիլոսը մոտեցավ Ախրիդային և գրոհով վերցրեց այն (նա ամբողջովին անպարիսպ էր, այդպես ավերակ էլ մնացել էր այն ժամանակվանից, երբ Վասիլ կայսրը քարուքանդ էր արել՝ վախենալով, որ այնտեղ գտնվող բուլղարների [թագավորների] պալատները կարող են ապստամբության պատճառ լինել). այստեղ նրան սիրալիր ընդունեցին և նա տեղացիներին նախապատրաստեց, որ իր տիրոջը [թագավոր] հռչակեն։ Նա նույն բանն արեց նաև Դիաբոլիսում, որից հետո փութանակի գնաց Կաստորիա։ Ինչպես ասվեց, հռոմեասերները այնտեղ էին հավաքվում (Ախրիդայի զորավար Մարիանոսը, Դիաբոլիսի անթիպատ պատրիկ Թեոգնոստոս Բուրցեսը[768], նաև Կաստորիայի զո-

րավարը)։ Նրանց հետ էին նաև Բորիս-Դավիթը և շատ ուրիշներ, որոնք ցեղակից բուլղարների երկյուղից որպես ապաստարան Կաստորիան էին ընտրել։ Պետրիլոսը բուլղարների անհամար զինվորներով հասնելով Կաստորիա, պատերազմի նախապատրաստություն էր տեսնում։ Հռոմայեցիները ևս ռազմաշարք՝ կազմած նրանց դեմ դուրս եկան և ուժգին բախվելով, ստիպեցին Պետրիլոսին փախուստի դիմել. անանցանելի լեռներով նա գնաց, հասավ իր տեր Միքայելասի մոտ։ [Հռոմայեցիները] սպանեցին բազում բուլղարների, գերի վերցրին նաև խրվաթների մոտ Պետրիլոսից հետո առաջին մարդուն և շղթայակապ կայսեր մոտ բերեցին։ Իսկ Վոդինոսը հասնելով Նիշ, արդեն որպես բուլղարական պետության թագավոր էր գործում, նա հանդիպածը ավարառեց, իրեն չճանաչողներին ու չհնազանդվողներին կոտորեց ու թալանեց։ Կայսրը, լսելով դուքսի ·պարտության և Վոդինոսի թագավոր հռչակվելու մասին, ջանաց, քանի փորձանքը չի տարածվել և բոցը չի բորբոքվել, այն հանգցնել՝ նրա դեմ Սարոնիտեսին ուղարկեց՝ մակեդոնացիներից ու ֆրանկներից բաղկացած հզոր զորքով։ [Սարոնիտեսը] սակայն, ամբողջ ուշադրությունը բևեռելով Սկոպիե քաղաքի վրա, անուշադրության մատնեց Նիշում գտնվողներին։ Հասնելով [Սկոպիե] և նրա հրամանատար Գեորգ Վոյթախին երաշխիքներ տալով, նա գրավեց Սկոպիեն, այնտեղ էլ բանակեց ու սկսեց մտածել ու ծրագրել Նիշի վերաբերյալ իր անելիքի մասին։ Բայց Վոյթախը գդջալով այն բանի համար, որ ինչ-որ չափով լավություն արեց և հռոմայեցիներին ենթարկվեց, Նիշում գտնվողներին ծածուկ կերպով հայտնեց. որ անհապաղ իր մոտ ժամանեն և Սարոնիտեսի անհոգ ու անզգույշ [զինվորներին] անխնա ու գլխովին կոտորեն։ Նրանք ստանալով այդ լուրը, Նիշից դուրս եկան և ձյունապատ ճանապարհով շարժվեցին դեպի Սկոպիե. ձմեռ էր, դեկտեմբեր ամիսը։ Երբ այդ բանն իմացան Սարոնիտեսի մարդիկ, վերջինս ամբողջ զորքով նրանց դեմ դուրս եկավ և ճանապարհին վրա հասնելով, Տաոնիոս կոչվող վայրում գրեթե բոլորին կոտորեց, իսկ Վոդինոսը գերվեց։ Այստեղ և՛ բազկի զորությամբ, և՛ համարձակությամբ բոլորից շատ աչքի ընկավ Բալաննեսը։ Լոնդիբարդոպուլոսը, ինչպես ասվեց, տարվեց Միքայելասի մոտ, զեկուցեց, ապա կնության առավ [Միքայելասի] դստեր, և Միքայելասից, լոնգոբարդներից ու սերբերից բաղկացած բազում զինվորներ ստանալով, Վոդինոսի օգնությանը դիմեց, բայց նա

վերստին հռոմայեցիների մոտ վերադարձավ։ Իսկ Սարոնիտեսը Վոդինոսին շղթայակապ կայսեր ուղարկեց։ Նա արգելափակվեց սուրբ Սերգիոսի վանքում769, իսկ քիչ ժամանակ անց, հանձնվելով նորերս Անտիոքի դուքս նշանակված Իսահակ Կոմնենոսին, տարվեց Անտիոք։ Նրա հայր Միքայելասը լսելով այդ մասին, մի քանի վենետիկցի ծովագնացների առատ դրամ տալով, [Վոդինոսին] փախցրեց այնտեղից և վերականգնեց նրա իշխանությունը։ Նա իր հոր մահվանից հետո էլ, մինչև մեր օրերն իշխեց։ Վոյթախը կայսեր մոտ տարվելու ճանապարհին, բազում լլկանքների ենթարկվելով և չկարողանալով տոկալ ստացած վերքերի ցավերին, վախճանվեց։ Իսկ ալամաններն ու վարյագները (սրանք արևմտյան ցեղեր են) բաց թողնվելով երկիր, քարուքանդ են անում Պրեսպայի բուլղարական մնացած ապարանքները, կողոպտում այնտեղի սուրբ Աքիլլիոսի տաճարը, չխնայելով նրա և ոչ մի սուրբ [սպասք], որոնցից մի քանիսը թեև փրկվեցին, բայց մնացածները զինվորները բաժանեցին՝ իրենց օգտագործման համար ձևափոխելով։ Մակեդոնական փաղանգից մի զինվորի ուսերն ածխացան և նա վախճանվեց. նրանից պահանջում էին վերադարձնել իր վերցրած սուրբ [սպասքը], բայց նա չէր տալիս։ Արդարությունն այդ բանը, բնականաբար, չտանելով, նրան պատժեց, որպեսզի նա օրինակ ծառայի ապագա սերունդներին։

Իստրոս գետի ափին գտնվող քաղաքների զինվորներն անուշադրության էին մատնված, նրանք որպես ռոճիկ ոչինչ չէին ստանում, դրա համար այնտեղ ուղարկվեց վեստարխ Նեստորը, որը ժամանակին կայսեր հոր սպասավորն էր եղել. նա նշանակվեց Պարիստրիոնի դուքս։ Նա որպես համախոհի, համաձայնության եկավ Թաթուշի հետ և բազում զինյալ պածինակներով եկան մայրաքաղաք։ Երբ նրան հրամայեցին ցած դնել զենքերը, նա պատասխանեց, որ այդ բանը կանի միայն այն դեպքում, եթե լոգոթետ Նիկեփորին, որպես ընդհանուրի թշնամու և հանրության ոսոխի, իրեն անչափ վնաս հասցնողի, իր սեփականությունը գրավողի, հրապարակից վերացնեն։ Կայսրը չէր ընդառաջում, քանզի մեկընդմիշտ ընկել էր [Նիկեփորի] կախարդությունների ու խաբեության ցանցը։ Իսկ Նեստորը սեփական մարդկանց կողմից նենգվելու պատ-ռով հեռանում է այդտեղից, ավարառում Մակեդոնիան ու Թրակիան, Բուլղարիա-

լի մերձակա շրջանները, որից հետո նահանջում է պածինակների երկիրը։

Մակեդոնական մի կեղեքված զորամաս կայսեր մոտ եկավ՝ ողբալով իր վիճակը։ Նրանք կայսեր հրամանի համաձայն գանակոծվելով ու անարգվելով վռնդվեցին, նրանց վրա ոչ մի ուշադրություն չդարձրեցին և նրանք անչափ վշտացած վերադարձան իրենց տները, այլևս չէին ուզում հավատարիմ ծառայել, մտածում էին ամեն կերպ պաշտպանել թշնամիներին։

[Կայսրը] Լանգոբարդիայի ֆրանկ տիրակալի մոտ, անունը Ռոբերտ[710], դեսպանություն ուղարկեց և նրա դստեր կնության առավ իր որդի Կոստանդինին։ Նա Հելենե վերանվանվեց։ Ռոբերտը Լանգոբարդիային տիրացավ հետևյալ կերպ։ Իտալիան խաղաղեցնելու համար ուղարկված Գեորգիոս Մանիակեսը, որ ավգուստա Զոեի կողմից մագիստրոսի պատվաստիճանն ստացավ, բազում ֆրանկների իր կողմը թեքեց, ինչպես նաև հաշտեցրեց Դոկիանոսի կողմից տուժածներին և Իտալիայի մի քանի բանակաթեմեր խաղաղեցրեց։ Նրանից վախենում էին, քանզի պատերազմներում նրա ունեցած քաջությունն իրենց կաշվի վրա էին զգացել։ Երբ Մանիակեսը Մոնոմախի դեմ ապստամբություն բարձրացրեց և պարտվեց, նրա հետ գնացողները կայսեր հպատակություն հայտնելով, կոչվեցին մանիակցիներ։ Նրանցից շատերը մնացին հռոմայեցիների երկրում, իսկ մյուսները՝ Իտալիայում։ Նրանց թվում էր և ոմն Ռոբերտ, Դոկիանոսի կողմից մտրակահար եղած Արդուինոսի զարմիկը, ահեղ ու տաքարյուն, բռնատիրելու մտադրություններ ունեցող մի մարդ։ Նա բացեիբաց ծրագրում էր Իտալիայից քշել հռոմայեցիներին, բայց վճռականություն հանդես չէր բերում, ձգձգում էր, տեսնելով, որ թույլ է, նա երկյուղում էր կայսեր հզորությանը հակադրվել։ Երբ Ֆրանկիայից բերած իր կինը վախճանվեց, նա մի ուրիշին կնության առավ, անունը Գայիտա, լայնատարած մի շրջանի պրինցեպսի դստեր։ Նրա հետ ամուսնանալուց հետո նա հաստատվեց իր կնոջը պատկանող քաղաքներում, որոնցից առաջինն ու խոշորագույնը Սալերնոն է։ Այնտեղից գողի նման դուրս գալով նա ասպատակում էր Ռոմանիային ենթակա շրջանները, մեկ գերեվարում էր Կալաբրիան, մեկ ստրկացնում Իտալիան։ Նա գերվածներից ոմանց ձեռքերն էր կտրում, ուրիշների ոտքերը, ոմանց ձեռքերն ու ոտքերը միասին, ոմանց էլ մեծ փրկագրնով ազատ արձակում, սպառնալով, որ եթե քաղաքները իրեն

չհանձնեն և հպատակություն չհայտնեն, ավելի մեծ փորձանքների կհանդիպեն։ Արքունիքում տիրող խառը վիճակի պատճառով Իտալիայում տեղի ունեցած փորձություններից և ոչ մեկը չըկանխվեց։ Մոնոմախը մի փոքր անց վախճանվեց, ավգուստա Թեոդորան ընդամենը մեկ տարի իշխեց, իսկ երբ Միքայելը գահ բարձրացավ, ապստամբեց Կոմնենոսը, զորքերը քաղաքացիական կռիվներին մասնակից դարձան։ Եվ քանի չկար մեկը, որ կոտրեր Ռոբերտի թափը, նա հզորացավ և անուն հանեց։ Նա ուժեղ բանակ կազմակերպեց, տեր դարձավ ձիերի, դրամի ու զենքերի, իսկ քաղաքներում կայսեր կողմից նշանակված զորավարները, իրենց զորքերի սակավաթվության ու վախկոտության պատճառով, կարողություն չունեին նրա դեմ հանդես գալու։ Երբ Կոմնենոսը տիրացավ իշխանության, մի կողմից թուրքերն էին արևելքի վրա ճնշում գործադրում, մյուս կողմից էլ պածինակները՝ արևմուտքի։ Կալաբրիայի զորավար Թրյումբոսը՝ սկրիբոնների[771] նկատմամբ ոճիրն առանց քաշվելու հանդգնողը, հեռացավ Կալաբրիայից։ Նա տեսավ, որ արածը տեղացիներին դուր չեկավ, դրա համար փախավ կայսեր մոտ։ Իտալիայի դուքս է ուղարկվում Աբուլխարեն։ Ռոբերտը, տեսնելով, որ Կալաբրիայի ժողովուրդը ծանր տարավ սկրիբոնների կոտորածը և այդ իսկ պատճառով մտադրություն ունի ապստամբել, դուրս է գալիս այլևս չվերադառնալու համար և փութանակի արշավելով, գրավում մեծ ու երևելի Հռեգիոն քաղաքը, որտեղ սովորաբար Իտալիայի դուքսն էր նստում։ Այդ [քաղաքում] կային հոյակապ ապարանքներ և պարենի մեծ առատություն։ Աբուլխարեն հասավ Դյուրախիոն, այնտեղից նավեց Բարի և իմանալով, որ Հռեգիոնը գրավվել է, մնաց Բարիում, որտեղից հնարավորության սահմաններում օգնում էր դեռևս հռոմայեցիներին հավատարիմ մնացած քաղաքներին՝ զորավարներ նշանակելով և զորք ուղարկելով պահպանության համար։ Հռոմայեցիներին հավատարիմ էին մնացել Բարին, Հիդրունտը, Կալլիպոլիսը, Տարանտը, Բրենդեսիոնը, Հորեն և բազում այլ ավաններ ու բոլոր գյուղերը։ Այդ միջոցին Իտալիայի դուքս նշանակվեց Պերենոսը, իսկ Բրենդեսիոնի զորավար՝ Նիկեփոր Կարանտենոսը։ Պերենոսը չկարողանալով անցնել Լանգոբարդիա՝ Ռոբերտի ճնշման պատճառով, մնաց Դյուրախիոնում և վերջինիս դուքսը նշանակվեց։ Իսկ Նիկեփոր Կարանտենոսն էլ, [տեսնելով] Ռոբերտի ասպատակությունները և իտալացիների կրած բյուր փորձությունները, թեև

*վախենում էր, այնուամենայնիվ մնաց տեղում, սպասելով կայսրրից ուղարկվելիք օգնությանը։ Իտալական բոլոր քաղաքները հռոմայեցիների կողմն անցան և ընդունեցին կայազոր։ Որոշ քաղաքներ էլ, թեև հրաժարվեցին կայազոր ընդունել, այնուամենայնիվ, հարկատու դարձան։ Վիճակն այդպիսին էր, Կաբանտենոսն էլ, տեսնելով, թե ինչպես են ֆրանկները օրեցօր հզորանում, որոշեց փախչել։ Բայց գիտակցելով այդ ամոթաբեր քայլի անփառունակությունը, մնաց տեղում, Բրենդեսիոնը հավատարիմ ու հնազանդ պահելով կայսեր։ Նա խաբեությամբ ու նենգությամբ կարողացավ շահել մերձակա ֆրանկների վստահությունը. ծածուկ հանդիպելով նրանց և քաղաքը հանձնելու շուրջ բանակցությունների մեջ մտնելով, նա ընդունում է եկած և աստիճաններով բարձրացող ֆրանկներին։ Բայց [Կարանտենոսը] աստիճաններով բարձրացողներին մեկ առ մեկ, մոտ հարյուր հոգու, սրի քաշեց և նրանց գլուխները նավ բարձելով անցավ Դյուրախիոն, այնտեղից էլ՝ կայսեր մոտ, տեղի ունեցած դեպքերի ավետաբերը լինելով։ Պերենոսը Դյուրախիոնում էր, երբ թագավորությունը բզկտվում էր ներքին տագնապներով, արևելքը՝ թուրքերի արհավիրքներով, որոնք օրեցօր սաստկանում էին ու չէին գտնում ո՛չ վերջ, ո՛չ էլ դադար։ Կոստանդին Դուկաս կայսեր մահից հետո թագավորությունը կարճ ժամանակով անցավ Եվդոկիա կայսրուհու ձեռքը, իսկ երբ թագավորության գայիսոնն ստացավ Դիոգենեսը, երկուսը դեպի Ռոբերտը և նրա մարդիկ հասավ գագաթնակետին, նրա խիզախությանը քաջատեղյակ եղողները վախենում էին նաև, որ կարող են իրենց ունեցվածքից էլ զրկվել։ Ուրիշներն էլ ամեն կերպ ջանում էին հեռանալ, գնալ Ռոմանիային պատկանող գյուղերն ու քաղաքները։ [Դիոգենեսն] էլ իր հիմնական ուշադրությունը թուրքերի դեմ մղվող պատերազմի վրա էր բևեռել, ամբողջ ջանքը թափում էր ավելի մեծ վտանգի առաջն առնելու, [որից օգտվելով ֆրանկները], այլևս ոչ թե տիրոջ նման, այլ գող ու ավազակի պես խուժելով, իրենց հարկատու դարձրին Իտալիայի շրջանները։ Երբ, ինչպես վերևում ասվեց, Դիոգենեսի հարցը փակվեց, իսկ Միքայելն էլ թագավորության նավը վարում էր անփույթ ու երեխայավայել, նրանք իսկական տերերի նման Լանգոբարդիային ու Կալաբրիային ծովից ծով տիրեցին, երկիրն ու բերդերն իրենց մեջ բաժանեցին, իրենց կամս, իսկ Ռոբերտին էլ դուքս անվանեցին։ Միքայելն, ինչպես ասվեց, ոչ միայն չփորձեց վերանվաճել*

իրեն պատկանող երկիրը, այլ Թուրքերին արևելքից դուրս շպրտելու նպատակով անհրաժեշտ համարեց նրանց հետ դաշինք կնքել և նրանց միջոցով կամ նրանց օգնությամբ [Թուրքերի] Ռոմանիա հանդուգն ներխուժելու առաջն առնել։ Այդ նպատակով նա մինչև անգամ խնամիացավ Ռոբերտի հետ, նրա դուստր Հելենեին նշանեց իր որդի Կոստանդնի հետ։ Կայսրը այդպես էր մտածում, բայց աստված չթողեց, որ դա կատարվի, քանզի նա վաղուց էր վճռել արևելքի կործանումն ու ոչնչացումը։

Այդ ժամանակները Կոստանդնուպոլսում երեքոտանի հավ ծնվեց և ճակատին մեկ աչք ունեցող այծի ոտքերով երեխա։ Անմահ զինվորներից[772] երկուսը շանթահար եղան, իսկ հրեշ-երեխան, որ նետել էին Դիակոնիսսայի փողոցում, երեխայի նման լաց էր լինում։ Այդ բոլորից բացի բազմաթիվ և հաճախակի գիսավոր աստղեր էլ երևացին։

Բայց որովհետև բարբարոսները ասպատակում էին արևելքը, իսկ ժողովրդի մի մասը կոտորվում, մյուս մասն էլ ապաստան էր որոնում Կոստանդնուպոլսում, ծանր ժամանակները սրրտացավ, հասուն ու արիասիրտ մտքի տեր մարդու կարիքն էին զգում, իսկ [Միքայելն] այնքան ժլատ էր ու մանր, որ չէր ուզում մի օբոլոս[773] անգամ ծախսել, մեկին որևէ բան տալ, ցորենակիր նավերով հացահատիկ բերելով սննդի մասին հոգ տանել։ Նա զբաղված էր գրական դատարկ ու աննպատակ վարժություններով, խելքը միտքը յամբեր ու անապեստներ կազմելն էր, թեև նա այդ արվեստի հոտն անգամ չէր առել, պարզապես խաբվելով ու մոլորվելով փիլիսոփաների հյուպատոսի կողմից[774], այսպես ասած, ողջ երկիրը ավերակ դարձրեց։ Սոսկալի սով եղավ, որին հաջորդեց համաճարակն ու մահացությունը, այդ համանուն[775] [երևույթները], որոնք մարդկանց ոչնչացման գործում եղբայր են ու համարժեք։ Ամեն օր բազում մարդիկ էին մեռնում, այն աստիճան, որ կենդանի մնացածները չէին հասցնում վախճանվածներին թաղել։ Դիակները խառնիխուռն փռված էին, այսպես կոչված, էմբոլոններում[776], շատերը թափընթաց՝ հաճախ մի պատգարակի վրա հինգ կամ վեց դիակ դարսած էին տանում։ Ամեն տեղից տխուր լուրեր էին գալիս, մայրաքաղաքը լցվեց ամենայն տրտմությամբ։ Իշխանությունները ոչինչ չէին մտածում հանապազօրյա անարդարություններ, անօրեն դատավճիռների ու գանձումների առաջն առնելու

ուղղությամբ և կարծես գոյություն չունենային Հռոմայեցիներին
նեղող այլազգիների պատերազմը կամ աստծո բարկությունը,
կամ էլ մարդկանց տանջող չքավորությունն ու ապրուստ ճարե-
լու չարչարանքները, այդպես աներկյուղ աստծուն ատելի ա-
րարքներ էին գործում ու մարդկանց չարչարում։ Կայսերական
ամեն մի որոշում ու խոհ մի նպատակ ուներ՝ սեփական ժողո-
վրդին վնասել ու նենգել, նրա ունեցվածքն ու կյանքի միջոցնե-
րը հափշտակել։ Նրանց ագահ ձեռքը երկարեց մինչև անգամ
սուրբ տաճարների վրա՝ խլեց նրանց սրբազան գանձերն ու
սպասքը։

Այսպես էին պետության գործերը վարվում, իշխողների
տխմարության ու վատության պատճառով կողոպտվում ու ա-
վերվում և՛ դրսեցիները, և՛ ներսեցիները, երբ արևելքի մեծա-
մեծները՝ Ալեքսանդրոս Կավասիլասը, Ստրավոռոմանոսը, Սի-
նադենոսները, Գուդելիոսը և սենատորների մնացած ընտրանին,
վաղուց նախապատրաստած ապստամբությունն այժմ լույս աշ-
խարհ հանեցին և համաձայնության գալով կուրապաղատ Նի-
10—X կեփոր Բոտանիատեսին կայսր հռչակեցին։ Հոկտեմբեր ամսին էր,
—1077 ինդիկտիոնի առաջին տարվա։ Երբ այդ լուրը հասավ կայսեր
ականջը, նրան անչափ մեծ իրարանցման մեջ գցեց, քանզի դեռ
անցյալում շատերը գուշակում էին, թե կգա ժամանակ, երբ Ն-ն
կգերազանցի Մ-ն[777]։ Նա տեղնուտեղը Թուրքերին, կարծես ըն-
տանի ու հարազատ լինեին, նամակ գրեց, խոստանալով նվեր-
ներ էլ տալ, եթե նրանք ձերբակալեն [Բոտանիատեսին] ու նրա
մերձավորներին և իրեն ուղարկեն։ Բոտանիատեսը ազնվական
ծագում ուներ, նա սերում էր Փոկասների տոհմից և ճիշտ է ոչ
ուղղակի, նաև անվանի Փլավիոսներից[778], որոնց տոհմը գալիս է
փառավոր ավագ Հռոմից։ Այդպես է վկայում նրա մասին ավան-
դությունն ի սկզբանե անտի։ Հոկտեմբեր ամսի երեքին, երբ
[Բոտանիատեսը] պետք է կայսերական վրանը խփեր, գիշերվա
առաջին պահին օդում հանկարծ լույս երևաց՝ մինչև Քաղկեդոն,
Խրիսուպոլիս և Վլախերնայի պալատը։ Բոլորն այդ երևույթը բա-
րի նշան համարեցին, ոմանք նույնիսկ կանխագուշակեցին, որ
Լամպեից պալատում լուսատու ջահ է եկել։

Երբ Բոտանիատեսը շարժվեց դեպի Բյուզանդիոն, արև-
մուտքը սասանեց մի այլ ապստամբական չարամտություն։ Դյու-
րախիոնի պաշտոնանկ արված դուքս պրոեդրոս Նիկեփոր Բրիեն-
3—X— նիոսը իրեն կայսր հռչակեց և տեղի զինվորներին իր ետևից

1077 տանելով ու օգտվելով նրանց համագործակցությունից, այնտեղից դուրս եկավ, փութալով դեպի Ադրիանուպոլիս, քանզի Հովհաննեսը, իր հարազատ եղբայրը, ծրագրվող խռովության համար արևմտյան զորքերից ոմանց կարգի էր բերել և մեծաթիվ վարյագների ու ֆրանկների նախապատրաստել միանալու եղբորը, ինչպես և այդ քաղաքի կատապանին, որ իր ազգականն էր։ Սրանք նախքան [Բրիեննիոսի] Ադրիանուպոլիս հասնելը, նրան կայսր հռչակեցին և հայտարարեցին։ Կայսրը պետական գործերը թույլ էր վարում, թե չէ նա շատ հեշտությամբ պարտության կմատներ Բրիեննիոսին, քանի որ անմահներ կոչվող հատուկ զորք ուներ, ինչպես և ամբոխից հավաքագրված մի ուրիշ կարգին զորք։ Նրա համար ամենից դյուրինը նախ և առաջ Ադրիանուպոլսում գտնվողների վրա հարձակվելն էր, ապա նաև հենց Բրիեննիոսի։ Բայց, ինչպես ասվեց, հարցին մատների արանքով նայելով, նա [Բրիեննիոսին] բարձրացրեց, փոքրից մեծ դարձրեց և իր համար գործ բացեց։ Նրան փոխարինելու ուղարկված պրոեդրոս Նիկեփոր Վասիլակիոսը Թեսաղոնիկեում հանդիպեց Բրիեննիոսին և եթե նա խելամիտ գործեր, հենց ապստամբության սկզբում նրան հեշտությամբ կհաղթահարեր։ Բրիեննիոսը հասնելով Տրայանուպոլիս[779], այնտեղ հանդիպեց իր եղբոր՝ Հովհաննեսին և Ադրիանուպոլսից եկած ֆրանկներին ու մակեդոնացիներին, համակիր մյուս զորքին։ Հենց այնտեղ նա հագավ կայսերական նշանակները։ Ամեն ինչ սարսափելի երդումներով ու դաշնադրությամբ ապահովելով, նա կայսր հռչակվեց ու մեծաթիվ թիկնապահներով որպես կայսր գործի լծվեց, փառք ու պատվով մուտք գործեց Ադրիանուպոլիս, որտեղ նա իր նկատմամբ սիրալիր ու հնազանդորեն տրամադրված քաղաքացիների կողմից փառավոր ընդունելության արժանացավ։ Պրոեդրոս Կոստանդին Թեոդորականը փոքրաթիվ մարդկանցով հարձակման անցնելով, Բրիեննիոսի համակիրների կողմից ձերբակալվեց ու նրա մոտ գերի բերվեց։ Նա փառավորված մարդ էր, նշանավոր տոհմից սերող, նա անուն էր հանել իր անբիծ կենցաղավարությամբ, բայց կարծես հասարակ ու սովորական ծագում ունեցող մարդ լիներ, անուշադրության էր մատնվել։ Բայց նա խոշտանգումների չենթարկվեց, թեև, նկատի ունենալով [Բրիեննիոսի] և իր միջև եղած նախկին թշնամությունն ու արյունահեղ հակամարտությունը, սպասում էր այդ բանին։ Նրան աքսոր ուղարկեցին Մակեդոնիայի ինչ-որ

քաղաք, ուր նա շուտով կնքեց իր մահկանացուն[780]։ Ավելի խելամիտ ու խոհեմ մարդիկ Բրիեննիոսի՝ կայսերական նշանակները Տրայանուպոլսում հագնելը և այնտեղ կայսր հռչակվելը չարագուշակ համարեցին, քանզի Տրայանուպոլիսը կրում է ոչ թե Տրայանոս կայսեր անունը, (Տրայանոս կայսրը այն ի նորուստ կառուցեց), այլ Տրայանոս անունով մի մեծամեծ գոթի, ֆիզիկական ու մտավոր ընդունակություններով օժտված մի մարդու, որին Տրայանոս կայսրը ինչ-որ զանցանքի համար կուրացրեց։ Երբ [կայսր Տրայանոսը] Պարսկաստան էր արշավում, առաջին անգամ լինելով, նրան տեսավ այնտեղ և տեսքից մեծ ցավ զգալով, վերհիշելով նրա ռազմավարական արվեստն ու քաջությունը, հրամայեց այդտեղ քաղաք կառուցել՝ այդ մարդու հիշատակի հավերժացման համար։ Ահա դրա համար էր, որ խելամիտ մարդիկ այդ դեպքը չարագուշակ համարեցին։ Բրիեննիոսը լինելիքին անտեղյակ (մարդը ապագայի հանդեպ կույր է) գործի լծվեց։ Իր ազգականուհի Բատացինայի[781] գործակցությամբ Ռեդեստոսն էլ իր կողմն անցավ։ Ռեդեստոսցիք նույնիսկ Պանիոնի[782] վրա հարձակվելով, նրա բնակիչներին ստիպեցին Բրիեննիոսին կայսր հռչակել։ Նա իր եղբորը կուրապաղատի պատվաստիճանը տալով, իսկ մյուսներին էլ՝ իրենց դիրքի համեմատ, որոշեց մայրաքաղաքը սարսափահար անել իր եղբորը ուղարկելով։ Նա նրան տվեց մեծաթիվ զորք և հույս ուներ, որ քաղաքացիներն անչափ գայրույթով ու ատելությամբ լցված լինելով կայսեր ու լոգոթետի դեմ, իր կողմը կանցնեն և որոշ պայմաններով իրեն [քաղաք] կընդունեն, որով ինքն էլ առանց որևէ երկյուղի թագավորական արդուզարդով մուտք կգործի։ Բայց նա իր հաշիվների մեջ չարաչար սխալվեց։ Թեև նա ավերեց Հերակլիան[783], նրա բազում բնակիչների կոտորեց, (մի փոքր առաջ Սիլիվրիայում նստող պրոեդրոս Ալեքսիոս Կոմնենոսը նահանջել էր), բայց մայրաքաղաքի բնակիչներն ամենևին էլ իրար չանցան Բրիեննիոսի զորքի ներկայությունից։ Այդ [զորքը] դիրքեր գրավեց Վլախերնայի պարսպի երկարությամբ և դիմադրության հանդիպելով, անցավ սուրբ Պանտելեիմոնի կամուրջի[784] վրայով և այն կողմում գտնված ամեն ինչը կրակի տալով, բայց խոսքի արժանի ոչինչ չանելով, վերադարձավ։ Ինքը՝ [Բրիեննիոսը] երկու տազմա վերցնելով, հասավ Աթյուրա[785], իսկ մնացած զորքն ուղարկեց ձմեռելու։ Կայսրն իր գլխին եկած փորձություններից հետո հազիվ մտաբերեց դեռևս բանտում շղթայա-

կապ գտնվող Ռուսելիոսին, որ փորձ էր արել Բոտանիատեսի մոտ փախչել։ Ահա նրան բանտից հանելով և ամեն տեսակի պատվի ու հանգստի արժանացնելով, գիմեց նրան բազում հրապուրիչ ու քաղցր խոսքերով և գրգեց Բրիեննիոսի զորքի դեմ դուրս գալ, համոզեց պարիսպների վրայից Բրիեննիոսի հետ եղող ֆրանկների հետ լեզու գտնել։ Երբ նրան չհաջողվեց [ֆրանկներին] համոզել, Ռուսելիոսը արշավեց Աթյուրայում գտնվող Բրիեննիոսի եղբոր դեմ, նախապես ամուր երդումներով հաստատելով կայսեր հանդեպ ունեցած իր հավատարմությունը։ Իր հետ ծովով [Բրիեննիոսի եղբոր] դեմ ուղարկվեցին նաև ռուսական նավեր, իսկ իրենք հետիոտն շտապեցին դեպի Աթյուրա։ Գլխավոր հրամանատարությունը գտնվում էր պրոեդրոս Ալեքսիոս Կոմնենոսի ձեռքում, որ եկել էր մայրաքաղաքի զինվորներով։ Բայց նրանք այդ մասին նախօրոք իմանալով, կարողացան փախչել։ Ռուսելիոսի և Կոմնենոսի մերձավորները ուզում էին հետապնդել նրանց և հակառակորդներից շատերին ջարդ տալ, բայց զինվորներն ապագայի նկատմամբ երկյուղ կրելով, չհամաձայնվեցին։ Բազում մակեդոնացիներ սպանվեցին, ոչ քչերն էլ գերի ընկան։ Ձեռք բերվեց հսկայական ավար, ի միջի այլոց նաև կուրապաղատի կանաչ կառքերը։ Նա փախավ եկավ Ռեդեստոս։ Իսկ պածինակները մեծ բազմությամբ երևացին Ադրիանուպոլսում, պաշարեցին այն և նրա շրջակայքը մարդիկ ուղարկելով ջարդ ու փշուր արեցին նրա գեղեցկագույն շինությունները, տղամարդկանց կոտորեցին, քշեցին տարան անասունների անհամար հոտեր, ինչ վատություն որ հնարավոր էր անել, արեցին։ Բրիեննիոսը ոսկի[786], կերպասներ տալով, գլուխ բերեց նրանց հեռանալը, որից հետո սկսեց յուրայիններից դրամ հավաքել, ջանալով ամեն գնով հասնել իր նպատակին։ Նրա եղբայր Հովհաննեսը ուղարկվեց Կյուզիկոսի թերակղզին՝ փորձելու տեղացիներին իր ետևից տանել։ Նրան հանդիպեց Ռուսելիոսը և գլխովին փախուստի մատնեց։ Դա տեղի ունեցավ ինդիկտիոնի առաջին տարվա մարտ ամսին։

Պատրիարքի՝ Հովհաննես Քսիֆիլինոսի ննջման և մյուս աշխարհը գնալու առնչությամբ կայսրը [պատրիարք] նշանակեց մի ուրիշի, որ ո՛չ սենատորներից էր, ո՛չ եկեղեցականներից, բյուզանդացիների մեջ ո՛չ խոսքով, ո՛չ գործով աչքի ընկած կամ անուն հանած մեկը, այլ սուրբ քաղաքից[787] եկած Կոսմաս անունով մի վանականի[788]։ Կայսրն արտակարգ հարգանք էր տածում

նրա նկատմամբ՝ նրա հանդես բերած առաքինության համար։ Թեպետև նա արտաքին իմաստությանր տեղյակ չէր, հաղորդակից չէր դարձել նրան, բայց օժտված էր բազմապիսի առաքինություններով։ Ահա դրա պատճառով [կայսրը] նրան նախապատվություն տվեց և ընձեռեց եկեղեցու ղեկր։

Իսկ Բոտանիատեսը կարդավորելով իր գործերը և նախապատրաստվելով իրականացնել իր խիզախած ծրագիրը, հրավիրեց բոլոր նրանց, ովքեր երբևիցե ծառայել էին բանակում, նրանցից տագմաներ կազմեց, նրանց դրամ բաժանեց ու աստիճաններ շնորհեց և ձեռք բերեց նրանց հավատարմությունը, գոտեպնդեց առաջիկա գործը գլուխ բերելու հարցում։ Կայսեր կողմից Նիկիան պահպանելու համար ուղարկվածները, լսելով այդ մասին, ամբողջ բազմությամբ կամովին նրա կողմն անցան և քաղաքը առանց կռվի նրան հանձնեցին։ [Բոտանիատեսը] թուրքական մի հուժկու զորամաս էլ կազմավորեց, որին գլխավորում էր իրեն դաշնակցած անուն հանած Կուտլումուշն՝ իր հինգ որդիներով։ Սրանք սուլթանի ազգականներն էին և հակադրվելով պարսկական կենտրոնական պետության, բայց և միաժամանակ անկարող լինելով [սուլթանի] դեմ մարտնչել, հաստատվեցին Ռոմանիայում[789], որպեսզի առանձին պետություն ստեղծեն, բայց ավելի ճիշտ՝ որպեսզի Ռեյ կոչվող վայրում սուլթանին մարտ տան, պայքարեն տիրանալու կենտրոնական իշխանության։ Երբ զորքերն արդեն բախվելու էին միմյանց, այդ մասին իմացավ խալիֆան[790]. սա նրանց մոտ աստծուն հավասար հարգանք ունի։ Նա անհապաղ, արհամարհելով դժվարություններն ու կարգը (նա իրավունք չունի հեռանալ իր նստավայրից), փութանակի հասավ Ռեյ, ուր գտավ իրար դեմ կանգնած, բախվելու պատրաստ զորքերը։ Նրանց մեջտեղում կանգնելով, նա պահանջեց հաշտվել՝ հօգուտ պարսիկների և նրանց իշխանության և ի վնաս հռոմայեցիների պետության ու իշխանության։ Այնտեղ թեր ու դեմ շատ բան ասվեց և վերջիվերջո ընդունվեց [խալիֆայի] կարծիքով ընդհանուրին օգտակար [որոշումը], որի համաձայն սուլթանը, ինչպես իր հայրը, իշխի Պարսկաստանի վրա, իսկ Կուտլումուշն ու նրա կողմնակիցները սուլթանից զորք ու օժանդակություն ստանալով, ձեռք գցեն հռոմայեցիների երկիրը, դարձնեն այն իրենց սեփական իշխանությունն ու թագավորությունը, որպեսզի այսուհետև ոչ մի կերպ չվնասեն միմյանց։ Ահա խալիֆայի նման հորդորով ու միջնորդությամբ կռվին վերջ

է տրվում, զորքը նահանջում է, վեճը վերանում։ Եվ սկսում են նրանք հռոմայեցիների երկիրը նվաճել։ [Բոտանիատեսը] սրանց հետ ընկերանալով, հզոր զորքով, որոշակի պայմաններով իր հետ տարավ, ճամփա ընկնելով դեպի Նիկիա։ Մեծաքաղաքի հոծ բազմություններ շարունակ նրա կողմն էին անցնում։ Տարօրինակն այն է, որ թուրքերն անգամ Բոտանիատեսին խոչընդոտ չէին դառնում, ընդհակառակը, ուղեկցում էին նրան հարգանքով ու ակնածանքով։ Նույնիսկ մայրաքաղաքը և նրա երեվելիները, լինեն նրանք իշխանավորներ, քաղաքացիներ, թե դեմոսից, բացի այդ նաև եկեղեցու մեծամեծները, սուրբ Բանի իմաստության հռչակավոր տաճարում ժողովի հավաքվելով աստվածամոր ավետման քարոզի ժամանակ, Բոտանիատեսին կայսր են հռչակում. [ժողովը] գլխավորեցին Թեուպոլսի՝ մեծ Անտիոքի պատրիարքը, որ Էմիլիանոս էր կոչվում և Իկոնիոնի մետրոպոլիտը։ Նրանց վճռին ողջ կղերը, ֆսենատը և գրեթե համայն քաղաքը հավանություն տվեց։ Պետության ղեկավարները խմբերի բաժանվելով, նշանակում են սինտագմատարխների, կազմում լոխոսներ և հարձակում գործելով, տիրանում պալատին, այնտեղ զինվորներ հաստատում, դուրս շպրտելով Միքայել կայսեր կողմնակիցներին, իսկ վարձկան զորքերին մարտում պարտության մատնում։ Նրանք գահընկեց են հայտարարում Միքայել կայսեր, որ կայսրուհի Մարիամ ալանուհու[791] և [Միքայելի] որդի Կոստանդին Ծիրանածինի հետ Վլախերնայի պալատում էր ապաստանել։ Նրանք [Միքայելին] վանական են դարձնում և մի խղճուկ անասունի վրա նստեցնելով, Ստուդիոնի վանքն են ուղարկում՝ հավատացյալների կողմից տոնվող Ղազարոսի վրա կատարված հրաշագործության շաբաթ օրը (նա վեց տարի թագավորեց), ապա ցամաքային զորքերի հրամանատարներ նշանակում, նաև ծովային ուժերի՝ նավատորմիղի դրունգարիոս։

## ՆԻԿԵՓՈՐ III ԲՈՏԱՆԻԱՏԵՍ

### [7 հունվար 1078—1 ապրիլ 1081 թթ.]

Ահա քաղաքում իրերի դրությունն այսպիսին էր, որ կայսրը միանգամայն անսպասելի գահընկեց եղավ, իսկ Բոտանիատեսն էլ վստահ շարժվեց դեպի Բյուզանդիոն ու կայսերական իշխա-

նությունն ստացավ առանց արյունահեղության, թեև մարտերի ու պատերազմների համար նախապատրաստություն էր տեսել և կարգի բերել իր զինական ուժերը։ Իսկ Նիկեփոր լոգոթետը և նրա նմանատիպ Դավիթը սրընթաց շարժվեցին դեպի արևմուտք, ուր գտան Հերակլիայում բանակած Ռուսելիոսին՝ հակառակորդների դեմ տարած հաղթանակի առթիվ˙ աստծուն գոհություն հայտնելու պահին։ [Կոստանդնուպոլսի] քաղաքացիները պալատը առանց կայսեր երեք օր պահելուց հետո, Բոտանիատեսին նամակ գրեցին, շտապեցնելով վեր կենալ և ժամ առաջ գալ։ Նա փութանակի հասնելով Պրենետոս[792], ուղարկեց իր ծառա Բորիլոսին[793]. մի քաջ ու գործունյա մարդու և աիրեց պալատին։ Փոքր անց ինքն էլ, ավագ երեքշաբթի օրը, մուտք գործեց և ձեռամբ պատրիարքի հագավ կայսերական թագը։ Իր բոլոր մարդկանց նվերներով, կալվածներով ու աստիճաններով պատվելուց հետո, ապա նաև Խրիսուպոլսում բանակած թուրքերին գոհացնելով, լծվեց կայսրության մյուս գործերին։ Նա ամբողջությամբ դիջեց բնակչության պետությանն ունեցած բոլոր պարտքերը, այն էլ ոչ թե որոշակի, այլ բոլոր տարիների, այնպես արեց, որպեսզի այդ պարտքերի ոչ անունը մնա, ոչ էլ նրանց մասին հիշողությունը։

Որովհետև Բրիեննիոսը գտնվելով դրսում, տակնուվրա էր անում ու սասանում արևմուտքը, նրա մոտ կայսերական դեսպանություն է ուղարկվում, կոչ անելով հրաժարվել իր անիմաստ ախորժակներից և ստանալով կեսարի աստիճանը, վերջ տալ իր ձգտումներին։ [Դեսպանությունը] հաստատում էր նաև այն պատիվները, որոնց արժանանալու են նրանք, ովքեր մասնակցել են [Բրիեննիոսի] ապստամբությանը։ Բայց Բրիեննիոսն անդրդվելի էր, աներեր ու ամբարտավան, չէր հրաժարվում թագավորությունից, ոչ էլ ուզում էր դիջել առաջնությունը, որի տերը չէր։ Այդ պատճառով ուղարկվում է մի երկրորդ դեսպանություն, որը նույնպես հաջողություն չի ունենում։ Ապա երրորդ դեսպանությամբ է նրա մոտ գնում պրոտոպրոեդրոս և մեծ հետերիարխ Ստրավոռոմանոսը, որին նա դարձյալ մերժում է։ Դեռ ավելին, հակառակ այն բանի, որ դեսպանը սրբազան մարմին է համարվում անգամ անհավատների մոտ՝ որպես խաղաղության միջնորդ, պատերազմողների հաշտարար ու պատերազմը կանխող, այդ մարդու հանդեպ անարգաբար վարվեց, կարծես նրան ուղարկողը կայսր չլիներ, այլ ինչ-որ հյուպոստրատեգոս։ Այն ժա-

մանակ Բրիեննիոսի վրանը ինքնիրեն փուլ եկավ՝ նրա ծածկը անտեսանելի ձեռքերի կողմից քակտվելով։ Լուսնի խավարում էլ եղավ, որի [չարագուշակությունը] նրա վրա տարածվեց, թեև որպես կանոն նման երևույթները թագավորների տապալման մասին են վկայում, այգպես են ուղում հավատացնել սնոտի աստղաբանությամբ պարապողները։ Երբ Ստրավոռոմանոսը վերադարձավ, նրա բանագնացությունը մնաց ապարդյուն, կայսրը պատերազմի նախապատրաստություն տեսավ, նրա դեմ զորահավաք արեց և վստահաբար [Բրիեննիոսի] պարտությունն էր կանխավ հայտարարում. քանզի գուշակները գտնում էին, որ Ն տառի մասին երգերը մեկ և ոչ զույգ Ն-Ն նկատի ունեն[794]։ Բոտանիատեսը զորավար և մեծ գոմեստիկոս նշանակելով մի ազնվականի՝ նոբելիսսիմոս Ալեքսիոս Կոմնենոսին, ողջամիտ ու կայուն խելքի տեր, պատերազմի վտանգների նկատմամբ հաստատուն ու անսասան մի մարդու, որ անցյալում վարպետորեն իր ձեռքն էր գցել Ռուսելիոսին, Բրիեննիոսի դեմ ուղարկեց։ [Կոմնենոսը] զորքերի գլուխն անցած շարժվեց Բրիեննիոսի դեմ։ Երբ զորքին նա հանգիստ էր տվել Կալաբրյուե կոչվող վայրում, հետախույզներից իմացավ, որ Բրիեննիոսը ամբողջ զորքով Մեսեներից դուրս գալով, մոտենում է։ Նոբելիսսիմոսը իր հետ եղած թուրքերին[795] տեղնուտեղը առանձնացնելով, հրամայեց մոտենան Բրիեննիոսին և նրան սուտ ձևական մարտ տալով, իր մոտ վերադառնան։ Իսկ ինքն էլ հարմար վայրերում դարաններ գնելով, և զորքն էլ, իր կարծիքով, լավագույն ձևով դասավորելով, սպասում էր Բրիեննիոսի գալստյան։ Երբ երևացին երկու բանակների դրոշները, և երկու կողմերն էլ պատերազմական շեփորներ հնչեցրին, տեղի ունեցավ կատաղի ճակատամարտ[796]։ Երբ Բրիեննիոսը տեսավ իր տագմաների պարտությունը, նրանց տագնապն ու երերումը, վերցնելով իր լավագույն ուժերը, դիմեց վճռական մարտի։ Կայսեր զորքերը նրա թափը կոտրեցին։ Քանի որ երկու կողմերի համար էլ հաղթանակը պատվի հարց էր, մարտը սարսափելի ու զարհուրելի բնույթ ստացավ։ Կոմնենոսը դարան մտածներին դուրս գալու ազդանշան տվեց և ուժեղ թափով խուժեց հակառակորդների վրա. նրանք Բրիեննիոսին գլխովին փախուստի մատնեցին։ Բրիեննիոսը գերի վերցվեց[797], նրա զինվորներից շատերն սպանվեցին, ոչ քչերն էլ գերի ընկան, հատկապես հրամանատարական կազմից։ Գերված Բրիեննիոսը իր ցնորամտության համար դատապարտ-

*վեց կուրացման, նա ուշացած ողբաց իր անխոհեմությունը։ Իսկ կայսրը [հաղթանակի] ավետիսներն ստանալով, գոհություն հայտնեց աստծուն և նրա մորը։*

*Իսկ Բյուզանդիոնում վարյագները սպանեցին [Բրիեննիոսի] եղբորը. երբ Բրիեննիոսը ապստամբություն էր բարձրացրել և նրա կողմն էին անցել դրսեցի վարյագները, պալատի վարյագները[798] իրենցից մեկին ընտրելով ցեղակիցների մոտ ուղարկեցին՝ պահանջելով լքեն ապստամբին և կայսեր կողմն անցնեն։ Երբ սակայն, նրա ով լինելը բացահայտվեց, ձերբակալվեց և սարսափելի տանջանքների ենթարկվելով, հաղորդեց իր ստացած առաջադրանքի մասին։ Նա քթից զրկվեց։ Նրան խնդողը Հովհաննեսն էր։ Բարբարոսն իր կրած անարգանքը հանգիստ չտարավ և երբ Հովհաննեսը պալատից դուրս էր գալիս, սպանեց նրան՝ այլազգի դաշույններով խողխողելով։ Վարյագները կայսեր դեմ ապստամբություն բարձրացրին և ջանում էին սպանել նրան։ Երբ նրանց դեմ ելան կայսեր [զինվորները], նրանք այս անգամ անցան աղաչանք-պաղատանքի և մեղմելով կայսեր սիրտը, նրա ներողամտությանն արժանացան։*

*Կայսրը իր վախճանված կնոջ՝ Բեբդենեի փոխարեն (որ իր կայսր հռչակվելու հետ միասին կայսրուհի էր հռչակվել), ուրիշ կին առավ։ Շատերն էին ուզում նրա հետ ամուսնանալ, այդ թվում և Զոեն, Դուկաս կայսեր դուստրը, որ կույս էր և գեղեցիկ, ինչպես և սենատորների՝ ամուսնանալու տարիքի հասած բազում դուստրեր։ Բոտանիատեսը ուզում էր կնություն առնել կամ Դուկասի կին Եվդոկիային, որ և Դիոգենեսի կինն էր եղել, կամ վերջերս թագավորած Միքայելի՝ Մարիամ ալանուհուն։ Նա մարդիկ ուղարկեց Եվդոկիային բերելու, և վերջինս ուրախությամբ գնաց նրանց հետ։ Այդ մասին իմացավ այն ժամանակները իր առաքինությամբ համբավ հանած մի վանական, որին այլ անուն չէին տալիս, այլ սլարզապես Պանարետոս էին կոչում։ Նա ամեն ջանք թափեց խոչընդոտելու այդ տխմարությունը, պաշտոնավոր անձանցից շատերին հորդորեց համոզելու [Եվդոկիային] հրաժարվելու այդ ցանկությունից։ Այդ պատճառով կայսրն անամոթաբար Մարիամին է առնում, պսակվում հետը[799], որից հետո [պսակող] քահանան իսկույն կարգալույծ է լինում, քանզի կատարվածը բացահայտ շնություն էր։ Միքայելը մազերը խուզելով, պատրիարքի և մետրոպոլիտների որոշմամբ Եփեսոսի արքեպիսկոպոս ձեռնադրվեց։ Բայց նա սոսկ մի*

անգամ եղավ Եփեսոսում։ Վերադառնալով հաստատվեց Մանուիլի վանքում, իր կարիքները հոգալով սեփական աշխատանքով։ Նա հաջորդ կայսեր՝ Ալեքսիոս Կոմնենոսի կողմից մեծ պատիվների արժանացավ, նրա օրոք էլ վախճանվեց։ Բոտանիատեսի տապալումից հետո նա մահվան անկողնում ներեց միանձնուհի դարձած նրա կնոջ՝ Մարիամի մեղքերը։

Իսկ պրոտոպրոեդրոս Նիկեփոր Վասիլակիոսը հասնելով Դյուրախիոն, այդ բոլոր շրջաններից զորք էր հավաքագրում, նա Դիաբոլիսի եպիսկոպոս Թեոդոսիոսի միջոցով նվերներ տալով, Իտալիայից ֆրանկների էլ բերեց, պատրաստվելով Բրիեննիոսի դեմ դուրս գալու։ Նա ֆրանկներից, բուլղարներից, հռոմայեցիներից ու արվանիտներից[800] բաղկացած բավականին ուժեղ զորք հավաքեց և այնտեղից դուրս գալով, փութաց դեպի Թեսաղոնիկե։ Հասնելով Ախրիդա, որոշեց հենց այնտեղ իրեն կայսր հռչակել, բայց տեղի արքեպիսկոպոսը չթողեց այդ բանն անել։ Լինելով Թեսաղոնիկեում, նա իմացավ Բոտանիատեսի գահ բարձրանալու մասին և հպատակություն խոստովանող մի նամակ գրեց, բայց ծածկաբար խռովություն էր սերմանում, գործակից ունենալով Գյումնոս կոչվածին, Գրիգոր Մեսեմերիոսին և Տեսսարակոնտապեխյուսին։ Նա պածինակներին էլ հրավիրեց զինակցելու։ Կայսրը, երբ իմացավ նրա նպատակների ու դիտավորությունների մասին, իր մարդկանցից մեկին նրա մոտ ուղարկեց՝ ապահովության մասին վկայող խրիսովուլ երաշխավորագրով, որով նրան խոստանում էր կատարյալ անվտանգություն, ինչպես և նոբելիսսիմոսի աստիճան։ Բայց նա առձեռն բարեգործությունները արհամարհելով, այնուհետև իզուր տեղը ողբաց։ Հզոր, մեծաթիվ զորքով նրա դեմ ուղարկվեց նոբելիսսիմոս Ալեքսիոսը, որ ստացել էր սեբաստոսի պատիվը[801]։ Նա հարձակվեց Պերիթեորիոնում գտնվող և Գյումնոսի հրամանատարության տակ ծառայող Վասիլակիոսի պահակախմբի վրա, մարտ տվեց ու ոչնչացրեց։ Նրա բանակն առաջ անցավ և առանց կորուստների հասավ մինչև Թեսաղոնիկե, որից որոշ հեռավորության վրա բանակեց Վարդար կոչվող գետի դիմացի ափին, որոշելով զորքին հենց այդտեղ հանգիստ տալ։ Իսկ Վասիլակիոսը, ջանալով նենգարար հաղթանակի հասնել, մտածեց գիշերով ծածուկ հարձակվել նրանց վրա և գլխովին ջախջախել։ Գեմիստոսը, սակայն, նախօրոք սեբաստոսին տեղեկացրեց նենգության մասին, և վերջինս ու նրա մարդիկ նախազգուշացան վտանգից։ Վասի-

ւակիոսն ամբողջ գիշերը սրընթաց շարժվելով, անսպասելի ներքաշվեց դժվարին պատերազմի մեջ։ Նա գլխովին պարտվեց, իր մարդկանցից շատերին կորցրեց, հատկապես ֆրանկներից, իսկ ինքն էլ դոմեստիկոսի հետ կռվի բռնվելով և նրա կողմից ուժասպառ լինելով, ապաստանեց Թեսաղոնիկեի միջնաբերդում. մտածելով ամրության [օգնությամբ] սևաստոսի հարձակումը ետ մղել։ Սևաստոսը առանց հապաղելու իր մարդկանց հանձնարարեց շուտափույթ գրավել բերդը։ Նրանք փութաջանորեն հարձակման անցնելով, թեսաղոնիկեցիների համաձայնությամբ շուտով հաղթահարում են այն ու գրավում միջնաբերդը։ Գերի է վերցվում նաև ինքը [Վասիլակիոսը], շղթայվում և կապյալ կայսեր ուղարկվում։ Երբ այդ լուրը հասնում է կայսեր. վերջինիս հրամանով Խրիստուպոլսին[802] շատ մոտիկ տեղում նրան կուրացնում են։ Դրանից հետո անա այդ վայրը սկսեց կոչվել Վասիլակիոսի աղբյուր։ Իսկ նա կառքի վրա [քաղաք] բերվեց ինչպես մի ողորմելի բեռ ու դժբախտ նահատակ[803]։

Այն միջոցին, երբ զորքերն զբաղված էին արշավանքով ընդդեմ Վասիլակիոսի, պաժինակները գաղազած այն բանի համար, որ իրենցից ոմանք սպանվել էին Բրիեննիոսի կողմից, կոմմանների[804] հետ միասին հարձակվեցին Ադրիանուպոլսի վրա և կրակ գցելով հրկիզեցին այդտեղի տներից շատերը, բայց խոսքի արժանի ոչինչ չկատարած, վերադարձան։

Այդ տարի կուրապաղատ Ֆիլարետոս Վրախամիոսն էլ կայսեր տիրասիրություն ու հպատակություն հայտնեց։ Նա հաստատվեց ամուր, պարիսպներով ու կիրճերով շրջապատված վայրերում, հավաքեց հայերի ու փախստական տղամարդկանց մի հոծ բազմություն, նախորդ կայսր Միքայելին հպատակություն չհայտնեց, ընդհակառակը սկսեց սեփականացնել կայսեր տիրույթները։ Սակայն երբ կայսերական իշխանությունը Բոտանիատեսն ստացավ, ինքնաբերաբար նրա ծառան դարձավ[805]։

Իսկ Ֆիլիպպուպոլսի պավլիկյաններից[806] ոմն Լեկաս, խնամիանալով պածինակների հետ, դասալիք եղավ նրանց մոտ և նրանց հավանությամբ հռոմայեցիների [երկրի] համար ամենասարսափելի սպառնալիքը ստեղծեց։ Մի ոմն Դոբրոմիր էլ Մեսեմբրիայում[807] էր տակնուվրայություններ գործում։ Նրանք ծրագրել էին կայսեր դեմ խռովություն բարձրացնել, բայց վախեցան, նրանց խելքի բերեցին ուրիշների գլխին եկած փորձու-

թյունները, և նախքան գործի անցնելը, խոնարհեցին կրելու համար ծառայության լուծը, ինքնաբերաբար եկան, հնազանդություն հայտնեցին։ Հենց այդ ժամանակները Լեկասը սպանեց Սարդիկայի եպիսկոպոս Միքայելին՝ հոգևորականի սրբազան հանդերձները հագին, այն բանի համար, որ կայսերասեր էր և հորդորում էր քաղաքի բնակչությանը այդպիսին լինել։

Կայսրը մեծ հոգատարություն ու պատիվ ցուցաբերեց նախկին ավգուստա Եվդոկիայի և նրա որդիների նկատմամբ, նա [Եվդոկիային] երեք սեկրետի[808] տիրուհի արեց։ Նա պետք եղած հոգատարությունը ցուցաբերեց նաև Բրիեննիոսի և Վասիլակիոսի նկատմամբ։

Իսկ որովհետև թուրքերն արևելքը ոտնատակ էին անում, հավաքելով մեծաթիվ զորք, զորավար նշանակեց Կոստանդին Դուկասի որդի Կոստանդիոսին։ Բայց հենց որ նա անցավ դիմացի [ափը] կայսեր դեմ ապստամբություն բարձրացրեց և իր հետ Խրիսուպոլսում գտնվող զորքի կողմից կայսր հռչակվեց։ Կայսրը նրանից պահանջեց վերջ տալ ապստամբության, բայց երբ նա իր կոչին ընդառաջ չգնաց, ոմանց նվերներով, ոմանց աստիճաններով, ուրիշներին էլ այլ կերպ սիրաշահելով, առանց արյունահեղության [Կոստանդիոսին] բռնեց։ Հենց իրեն [կայսրը] հռչակողներն էին նրան հանձնողները։ Կայսրը նրան վանական խուզեց և աքսորեց ինչ-որ կղզի։ Ասում են, թե [Կոստանդիոսը] բարձրացավ մինչև երեցի աստիճանին։

1080 Ինդիկտիոնի երրորդ տարվա հոկտեմբեր ամսին կայծակ ընկավ Կոստանդին Մեծի սյան վրա, որը կրում էր Կոստանդինի արձանը։ Նախապես դրա վրա Ապոլլոնի արձանն էր կանգնած. սյունը հետագայում [Կոստանդինի] անունն ստացավ։ Կայծակն ահա նրա մի մասը ջարդեց, նաև ներսից երկաթե, իսկ դրսից պղնձե երեք գոտիներ։

Բուլղարիայի արքեպիսկոպոս Հովհաննեսի՝ Վասիլակիոսի այդ տեղերից անցնելու ժամանակ վախճանվելու առթիվ, կայսրը նրա փոխարեն մի ուրիշի նշանակեց, որ նույնպես Հովհաննես էր կոչվում, իսկ մականունը Աինոս[809] էր, քանզի գինի ամենևին չէր գործածում։ Նմանապես Անտիոքի պատրիարքի նեջման պատճառով, կայսրը պատրիարք նշանակեց ոմն Նիկեփորի, մականունը Մավրոս։ Սկոպիեի դուքս նշանակվեց Ալեքսանդրոս Կավասիլասը, իսկ Լևոն Դիավատինոսը[810] Մեսեմբրիա ուղարկվեց և այդ շրջանն էր կառավարում։ Նա պածինակների ու

կոմանների հետ համաձայնության գալով հաշտություն կնքեց։ Կայսրը իր զարմուհի Սինադենեին, Թեոդուլոս Սինադենոսի դստեր, կնության տվեց Հունգարիայի կրալին, որի մահից հետո նա Բյուզանդիոն վերադարձավ։ Նրա թագավորության օրոք մետրոպոլիտների և այլ հոգևորականների բազմաթիվ ձեռնադրություններ եղան, բայց ոչ օրինական կարգով։

Կայսրը, որ սովոր էր պարզության ու հասարակության, կայսր դառնալուց հետո էլ չփոխվեց։ Նա անչափ առատաձեռն էր ու ձեռնաբաց, բոլորին ընդառաջելու պատրաստ։ Նա երկու ծառա[811] ուներ՝ Բորիլոսին ու Գերմանոսին, որոնք, սակայն, ծառայի նման չէին ենթարկվում իրեն, այլ առանց քաշվելու իրենց խելքին փչածն էին անում։ Նրանց պատճառով [կայսրը] սենատի գլխավորների համար տաղտկալի էր. Նրանք վրդովվում էին Բորիլոսի ու Գերմանոսի բոլորի նկատմամբ ցուցաբերած վերաբերմունքի պատճառով։

Ինչպես վերևում ասվեց, լոգոթետը փախավ Ռուսելիոսի մոտ։ Այնուհետև ձերբակալվելով նրա կողմից, հսկողության տակ էր պահվում։ Բայց նա թունավորում, սպանում է Ռուսելիոսին։ Ռուսելիոսի մերձավորները [լոգոթետին] բերում հանձնում են Բոտանիատեսին։ Նրան արգելափակում են Պրոտե կղզում։ [Բոտանիատեսի] շրջանակի մարդիկ, քաջ գիտենալով, որ եթե կայսրը սույկ տեսնի նրան, կների և, որպես շատ փորձառու մարդու, պետական գործերը վարելու համար ծառայության կընդունի (կայսրը նման հարցերում անընդունակ էր), մի բան, որ իրենց համար ձեռնտու չէր (ենթադրում էին, որ նա իրենց համար կարող է փուշ դառնալ), մեծ հետերիարխ Ստրավոռոմանոսի միջոցով սպանեցին նրան, թեև կայսեր կողմից [Ստրավոռոմանոսը] հրաման էր ստացել նրանից իմանալ միայն կայսրության վերաբերող դրամների մասին և ուրիշ նեղություն չպատճառել։ Բայց [Ստրավոռոմանոսը] տեղ հասնելուն պես, շղթայում է նրան և սաստիկ խոշտանգում։ Այդ խոշտանգումների ժամանակ էլ նա հոգին փչեց, թեև խոստանում էր, եթե իրեն չտանջեն, ցույց կտա [դրամների տեղը] և կհանձնի դրանք։ Բայց, ինչպես ասացի, նրանց մտահոգողը ոչ այնքան կայսերական գործերն էին, ինչքան նրան մեջտեղից վերացնելը՝ նախքան նա անձամբ կհանդիպեր ու խոսակցություն կունենար կայսեր հետ։ Լոգոթետի սպանության գործն ահա այսպես վերջացավ[812]։

1. Ἀπὸ γενικῶν, խոսքը պետական գանձապահ՝ գենիկոնի լոգոթետի մասին է, պետական ֆինանսների վերահսկիչ սակելլարիոսին ենթակա պաշտոնյայի։ Նրա իրավասությունները տարածվում էին կայսրության ողջ տարածքի վրա։ Տե՛ս «Կոստանդին Ծիրանածին» էջ 290։ Նաև Bury, IAS, p. 86—90։ Guilland, Les logothetes, p. 5—115։ Oikonomidès, Les lists, p. 313—314։

2. Նիկեփոր I (802—811)։ Սպանվեց բուլղարների խան Կրումի դեմ մղած պատերազմում։

3. Իսահակ I Կոմնենոս (1057—1059)։

4. Կոչվում էր նաև արիթմոսների դրունգար։ Տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 282—283։ XI դ. նրա ռազմական պարտականությունները վերանում են և նա դառնում է կայսերական տրիբունալի նախագահ։ Իր ենթակայությունն ուներ ընդարձակ պաշտոնեություն։ Տե՛ս Bury, IAS, p. 60—62։ Guilland, Le Drongaire, p. 563—587։ Oikonomides, Les lists, p. 331—332։ Դրունգարին, (բայց ոչ վիգլայի դրունգարին, որ բյուզանդական աղբյուրներում առաջին անգամ հիշվում է 791 թ. դեպքերի առնչությամբ), հիշում է Սեբեոսը։ Հմմտ. Ն. Բյուզանդացի, Հայկական բառաքննություն, Կոստանդնուպոլիս, 1880, էջ 10։

5. Ապրել է IX դ. և հայտնի է նաև որպես Գեորգիոս Համարտոլոս (Մեղապարտ)։ Գրել է չորս գրքից բաղկացած ժամանակագրություն։

6. Պատրիարք Կոստանդնուպոլսի (784—806)։

7. Սինկելլոսի մասին տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 315։ Հիշատակվում է և հայկական աղբյուրներում։ Մատթ. Ուռհայեցու ասելով Կոստանդին Մոնոմախը Պետրոս Գետադարձի քեռորդի տեր Անանեին իբրև թե «արար Սինդելոս» (Մատթ. Ուռհ., էջ 106)։

8. Նշանավոր պատմիչ, որի «Ժամանակագրությունը» որպես հայոց պատմության ուսումնասիրության համար կարևոր աղբյուր, կազմելու է սույն՝ «Բյուզանդական աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» մատենաշարի չորրորդ գիրքը։

9. Մաքսիմիանոսն իշխել է իր որդի Մաքսենտիոսի հետ 306 թվականից։

10. Բնագրում՝ διδάσκαλος Σικελιώτης։ Նրա երկը չի պահպանվել։

11. Նշանավոր բյուզանդական փիլիսոփա, մատենագիր։ Նրա մասին տե՛ս ծանոթ. 635, 718։

12. Սկիլիցեսի թվարկած հեղինակներից շատերը անունով են հայտնի։ Թեոդորոս Դափնոպատեսն ապրել է Ռոմանոս I-ի ժամանակ։ Գրել է նամակներ և պատմություն, որ չի պահպանվել։ Նիկետաս Պափլագոնացին IX դ. վերջին և X դ. սկզբում է ապրել, գրել պարսավագիր Փոտ պատրիարքի դեմ։ Հովսեփ Գենեսիոսին է վերագրվում «Գիրք թագավորությանց» երկը։ Այն պահպանվել է, բայց այժմ ուսումնասիրողները կասկածում են, որ այդ գիրքը Հովսեփ Գենեսիոսի հեղինակությունն է։ Մանուիլը ութ գրքից բաղկացած երկ է գրել և ձոնել Հովհաննես Կուրկուասին։ Ասիացի Լեոնին նույնացնում են Լեոն Սարկավագի հետ, պահպանվել է նրա անունը կրող պատմական երկը։ Թեոդորոս Սեբաստացին Վասիլ II-ի ժամանակակից էր, նրա երկից պահպանվել է երեք հատված՝ Վասիլ II-ի թագավորության վերաբերյալ։

13. Նկատի ունի Գեորգիոս Վանականին և Թեոփանես Խոստովանողին։

14. Ինչպես Առաջաբանում ասվեց, մենք կրճատել ենք Հովհաննես Սկիլիցեսի ժամանակագրության առաջին բաժինը, Նիկեփոր I-ից Կոստանդին Ծիրանածինն ընկած ժամանակաշրջանի պատմությունը, քանզի գրված լինելով Թեոփանեսի Շարունակողի ժամանակագրության հիման վրա, բանաքաղային բնույթ ունի։ Թեոփանեսի Շարունակողի երկը կազմելու է սույն՝ «Բյուզանդական աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» մատենաշարի հինգերորդ գիրքը։

15. Փակագծերի մեջ տրվում են կայսեր (կայսրուհու) թագավորության տարեթվերն ըստ հետևյալ աշխատության. Grumel, La Chronologie: Այդ տվյալները, որոնք ստուգված են բազմաթիվ այլ աղբյուրներով, հնարավոր է, որ առանձին դեպքերում չհամընկնեն Հովհաննես Սկիլիցեսի թվական տվյալներին։

16. Կոստանդին VII Ծիրանածինը։ Նրա առաջին մենիշխանությունը տևեց 913 թ. հունիսի 7-ից մինչև 920 թ. դեկտեմբերի 17-ը, երբ երկրի փաստական կառավարումն իր ձեռքը վերցրեց Ռոմանոս I Լակապենոսը։ Կոստանդնի երկրորդ մենիշխանությունն սկսվեց 945 թ. հունվարի 27-ին և տևեց մինչև մահը՝ 959 թ. նոյեմբերի 9-ը։

17. Ինդիկտիոնի մասին տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 230։ Այն կոչվում է «բյուզանդական», «Կոստանդնուպոլսի» կամ, վերականգնողի անունով՝ Կոստանդինյան (Կոստանդին I կայսեր անունով)։ Առաջին ինդիկտիոնն հաշվվում է 312 թ. սեպտեմբերի 1-ից։ Արևելքում (բացի Եգիպտոսից) ինդիկտիոնն սկսվում էր սեպտեմբերի 23-ին, սեպտեմբերի 23-ն էր բյուզանդական եկեղեցական Նոր տարին։ Քաղաքացիական Նոր տարին սկսվում էր սեպտեմբերի 1-ին։ Ինդիկտիոնի մասին տե՛ս Grumel, Indiction, p. 128—143։ Հայկական աղբյուրներում հանդիպում է ընդիկտիոն, դեքտիոն, ընդիքտիոն, ինդիկտիոն և ինդիքտիոն ձևով։ Խնդրո առարկա ինդիկտիոնի 3-րդ տարվա Զատկի օրը ընկնում է 960 թ. ապրիլի 22-ին։

18. Սբ. Սոֆիայի առաջին անունը «Մեծ եկեղեցի» էր, քանզի նա իր չափերով գերազանցում էր Կոստանդնուպոլսի իր ժամանակակից բոլոր եկեղեցիները։ Սբ. Սոֆիա անունը նա ստացավ ավելի ուշ։ Պատմիչ Սոկրատեսը գրում է, թե Կոստանդ կայսրը կառուցում էր Մեծ եկեղեցին, որն այժմ Սոֆիա (Իմաստություն) է կոչվում։ Հավանական է, որ նրա կառուցումն սկսել է Կոստանդին կայսրը (մեռ. 337 թ.)։ Սոֆիա անունը դեռևս առանց «սրբի» սովորական էր V դ. առաջին կեսին։ Եկեղեցին նվիրված չէր Սոֆիա անունով որևէ սրբուհու։ Դա Աստվածային Իմաստության (Θεία Σοφία)։ Բանի՝ սուրբ Երրորդության երկրորդ անձի եկեղեցին էր, որ 532 թ. հունվարի 15-ին, «Նիկա» նշանավոր ապստամբության ժամանակ կործանվեց հրդեհից։ Հուստինիանոս I կայսրը միանգամայն նոր նախագծով վերակառուցեց այն՝ նշանավոր ճարտարապետներ Անթեմիոսի և Իսիդորոսի ջանքերով։ 537 թ. դեկտեմբերի 27-ին տեղի ունեցավ նրա օծումը։ Սբ. Սոֆիան շատ տուժեց լատինական գրավման ժամանակ և աստիճանաբար անկում ապրեց՝ կայսրության անկման հետ միասին։ 1453 թ. Մեհմեդ II-ը սբ. Սոֆիան վերածեց մզկիթի։ 1934 թ. թուրքական կառավարությունը եկեղեցին վերածեց բյուզանդագիտական թանգարանի։ Սբ. Սոֆիան ունեցել է հարուստ գրադարան, նա գրչության արվեստի մեծ կենտրոն էր։ Տե՛ս Janin, La geographie, p. 471—485։

19. Խոսքը պապագա կայսր Վասիլ II Բուլղարասպանի մասին է (976—1025)։

20. Աթոռակալել է 956 թ. ապրիլի 3-ից 970 թ. փետրվարի 5-ը։

21. Կայսրերը Կոստանդնուպոլսում ունեին մի քանի պալատ-ապարանքներ։ Պեգեի պալատը գտնվում էր նույնանուն թաղամասում (թաղամասն այժմ կոչվում է Քասըմփաշա)։

22. Կոստանդին VIII-ը, որն իշխեց որպես կայսերակից իր եղբոր Վասիլ II-ի ամբողջ թագավորության ընթացքում, նրա մահից հետո՝ միահեծան 1025 թ. դեկտեմբերի 16-ից մինչև 1028 թ. նոյեմբերի 11-ը։

23. Պրեպոզիտոսը (praepositus sacri cubiculi) կայսեր ներքինապետը և սենեկապետը։ Հիմնականում հիշվում է VI դ.։ Արքունիքում շատ մեծ դեմք էր։ Մանրամասն տե՛ս *Bury*, IAS, p. 123—124։ *Guilland*, Le Preposite, p. 333—380։

24. Պարակիմոմենոսի, կայսեր սենեկապետի մասին տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 260։ Որպես կանոն ներքինի էր լինում։ Ներքինիներին տրվող հատուկ պաշտոններն արքունիքում հետևյալներն էին. պարակիմոմենոս, կայսեր պրոտովեստիարիոս, կայսեր սեղանապետ, կայսրուհու սեղանապետ, Մեծ պալատի պապիաս, Մեծ պալատի պապէասի տեղակալ (դևտերոս), կայսեր մատովակը (պինկերնես), կայսրուհու մատովակը, Մագնավրայի պապիաս և Դափնեի պապիաս։ Պարակիմոմենոսները որպես կանոն պատրիկի պատվաստիճան ունեին, կամ էլ պրոեդրոսի (տե՛ս *Guilland*, Le Parakimomène, p. 202—215)։

25. Բարձր պատվաստիճան Բյուզանդիայում։ Մանրամասն տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 217։

26. Սխոլերը «տագմա» կոչվող զորագնդերից մեկն էր։ Այդ զորագնդերն էին՝ սխոլեր, էքսկուբիտներ, հիկանատներ, նումերոսներ և արիթմոսներ։ Տագմաներում (ի տարբերություն բանակաթեմային-թեմատիկի զորքերի) ծառայում էին պրոֆեսիոնալ ռազմիկներ, որոնք գտնվում էին կայսեր տրամադրության տակ և կոչվում էին βασιλικὰ τάγματα։ Նրանք կայսերական գանձատնից ռոճիկ էին ստանում և զինվում պետության հաշվին։ X դ. սկսած սխոլերի դոմեստիկոսը դառնում է համայն զորքերի հրամանատար, սպարապետ, Արևելից սխոլերի սպարապետ (δομέστικος σχολῶν Ἀνατολῆς), որի հետ միաժամանակ հանդես է գալիս Արևմուտքի զորքերի դոմեստիկոսը (δομέστικος τῆς δύσεως)։ Տե՛ս *Ahrweiler*, Recherches, pp. 24—26։ Սխոլերի դոմեստիկոսի մասին ընդհանրապես տե՛ս *Guilland*, Le domestique des scholes, p. 5—63։ Մյուս տագմաների հրամանատարները կոչվում էին κατεπάνω (կատապան) կամ δούξ (դուքս)։ Տե՛ս վերը, էջ 55։ Տագմաները XI դ. սկզբից աստիճանաբար փոխարինեցին նահանգների բանակաթեմային զորքերը և դարձան կայսրության միակ ռազմական ուժը. *Ahrweiler*, Recherches, p. 36։

Դոմեստիկոս տերմինը հանդիպում է նաև հայկական աղբյուրներում՝ աղավաղված ձևով և հաճախ իբրև անձնանուն. «դեմեսլիկոս» (Արիստ. Լաստ., էջ 47, Հովհան Մամիկ., էջ 283, Ասողիկ, էջ 170, 179, 186, Մատթ. Ուռհ., էջ 14, Սմբատ Սպար., էջ 8)։ Այդ մասին տե՛ս Հյուբշման. Հայկականք, «Բազմավեպ», 1902, էջ 213։ Նիկեփոր Փոկասը այլազգա կայսր Նիկեփոր II Փոկասն է, Վարդաս Փոկասի (ավագ) որդին և Լևոն Փոկասի եղբայրը։ Նա ազգությամբ հայ էր։ Տե՛ս *Charanis*. On the ethnic origin, p. 42—45։ Նույնի՝ The Armenians, p. 39։ Adontz, L'âge et l'origine, p. 108։ Տե՛ս նաև *Каждан*, Армяне, стр. 72 և հտ.։

Յահյա Անտիոքացու ասելով, Ռոմանոս II կայսրը Նիկեփոր Փոկասին նշանակել էր Արևմուտքի դոմեստիկոս և նա Կրետե կղզին գրավեց որպես Արևմուտքի դոմեստիկոս։ Նույն այդ ժամանակ կայսրը Արևելքի դոմեստիկոս էր նշանակել Նիկեփորի եղբայր Լևոն Փոկասին։ Նույն պատմիչը ցույց է տալիս, որ Նիկեփոր Փոկասը Կրետեն գրավելուց հետո նշանակվեց Արևելքի դոմեստիկոս։ Տե՛ս „Histoire de Yahya", p. 778, 782—783։ Սկիլիցեսի ասելով Նիկեփորին Արևելքի

դոմեստիկոս նշանակել էր Կոստանդին Ծիրանածինը։ Նիկեփոր II Փոկասի մասին տե՛ս „История Византии". том II, стр. 208—215։ *Schlumberger*. Nicephore Phocas.

27. «Սարակինոս» բառի արմատը արաբերեն «շարք»-ն է, որ «Արևելք» է նշանակում։ Տե՛ս *David-beg*, Le mot Tervagan, pp. 71—73։ Զոնարասը գրում է, որ Ռոմանոս II-ն իր թագավորության հենց սկզբում, տեսնելով, որ ինչպես արաբները տակնուվրա են անում, ասպատակում կայսրության տարածքը, իր մոտ կանչեց Նիկեփոր Փոկասին և հարցրեց նման վիճակի պատճառը։ Փոկասն առանց քաշվելու պատասխանեց, թե պատճառն այն է, որ «դու ես թագավորը, իսկ ստրատարխը (սպարապետը) իմ հայրը. դու պետք եղածի պես չես վարում իշխանությունը, իսկ իմ հայրն էլ արծաթասեր է։ Եթե ուզում ես, հռոմայեցիների վիճակը կբարելավվի, բայց դա ինքնաբերաբար չի լինի»։ Դրա վրա է, որ կայսրը թույլ տվեց Փոկասին վարվել ըստ իր հայեցողության։ Նա անհապաղ հոգ տարավ բանակի կազմակերպման ու մարզման աշխատանքներին։ Zon., t. IV, p. 74։

28. Ամիրաների մասին տե՛ս Menager, Amiratus։ Հալեպի ամիրա Համդունի տան ենթադրվում է Սեյֆ ադ-Դաուլա Աբու-լ-Հասան Ալին (944—967)։ Նիկեփոր Փոկասի՝ արաբների դեմ ունեցած հաջողությունների մասին մանրամասն խոսում են հայկական աղբյուրները։ Ստեփանոս Ասողիկը գրում է. «Յայս յաւուրս Ռոմանոսի Յունաց թագաւորի էր մաժիստրոս Նիկիփոռ և պատրիկ Կիւռ-Ժան, որք զարհուրեցուցանէին զամենայն Տաճկաստանեայս զօրութեամբ իւրեանց» (Ասողիկ. էջ 182)։

29. Լևոն Սարկավագը ցույց է տալիս, որ բյուզանդական բանակում կար նաև հայկական զորամաս (τὸ τῶν Ἀρμενίων στῖφος), որն աջ ընկավ մարտերում։ Leo Diac., p. 14։

30. Ժամանակակից խանիա քաղաքը կղզու հյուսիսային ափին։

31. Կրետեն Իսպանիայի արաբները գրավել էին 823 թ., օգտվելով Բյուզանդիայում բռնկված Թովմա Գազիրացու ապստամբությունից։ Դրանից հետո բյուզանդացիները բազում ապարդյուն փորձեր արեցին կղզին գրավելու համար։ Կրետեի գրավումը մեծ տպավորություն գործեց ժամանակակիցների վրա։ Թեոդոսիոս Սարկավագը դրան մի պոեմ գրեց և ձոնեց Նիկեփորին՝ «մագիստրոսների արեգակին»։ Theodosii Diaconi de Cretae expugnatione, p. 259—306։ Παναγιωτάκη, Θεοδόσιος ὁ διάκονος:

Այլ աղբյուրներից հայտնի է, որ Նիկեփոր Փոկասը, գրավելով Կրետեն և ցանկանալով ստվարացնել արաբական տիրապետության ժամանակ շատ նվազած քրիստոնյա բնակչությունը, քրիստոնյաների հոծ զանգվածներ բնակեցրեց այնտեղ, այդ թվում և բազմահազար հայերի (Ἀρμενίων... φατρίας ἐνοικισάμενος. Leo Diac., p. 28)։ Մինչև օրս Կրետեում բազմաթիվ են Ἀρμένιοι (հայեր) նաև Ἀρμενόπετρα (հայկական քար), անունով գյուղեր, որոնց առկայությունը բացատրվում է Նիկեփոր Փոկասի գաղթեցումներով։ Մանրամասն տե՛ս Παπαρρηγοπούλου, Ἱστορία, հատ. Դ, էջ 96, Π. Ν. Παπαγεωργίου, Περὶ τῶν σημασιῶν τοῦ ῥήματος ἀρμενίζω. „Ἀθηνᾶ" τόμ. ΚΔ', Ἀθῆναι, 1912, σελ. 467:

31ա. Այսինքն բյուզանդացիների (հույն-հռոմների)։ Միջնադարում «Հելլեն» բառը հեթանոս էր նշանակում, այդպես էր հասկանում դեռևս Եզնիկ Կողբացին։ Եպիփան Կիպրացու „Ἑλληνισμὸς ἀπὸ τῶν χρόνων τοῦ Σερούχ ἐναρξάμενος" ը Եղնիկը թարգմանել է. «...հեթանոսութեան սկիզբն ի Սերուքայ ժամանակաց անտի եղև»։ Տե՛ս Տ(աշյան), Խոսրովիկ, էջ 294։ Իսկ Գեորգ Պիսիդացու „Ἑλληνικοῖς ‘Ἕλληνες εἴξαντες λόγοις" — թարգմանել են «հեթանոսական բանիւք հեթանոսաց հետևողսդ» (տող 1121—1122)։

32. Լևոն Սարկավագը Լևոն Փոկասի մասին մեծ գովեստով է խոսում, նրան ան-

վանում է երիտասարդ, քաջ տղամարդ, արտակարգ խոհեմ, ամեն մի իրավիճակում ամենաճիշտ որոշումն ընդունող։ Leo Diac., p. 18։ Համդունի դեմ Լևոն Փոկասի մղած պատերազմների մասին Լևոն Սարկավագը շատ ավելի մանրամասն է խոսում (Leo Diac., p. 19—24)։

33. Ադրասոս (այլ դրչագրերում՝ Անդրասոս)։ Ըստ Ռամզեյի գտնվում էր Իսավրիայում։

34. Բյուզանդիայում ստրկական աշխատանքն օգտագործվում էր և՛ արհեստագործության, և՛ գյուղատնտեսության մեջ։ Ստրուկներ ձեռք բերելու գլխավոր աղբյուրը պատերազմներն էին, բայց հազվադեպ չէին այն դեպքերը, երբ կարիքը ստիպում էր մարդկանց վաճառելու իրենց երեխաներին։ Նիկիայի մետրոպոլիտ Թեոդորոսի մի նամակում խոսվում է չորս տարեկան հասակում գնված մի ստրկի մասին (Darrouzes, Epistoliers p. 290)։ X դ. կար աշխույժ ստրկավաճառություն։ Հովհաննես Չմշկիկի մի օրենքում ասված է, որ ստրատիոտները ռազմագերիներին վաճառում են հենց մարտի դաշտում, բայց և տանում բյուզանդական շուկաները։ Մեծահարուստները, ցանկանալով էժան գնով ստրուկ գնել, իրենց մարդկանց ուղարկում էին հենց պատերազմական գործողությունների շրջանները։ Ստրուկների՝ Հուստինիանոս I-ի կողմից հաստատված սակագինը (Cod. Just. 6,43,3, 531 թ.) ամբողջ ստրկավաճառության ընթացքում մնաց անփոփոխ. Սովորական ստրուկն արժեր 20 դահեկան, արհեստավոր ստրուկը՝ 30, նոտարը՝ 50, բժիշկը՝ 60, ներքինի արհեստավորը՝ 70 դահեկան։ Գների տատանումը ժամանակավոր բնույթ էր կրում։ Հովհաննես Չմշկիկի 972—975 թթ. միջև հրապարակված մի օրենք արգելում էր զինվորականների կողմից որպես ստրուկ վաճառվելիք, սեփական կալվածներում աշխատելու որոշված կամ ազգականներին նվիրաբերվելիք գերիների համար մաքս (κομμέρκιον) վերցնել (տե՛ս Imp. Joannis Tzimischis Nov. XXV, 257—258)։ XI դ. Բյուզանդիայում առկա ստրկության մասին վկայող կարևոր աղբյուրներից է Եվստաթիոս Բոյիլասի կտակը (1059), որի ամբողջական թարգմանությունը տե՛ս Հ. Բարթիկյան, Եվստաթիոս Բոյիլասի կտակը, էջ 393—430։ Բյուզանդիայում ստրկության մասին հիշատակություն ունի նաև Արիստակես Լաստիվերցին։ Վասիլ II-ի վրաց թագավոր Գիորգի դեմ մղած պատերազմում (1023) ձեռք բերած «մարդագերին վաճառակուտ արարին ի հեռաւոր ազգս» (Արիստ. Լաստ., էջ 32)։ Ուսումնասիրություններից տե՛ս Zachariae von Lingenthal. Jus Gr. Rom.։ Каждан, „Великое восстание", стр. 77. Его же, Рабы и мистии, стр. 63—84: Сюзюмов, О правовом положении рабов: Браунинг, Рабство: Hadjinikolaou—Marava, Recherches; Ostrogorskij, Quelques problemes, p. 72 sqq. Kopstein, Zur Sklaverei. Նույնի Einige Aspekte, S. 237—247: Հակոբյան, Վարձկանները, էջ 70—90։ Նույնի, Ծառաղախին-ստրուկները, էջ 124—138:

35. Եթե չի բացատրված, թե ո՞ր քաղաքի մասին է խոսքը, նշանակում է, որ նկատի ունի Կոստանդնուպոլիսը։ Միջին դարերում բյուզանդացիները Կոստանդնուպոլսի փոխարեն ավելի հաճախ օգտագործում էին «քաղաք» բառը (πόλις)։ Նրանք ասում էին, թե «գնում են քաղաք» (հուն. στην πολιν— «ստին պոլին», այդտեղից էլ թուրքերի Ստամբոլը (Իստամբուլը), որը սակայն թուրքերը չեն տվել առաջին անգամ, ինչպես կարծում է Գ. Մորավչիկը (G. Moravcsik, Το Βυζάντιον εἰς τὸ κατοπτρον των ονοματων του. 'Επετηρὶς 'Εταιρείας Βυζαντινῶν Σπουδῶν, τομ. ΛΘ'-Μ, 'Αθῆναι, 1972—73, σελ. 10), քանզի քաղաքի թուրքական գրավումից (1453) առաջ էլ հայերն այն Ստըմբոլ կամ Ստամբոլ էին անվանում։ 1398 թ. մի հիշատակարանում գրիչ Պավղոսը ասում է, թե ձեռագիրը գրվել է «ի քաղաքս խալատան (իմա Ղալաթա), հանդէպ Կոստանդնուպոլսի,

ի նեղ և նուրբ ժամանակիս, որ Թուրքն խսարել է զմեզ և զՍտըմբաւլն...»: Լ. Խաչիկյան. ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, Երևան, 1950, № 779: Ինձ անմատչելի է Հ. Պերպերյանի հետևյալ հոդվածը. «Stanbol (Istambul) kelimesinin etimolojüsine dair bir deneme. Istambul Üniversitesi Edebiyat Fakultesi Tarih Dergisi 9, 1954, էջ 187—192:

36. Այդ շքերթը Θρίαμβος (տրիումֆ) էր կոչվում և մեծ հանդիսավորությամբ կազմակերպվում հաղթանակների ու այլ կարևոր դեպքերի առնչությամբ:

37. Ձիարշավարանն ու ձիարշավական մրցումները Կոստանդնուպոլիս բերվեցին հին Հռոմից: Կոստանդնուպոլսի ձիարշավարանն սկսեց կառուցել Սեպտիմիոս Սևերոսը, ավարտեց՝ Կոստանդին Մեծը: Բացի գլխավոր ձիարշավարանից կային մի շարք այլ ձիարշավարաններ (Ցուկանիստերիոն, սբ. Մամասի և այլն):

38. Բռնի վանական խուզելը Բյուզանդիայում պատիժ էր, քաղաքական հակառակորդներին հրապարակից վերացնելու միջոց:

39. Կղզի Պրոպոնտիսում (Մարմարայի ծովում):

40. Այս Ստեփանոսի մասին Սկիլիցեսը խոսում է իր աշխատության առաջին բաժնում: Ստեփանոսը Ռոմանոս I Լակապենոսի որդին էր: Վասիլ Պետինոսի դըրդմամբ նա տապալեց իր հոր, հույս ունենալով, որ Պետինոսի օգնությամբ կայսր կդառնա: Բայց վերջինս դավաճանեց և Կոստանդին Ծիրանածինի դրդմամբ նրան ձերբակալեց ու աքսորեց: Պետինոսին այս գործում աջակցեցին Մարիանոսը, Վարդ Փոկասի որդիներ Նիկեփորը և Լևոնը, Նիկոլայոս ու Լևոն Թոռնիկյանները և ուրիշներ (Ioan. Synopsis, p. 236).

41. Վանք Բյութանիայում: 842 թ. այստեղ աքսորվեց ապագա պատրիարք Մեթոդիոսը, իսկ հետագայում նաև կայսր Միքայել Կալաֆատեսը:

42. Բյուզանդական աղբյուրներում՝ Մոսելե (Μωσηλε) կամ Մուսելե (Μουσελέ) ձևով տառադարձվում է հայկական Մուշեղ անունը, որ արդեն ազգանուն է դարձել: Նրանց մասին տե՛ս *Бартикян*, Византийский эпос, стр. 34: Նաև՝ Каждан, Армяне, стр. 10—11: «Մերունի Ռոմանոսը» Ռոմանոս I Լակապենոսն է, որ «ծերունի» է անվանվում տարբերվելու համար Ռոմանոս II-ից:

43. Բոնոսի ջրամբարը (ցիստերնան—κινστέρνη) ծածկված էր և կրում է 627 թ. վախճանված պատրիկ Բոնոսի անունը:

44. Անտիոքոսի պալատը գտնվում էր գլխավոր ձիարշավարանից հյուսիս-արևմուտք:

45. Բյուզանդիայում մոր անեծքը սարսափելի էր համարվում: «Դիգենիս Ակրիտաս» էպոսում գրված է. «մահից մի վախեցիր, վախեցիր մոր անեծքից, մոր անեծքից զգուշացիր...» (Անդրոսի տարբերակ, Բ, 325—326):

46. Ստուդիոնի վանքը նվիրված էր Հովհաննես Կարապետին, գտնվում էր Կոստանդնուպոլսի Պսամաթիա (այժմ՝ Սամաթիա) թաղամասում և բյուզանդական ամենանշանավոր սրբատեղիներից էր: Կառուցել էր 463 թ. պատրիկ Ալ. Ստուդիոսը, Արևելքից կոնսուլը: Վանքը մինչև VII դ. կարևոր դեր չէր խաղում Կոստանդնուպոլսի եկեղեցական կյանքում: Նրա վանականները դաժան հալածանքների ենթարկվեցին VIII դ. կեսերից պատկերամարտների կողմից: Վանքը ծաղկեց վանահայր սբ. Թեոդորոս Ստուդիտեսի օրոք: Վանքին կից գործում էր դպրոց, կար հյուրանոց: Վանքում մեծ զարգացում ապրեց գրչության արվեստն ու պատկերագրությունը, նա մեծապես նպաստեց IX դ. սկիզբ առած գրականության ու արվեստի վերածնությանը: Վանականները հալածանքի ենթարկվեցին նաև Լևոն V Հայկազնի, Միքայել Թլվատի ու Թեոփիլոսի օրոք:

Վանքի Կանոնադրությունը բազում վանքերի կանոնադրությունների հիմք է ծառայել։ Իվթիմիոս Ստուդիտեսն էր, որ Չմշկիկ կայսեր օրոք կազմեց Աթոնի առաջին կանոնադրությունը։ Վանքն իր գոյությունը պահպանեց շատ երկար և միայն Բայազետ I սուլթանի օրոք (1481—1512) վերածվեց մզկիթի, որ կա մինչև այսօր և կոչվում է Միրահոր կամ Իմրահոր ջամի։ Տե՛ս Janin, La géographie, 444—445։ Ստուդիոնի վանականներին հիշում է և Մխիթար Գոշը. «Ստուդէք՝ կրաւնաւորք քաղաքին, որոց գործ է նոցա զգորողայսն, եւ ղպաշտաւն. եւ զկանոնսն երգել» (Գիրք դատաստանի, էջ 139)։ Տե՛ս նույն տեղում, «Եւ ստուդէս Մոնաքոսքն՝ որք են միաւորք»։ Հմմտ. էջ 402։ Նման անվանում հանդիպում է և Մովսէս Խորենացու Պատմության մեջ. «Եւ ցրուեալ աշակերտաց նորա (Սահակի) կրօնաւորաց ստուդէից ի դաւառս իւրաքանչիւր, վանորայս շինեցին՝ ոողովեալ եղբարս» (Գ, 67)։

47. Սկիլիցեսը ճիշտ չէ։ Դեպքերին մոտիկ կանգնած Լևոն Սարկավագը գրում է, որ Ռոմանոս կայսրը նրան փառավոր ընդունելություն կազմակերպեց, Նիկեփորը ձիարշավարանում տրիումֆ արեց, քաղաքի համայն դեմոսի ներկայության, որն ապշել էր բերված ավարի վրա։ Պատմիչի ասելով թվում էր, թե բարբարոսների ողջ երկրի հարստությունը այդտեղ էր կուտակվել։ Ավարին հետևում էին ռազմագերիները։ Այդ տրիումֆի կազմակերպումից հետո է, որ Ռոմանոս կայսրը Նիկեփորին նշանակեց Արևելից զորքերի դոմեստիկոս (Leo Diac., p. 28—29)։

48. Հալեպ քաղաքը։ Կոչվում էր նաև Արևելքի Բերիա, տարբերվելու համար Մակեդոնիայի նույնանուն քաղաքից։

49. Սկիլիցեսի մոտ սխալ կա։ Ռոմանոսն այդքան չթագավորեց։ Լևոն Սարկավագի ասելով նա թագավորեց երեք տարի և հինգ ամիս (Leo Diac., p. 31)։

50. Բյուզանդական պատմիչներ Լևոն Սարկավագը և Զոնարասը գտնում են, որ Ռոմանոս II-ին թունավորեցին։ Zon., XVI, 23. 22, Leo Diac., p. 33։ Ենթադրվում է, որ այդ ոճրի կազմակերպիչը Թեոփանոն էր։

51. Վասիլ II (976—1025) և Կոստանդին VIII (976—1028)։ Ասողիկը, հայտնի չէ ինչ աղբյուրից քաղելով, գրում է, որ Ռոմանոս կայսեր մահից հետո «թագաւորեաց ի Կոստանդնուպոլիս Մարինոս ոմն», որին Հովհաննես Չմշկիկը «ընկենու ...և թագաւորեցուցանէ զՆիկեփոռ» (Ասողիկ, էջ 183)։ Այդ հարցի վրա լույս է սփռում Լևոն Սարկավագը։ Պարակիմոմենոս Հովսեփը, երկյուղելով Նիկեփորից, դիմում է իտալական զորքերի նախկին հրամանատար պատրիկ Մարիանոսին, խոստանալով նրան կայսր հռչակել, եթե համաձայնվի հանդես գալ Նիկեփորի դեմ։ Մարիանոսը նրան պատասխանում է. «Զայնդ կորիր, դու ուզում ես դրդել, գրգռել մի կատվիկի՝ մարտնչելու գինյալ հսկայի դեմ, որից սարսափում են ոչ միայն հարևան այլազգիները, այլ ողջ արևելքն ու արևմուտքը» (Leo Diac., p. 37)։ Մարիանոսը խորհուրդ է տալիս, Հովսեփին նման հարցով դիմել Հովհաննես Չմշկիկին, քանզի բանակը Նիկեփորից հետո նրան է պատվում. «այլ կերպ մի փորձիր սասանել անսասան ու աներեր աշտարակը» վերջում ասաց նրան Մարիանոսը։

52. Կայսրուհի Թեոփանոյի։ Բյուզանդիայում կայսրուհուն անվանում էին նաև δέσποινα (տիրուհի), ինչպես և կայսեր՝ δεσπότης (տեր)։

53. Լևոն Սարկավագի ասելով, ներքինի Հովսեփ պարակիմոմենոսը թշնամաբար էր տրամադրված Նիկեփորի նկատմամբ։ Տեսնելով, որ բանակի և դեմոսի կուռքն է դարձել, վախենում էր, որ նա կարող է ապստամբել, դրա համար ջանում էր նրան խաբեությամբ պալատ մտցնել, կուրացնել ու աքսորել (Leo Diac., p. 31—32)։

54. Խոսքը Կոստանդին Ծիրանածինի և նրա աներոջ Ռոմանոս I Լակապենոսի մասին է։

55. Ռոմանոս I-ի որդի Ստեփանոսը, որին Կոստանդին Ծիրանածինի դրդմամբ տապալել էր Վասիլ Պետինոսը։

56. Քաղաք Լեսբոս (Միտիլենե) կղզում։

57. Բուլղարների ցար Սիմեոնի որդին (927—969)։ Ամուսնացել էր Ռոմանոս I կայսեր թոռ Մարիայի հետ, որը վերանվանվեց Իրենե։

58. Բորիսն ու Ռոմանոսը պատանդ տարվեցին 963 թ. (Adontz. Samuel, p. 349)։ Նրանք ազատ արձակվեցին 966 թ., Նիկեփորի՝ Ասորիք կատարած արշավանքից հետո։ Նրանց վերադարձը Բուլղարիա Ն. Ադոնցի կարծիքով կապ չունի կոմսաձագերի ապստամբության հետ (նույն տեղում, էջ 350)։

59. Դավիթ, Մովսես, Ահարոն և Սամուիլ եղբայրները բյուզանդական աղբյուրներում կոչվում են կոմիտոպուլներ (հայերեն՝ կոմսաձագեր)։ Ուսումնասիրողների մի մասը գտնում է, որ նրանց հիշատակումն այստեղ ընդմիջարկություն է։ Ն. Ադոնցի կարծիքով, կոմսաձագերն առաջին անգամ հանդես եկան այն ժամանակ, երբ Կեկավմենոսը Լարիսայի և Հելլադայի զորավարն էր (980—983)։ Այս ենթադրությունը չեն ընդունում ժամանակակից ուսումնասիրողները, որոնք կոմսաձագերի ապստամբությունը թվագրում են 969 թ.։ Այդ մասին մանրամասն տե՛ս ծանոթ. 286։

60. Զոնարասի ասելով Նիկեփոր Փոկասի տունը գտնվում էր Կապադովկիայում (Zon., IV p., 75)։

61. Նշանավոր հայազգի զորավար Հովհաննես Զմշկիկը (հետագայում՝ Հովհաննես I կայսր)։ Ծագում էր Կուրկուասների (Գուրգեն) հայտնի ազնվական ընտանիքից։ Թոռն էր Թեոփիլոս Կուրկուասի, նշանավոր Հովհաննես Կուրկուասի եղբոր։ Լևոն Սարկավագի ասելով «Հովհաննեսը փառավոր ընտանիքից էր սերում, հայրը ազնվական էր արևելքից, իսկ մոր կողմից՝ Նիկեփոր կայսեր զարմիկն էր» (Leo Diac., p. 99)։ Նա խնամիական կապեր էր հաստատել Բյուզանդիայի հայազգի հայտնի գործիչների հետ, առաջին անգամ ամուսնացել Վարդաս Սկլերոսի քույր Մարիայի հետ, երկրորդ անգամ՝ Կոստանդին Ծիրանածինի դուստր Թեոդորայի։ Լևոն Սարկավագը նրան բնութագրում է որպես արտակարգ հանդուգն մարդ, որ թեպետև շատ կարճահասակ էր, բայց այդ փոքրիկ մարմնի մեջ հերոսական քաջություն ու կիրք կար (Leo Diac., p. 59)։

Զմշկիկի մասին հիշատակում են հայկական, ասորական և արաբական աղբյուրները։ Ըստ Ասողիկի, նա դեռևս Կոստանդին Ծիրանածինի օրոք մասնակցել է Կարինի գրավմանը (949) և այն ժամանակ ունեցել է դոմեստիկոսի աստիճանը. «յՅՂԸ թուականին առաքէ կայսրն Կոստանդին զդեմեսլիկոսն զԶմշկիկ զօրու ծանու ի կողմանս արևոյ։ Որ եկեալ պաշարեաց զԹէոդուպոլիս... և էառ զքաղաքն։ Ուր բազում գործս արութեան ցուցեալ Կիւռ-Ժան թոռն Զմշկայ, ի մանկութեան տիս գոլով յայնժամ» (Ասողիկ, էջ 179)։ Պետք է ասել, որ Կարինի գրավողը Թեոփիլոս Կուրկուասն էր, Հովհաննես Կուրկուասի հարազատ եղբայրը։ Բացառված չէ, հարկավ, որ Զմշկիկը մասնակցած լինի Կարինի գրավմանը։ Մատթեոս Ուռհայեցու համաձայն, «Զմշկիկն էր ի գաւառէն Խոզնայ, ի տեղւոյն, որ այժմ կոչի Զմշկածակք, (Մատթ. Ուռհ., էջ 19)։ Միքայել Ասորու ասելով, Զմշկիկը (Շումուշկայ) շատ ուժեղ էր ռազմական արվեստի մեջ, ֆիզիկապես հզոր, պատերազմներում քաջարի ու հաղթող։ Նախքան կայսր դառնալը նա հաստատվել էր Մելիտենեի և Անձիտի շրջաններում և բազում վայրեր, որոնք իրեն էին պատկանում, «կան մինչև այսօր»։ Նա հոռոմոց զորքերի սիրելին էր, քանզի նա միշտ հաղթող էր մարտերում և նրանց էր ենթարկում քաղաքներ ու գավառներ

(*Michel le Syrien*. Chronique, t. III, p. 132։ Հմմտ. Միխ. Ասորի, *Ժամանակագրութիւն, 1871, էջ 383*)։ *Միքայել Ասորու Ժամանակագրության հայ թարգմանիչն ավելացնում է նաև, թե «ասեն զնմանէ թէ Հայ էր ազգաւ»։ Նույն տեղում։ Հմմտ. նաև* Միխ. Ասորի, *Ժամանակագրութիւն, 1870, էջ 390—391։ Արաբական աղբյուրները նրան կոչում են Յանիս իբն ալ Շմշկիկ կամ իբն ալ Շմշկիկ կամ պարզապես ալ-Շմըշկիկ։ Տե՛ս* *Розен*, Василий, стр. 74—75, *նաև* „Histoire de Yahya", p. 775։

*Դեռևս միջնադարյան հեղինակները ցանկացել են բացատրել Չմշկիկ մականունը։ Լևոն Սարկավագի ասելով «Չմշկիկ» հայերեն ածական է, որ հունարեն թարգմանվում է* μουζακίτης *քանզի շատ կարճահասակ լինելով, նման մականուն ստացավ» (Leo Diac., p. 92)։* Μουζακίτης *բառը հունարեն լեզվի բառարաններում բացակայում է։ Սոֆոկլեսը բացատրում է* ἀνθρωπίσκος, ἀνθρώπιον *(մարդուկ) և գտնում, որ դա հունականացված ձևն է ռուսերեն բառի հունարեն— ος վերջավորությամբ՝ «մուժոս», որից և փաղաքշական* μουζάκης *և կրկնակի փաղաքշական՝* μουζακίτζης (Sophocles, *հտ. II, էջ 770*)։ *Բրոսեի համաձայն, Չմշկիկը ծագում է պարսկերեն «չէմշ» բառից, որ «վայելուչ հասակ» է նշանակում՝ -իկ փոքրացնող ածանցով (Հմմտ.* Տեր Սահակյան, *Հայ կայսրերը, հտ. Բ, էջ 123*)։ *Արտահայտվել են կարծիքներ, որ հայերեն, «չմուշկ» (հողաթափ) բառից է, որ* μουζακίτζης*-ը ծագում է «մուճակ»-ից։ Տե՛ս Հ.* Աճառյան, *Արմատական բառարան, հտ. Ե, էջ 746—747։ Միքայել Ասորին (ավելի ճիշտ՝ նրա երկի հայ թարգմանիչը, քանզի ասորերեն բնագրում այդ մասին խոսք չկա) Չմշկիկը հետևյալ կերպ է ստուգաբանում. «Իսկ թագուհին Թէոփանէս սպան զՆիկիփոռ՝ զի չէր ամուսնացեալ ընդ նմա. և առ զՅովհաննէս ոմն այր ինքեան և եդիր նմա թագ, որ և յառաջագոյն* կոչէր զմուշկ բազաւորին» (Միխ. Ասորի, *Ժամանակագրութիւն, 1870, էջ 389*)։ *Ըստ 1871 թ. հրատարակության՝ «...որ յառաջագոյն բառնայր և դնէր զչմուշկ թագաւորին... և կոչեցաւ վասն այսորիկ Չմշկիկ» (էջ 382)։ Հրատարակիչները ցույց են տալիս, որ գրչագրում «զմուշկ» էր և «յետոյ յաւելեալ էր... տառս «չ»։ Նույն տեղում, ծանոթ. 1։*

*62. Անատոլիկոն բանակաթեմի (Զոնարասը նրան անվանում է Արևելից ստրատելատ։* Zon. t., *IV, p. 76)։ Զորավարի մասին տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 218։ IX. դ. վերջում և X դ. առաջին կիսում արաբների ձեռքից նվաճված հայկական հողերից կազմակերպվեցին մի շարք «հայկական» կոչված բանակաթեմեր (*ἀρμενιακὰ θέματα*), որոնք գլխավորում էին հայազգի զորավարներ-ստրատեգոսներ։ Այս հանգամանքը պատճառ դարձավ, որ արաբական աղբյուրներում բյուզանդական ստրատեգոսները կոչվեն իրենց հայերեն համապատասխան տերմինով՝ «զորավար»։ Արաբական աղբյուրներում հիշվում է խոզանի* zirwar-*ը։ Տե՛ս* *Oikonomides*, L'organisation, p. 87։ *Նաև նույնի,* Les lists, p. *346, նաև՝ ծանոթ. 330, 359։ Այդ երևույթին մենք հանդիպում ենք նաև վրացական աղբյուրներում։ Վրացիները Գեորգ զորավարի վկայաբանությունը հայերենից թարգմանելով, վրացերեն թարգմանության մեջ պահպանել են «զորավար» տիտղոսը։ Այդ մասին տե՛ս* Марр, Из поездки на Афон, стр. 16։ *Իսկ «Հայաստանի և Իբերիայի» կառավարիչ Գրիգոր Բակուրյանը XII դ. վրաց Անանունի «Դավիթ արքայից արքայի պատմության» մեջ կոչված է «զորվար»։ Տե՛ս* Մելիքսեթ-Բեկ, *Վրաց աղբյուրները, հտ. Ա, էջ 216։*

*63. Պատկանում էր Կուրկուասների հայազգի նշանավոր ընտանիքին, որից սերել են այնպիսի անվանի գործիչներ, ինչպիսիք են Հովհաննես և Լևոն եղբայրները և շատ ուրիշներ։ Նրանց հետ ազգակցական կապ ուներ Հովհաննես Չմշկիկը։ Տե՛ս* Charanis,

The Armenians, p. 40. Guilland, Le domestique, p. 446: *Каждан*, Армяне, стр. 13—14.

64. *Ստրատելատ* (στρατηλάτης) զինվորական բարձր աստիճան էր Բյուզանդիայում, սպարապետ։ Կոչվում էր նաև στρατηγός, στρατηγὸς αὐτοκράτωρ, μονοστράτηγος։ Այդ մասին տե՛ս *Guilland*, Le commandant en chef, p. 380—404։

65. Լևոն Սարկավագի ասելով, հենց սրանից հետո Նիկեփորը Ձմշկիկին շնորհեց մագիստրոսի պատվաստիճանը և նշանակեց Արևելքի զորքերի դոմեստիկոս (Leo Diac., p. 44)։

66. Ամենայն հավանականությամբ, նույնանում է Նիկեփոր II Փոկասի ժամանակ հանդես եկած և այլ աղբյուրներում հիշատակված պրոտովեստիարիոս Միքայելի հետ, որ հիշվում է նաև որպես պատրիկ-պրեպոզիտոս վեստ։ Դեռևս Կոստանդին Ծիրանածինի օրոք պրոտովեստիարիոս էր։ Տե՛ս *Guilland*, Les eunuques, p. 184։

66ա. Բյուզանդական հեղինակները օգտագործում են որոշակի տերմին՝ կայսեր հռչակման առնչությամբ՝ ἐπιφημίζω, ἀνευφημίζω կամ εὐφημίζω։ Վերջինս բառացի նշանակում է փառաբանել, ներբողել, բայց ունի որոշակի տեխնիկական նշանակություն՝ կայսր հռչակել, հայտարարել, ընդունել։ Այդ բանն ուներ նաև իրավական նշանակություն։ Տե՛ս *Brehier*, Les Institutions, p 76—81։

67. Կոստանդնուպոլսի արվարձան, ժամանակակից Սկյուդարը քաղաքի ասիական ափին։

68. Այլ աղբյուրներից գիտենք, որ նա պատրիկ Մարիանոսն էր (տե՛ս վերը, ծանոթ. 51)։ Հովսեփը դիմեց նաև պատրիկներ Պասքալիոսի և Թոռնիկյանների օգնության, տալով նրանց մակեդոնական զորքերը, բայց մայրաքաղաքի բնակչությունը չօժանդակեց նրանց (Leo Diac., p. 45—46)։

69. Ունէր մագիստրոսի բարձր պատվաստիճանը։ Նրա մասին տե՛ս նաև «Կոստանդին Ծիրանածին», էջ 132։ Վախճանվեց 969 թ. իննսունն անց տարիքում։ Նա պատանի հասակից զինվորական էր և բազում հաղթանակներ էր տարել պատերազմներում ու ախրանքներ գործել (Leo Diac., p. 83)։

70. Զոնարասը ավելի պարզ է գրում. οἰκονομήσας ὠνουμένους αὐτοὺς σῖτον εἰς τὸν ἑαυτοῦ κόλπον φέρειν τὸν τοῦ νομίσματος ἕκαστον (Zon. IV, pp. 76—77), որ կարելի է այսպես հասկանալ. հացի գինն այնքան կբարձրացնի, որ մի դահեկանի հացը գնողի ծոցում կտեղավորվի, այսինքն շատ կթանկանա։

71. Լևոն Սարկավագը նրան անվանում է Վասիլ Նոթոս (ապօրինածին), քանզի նա Ռոմանոս կայսեր ապօրինածին որդին էր, սկյութ (հավանաբար՝ ս. ավոն) կնոջից ծնված (Leo Diac., p. 94)։

72. Այս ժամանակաշրջանում բյուզանդական մայրաքաղաքի բնակչության սոցիալական կազմի մասին տե՛ս Каждан, Социальный состав, стр. 85—96։

73. Երեք շարք թիեր ունեցող խոշոր նավ։ Բյուզանդական շրջանում կոչվում էր նաև դրոմոն։

74. Տե՛ս նախորդ ծանոթագրությունը։

75. Կոստանդնուպոլսի թաղամաս է։ Ավելի մանրամասն տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 289, ծանոթ. 251։

76. Ոսկե դուռը (Χρυσῆ πόρτα կամ πύλη)։ Կայսրերի՝ արշավանքներից վերադառնալիս քաղաք մուտք գործելու պաշտոնական դարպասը։

77. Սկիլիցեսն օգտագործում է ταινιῶσαι տերմինը, որ «թագ կապել» է նշանակում և ոչ «թագ դնել»։ Արշակունյաց թագերի մաս էր կազմում նաև ժապավենը հաճախ

կապիչը, որ կոչվում էր «գարգմանակ»։ Այդ իսկ պատճառով հայերը թագադրման վերաբերյալ երկու տերմին էին գործածում՝ «թագ դնել» և «թագ կապել»։ Այդ արարողությունը կատարողը կոչվում էր «Թագադիր» և «Թագակապ»։ Տե՛ս Марр, О раскопках в Ани, стр. 23: Նույնի, Ани, стр. 61: Բագրատունիները պահպանեցին Արշակունիների թագի ձևը և եթե հավատանք պատմիչ Վարդանին, «ի նոյն կայսերէ Վասլէ եկն ներքինի մի՝ Նիկիտ կոչեցեալ, յերեք հարիւր քսան և հինգ թուին խնդրել յԱշոտոյ թագ... և կամէր պսակել ի Բագրատունւոյն, զոր կատարէ Աշոտ» (Վարդան Բարձրբերդցի, Պատմութիւն, էջ 116)։ Ասածս, հարկավ, չի նշանակում, որ բյուզանդական թագը Արշակունյաց ծագում ունի, այլ պարզապես ուզում եմ ցույց տալ, որ այն նման մասերից էր բաղկացած։ Բյուզանդական կայսրերի թագադրման արարողության մասին տե՛ս Ebersolt, Etudes, p. 18—27. Острогорский, Эволюция, стр. 33—42։ Կայսրուհիների թագադրման պսակի արարողության մասին նույն տեղում, էջ 27—33։

78. Բնագրում ἄμβων, որտեղից սարկավագն ավետարանն էր ընթերցում և քարոզ կարդում։ Հանդիպում է հայկական աղբյուրներում և՛ ամբոն, և՛ ամբիոն ձևով։ Հմմտ. Մատթ. Ուռհ. «ի սուրբ Սոփի ի յամբիոնն նստէր ընդ ամենայն վարդապետսն հոռոմոց»։ Այդ ամբիոնից բանավիճել են հոռոմ վարդապետների հետ Գագիկ II-ը, Գագիկ Աբասյանը, Գրիգոր Մագիստրոսը և ուրիշներ։ Մխիթար Գոշի մի տվյալից պարզվում է, որ այն չէր նույնանում բեմի հետ. «Այսոքիւք ամենեքեան ոչ են ի յինն դասուէն եկեղեցւոյ և ոչ եմէ ի սպասաւորութիւն ինչ հպին, ոչ ի յամբոն ելանեն և ոչ ի բեմն մտեն, այլ են ամենեքեան փառաբանիչք կարգեալք ի տանն Տեառն Աստուծոյ» (Գոշ. Գիրք Դատաստանի, էջ 139, 402)։

79. Լևոն Սարկավագի ասելով, Նիկեփոր Փոկասը իր թագադրության ժամանակ 51 տարեկան էր։ Նա՛ թխադեմ էր, ուներ խիտ ու կապտավուն-սև մազեր, սև մտախոհ աչքեր, թավ հոնքեր, միջակ արծվային քիթ, կոր, հզոր մարմին, շատ լայն կուրծք և ուսեր (Leo Diac., p. 48)։

80. Ըստ Պսևդո-Կոդինոսի իր անունը սպարտական է Հուստինիանոս I-ի ժամանակ գործած պատրիկ Պետրոսին (Բարսինիանոս ասորու), որ համարվում է պալատի կառուցողը, թեև պալատը առաջին անգամ հիշվում է 518 թ.։ Պետրիոն էր կոչվում նաև Ոսկեղջյուրում գտնվող թաղամասը, ժամանակակից Ֆանարը։

81. Նահանգ, ապա բանակաթեմ Փոքր Ասիայի հյուսիսում՝ Պոնտոսի, Բյութանիայի և Գալատիայի միջև։

82. Նշանավոր ջերմուկ Փոքր Ասիայում, Նիկոմեդիայի ծոցին մոտիկ։ Կոստանդին Ծիրանածինի ժամանակ վերանվանվել է Սոտերիուպոլիս։

83. Կեսարի մասին տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 256, ծանոթ. 29։ Կայսերական հին տիտղոս է։ IV դարից սկսած շնորհվում էր կայսերական ընտանիքի անդամներին (մեկ կամ մի քանի հոգու միաժամանակ)։ Մինչև Ալեքսիոս I կայսեր թագավորության ժամանակաշրջանը կեսարը կայսրության առաջին աստիճանն էր։ Նրա կրողը շատ լայն իրավասություններ ուներ, եղել են դեպքեր, երբ կեսարը համարվել է ժառանգական իշխան (տե՛ս Oikonomidès, Les lists, p. 293)։

84. Նոր (Νέα), Վասիլ I-ի կողմից կառուցված սբ. Աստվածածնի եկեղեցին։ Նրա մասին մանրամասն տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 104—106, 287, ծանոթ. 231, 232։

85. Նիկեփորը, դառնալով Թեոփանոյի զավակի կնքահայրը, իրավունք չուներ ամուսնանալ երեխայի մոր հետ, քանզի նա գործած էր լինում συντεκνία-յի զանցանքը

(տե՛ս վերը, էջ 14։ Համտ. նաև Leo Diac., p. 50)։ Արգելքը դրել էր Տրուլլոսի եկեղեցական ժողովի (691 թ.) 53-րդ կանոնը։ Տե՛ս Guilland. Les noces, p. 255, n. 2։

**86.** Τῆς συγκλήτου λογάδας։ Սենատը հունարեն կոչվում է սինկլիտոս, սենատորը՝ սինկլիտիկոս (բառը հանդիպում է և հայկական աղբյուրներում. «Թէոդոս հարցանէր զամենայն սինկղիտոսն», Եղիշե, էջ 72), «Ոմն ի կարգէ սինկղիտոսաց՝ այսինքն ծերակուտի» (Եվս. Քր., Բ)։ Սինկլիտիկոսները շատ էին, բայց նրանցից քչերը կարևոր դեր էին խաղում պետության մեջ։ Հենց սրանք էլ «գլխավոր» սենատորներն էին։ Լևոն VI կայսրը մի օրենք է հրապարակել, որով նա զրկել էր սենատը (սինկլիտոսը) ամեն մի նշանակությունից։ Կոստանդին Ծիրանածինի «Արարողությունների մասին» գրքում այդ տերմինը շատ հաճախ է հիշատակվում։ Դ. Բելյաևի կարծիքով, X դ. «սինկլիտոս» նշանակում է. 1. Բոլոր աստիճանավորների՝ ցածր ու բարձր ամբողջությունը։ 2. Բոլոր աստիճանավորների ամբողջությունը, բացառյալ բարձրագույնները։ 3. Միայն սինկլիտոսի աստիճանավորությունը ամենանեղ իմաստով, այսինքն՝ պատրիկները, անթիպատները, մագիստրոսները, պրոտոսպաթարները, սպաթարոկանդիդատները, վեստիտորները, հյուպատոսները, դիսհյուպատոսները և այլն։ (*Беляев*. Byzantina, том I, стр. 170 և այլուր)։ Սենատի կազմում մտնում էին բարձրագույն պաշտոնեությունը, ռազմական և մասամբ հոգևոր ավագանին։ Մակեդոնական հարստության ժամանակաշրջանում սենատի դերն ընկավ, բայց դարձյալ բարձրացավ XI դ. կեսից։ Միքայել Ատտալիատեսը գտնում է, որ ամբողջ սենատը մի բյուր մարդուց ավելի էր (*Attal.*, p. 275) և հավանաբար այդ խոսքերը չպիտի բառացի հասկանալ, ինչպես անում է Գ. Լիտավրինը („Советы и рассказы", стр. 601), պատմիչը նրանց մեծաթվությունն է ուզում ընդգծել։ Կայսերական խորհրդին, հավանական է, մասնակցում էին փոքր թվով երևելիները։ Սենատի մասին մասնավորապես տե՛ս *Diehl*. Le Senat։

87. Կոստանդին V Իսավրացու (741—775) պատկերամարտ կայսեր, որի սահմանումներից բյուզանդական եկեղեցին ջանում էր ազատվել։

88. Բնագրում λίβελλος (լատ. libellus)։ Բառացի նշանակում է գրքույկ, բայց պանֆլետի իմաստ ուներ, մեկին ծաղրելու կամ անվանարկելու համար կազմված գրություն։

89. Խոսքը Նիկեփորի հոր՝ Վարդասի մասին է։ Լևոն Սարկավագը գրում է, որ Նիկեփորը պատրիարքին զիջել տվեց ասելով, որ կնքահայրն իր հայր Վարդասն է եղել (*Leo Diac.*, p. 50)։

90. Բնագրում πρωτοπαπᾶς. որին մի այլ տեղում հեղինակն անվանում է պալատի եկեղեցու ավագերեցը (տե՛ս էջ 93)։

91. Սկիլիցեսը «Ռոմանոս ծերունի» է անվանում Ռոմանոս I Լակապենոսին, այնինչ հայկական աղբյուրներում (տե՛ս Մատթ. Ուռհ., էջ 5) Ռոմանոս ծերունի է կոչվում Կոստանդին Ծիրանածինի որդի Ռոմանոս II-ը. «Վասիլն և Կոստանդին՝ որդիք Ռոմանոսի ծերոյն»։

92. Սրկիլիայի գլխավոր քաղաքը։

93. Վասիլ I-ի (867—886)։

94. Խոսքը Պալերմոյի մասին է։

95. Նիկեփոր II Փոկասի պապը, նշանավոր զորավար։ Նրա մասին մանրամասն տե՛ս *Gregoire*. La carriere.

96. Ժամանակակից Բրինդիզին։

97. Իլլիրիան ընդգրկում էր ժամանակակից Ալբանիայի տարածքը և հասնում էր մինչև Դանուբ գետը։

98. Բնագրում՝ Παλαμηπόλος։ Խոսքը կուբիկուլարիոսի մասին է։ Բյուզանդիայում ներքինիների համար նախատեսված էր ութ աստիճան։ Դրանք են. նիպսիստիարիոս (հիշատակում է, և Մխիթար Գոշը՝ «Ոպսիստարք» ձևով և բացատրում հետևյալ կերպ. «որք արկանեն ձեռաց ջուր արքային» (Մխ. Գոշ, Գիրք դատաստանի, էջ 139), կուբիկուլարիոս, սպաթարոկուբիկուլարիոս, օստիարիոս, պրիմիկերիոս, պրոտոսպաթար, պրեպոզիտոս և պատրիկ։ X դ. սրանց ավելացան վեստր, պրոտովեստր, վեստարխը և պրոեդրոսը, աստիճաններ, որոնք, ի միջի այլոց, ստանում էին ոչ միայն ներքինիները (տե՛ս Guilland, Les titres auliques, հտ. 13, pp. 50—85, հտ. 14, էջ 122—157)։ Մխիթար Գոշն իր Դատաստանագրքի ՄԻԾ գլխում խոսում է «դաս պալատան» մասին, որի մեջ հանդես են գալիս վերոհիշյալ աստիճանները։ Անվիճելի է, որ նրա ձեռքում եղել է հունարեն բնագիր (տե՛ս «Գիրք դատաստանի», էջ 138—139)։

99. Տարածվում էր իտալական թերակղզու հարավում։ Նվաճեցին նորմանները XI դ. կեսերին։

100. Ենթադրվում է Կապուա-Բենեվենտի իշխան Լանդոլֆը։

101. Սկիլիցեսը առաջնորդ է անվանում բուլղարների ցար Սիմեոնին (893—927)։

102. Բնագրում՝ Φατλοῦν։ Աֆրիկայի արաբների առաջնորդի մասին է խոսքը։

103. Պարզության համար «մայրաքաղաք» ենք թարգմանում բնագրի βασιλίς («քաղաքների թագուհի»-ն), որ օգտագործում էին բյուզանդացիները Կոստանդնուպոլսի վերաբերյալ։

104. Բյուզանդական կայսրությունն ամեն տարի որոշակի հարկ էր վճարում Աֆրիկայի արաբներին՝ նրանց հարձակումները կանխելու նպատակով։

105. Կոստանդին Ծիրանածինը։

106. Մանրամասն տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 222—223, ծանոթ. 44։ Ն. Ադոնցի կարծիքով Կրինիտեսների ընտանիքից ամենավաղ հիշատակված անձնավորությունը Ալեքսիոս-Մուսելեսն է (Մուշեղ), Թեոփիլոս կայսեր (829—842) փեսան (Les Taronites, p. 225), որ այդ ընտանիքը Տարոնի Բագրատունիների մի ճյուղն է (նույն տեղում, էջ 228)։ Նաև՝ Каждан, Армяне, стр. 11։ Սկիլիցեսի հիշյալ Կրինիտեսը նույնանում է Պասքալիոս Կրինիտեսի հետ, որին պատմիչը հիշատակում է իր աշխատության 18-րդ էջում։

107. Աֆրիկայի հյուսիսում գտնվող թերակղզու (Կյուրենաիկայի) կենտրոնը։

108. Կոստանդին Ծիրանածինի։

109. Աֆրիկայի հյուսիսային ափում գտնվող Կարթագենի (հուն. Կարքեդոն) արաբներին։

110. Ռոմանոս I Լակապենոսը։

111. Կայսերական վարչության ծառայող։ Վարչությունը կազմված էր գրասենյակներից, որոնք սեկրետա էին կոչվում։ Հնում՝ կայսերական նոտար կոչվածները X. դ. սկսեցին ասեկրետես կոչվել և ենթարկվում էին պրոտոասեկրետեսին (տե՛ս Bréhier, Les Institutions, p. 166 և հտ.)։ Տիտղոսը աղավաղված ձևով հանդիպում է և Մխիթար Գոշի Դատաստանագրքում. «երրորդ՝ ասին՝ կրիտքն (կարդա՝ ասիկրիտք), որք են թղթագիրք արքային» (Մխ. Գոշ, Գիրք դատաստանի, էջ 139, 603—604)։

112. Քաղաք հարավային Իտալիայում, Ադրիատիկ ծովի ափին, այժմ՝ Օտրանտո։ Մտնում էր Իտալիա կատապանության մեջ։ 1055 թ. առաջին անգամ գրավեցին նորմանները, բայց վերանվաճվեց կայսրության կողմից 1060 թ.։ Նորմանները քաղաքը վերջնականապես գրավեցին 1068 թ.։

113. Reggio di Calabria քաղաքը՝

114. Τοῦ στόλου (Նաև τοῦ πλωΐμου) δρουγγάριος։ Ծովակալը։

115. Հայաստանի և Վրաստանի՝ Բյուզանդիային տրված օգնական զորքը։ Սկիլիցեսի συμμαχοι (դաշնակից) բառը այդ մասին է վկայում։ Մի քանի տարի անց Հայոց թագավոր Աշոտ III Բագրատունին օգնական զորք տվեց Չմշկիկին. «տուեալ Աշոտ զօրս ի տանէ Հայոց վառելոց և այր պատերազմողս իբրև տասն հազար» (Սամ. Անեց., էջ 18)։ Այդ իմաստով ճիշտ չէ Հ. Արվայլերը, որ Սկիլիցեսի հիշատակած այս զորքերին համարում է բյուզանդական բանակում ծառայող վարձկանների (*Ahrweiler, Recherches*, p. 33, n. 11)։ Որ Հայաստանը Բյուզանդական կայսրության «դաշնակից» էր, վկայում է նույն Սկիլիցեսը, որ, խոսելով Գագիկ II-ի թագավորության առաջին տարիների մասին, գրում է, թե նա հռոմայեցիների հետ պահպանում էր ὁμαιχμία զինակցություն (տե՛ս վերը, էջ 147)։ Հաջորդ էջում նույն Սկիլիցեսը ցույց է տալիս, որ Գագիկը Բյուզանդական կայսրության φίλος և σύμμαχος էր (բարեկամ և դաշնակից), հետևաբար նա պարտավոր էր պահանջի դեպքում օգնական զորք տրամադրել կայսրության։ Սա, հարկավ, չի նշանակում, որ բյուզանդական բանակում չէին կարող լինել վարձկան հայեր։ Նրանք կային և ծառայում էին իրենց հայ հրամանատարի գլխավորությամբ։ Անիի թագավորության անկումից հետո հայկական զորքերն անցան Բյուզանդական կայսրության ծառայությանը՝ մինչև որ լուծարքի ենթարկվեցին Կոստանդին Մոնոմախի կողմից (տե՛ս ծանոթ. 609)։

116. Նաև Մամեստիա (Մսիս)։

117. Այժմ Սիհուն։

118. Հայտնի չէ, այս Մոնաստիրիոտեսը ինչ ազգակցական կապ ունի Անիի պեղումների ժամանակ հայտնաբերված 1059 թվականը կրող հունարեն մի արձանագրության մեջ հիշված Հովհաննես Մոնաստիրիոտեսի հետ, որն իրեն անվանում է «Հայաստանի և Իբերիայի» կատապան։

119. Կոստանդնուպոլսի ակրոպոլսի, քաղաքի եվրոպական մասի արևելյան ծայրամասում։

120. Սբ. Սոֆիայի (տե՛ս վերը, ծանոթ. 18)։

121. Կիպրոսը արաբական տիրապետության տակ մնաց 647/648-ից մինչև 965 թ., բայց այդ տիրապետությունը շարունակական չէր, այն մի քանի անգամ ընդհատվեց։ Կղզին մի քանի անգամ անցավ կայսրության ձեռքը։ 688 թ. Հուստինիանոս II կայսեր և արաբ խալիֆա Աբդ-ալ-Մելեքի միջև կնքված պայմանագրի համաձայն կայսրությունն ու խալիֆայությունը իրար միջև էին բաժանում «Կիպրոսի, Հայաստանի և Իբերիայի (Վրաստանի) հարկերը» (*Theophanis* Chronographia, p. 363)։ Կոստանդին Ծիրանածինի տվյալներով Վասիլ I-ի ժամանակ յոթ տարի կղզու կառավարիչն էր «ազգությամբ հայ, անուն հանած Ալեքսիոսը» («Կոստանդին Ծիրանածին», էջ 173)։ Տե՛ս նաև *Pertusi*, De Thematibus, p. 26—27։

122. Արաբերեն՝ Մեմբիջ։ Քաղաք Ասորիքի հյուսիս-արևելքում։

123. Քրիստոսի անձեռագործ պատկերը կրող աղյուսի մասին մանրամասն տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 181—182։ Հարցն այն է, որ այդ աղյուսը Եդեսիայում էր գտնվում և ոչ Հիերապոլսում։ Լևոն Սարկավագը գրում է, որ Նիկեփորը գրավեց Եդեսիան և այնտեղից առավ բերեց հիշյալ աղյուսը։ Այդ դեպքից հետո նա խոսում է Հիերապոլսի (Μέμπετζε) գրավման մասին (*Leo Diac.*, p. 70—71)։ Պետք է ասել, որ Եդեսիան կայսրությունը գրավեց 1032 թ. միայն, Գեորգիոս Մանիակեսի ջանքերով։

124. Բերդ Ամանոսում, ենթադրաբար արաբական աղբյուրների Sunyāb-ը (*Honigmann*, Die Ostgrenze, S. 96. An. 7։ Պագրասի մասին տե՛ս նույն տեղում, էջ 94)։

Պագրասը հիշատակում է նաև Սամվել Անեցու Շարունակողը (էջ 144) «Պաղրասայ դղեկին» ձևով։

125. Μαῦρον ὄρος։ Ենթադրվում է Ամանոսը։

126. Պ. Խարանիսը Բուրցիսներին հայկական ընտանիք է համարում (*Charanis*, The Armenians, p. 45), Կաժդանը՝ ենթադրաբար հայկական (Каждан, Армяне, стр. 85)։ Այս Միքայել Բուրցիսին հիշատակում է և Ասողիկը («Բուռճն մաժիստրոսն», էջ 262)։ XI դ. քրիստոնյա արաբ պատմիչ Յահյա Անտիոքացին (ալ-Անտաքի) նրան կոչում է Միքայել ալ-Բուրջի։ Բերդը, որի կառավարիչ նշանակվեց Միքայել Բուրցիսը, արաբական աղբյուրներում կոչվում է Բագրաս։

Կարինի «Վրաց» (Գյուրջի) դարբասների վրա փորագրված հունարեն 992 թ. մի արձանագրության մեջ (Սարգսյան, Տեղագրութիւնք, էջ 74, նաև *Adontz*, Notes arméno-byzantines, p. 163) ի միջի այլոց գրված է. τὸ βουρ..., որ մենք վերականգնում ենք τῶ Βούρτζη (Բուրցիսին)։ Դժվար է ասել, այս արձանագրությունը պատկանում է Միքայել Բուրցիսին, թե չէ (արձանագրությունը պակասավոր է)։

127. Հմմտ. ծանոթ. 490։ Ինչպես տեսնում ենք, խոսքը ոչ թե ընդարձակ մի շրջանի վրա զորավար նշանակելու մասին է, այլ պարզապես Սև լեռան մի ամրոցի (տե՛ս *Ahrweiler*, Recherches, p. 46), որ հին ձևով չարունակում էր բանակաթեմ կոչվել։ Դեռևս X դ. առաջին կեսին հայկական հողերի վրա ստեղծվել էին խարպեզիկիոն բանակաթեմը, Լեոնտոկոմեն, Ասմոսատոնը, Խոզանը (տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 25)։ Այսպիսի փոքր բանակաթեմերի ստեղծումը շարունակվեց նաև Նիկեփոր Փոկասի հաջորդների օրով (տե՛ս Սկիլիցեսի մոտ, էջ 43)։ Դրանց զորավարները ենթարկվում էին դուքսերի կամ կատապանների հրամաններին (Ahrweiler, Recherches, pp. 49, 51)։

128. Պետրոս ստրատոպեդարխին Յահյա Անտիոքացին հիշում է նաև ալ-Ատրաբազի մականունով (Розен, Василий, стр. 2)։ Ռոզենը հիշյալ մականվան մեջ տեսնում է հունարեն τράπεζα (սեղան) բառը և ենթադրում, որ այդ տիտղոսը կրողը կապ ունի կայսերական սեղանին և հավանաբար նշանակում է կայսերական սեղանապետ (նույն տեղում, էջ 90—92)։ Հմմտ. „Histoire de Yahya", p. 814։ Բայց գուցե «ալ-Ատրաբազի»-ն Նիկեփոր Փոկասի «Ստրատեգիկոն»-ում հանդիպող τραπεζίτης-ն է, որի տակ մենք «դարպասպան» պարսկերեն բառն ենք տեսնում (տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 202,335։ Նաև՝ Бартикян, О двух терминах, стр. 76—77։ Բացառված չէ, հարկավ, որ «ալ-Ատրաբազի»-ն հենց στρατοπεδάρχης-ի աղավաղումը լինի։ Ստրատոպեդարխը զինվորական աստիճան էր Բյուզանդիայում։ Բառացի նշանակում է արշավանքի դուրս եկած զորքի հրամանատար։ Այս ժամանակաշրջանում բառը սպարապետ է նշանակում։ Մանրամասն տե՛ս *Guilland*, Le Stratopédarque, pp. 498—521, *Oikonomidès*, Les lists, pp. 334—335։

129. Արաբերեն կալա բառն է, որ ամրոց, բերդ, աշտարակ է նշանակում։ Հանդիպում է և հայկական աղբյուրներում «կլա» ձևով (հմմտ. Հռոմկլա, այն է՝ Հոռոմոց կլա։ Տե՛ս նաև Մատթ. Ուռհ., էջ 58. «կայր ի քաղաքն Ուրհայոյ երեք կլայ»)։ Կեկավմենոսը օգտագործում է բառը κουλα ձևով և դրա տակ հասկանում աշտարակ, ներքին բերդ։ «Советы и рассказы», стр. 248,250,270)։

130. Անտիոքը բյուզանդացիների ձեռքն անցավ 969 թ. հոկտեմբերի 29-ին։ Արաբները քաղաքին տիրացել էին 637 թ.։ Ասողիկի ասելով, Անտիոքը գրավողը Վարդաս Փոկասն էր («Եւ ապա ի ՆԺԸ (=969) թուականին առնու (Վարդաս Փոկասը) զԱնտիոք Մեծ քաղաք Ասորւոց» (Ասողիկ, էջ 183)։

Հետաքրքրական են Յահյա Անտիոքացու տվյալները, որոնց համաձայն Անտիոքը

գրավեցին Միքայել Բուրցիսը և Իսխակ իբն Բահրամը (Розен, Василий, стр. 78), որը ոչ այլ ոք է, քան Սկիլիցեսի հիշատակած զորավար Սահակ Վահրամը (Σαχάκιος Βραχάμιος)։ Ի տարբերություն Սկիլիցեսի, որը գրում է, թե Անտիոքի գրավումը Նիկեփորի համար ցանկալի չէր, ինչ-որ սնոտիապաշտական նկատառումներով, Յահյա Անտիոքացին ցույց է տալիս, որ Նիկեփորը ձգտում էր Անտիոքի գրավման համար հիշյալ զորավարների գործի դրած միջոցներից, որոնց հետևանքով քաղաքի մի մասը մոխրի վերածվեց (Розен, Василий, стр. 78։ Հմմտ. Histoire de Yahya, p. 825)։

*130ա.* Բնագրում χρήματα. պետք է նշել սակայն, որ Բյուզանդիայում χρήματα ասելով հասկանում էին ոչ միայն գրամը (փողը, ստակը)։ Մակեդոնացիների Βασιλικά օրենսգրքում գրված է. «χρήματα ասելով ոչ միայն դրամն ենք հասկանում, այլև շարժական և անշարժ գույքը, ստրուկներին...» („Basilicorum lib.", II, tit. 2, 214)։

*131.* Պահպանվել է Նիկեփոր Փոկասի օրենքը՝ վանքերի ու ծերանոցների կառուցումն ու եկեղեցական կալվածների հետագա ընդլայնումն արգելող։ Նիկեփորը «ախտ» էր համարում վանքերի կալվածներն ընդարձակելու, մեծամեծ շենքեր կառուցելու, ձիերի, եզների, ուղտերի անհամար հոտեր ունենալու մարմաջը, մի բան, որ վանականներին ոչնչով չի տարբերում աշխարհականներից (տե՛ս „Nov. XIX Imp. Nicephori Phocae de monasteriis", p. 249—252)։ Նիկեփորի այս օրենքը չեղյալ հայտարարեց Վասիլ II-ը՝ իր XXVI նովելլայով (988)։ Նույն տեղում, էջ 259։

*132.* Խոսքն այն մասին է, որ զինվորականի ընտանիքն ի վիճակի չլինելով հարկերը վճարել, կորցնում էր իր սոցիալական դիրքը, նրա անդամները փախչում ու ապավինում էին հոգևոր կամ աշխարհիկ հզորների՝ «դինատոս»-ների մոտ (տե՛ս *Ahrweiler*, Rescherches, p. 15)։

*133.* Հմմտ. «Կանոնագիրք Հայոց», հտ. Ա, էջ 341. «Իսկ որ ի պատերազմունս մահք գործին... վասն զձեռս սրբելոյ բարւոք է այնպիսեացն Գ ամս արտաքոյ հաղորդութեան լինել»։

*134.* Տետարտերոն բառը ծագում է τεταρτον-ից, որ «քառորդ» է նշանակում։ Դրամական այդ միավորի պարիսակած արժեքի շուրջ բավականին ստվար գրականություն կա։ Հ. Արվայլերը գտնում է, որ տետարտերոնը լիարժեք դահեկանից՝ հիստամենոնից պակաս էր 1/12-ով և ոչ թե մեկ քառորդով (τεταρτον), ամբողջի 1/3 մասի քառորդով՝ τεταρτηρον։ Լիարժեք դահեկանը բովանդակում էր 24 կերատիա, իսկ ցածրորակը՝ 22 (տե՛ս *Ahrweiler*, Nouvelle hypothese, p. 1—9։ Տե՛ս նաև՝ *Hendy*. Light weight olidi, p. 57—80)։

*135.* Հմմտ. Սաղմոս ԾԻԶ, 1. «Եթէ ոչ տէր պահէ զքաղաք, ընդունայն տքնին պահապանք նորա»։

*136.* Ավելի տեղյակ է Լևոն Սարկավագը։ Նրա ասելով, 967 թ. Փրկչի Համբարձման տոնի օրը (հունիսի 10) Նիկեփորը, ընդունված կարգի համաձայն, քաղաքի պարիսպներից դուրս՝ Պեգե կոչվող արվարձանում պրոկենսոն (շքերթ) կազմակերպեց, որի ժամանակ բյուզանդացիների և հայերի միջև կռիվ ծագեց, հայերի ձեռքով բազում քաղաքացիներ սպանվեցին։ Երբ կայսրը երեկոյան վերադառնում էր պալատ, բյուզանդացիները նրա վրա սկսեցին լուտանքներ ու քարեր շպրտել (*Leo Diac*,. pp. 64—65)։ Այս փաստը կարևոր է այն տեսակետից, որ հայերի անկարգությունների համար ժողովուրդը զազազում է կայսեր դեմ, հարկավ, նրա հայկական ծագումը նկատի ունենալով։ Սխալված չենք լինի, եթե ասենք, որ «հայերի» տակ ենթադրվում են հայազգի զինվորները, որոնցից էր բաղկացած կայսեր պահակախումբը։ Զոնարասը գրում է, որ երբ նավաստիների և հայերի կռվի մասին իմացան Կոստանդնուպոլսի անկարգ քաղաքացիները,

*խմբեր կազմելով կայսեր վերադարձին դուրս եկան և փայտերով սկսեցին հարվածել հայերին (Zon., IV, p. 86)։*

*137. Քաղաքապետ, մասնավորապես Կոստանդնուպոլսի քաղաքապետը։ Պաշտոնն առաջին անգամ հանդես է գալիս IV դ. կեսերին, հատուկ նշանակություն ստացավ V դ.։ էպարքոսը համարվում էր «քաղաքի հայրը», նրան նշանակում էր անձամբ կայսրը։ Կայսեր մայրաքաղաքից բացակայելու դեպքում կարևորագույն հարցերը վճռում էին պրեպոզիտոսը, մագիստրոսը և էպարքոսը։ Վերջինս կարգավորում էր մայրաքաղաքի տնտեսական կյանքը, քննության ենթարկում քաղաքի արհեստավորների ու առևտրականների դատական գործերը։ Քաղաքի առևտրա-արհեստավորական կորպորացիաները էպարքոսին էին ենթարկվում։ Քաղաքային ինքնավարության անկման հետ միասին բարձրացավ էպարքոսի դերը։ էպարքոսի դերը արաբական արևելքում կատարում էր մուհթասիբը, որ XI դ. կեսերին հիշատակված է նաև Անիում։ էպարքոսի մասին տե՛ս* «Византийская книга эпарха».

*138. Պեգեն* Πηγή *(չշփոթել* Πηγαι*-ի հետ) Կոստանդնուպոլսի մի թաղամաս էր ժամանակակից Բալըկլըն։ Խոսքը Պեգեի սբ. Աստվածածնի վանքի մասին է, Կոստանդնուպոլսի ամենանշանավոր սրբարաններից մեկի, որ հիշատակում է դեռևս Պրոկոպիոս Կեսարացին («Կառուցումների մասին», Ա, 3)։*

*139. Հենց այդպես մռայլ գծերով է Նիկեփոր կայսրը հանդես գալիս և ասորական աղբյուրներում. «Թագաւորեաց Նիկիփոռ,— գրում է Միքայել Ասորին,— այր տգէտ և ատեցող ուղղափառութեան». «անօրէն թագաւորն խոստանայր աթոռս և պատիւս ուղղադաւանիցն (Նկատի ունի միաբնակներին), թէ ասեն միայն ղերկու բնութիւն. և սպառնայր, թէ ոչ լսեն նմա»* (Միխ. Ասորի, *1870, էջ 388, 389։ Նաև՝ 1871, էջ 380)։ Ասորի պատմիչի նման գնահատականի պատճառը Նիկեփորի թունդ քաղկեդոնականությունն էր։ Բայց զարմանալին այն է, որ կայսրը բոլորովին այլ լույսի տակ է հանդես գալիս հայկական աղբյուրներում. «այր բարի, սուրբ և աստուածասէր, լցեալ ամենայն առաքինութեամբ և արդարութեամբ, յաղթող և քաջ ի վերայ ամենայն պատերազմաց. ողորմած ի վերայ ամենայն հաւատացելոց Քրիստոսի, այցելու այրեաց և գերեաց. դարմանիչ որբոց և տնանկաց»* (Մատ. Ուռհ., *էջ 5), «ամենաբարի արքա» (Նույն տեղում, էջ 6—7), «սուրբ թագաւոր» (Նույն տեղում, էջ 7) և այլն։ Պահպանվել է Պանդալեոն քահանայի մի խոսքը, որը սեղմ գծերով բնորոշում է Նիկեփոր Փոկասին։ Հիշյալ Պանդալեոնը, ամենայն հավանականությամբ, նույնանում է Հովհաննես Զմշկիկի՝ հայոց Աշոտ III Ողորմածին ուղարկած նամակի մեջ հիշվող հայոց վարդապետ Ղեոնդի հետ՝ «մեծ իմաստասէր Պանդալեոնի»* (Մատ. Ուռհ., *էջ 28)։ Պանդալեոնը գրում է. «Յամս Նիկիփորայ տիեզերակալի կայսեր Յունաց, քաջի և առաքինոյ, յաղթող ի պատերազմունս հեթանոսաց, որ ջարդեաց զլուծ իսմայելական՝ որ ի վերայ պարանոցի քրիստոնէից, և խորտակեաց ղկզակս նոցա, և առ զանառիկ ամուրս նոցա, մանաւանդ զմեծն և զականաւորն և զհռչակաւորն նոցա զՏարսոն Կիլիկեցւոց, և զԿրետէ... թագաւորն այն՝ երկրորդ զկնի թագաւորութեան վերնոյն... եհաս ինձ տառապեալ Պանդալէոնի... գնալ ...ի թագաւորեալ քաղաքն Բիւզանդիոն...ի ՆԺԴ (965) թուականութեանս Հայոց»։* Ալիշան, *Հայապատում, էջ 295—296։ Յահյա Անտիոքացին էլ գրում է, որ Նիկեփորը «կառավարում էր հոյակապ և շատ արդար, գործերը վարում էր գերազանց ու բացարձակապես անթերի»* („Histoire de Yahya“, p. 826)։

*140. Բուլղարիայի իշխան Պետրոսը ցար Պետրոսն է (927—969)։*

*141. Բյուզանդական հեղինակները, երբ խոսքը արևմուտքի մասին է, թուրքերի տակ նկատի ունեն հունգարացիներին։ Զոնարասը պարզ գրում է. «Թուրքերը, այսինքն հուն-*

գարացիներու» (Zon., IV, p. 87)։ Սկիլիցեսը մի քիչ հետո (էջ 34) գրում է «արևմուտքում՝ Պաննոնիայում հաստատված թուրքերս»-ի մասին։ Բյուզանդացիները տվյալ ժողովրդին անվանում են «հունգարս»-ներ (οὔγγροι), հոներ, մաջարներ (ματζαροι), սաբարտիասֆալի (սևորդիք), անտիկ շրջանի տերմինով՝ պեոններ և այլն (տե՛ս Moravcsik, Byzantium and the Magyars, Budapest, 1970)։ Մատթեոս Ուռհայեցու մոտ հիշվում է «աշխարհն Ունգրաց» (Հունգարիա) (Մատթ. Ուռհ., էջ 254), իսկ նույն հեղինակի հիշատակած «խարտյաշներին» (էջ 109) Դյուլորիեն նույնացնում է հունգարացիների հետ „Chronique de Matthieu d'Edesse", p. 404—405.

142. Իմա Դանուբը։

143. Խոսքը Կիևյան Ռուսիայի մեծ իշխան Սվյատոսլավ Իգորովիչի մասին է (945—972)։ «Ռուս» ցեղանունը (Hros կամ Hrus) առաջին անգամ հիշում են ասորական աղբյուրները (Զաքարիա Հռետոր, VI դար)։ Ն. Վ. Պիգուլևսկայայի կարծիքով, այդ ցեղանունը պատմիչին հայտնի է հոների մոտ գերի ընկած Ամիդի հայերից։ Բյուզանդիայում այդ ցեղանունն առաջին անգամ վկայված է 838 թ., իսկ «Ռուսիան» առաջին անգամ հիշատակում է Կոստանդին Ծիրանածինը (X դ. կեսերը)։ Մանրամասն տե՛ս Соловьев. Византийское имя России, стр. 134—155.

144. Լևոն Սարկավագը նշում է վճարված գումարը, 15 կենտինար ոսկի (108 հազար դահեկան)։ Leo Diac., p. 63։

145. Հոնորիասը առանձին նահանգ էր, Հուստինիանոս I-ը միացրեց նրա արևելքում ընկած Պափլագոնիային։ Հետագայում Բուկելլարների բանակաթեմի մաս կազմեց։

146. Դոյութիւն ուներ մի քանի տեսակի մոդ։ Տվյալ դեպքում հավանաբար նկատի ունի հռոմեական մեծ մոդը, որի կշռորդը 9 կգ. 792 գ. էր։

147. Կշռում էր 39 կգ. 168 գ.։

148. Բնագրում φροντίδες։ Այս բառը շատ ճիշտ կերպով «հոգս» են հասկանում հայ հեղինակները։ Արիստակես Լաստիվերցին, օրինակ, գրում է Միքայել IV Պափլագոնացի կայսեր գործունեության մասին, թե նա իր եղբայրներից մեկին «տայ զԹէսաղոնիկն ...և հաւատայ ի նա զհոգս Բուլղարաց և արևմտական կողմանց, և զմինն անուանէ դեմեսլիկոս, և առաքէ ի Մեծն Անտիոք զՏաճկաստանի և զհարաւային կողման զհոգս յանձն առնելով նմա... իսկ զերրորդն յեղբարցն... զամենայն հոգս և զիրաւունս պալատին տալով ի ձեռս նորա» (Արիստ. Լաստ., էջ 47)։

Կ. Յուզբաշյանը գտնում է, որ վերոհիշյալ բոլոր դեպքերում հայերեն «հոգս»-ը համապատասխանում է բյուզանդական πρόνοια տերմինին (Арисmакэс, стр. 24, 151), որ «հոգս»-ը πρόνοια-յի պատճենահանումն է, այնինչ Լաստիվերցին այդ բառի մեջ ամենևին էլ տեխնիկական իմաստ չի դնում և նրա հոգը ավելի φροντίς-ն է, քան πρόνοια-ն։ Լաստիվերցու հենց իր (և մեր) օգտագործած հատվածում հոգը օգտագործված է ոչ միայն երկրի, նահանգի վերաբերյալ հոգացություն ունենալու, կառավարելու իմաստով, այլև պալատի։

149. Լևոն Սարկավագը գրում է, որ Նիկեփոր Փոկասի եղբայր Լևոն կուրապաղատը հրաժարվեց տղամարդուն վայել զինվորականի կյանքից, նա սկսեց էժան գնով հացահատիկ գնել և ապա թանկ ծախել։ Նրա առևտրով քաղաքացիները բողոքում էին, որովհետև երկու եղբայրները հասարակաց դժբախտությունն իրենց համար շահույթի աղբյուր են դարձրել (Leo Diac., p. 64)։

150. Հովհաննես VII-ը աթոռակալել է 964—966 թ. մայիսի 28-ը։

151. Անտիոքի մելքիտ պատրիարք Քրիստափոր (960—969)։

152. Գրիգորն ու Բագարատը Տարոնի իշխան Աշոտի որդիններն էին։ Նրանք Տարո-

նը ղիջեցին Բյուզանդիային 966 թ. «ի Նժե թուականին,— գրում է նա,— խաւարեցաւ արեգակն. և վախճանեցաւ Տարօնոյ իշխանն Աշոտ. Եւ Տարօնոյ Հոռոմք տիրեցին» (Ասողիկ, էջ 183)։ Տարոնի Բագրատունիները, հաստատվելով Բյուզանդիայում, ծնունդ տվեցին Թոռնիկյանների և Տարոնացիների նշանավոր ընտանիքներին, որոնք կարևոր դեր խաղացին կայսրության մեջ դարեր շարունակ։ Թոռնիկյանների նախահայր է համարվում Տարոնի իշխան Ապողանեմի (մեռ. 900) որդի Թոռնիկի որդին (Նիկողայոսը կամ Լևոնը, որն իր մոր հետ եկավ Կոստանդնուպոլիս), իսկ Տարոնացիների՝ վերջին իշխաններ Գրիգորն ու Բագարատը (ըստ Ադոնցի՝ ավելի շուտ Գրիգորը, քան Բագարատը)։ Տե՛ս Adontz, Les Taronites. p. 242—243, 251—263։ Ավելի մանրամասն տե՛ս Каждан, Армяне, стр. 17—25։

153. Վարդաս Սկլերոսի ապստամբության ճնշումից հետո Գրիգորը ստացավ մագիստրոսի պատվաստիճան (տե՛ս վերը, էջ 75), ըստ Ադոնցի՝ 991 թ. (տե՛ս Adontz, Les Taronites, p. 243, հմմտ. նաև 233։ Բայց Ասողիկը գրելով Խն (991) թվականի դեպքերի մասին, Գրիգորին արդեն մագիստրոս է անվանում (Ասողիկ, էջ 260)։

154. Արեգակի այս խավարման մասին հիշատակում է և Ասողիկը. «և ապա ի Նժե թուականին խաւարեցաւ արեգակն. և վախճանեցաւ Տարօնոյ իշխանն Աշոտ. Եւ Տարօնոյ Հոռոմք տիրեցին» (Ասողիկ, էջ 183)։ Տե՛ս Dulaurier, Recherches. p. 278։ Բայց գիտական հաշվումներով դեկտեմբերի 22-ին խավարում տեղի ունեցավ 968 թ. (Grumel, La chronologie, p. 464), մի բան, որ չի համապատասխանում Տարոնի իշխան Աշոտի մահվան բնդունված թվականի հետ (966)։ Կաժդանը վերջինիս մահը համարում է 968 թ. (Каждан, Армяне, стр. 18)։

155. Մատթեոս Ուռհայեցին գրում է, որ իբր Չմշկիկը «մահապարտ» էր և բանտարկված ինչ-որ կղզում (Մատթ. Ուռհ., էջ 6)։

156. Զինվորական ստորաբաժանում, հրամանատարը մեկ տաքսիսի (128 հոգուց բաղկացած զորամասի)։

157. Ն. Ադոնցը գրում է, որ այդ երկուսից մեկը, անկասկած, Սահակ-Վահրամն է (տե՛ս ծանոթ. 259)։

158. Հասկանալի է, ներքինու։

159. Միքայել Մալեյինոսը X դ. առաջին կեսի նշանավոր վանական գործիչ էր, Կիմինա լեռ վանքի վանահայրը։ Նրա հոգևոր որդին էր սբ. Աթանասիոսը, Աթոնի հիմնադիրը („Vie de Saint Athanase", p. 18)։ Միքայել Մալեյինոսի վարքը պահպանվել է (տե՛ս Petit, Vie et office de Michel Maleinos)։

160. Հետաքրքիր մանրամասնություններ է հաղորդում Մատթեոս Ուռհայեցին. «Նըստեալ կայր ի դահոյսն իւր ի ժամ երեկոյին և վառեալ մոմեղինօք ընթեռնոյր զաստուածային կտակարանսն» (էջ 6), Թագուհին եկավ իր մոտ և «շաղապատէր զթագաւորաւն և զթուրն, որ կայր մօտ առ նա, փոխակապս արարեալ պնդագոյն» (էջ 6)։ Նա հիշում է նաև այն խոսակցությունը, որ կայսրն ունեցավ Չմշկիկի հետ, նախքան սրախողխող լինելը։ Ուռհայեցին համոզված է, որ հենց Չմշկիկն է կայսրին սպանել, այնինչ ըստ Սկիլիցեսի՝ Լևոն Աբալանտեսը։ Ավելորդ չէ նշել, որ Անանուն «Թուրքական» ձեռագրի (այդ բնագրի մասին տե՛ս Розен, Василий, стр. 76, прим. 6), յուսանցքում գրված է. «այդ թվին իր հոգին գեհենին հանձնեց հայոց թագավորը, նզովյալ դոմեստիկոս Նիկեփորը» (Розен, Василий, стр. 119)։

Եպիսկոպոս Հովհաննես Գեոմետրես Կիրիոտեսը Նիկեփորի հիշատակին «դամբանական» գրեց, ընդգծելով, որ այնքան թշնամիներին հաղթողը, պարտվեց իր կնոջ անհավատարմությունից։ Բանաստեղծը, նկատի ունենալով ռուսների սպառնալիքը, կոչ է

անում Նիկեփորին՝ գերեզմանից բոլոր հռոմայեցիների փրկության հասնել, «բացի կնոջ»։ Դամբանականը հրատարակել է «Bessarione» հանդեսում *S. Mercati*-ն. հտ. 37. 1921, էջ 160։

Նիկեփոր Փոկասին հունական եկեղեցին սրբացրել է։ Պահպանվել է սրբագործված Նիկեփորի պաշտոնը, որը հրատարակվել է Լ. Պտիի կողմից (*Petit*, Office inedit, pp. 398—420)։

161. Կայսեր հանդերձարանապետը, որ աստիճանաբար սկսում է վարել նաև կայսեր անձնական գանձարանը։ IX և X դարերում պրոտովեստիարիոսը բացարձակապես ներքինի էր լինում։ XI դ. կան և ոչ ներքինի պրոտովեստիարիոսներ։ Նրանք մտնում էին կայսեր «մտերիմների» շքախմբի մեջ։ Մեր պատմիչ Հովհաննես Սկիլիցեսը հենց պրոտովեստիարիոս էր։ Մանրամասն տե՛ս *Guilland*, Le Protovestiaire, p. 216—236։ Նաև «Կոստանդին Ծիրանածին», էջ 283, ծանոթ. 197։

162. Սֆենդոնեն ձիարշավարանի հարավ-արևելյան մասում գտնվող շենք էր։

163. Լևոն Սարկավագի ասելով Նիկեփորն ապրեց 57 տարի, թագավորեց 6 տարի և 4 ամիս։ Նրա դին դեկտեմբերի 11-ի (շաբաթ) օրը մնաց բաց երկնքի տակ, ձյան վրա, իսկ ուշ գիշերը մի փայտյա դագաղի մեջ դնելով տարան սբ. Առաքելոց եկեղեցին ու թաղեցին կայսերական գերեզմանում (*Leo Diac*., p. *91*)։ Հակառակ, որ պատմիչը նշում է Նիկեփորի անժողովրդականության մասին, այնուամենայնիվ, ընդգծում է և նրա դրական կողմերը։ Նա քաջ էր ու հզոր, պատերազմական հարցերում ամենափորձված, ծայր աստիճան տոկուն, ժուժկալ, մեծախոհ ու հանճարեղ՝ քաղաքական հարցերում, միանգամայն արդար դատավոր, ճշգրիտ օրենսդիր, շատ հավատացյալ։ Պատմիչը գրում է, որ շատերը նրան մեղադրում էին այն բանում, որ անսասան առաքինություն և արդարություն էր պահանջում բոլորից։ Այդ պատճառով օրինազանցների համար նա անտանելի էր։ Եթե նրան չսպանեին,— գրում է նա,— ապա նա հռոմեական պետությունը աննախընթաց փառքի կհասցներ (*Leo Diac*., p. *89—90*)։ Սկիլիցեսի երկը բովանդակող Vindobonensis Hist. gr. 35, Coisl. 136 և Matritensis II Pgt. 247 ձեռագրերը ունեն հետևյալ ընդմիջարկությունը. «Նրա շիրմի վրա Մելիտենեի մետրոպոլիտ Հովհաննեսը գրեց հետևյալը.

Այրերի մեջ ամենահատու սուրը
կնոջ ու սրի զոհը դարձավ,
ով պետության համայն հողին էր տիրում,
որպես փոքրիկ բնակվեց մի թիզ հողում,
նրան, ումից, գիտեմ անգամ գազանները սարսափում էին,
սպանեց կողակիցը՝ մեկ անդամի սիրույն։
Նա, ով գիշերն անգամ չէր ուզում մի փոքր քնել,
Հավերժ ննջում է գերեզմանում։
Խառն տեսարան։ Արդ, վե՛ր կաց, արքա՛,
շարքի՛ դիր հետևակին, հեծյալներին ու նետաձիգներին,
զորքը քո, փաղանգներն ու գնդերը։
Մեր վրա է հարձակվում ռուսների բանակը,
սկյութների ցեղերը ձգտում են կոտորածի,
ավարառում են քո քաղաքը ցեղերը համայն,
որոնք նախկինում Բյուզանդիոն քաղաքի
դարբասների առջև դրված քո գրությունից անգամ սարսափում էին։

*Այո՛, մի՛ անտեսիր դա։ Դեն նետիր քեզ ծածկող*
*քարը և քարերով հալածական արա օտար*
*գազաններին, իսկ մեզ տո՛ւր հենարան*
*վեմյա, հիմք հաստատուն։*
*Իսկ եթե չես ուզում գերեզմանից մի փոքր երևալ,*
*հողի միջից ցեղերի վրա գոռա լոկ,*
*գուցե դրանով միայն նրանց ցրիվ տաս ու հալածես։*
*Իսկ թե այդ էլ չես ուզում անել, քո գերեզմանում ընդունիր*
*մեզ բոլորիս։ Դու մեռած անգամ կարող ես*
*բոլոր քրիստոնյաներին փրկել,*
*դու, ով բոլորին, բացի կնոջից, հաղթեցիր»։*

*Իսկ* Ottob. *309 և* Ottob. *361 ձեռագրերում (XVI դ.) նշում կա այն մասին, որ Հովհաննես Մելիտենացու դամբանականը գրված էր Պերիբլեպտոսի աստվածածնի վանքում գտնվող կայսեր շիրմի վրա, վանքի, «որին այժմ տիրում են հայերը և այն կոչում Սուլու մոնաստիր» (տե՛ս Ioan. Scyl.* Synopsis, p. 282—283)*։ Գեորգ Վանականի Շարունակողը գրում է, որ Նիկեփորից «վախեցան արաբները, սարսափեցին հայերն ու ասորիները, երկյուղեցին սարակինոսները, փախուստի դիմեցին թուրքերը և հռոմայեցիները վերագրավեցին իրենց հողերն ու շրջանները» (Georgii Monachi* Chronicon, p. 861)*։*

*164. Ջմշկիկի մասին մանրամասնությունները տե՛ս վերը, ծանոթ, 61։ Այստեղ ավելացնենք, որ ըստ Լևոն Սարկավագի նա ծագում էր Արմենիակների բանակաթեմից և այդ է պատճառը, որ երբ նա գահ բարձրացավ, այդ բանակաթեմը ազատեց հարկերից* (φόρων τε ἀτέλειαν τῷ τῶν Ἀρμενιακῶν θέματι παρέσχεν· ἐκεῖθεν γὰρ ὥρμητο. *Leo Diac.*, p. 100)*։*

*165. Մատթեոս Ուռհայեցին, հայտնի չէ ինչ աղբյուրից քաղելով, գրում է, որ Ջմըշկիկը «զորդիս Ռոմանոսի թագաւորին (խոսքը Կոստանդնի և Վասիլի մասին է) փախոյց ի յանօրէն թագուհւոյն ի Վասակաւան ի Յանձիթ գաւառին. տարան զՎասիլն և զԿոստանդինն առ Սպրամիկն՝ մեծ Մխիթարայ մայրն, զի մի զեղ մահու տացէ նոցա թագուհին և սպանանիցէ զնոսա» (էջ 7)։ Ն. Ադոնցը գրում է, որ Մխիթարը իրական անձնավորություն է՝ բյուզանդական աղբյուրներին հայտնի, որ նրան Ջմշկիկը ծանոթ պիտի լիներ անձամբ, քանի որ ինքն էլ այդ շրջաններից էր։ Ինչ վերաբերում է լեգենդին, ապա դժվար է նրա իսկությունը որոշել։ Այդ մասին տե՛ս Adontz,* Notes Armeno-byzantines, p. 138*։ Համա. նաև Каждан,* Армяне, стр. 100.

*166. Լևոն Սարկավագը գրում է, որ Ջմշկիկը Վասիլին դարձրեց իր պարակիմոմենոսը (Leo Diac.,* p. *94)։*

*167. Թարգմանաբար նշանակում է «նախագահ»։ Աստիճանը հիմնադրեց հենց Նիկեփոր Փոկասը՝ իր թագավորության սկզբում։ Կրողները գլխավորապես ներքինիներ էին։ Բրեյեն գտնում է, որ այդ աստիճանի կրողը սենատի նախագահը չէր, այն ծերակուտական բարձրագույն աստիճան էր։ Brehier,* Les Institutions, p. 123—124*։ Իկոնոմիդիսը գտնում է, որ պրոեդրոս սենատի նախագահ է նշանակում (Oikonomidès* Les lists, p. 299, *տե՛ս նաև Diehl,* La signification, p. 105—117)*։*

*168. Կուրապաղատի աստիճանը ծագում է նախկին* cura palatii-*ից, որ վաղ շրջանում (IV դ.) պալատական պաշտոն էր՝ անմիջականորեն կապված կայսերական պալատի հետ։ Այս կուրապաղատը մեծ պալատի նվիրապետության մեջ ամենից բարձր էր*

կանգնած, նա կայսերական գվարդիայի հրամանատարն էր։ Բայց V դ. ընթացքում հանդես է գալիս նույն անվամբ մի նոր պաշտոն, որ երկրորդական տեղ է գրավում պաշտոնեության մեջ և նախատեսված էր կայսերական պալատում տարբեր սպասավորության համար։ Այդպիսով cura palatii-ի և կուրապաղատի միջև արդեն ոչ մի ընդհանուր բան չկար։ VI դ. կուրապաղատը արքունիքի ամենաբարձր աստիճանավորներից էր։ Նա կայսրից, կեսարից և նոբելիսսիմոսից հետո չորրորդ մարդն էր։ Կուրապաղատը կարևոր դեր էր խաղում հատկապես Հուստինիանոս I-ի ժամանակ։ IX դ. վերջից կուրապաղատի տիտղոսը հասարականում է, մասամբ այն պատճառով, որ սկսվեց շնորհվել օտարերկրացի իշխաններին։ Առաջին հայտնի հայազգի կուրապաղատը նշանավոր ռազմական գործիչ, Արմենիակների բանակաթեմի զորավար Արտավազդն էր (VIII դ.), որ օժանդակեց Լևոն III-ին գահ բարձրանալու։ Հայաստանի հայերն առաջին անգամ կուրապաղատի տիտղոսին են արժանանում VI դ. սկսած։ 642 թ. այդ տիտղոսն ստացավ հայոց իշխան Սմբատը։ Կուրապաղատի մասին ընդհանրապես, և հայազգի կուրապաղատների մասին մասնավորապես տե՛ս Guilland, Le curopalate։ Նաև Oikonomidès, Les lists, p. 293։ Bury, IAS. p. 33–35։

Գոյություն ուներ նաև պրոտոկուրապաղատ (կուրապաղատների առաջինը) տիտղոսը։ Հայոց մեջ այն կրում էր Սենեքերիմ Արծրունու տոհմակից Աբդլմսեհը, որդին մեծ իշխանին և սուրբ մարտիրոսին Թոռնկայ»։ Թովմա Արծրունու Շարունակողը նրան անվանում է «պրոտոկուրապաղատ» (Թովմա Արծրունի, էջ 502, 504)։

169. Պատվաստիճանը հանդես եկավ Նիկեփոր Փոկասի օրոք։ Հաճախ է հանդիպում և հայկական աղբյուրներում։ XI դ. առաջին կեսին գործած իշխան Սարգիսը (Սյունեցին) վեստ էր, որի մասին նա հիշատակում է իր 1033 թ. արձանագրության մեջ. «վեստ և դուկ արևելից» (Կոստանյան, Վիմական տարեգիր, էջ 17)։ Վեստ էր նաև Գրիգոր Մագիստրոսը՝ «Մօնումախին մագիստրոս, վէստ և դուկ» (Գրիգոր Մագիստրոսի Թղթերը, էջ 213)։ Գրիգոր Մագիստրոսը հետագայում դարձավ նաև վեստարխ (հմմտ. Մաշտոցի անվան Մատենադարանի № 4669 ձեռագիրը, էջ 113ա, 117բ)։ Պապադոպուլո—Կերամևսի կարծիքով Նիկեփոր վեստը նույնանում է Նիկեփոր Ուրանոսի հետ, Լևոն կուրապաղատի որդու։ (Παπαδόπουλος-Κεραμεύς, Βυζαντινά ἀνάλεκτα, 66—70)։ Դարրուզեսը մերժում այդ նույնացումը (տե՛ս Darrouzès, Epistoliers, p. 45, n. 45)։

Վեստ աստիճանը կրողը սկզբում պետք է առնչություն ունենար կայսեր հանդերձարանի հետ։ Հետագայում, XI դ. հանդես եկավ նաև պրոտովեստ տիտղոսը (տե՛ս Oikonomidès, Les lists, p. 294)։

170. Բնագրում՝ Βάρδαν τὸν νεώτερον։ Այդպես է անվանված, չշփոթվելու համար Նիկեփոր II Փոկասի հայր Վարդասի հետ։ Այս Վարդասը Նիկեփոր II Փոկասի եղբայր Լևոնի որդին էր։ Խոսքը հետագայում ապստամբություն բարձրացրած Վարդաս Փոկասի մասին է։ Վարդասը Խաղդիայի և Կոլոնիայի դուքսը չէր, այլ Արևելից զորքերի սպարապետը. Արևելից սխոլերի դոմեստիկոսը, բայց քանի որ նրա զորքերը կենտրոնացած էին վերոհիշյալ նահանգներում, Սկիլիցեսը նրան անվանում է Խաղդիայի և Կոլոնիայի դուքս (տե՛ս Ahrweiler, Recherches, p. 59)։ Լևոն Սարկավագը նույն անձնավորության մասին գրելիս ցույց է տալիս, որ նա «ստացել էր դուքսի պատվաստիճանը և մնում էր Խաղդիայի սահմաններում» (Leo Diac, p. 96, 112—113)։ Ըստ Ասողիկի Վարդաս Փոկասը մասնակցել է 968 թ. Մանազկերտի դեմ մղված կռիվներին. «Եւ ի Նժէ թուականին Վարդ եղբօրորդի Նիկիփոռայ զօրու ծանու գայ յԱպահունիս, պաշարէ զՄանազկերտ քաղաք. և առեալ զնա՝ ի հիմանց րրեալ խրամատեաց զպարիսպ նորա» (Ասողիկ, էջ 183), հետևաբար նա պաշտոնանկ կարող էր լինել այդ թվականից հետո։

171. Տե՛ս վերը, էջ 24—25։

172. Նիկեփոր II Փոկասն ու Չմշկիկը ազգականներ էին. Չմշկիկը Նիկեփորի զարմիկն էր (ἀνεψιὸς γὰρ πρὸς μητρὸς ὁ Ἰωάννης τῷ Νικηφόρῳ ἐχρημάτιζε, 38)։ Այս մեղադրանքը երկու տարի անց Չմշկիկին ներկայացրեց Վարդաս Փոկասը — τοῦ γένους ἀποκαλέσας παλαμναῖον αὐτόχειρα (*Leo Diac.*, p. 116), որ նա սպանեց իր մորեղբորը, «քնած առյուծին» (Նույն տեղում) p. 119։

173. Արմենիակների բանակաթեմի մասին տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 167—169, 318—319։ Բացի բյուզանդական հեղինակներից նրա մասին խոսում են նաև արաբ պատմիչները, այդ թվում և Ահմադ իբն Յահյա ալ-Բալազուրին։ Նա ի միջի այլոց գրում է, թե Ջուրջանն (Վրաստան) ու Առանը (Աղվանք) գրավվեցին խազարների կողմից, իսկ Հայաստանի մնացած մասին տիրեցին հույները։ Այն գտնվում է «Արմանիյակուսի տիրոջ» («սահիբ Արմանիյակուս») իշխանության ներքո։ Նույն հեղինակը ցույց է տալիս, որ երբ Հաբիբ իբն Մասլամա-լ Ֆիհրին ներխուժեց Հայաստան (դա տեղի ունեցավ 645/646—653/654 թթ. միջև), արաբ զորավարը Կալիկալան (Կարինը) գրավելուց հետո վտանգի ենթարկվեց բյուզանդական մի մեծ զորաբանակի կողմից, որը գլխավորում էր «բատրիկ Արմանիյակուսը»։ Այս փաստը ցույց է տալիս, որ այդ ժամանակաշրջանում Արմենիակների հրամանատարը այլևս տուրմարխ չէր, այլ, անկասկած, զորավար, հետևաբար այն ժամանակ Արմենիակների բանակաթեմ որպես այդպիսին գոյություն ուներ, և դա բյուզանդական աղբյուրներում հիշատակված Արմենիակների բանակաթեմի զորավար Սաբորիոսից (667) տասնչորս տարի առաջ (տե՛ս *Kaegi*, The Armeniac Theme, pp. 273—277)։

174. Հավանաբար հայտնի Մանտինեան Պելոպոնեսում։

175. Նիկեփոր կայսրը փորձել էր իր վերահսկողության տակ վերցնել եպիսկոպոսների ձեռնադրության գործը։ Չմշկիկը 969 թ. Պոլիեկտոս պատրիարքի թախանձագին խնդրանքով վերացրեց նախորդ կայսեր կարգադրությունը։ Մանրամասն տե՛ս *Huillier*, Quelques remarques, pp. 101—105։

176. Κοίλη Συρία։ Դրա տակ հները ենթադրում էին Լիբանանի և Անտիլիբանանի միջև ընկած Ասորիքի մեծ հովիտը։ Հետագայում այդ հասկացության մեջ մտան հարևան այլ շրջաններ ևս, այդ թվում և Դամասկոսի և Էմեսայի (Հոմս), ապա ընդհանրապես ողջ հարավային Ասորիքը և Պաղեստինը։

177. Ռուսները մուտք գործեցին Բուլղարիա որպես Բյուզանդիայի դաշնակիցներ։ Կայսրությունն ուզում էր նրանց օգնությամբ ճնշել բուլղարներին։ Բայց մուտք գործելով Բուլղարիա, ռուսներն այլևս չուզեցին հեռանալ այդտեղից, դեռ ավելին, դաշնակցեցին բուլղարների հետ ընդդեմ կայսրության։ Այդ բանը Բյուզանդիային դժվարին դրության առաջ կանգնեցրեց և ստիպեց երկարատև ու դժվարին պատերազմ մղել նրանց դեմ։

178. Անտիոքի մելքիտ պատրիարք Թեոդորոս II-ը (23 հունվար 970—9 մայիս 976 թթ.)։ Նրանից առաջ մի քանի ամիս աթոռակալել էր Եվստրատիոսը։ Լևոն Սարկավագը ավելացնում է, որ այս Թեոդորոսը Կոլոնիայից էր և կանխագուշակել էր Նիկեփորի և Չմշկիկի գահին տիրանալը (*Leo Diac.*, p. 100—101)։

179. Բյուզանդական հեղինակները որպես կանոն մանիքեցի են անվանում պավլիկյաններին։ Ֆիլիպուպոլիսը (այժմ՝ Պլովդիվ) Կոստանդին V Կոպրոնիմոսի ժամանակներից ի վեր պավլիկյանների գաղթեցման վայր էր։ Հիշյալ կայսրը դեռևս 756 թ. այնտեղ բռնագաղթեցրեց Կարինի և Մելիտենեի պավլիկյաններին։ Չմշկիկի բռնագաղթեցման մասին կարևոր հիշատակություն կա Աննա Կոմնենայի «Ալեքսիականում»։ «Պավլիկյան-

ները,— գրում է նա,— ամենավայրենի են, բիրտ ու վտանգներից չվախեցող։ Նրանց Հովհաննես Չմշկիկը, այն հրաշալի կայսրը, պատերազմներում հաղթելուց հետո, դերեվարելով Ասիայից, այն է խալյուբներից (Պոնտոսից) և հայկական վայրերից (ἀπὸ τῶν Χαλύβων καὶ τῶν Ἀρμενιακῶν τόπων) Թրակիա տեղափոխեց և ստիպեց բնակվեն Ֆիլիպուպոլսի շրջակայքում։ Այդպիսով նա մի կողմից նրանց հեռացրեց այն ամենաանառիկ ամրոցներից ու բերդերից, որոնց նրանք տիրում էին բռնությամբ, իսկ մյուս կողմից նա ապահովագույն պահապաններ դարձրեց նրանց սկյութական (իմա՝ ռուս-սլավոնական) այն արշավանքների դեմ, որոնք հաճախ տեղի էին ունենում բարբարոսների կողմից Թրակիայի շրջանների վրա... Հովհաննես Չմշկիկը մեզ թշնամի մանիքեցի ազանդավորներին դարձնելով դաշնակից, կովող ուժ ստեղծեց ընդդեմ քոչվոր սկյութների, որից հետո քաղաքների բնակչությունը շունչ քաշեց բազմաթիվ ասպատակություններից»։ Հայտնի է սակայն, որ պավլիկյանները վերջնականապես ջախջախվեցին 879 թ. գեռ Վասիլ I-ի ժամանակ և հարյուր տարի անց հազիվ թե նրանք այդպիսի ուժ ներկայացնեին, տիրեին ամենաանառիկ ամրոցների ու բերդերի, զինված դիմադրություն ցուցաբերեին կայսրությանը։ Ըստ երևույթին խոսքը թոնդրակեցիների մասին է, որոնք իսկապես այդ ժամանակ զգալի ուժ էին ներկայացնում և դիմադրում Բյուզանդիայի առաջխաղացմանը Հայաստան։ Թոնդրակեցիները բյուզանդական աղբյուրներում չեն հիշատակվում և դա բացատրվում է միայն ու միայն այն հանգամանքով, որ նրանք թոնդրակեցիներին համարում էին պավլիկյան։ Այդ մասին հստակ վկայություն ունի Պողոս Տարոնացին. «զայս արարին թոնդրակեցիքն... զոր դուք (իմա հոռոմները— Հ. Բ.) պապլիկանոսք (պավլիկյան—Հ. Բ.) ասեք, սոքա էին աշակերտք պղծոյն Սմբատայ, այն որ դեղեցաւ յաղանդոյն պապլիկեան ազգէն» (Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռագիր № 1154, էջ 240 բ և 671, էջ 74 բ.։ Ուսումնասիրված են Հ. Մանուչարյանի կողմից։ Տե՛ս նրա «Պողոս Տարոնացին», էջ 118։ Նույնի, Рукописная школа. стр. 30)։ Չմշկիկի այս բռնագաղթեցման արձագանքներին ենք հանդիպում նաև պավլիկյանների ծագման և Բուլղարիայում տարածվելու մասին բուլղարական մի լեգենդում։ Ավելի մանրամասն տե՛ս Հ. Բարթիկյան, Պավլիկյանների առասպելական ծագումը, էջ 86—89։ Նշենք նաև, որ սուրբ Պողոս Կրտսերի (մեռ. 955 թ.) վարքում կա հիշատակություն Միլետոսում և Կիբիրեոտների բանակաթեմում գտնվող «մանիքեցիների» վերաբերյալ, խոսվում է նրանց դեմ առնված միջոցների մասին (Vita sancti Pauli. p. 156։ Այդ մասին տե՛ս նաև՝ *Delehaye*, La Vie de saint Paul, p. 91)։ Վարքում ասված է, որ սուրբ Պողոսը ջանքեր է թափել մանիքեցիների դեմ, նա աղանդավորների պարագլուխներին ու ամենից վտանգավորներին արտաքսել Կիբիրեոտների բանակաթեմի և Միլետոսի սահմաններից։ H. Delehaye-ի կարծիքով խոսքը Աննա Կոմնենայի հիշատակած «մանիքեցիների» մասին է (էջ 156, ծանոթ. 4)։ Տեղագրությունը չի համընկնում։ Եթե նկատի ունենանք այն հանգամանքը, որ սուրբ Պողոսի ծննդավայրը շատ մոտ էր Պերգամոս քաղաքին, որտեղ կար բազմամարդ հայկական գաղութ (այդ մասին տե՛ս Գեյցեր. Հայ հասարակությունն ի Պերգամոն, էջ 225—228), ապա բացառված չէ, որ հիշյալ «մանիքեցիները» հայեր լինեն։ Ավելորդ չէ ասել, որ հիշյալ վարքում հիշվում է Վահան անունով մի ասեկրետ (Նույն տեղում, էջ 147)։ Բացառված չէ, անշուշտ, որ տվյալ վարքի «մանիքեցիները» իսկապես պավլիկյաններ լինեն, քանզի թոնդրակյան աղանդը այդքան հեռուները չէր տարածվել։

180. Աթոռակալել է 970 թ. փետրվարի 13-ից ընդամենը երեք տարի և 8—9 ամիս, որից հետո եկեղեցական ժողովի որոշմամբ դատապարտվել է ու աքսորվել (*Grumel* Chronologie patriarcale, p. 70)։

181. Էլամացի արաբների տակ նկատի ունի հավանաբար Տիգրիսից արևելք ընկած պատմական Էլամ երկրի բնակիչներին։ Նրանց հիշատակում է նաև Մատթեոս Ուռհայեցին («պիղծ եղիմնացւոց ազգ» էջ 113), բայց այդ ցեղանվան մեջ վատ իմաստ է դնում։ Աստվածաշնչում էլամացիք հայտնի են որպես մեղսաշատ մարդիկ։

182. Երջանիկ Արաբիա էր կոչվում Արաբական թերակղզու հարավարևմտյան շրջանը, ժամանակակից Եմենը։

183. Երջանիկ Արաբիայի հարավ-արևմտյան մասը։

184. Խոսքը Միջագետք (Մեսոպոտամիա) բանակաթեմի մասին է, որի տարածությունը չի համընկնում Եփրատի և Տիգրիսի միջև ընկած տարածքի հետ։ Հյուսիսից սահմանակից էր Կոլոնիայի և Խալդիայի (Խաղտիքի) բանակաթեմերին, հարավում՝ Լիկանդոսի, իսկ Արևմուտքում՝ Սեբաստիայի։ Նահանգի բնակիչները հիմնականում հայեր էին։

185. Թեև բյուզանդագիտական այս պատերազմի մասին բացի Սկիլիցեսից խոսում են բազմաթիվ այլ բյուզանդական հեղինակներ, այնուամենայնիվ, գլխավորը մնում են Սկիլիցեսն ու Լևոն Սարկավագը։ Այս երկու հեղինակների տվյալների համադրումից է, որ հնարավոր է ճիշտ պատկերացում կազմել տեղի ունեցած դեպքերի մասին (*Карышковский*, Балканские войны стр. 70—71)։

186. Սկլերոսների ընտանիքը հիշվում է դեռևս IX դ. Scriptor incertus de Leone Armenio (Բոնն, էջ 336) երկում հիշվում է Միքայել I Ռանգաբեի (811—813 թթ.) ժամանակ գործած Լևոն Սկլերոսը։ «Մոնեմվասիայի ժամանակագրության» մեջ ցույց է տրված, որ Սկլերոսների ընտանիքը Փոքր Հայքից է ծագում (տե՛ս *Lemerle*, La Chronique, p. 17)։ Խարանիսը Սկլերոսների ընտանիքի հայկական ծագումը անվիճելի է համարում (*Charanis*, The Armenians, p. 22 համտ. նաև Seibt, Die Skleroi, S. 15)։ Կաժդանը ավելի զգույշ է, ելնելով «Սկլերոս» բառի զուտ հունական ստուգաբանությունից (նշանակում է «կարծր», «դաժան»։ Каждан, Армяне, стр. 75). Այդ հանգամանքը ոչ մի վճռական նշանակություն չունի։ Բառը կարող է հունարեն իմաստավորված այլ ածական լինել)։ Վարդաս Սկլերոսը ազգակցական կապ ուներ Կուրկուասների և Փոկասների հետ։ Իր քույր Մարիան Հովհաննես Չմշկիկի կինն էր։ Վարդ Սկլերոսին հայկական աղբյուրներն անվանում են Վարդ Սիկլառոս (Արիստ. Լաստ., էջ 33) կամ սպարգապետ Սկելառոս (Մատթ. Ուռհ., էջ 33), որ չպետք է աղավաղում համարել, քանզի արաբական աղբյուրներում էլ նման ձևով է հանդես գալիս։ Յահյան նրան կոչում է Բ-ր-դ-ս (Բարդաս) ալ—Ս-կ-լար-ս (*Розен*, Василий, стр. 78—79)։ Յահյա Անտիոքացու երկը բովանդակող փարիզյան ձեռագրում գրիչը, հավանաբար ենթադրելով, որ Վարդասի մականունը բյուզանդական հայտնի սխոլարիոս աստիճանն է, գրում է Ս-կու-(ո) լարուս։ Արաբական այլ հեղինակներ Բարդասի փոխարեն գրում են Վարդ (*Розен*, Василий, стр. 79)։ Պսելլոսը այսպես է բնութագրում նրան. «Սկլերոսը մտավոր ընդունակությունների տեր մարդ էր, մտադրածը գլուխ հանելու շատ ընդունակ, նա ուներ հսկայական, կայսեր վայել հարստություն, իշխելու կարողություն, նա մեծ հաղթանակներ էր տարել և ողջ զորքը իրեն հլու հնազանդ էր» (*Psellos*, Chronographie t. I, p. 3—5)։

187. Ստրատելատի մասին տե՛ս վերը, ծանոթ. 64

188. Պածինակները (պեչենեգները) թյուրքական ցեղ են։ Նախկինում բնակվում էին Կենտրոնական Ասիայում և մ. թ. առաջին դարերում հոների հետ ողողեցին Արևմտյան Ասիան և հարավային Ռուսաստանը։ Ատտիլայի պետության կործանումից հետո նրանք, որպես քոչվորներ, մնացին հարավ-արևելյան Ռուսաստանում, որտեղից գուրս

քշվեցին IX դ. կեսերին թուրքական այլ ցեղերի՝ խազարների և ուզերի կողմից և հաստատվեցին Ազովի ծովի ու Դանուբի ձախ ափի միջև, այնտեղից դուրս հանելով այլ թուրքական ցեղերի, ամենից առաջ հունգարացիներին, որոնք հաստատվեցին Պաննոնիայում: Կոստանդին Ծիրանածինն իր որդուն խորհուրդ է տալիս բարեկամական հարաբերություններ հաստատել պածինակների հետ, նրանց օգտագործելու համար ռուսների, հունգարացիների և բուլղարների դեմ: Պածինակներն առաջին անգամ Բյուզանդիայի դեմ արշավեցին 941 թ.: Դրանից հետո նրանք բազում անգամ հարձակվեցին կայսրության տարածքի վրա, բայց 1091 թ. Լիվոնիոնի ճակատամարտում այնպիսի ջարդ ստացան, որ անհետացան պատմության ասպարեզից:

Հայկական աղբյուրներում նրանք կոչված են «պածինակներ», այդ ձևը պահպանել ենք և մենք, այն հունարեն πατζινάκαι — ի հարազատ տառադարձությունն է: Պածինակների մասին տե՛ս *Васильевский*, Византия и печенеги: *Каждан*, Иоанн Мавропод: Ընդարձակ մատենագիտությունը՝ *Moravcsik*, Byzantinoturcica, I, S. 87—90:

189. Խոսքը հունգարացիների մասին է: Պաննոնիան համապատասխանում է արևմտյան Հունգարիային:

190. Բալկան լեռը, բուլղ. Ստարա Պլանինա: Այս լեռան անունից է թերակղզին կոչվում Բալկանյան:

191. Լուլե Բուրգազը Թուրքիայում:

192. Ռուսներն ու բուլղարները միշտ մի թևում էին կանգնում, քանզի միմյանց լեզուն հասկանում էին (տե՛ս *Левченко*, Произведения Константина Багрянородного, стр. 23):

193. Լևոն Սարկավագի ասելով, 55 հոգի: Բազում մարդիկ վիրավորվեցին, իսկ ձիերի մեծ մասը նիզակահար եղավ (*Leo Diac.*, p. 111): Նրա համաձայն սպանվեց չսան հազար ռուս:

194. Երբ Վարդաս Սկլերոսը արևմուտքից անցավ Ասիա, արևմտյան բանակը գլխավորեց մագիստրոս Հովհաննես Կուրկուասը (երկրորդը), որը սակայն իրեն հարբեցողության տալով և լինելով անփորձ ու անկարող, պատճառ դարձավ, որ ռուսներն էլ ավելի տարածվեն ամբողջ Մակեդոնիան (տե՛ս Leo Diac., p. 126): Լևոն Սարկավագը այս Հովհաննես Կուրկուասին համարում է կայսեր (Հովհաննես Չմշկիկի) ազգական (ἐκ γένους προσήκων τῷ βασιλεῖ—*Leo Diac*., p. 148): Մի փոքր անց, Դորոստոլոնի մարտերից մեկում այս Հովհաննես Կուրկուասը սպանվեց: Նրա ոսկեզօծ զրահը տեսնելով, ռուսները ենթադրեցին, թե կայսրն է նա, և վրա տալով խողխողեցին (*Leo* Diac., p. 148):

195. Սրանց հետ միասին Լևոն Սարկավագը հիշում է Պարսակուտենոսի մի որդուն ևս, որին անվանում է Վարդաս, իսկ երեքին էլ համարում պատրիկ: Նրանք Պարսակուտենոս կոչվեցին իրենց ծննդավայրի՝ Պարսաէուտեի անունից: Վարդաս Փոկասի հորեղբորորդիներն էին (ἐξάδελφοι), այսինքն՝ մորեղբորորդիներ (*Leo* Diac., p. 112): Ապստամբության օժանդակում էր նաև Վարդաս Փոկասի հայր կուրապաղատ Լևոնը, որը թեև Լեսբոսում էր արգելափակված, բայց Աբիդոսի եպիսկոպոս Ստեփանոսի միջոցով մակեդոնացիներին դրամ ու պատիվներ էր խոստանում՝ եթե մասնակցեն Չմշկիկի տապալմանը (*Leo Diac*., p. 113—114):

196. Դեպքերը տեղի ունեցան 970 թ.: Ուսումնասիրողների կողմից ընդունված է այս շարժումը որակել որպես ֆեոդալական խռովություն, որը գլխավորում էր Վարդաս Փոկասը: Շարժման մասին հիմնականում վկայում են երկու աղբյուր՝ Սկիլիցեսի ժամանակագրությունը և Լևոն Սարկավագի պատմական երկը, որոնց տվյալների միջև եղած տարբերությունները վկայում են երկու տարբերակների առկայության մասին: Շարժ-

մանը մասնակից դարձած Սիմեոն Ամպելասի մականունը «այգեգործ» է նշանակում։ Սկիլիցեսը գրում է, որ նա պատրիկ էր, իսկ Լևոն Սարկավագը՝ «երկրագործ» (γεωργός), զբաղվում էր այգեգործությամբ, դրա համար էլ կոչվեց Ամպելաս։ 970 թ. շարժման վրա մանրամասն կանգ առավ Ա. Պ. Կաժդանը, որը Սկիլիցեսի փաստը Ամպելասի պատրիկ լինելու մասին պատմական իրականության կեղծում համարեց, հենց Սկիլիցեսի կողմից կատարված, քանզի նա ուներ արիստոկրատական տենդենցներ և ուզում էր 970 թ. դեպքերին ժողովրդական մասսաների դերը սքողել։ Կաժդանն ընդունում է Լևոն Սարկավագի մեկնությունը և Սիմեոնին համարելով ժողովրդական զանգվածների ներկայացուցիչ, 970 թ. դեպքերը համարում է նաև ժողովրդական, գյուղացիական շարժում։ Ավելի հեռուն գնալով, Կաժդանը գրում է, որ Փոկասը ինչ-որ գյուղացու այգեգործի հրամանատար նշանակեց, որովհետև, հավանաբար, նրա ետևում կար ուժեղ հակակառավարական ժողովրդական շարժում (տե՛ս Каждан, Крестьянские движения, стр. 90—93)։ Մեր կարծիքով նման եզրակացությունների հանգելու լուրջ տվյալներ չկան։ Պարտադիր չէ, որ «այգեգործ» մականունը կրողը իսկապես այգեգործ լինի։ Լևոն Սարկավագը պարզապես մականունն է մեկնաբանում, իմաստավորում, իսկ Սկիլիցեսին մեղադրել տվյալ դեպքում իրականության կեղծման մեջ՝ կարիք չկա։ 970 թ. շարժումը համարել գյուղացիական ու ժողովրդական, Փոկասի հրամանատարներից մեկի՝ պատրիկ Սիմեոնի մականվան հիման վրա միայն, ճիշտ չէ։

Վարդաս Փոկասի Չմշկիկի դեմ բարձրացրած այս ապստամբության մասին հիշատակում է և Ասողիկը. «Իսկ Վարդ դուքսն մեծ,— գրում է նա,—եղբորորդին Նիկիփոռայ, ապստամբեալ թագաւորեաց ի Ժոռնգն» (էջ 183)։ Հայտնի չէ, թե հայ պատմիչը Ժոռնգի տակ ի՞նչ նկատի ունի։ Սկիլիցեսն այս դեպքը Կեսարիայում կատարված է ցույց տալիս, բայց և այնուհետև գրում, որ Փոկասը Կեսարիայից փախավ Տյուրոպիոս բերդը։

197. Լևոն Սարկավագը գրում է, որ Չմշկիկը երկուսին էլ կուրացրեց (Leo Diac., p. 114)։ Նույն պատմիչը մի քիչ հետո ցույց է տալիս, որ Վարդաս Փոկասը ամբաստանում էր Չմշկիկին այն բանի համար, որ առանց որևէ ծանրակշիռ փաստի նա կուրացնել տվեց իր, Փոկասի, հոր (Լևոն կուրապաղատին) և եղբոր (Նիկեփորին), Leo Diac., p. 116 և 119։ Սակայն մի փոքր անց գրում է, որ նրանց աչքի լույսը խնայել էին և պատմում այն, ինչ Սկիլիցեսը (Leo Diac., p. 145)։

198. Ժամանակակից էսքի Շեհիրը Թուրքիայում։

199. Τυροποιόν (թարգմանաբար նշանակում է պանիր պատրաստելու տեղ)։ Լևոն Սարկավագի մոտ բերդը կոչվում է Τυράννων φρούριον...ὃ Ἀντιγοῦς κέκληται (Leo Diac., p. 122)։ Այսինքն Տիրաննոն բերդ (կամ բռնակալների բերդ), որ կոչվում է Անտիգուս։ Ա. Գրեգուարը Լևոն Սարկավագի Τυράννων-ը ուղղում է Τυάνων (Honigmann, Die Ostgrenze, S. 46, ծանոթ. 1)։ Ավելորդ չէ նշել, որ Տիրոպիոս բերդը հիշում է և Ասողիկը՝ Տեոպս ձևով (Ասողիկ, էջ 247)։

200. Փոկասի կուրապաղատ հայրը զորավար Լևոն Փոկասն էր, կայսր հորեղբայրը՝ Նիկեփոր II Փոկասը, կեսար պապը՝ Նիկեփոր Փոկասի հայր Վարդասը։

201. Մի տեսակ վերարկու։

202. Վարդաս Սկլերոսի և Վարդաս Փոկասի նամակագրության մասին տե՛ս Լևոն Սարկավագի մոտ (Leo Diac., p. 118—119)։

203. Լևոն Սարկավագի համաձայն պատրիկ Կոստանդինը ոչ թե Սկլերոսի որդին էր, այլ եղբայրը (Leo Diac., p. 118)։



539—25

204. Տագմաների մասին մանրամասն տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 299—300։

205. Այսինքն՝ Վասիլ I-ի հիմնադրած Մակեդոնական հարստության։ Ամուսնությունը տեղի ունեցավ Ջմշկիկի թագավորության երկրորդ տարին, նոյեմբեր ամսին։

206. Դրանք 300-ից ավելի տրիերաներ էին, չհաշված փոքր նավերը։ Ջմշկիկը նավատորմիղը Դանուբ ուղարկեց՝ Սվյատոսլավի նահանջի ճանապարհը փակելու համար (*Leo Diac.*, p. 129)։

207. Քաղաք Թրակիայում, այժմ Թեքիրդաղ։

208. Ջմշկիկի առջևից դնում էր «անմահների» զրահակիր փաղանգը, իսկ ետևից՝ 15 հազար ծանրազեն հետևակային և 13 հազար հեծյալ։ Պարակիմոմենոսի հետ էր մնացած զորքը սպասարկող անձնակազմը, որ բաբաններն ու այլ մեքենաներն էին տանում (*Leo Diac.*, p. 132)։

209. Մեծ Պրեսլավան 822 թ. հիմնադրված բուլղարական երկրորդ մայրաքաղաքն էր։ Առաջինը Պլիսկան էր։ Այդ երկու մայրաքաղաքներում IX դարի ընթացքում, սկզբում խան Կրումը, ապա Օմուրտագը մոնումենտալ շենքերի մեծ շինարարություն ծավալեցին, որոնցից պահպանվել են Մեծ պալատի և Փոքր պալատի ավերակները Պլիսկայում և պալատի ու պարիսպների ավերակները Պրեսլավայում։ Այդ շենքերի ճարտարապետությունը շատ է հիշեցնում հայկական մոնումենտալ շենքերի ճարտարապետությունը (Ներսես III կաթողիկոսի պալատական շենքը Զվարթնոցում, Դվինի և Արուճի պալատները, Երերույքի բազիլիկան և այլն), և Ա. Լ. Յակոբսոնի՝ կարծիքով կրում են հայկական ճարտարապետության ազդեցությունը և, հավանաբար, բուլղարական այդ շենքերի շինարարության վրա աշխատել են հայ և ասորի ճարտարապետներ (Якобсон, К изучению болгарской архитектуры, стр. 195—206)։

210. Սվյատոսլավի ճամբարը գտնվում էր Դորոստոլոն (Դրիստրա, այժմ՝ Սիլիստրա) քաղաքում (*Leo Diac.*, p. 134)։

211. Ըստ Լևոն Սարկավագի, նա «սկյութների» մոտ Սվյատոսլավից հետո երրորդ պատիվն ուներ (*Leo Diac.*, p. 135)։

212. Այս պրոեդրոս Վասիլը մի փոքր առաջ հիշվեց որպես պարակիմոմենոս Վասիլ։

213. Լևոն Սարկավագը տալիս է այդ երիտասարդի անունը՝ Թեոգոսիոս, մականունը Մեսանիկտես, ծագումով Անատոլիկոն բանակաթեմից (*Leo Diac.*, p. 135)։

214. Զորքը գլխավորում էր մագիստրոս Վարդաս Սկլերոսը։ Նա էր, որ հաղթեց ռուսներին և ոչ կայսրը, ինչպես գրում է Սկիլիցեսը (*Leo Diac.*, p. 137—138)։

215. 972 թ. ապրիլի 7-ին։

216. Լևոն Սարկավագը հանվանե հիշում է երկու քաղաք՝ Պլիսկուվա (Պլիսկա, բուլղարական պետության առաջին մայրաքաղաքը), և Դինիան (*Leo Diac.*, p. 138—139)։

217. Սբ. Գեորգի տոնը արևելյան ուղղափառ եկեղեցին նշում է ապրիլի 23-ին։

218. Իստրոս (Դանուբ) գետի։ Դորոստոլոնը այս գետի ափին է գտնվում։

219. Տե՛ս ծանոթ. 128։

220. Ռուսներն առաջին անգամ այստեղ հեծելազոր դուրս բերեցին, մինչ այդ նրանք միշտ հետևակ էին մարտնչում և ձիավոր կռվելու փորձ չունեին (*Leo Diac.*, p. 134, 143)։

221. Ժամանակակից Կոստանցան Ռումինիայում։ Նախկինում կոչվում էր Տոմիս։ Նրան առաջին անգամ Կոստանտիա է անվանում Կոստանդին Ծիրանածինը։

222. Հունարեն՝ μονόξυλα։ Այդպես էին կոչվում Բյուզանդիայում հյուսիսային ժողովուրդների միակտուր փայտից պատրաստված նավերը։

223. Ռեքտորի մասին տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 314։

224. Կղզի Պրոպոնտիսում, Իշխանաց կղզիների կազմում։

225. Հովհաննես Չմշկիկին և Թեոդորա կայսրուհուն։

226. Ռոմանոս Կուրկուասի որդի մագիստրոս Հովհաննեսը, Ռոմանոս I Լակապենոսի օրոք անուն հանած հայազգի նշանավոր զորավար Հովհաննես Կուրկուասի թոռը և Չմշկիկի ազգականը։

227. Լևոն Սարկավագն այս առթիվ տալիս է ազգագրական որոշակի հետաքրքրություն ներկայացնող մանրամասնություններ։ Երբ վրա հասավ գիշերը, գրում է նա, և լիալուսին էր, ռուսները դաշտ դուրս գալով հավաքեցին իրենց զոհվածների դիակները, բերեցին պարսպի տակ բազմաթիվ գերիների՝ տղամարդկանց և կանանց սրի քաշեցին՝ իրենց պապենական սովորության համաձայն։ Նրանք Իստրոս գետում զոհաբերություններ էլ կատարեցին՝ ջրահեղձ անելով ծծկեր մանուկներ ու աքաղաղներ (Leo Diac., p. 149)։ Լևոն Սարկավագը գրում է նաև, որ ռուսները երբեք գերի չեն հանձնվում թշնամուն, երբ տեսնում են, թե փրկություն չկա, սուրը խրում են իրենց կուրծքը և ինքնասպան լինում, քանզի հավատացած են, որ պատերազմի ժամանակ թշնամու կողմից սպանվողները հանդերձյալ աշխարհում տերերին են ծառայելու և չցանկանալով իրենց սպանողներին ծառայել, ինքնասպան են լինում (Leo Diac., p. 151—152)։

228. Լևոն Սարկավագի ասելով, ռուսները այս ճակատամարտում ունեցան 15500 սպանված, իսկ բյուզանդացիները... 350 հոգի։ Բյուզանդացիները վերցրին 20 հազար վահան և բազում սրեր որպես ավար (Leo Diac., p. 155)։

229. Սբ. Թեոդորոս Ստրատելատի, որի հիշատակը արևելյան ուղղափառ եկեղեցին նշում է փետրվարի 8-ին։

230. Լևոն Սարկավագը գրում է, որ Չմշկիկը Թեոդորուպոլիս վերանվանեց հենց Դորոստոլոնը՝ վկա Թեոդորոս Ստրատելատի անունով։ Նա Եվխանիայի մասին ոչինչ գիտե (Leo Diac., p. 158)։ Հնագիտական պեղումների ժամանակ ժամանակակից Dinogetia-Garvan-ում գտնվել են Չմշկիկի կառուցած եկեղեցու հիմքերը (տե՛ս Diaconu, Une information, p. 43—49)։

231. Լևոն Սարկավագը տալիս է մանրամասնություններ։ Չմշկիկը, գրում է նա, Սվյատոսլավի հետ հաշտություն կնքելով, վերջինիս 22 հազար զինվորներից յուրաքանչյուրին երկուական մեդիմն ցորեն տվեց։ Պատերազմից առաջ ռուսական զորքը բաղկացած էր 60 հազար հոգուց, որոնցից 38 հազարը զոհվեց (Leo Diac., p. 156)։ Հովհաննես Չմշկիկի և Սվյատոսլավի միջև 971 թ. կնքված հաշտության պայմանագրի հունարեն բնագիրը չի պահպանվել, բայց դրա մասին մենք գիտենք նրա հին ռուսերեն թարգմանությունից, որ պահպանվել է „Повесть временных лет“ կոչված ժողովածուում (տե՛ս Зимин, Памятники права, стр. 58—60։ Հին ռուսերեն բնագիրը և նոր ռուսերեն թարգմանությունը տե՛ս „Повесть временных лет“, стр. 52, 249—250)։ Այդ պայմանագրի մասին տե՛ս նաև Dujčev, Pinax Rhôs, 59—68։

232. Հետաքրքիր մանրամասնություններ է տալիս Լևոն Սարկավագը։ Չմշկիկը ոսկեզօծ զրահներ հագած, ձի նստած գնաց Իստրոս գետի ափը՝ նույնպես ոսկեզօծ զենքեր կրող բյուրավոր հեծյալների ուղեկցությամբ։ Սվյատոսլավը եկավ մի նավակով, ուրիշների հետ թիավարելով։ Նա միջահասակ էր, ուներ խիտ հոնքեր, կապույտ աչքեր, կճատ քիթ, ածիլած երես ու գլուխ, որից մի խոպոպ էր կախված՝ ազնվականության ապացույց։ Նա թիկնեղ էր, ականջներից կախված էին օղեր՝ երկու մարգարիտներով ազուցված։ Նա սպիտակ շապիկ էր հագած (Leo Diac., p. 156—157)։

233. Հրապարակ Կոստանդնուպոլսում։

234. Պածինակները Սվյատոսլավի ճանապարհը կտրեցին և նրան սպանեցին հավանաբար Բյուզանդիայի դրդմամբ։ Բյուզանդառուսական այս պատերազմը մանրամասն ուսումնասիրված է հատկապես ռուս պատմաբանների կողմից։ Աենակարևոր աշխատություններից կարելի է հիշատակել. *Белов*, Борьба Святослава с Иоанном Цимисхием; *Тихомиров*, Исторические связи; *Карышковский*, Балканские войны Святослава, 36—71։ Նույնի, К истории Балканских войн Святослава, стр. 224—243։ Նաև՝ *Левченко*, Очерки։ Հիշյալ պատերազմների ժամանակագրությունը տե՛ս *Карышковский*, О хронологии, стр. 127—138)։

235. Կապնիկոնը մտցրել էր Նիկեփոր Փոկասը, այդ մասին արժեքավոր տեղեկություններ են պահպանել արաբական աղբյուրները։ Իբն Հաուկալը գրում է, թե Նիկեփորը միջին կարողության յուրաքանչյուր ծխից գանձում էր տասը ոսկե դինար։ Նրանից բարձր եկամուտ ունեցողը պարտավոր էր տալ մեկ զինվոր ձիով, զենքով, պարենով ու անասնակերով. նրա ծախսը կազմում էր երեսուն դինար։ Ըստ Վասիլևսկու իբն Հաուկալի ծխահարկը նույնանում է կապնիկոնի հետ (տե՛ս *Розен*, Василии, стр. 279—280).

236. Իմա հունական տառեր։ Մինչ այդ բյուզանդական դրամների վրայի մակագրությունները լատիներեն էին արվում։

237. Անտոնիոս III Սկանդալիոս Ստուդիտեսը աթոռակալել է 973 թ. դեկտեմբերից և հրաժարվել պաշտոնից 976 թ. հունվարին (*Grumel*, Chronologie patriarcale, p. 70)։ Դրանից հետո աթոռը թափուր մնաց չորս և կես տարի՝ 976-ի հունվարից մինչև 980 թ. մայիսը։

238. Բնագրում πωγωνίας, πώγων բառից, որ մորուք է նշանակում։ Այս գիսավոր աստղը հիշատակում է և Ասողիկը (էջ 186), անվանելով «Նիզակաւոր աստղ»։ «Եւ ապա ի միւս ամին ի ՆԻԳ (28 մարտ 974—27 մարտ 975 թ.) թուականին Նիզակաւոր աստղն երևեցաւ յաւուրս հնձոցն, ի մուտս ամառնային եղանակին, ինքն յարևելս կալով և գնչոյլս լուսոյն նիզակաձև յարևմուտս ձգեալ ի վերայ աշխարհին Յունաց. և տևեաց մինչև յաշնանային եղանակն» (Ասողիկ, էջ 186—187)։ Տե՛ս նաև *Dulaurier*, Recherches, pp. 278—279։

239. Հովհաննես Չմշկիկն իր այս մեծ արշավանքի ժամանակ, ամենայն հավանականությամբ, նպատակ ուներ նաև Հայաստանի որոշ շրջաններին տիրանալ, արաբների դեմ արշավելիս նա ցանկացավ «զմուտն յաշխարհն Հայոց առնել» (Մատթ. Ուռհ., էջ 17)։ Այդ բանին ընդդիմակայեցին հայոց մեծամեծները Աշոտ III թագավորի գլխավորությամբ, «բանակ հարեալ ի Հարքայ գաւառին արք իբրև ութսուն հազար» (նույն տեղում)։ «Եւ յառաջին գիշերն,— գրում է Ուռհայեցին,—բազում նեղութիւն կրեաց զօրքն Հոռոմոց ի հետևակ զօրացն Սասանու» (իմա Սասունի. Մատթ. Ուռհ., էջ 18)։

240. Լևոն Սարկավագը նշում է Չմշկիկի 974 թ. վերագրաված քաղաքների անունները՝ տալով նրա երթուղին։ Մտնելով Ասորիք, նա նախ և առաջ գրավեց էմետ (Ամիդ) «նշանավոր ու ամուր քաղաքը, այնտեղից գնաց փառավոր, հարստությամբ ու անասուններով շրջանի բոլոր քաղաքները գերազանցող Միաֆարիկին քաղաքը», իրեն ենթարկեց այն, նրա բնակիչներից ստացավ բազում ու գեղեցկագույն նվերներ՝ ոսկի, արծաթ, ոսկեթել կերպասներ և շարժվեց դեպի Մծբին, որը կայսրը գտավ անմարդաբնակ։ Բյուզանդացիների վախից բնակիչները թողել, փախել էին։ Կայսրն այնուհետև շարժվեց դեպի Էկբատան քաղաքը, բայց ջրի սակավություն զգալով, փորձ չարեց այն գրավել և տեղի սարակինոսներից մեծարժեք նվերներ ստանալով, վերադարձավ Կոստանդնուպոլիս։ 975 թ. Չմշկիկը դարձյալ արշավեց արաբների դեմ։ Սկիլիցեսը 974 և 975 թթ. արշավանքները, հավանաբար, միասին է հիշատակում։ 975 թ. Չմշկիկը Պա-

ղեստինի վրայով գնաց գրավեց Մեմբիջը (Հիերապոլիս), գտավ Քրիստոսի հողաթափերը, Կարապետի մազերը, որոնք ամփոփեց Կոստանդնուպոլսի Աստվածածնի եկեղեցում և Փրկչի տաճարում։ Մեմբիջից Ձմշկիկը գնաց ավերեց Ապամիա բերդը, որից հետո շարժվեց դեպի Դամասկոս, որի բնակիչները հպատակություն հայտնեցին և հարկատու դարձան։ Դամասկոսից կայսրը Լիբանան լեռան վրայով գնաց, գրավեց շատ ամուր Բորզո քաղաքը, անցավ Փյունիկե, գրավեց Բալանիա բերդը և պաշարեց ու տիրացավ Բեյրութ քաղաքին, անհաջող հարձակում գործեց Տրիպոլսի վրա, որից հետո ճանապարհ ընկավ դեպի Կոստանդնուպոլիս (*Leo Diac.*, p. *161—166, 169*)։

Ձմշկիկի խնդրո առարկա արշավանքի մասին ամենամանրամասն ու ճշգրիտ շարադրանքին մենք հանդիպում ենք Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրության» մեջ։ Պատմիչը (Հակոբ Սանահնեցու միջոցով) իր պատմական երկում բերում է Հովհաննես Ձմշկիկի՝ հայոց Աշոտ III թագավորին գրած նամակի հայերեն թարգմանությունը, որի մեջ նա ամենայն մանրամասնությամբ գրում է 975 թ. իր արաբական արշավանքի մասին։ Այդ նամակում կան և արժեքավոր տեղեկություններ տվյալ շրջանում հայ-բյուզանդական հարաբերությունների մասին (տե՛ս Մատթ. Ուռհ. էջ 19—28)։ Ձմշկիկի այս նամակի մասին տե՛ս Кучук-Иоаннесов. Письмо Иоанна Цимисхия, стр. 91—101։ *Adontz*. La lettre de Tzimiscès, p. 141—147։ Լ. Խաչիկյան, Հակոբ Սանահնեցի, էջ 36—37։ Նաև՝ *Canard*, Les sources arabes, p. 293—295։

241. Արաբ. ալ-Բաղանդուն, այժմ՝ Բոզանտը Կիլիկիայում։

242. Լևոն Սարկավագը Անազարվայի և Պոդանդոսի փոխարեն հիշում է Լոնգիադան և Դրիդինը (*Leo Diac.*, p. *176*)։

243. Լևոն Սարկավագը գրում է, որ Ձմշկիկին հյուրընկալեց ու թունավորեց Օլիմպոս (Փոքրասիական) լեռան մոտ գտնվող Ատրոա դաշտում պատրիկ Ռոմանոս սեբաստոֆորոսը (*Leo Diac.*, p. *177*), որը Ռ. Գիյյանի կարծիքով, Ռոմանոս I Լակապենոսի թոռն էր (*Guilland*, Le Sebastophore, p. 201)։ Ձմշկիկի թունավորման վարկածն ընդունված է գիտության մեջ (տե՛ս հատկապես *Guilland*, La destinée, p. 25—26)։ Սակայն Օստրոգորսկին գտնում է, որ նա պարզապես տիֆից մեռավ (*Ostrogorsky*, Histoire, p. 322)։ Ձմշկիկը վախճանվեց Կոստանդնուպոլսում աշխարհի արարչագործության 6485 թ. հունվարի 10-ին, ինդիկտիոնի 4-րդ տարին (976)։ Գրեթե նույն թվականն է հիշում և Յահյա Անտիոքացին (11-ը հունվարի)։ Նրա ասելով Ձմշկիկը թագավորեց վեց տարի և մեկ ամիս (Розен, Василий, стр. 75)։

Միանգամայն տարբեր ձևով են նկարագրված այս դեպքերը Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրության» մեջ։ Նրա ասելով, Ձմշկիկը, իբր խղճի խայթ զգալով Նիկեփորին սպանելու համար, «խորհեցաւ բարի խորհուրդս... և յուղարկեաց ի Վասակաւանն ի գաւառն Յանձթայ և բերել տայր զՎասիլ և զԿոստանդին զորդիսն Ռոմանոսի թագաւորին, զոր փախոյց առ Սպրամիկն ի յահէ անօրէն թագուհւոյն ...և առեալ զթագն ձեռօք իւրովք ի գլխոյ իւրմէ և եդեալ ի գլուխն Վասլի և նստեցուցանէր զնա յաթոռ թագաւորութեանն իւրոյ... և ինքն դիմեալ յանապատ, և յանձն իւր առեալ զկարգս կրօնաւորութեան՝ ի վանս ընթացեալ ըսակէր» (Մատթ. Ուռհ., էջ 29—30)։ Ձմշկիկի համառոտ, բայց դիպուկ բնութագիրը տվել է Պսելլոսը. «Կայսր Հովհաննես Ձմշկիկը հռոմայեցիների պետության մեծ հաջողությունների պատճառ դարձավ, նա մեծացրեց նրա հզորությունը» (*Psellos*, Chronographie, I, p. 2)։

244. Պրոեդրոս (պարակիմոմենոս) Վասիլը Կոստանդին Ծիրանածինի ապօրինի որդին էր և դեռ մանուկ հասակում ներքինացվել էր գահի նկատմամբ ակնկալություններ չունենալու համար (*Psellos*, Chronographie, I, p. 3)։ Հետագայում, Վարդաս Փոկասի

ապստամբության ճնշումից հետո Վասիլ II-ը Վասիլ պարակիմոմենոսին պաշտոնանկ անելով, կղզի աքսորեց (նույն տեղում, էջ 12)։

245. Մեսոպոտամիա բանակաթեմի վարձկաններից բաղկացած զինված ուժերի։ Այս բանակաթեմի կազմում կային բազմաթիվ հայկական գավառներ։

246. Վարդաս Սկլերոսը վիրավորվեց՝ Մեսոպոտամիայի տագմաների դուքսի աստիճանը ստանալով (աստիճանի մասին տե՛ս վերը, ծանոթ. 26) այն պատճառով, որ դուքսի աստիճանն այս ժամանակ ավելի ցածր էր, քան զորավարինը և նույն բանակաթեմում կարող էին լինել և՛ զորավարը, և՛ դուքսը, ընդ որում առաջինն ավելի բարձր էր կանգնած (տե՛ս *Lemerle*, Prolegomenes, p. 88—89)։X դ. վերջից է, որ բանակաթեմային զորքերի նշանակության անկման հետևանքով ընկավ նաև զորավարի նշանակությունը, որի տեղը գրավեց կատապանը կամ դուքսը, կայսեր լիիրավ տեղակալը նահանգում, իր գերիշխանության տակ ունենալով մի քանի բանակաթեմեր իրենց զորավարներով հանդերձ («Советы и рассказы», стр. 430—431):

Յահյա Անտիոքացին գրում է, որ Վասիլ կայսրը Վարդ Սկլերոսին նշանակեց Անձիտի և ալ-Խալիդիյատի կառավարիչ (*Розен*, Василий, стр. 1): Ալ-Մակինի մոտ Անձիտի փոխարեն գրված է Հարբոտ, որն ուսումնասիրողները նույնացնում են Խարբերդի հետ (արաբ. Հիսն-Զիադ, հետագայում՝ Խարտաբիրտ)։ Ինչպես ստորև պիտի տեսնենք, Վարդ Սկլերոսը ապստամբություն բարձրացնելով, գրավեց Χαρπετε-ն (Խարբերդը)։ Բոլոր դեպքերում Անձիտը մտնում էր Մեսոպոտամիա (Միջագետք) բանակաթեմի մեջ (տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 26)։ Ինչ վերաբերում է Յահյա Անտիոքացու ալ-Խալիդիյատին, Ռոզենի կարծիքով այն մտնում էր Տարոնի մեջ, կազմելով նրա մասը։ Այն սահմանամերձ էր Մեսոպոտամիա բանակաթեմին և Անձիտ գավառին (*Розен*, Василий, стр. 80)։

247. Հայ հեղինակները թեև Սկլերոսին անվանում են «բռնակալ», բայց ոչ հազվադեպ նաև «թագաւոր» (Ասողիկ, էջ 193,194)։ 986 թ. վերջին արաբների հետ կնքած իր պայմանագրում արաբները ևս Վարդաս Սկլերոսին անվանում են «Ռումերի (հոռոմների) թագավոր» (*Canard*, Deux documents arabes, p. 63)։

248. Ասողիկը գրում է, որ Վարդաս Սկլերոսը «ապստամբեալ թագաւորեաց ի կողմանս Ջահանայ և Մելտենոյ, որ էր այր քաջ և կորովի ի գործ պատերազմաց»։ Պատմիչը խոսում է նաև նրա զորքի ազգային պատկանելիության մասին. «եւ միաբանեալ ընդ ինքեան գհեծելազունդ զօրն Հայոց, որ ընդ Յունաց թագաւորութեամբն», ինչպես և նրան հարած հայ իշխանների՝ այց թվում Տարոնի իշխանի որդիներ Գրիգորին և Բագարատին և Մոկքի իշխան Զափրանիկին (Ասողիկ, էջ 190—191)։

249. Խոսքը Դեմոսթենեսի մասին է։ Տե՛ս նրա Առաջին Օլինթիականը։

250. Բնագրում՝ τῶν δημοσίων πράκτορας φόρων: Յահյա Անտիոքացին հաստատում է Սկիլիցեսին։ Նա ցույց է տալիս, որ Վարդաս Սկլերոսը գալով այն շրջանը, որն իրեն էին հատկացրել կառավարելու, հանկարծակի հարձակվեց Մալաթիայի վրա և ձերբակալեց այնտեղ գտնվող «վասիլիկոսին» (կայսերական մարդուն), որից խլեց նրա մոտ գտնվող դրամները՝ վեց կենտինար (43.200 ոսկեդրամ)։ (*Розен*, Василий, стр. 1): Ինչպես տեսնում ենք, ըստ Յահյայի «վասիլիկոսը» (βασιλικός) հարկային պաշտոնյա էր, բայց և կառավարիչ, քանզի Վարդաս Սկլերոսը, գրավելով Անտիոքն ու Մալաթիան, նրանց վրա «վասիլիկոս» (կառավարիչ) նշանակեց իր մարդկանց (*Розен*, Василий, стр. 2,3)։ Բայց բոլոր դեպքերում, վասիլիկոսը կայսեր մարդու, ներկայացուցչի, պատվիրակի նշանակություն ունի։ Հենց նույն Յահյան ցույց է տալիս, որ 1018 թ. Բուլղարիան նվաճելուց հետո Վասիլ II-ը այնտեղ նշանակեց վասիլիկոս-

ների՝ «ամեն տեսակի գործերն ու ունեցվածք ·վարողների» (*Розен*, Василий, стр. 59)։ Հիշյալ տերմինը հանդիպում է և հայկական աղբյուրներում։ Բյուզանդական կայսրը Հովհաննես Դրասխանակերտցու և Աշոտ Երկաթի մոտ ուղարկեց «զոմն Թէոդորոս վասլիկոս բազմահարկի պատուասիրութեամբ և ընտանեբար սիրոյ հարազատութեամբ՝ ընդ ուշի ևս կապեալ զսէր կատարման հօր իւրոյ Բասլի, որ ընդ հօր նորա Սմբատայ էր» (Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 284)։

251. Բնագրում Χάρπετε (հետաքրքրական է նշել, որ Կարսն էլ Սկիլիցեսը կոչում է Κάρσε, Արծնը՝ Ἄρτζε, Բաբերդը Παΐπερτε: Հայկական այս տեղանունների վերջին ε-ն ինձ համար անբացատրելի է)։ Սկիլիցեսը Խարբերդը տեղադրում է Մեսոպոտամիա բանակաթեմում։ Խարբերդը գտնվում էր բյուզանդական Չորրորդ Հայքի վեցերորդ՝ Անձիտ գավառում և հնում կոչվում էր Հոռեբերդ, անտիկ շրջանում՝ Զիատա, արաբ. Հիսն Զիադ (տե՛ս Երեմյան, Հայաստանը..., էջ 36,63)։ Յակուտ ալ-Համավին գրում է, թէ «հայերեն անունն է ծանոթ այն բերդի, որը Հիսն Զիադ անվամբ է ճանաչված» (Նալբանդյան, Արաբական աղբյուրները..., էջ 55)։

252. Սկիլիցեսի Ապոտագլեն (կարդացվում է՝ Ապոտագլե) նույնանում է Աբու Տաղլիբ իբն Համդանի հետ։ Հետագայում, երբ նրան ծանր դրության մեջ գցեց Ադուդ Ալ Դաուլայի քարտուղար Աբու-լ-Վաֆան, նա օգնություն խնդրեց հենց Վարդաս Սկլերոսից (*Розен*, Василий, стр. *12*)։

253. Վարդաս Սկլերոսի զորքի էթնիկական խայտաբղետության մասին վկայում է և Յահյա Անտիոքացին։ «Նրա մոտ հավաքվեցին,— գրում է նա,— բազում ժողովուրդ՝ հույներ, հայեր և մուսուլմաններ» (*Розен*, Василий, стр. *2*)։

254. Այստեղ «պրոեդրոս» եկեղեցական աստիճան է։

255. Կայսերական նշանակ էին համարվում նաև կարմիր կոշիկները, որոնք ὑποδήματα, πέδιλα, τζαγγία էին կոչվում։ Այսպես էր և սասանյանների արքունիքում (հմմտ. Պրոկոպիոս Կեսարացի, էջ 191, նաև՝ *Malalae*, Chronographia, p. 413, *Theophanis* Chronographia, I, p. 168)։ Կայսերական նշանակների մասին տե՛ս *Ebersolt*, Etudes, p. *63—69*։

256. Վասիլ II-ին, Կոստանդին VIII-ին և Վասիլ պարակիմոմենոսին։

257. Մագիստրոս Եվստաթիոս Մալայինոսն այն ժամանակ Տարսոնի կառավարիչն էր։ Յահյան նրան հիշում է որպես պատրիկ Իբն ալ Մալային (*Розен*, Василий, стр. 2).

258. Էտերիարխ (հետերիարխ) հետերիայի (օտարերկրացի վարձկաններից կազմված) զորագնդի հրամանատար։ Ավելի մանրամասն տե՛ս ծանոթ. 528։

259. Այս Սահակ Վահրամյանը (Σαχάκιος τοὔνομα Βραχάμιος τὴν προσηγορίαν) պատկանում էր մի ընտանիքի, որից մի դար հետո, ըստ Ադոնցի, սերեց նշանավոր Փիլարտոս Վարաժնունին (տե՛ս ծանոթ. 703)։ Նաև՝ *Adontz*, La famille de Philarete, p. 149—150։ Ընտանիքը հայտնի է X դարի կեսերից։ Արաբ բանաստեղծ Աբու Ֆիրասը հիշատակում է «Վահրամի ընտանիքը» որպես իր ժամանակվա ամենանշանավոր բյուզանդական ընտանիքներից մեկը (*Adontz—Canard*, Quelques noms, p. 451, 11)։ Այս Սահակ-Վահրամի մասին,— ըստ Ադոնցի, հիշատակություն կա Միլետոսի եպիսկոպոս սբ. Նիկեփորի վարքում, որի համաձայն Սահակը Զմշկիկի օրոք ունեք ὁ ἐπὶ τῶν δεήσεων բավականին բարձր պաշտոնը։ Նա այնտեղ բնորոշվում է որպես «չարությամբ նշանավոր Սախակիոս» („Vita sancti Nicephori», p. 144)։ Կաժդանը մերժում է այդ նույնացումը (*Каждан*, Армяне..., стр. 25): Յահյա Անտիոքացին Սահակ-Վահրամին կոչում է Իսխակ իբն Բահրամ (տե՛ս *Розен*, Василий, стр. *78*։ Հմմտ. „Histoire de Yahya", p. *822*)։ Հենց այս Սահակ Վահրամն էր, որ երբ 978 թ. հունվարին անտիոքացիք հրաժար-

վելով Վարդաս Սկլերոսից, կայսր հռչակեցին Վասիլ II-ին, Սկլերոսի կողմից Անտիոք ուղարկվեց, որպեսզի համոզի նրանց հրաժարվել իրենց վճռից (*Розен*, Василий, стр. 4)։ Անտիոքացիք, սակայն, թույլ չտվեցին նրան քաղաք մտնել և նա ձեռնունայն վերադարձավ։ Անտիոք գնաց Սկլերոսի կողմն անցած ոմն Մախֆուղ-իբն-խաբիբ-իբն-ալ-Բագիլ, բայց անհաջողության հանդիպեց։ Դրա վրա Անտիոքում և նրա շրջակայքում ապրող հայերը խռովություն բարձրացրին իրենց ազգակից Սամուիլի գլխավորությամբ, որը, սակայն, ճնշվեց (*Розен*, Василий, стр. 4—5)։ Պահպանվել է մի կնիք՝ Βαχράμης ὁ ἄρχων մակագրությամբ (տես՝ *Schlumberger*, Sigillographie, p. 311—312), որին Ադոնցը համարում է Վահրամյանների ընտանիքի նախահայրը (անունը տվողը)։ *Adontz*, La famille de Philarète, p. 151։ Հմմտ. *Каждан*, Армяне, стр. 25։

260. Սկիլիցեսը Լապարան նույնացնում է Լիկանդոսի հետ և այն համարում Կապադովկիայի մի մասը։ Լևոն Սարկավագը գտնում է, որ Լապարայի դաշտը հայոց երկրի սահմանն է (μεθόριον... τῆς χώρας τῶν 'Αρμενίων—*Leo Diac.*, p. 169։ Զոնարան այն անվանում է Լիպարա (*Zon.*, IV p. 106)։ Լիկանդոսը հիշում է Ասողիկը «Լիկանդիոն աշխարհ» ձևով (Ասողիկ, էջ 175)։ Կամրջաձորի հայտնի մենաստանը գտնվում էր «յաշխարհին Լիկանտոնացւոց»։ Տե՛ս Գ. Հովսեփյան, Հիշատակարանք ձեռագրաց, հատ. Ա, Անթիլիաս, 1951, էջ 171։ Լիկանդոսի ազգաբնակչության էթնիկական կազմի մասին տե՛ս *Oikonomides*, L'organisation, p. 83—85։

261. Ըստ Սկիլիցեսի, ճակատամարտը տեղի ունեցավ Լիկանդոսում, այնինչ Յահյայի համաձայն՝ Ջեյխանում, որ համապատասխանում է Մելիտենեին սահմանակից Ջահան գավառին (հմմտ. Ասողիկ, էջ 191, *Розен*, Василий, стр. 2, 85)։

262. Բնագրում՝ Τζαμανδός, հայոց Ծամնդավը, Յահյա Անտիոքացու՝ Սամանդուն (Histoire de Yahya, p. 774)։ Ցամանդոսի ամրոցը կառուցեց Մելիաս-Մլեհը X դ. սկզբում («Կոստանդին Ծիրանածին», էջ 27)։ Դրանից առաջ նա «ամայի և անմարդաբնակ» վայր էր՝ Լիկանդոսին սահմանակից (նույն տեղում, էջ 171, 172)։ 1066 թ. կարևոր քաղաք էր, այնտեղ գումարվեց եկեղեցական ժողով, որ կաթողիկոս ընտրեց Վահրամ-Գրիգորիսին։

Ֆրանսիացի արվեստագետ Գ. Ժերֆանիոնն իր՝ Կապադովկիայի վիմափոր եկեղեցիներին նվիրված աշխատության մեջ, խոսելով Լիկանդոսի և Ծամնդավի եկեղեցիների մասին, նկատում է հայկական ազդեցություններ և այդ առթիվ հիշում Լևոն VI-ի օրոք այդ շրջաններում Բարձր Հայքից եկած և հաստատված հայության մասին (տե՛ս *Jerphanion*, Une nouvelle province, p. 398)։

263. Կուրտիկների (Քուրդիկ) հայկական ընտանիքը գաղթել է Բյուզանդիա Վասիլ I-ի օրոք (*Marquart*, Südarmenien, S. 295, An. 1) և, ըստ Ս. Երեմյանի, Մամիկոնյան ծագում ունի (*Каждан*, Армяне, стр. 14—15)։

264. Այս Ռոմանոս Տարոնացին Ադոնցի ենթադրությամբ Տարոնի վերջին իշխան Աշոտի որդի Բագարատի որդին էր, Բագարատի, որ ամուսնացել էր մագիստրոս Թեոփիլակտոսի, Ռոմանոս Լակապենոս կայսեր ազգականի դստեր հետ և այդ կայսեր պատվին իր որդուն տվել Ռոմանոս անունը (*Adontz*, Les Taronites, p. 243)։ Ոչնչով չհաստատվող ենթադրություններ։

265. Հալեպի։

266. Թարգմանաբար նշանակում է Սուր քար։

267. Շատ հնից եկող առած է։

268. Ա. Վասիլևը Գավրասների ընտանիքը հայկական է համարում, ելնելով տարոնացիների հետ նրանց ունեցած ենթադրյալ ազգակցությունից Ըստ Ս. Երեմյանի, ա-

նունը ծագում է հայկական Գավրեք տեղանունից։ Այդ ընտանիքին հատուկ ուսումնասիրություն նվիրած Ա. Բրայերը ցույց է տալիս, որ որոշակի որևէ փաստ չկա այդ ընտանիքը հայկական համարելու (*Bryer*, The Gabrades, p. 165: *Каждан*, Армяне, стр. 89—92)։

269. Յահյա Անտիոքացին նշում է, որ Վարդաս Փոկասը, Նիկեփոր կայսեր եղբայր Լևոնի որդին, յոթ տարի է ինչ աքսորական էր կղզում։ Վասիլ կայսրը նրան նշանակեց դոմեստիկ ալ-աս-խ-յուն (սխոլերի դոմեստիկոս) և ուղարկեց Սկլերոսի դեմ (*Розен*, Василий, стр. *3*)։

270. Լևոն Սարկավագը Աբիդոսի ճակատամարտի մասին խոսում է ավելի մանրամասն։ Նա ցույց է տալիս, որ Վարդաս Սկլերոսը, գրավելով Նիկիան, Աբիդոսն ու Ատտալիան, ձեռք բերեց բազում տրիերաներ, որոնց օգնությամբ չէր թողնում, որ առևտրանավերը Կոստանդնուպոլիս ցորեն տանեն։ Դրա վրա մայրաքաղաքից «հունական հրով» նավեր ուղարկվեցին՝ մագիստրոս Վարդաս Պարսակուտենոսի գլխավորությամբ, որոնք Աբիդոսում կրակի տվեցին ապստամբների նավերը, նրանց զորքերը ցրվեցրին և գրավեցին Աբիդոսի բերդը։ Դրանից հետո է, որ Փոկասը հարձակվեց Սկլերոսի վրա և պարտության մատնեց (*Leo Diac.*, p. *170*)։

271. Խարսիանոն բանակաթեմի մասին մանրամասն տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 25—27, 321—322։

272. Բնագրում՝ Βασιλικὰ θέρμα: Ռամզեյը գտնում է, որ թագավորական ջերմուկները պետք է տեղադրել ժամանակակից Գյոնեում կամ էլ Տերզիլի Համամում (*Ramsey*, HGAM, p. 265)։

273. Իմա՝ Տայք։ Բյուզանդական աղբյուրներում Իբերիա է կոչվում (բացի բուն Վրաստանից) նաև բանակաթեմը, որ ստեղծվեց XI դ. 20-ական թվականներին, որի մեջ, բացի՛ Տայքից, մտնում էին նաև այլ հայկական հողեր, ինչպիսիք են՝ Կարինը, Հարքը, Ապահունիքը, Բասյանը և այլն։

274. Խոսքը Դավիթ կուրապաղատի մասին է, որ հորջորջվում էր նաև «Մեծ»։ Նա Տայքի իշխան Ատրներսեհ III-ի կրտսեր որդին էր (*Toumanoff*, The Bagratids of Iberia, p. 39—40։ Վերջին գործերից՝ *Бадридзе*, К вопросу, стр. 79—89 (վրացերեն, ռուսերեն ամփոփմամբ։ Նույնի, Таоское царство. Նաև՝ Ճանաշյան, Դավիթ կյուրապաղատ։ Շլյումբերժեի ասելով՝ „Prince d'origine arménienne" (հայազգի)։ Տես՝ *Schlumberger*, L' epopée, t. I, p. 415—416)։

Մատթեոս Ուռհայեցին ցույց է տալիս, որ Վարդաս Սկլերոսին պարտության մատնեց «զօրքն Հայոց» (էջ 34)։ Սակայն, քանի որ Սկլերոսին հաղթեցին Տայքի կուրապաղատի ուժերով, Ուռհայեցու «զօրքն Հայոց»-ը պետք է կարդալ «զօրքն Տայոց», (հմմտ. Արիստ. Լաստ. «զօրքն Տայոց» (էջ 23), «ընդդէմ եկեալ քաջացն Տայոց» (էջ 25)։ Հայերեն գրչագրերում «Տայոց»-ը «Հայոց»-ի հետ շփոթված գտնում ենք Ասողիկի երկում։ Նա երեք անգամ գրում է «կուրապաղատն Տայոց Դաւիթ» (էջ 188, 252), բայց մեկ անգամ սխալմամբ՝ «Հայոց» (էջ 266)։ Հանդիպում է և հակառակը։ Ասողիկի մի ձեռագրում «արքայն Հայոց Գագիկ»-ի փոխարեն գրված է՝ «արքայն Տայոց Գագիկ» (Ասողիկ, էջ 267)։ Մեր միտքը հաստատում է Արիստակես Լաստիվերցին. «մինչ զի թագաւորին խնդրել զօր յօգնականութիւն ի վրաց կիւրապաղատէն։ Որովք հարեալ զբռնակալն՝ փախստական հանեն յաշխարհէն, որ երթեալ անկանի ի Բաբելովն» (էջ 33)։ Ասողիկի ասելով, Դավիթ կուրապաղատից զորք խնդրողը ոչ թե Փոկասն էր, այլ Թոռնիկ զորավարը. «Վասիլ թագաւորն Յունաց,— գրում է նա,— զԹոռնիկ զորավարն, որ էր յաղդէն վրաց (այսինքն՝ վրացադավան հայ—Հ. Բ.), աբեղայ ի սուրբ լերինն՝

(իմա՝ Աթոնում—Հ. Բ.) հանեալ առաջէ առ կիւրապաղատն Տայոց Դաւիթ... որպէս զի զօր առաքեսցէ յօգնականութիւն նմա» (էջ 192)։ Այս Թոռնիկը ծագումով Սոմխեթից էր (Հայաստանից)։ Պ. Պետերսի ենթադրությամբ՝ Թորթումից, և տարեց հասակում դարձավ վանական Աթոս լեռան վրա՝ Հովհաննես սինկելլոս անունով (տե՛ս *Peeters*, Un colophon, p. 358—371, Նույնի, Orient et Byzance, p. 163—164)։ Թոռնիկ զորավարն էր, որ նախքան Փոկասի հանգես գալը, Դավիթ կուրապաղատից ստացած զորքով, որին գլխավորում էր իշխանաց իշխան Ջոջիկը, պատերազմում է Սկլերոսի դեմ։ Սրանք «սկսեալ ի Տայոց աշխարհէն՝ քանդեալ աւերեցին զամենայն աշխարհն Յունաց, որ ընդ ձեռամբ բռնակալին էր» (Ասողիկ, էջ 193)։ Սրանից հետո, Ասողիկի համաձայն, Վասիլ կայսրը Փոկասին բանտից հանելով, ուղարկեց Սկլերոսի դեմ՝ հունաց արևմտական զորքով. «հանդերձ Վրաց (իմա՝ Դավիթ կուրապաղատի—Հ. Բ.) զօրուն առաքէ ի վերայ բռնակալին Վարդայ երկուս բանակս»։ Սբ. Հովհաննեսի և Եվթիմիոսի վարքում նույնպես ասված է, որ բյուզանդական արքունիքը Դավիթ կուրապաղատի մոտ ուղարկեց հենց Թոռնիկին, որին Տայքի իշխանը տվեց 12 հազար հեծյալ զորք և նրա գլխավորությամբ ուղարկեց ապստամբի դեմ, պարտության մատնեց նրան։ Հաղթանակով վերադառնալով մայրաքաղաք, նա կայսրերի կողմից պատվով ընգունվեց, որից հետո գնաց Աթոն։

Ասողիկը հիշում է նաև, թե ինչպիսի պայմաններով է Դավիթ կուրապաղատը Վասիլին օգնություն տվել։ Կայսրը «խոստանայ տալ նմա զԽաղտոյառիճ Կղէսուրաւն, զՋորմայրի և զԿարին, զԲասեան և զՍևուկ բերդակ, որ է Մարդաղի. զՀարք և Ապահունիս» (էջ 192)։ Այդ մասին տե՛ս *Бартикян*, О феме Иверия, стр. 73։ Խոսքը այդ հողերին տիրանալու՝ կայսեր տված իրավունքին է վերաբերում։ Խաղտոյառիճի մասին Լաստիվերցին գրում է, թե այս և այլ հողեր «յառաջ ժամանակաւ կալեալ էր... Դաւթի Կիւրապաղատի, բայց ոչ իբրև զիւր հայրենի ժառանգութիւն, այլ պարգևք էին այսոքիկ ի թագաւորէն վասն նորա միամիտ հնազանդութեանն, (էջ 35)։

275. Խալդիայի (Խաղտիքի) բանակաթեմի։ Տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 325—326։

276. Սկիլիցեսը Պանկալիան տեղադրում է Հալիս գետին մոտիկ, այնինչ ըստ Լևոն Սարկավագի գտնվում էր Ամորիոնի մոտ (*Leo Diac.*, p. 170)։ Պանկալիայի ճակատամարտը ըստ Յահյա Անտիոքացու տեղի ունեցավ հիջրի 367 թվականի Զուլ-կադ ամսի 10-ին, չորեքշաբթի օր (978 թ. հունիսի 19-ին), որտեղ Վարդաս Փոկասը, ըստ արաբ պատմիչի, պարտություն կրեց և փախուստի դիմեց (*Розен*, Василий, стр. 3)։ Սկիլիցեսը Պանկալիայի ճակատամարտը վերջինն է համարում, որում Սկլերոսը պարտություն կրելով, փախավ արաբների մոտ։ Յահյան ցույց է տալիս, որ Վարդաս Սկլերոսն ու Վարդաս Փոկասը «երկրորդ անգամ» բախվեցին հիջրայի 368 թ. Շաբան ամսի 21-ին (979 թ. մարտի 24-ին), որից հետո ապստամբը փախավ (*Розен*, Василий, стр. 12)։ Թվականի մասին տե՛ս նաև *Canard*, Deux documents arabes, p. 55։

277. Ասողիկը նրան անվանում է «Իբն Խոսրով, ամիրան Բաղդադի, որ է Բաբելոն» (էջ 193,194)։ Սկիլիցեսը, թեև այստեղ նրան անվանում է «արխոնտ», մի փոքր հետո կոչում «ամերմումնի» (ամիրապետ)։ Խոսքը Բույիդ խալիֆա Ադուդ-ադ-Դաուլա-Ֆանա Խոսրովի մասին է (Ազուզ-ադ-Դաուլա Աբու-Շուջա Խուսրաու, 949—983 թթ.)։

278. Յահյայի համաձայն Սկլերոսն իր պարտությունից հետո, վերցնելով եղբոր՝ Կոստանդնին և որդուն՝ Ռոմանոսին, երեք հարյուր հոգով գնաց Դիարբաքր, որտեղից եղբորը՝ Կոստանդնին ուղարկեց սուլթան Ադուդ-ադ-Դաուլայի մոտ՝ օգնություն խնդրելու։

Վասիլ կայսրը, իմանալով այդ մասին, Ադուդ-ադ-Դաուլայի մոտ ուղարկեց իր քարտուղարին, Նիկեփոր-ալ-Ուրանունին (Ուրանոսին), որն հետագայում դարձավ մագիստրոս և Անտիոքի կառավարիչ, համոզելու սուլթանին ձերբակալել և կայսեր հանձնել Սկլերոսին։ Խալիֆան դրա համար Վասիլից մի շարք բերդեր պահանջեց, որոնք բյուզանդացիք խլել էին արաբներից, բայց մերժում ստացավ։ Սկլերոսը բանտարկված մնաց Բաղդադում ութ տարի (*Розен*, Василий, стр. *13—14*)։ Սկիլիցեսը Դիարբաքրի փոխարեն գրում է Մարտիրուպոլիս, որ կենտրոնն էր տվյալ նահանգի։ Այդ շրջանը պատկանում էր Համդանյան Աբու Տաղլիբին։ Վասիլ II-ի և սուլթան Ադուդ-ալ-Դաուլայի միջև բանակցությունները տևեցին մի քանի տարի։ Այդ բանակցությունների մասին ամենից հանգամանորեն գրում է Աբու Շուջան։ Նիկեփոր Ուրանոսը Բաղդադ ուղարկվեց 980 թ., որտեղից վերադարձավ Կոստանդնուպոլիս մի մուսուլման դեսպանի՝ «ղադի» Իբն ալ-Բաքիլլանիի հետ՝ հաշտության պայմանագրի մի նախագծով։ Վերջինս Բաղդադ վերադարձավ մի հույնի՝ Իբն Քունուսի (հավանաբար՝ Իբն Յունուս) ուղեկցությամբ։ Հիջրայի 372 թ. (982 թ. հունիս—983 թ. հունիս) Բույիդ սուլթանը Կոստանդնուպոլիս ուղարկեց Իբն Շահրամին, որը երկար բանակցություններ վարելուց հետո Բաղդադ վերադարձավ Նիկեփոր Ուրանոսի հետ՝ բանակցություններն ավարտելու համար։ Կայսրը պահանջում էր ոչ միայն Սկլերոսին, այլև մի շարք ամրություններ, որ կայսրությունը կորցրեց Սկլերոսի ապստամբության ժամանակ։ Բույիդ սուլթանը ոչ միայն չգիջեց, ընդհակառակը պահանջեց անցյալում բյուզանդացիների կողմից Դիարբաքրում գրավված համդանյան հողերը, ոչ միայն Միջագետքում, այլև Ասորիքում։ Ադուդ ալ-Դաուլայի օրոք այդ բանակցությունները ոչ մի արդյունք չտվեցին։ Նրա հաջորդ Սամսամ ադ-Դաուլայի օրոք 983 թ. մարտի 26-ին հաշտության պայմանագիրը կնքվեց, որը հաստատեց երկու տիրակալների հողային տիրույթները։ Ինչ վերաբերում է Սկլերոսի հարցին, սուլթանը համաձայնվեց վերադարձնել նրան երեք տարի անց (տե՛ս *Canard*, Deux documents arabes, p. 56—57)։ Նրան վերադարձրեց, բայց բոլորովին այլ պայմաններում։

Վարդաս Սկլերոսի ապստամբության մասին տե՛ս *Ломоури*, К истории, стр. 29—44: Tarchnichvili, Le soulèvement de Bardas Skleros: Բարթիկյան, Հայաստանի նվաճումը, էջ *90—91*; *Литаврин*, Кекавмен и Михаил Пселл о Варде Склире, стр. 157—164: *Бадридзе*, К истории восстания Варды Склира, стр. 206—243: *Seibt*, *Die* Skleroi, S. 29—58։

279. Ἐπειϰτης որպես գոյական նշանակում է «գործավար», այլ բառով՝ ἐργοδότης: Սակայն, ինչպես տեսնում ենք, վերածվել է ազգանվան։ Հետաքրքրական է նշել, որ Մատթեոս Ուռհայեցին հիշում է Անտիոքի մի հայ կառավարիչ՝ Եպիխտ անունով. «Եպիխտ իշխանն Հայոց, այր քաջ և պատերազմող, ի տանէն Շիրակայ» (էջ 214)։ «Ի Հայոց քաջ զօրականացն... Պեխտ անուն, և էր տուկ Անտիոքայ քաղաքին» (էջ 157)։ Դժվար է ասել, Քրիստափոր Էպիխտը վերոհիշյալ Եպիխտի հետ ինչ ազգակցական կապ ունի։

280. Բնագրում՝ Πλατεῖα πέτρα.

281. Նիկոլայոս II Խրիսովերդեսը աթոռակալել է 980 թ. մայիսից 12 տարի և ութ ամիս։ Նա վախճանվեց 992 թ. դեկտեմբերի 16-ին (ճշտված ժամանակագրությունը տե՛ս *Grumel*, Chronologie patriarcale, p. 70)։

282. Արեգակի խավարումը տեղի ունեցավ 981 թ. ապրիլի 7-ին։ Դրան նախորդող արեգակի լրիվ խավարումը՝ 979 թ. մայիսի 29-ին, իսկ հաջորդը՝ 985 թ. հուլիսի 20-ին։

283. Քաղաք արևելյան Մակեդոնիայում։

284. Կոմսաձագերի պայքարը Բյուզանդիայի դեմ ոչ միայն ժողովրդա-ազատագրական բնույթ ուներ, այլև քաղաքացիական պատերազմի։ Եթե կոմսաձագերի կողմն էին անցնում Վասիլից դժգոհ առանձին բյուզանդական մեծամեծներ, ինչպես Բատացեսը, Վասիլ Գլավասը, Նիկուլիցան, ապա Սամուիլն էլ ստիպված էր մահապատժի ենթարկել իր հարազատ եղբայր Ահարոնին՝ Բյուզանդիայի հետ դավաճան կապեր հաստատած լինելու պատճառով (տե՛ս *Левченко*, Записки греческого топарха, стр. 68)։

285. Բնական բնագրում՝ Σφενδοσθλάβον (Սվյատոսլավ)։ Կաժդանն ուղղում է Βλαδισθλάβον (Վլադիսլավ)՝ *Каждан*, Рец. на Скил., стр. 212։

286. Երկար ժամանակ Սամուիլի ծագման մասին տիրապետող էր երկու փաստաթղթերի վրա հիմնված այն ենթադրությունը, թե նա ոմն Շիշմանի որդին էր։ Բայց ուսումնասիրությունը ցույց տվեց, որ այդ փաստաթղթերից առաջինը XVI դ. կեղծիք է, իսկ մյուսը՝ գրված է 1502 թ. հետո (տե՛ս *Adontz*, Samuel, p. 308)։ 1888 թ. Մակեդոնիայի Գերման գյուղում, Պրեսպա լճի մոտ եկեղեցու հիմքեր փորելիս գտնվեց Սամուիլի մի վիմագիր արձանագրությունը, գրված հին բուլղարերեն (տե՛ս „Известия Русского Археологического института в Константинополе“, т. IV, 1899, стр. 1—20։ Նաև՝ „Archiv für slavische Philologie“, XXI, p. 543—557)։ Հետագայում այդ արձանագրությունը հրատարակվել է բազմիցս, քանզի համարվում է թվական կրող կիրիլիցայով գրված հնագույն բնագիրը։ Ահա այս արձանագրության մեջ Սամուիլի հայրը կոչված է Նիկոլայ։ Արձանագրության պակասավոր լինելու պատճառով Սամուիլի մոր անունը չի կարդացվում։ Այն վերականգնվում է Հովհաննես Սկիլիցեսի պատմական երկի Վիեննայի գրչագրում եպիսկոպոս Միքայել Դևոլցու 1118 թ. թողած նշումների հիման վրա, որոնցից պարզվում է, որ ցար Սամուիլն ու նրա եղբայրները հզոր կոմս Նիկոլայի և Հռիփսիմեի որդիներն են (Κομήτου ὄντες παῖδες Νικόλαος ὀνομαζόμενος μητρὸς Ῥιψίμης. տե՛ս *Prokić*, Die Zusätze, S. 28։ Այժմ նաև *Ferluga*, John Skylitzes, p. 168 և հտ. Նաև Կաժդանի գրախոսությունը Սկիլիցեսի ընական բնագրի վերաբերյալ, էջ 207)։ Ելնելով Սամուիլի մոր տիպիկ հայկական անունից, բուլղար հայտնի գիտնական Յորդան Իվանովը ցույց է տալիս, որ Սամուիլը սերում էր Բուլղարիա վերաբնակված հին հայկական ընտանիքից (տե՛ս նրա „Произход на цар Самуиловия род“, стр. 55 և հտ.։ Նաև նույնի, Български старини из Македония, стр. 24-25) և որպես իր եզրակացության հաստատում, բերում է Ստեփանոս Տարոնացու տվյալները կոմսաձագերի մասին։ Հայ պատմիչը գրում է. «Զի էին նոքա երկու եղբարք, որք Կոմսաձագքն կոչէին, անուն երիցուն Սամուէլ, յազգէս Հայոց, ի գաւառէն Դերջանայ, զոր ընդ գունդս սաղարացն տարեալ էր զնոսա թագաւորն Վասիլ ի Մակեդոնիա պատերազմել ընդ Բուլղարացն. որոց ի դիպող ժամու ապստամբեալ ի թագաւորէն Յունաց՝ գնացին առ թագաւորն Բուլղարաց, որ էր կուրտ, և ըստ քաջութեան իւրեանց մեծացան յաչս նորա» (Ասողիկ, էջ 244)։ «Կուրտ» թագավորի տակ Ասողիկը, հավանաբար, նկատի ունի Ռոմանոսին, ցար Պետրոսի որդուն, որ ներքինացվեց Կոստանդնուպոլսում պարակիմոմենոս Հովսեփի կողմից՝ Ձմշկիկի թագավորության ժամանակ։ Ձմշկիկի մահից հետո Ռոմանոսը փախավ Բուլղարիա և Սամուիլի կողմից նշանակվեց Սկոպյեի քաղաքի կառավարիչ։ Ավելի մանրամասն տե՛ս Սկիլիցեսի մոտ, էջ 80։ Յորդան Իվանովի եզրակացությունը պաշտպանեց Ն. Ադոնցը (տե՛ս *Adontz*, *Samuel*, p. 382)։ Զլատարսկին, թեև բերում է Միքայել Դևոլցու գրածը՝ Սամուիլի մոր Հռիփսիմեի մասին, բայց թողնում առանց մեկնաբանության։ Նա ծանոթ է Ասողիկի տվյալներին, բայց առանց որևէ բացատրության կրճատում է «յազգէս Հայոց, ի գաւառէն Դերջանայ...» բառերը (տե՛ս

*Златарски*, История, стр. 607. ծանոթ. 45)։ Յ. Իվանովի թեզի դեմ հանդես եկան բազում բուլղար պատմաբաններ (տե՛ս *Благоева*, За произхода на цар Самуил, стр. 79--96)։

Հայ ուսումնասիրողներից Սամուիլի մասին գրել է Ն. Ակինյանը (տե՛ս «Ստեփանոս Ասողիկ և կոմսաձագք», սյունակ 115—136)։ Նրա կարծիքով կոմսաձագերը պետք է ծնված լինեն շուրջ 945—952 թթ.։ Նրանց հայր Նիկողայոսը 945 թ. քիչ առաջ սկսել է պաշտոնավարել Դերջանում։ Կոմսաձագերը Դերջանից եկան Բուլղարիա 970 թ., երբ Բուլղարիայի ցարն էր Բորիսը։

1956 թ. Հարավային Մակեդոնիայի Բիտոլյա քաղաքում 1522 թ. կառուցված Ջաուշ մզկիթի քանդման ժամանակ գտնվեց ատենոք թուրքերի կողմից օգտագործված մարմարյա մի տախտակ, որի վրա փորագրված էր բուլղարական ցար Իվան-Վլադիսլավի (1015—1016) բուլղարերեն արձանագրությունը, ուր, ի միջի այլոց, ասված է, թե Իվանը «ծագումով բուլղար է, Նիկոլա և ...թոռը, Արոնի՝ ցար Սամուիլի եղբոր որդին»։ Արձանագրության հրատարակիչը գրում է, որ կարդացվում է միայն Նիկոլայի անունը, Հռիփսիմեինը եղծված է (*Заимов*, Битолски надпис, стр. 24)։ Յորդան Զաիմովը Սամուիլի հայկական ծագումը անհավանական է համարում։ Իրավացիորեն քննադատելով Սամուիլի ընտանիքին պատկանող մի շարք անձնավորությունների անունների (Դելյան, Պրուսիան և այլն) հայկական լինելու մասին Իվանովի տված բացատրությունները, Զաիմովը, սակայն, զարմանալիորեն մոռացության է տալիս Սամուիլի մոր՝ Հռիփսիմեի անունը, կարծես այն գոյություն էլ չուներ, երբ Իվանովի տեսության անկյունաքարը հայկական հենց այդ անունն է։ Բիտոլյայի արձանագրության մասին տե՛ս նաև „Витольская надпись болгарского самодержца", стр. 123—133։

Մեզ հետաքրքրող հարցի մասին ի՞նչ կարծիք են հայտնել այլ ուսումնասիրողներ։ Հույն բյուզանդագետ ակադեմիկոս Ամանտոսը ենթադրում է, որ կոմսաձագերի հայր կոմս Նիկոլայոսը նախապես բյուզանդական ծառայության մեջ էր և նրա ընտանիքը, հավանաբար, Հայաստանից էր (տե՛ս ''Λμαντος, 'Ιστορια, σελ. 150, ծանոթ. 1)։ Հարավսլավացի պատմաբան Ս. Անտոլյակը ցույց է տալիս, որ կոմսաձագերի ծնողները կոչվել են Նիկոլայ և Հռիփսիմե և այս առթիվ գրում է. եթե նրանց մոր հայկական ծագման հարցում ուսումնասիրողները համամիտ են միմյանց, ապա հոր ծագման վերաբերյալ առաջ են քաշվում մի քանի վարկած՝ թե նա նախաբուլղար էր, հայ կամ էլ պարսիկ (*Antoljak*, Samuilovata država, Skopje, 1969։ Ինձ անմատչելի։ Հղում եմ Revue des Etudes Byzantines, t. XXIX, 1971, էջ 353-ում Gautier-ի տված մատենագիտական նոթին)։ Ավստրիացի բյուզանդագետ Վ. Զայբտը կոմսաձագերին Դերջանից սերելն է հաստատում (Untersuchungen, SS. 66—99)։ Կոմսաձագերի ծագման հարցը, ինչպես նաև նրանց շարժումը քննության նյութ դարձան Մակեդոնիայի Պրեսպա քաղաքում 1969 թ. հոկտեմբերի 10—15-ը տեղի ունեցած միջազգային սիմպոզիումում, նվիրված կոմսաձագերի շարժման 1000-ամյակին (L'insurrection des Comitopoules et la création de l'Etat de Samuel), որի զեկուցումները լույս են տեսել առանձին գրքով. „Хилияда години од востанието на комитопулите и создаването на Самоиловата држава", Скопье, 1971։ Շարժման մասին տե՛ս նաև *Н. П. Благоев*, Братята Давид, Моисей, Аарон и Самуил, Годишник на Софийския университет, Юридически факултет, т. 37, 14, София, 1941—1942; *Д. Ташковски*, Самуилово царство, Скопје, 1961; *П. Петров*, Восстание Петра и Бояна в 976 г. и борьба комитопулов с Византией, „Byzantinobulgarica" том I, 1962, стр. 121—144; *J. Ferluga*, Le soulèvement des

Comitopoules, „Зборник Радова. Византолошки институт", том IX, 1966, стр. 75—84; *P. Tivčev*, Nouvelles données sur les guerres des Bulgares contre Byzance au temps du tsar Samuel, Byzantino-Bulgarica 3, Sofia, 1969, p. 37—48։ *Հայկական աղբյուրների տվյալները բյուզանդաբուլղարական այս շրջանի պատմության մասին ուսումնասիրել են բուլղար պատմաբաններ Դ. Անգելովն ու Վ. Գյուզելևը։ Տե՛ս նրանց հոդվածը՝ «Հայկական աղբյուրները», էջ 45 և հտ.։*

*287. Քաղաք Թեսալիայում (չշփոթել Փոքր Հայքի Լարիսայի հետ), Հելլադա բանակաթեմի կենտրոնը։ XI դ. Հելլադա և Պելոպոննես բանակաթեմերը միացան իրար, որից հետո կենտրոնը դարձավ Թեբե քաղաքը։ Լարիսայի գրավման մասին հիշատակում է և Կեկավմենոսը* («Советы и рассказы», стр. 252)։

*288. Բյուզանդացիները Տրիադիցա էին անվանում Սոֆիան, Բուլղարիայի այժմյան մայրաքաղաքը։*

*289. Այժմ՝ Պլովդիվ (Բուլղարիայում)։*

*290. Այս ամբողջ պատմությունը համարվում է կեղծիք, Վասիլ II-ի պարտությունը (986 թ. օգոստոսի 17) սքողելու փորձ։*

*291. Այս երկրաշարժի ժամանակ տեղի ունեցած ավերածությունների, այդ թվում և սբ. Սոֆիայի գմբեթի քանդման մասին, վկայում է և Լևոն Սարկավագը, որի ասելով Վասիլ II-ը այն վերականգնեց վեց տարի անց* (*Leo Diac.*, p. *176*)։ *Գիտության մեջ հայանվել են տարբեր կարծիքներ երկրաշարժի ժամանակի վերաբերյալ (986 թ. հոկտեմբերի 29, 989 թ., հետևաբար գմբեթի վերանորոգումը տեղի ունեցավ 995 թ., ըստ Պապադոպուլո-Կերամևսի՝ 994 թ. մայիսի 13-ին)։ Այդ մասին տե՛ս* *Каждан*, Из истории, 2, стр. 117։ *Երկրաշարժն ավելի մանրամասն նկարագրում է Ասողիկը. «Շարժեցաւ (ՆԼԸ=989 թ.) աշխարհն Յունաց ահաւոր դղրդմամբ, մինչև կործանել բազում քաղաքաց և գիւղից և գաւառաց, ևս առաւել ի Թրակացւոց և բիւզանդացւոց աշխարհին... և նոյն ինքն Սոփիայն, որ կաթողիկէն է՝ հերձանիւր պատառմամբ վերուստ ի վայր»* (Ասողիկ. *էջ 250*)։ *Պատմիչը տալիս է արժեքավոր այլ մանրամասնություններ ևս, հատկապես սբ. Սոֆիայի տաճարի վերակառուցման վերաբերյալ։ «Վասն որոյ,— գրում է նա,— բազում ջան եղև արհեստաւոր ճարտարացն Յունաց առ ի վերստին նորոգել։ Այլ անդ դիպեալ ճարտարապետին Հայոց Տրդատայ քարագործի՝ տայ զօրինակ շինուածոյն, իմաստուն հանճարով պատրաստեալ զկաղապարս կազմածոյն և սկզբնաւորեալ զշինելն. որ և գեղեցկապէս շինեցաւ պայծառ քան զառաջինն»* (Ասողիկ, *էջ 251*)։ *Տրդատի մասին տե՛ս* К. Л. Оганесян, Зодчий Трдат, Ереван, 1951։ *Նաև՝* Ս. Գ. Բարխուդարյան, *Միջնադարյան հայ ճարտարապետներ և քարգործ վարպետներ, Երևան, 1963, էջ 35—38։*

*292. Կոնկրետացնում է, որպեսզի չշփոթվեն արևմտքի Թուրքերի (հունգարացիների) հետ։*

*293. Այսինքն՝ Բյուզանդական կայսրության։*

*294. Խոսրովի (Ադուդ-ադ-Դաուլայի) որդին էր, ըստ Յահյայի Սամամ-ադ-Դաուլան։ Նա Սկլերոսին, վերջինիս որդուն և եղբայրներին ազատ արձակեց հիջրայի 376 թ. Շաբան ամսին (6 դեկտ. 986—3 հունվար 987 թ.), նրանց հետ նաև ավելի քան 300 հոռոմների, որոնց, արաբների ուղեկցությամբ, հասցրեց մինչև ալ-Ջաղիրա, որտեղից Սկլերոսն անցավ Եփրատն ու նույն տարվա փետրվարին հասավ Մելիտենե* (*Розен*, Василий, стр. *21—22*)։ *Յահյան ցույց է տալիս, որ Վարդաս Սկլերոսին միացան իր հետ եկած արաբ օկայլիտներ և նումեյրիտներ, ինչպես նաև հայեր, որ ապստամբը*

օգնություն հայցեց Դիարբաքրի քուրդ ամիրա Բադից, որից ստացավ ուժեղ զորք, Բադի եղբայր Աբու-Ալիի գլխավորությամբ (Розен, Василий, стр. 22)։

Հիշյալ դեպքերին քաջատեղյակ է և Ասողիկը, որ 435 թ. (986) տակ գրում է. «Վարդ ելեալ ի Բաղդատայ ի Մելտենի մտանէ... և ամենայն զօրք աշխարհին առ հասարակ ի հնազանդութիւն գային, և Բատն Ապահունեաց, և Նփրկերտոյ ամիրայն, և վայրաբնակ Արապիկքն որ ընդ նմա» (Ասողիկ, էջ 246—247)։

295. Վարդաս Սկլերոսն արաբների ձեռքից ազատվեց 986 թ. վերջին։ Այդ առթիվ նա արաբների հետ փոխօգնության մի պայմանագիր կնքեց, որի պայմանները հայտնի են Իբն ալ-Աթիրին՝ Աբու Սուջայի միջոցով, որը, հավանաբար, ձեռքի տակ ուներ պայմանագրի պաշտոնական բնագիրը։ Հենց այս բնագիրն ամբողջությամբ մեզ է հասցրել Քալքաշանդին։ Սկլերոսը պարտավորվում էր ունենալ նույն բարեկամներին ու թշնամիներին, ինչ սուլթանը, չգործել և ոչ մի արշավանք սուլթանի տիրույթների վրա, ազատել բյուզանդական զնդաններում նետված մուսուլմաններին և վերջիններիս կողմնակիցներին, հանձնել յոթ բերդ, կատարել իր բոլոր խոստումները, պայքարել բոլոր նրանց դեմ, ովքեր կփորձեն հակառակվել՝ լինեն նրանք հույներ, հայեր, թե ուրիշներ։ Սուլթանը խոստանում էր Սկլերոսին և նրա մերձավորներին ազատ անցում տալ դեպի Բյուզանդիա, չկնքել որևէ համաձայնություն՝ Սկլերոսի հույն, հայ, վրացի և այլ թշնամիների հետ և առատաձեռն լինել Սկլերոսի կողմից վերադարձվող բերդերի բնակիչների հանդեպ։ Պայմանագիրը կնքվել է հիջրայի 476 թ. Շաբան ամսին (986 թ. դեկտեմբերի 6—987 թ. հունվարի 3)։ Նույն պարտավորություններն ստանձնեցին նաև Սկլերոսի եղբայր Կոստանդինը և որդին Ռոմանոսը։ Քալքաշանդին հիշում է և վերոհիշյալ յոթ բերդերի անունները։ Նրանք գտնվում էին Դիարբաքրի ծայրագույն հյուսիսում, վերին Տիգրիսի և նրա վտակ Բատման-սուի, հայկական Միջագետքի շրջանում։ Արևելքում Բատման-սուի ակունքների մոտ Հովիտն ու Սանասունայի (Սասունի) բերդը, արևմուտքում, վերին Տիգրիսի շրջանում էգիլը (Անգեղ), Անձիտը, Թելլ խումը և խանին։ Յոթերորդ բերդը կրում է կրկնակի, բայց աղավաղված անուն։ Հովիտը գտնվում էր Տարոնի հարավում, Սանասունան Սասուն կալեն է Արզանա-սուի հյուսիսային ծայրում, այլ կերպ ասած Նահր Սարբաթ, էգիլը գտնվում է Արզանա-սուի վրա, Ամիդից ութ ժամ հեռավորության վրա, Արզանա-սուի և Զիբենե-սուի միացման տեղում։ Թելլ խումը գտնվում է Արզանա-սուից հարավ-արևելք, Դիարբաքր տանող ճանապարհի վրա, խանին գտնվում է հիշյալ տեղերից հյուսիս-արևելք, ժամանակակից Անբար չայի ակունքների մոտ, Իբն ալ-Ազրաքի Նահր Հարրուն։ Ինչ վերաբերում է վերջին՝ յոթերորդ բերդին, ապա բնագրում գրված է Արխակահի բերդ, որ հայտնի է ալ-Հ.Ն.Դ.Ր.Ս. բերդ անվամբ։ Կանարը գտնում է, որ Արխակահը, եթե ընթերցվի Արշակահ, կարող է Արծկեի տարրնթերվածքը լինել, բայց նույն ուսումնասիրողի կարծիքով, այդ դեպքում վայրը բավական հեռանում է նախորդներից։ Եթե ալ-Հ. Ն. Դ. Ր. Ս տառադարձնել (ալ-)Հալուրաս, ապա դա կարող է լինել Տիգրիսի (Զեբենե-սուի)․ ակունքների վրա գտնվող հայտնի բնակատեղին (տե՛ս Canard, Deux documents arabes, p. 59—61։ Պայմանագրի բնագրի թարգմանությունը նույն տեղում, էջ 65—68)։ Ալ-Հալուրասի վերաբերյալ կարելի է ավելացնել, որ կղեսուրները, ամրացված լեռնանցքները, հայկական աղբյուրներում կոչվում են Օլոր, ասոր. Հալորաս, հունարեն՝ Իլլիրիսոս։ Տե՛ս նաև Адонц, Армения..., стр. 11: Դանիելյան, Վասիլ Բ-ի 1000 թ. արևելյան արշավանքը..., էջ 66—67։

296. Վարդաս Սկլերոսը Մելիտենե հասավ 987 թ. փետրվարին։ Եթե հավատանք Սկիլիցեսի պատմածին, ապա ստացվում է, որ հենց այս ժամանակ Վարդաս Փոկասն

իրեն կայսր էր հռչակել, ինչ որ ճիշտ չէ։ Փոկասն այդ ժամանակ դեռևս Վասիլ II-ի դեմ ապստամբություն չէր բարձրացրել։ Ասողիկի և Յահյա Անտիոքացու տվյալներով, Վասիլ II-ը, իմանալով Վարդաս Սկլերոսի վերադարձի մասին, նրա դեմ ուղարկեց հենց Վարդաս Փոկասին. «իսկ Վարդ. որ և Փոկաս,— գրում է հայ պատմիչը,—Հրամանաւ Վասլի գայ ընդդէմ նորա (Սկլերոսի—Հ. Բ.) ի պատերազմ ամենայն զօրօքն Յունաց և Վրաց» (էջ 247)։ Յահյան ավելի հանգամանորեն է խոսում։ Վասիլ կայսրը, գրում է նա, ստիպված եղավ Հիջրայի 376 թ. Ջու-լ-Հիջա ամսին (3 ապրիլ-2 մայիս 987 թ.) վերադարձնել Վարդաս Փոկասին դոմեստիկոսի աստիճանը և կարգադրել նրան շարժվել Սկլերոսի դեմ։ Բայց երկու ապստամբների միջև գործարք է կնքվում, որից հետո Վարդաս Փոկասը նույն տարվա սեպտեմբերի 14-ին ապստամբություն բարձրացնելով, իրեն կայսր հռչակեց (Розен, Василий, стр. 22—23)։ Պսելլոսը գրում է, որ Փոկասը «իբերական» զորք (στράτευμα Ἰβηρικόν) հավաքելուց հետո ապստամբություն բարձրացրեց (Psellos, Chronographie. I. p. 7. նաև 10)։ Սա հաստատում է Ասողիկի տվյալներն այն մասին, որ Փոկասը «զօրօքն Յունաց և Վրաց» գնաց պատերազմի։ Հավանաբար Տայոց զորքերի մասին է խոսքը։

297. Այս բերդը մի անգամ ևս է հիշված։ Այստեղ այն տեղադրվում է Կապադովկիայում։

298. Յահյան ցույց է տալիս, որ երկու Վարդասները հանդիպում ունեցան երկու անգամ։ Առաջին անգամ Ջեյխանում։ Երկրորդ հանդիպման ժամանակ է, որ Փոկասը ձերբակալեց Սկլերոսին (Розен, Василий, стр. 23)։

299. Բյուզանդական դեսպանությունը օգնության խնդրով Կիև ժամանեց 986 թ.։ Ինչպես հայտնի է, Ցիմշկիկի և Սվյատոսլավի միջև 971 թ. կնքված հաշտության պայմանագրի մի կետի համաձայն ռուս իշխանը պարտավորվում էր օգնություն ուղարկել բյուզանդական կայսեր, եթե վերջինիս տերության վրա թշնամու հարձակում տեղի ունենա։ Սկիլիցեսը չի խոսում այդ մասին, բայց այլ աղբյուրներից հայտնի է, որ Վլադիմիրն օգնության դիմաց Վասիլի քրոջը կնության պահանջեց։ Այդ մասին վկայում է Աբու-Շոջան, XI դ. արաբ պատմիչը (Кезма, Оповдання арабського історика)։ Վասիլը համաձայնվեց իր քրոջը՝ Աննային, կնության տալ այն պայմանով, որ Վլադիմիրն ու նրա ժողովուրդը քրիստոնեություն ընդունեն Բյուզանդիայից և մկրտվեն։ Վլադիմիրն համաձայնվեց այդ պայմանին։ Ռուսիայում քրիստոնեությունը պետական կրոն հայտարարելու համար արդեն վաղուց հասունացել էին պայմանները և Վլադիմիրի կողմից քրիստոնեությունն ընդունելը, իհարկե, Վասիլ II-ի քրոջ հետ ամուսնանալու ցանկությունը չէր միայն։ Վլադիմիրը Վասիլին ուղարկեց վարյագներից ու ռուսներից բաղկացած վեց հազարանոց զորք, որը Կոստանդնուպոլիս հասավ 988 թ. ապրիլից հետո։ Ռուսական զորքերի Բյուզանդիա գալու մասին վկայում է և Ասողիկը. «զորս էր խնդրեալ Թագաւորին Վասլի ի Թագաւորէն Ռուզաց, յորժամ ետ զքոյրն իւր կնութեան նմա, յորում ժամանակի և հաւատացին նորա ի Քրիստոս» (Ասողիկ, էջ 277)։ Այս ռուսները 1000 թ. մասնակցեցին Տայքի նվաճմանը։

Վասիլ II-ը օգնության համար դիմեց ոչ միայն ռուսներին։ Արաբ պատմիչներ Աբու-լ-Մախասինից և ալ-Այնիից հայտնի է, որ 988 թ. սկզբում. այսինքն հենց նույն ժամանակ, կայսրը դիմեց նաև Եգիպտոսի ֆաթեմյանների ամիրապետ ալ-Ազիզին և նրա հետ բավական ծանր պայմաններով դաշինք կնքեց՝ կանխելու համար եգիպտացիների նավատորմիղի հարձակումները, ինչպես և նրանց հավանական դաշինքը ապստամբ Փոկասի հետ (Розен, Василий, стр. 202—205)։

300. *Հմմտ. Ասողիկ, էջ 248. «Ծովընկէց առնելով (Վասիլ II-ը) զզօրսն Տլփինասայ՝ ձերբակալ արարին և զՏլփինաս գլուխ զօրուն, զոր յանդիման արարին Վասիլ թագաւորին. և գատապարտեցաւ ի փայտ ելանել։ Այս եղև ի ՆԼԷ (988) թուականին»։*

301. *Երբ ապստամբը մայրաքաղաքի պարիսպներին մոտեցավ, Վասիլ II-ը ծովով Տրապիզոն ուղարկեց Տարոնացուն՝ Փոկասի թիկունքում զորք կազմակերպելու։ Արժեքավոր տեղեկություններ է պահպանել Յահյա Անտիոքացին։ Նրա ասելով Վարդաս Փոկասն իր որդի Նիկեփոր Ծռվիզին վրաց թագավոր Դավթի՝ «Տայք քաղաքի» տիրակալի մոտ ուղարկեց՝ Տարոնացու դեմ օգնություն ստանալու համար։ Դավիթը ուղարկեց իր ծառաներից մեկին հազար ձիավորով։ Նրա ետևից գնացին նաև «Բագրատի երկու պատրիկ որդիները՝ ալ-Խալիդիյատի տիրակալները» հազար ձիավորով, որոնք Տարոնացուն ջարդ տվեցին* (*Розен*, Василий, стр. *24*)։ *Տարոնացին հավանաբար Գրիգոր Տարոնացին է, որ հետագայում մասնակցեց բուլղարների դեմ մղվող պատերազմներին։ Ալ-Խալիդիյատի տեղադրությունը Ռոզենը վիճելի է համարում և ենթադրաբար տեղադրում է Տարոնում* (*Розен*, Василий, стр. *80*)։ *Ադոնցը նույնացնում է Խալդիայի հետ, բայց հավանական չէ, քանզի ըստ Յահյայի մի փոքր առաջ Վասիլը Վարդաս Սկլերոսին նշանակել էր Անձիտի և ալ-Խալիդիյատի կառավարիչ* (*Розен*, Василий, стр. *1*)։ *Խալդիան (Խաղտիքը) Անձիտից շատ հեռու է, այն վերջինիս մոտակայքում պետք է փնտրել։ Ադոնցը գտնում է, որ Բագարատի պատրիկ որդիների անունները հիշում է Տրապիզոնի ուշ շրջանի մետրոպոլիտ Հովհաննես Լաղարոպուլոսը, անվանելով Բագարատ և Ջորավանել* (*Пападопуло-Керамевс.* Сборник источников по истории Трапезундской империи, 1897, стр. 82)։ *Ջորտվանելին հիշում է Ասողիկը։ Նրա ասելով Ջորտվանելը Վարդաս Փոկասի մահից հետո էլ շարունակեց պայքարը. «Այլ դեռ ևս մնացեալ էր յապստամբացն, որ ընդ Փոկասուն Վարդայ՝ Ջորտուանէլ մաժիստրոսն եղբօրորդի Թոռնկայ աբեղայի, որ բռնացեալ էր ի կողմանս Դերջանայ և Տարօնոյ»։ Նա սպանվեց «ի դաշտին Բագառճոյ, ի Դերջան գաւառի, ի ՆԼԹ թուականին (990 թ.)*, Ասողիկ, էջ 251)։ *Ռոզենը, սակայն՝ «Բագարատի պատրիկ որդիներին» նույնացնում է Տարոնի վերջին իշխան Աշոտի որդիներ Գրիգորի և Բագարատի հետ* (*Розен*, Василий, стр. *80*), *ուշադրություն չդարձնելով, որ Յահյայի՝ Վարդաս Փոկասի և «Բագարատի որդիների» դեմ կռվի գնացող Տարոնացին հենց Գրիգոր Տարոնացին է, որ արդեն ծառայության է մտել կայսեր մոտ։ Նույն Յահյան ցույց է տալիս, որ Փոկասի ապստամբությունը ճնշելուց հետո, Վասիլը զորք ուղարկեց «Բագարատի երկու որդիների դեմ և սպանեց նրանցից ավագին»* (*Розен*, Василий, стр. *27*)։ *Պարզ է ուրեմն, որ նա չէր կարող Տարոնի իշխանի որդին լինել, քանզի իշխան Աշոտի ավագ որդի Գրիգորը ավելի ուշ սպանվեց բուլղարների դեմ մղվող պատերազմում։*

302. *Յահյան գրում է, որ Փոկասն սպանվեց և նշում ճիշտ ժամանակը՝ Նիսան (ապրիլ) ամսի 13-ին (989)*։ *Розен*, Василий, стр. 25։

303. *Վարդաս Փոկասի ապստամբության վերաբերյալ տե՛ս նաև* Ասողիկ, *էջ 248—249.* Մատթ. Ուռհ., *էջ 39։ Պատմիչը նրան անվանում է Մօրավարդ։ Եվ* Արիստ. Լաստ., *էջ 33—34։*

304. *Վարդաս Սկլերոսին Փոկասն արգելափակել էր այն բերդում, որտեղ էր նրա՝ Փոկասի կինը։ Երբ վերջինս իմացավ ամուսնու սպանության մասին, Սկլերոսին ազատ արձակեց, որին միացավ Փոկասի որդի Նիկեփոր Ծռվիզը։ Յահյայի ասելով հաշտության կողմ Սկլերոսին դիմեց ոչ թե Վասիլ II-ը, այլ նրա եղբայր Կոստանդինը* (*Розен*, Василий, стр. *25, 210—211*)։ *Վերոհիշյալ բերդի անունը հիշում է Ասողիկը՝ Ժնոաւս («Վարդ, որ և Փոկաս՝ ստեալ երդմանն իւրոյ, յետ աւուրց եօթանց կալանա-*

*ուր արարեալ զՍիկլառոսն Վարդ՝ զինակիր պատրաստութեամբ հրամայէ տանել ի բերդն Ժեռաւս»* (Ասողիկ. *էջ 247)։ Հաջորդ էջում հայ պատմիչը Ժեռաւսը քաղաք է անվանում։ Պարզ չէ, ո՞ր քաղաքի մասին է խոսքը։ Սկիլիցեսն այն Տյուրոպիոս էր կոչել և տեղագրել Կապադովկիայում։*

*305. Յահյան ևս վկայում է, որ Սկլերոսն ստացավ կուրապաղատի տիտղոսը, բայց միաժամանակ հիշում, որ նա պաշտոններ էլ տվեց նրան, նրա եղբոր և մերձավորներին։ Նա Սկլերոսին տվեց ալ-Ամ-նիա.ու.ն և Ռ.գ.ան. նահանգները՝ ողջ գլխահարկով ու հողահարկով, վերադարձրեց նրա վաղեմի կալվածները, ներում և մի հոյակապ կալված շնորհեց Փոկասի որդի Նիկեփոր Ծռվիզին* (*Розен*, Василий, стр. *26)։ Պսելլոսը նշում է Վասիլի և Սկլերոսի միջև կնքված համաձայնության պայմանները. Սկլերոսը դառնալու էր կայսրության երկրորդ մարդը, ապստամբության մասնակցած իր զինվորականները պետք է պահպանեին իրենց աստիճաններն ու պաշտոնները, որոնք ինքը Սկլերոսն էր նրանց շնորհել, նրանք չպետք է զրկվեին իրենց կալվածներից, լինեն դրանք նախկինում տիրացած, կամ Սկլերոսից ստացած (Psellos,* Chronographie, I, p. 16)։

*306. Պսելլոսն ու Զոնարասը տալիս են հետաքրքիր մանրամասնություններ։ Նրանց ասելով, երբ Սկլերոսը հանդիպեց Վասիլին վերջինիս վրանում, դեռ հագած ուներ կարմիր կոշիկներ, որ կայսրերի իրավունքն էր (կայսերական մյուս նշանակները Սկլերոսը հանել էր)։ Կայսրը համաձայնվեց նրան ընդունել միայն սովորական քաղաքացու հանդերձներով։ Սկլերոսը վրանի առջև հանեց կարմիր կոշիկները, որից հետո կայսրն ընդունեց նրան, խոսակցություն ունեցավ, նույն սեղանին ճաշեցին և նույն բաժակից գինի խմեցին։ Կայսեր հարցին, ինչպե՞ս անել, որ իր դեմ ապստամբություններ չծագեն, Սկլերոսը պատասխանեց. վերացնել չափից մեծ իշխանությունները, զինվորականների ծայր աստիճան բարեկեցությունը, անօրեն գանձումներն ու հարկատվությունը։ Սկլերոսի կուրացման մասին Պսելլոսը ոչինչ չգիտե (Psellos,* Chronographie, I. p. 17, Zonar., IV, p. 116—117)։

*307. «Մնացած տոպարխների» մեջ, անկասկած, մտնում էր նաև Տայքի կուրապաղատ Դավիթը, որ աջակցություն էր ցուցաբերել Վարդաս Փոկասին՝ վերջինիս ապստամբության ժամանակ։ Սկիլիցեսը ոչինչ չի ասում, թե ինչպես վարվեց կայսրը նրա նկատմամբ, Փոկասին հաղթելուց հետո։ Այդ մասին խոսում է Յահյա Անտիոքացին. «Վասիլ կայսրը,—գրում է նա,—զայրացել էր վրաց թագավոր Դավթի, Տայքի տիրակալի դեմ, ինչպես նաև Բագարատի երկու որդիների՝ ալ-Խալիգիյատի տիրակալների, այն բանի համար, որ նրանք օգնում էին Փոկասին, դրա համար նրանց դեմ զորք ուղարկեց Ջակրուս կոչվող մի պատրիկի գլխավորությամբ։ Նա դնաց Բագարատի որդիների դեմ և սպանեց նրանցից ավագին, իսկ կրտսերին աքսորեց։ Դավիթը, վրաց թագավորը, Վասիլ կայսրից ներողություն ու ողորմածություն աղերսեց՝ խոստանալով հնազանդություն ու հպատակություն, ասաց, որ իր տիրույթները՝ իր մահից հետո կմիացվեն [Վասիլի] պետության, քանզի ինքը ղառամյալ ծերունի է և չունի ո՛չ որդի, ո՛չ այլ ժառանգներ...։ Կայսեր դա դուր եկավ և նա [Դավթին] շնորհեց կուրապաղատի աստիճանը...»* (*Розен*, Василий, стр. 27, Histoire de Yahya, p. 429): *Հմմտ.* Ասողիկ. *էջ 275. «զի ոչ գոյր նորա որդի կամ եղբայր, որ ժառանգէր զաթոռ թագաւորութեան նորա»։*

*308. Թեսաղոնիկե քաղաքի պահապան սրբին։*

*309. Տարոնի իշխան Աշոտի որդին, Բագարատի եղբայրը։ Նախկինում միացել էր Վարդաս Սկլերոսի ապստամբության։*

*310. Ըստ Սկիլիցեսի, Վասիլը Կոստանդնուպոլսից եկավ Տայք։ Ասողիկը գրում է, որ Դավիթ կուրապաղատի մահվան լուրը Վասիլն ստացավ «ի Տարսոն Կիլիկեցւոց» (էջ 275), որտեղից «փութանակի յառաջեաց գալ յաշխարհս մեր» (այսինքն՝ Տայք)։ Նրա երթուղու մասին մանրամասն տե՛ս Է. Դանիելյան, Վասիլ II-ի 1000 թ. արևելյան արշավանքի նպատակը և երթուղին։ Դավիթ կուրապաղատը մեռավ 1000 թ. մարտի 31-ին (տե՛ս* *Toumanoff*, Armenia and Georgia, p. 618)*։ Նրան անհաջող թունավորեց, ապա ստիպված խեղդամահ արեց Իլարիոնը, «եպիսկոպոսն Վրաց աշխարհին»* (Մատթ. Ուռհ., *էջ 37—38), ամենայն հավանականությամբ Բյուզանդիայի պատվերով։ Դավթի մահը միայն կայսրության էր ձեռնտու, քանզի նա դրանով ժառանգում էր Տայքը։ Ոչ մի նշանակություն չունի այն հանգամանքը, որ Իլարիոնին դրանից հետո Վասիլը որպես մարդասպանի ջրահեղձ արեց։ Նա պարզապես ոճրագործության հետքերն ուզեց թաքցնել։ Բացի Իլարիոնից, Դավթի սպանության գործում մասնակցություն ունեցան և այլ «աղատներ»՝ Դավթի «չար իշխանները», որոնք հազիվ թե այդ քայլով ուզում էին վրեժ առնել Դավթից՝ Տայքը Բյուզանդիային կտակելու համար, չէ՞ որ դրանով նրանք արագացնում էին Տայքի իշխանության վերացումը։ Դավթի եղերական վախճանի մասին անտեղյակ է Ասողիկը, թեև դեպքերին ժամանակակից է։ Նա գրում է, որ Դավիթը «լցեալ աւուրբք, ծերացեալ ժամանակօք՝ վախճանեցաւ յաւուր մեծի փրկական Զատկին, ի ՆԽԹ (1000) թուականին»։ Նա Տայքի կտակումը կայսեր բացատրում է դրանով, որ «ոչ գոյր նորա որդի կամ եղբայր, որ ժառանգէր զաթոռ թագաւորութեանն նորա յանձն արարեալ էր զգաւառն և զաշխարհ իւր թագաւորին Յունաց Վասլի»* (Ասողիկ, *էջ 275)։ Արիստակես Լաստիվերցին գիտե նրա սպանության և այդ գործում դեր խաղացած բյուզանդական կայսեր մասին. «Նոքա,—գրում է նա, նկատի ունենալով Տայքի իշխանավորներին,—յաւուր մեծի հինգշաբաթին դեղ մահու խառնեալ ի խորհուրդ պատարագին արբուցին նմա, և հեղձամահ արարեալ զերանելի անձն՝ բարձին ի կենացս» (էջ 23)։ Եվ պատճառն այն էր, որ այդ իշխանավորները «ձանձրացեալ կենօք նորա» (այսինքն նրա երկարակեցությունից զզվել էին, քանզի տեսնում էին, որ Դավիթը ժամ առաջ չի մեռնում)։ Կ. Յուզբաշյանը Արիստակես Լաստիվերցու այս նախադասությունը թարգմանելով* „Ибо были недовольны его лействиями“ (*Аристакэс*, стр. 56) *դուռ է բացում սխալ մեկնաբանության։ Դավիթ կուրապաղատի գործունեությունը* (действия) *այն ժամանակ վերաբերում էր Տայքի կտակմանը կայսրությանը։ Յուզբաշյանի թարգմանությունից ստացվում է, որ նրան սպանողները դժգոհ էին դրանից, հետևաբար կողմնակից էին Տայքի ինքնուրույնության պահպանմանը, ինչ որ հաջորդ շարադրանքից չի հաստատվում։ Այդ իշխանավորները շտապում էին ձերբազատվել նրանից, քանզի դրա համար կայսրից ակնկալիքներ ունեին. «վասն առաջիկայ խոստմանցն՝ որ ի թագաւորէն ակն ունէին»* (Արիստ. Լաստ., *էջ 23)։ Եվ նրանք ստացան իրենց «գործի» վարձը, Դավթի մահից հետո նրա ազատագնդից մի շարք մարդիկ «առատատուր պարգևօք մեծարեալ ի նմանէ (ի Վասլէ) իւրաքանչիւր ոք ըստ արժանեաց յիշխանութիւն, ի պատիւ, ի դահ ժամանեալ» (Նույն տեղում)։ Բայց միաժամանակ պետք է ընդգծել, որ Տայքի նվաճումն, ամենայն հավանականությամբ, խաղաղ չիրականացավ։ Վասիլն եկավ Տայք իր «ժառանգության» տիրանալու «ծանր զինու»* (Արիստ. Լաստ., *էջ 23), նա Տայքի բոլոր բերդերն ու ամրոցները «նուաճեաց ընդ ձեռամբ իւրով»* (Ասողիկ, *էջ 278), երբ կայսրը գտնվում էր Հավճիջում, նրա դիմաց եկան բանակեցին «իշխանք և ազատք կիւրապաղատին Դաւթի» (Նույն տեղում, էջ 276), Տայքի ազատագնդի ու Վասիլի զորքերի միջև զինյալ ընդհարում տեղի ունեցավ Աղորի գավառի Հավճիջ վայրում, որի պատճառը Լաստիվերցին չի նշում. «եւ ոչ գիտեմ յորպիսի*

պատճառանաց,— գրում է նա,—ընդ միմեանս անկեալ արևմտական զօրն, որ կոչի Ռուզք, և ազատագունդն [Տայոց] և ի նմին տեղւոջ մեռան յազատացն երեսուն այր ի յոյժ պատուաւորացն» (Արիստ. Լաստ., էջ 23)։ Ասողիկը այդ դեպքերին միամիտ բացատրություն է տալիս, թե իբր ամբողջ կռիվն սկսվեց մի խուրձ խոտի պատճառով՝ մի ռուս զինվորի և մի վրացու միջև առաջացած վեճից, բայց նա հիշատակում է, թե այդ ընդհարման ժամանակ ովքեր զոհվեցին. «մեռաւ մեծ իշխանն, որում Պատրիարքն կոչիւր, և երկու որդիքն Ոչոպընտրեայ Գաբրիէլ և Յովհաննէս, և Ջորտուանէլ թոռն Ապուհարպայ և այլք բազումք» (էջ 277)։ Անհավանական չէ, որ Վասիլը հենց սկզբից ջանաց գլխատել Տայոց ազատագունդը, մի մասին ֆիզիկապես ոչնչացնելով, մյուսին՝ երկրից հեռացնելով։ Սկիլիցեսն, օրինակ, գրում է, որ կայսրը Տայքից գնաց Փյունիկե, իր հետ տանելով Տայքի տոհմիկ ազնվականության գլխավորներին, մի բան, որ հաստատվում է և Ասողիկի տվյալներով. «Իսկ թագաւորն Վասիլ չու արարեալ գնաց ի քաղաքն Ուխթեաց (այսինքն՝ Օլթի, Տայքի կենտրոնը—Հ. Բ.) և զամենայն բերդս և զամրոցս Տայոց նուաճեաց ընդ ձեռամբ իւրով, զհաւատարիմս կարգեալ ի նոսա (հավանաբար Դավիթ կուրապաղատին սպանողներին և իրենց այդ արարքի համար կայսրից պարգևներ ու պաշտոններ ստացողներին), և զմեծացեալ ազատսն Տայոց առեալ տարաւ ընդ ինքեան՝ բնակեցուցանել յաշխարհն Յունաց» (Ասողիկ, էջ 278)։

Պահպանվել է Անտիոքի դուքս Նիկեփոր Ուրանոսի մի նամակը՝ ուղղված անթիպատ պատրիկ Լեոնին, որտեղ խոսվում է Տայքի նվաճման մասին։ «Գնում ենք Անտիոք,— գրում է նա,—երբ համայն Իբերիան, այն, որ գտնվում էր Դավիթ կուրապաղատի իշխանության ներքո, աստծո օգնությամբ ենթարկվեց մեր տիրոջ ու կայսեր» (Ἤδη γὰρ καὶ ἐπὶ τὴν Ἀντιόχειαν ἱέμεθα, τῆς Ἰβηρικῆς (sic!) παντός, ὅσον ὑπὸ τὴν τοῦ κουροπαλάτου Δαβὶδ ἀρχὴν ἔκειτο, ὑπὸ τὸν ἡμέτερον σὺν Θεῷ δεσπότην καὶ βασιλέα γεγενημένου. Տե՛ս Darrouzès, Epistoliers, p. 226։

Այս փաստը վկայում է այն մասին, որ Նիկեփոր Ուրանոսը մասնակցել է Տայքի նվաճմանը։ Եթե նկատի ունենանք այն հանգամանքը, որ Նիկեփոր Ուրանոսը նշանակվել էր Անտիոքի կառավարիչ 999 թ. վերջին (նույն տեղում, էջ 46), ապա նշանակում է, որ նա ուղեկցել է Վասիլ II-ին դեպի Տայք նրա արշավանքին (նույն տեղում)։ Տայքի գրավումից հետո նա վերադարձավ Անտիոք։ Ինչպես հայտնի է, Վասիլը Դավիթ կուրապաղատի մահվան լուրն ստացավ Կիլիկիայի Տարսոն քաղաքում, այսինքն Նիկեփոր Ուրանոսի վարչության ենթակա շրջանում։

311. Գիորգին ամենևին էլ Դավիթ կուրապաղատի եղբայրը չէր։ Մենք գիտենք, որ «ոչ գոյր նորա... եղբայր» (Ասողիկ)։

312. «Ներքնագույն Իբերիան» վրացական պետությունն է։ Պատմիչը ավելացնում է «Ներքնագույն» բառը, որպեսզի ընթերցողը այն չշփոթի կայսրության ձեռքն անցած Տայքի հետ, որ բյուզանդական աղբյուրներում նույնպես Իբերիա է կոչվում։ Սկիլիցեսը մի քիչ հետո Տայքը հիշատակում է «իր (այսինքն՝ Վասլի) Իբերիա» (κατ' αὐτὸν Ἰβηρία) ձևով։ Ահա խոսելով 1000—1001 թթ. դեպքերի մասին, Սկիլիցեսը ցույց է տալիս, որ Ներքնագույն Իբերիայի արքան Գեորգիոսն էր, որ սխալ է։ Բյուզանդական պատմիչը հավանաբար XI դ. 10-ական թվականների կեսերին սկիզբ առած դեպքերի հետ է շփոթում։ Հարցն այն է, որ Դավիթ կուրապաղատի մահվան ժամանակ վրաց թագավոր էին Բագրատ III-ը (978—1014)) և նրա հայր Գուրգենը։ Գեորգիոսը, որ Բագրատի որդին էր (ափխազների և վրաց թագավոր Գիորգի I-ը) թագավորեց 1014-ից 1027 թթ.։ Կարելի է ենթադրել նաև, որ Սկիլիցեսը շփոթել է թագավորակից Գուրգենին Բագրատ թագավորի որդու՝ Գեորգիոսի հետ։ Ասողիկը ցույց է տալիս, որ Վասլի Հավճիջում

եղած ժամանակ նրան ընդառաջ գնացին «Բագարատ թագաւորն Ափխազաց, և հայր նորա Գուրգէն թագաւոր Վրաց» (Ասողիկ, էջ 276)։

313. Յահյա Անտիոքացուց հայտնի է, որ վրաց թագավոր Գիորգին իր որդի Բագրատին պատանդ տվեց Վասիլ II-ին 1023 թ. (Розен, Василий, стр. 66), հետևաբար Սկիլիցեսի տեղեկությունները վերաբերում են ոչ թե Դավիթ կուրապաղատի մահվան կամ հաջորդ տարվա դեպքերին, այլ 1022 թ.։ Այդ դեպքերի մասին տե՛ս Սկիլիցեսի աշխատության 94—95-րդ էջերում, որտեղ կրկին անգամ խոսք է լինում Վասիլ II-ի և Գիորգի I-ի միջև կնքված հաշտության և վերջինիս որդու՝ Պանգրատիոսի Կոստանդնուպոլիս պատանդ գնալու մասին։ Յահյայի ասելով, Գիորգիի որդի Բագրատը կնքված համաձայնությամբ պարտավոր էր Կոստանդնուպոլսում պատանդ մնալ երկու տարի, որից հետո կայսրը նրան պետք է վերադարձներ (Розен, Василий, стр. 65—66)։

314. Հմմտ. ծանոթ. 310։

315. Հայկական աղբյուրներում՝ «իշխանաց իշխան» Բակուրան (Ասողիկ, էջ 269)։ Նա հետագայում աչքի ընկած Գրիգոր Բակուրյանի հայրն էր։ Սկիլիցեսը Պակուրիանին, Ֆևդատին (Թևդատ) և Ֆերսին եղբայրներ է համարում, բայց հարցական է։ Ավելի մանրամասն տե՛ս Каждан, Армяне, стр. 58 և հտ.։ Բակուրյանի ազգային պատկանելիության մասին՝ Марр, Аркаун, стр. 24։ В. Арутюнова, Типик Григория Пакуриана, стр. 11 և հտ.։ Ֆերսին հիշում է և Դավթի որդի Սմբատի վրացական ժամանակագրությունը, տալով նրա հոր անունը՝ Ջոջիկ։

316. Յահյա Անտիոքացուց հայտնի է, որ 995 թ. Անտիոքի դուքս նշանակված Դամիանոսը պատկանում է Դալասսենոսների ընտանիքին։ Նա ըստ Ադոնցի, այդ ընտանիքի նախահայրն էր (Adontz, Les Dalassènes, p. 163)։ Դամիանոսը 998 թ. հուլիսի 19-ին Ապամեայի մոտ ճակատամարտ տվեց Դամասկոսի ամիրա Ջայիս իբն Շամշամին և սպանվեց։ Նրա երկու որդիները գերի տարվեցին Կահիրե, որտեղ մնացին տասը տարի (Розен, Василий, стр. 39). Ըստ Ասողիկի, գերի տարվածների մեջ էր նաև «Զորտուանէլ պատրիկն՝ եղբօրորդին Թոռնկայ արեղայի» (Ասողիկ, էջ 265)։ Հայ պատմիչը Դամիանոսին հիշում է Դալասանոս անվամբ, ճակատամարտը թվագրում է հայոց ՆԽԷ (998) թվականով, ցույց տալիս, որ Դալասանոսի դեմ կռվի էր ելել «նոյն Եգիպտացւոց ամիրային որդի Ազազին» և որ այդ ճակատամարտում «մեռաւ մաժիստռոսն Դալասանոս եղբարբն և որդւովն» (նույն տեղում, էջ 264—265)։ Դամիանոս Դալասենոսի որդու սպանության մասին տեղեկությունը, հավանաբար, սխալ է։ Բյուզանդական աղբյուրներից հայտնի է, որ նրա որդիներ Կոստանդինը, Թեոփիլակտոսը և Ռոմանոսը 1038—1039 թթ. դեռևս կենդանի էին։

Դալասենոսների ընտանիքը Ն. Ադոնցը հայկական է համարում, ազգանունը ծագում է բյուզանդական աղբյուրներում Δαλάσσα (Դալասսա) կոչվող տեղանունից, որը նույնանում է Եփրատի ափին գտնվող Տալաս կամ Թալասսայի հետ և սկզբնական շրջանում կոչվում էր Մուտալասկա-Մուտալասսա, որից Տալասսա կամ Տալաս։ XI դ. վայրը հիշվում է նաև որպես Մուտառասուն (տե՛ս Մատթ. Ուռհ., էջ 206)։ Ադոնցն այդ առթիվ բերում է 1018 թ. արտագրված մի հայերեն ավետարանի հիշատակարանը, որտեղ ի միջի այլոց գրված է. «Գրեցաւ սուրբ աւետարանս ի գաւառի Կղատոյ, ի վանս Տալաշայ..., (Adontz, Les Dalassènes, p. 173—174։ Հիշատակարանն ամբողջությամբ՝ Ե. Լալայան, Ցուցակ հայերեն ձեռագրաց Վասպուրականի, պրակ Ա, Թիֆլիս, 1915, սյունակ 76), ցույց տալով, որ Կղատոյ-Կլավդիայի շրջանի տեղադրությունը հայտնի է (Անձիտի դիմաց, Մելիտենեից արևելք), հետևաբար Տալաշն էլ նրա մեջ էր (նույն տեղում, էջ 173—174)։ Դալասսենների ընտանիքի հայտնի մյուս անդամների մասին

տե՛ս Ադոնցի նույն հոդվածում, էջ 163—177։ Տե՛ս նաև *Charanis*, The Armenians, p. 45 և հտ., *Каждан*, Армяне, стр. 92—93։

317. Բյուզանդիայում դինատ («զոր») էին կոչվում խոշոր ֆեոդալ-կալվածատերերը։

318. Սիսիննիոս II-ը աթոռակալել է 996 թ. Զատկից։ Ճիշտ ժամանակը նշում է Յահյա Անտիոքացին (*Grumel*, Chronologie patriarcale, p. 70)։

319. Սերգիոս II (1001—1019)։

320. Գրիգոր Տարոնացին, Տարոնի վերջին իշխան Աշոտի որդին և Բագարատի եղբայրը։

321. Գրիգոր Տարոնացու սպանության և նրա որդու Աշոտի գերման մասին տե՛ս Ասողիկի մոտ. «որոց (բուլղարաց) ընդդէմ ելեալ որդին Գրիգորոյ պատանեակն Աշոտ, զոր ձերբակալ առնէին։ Եւ ապա հօրն զկեանս ի վերայ եդեալ պատերազմաւ, մինչև ի նմին մեռաւ ամենայն զորօքն» (էջ 261)։ Այս մարտում գերի ընկավ նաև Անձիտի իշխան Հաբելի որդի Սահակը, որին բյուզանդական աղբյուրները չեն հիշատակում։

322. Բաղդադից։

323. Միքայել Դևոլգուց հայտնի է, որ Սամուիլի դստեր անունը Միրոսլավա էր (տե՛ս *Prokić*, Die Zusätze, S. 29)։ Աշոտի և Սամուիլի դստեր սիրավեպի մասին մանրամասն տե՛ս *Adontz*, Samuel, p. 395։

324. Այժմ Դուրրոս։ Քաղաք ժամանակակից Ալբանիայում, Ադրիատիկ ծովի ափին, հին հունական էպիդամնոսը։ Ինչպես կարելի է եզրակացնել Կիտրոսի եպիսկոպոս Հովհաննեսի՝ Դյուրախիոնի արքեպիսկոպոս Կոստանդնին տված պատասխանից, քաղաքում XII դարի վերջում եղել է հայկական գաղութ, որը իշխանություններին է դիմել՝ եկեղեցի կառուցելու թույլտվություն ստանալու համար։ Քանի որ այդ հայերը համարվում են «այլադավան» (ἑτερόδοξος), հավանաբար հուսյապավան են եղել (Ράλλη καὶ Ποτλῆ, Σύνταγμα, τόμ. Ε΄, σελ. 415)։

325. Այսինքն՝ Ζωστὴ πατρικία։ Այդ տիտղոսի մասին մանրամասն տե՛ս *Guilland*, La patricienne à ceinture, pp. 269—275։

Այդ տիտղոսը կրող առաջին հայտնի տիկինը Թեոփիլոս կայսեր զոքանչն էր, հայազգի Թեոդորա կայսրուհու մայրը։ Զոստե պատրիկիան (գոտավորյալ պատրիկուհին) միակ տիկինն էր, որ պատրիկուհի էր իր բոլոր իրավունքներով։ Տե՛ս նաև *Bury*, IAS, p. 33: Oikonomides, Les lists, p. 293։

326. Այս Խրիսելիոսի որդիներից մեկը հավանաբար հետագայում Վասպուրականի կատապան դարձած Նիկոլայոս Խրիսելիոս Բուլզարն է, որին Սկիլիցեսն հիշատակում է Բերկրիի դեպքերի առնչությամբ։

327. Աստիճանի մասին տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 212—213։

328. Հայոց ՆԾԶ (1007) թ. «ի գաւառին Մակեդոնոյ ի քաղաքին որ կոչի Անդրնապոլիս» գրված հայերեն մի Ավետարանի հիշատակարաններից մեկում գրված է. «Եւ ես Յովհաննէս՝ Պատուսալաթար թագաւորի և Պոոքսիմոսս Դուկիս Թոթորակնիս ճորտս որ գրել ետու զսուրբ աւետարանս...» (տե՛ս Բաբգէն Սարգիսյան. Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, հտ. Ա, Վենետիկ, 1914, սյունակ 517։ Նաև Armenian miniature paintings, p. 28)։ Այս Թոթորակնին (Թեոդորականին) Ադոնցը նույնացնում է Սկիլիցեսի հիշատակած պատրիկ Թեոդորականի հետ։ Նա հայկական ծագում ուներ և այդ բանը հաստատվում է Սկիլիցեսի մի այլ տվյալից, Թեոդորականների ընտանիքին պատկանող զորավար Վասիլ Թեոդորականի մասին գրածից (տե՛ս էջ 130), ինչպես և մականվան հայերեն-ական

ածանցից (Թեոդորական, հմմտ. Կամսարական և այլն։ *Adontz*, La famille de Theodorakan, p. 160. նաև *Charanis*, The Armenians, p. 45)։ Սկիլիցեսը հիշատակում է Թեոդորականների ընտանիքին պատկանող այլ գործիչների ևս, Սամոսի զորավար Գեորգ Թեոդորականին, պատրիկ և մագիստրոս Վասիլ Թեոդորականին, որոնց Ադոնցը համարում է առաջին Թեոդորականի որդիները (նույն տեղում, էջ 158)։ Հայտնի է և Կոստանդին Թեոդորականը, որին Ադոնցը համարում է մագիստրոս Վասիլ Թեոդորականի որդին։ XI դ. հայտնի Թեոդորականների մասին տե՛ս Каждан, Армяне. стр. 26—28։

329. Տե՛ս վերը, ծանոթ. 209։

330. Սկիլիցեսի համաձայն Վասիլը Բերիա քաղաքը (իմա՝ Βεροη, չշփոթել Մակեդոնիայի Բերիայի հետ, Ֆիլիպուպոլսից Անքիալոս և Ադրիանուպոլսից Դանուբի Նիկոպոլիսը տանող ճանապարհի վրա, Շիպկայի մոտ, այժմ՝ Ստարա Զագորա) գրավեց 1000 թ., այսինքն Գրիգոր Տարոնացու սպանությունից հետո։ Ասողիկը սակայն ցույց է տալիս, որ կայսրը Խ (991) թվականին «երթեալ պաշարէ զքաղաքն Վէռայ և առնու զնա, և զմաժիստռոսն զԳրիգոր զորդի իշխանին Տարօնոյ զօրօքն թողու անդէն ընդդէմ Բուլղարին» (էջ 260)։ Ասողիկը գուցե Մակեդոնիայի Բերիան (Վերիան) նկատի ունի։

331. Անթիպատոսների մասին տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 215։ Նրանք համապատասխանում են հռոմեական շրջանի պրոկոնսուլներին։ Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում անթիպատոսները նահանգների ընդհանուր կառավարիչներն էին։ Լինելով բարձրաստիճան պաշտոնյաներ, նրանք կրում էին պատրիկի տիտղոսը և հաճախ հիշվում անթիպատ պատրիկ ձևով, որից առաջինն իրենց կրած ֆունկցիան է բովանդակում, իսկ երկրորդը՝ նրանց ազնվականական տիտղոսը։ Մանրամասն տե՛ս *Gulland*, Proconsul, p. 5—41։

332. Հունաստանի Կոզանի գավառում։ Սամուիլի դեմ մղվող պատերազմների ժամանակ ստեղծվեց հատուկ Սերվիա բանակաթեմ։

333. Վոլերոսը ոմանց համաձայն գտնվում էր Թրակիայում, ուրիշները Մակեդոնիայում են տեղագրում։

334. Կամ Վոդենա։ Միջնադարում այդպես էր կոչվում Մակեդոնիայի Եդեսսա քաղաքը։

335. Նումերիտներն ու ատաֆիտները արաբական ցեղեր են։ Նումերիտները՝ «Նումեյրի որդիներ», իսկ ատաֆիտները, հավանաբար, Բենի-Կիլաբն է (տե՛ս Розен, Василий, стр. 191, ծանոթ. 2)։

336. Դանուբի աջ ափին։ 1002 թ. այստեղ հաստատվեց բուլղարական պատրիարքարանը, որտեղից տեղափոխվեց Մոգլեն, ապա Օխրիդա։

337. Սկիլիցեսի Vindob. Hist. gr. 74 ձեռագրում կա Միքայել Դևոլցու ընդմիջարկությունը, որի ասելով Վարդար գետն իր անունը ստացել է Վարդաս Սկլերոսից, քանզի նա գետի հունը փոխել է։ Ժողովրդական ստուգաբանություն պետք է համարել։

338. Սոֆիայի մոտ, այժմ էլ այդպես է կոչվում։

339. Վաղ Բյուզանդիայում գոյություն ուներ, այսպես կոչված, էպիբոլեի (ἐπιβολη) ինստիտուտը, որի էությունը նրանումն էր, որ պետությունը ստիպում էր գյուղացիներին անմարդաբնակ դարձած իրենց հարևան հողերը վերցնել և դրանց համար հարկ վճարել։ Էպիբոլեին, ըստ Գ. Օստրոգորսկու, VII—VIII դարերում փոխարինելու եկավ ալլիլենգիոնը (ἀλληλέγγυον), որի համաձայն պետությունը պարտադիր կարգով գյուղացիներից հարկ էր գանձում հարևանների ամայացած հողերի համար, իրավունք տալով

մշակել դրանք (*Ostrogorsky*, Das Steuersystem, S. 235)։ Ա. Պ. Կաժդանը, ի տարբերություն Օստրոգորսկուց, գտնում է, որ Բյուզանդիայում VII—IX դդ. գոյություն չունեեր հարկային կոլեկտիվ պատասխանատվության ինստիտուտ, որ ալլիլենգիոնը հանդես եկավ միայն X դարում, Ռոմանոս I Լակապենոսի ժամանակ (*Кажэан*, К вопросу об особенностях феодальной собственности, стр. 63—64։ Ավելի մանրամասն տե՛ս *Осипова*, Аллиленгий в Византии, стр. 28—38)։

340. Խոսքը Երուսաղեմի Հարության տաճարի մասին է, որը 1009 թ. ավերակ դարձրեց ոչ թե Ազիզը, ինչպես գրում է Սկիլիցեսը, այլ նրա որդի ալ-Հաքիմը (996—1020)։ Ալ-Ազիզը (976—996) և ալ-Հաքիմը պատկանում էին ֆաթեմյանների հարստությանը։ Ալ-Ազիզի օրոք ֆաթեմյանների խալիֆայությունը մուսուլմանական ամենազորեղ իշխանությունն էր Արևելքում։ Այս դեպքը Սկիլիցեսը թվագրում է 1010 թ., արաբ հեղինակները՝ 1008 կամ 1009 թ.։ Մանրամասն տե՛ս Canard, La destruction de l'eglise, p. 16—43)։

341. Բնագրում Κλειδίον, որ բանալի է նշանակում։ Սլավոնական աղբյուրներում վայրը Կլյուչ է կոչվում։

342. Ճակատամարտը տեղի ունեցավ 1014 թ. հուլիսի 29-ին։ Բելասիցա վայրի տեղադրությունը վիճելի է։ Ճակատամարտի վերաբերյալ կա հատուկ ուսումնասիրություն. (*Иванов*, Беласицка битка, стр. 1—15)։

343. Կեկավմենոսի ասելով՝ 14 հազար հոգի („Советы и рассказы", стр. 152)։

344. Ժամանակակից Մելնիկը։ Ավելի մանրամասն տե՛ս *Dujčev*, Melnik, 28—41։

345. Մոգլեն՝ քաղաք Մակեդոնիայում։

346. Բառացի նշանակում է նախագահակից։ Կավխանը գերագույն թագավորական իշխանության տեղակալն էր, որին էր վստահված բուլղարական բանակի հրամանատարությունը (տե՛ս *Гюзелев*, Функциите и ролята на кавхана, стр. 33—57)։

347. Սկիլիցեսի մոտ Վասպուրականը հանդես է գալիս Βαασπρακανία և 'Ασπρακανία ձևով։ Այն կոչվում է նաև Վերին Մարաստան ("Ανω Μηδία) և պարզապես Մարաստան։ Վասպուրականը բյուզանդական աղբյուրներում Ասպրականիա և Ասպուրական կոչվել է շատ վաղ։ Դեոևս Կոմբեֆիսի հրատարակած „Historia Monothelitarum"-ի մեջ 695 թ. տակ հիշվում է 'Ασπουρακάν-ը (հմմտ. և Բարթիկյան, Narratio de rebus Armeniae, էջ 467)։ Վրացական աղբյուրներում (Սմբատի Ժամանակագրության մեջ) Ասպորանգ (ավելի մանրամասն տե՛ս *Марр*, Аспурганы)։ Մոգլենում գերված բուլղար ռազմիկները Վասպուրական ուղարկվեցին հաջորդ՝ 1016 թ.։ Այդ տարին Վասպուրականի թագավոր Սենեքերիմն իր որդի Դավթին Բյուզանդիա էր ուղարկել կայսրությունից սելջուկ թուրքերի դեմ օգնություն խնդրելու։ Վասիլ կայսրն այդ օգնությունը տվեց ի դեմս Մոգլենում գերված բուլղարների, որոնք, սակայն, Վասպուրականում տրոյական ձիու դեր խաղացին, նախապատրաստեցին Սենեքերիմի թագավորության կազմալուծումն ու կայսրության կողմից նվաճումը։ Բուլղարական զորքի Հայաստան գալու մասին վկայություն ունի նաև Լաստիվերցին։ Վասիլ կայսրը «զզօրսն աշխարհին [բուլղարաց],—գրում է նա,— խաբանօք ի մի վայր ժողովէ, որպէս թէ պարգևս տալ նոցա, և գրով զհամար նոցա կալեալ՝ առաքէ զնոսա յարևելս անդառնալի ելիւք. որք եկեալ դաշխարհս յաւեր դարձուցին» (էջ 24—25)։ Արիստակես Լաստիվերցու այս տվյալը նյութ դարձավ բյուզանդագետ Լիտավրինի մի ուսումնասիրության համար (տե՛ս *Литаврин*, Армянский автор XI столетия, стр. 27—31)։ Հարցի մասին ավելի մանրամասն տե՛ս *Бартикян*, О болгарском войске։

348. Վերևում (տե՛ս ծանոթ. 346) նա հիշել էր Դոմետիանոս Կավխանին։ Այստեղ

Կավխանը հատուկ անուն է դարձել և նրա կրողը համարվում է Դոմետիանոսի եղբայրը։

349. Խոսքը Դիոկլեայի իշխան Վլադիմիրի մասին է (998-ից առաջ մինչև 1016 թ. մայիսի 22-ը)։ Ամուսնացել էր Սամուիլի դուստր Կոսսարայի հետ։ Պահպանվել է Վլադիմիրին ներբողող մի էպիկական պոեմ. *Radojičić*, Un poème épique, p. 528—535։

350. Ծիշտը՝ Բոյանա, Սոֆիայի մոտ գտնվող բերդ, այժմ՝ քաղաքի արվարձանը Վիտոշա լեռան ստորոտում։

351. Ինչպես գիտենք, Վլադիմիրը կնության էր առել Վասիլ II-ի քրոջը՝ Աննային (տե՛ս և ծանոթ. 299)։

351 ա. Մ. Վ. Լևչենկոն կարծում էր, որ Բյուզանդիան տվյալ դեպքում ցանկանում էր վերջնականապես վերացնել խազարների խաքանությունը Ղրիմում, որ Գեորգիոս Ցուլեսը խազարների իշխան էր։ Մ. Ի. Արտամոնովը, որն իր տրամադրության տակ ուներ նաև հիշյալ Ցուլեսի արճճե մի կնիքը, որտեղ նա հիշվում է որպես կայսերական պրոտոսպաթար և Խերսոնի զորավար, գրում է, որ Ցուլեսի դեպքը կապ չունի խազարական պետության հետ, որ խոսքը բյուզանդական կառավարիչ-զորավարի ապստամբության մասին է կայսրության դեմ։ Այժմ հայտնի են Ցուլեսի մի քանի կնիքներ։ Մանրամասն տե՛ս *Соколова*, Печати Георгия Цулы, стр. 68—74։

352. „Σεναχηρείμ ὁ τῆς ἄνω Μηδίας ἄρχων, ἣν Ἀσπρακανίαν ὀνομάζουσι σήμερον: Եվ մի քիչ հետո. «Նրան (Գեորգիոս Մանիակեսին) նշանակում Վերին Մարաստանի՝ այն է Վասպուրականի կառավարիչ» (τοῦτον ἄρχειν ἐκπέμπει τῆς ἄνω Μηδίας τῆς καὶ Βασπρακανίας)։ Կասկած չկա, որ Վերին Մարաստանի տակ ենթադրվում է ողջ Վասպուրականը։ Կ. Յուզբաշյանը (L'administration, p. 149) նույն Սկիլիցեսի մոտ հանդիպելով նաև κάτω Μηδία (Ստորին Մարաստան), եկել է այն եզրակացության, որ բյուզանդական Վասպուրական պրովինցիան բաժանված էր երկուսի՝ Վերին և Ստորին Մարաստանների, ընդ որում Վերին Մարաստանը Սենեքերիմ Արծրունու տիրույթն էր, իսկ Ստորին Վասպուրականը, հետևելով Հոնիգմանի անցյալում արտահայտած մի ենթադրության, տեղադրում է Անձևացիքում և Մանազկերտում։ Յուզբաշյանը Վասպուրականի կատապանների ցուցակում (նույն տեղում, էջ 182) հիշում է κάτω Μηδία-ի կառավարիչ Մանիակեսին, որն այս դեպքում ոչ մի առնչություն չունի Վասպուրականի հետ։ Նման տեղադրությունը հակասում է տրամաբանությանը։ Պատմական Մարաստանի տեղը հանրահայտ է։ Արդ, եթե Վերին (ἄνω) Մարաստանը Վասպուրականն է, ապա «Վերին» հասկացությունը ենթադրում է «հյուսիս», քանզի Վասպուրականը Մարաստանից հյուսիս է գտնվում։ Եթե դա այդպես է, ապա ինչպե՞ս կարող է «Ստորին» Մարաստանը գտնվել Վերին Մարաստանից հյուսիս, չէ՞ որ Մանազկերտը (Ապահունիքը) Վասպուրականից հյուսիս է գտնվում։

Ստորին Մարաստանը Վասպուրականի հետ ոչ մի ընդհանուր բան չունի։ Հոնիգմանն հետագայում մի այլ կարծիք հայտնեց, համաձայն որի Ստորին Մարաստանը գտնվում էր Ամիդի շրջանում (տե՛ս ծանոթ. 400), Ասենք նաև, որ Կաժդանը այն տեղադրում է Եդեսիայում (*Каждан*, Армяне..., стр. 50, 157)։ Կ. Յուզբաշյանի ենթադրությունը եթե ճիշտ լիներ, ապա Վասպուրականում միաժամանակ պետք է երկու բյուզանդական կառավարիչ փնտրենք՝ Վերին Մարաստանի և Ստորին Մարաստանի, այնինչ Վասպուրականում միայն մեկ կառավարիչ է հիշատակվում, Վերին Մարաստանի։

*Ինչպես տեսնում ենք, Սկիլիցեսը 6524 (1016) թ. դեպքերի առթիվ է հիշում, որ «այն ժամանակ» (τότε) Սենեքերիմն իր երկիրը զիջեց Վասիլին։ Ուռհայեցին խոսելով 465 (1016) թ. դեպքերի մասին, գրում է, թե «Յայնժամ» Վասպուրականի թագավորն իր տիրույթները զիջեց Վասիլին (էջ 48)։ Այս ամենը ուսումնասիրողների մի մասին բերեցին այն եզրակացության, որ Սենեքերիմ Արծրունին Սեբաստիա գնաց 1016 թ., որ չի հաստատվում, քանզի Սենեքերիմը դեռևս 1020 թ. տեղում էր և անգամ զինական օգնություն էր տալիս Աշոտ Բագրատունուն՝ Հովհաննես-Սմբատի դեմ նրա մղած պայքարում (տե՛ս* Մատթ. Ուռհ., *էջ 8)։ Այս հարցի վերաբերյալ ավելի մանրամասն տե՛ս* Վ. Վարդանյան, *Վասպուրականի Արծրունյաց թագավորությունը, էջ 210 և հտ.։ Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ 1016 թ. հողերի փոխանակության մասին խոսք չէր կարող լինել, այդ թվականին Սենեքերիմը իր որդի Դավթի միջոցով Վասիլից զինական օգնություն խնդրեց լոկ, իսկ տիրույթները զիջեց միայն 1021 թ. (տե՛ս Бартикян,* О болгарском войске, стр. 91—93: *(Վ. Կ. Իսկանյանը գտնում է, որ Վասպուրականի մասին բանակցությունները տեղի ունեցան Կոստանդնուպոլսում 1021 թ., իսկ բնակչության տեղափոխությունը կատարվեց 1022 թ. տե՛ս* Իսկանյան, *Արծրունյաց արտագաղթի մասին, էջ 67—82)։*

*Միքայել Ասորին հայոց գաղթը դնում է Սելևկյան տոմարի 1300 թ. (989)։ Նա գրում է. «1300 թ. սկիզբ առավ հայոց գաղթը Մեծ Հայքից, սկզբում դեպի Կապադովկիայի շրջանները։ Եվ իրոք, Վասիլ կայսրը հայերից վերցրեց Սենախերիբ թագավորի շրջանները և փոխարենը նրան տվեց Կապադովկիայի Սեբաստիան։ Նրանք (հայերը) այս վայրում բազմացան և այդտեղից տարածվեցին ողջ Կապադովկիայում, Կիլիկիայում և Ասորիքում» (Michel le Syrien,* Chronique, t. III, p. 133)*։ Միքայել Ասորին այնուհետև գրում է. «Հայերը գաղթեցին Վասիլ կայսեր օրոք և երբ թուրքերը զավթում էին երկիրը, Միքայել կայսեր ժամանակ, նրանք (հայերը) Կիլիկիայի իշխանությունը տվեցին Փիլարտոսին...» (Նույն տեղում, էջ 188։ Հմմտ.* Միխայել Ասորի, *Ժամանակագրութիւն, 1870, էջ 417. «ընդ այն ժամանակս արքայազունքն Հայոց որ յաւուրս Վասլի կայսերն եկեալ էին ի Վասպուրականա։ և առեալ զՍևաստ և զԿեսարիա և զխաւատանէքն փոխելով զերկիրն իւրեանց...»։ Նաև՝* Միխայել Ասորի, *1871, էջ 411)։*

*Սենեքերիմը Վասիլ կայսեր թողեց «թեմաբերդս ՀԲ (72) և գեւղս ՏՆ (4400)»* (Մատթ. Ուռհ., *էջ 49)։ Հայ պատմիչը Սեբաստիայից բացի այլ քաղաքներ կամ կալվածներ չի հիշում։ Արիստակես Լաստիվերցին նմանապես շատ համառոտ է գրում այս գործարքի մասին. «քանզի Դաւիթ որ Սենեքերիմ կոչիւր,—գրում է նա,— որ նեղեալ ի Պարսից՝ տայ զհայրենի ժառանգութիւն իւր զտունն Վասպուրականի յինքնակալն Վասիլ, և առնու փոխարէն զքաղաքն Սեբաստիա և որ շուրջ դնովաւ գաւառք» (էջ 34)։ Այս գործարքի մասին խոսում է նաև Կեկավմենոսը. «Սենեքերիմը,—գրում է նա,— ղու գիտես, նա հին թագավորական ընտանիքից էր սերում, ցանկացավ իր երկիրը տալ Վասիլ Ծիրանածին կայսեր և դառնալ նրա ծառան։ Վասիլն ընդունեց նրա շնորհը և նրան մագիստրոսի պատվաստիճանը տվեց, ոչ ավելի, թեև նա, Սենեքերիմը, թագավոր էր և հին թագավորներից սերած»* («Советы и рассказы», стр. 282)*։ Իսկ Յահյա Անտիոքացին գրում է, որ 1021 թ. վերջին, երբ Վասիլ II-ը ափխազաց թագավոր Գիորգիի դեմ մղած պատերազմից վերադարձավ Տրապիզոն, հենց այն ժամանակ Սեննախարիբը Ասֆարագանի թագավորը իր Ասֆարագան երկիրը բերդերով, հողերով հանդերձ զիջեց Վասիլին (Розен,* Василий, стр. *62)։ Թովմա Արծրունու Պատմության Շարունակողի տվյալներով «փոխեցին զհայրենի տունսն իւրեանց Հայկազունքն Արծրունիքն Սենէքերիմ ի թուին հայկազնեան տումարին ՆՀ (1021) և դէմ եղեալ գնացին*

յաշխարհն Յունաց ԺԴՌ (14.000) արամբք, թող զկանայս և զմանկտիս և արկան ընդ լծով ծառայութեանն Հոռոմոց» (Թովմա Արծրունի, էջ 500)։

Սեբաստիան XI դ. սկզբում նույնանուն բանակաթեմի կենտրոնն էր։ Արվայլերը նշում է, որ XI դ. դատավոր-պրետորների ցուցակում տարօրինակ կերպով բացակայում է Սեբաստիայի պրետորը և այդ բանը նա բացատրում է աղբյուրների անբավարարությամբ (Ahrweiler, Recherches, pp. 83—85)։ Այդ բանը հետաքրքիր ձևով է բացատրում Գ. Լիտավրինը։ Նա գրում է, որ Սեբաստիան Սենեքերիմին տրվելու առնչությամբ, Սեբաստիա բանակաթեմը ժամանակավորապես միացվեց Կապադովկիա բանակաթեմին և դադարեց որպես այդպիսին գոյություն ունենալուց (տե՛ս „Советы и рассказы", стр. 590)։

Սենեքերիմի հաջորդները (սկզբում նրա որդիներ Դավիթը, Ատոմն ու Աբուսահլը) մտան բյուզանդական ծառայության մեջ իրենց հոր անունը դարձնելով ազգանուն։ Աղբյուրներում հիշվում են Սենեքերիմյանները, որոնք Սեբաստիայի Արծրունիներից են սերում։ Այդ ընտանիքի մասին տե՛ս Хаждан, Армяне, стр. 33—36։ Ավելորդ չէ ասել, որ այս ժամանակներում հիշվում են նաև «Վասպուրականցի» ազգանունով (Βασπρακανίτης) բյուզանդական գործիչներ (Каждан, Армяне, стр. 106—107)։

353. Ինչպես գիտենք, Վարդաս Փոկասի ապստամբությունը ճնշելու համար Վասիլ II-ը ստացել էր Կիևյան Ռուսիայի իշխան Վլադիմիրի զինական օգնությունը, դրա դիմաց իր քրոջ Աննայի կնության տալով (տե՛ս և ծանոթ. 299)։

354. Քաղաք արևմտյան Մակեդոնիայում։

355. Բնագրում՝ Τζοτζίκιος։ Դորոստոլի զորավար Չոչիկը, իբերացի (այսինքն՝ վրացադավան հայ) Թեդատի (Ցեդատի) որդին, հավանաբար, Բակուրյանների ընտանիքին էր պատկանում (տե՛ս Каждан, Армяне, стр. 59—60)։ Սկիլիցեսն այստեղ գրում է Θευδατος, նախապես (տե՛ս էջ 75) այդ անունը նա բերել էր Φευδατος ձևով։

356. Սկիլիցեսը հունարեն տառերով գրում է՝ „Бεζειτε, ο τζέσαρ" („бежите, цесарь»-ը (իմա՝ царь-ը), այսինքն՝ «փախեք, կայսրն է գալիս»)։

357. 6526 թվականը չի համընկնում ինդիկտիոնի 15-րդ տարվա հետ, պետք է ուղղել ինդիկտիոնի 1-ին տարվա։ Մի փոքր անց, խոսելով ինդիկտիոնի երկրորդ տարվա մասին, Սկիլիցեսը ցույց է տալիս, որ դա համընկնում է 6527 թ.։

358. Հովհաննես-Վլադիսլավի մահվան մասին գիտե նաև Ուռհայեցին. նրան նա անվանում է Ալուսիան և գտնում, որ նրան Վասիլ կայսրը թունավորեց (Մատթ. Ուռհ., էջ 46)։

359. Այս Նիկետաս Պեգոնիտեսը հետագայում նշանակվեց Վասպուրականի կառավարիչ և այդ պաշտոնում փոխարինեց նույնպես Դյուրախիոնից եկած Նիկոլայոս Խրիսելիոսին։ Վերջինիս հայրը Դյուրախիոնի մեծամեծներից էր։

360. Բնագրում՝ στρατηγός-αὐτοκράτωρ։ Աստիճանը հանդես է գալիս VI դարից և սպարապետ է նշանակում (τοῦ παντὸς στρατοῦ ἡγεμών), որ, ինչպես վկայում է αὐτοκράτωρ— ինքնակալ բառը, որոշ հանգամանքներում ուներ կայսեր հավասար իրավասություններ։ Աստիճանն առաջին անգամ հիշատակում է Պրոկոպիոս Կեսարացին։ Այդպես է նա կոչում Բելիսարիոսին։ Նիկեփոր Փոկասը, ըստ Լևոն Սարկավագի տվյալների, Կրետեի արշավանքի ժամանակ կրում էր վերոհիշյալ աստիճանը։ Հետագայում նա դարձավ Ասիայի զորավար-ավտոկրատոր, որ, հավանաբար, նույնանում է Արևելից սխոլերի դոմեստիկոսի աստիճանին։ Բուլղարիայի նվաճումից հետո Վասիլ II-ը Թեսաղոնիկեի, Բուլղարիայի և Սերբիայի բոլոր զինված ուժերը ենթարկեց մեկ մարդու, որոնցից առաջինը հիշյալ Դավիթ Արիանիտեսն էր։ Նա 1018 թ. ստացավ այդ աստիճանը։ Հետագայում այդ աստիճանն ստացան Գեորգիոս Մանիակեսը, Նիկեփոր

ռեքտորը, Կատակալոն Կեկավմենոսը, Բրիեննիոսը և ուրիշներ։ Ստրատեգի վերաբերյալ տե՛ս *Guilland*, Le commandante en chef, pp. 380—404։

*361*. Այժմ՝ Դեոլ։

*362*. Ջրփոթել Փոքր Ասիայի Կոլոնիայի հետ։ Գտնվում էր հյուսիսային էպիրոսում։ Այժմ՝ Ալբանիայի տարածքում։

*363*. Սկիլիցեսի Vindob. Hist. gr. 74 ձեռագրում կա Միքայել Դևոլցու շատ կարևոր մի ընդմիջարկություն՝ բուլղարների ձեռքում ընկած և ազատված այդ հռոմայեցի ռազմագերիների վերաբերյալ. «Պելագոնիայում, Պրեսպայում և Ախրիդայում Սամուիլի կողմից բնակեցված էին բազմաթիվ հռոմայեցիներ և հայեր, որոնցից ամենանշանավորներն էին Վասիլ Ապուքապի որդիներ Գրիգորասը և...» (մի անուն ձեռագրում եղծված է)։ Տե՛ս Ioan. Scyl. Synopsis, p. 363։

*364*. Նկատի ունի ոչ թե ժամանակակից Սերբիա երկրամասը, այլ Հունաստանի Մակեդոնիա նահանգի քաղաքը։ Հիմնադրել էր դեռես Հերակլիոս կայսրը և սերբեր բնակեցրել։ Հետագայում գրավվել էր բուլղարների կողմից և վերագրավվել Վասիլ II-ի։

*365*. Բնագրում՝ Ρουπένης։ Դեռևս Վասիլևսկին ցույց էր տվել, որ այս անձնավորության անունը հիշեցնում է Կիլիկյան իշխանության հիմնադրի անունը և որ Թերպոպիլեի Ռուբենը հայ է (տե՛ս ЖМНП, июль 1881, стр. 116—117)։ Ադոնցը գտնում է, որ այս Ռուբենը Հելլադայի զորավարն էր և այդ պաշտոնում փոխարինել էր Թորթումի էգրեկ (Ագարակ) վայրում գտնվող եկեղեցու պատի վրա 1006/1007 թթ. փորագրված հունարէն արձանագրության մեջ հիշվող «Լարիսայի և Մակեդոնիայի զորավար պատրիկ Գրիգորին, պատրիկ Սմբատի որդուն, (*Adontz*, L'aïeul des Roubeniens, p. 186)։Ադոնցի ենթադրությամբ Ռուբենը 1018 թ. 23—25 տարեկան պետք է լիներ, հետևաբար նա կարող էր ապրած լիներ մինչև 1071—1076 թվականները և նույնանալ Կիլիկիայի իշխանության հիմնադիր Կոստանդնի հոր՝ Ռուբենի հետ (նույն տեղում, էջ 191)։ Ադոնցի ենթադրությունը շատ համարձակ է, քանզի այդ անձնավորությունները նույնացնելու համար անվան նույնությունը դեռ բավական չէ, այդ բանը բացասում են թվական տըվյալները, քանզի պետք է ընդունենք, որ Ռուբենը հարյուր տարուց ավելի է ապրել (այդ մասին այժմ տե՛ս և *Микаелян*, История..., стр. 87—88։ *Der Nersessian*, The Kingdom of Cilician Armenia, p. 633։ Քասունի, Ռուբեն Ա..., էջ 40 և հտ.։ Նույնի, Կիլիկիո հայկական իշխանապետությունը, էջ 29)։ Ավելորդ չէ այստեղ հիշել նաև Ադոնցի ենթադրությունը Թերմոպիլեում գտնվող վայրի՝ Ζητούνιον (Զետունիոն) անվան մասին։ Նա գտնում է, որ տեղանունը, որ ընդհանուր ոչինչ չունի «զեյթուն» (ձիթապտուղ) լառի հետ, հիշեցնում է մեր Զեյթունը, և հարց է տալիս. դա Ռուբենի ստեղծագործությունը չէ՞ արդյոք՝ քաղաքը կոչել Թեսալիայի Զետունիոնի անունով (նույն տեղում, էջ 193, ծանոթ. 5)։ Ոչնչով չհաստատվող ենթադրություններ։

Մի Ռուբենի էլ հիշատակում է Եվստաթիոս Հռոմայեցին իր «Դատաստանագըրքում» ինչ-որ օժիտի հարցերի առնչությամբ։ Նրան նա անվանում է Τουπένην, բայց հրատարակիչները կարդում են Ρουπένην։ Πεῖρα, LXV, 5։ Պիրայի Ռուբենին Կաժդանը նույնացնում է Թերմոպիլեի Ռուբենի հետ և նրան համարում Ռուբինյանների հարստության նախահայր (տե՛ս *Каждан*, Рец. на Скил., стр. 207, նաև նույնի, Армяне..., стр. 39), որտեղ նա Ադոնցի նույնացումը անհիմն է համարում։

*366*. Միջնադարում Պարթենոնը վերածվել էր Սբ. Աստվածածնին նվիրված եկեղեցու։

*367*. Բուլղարիան նվաճվեց Վասիլ II-ի կողմից 1018 թ., բուլղարական թագավորությունն ու պետությունը դադարեց գոյություն ունենալուց, երկիրը վերածվեց բյուզանդական սովորական նահանգի՝ բյուզանդական կառավարչի գլխավորությամբ։ Վասիլ II-ը ստացավ Բուլղարասպան մականունը։ Հայկական աղբյուրները բավական հանգամանո-

րեն են խոսում բյուզանդաբուլղարական պատերազմի մասին և, պատճառը, նախ և առաջ, այն է, որ այդ պատերազմին գործուն մասնակցություն ունեցան նաև հայերը։ Ասողիկը ցույց է տալիս, որ Վասիլը դեռևս այն ժամանակ, երբ Վարդ Սկլերոսը Բաղդադում էր, հայեր տարավ Մակեդոնիա՝ ընդդեմ բուլղարների (էջ 201)։ Նա գրում է նաև, որ Բյուզանդիայի դեմ պայքարող կոմսաձագերը Վասիլի կողմից Հայաստանից Բուլղարիա տարված հայեր էին (էջ 244), որոնք, լքելով կայսեր, անցան բուլղարների թագավորի կողմը։ Լաստիվերցին ավելի համառոտ է։ Վասիլը, գրում է պատմիչը, «տիրէ Բուլղարաց աշխարհին, գաւառաց և քաղաքաց նոցա... քանզի որ ունէր զաշխարհն՝ յաղթողն ի պատերազմունս, վախճանեցաւ իւրային մահուամբ. իսկ որդիք նորա՝ քանզի ոչ հնազանդեցան միմեանց, անձնատուր եղեալ եկին առ թագաւորն... Այս է Բուլղարաց երկրի առնլոյն օրինակ։ Իսկ թագաւորն զորգիս Բուլղարաց բռնակալին հանեալ ի ժառանգութենէ իւրեանց զարմօք և ազգաւ, և տայ նոցա տեղիս յաշխարհն Հոռոմոց» (էջ 24)։ Այդ մասին ավելի հանգամանորեն գրում է Մատթեոս Ուռհայեցին։ Նա Վասիլի վերջին արշավանքը Բուլղարիայի դեմ թվագրում է 1011 թ., որի ժամանակ նրա ասելով կայսրը «յաղթեաց թագաւորութեան նոցա և մաշեաց ի սուր սուսերի զբազում գաւառս մեծաւ բարկութեամբ. և յաւէր և ի գերութիւն մատնեաց զամենայն արևմուտք և բնաջինջ երարձ զամենայն թագաւորութիւնս Բուլղարաց և դեղ մահու արբուցանէր Ալիօսխանին (կարդա՝ Ալուսիանին) առն քաջի՝ Բուլղարաց թագաւորին. և այսպիսի օրինակաւ հանէր զնա ի կենաց, առեալ զկին նորա և զորդիս արկանէր ի Կոստանդնուպօլիս» (էջ 46)։

368. Ալլիփենգիոնի մասին տե՛ս վերը, ծանոթ. 339։

369. Այսինքն՝ պրոտոպապաս։ Պալատի եկեղեցու ավագերեցին Սկիլիցեսն մի այլ տեղում անվանում է պալատի պրոտոպապաս (տե՛ս և ծանոթ. 90)։

370. Բյուզանդիայի կողմից նվաճված Բուլղարիայում և Սերբիայում ստեղծվեց բյուզանդական վարչություն, ըստ Սկաբալանովիչի՝ Պարիստրիոն բանակաթեմը Դրիստրա կենտրոնով, Սերբիա-Զախլումլյե բանակաթեմը և Սիրմիոնի բանակաթեմը, որը կոչվում էր և Արևմտյան Պարիստրիոն (Скабаланович, Византийское государство срт. 219, 220, 227—230)։ Հետագայում ուսումնասիրողների, հատկապես Վ. Զլատարսկու և Ն. Բրնեսկուի միջև Բուլղարիայի և Սերբիայի վարչական բաժանման հարցի շուրջը կրքոտ բանավեճ սկսվեց, որի մասին տե՛ս Златарски, История, т. II, Bănescu, Les duchés։

371. Ի. Դույչեր քննական վերլուծության է ենթարկել Սկիլիցեսի այս էջը և ցույց տվել, որ Νεστόγγου Σέρμων-ի մեջ վերջին բառը, որ բերված է որպես անձնանուն, իրականում Սիրմիոն տեղանվան կրկնված ձևն է (Дуйчев, Последният защитник, стр. 309—321)։

372. Կոստանդնուպոլսի քաղաքացիներին։

373. Արազգիայի արքա Գեորգիոսի տակ ենթադրվում է վրաց թագավոր Գիորգի I-ը (1014—1027)։ Սկիլիցեսը նրան հիշատակում է որպես «Ներքնագույն Իբերիայի արքա»։ Ոչ միայն բյուզանդական, այլև վրացական, հայկական և արաբական աղբյուրներում, այս ժամանակաշրջանում Վրաստանի և վրացու փոխարեն օգտագործվում են նաև Ափխազիա և աբխազ տերմինները։ VIII դ. 70-ական թթ. Աբխազական պետության հիմնադրմամբ, և Արևմտյան Վրաստանի (Էգրիսիի) կցմամբ աբխազաց պետությանը, Արևմտյան Վրաստանն սկսեց կոչվել Աբխազիա, իսկ նրա բնակչությունն էլ աբխազներ։ XI դ. սկզբում վրացական միացյալ պետության հիմնադրումից հետո վերոհիշյալ բառերի իմաստը ընդարձակվում է, դրանց տակ ենթադրվում են Վրաստանն

*(Սաքարթվելո) և վրացիները (քարթվելի)։Սկզբում Ափխազիա էին կոչում միացյալ վրացական թագավորությունն առանց Կախեթի և Էրեթի, հետագայում այդ հասկացությունը տարածվում է համայն Վրաստանի վրա։ Այդ երկրի թագավորները կոչվում էին «ափխազաց թագավորներ», հետագայում՝ «ափխազաց և վրաց»։ Հասկանալի է, Աիխազիա և ափխազ կոնկրետ դեպքում նշանակում էր նաև բուն Աիխազիան և նրա ժողովուրդը (մանրամասն տե՛ս* Анчабадзе, Из истории, стр. 117—121, 171—177):

*Բյուզանդավրացական պատերազմների մասին՝ Տայքի համար 1015-ից հետո (ըստ հայկական աղբյուրների տվյալների) տե՛ս* Хонелия, Некоторые вопросы, стр. 103—104։

*374. Վարդաս Փոկասի որդի Նիկեփորին Լաստիվերցին հիշատակում է «Ծռավիզ» մականվամբ (էջ 33)։ Նրա մասին մանրամասն գրում է Մատթեոս Ուռհայեցին. «Ի սոյն ամի (1022) իշխան ոմն յաղթանդամ ի տանէն Յունաց Նիկիփօռ անուն Ծռվիզ յարեաւ ի վերայ Վասլին և կոչեաց ի միաբանութիւն իւր զթագաւորն Վրաց Գորգի և զորդիսն Գագկայ. գնաց յաՀէ նորա Դաւիթ (Սենեքերիմ Արծրունու որդին—Հ. Բ.) առ նա զօրօքն Հայոց, և աՀ մեծ եղև ի վերայ Վասլին» (էջ 51)։ Ըստ Ուռհայեցու և Լաստիվերցու Վասիլ կայսեր հաջողվում է Դավիթ Արծրունուն համոզել ու նրա միջոցով սպանել ապստամբին, որից Վասիլ կայսրը «ուրախ եղև յոյժ և տայր պարգևս Դաւթի զԿեսարիա և զԾամնդաւ և խաւաղանէքն հանդերձ սահմանօքն» (էջ 51)։ Ինչպես տեսնում ենք, Նիկեփոր Ծռվիզի սպանությունը ըստ հայկական աղբյուրների, վերագրվում է հայերին (հմմտ. նաև* Արիստ. Լաստ., *էջ 34), այնինչ Սկիլիցեսը անվանում է պատրիկ Նիկեփոր Քսիֆիասին։ Բանասեր Հայկ Պերպերյանը հանգել է այն եզրակացության, որ հայ հեղինակների տվյալներն, ամենայն հավանականությամբ, իրենց հիմքում ունեն բանավոր աղբյուրներ, որ Նիկեփոր Ծռվիզին սպանողը չէր կարող Դավիթ Արծրունին լինել, որ դեպքերին ժամանակակից հեղինակները ճիշտ են, մատնացույց անելով Նիկեփոր Քսիֆիասին (տե՛ս* Պէրպէրյան, *Նիկեփոր Փոկասի ապստամբությունը, էջ 515)։*

*Ծռվիզի սպանությունը Նիկեփոր Քսիֆիասին են վերագրում նաև վրացական աղբյուրները։ «Մատիանե Քարթլիսա»-յի համաձայն «սպարապետ (Քսիֆիասը) ու ասլուտամը Փոկասի որդի Ծռվէզը (վրացերենում՝ Ծարվեզի, հետևաբար վրաց հեղինակը ձեռքի տակ է ունեցել հայկական աղբյուր՝ բանավոր կամ գրավոր) միացան ու Արևելից երկրին տիրացան»։ Վրացական աղբյուրի ասելով, Ծռվիզին սպանեց Քսիֆը, որին սակայն խաբեությամբ ձերբակալեցին Դալասանի (Դալասսենոսի) ներկայացուցիչները, որոնք ուզում էին Փոկասի որդու արյան վրեժն առնել։ Հակասելով իրեն, վրաց հեղինակը ցույց է տալիս, որ նրանք ձերբակալելով Քսիֆիասին, բերեցին Վասիլ կայսեր, որը նրան աքսորեց մի կղզի, իսկ նրա բազմաթիվ կողմնակիցներին հրամայեց գլխատել։ Նրանց մեջ էին Ջոջիկի որդի Ֆերիսը (Ֆերս), ծագումով Տայքից, իսկ մնացածները հույներ էին (տե՛ս* Каухчишвили, Грузинские источники, стр. 82: *Տե՛ս նաև նույն տեղում, էջ 94—96, Սմբատի ժամանակագրության տվյալները սույն հարցի վերաբերյալ)։*

*Յահյա Անտիոքացին գրում է, որ պատրիկ Նիկեփոր Քսիֆիասը Անատոլիկոն բանակաթեմի կառավարիչն էր, որ պայմանավորվեց Նիկեփոր Ծռվիզի հետ Վասիլի դեմ ապստամբություն բարձրացնել, որի դրդապատճառը Նիկեփոր Քսիֆիասի կայսր դառնալու ցանկությունն էր և Վասիլի՝ ափխազների դեմ մղվող պայքարում զբաղված լինելը, միաժամանակ նշելով, որ Ծռվիզը ևս դեմ չէր հաջողության դեպքում իրեն կայսր հռչակել։ Երկու ապստամբների միջև ծածուկ թշնամություն առաջացավ, Նիկեփոր Քսի-*

ֆիասին հաջողվեց իր ծառաներից մեկի օգնությամբ սպանել Ծովիղին։ Յահյան այդ դեպքերը թվագրում է 1022 թ. օգոստոսով (*Розен*, Василий, стр. 63—64)։

Հունական բանահյուսությունը պահպանել է մի դարձվածք. «Ես չեմ վախենում ո՛չ Վարդասից, ո՛չ Նիկեփորից և ո՛չ Ծանրավզից», որոնց տակ հայտնի ապստամբներն են ենթադրվում։ Ադոնցն սկզբում Ծանրավզին նույնացնում էր Վարդաս Սկլերոսի հետ (*Adontz*, L'epopée, p. *21*), բայց հետագայում նույնացրեց հայկական աղբյուրների Ծովիղի հետ և վերոհիշյալ դարձվածքի հիման վրա փորձեց սրբագրել հայկական աղբյուրների «Ծռավիզը»՝ «Ծանրավզի» (տե՛ս *Adontz-Grégoire*, Nicephore au col roide)։ Հ. Պերպերյանը գրում է, թե կարիք չկա Βαρυτράχηλος (Ծանրավզի) գրական էկվիվալենտը փնտրել (տե՛ս *Berberian*, Nicephore au cou tors, p. 554)։ Վարդաս Փոկասի, Նիկեփորի և Ծովիղի վերաբերյալ ժամանակակից հունական ժողովրդական երգերի մասին տե՛ս Ρωμαῖος, Τρεῖς βυζαντινοὶ ἄρχοντες, σελ. 25—45։

375. Լիպարիտյանների մասին տե՛ս ստորև, ծանոթ. 551։

376. Յահյա Անտիոքացուց իմանում ենք, որ «Ափխազաց թագավոր» Գիորգին Վասիլի դեմ պայքարելու համար բանակցությունների մեջ էր մտել ֆաթեմյան ամիրապետ ալ-Հաքիմի հետ, որպեսզի ամեն մեկն իր երկրից Վասիլին պատերազմ հայտարարի։ Երբ ալ-Հաքիմի անհետացման մասին լուր ստացվեց, Վասիլը գնաց ափխազների դեմ, սարսափելի ավերածություններ գործեց, ապա վերադարձավ Տրապիզոն (*Розен*, Василий, стр. 62-63)։ Հայտնի է, որ Վասիլը Տրապիզոն գնաց 1021 թ. վերջին։ Սկիլիցեսը այս դեպքերը թվագրում է 6531 (1023) թ., որ սխալ պետք է համարել։ Եթե Վասիլը ափխազների դեմ գնաց ֆաթեմյան Հաքիմ Աբու-Ալի Մանսուրի անհետացման տարին (1021), ապա ճիշտը հենց 1021-ն է։ Հենց այստեղ, Տրապիզոն եկավ Գիորգիի դեսպանը, որի միջոցով ափխազաց թագավորը խոստացավ Վասիլին զիջել Դավիթ կուրապաղատի բոլոր տիրույթները և պատանդ տալ իր որդուն՝ Բագրատին։ Հենց այդ միջոցին բռնկվեց Նիկեփոր Քսիֆիասի և Նիկեփոր Ծովիղի ապստամբությունը, որից ուզեց օգտվել Գիորգին։ Երբ կայսրը գնաց ստանալու այդ տիրույթները, Գիորգին հարձակվեց Վասիլի վրա, բայց դարձյալ պարտվեց և դիմեց կայսեր ողորմածությանը։ Վասիլը ստացավ Գիորգիի խոստացած բերդերը, նրա որդուն որպես պատանդ և վերադարձավ։ Նրա վերադարձը Յահյան թվագրում է Վասիլի թագավորության 48-րդ տարով (1024), հիջրայի 414 (26 մարտ 1023—14 մարտ 1024) թթ. (տե՛ս *Розен*, Василий, стр. 66)։

Հայկական աղբյուրներից այս դեպքերը հիշատակում է Մատթեոս Ուռհայեցին, որ նշում է ճակատամարտի վայրը։ Դա Ջիոնից բերդի առաջ ընկած դաշտն էր. «և արարին Ջիօնից բերդին առաջի մեծ պատերազմ. և Գորգի փախստական լեալ անկանէր յամուր բերդս և գրէր զանձն իւր ծառայ Վասլին և տայր պատանդ զորդին իւր» (էջ 51)։

1022 թ. կնքված հաշտության մասին հիշատակում է «Մատիանե Քարթլիսայի» հեղինակը, որի ասելով Գիորգին իր երեքամյա որդի Բագրատին պատանդ տվեց, հանձնեց իր ազնվականներին տրված բերդերը, ինչպես և տասնչորս այլ բերդեր, որոնք անցյալում Վասիլին էին տրված, Դավիթ կուրապաղատին պատկանող հողերը Տայքում, Բասյանում, Կողում, Արտահանում և Ջավախքում (տե՛ս *Каухчишвили*, Грузинские источники, стр. 82—84)։

377. Հմմտ. «իսկ առաքեալքն ի թագաւորէն կալեալ զՓերսն և զԱնդրոնիկէ զնորուն փեսայն, որ էր համախոհ նորին, և ածեալ մինչև յամուրն որ կոչի Խաղտոյ Առիճ ի սպառուածն Կարնոյ, ...և յառաջ ածեալ զՓերսն և Անդրոնիկոսն՝ հատին զգլուխս նոցա։ Քանզի զայն պատուէր տուեալ էր նոցա թագաւորին. վասն զի նոքա յապստամ-

բելն իւրեանց դաշնաւորք եղեն Ափխազին (Գիորգի թագավորին—Հ. Բ.) և խոստացան մինչև յայն տեղի տալ նմա ի բաժին» (Արիստ. Լաստ., էջ 35)։

378. Եվստաթիոս (հուլիս 1019—նոյ. դեկտ. 1025 թթ.)։

379. Ալեքսիոս Ստուդիտես (25 մարտ 1025—20 փետրվար 1043 թթ.)։

380. Կայսրերին որպես կանոն թաղում էին սբ. Առաքելոց տաճարում։ Հեբդոմոնի վանքը գտնվում էր քաղաքի պարիսպներից դուրս, որտեղ սովորաբար ռազմական հանդեսներ էին կազմակերպվում։ Երբ 1204 թ. Կոստանդնուպոլիսը գրավվեց ֆրանկների կողմից և Հեբդոմոնի վանքը ավերակ դարձավ, կայսեր աճյունը տեղափոխվեց Սիլիվրիա։ Մի անծանոթ բանաստեղծ Վասիլ II-ի դամբանականը գրեց, որ հետևյալ բովանդակությունն ունի.

«Կայսրերն անցյալում
իրենց թաղման համար տարբեր տեղեր առաջադրեցին։
Բայց ես, Ծիրանածին Վասիլս,
դամբարան եմ կառուցել Հեբդոմոնի հողի վրա
և հանգստանում եմ անթիվ չարչարանքներից,
որ կրեցի ու տարա մարտերում։
Ոչ ոք չտեսավ իմ նիզակը հանգիստ վիճակում՝
մինչև այն օրը, երբ երկնից թագավորը կանչեց ինձ,
երկրի ինքնակալիս, մեծ թագավորիս։
Իմ ողջ կյանքում ես մշտարթուն
փրկություն էի տալիս Նոր Հռոմի զավակներին,
երբ արիաբար արշավում էի Արևմուտք,
կամ էլ Արևելքի սահմանները։
Այդ մասին են վկայում պարսիկներն ու սկյութները,
նրանց հետ՝ ափխազները, իսմայիլն, արաբն ու իբերը։
Ով դու, այս դամբարանին նայողդ,
աղոթքով փոխհատույց եղիր իմ ռազմավարական տաղանդին» (տե՛ս *Mercati*, Sull'epitafio, p. 141)։

381. Արիստակես Լաստիվերցին գտնում է, որ կայսեր սպարակիմոմենոսը Սիմեոնն էր. «Սիմովն ներքինի... որ ունէր ըշխանութիւն կէս թագաւորութեանն, զոր ըստ յունական լեզուին պառեկիմանոս անուանեն» (էջ 41)։

382. Հիշատակում է և Լաստիվերցին. «առաքէ... յարևելս վերակացու աշխարհին զՆիկիտ ոմն ներքինի, որ եկեալ անցանէ ի գաւառն Վրաց» այսինքն՝ Իբերիա (Տայք)։ Սրա հիմնական գործունեությունը եղավ այն, որ նա «պատիր բանիւք զբաղումս յաօատաց աշխարհին հանեալ ի հայրենեաց՝ առաքէ ի դուռն թագաւորին։ Զոր տեսեալ և ուրախացեալ՝ մեծամեծ պարգևօք և իշխանական գահու պատուէ զնոսա, և տայ նոցա ըստ արժանեաց գիւղս և աւանս գրով և մատանեաւ ժառանգութիւն յաւիտենից» (էջ 41)։ Այստեղ հստակ կերպով արտահայտվում է Բյուզանդիայի քաղաքականությունը, որի հիմքում ընկած էր Հայաստանն ավագանուց զրկելը։

383. Արժեքավոր մանրամասնություններ է տալիս Լաստիվերցին։ Կոմնենոսն էր «ա։էր գաւառին Վասպուրականի, սա մեծամեծ գործս արութեան ցուցեալ ի դուռն Պարսից, և եղև անուանի յամենայն արևելս» (էջ 40—41)։ Նրա կուրացման վերաբերյալ Լաստիվերցին ավելի լուրջ պատճառնիր է մատնացույց անում, քան Սկիլիցեսը։ Հայ

պատմիչը գրում է, որ Կոմնենոսը Վասիլ կայսեր մահից հետո «խորհուրդ վատ ի մտի արկեալ, դաշնակից լինի Գէորգեայ (վրաց թագավորի—Հ. Բ.) թագաւորել յարեւելս։ Զոր ծանուցեալ կապադովկացի զօրուն, միաբանեալ յանկարծակի ի վերայ հասին. և զլարս վրանին հատեալ ի վերայ ընկեցին. և կալեալ զնա և զնորին խորհրդակիցսն՝ եդին ի բերդի միոջ ի բանտի, և ծանուցին թագաւորին» (էջ 41)։ Կոստանդին կայսեր հրամանով Կոմնենոսն ու նրա ութ համախոհները կուրացվեցին։ Լաստիվերցին այդ բանի համար շատ է ափսոսում. «յոյժ ապաշաւանաց արժանի է,— գրում է նա,—թէ զի՞րդ զառածեալ անկաւ ի մտաց այնպիսի պատուական այր և բարեաց յիշատակաց արժանի. քանզի զԱրճէշ իւրով դաստակերտօքն նա ած ընդ ձեռամբ Հոռոմոց» (էջ 41)։

Թեև Սկիլիցեսը չի խոսում Կոմնենոսի և Գիորգիի բանակցությունների մասին, իր զինվորներից պահանջած երդմնագիրը՝ պայքարել իրենց զորավարով մինչև մահ, այնուամենայնիվ, ապստամբության նախապատրաստության մասին է վկայում։

384. Նիկեփոր Ծովիզի որդին էր։

385. «Մորոս» հունարեն նշանակում է «մանուկ», «հիմար»։

386. Վասիլ Սկլերոսը Անատոլիկոն բանակաթեմի զորավարն էր։

387. Ջարմանալիորեն դրական է Կոստանդին կայսեր կերպարը հայկական աղբյուրներում. «Եղև Կոստանդ այր բարի և աստուածասէր, ողորմած այրեաց և գերեաց, անյիշաչար ի վերայ ամենայն յանցաւորաց, վասն զի սա արձակեաց զամենայն բանտարկեալսն ի կապանաց և զկորստական տունն, զոր արարեալ էր Վասիլն, հրամայեաց այրել հրով... և ինքն Կոստանդին խաղաղութեամբ կացեալ յաթոռ թագավորութեան Հոռոմոց՝ քաղցրութեամբ հովուեաց զամենայն հաւատացեալս Աստուծոյ և կացեալ յաթոռ թագաւորութեանն զամս չորս, և մեռանէր բարի խոստովանութեամբ ի Քրիստոս Յիսուս և բարի յիշատակաւ գնաց առ հարս իւր. և սուգ մեծ լինէր աշխարհին՝ զրկեալ յայնպիսի թագաւորէն» (Մատթ. Ուռհ., էջ 56—57)։ «Այր խաղաղասէր էր և առատ» (Արիստ. Լաստ., էջ 40)։ Պատճառն, ամենայն հավանականությամբ, այն էր, որ Կոստանդինը, ինչպես և իր եղբայր Վասիլ II-ը, ավելի համբերատար կրոնական քաղաքականություն էր վարում։ Միքայել Ասորին էլ Վասիլին և Կոստանդնին համարում է «արդար» կայսրեր (Michel le Syrien, Chronique t. III, p. 140), ի հակադրություն Ռոմանոս III-ի, որ միաբնակների նկատմամբ անհանդուրժող էր (նույն տեղում, էջ 146)։

388. Թարգմանաբար նշանակում է «աշխատանք, գործ տվող» և իմաստով նույնանում է ἐπείχτης (եպիխտ) բառին, որից ունենք աղգանուն, որ հանդիպում է և հայկական աղբյուրներում։

389. 5760 ոսկեդրամ։

390. Բյուզանդիայում եկեղեցականների համար կային որոշակի պատվաստիճաններ։ Դրանցից էին՝ «սինկելլոս» մետրոպոլիտներ և «հիպերտիմոս» մետրոպոլիտներ։ Սինկելլոսը, բացի իր սովորական եկեղեցական ֆունկցիաներից և աստիճանից, ստացավ նաև քաղաքական ֆունկցիաներ։ Սինկելլոսը պատրիարքի օգնականն էր և մշտական խորհրդատուն։ Նրան նշանակում էր կայսրը։ Մակեդոնական հարստության ժամանակ սինկելլոսը աղնվականական հիերարխիայի ամենաբարձր աստիճաններից էր և գալիս էր մագիստրոսից և ռեքտորից անմիջապես հետո։ Սինկելլոսների ամենավաղ հիշատակությունը վերաբերում է X դարի երկրորդ կեսին։ XI դ. կեսերից հիշվում են նաև պրոտոսինկելլոս մետրոպոլիտներ, դարի վերջին՝ պրոտոսինկելլոսների պրոեդրոսներ և պրոտոսինկելլոսների պրոտոպրոեդրոսներ (մանրամասն տե՛ս Grumel, Les mètropolites syncellus. p. 92—114)։

*391. Մանուիլի վանքը կառուցել է հայազգի մագիստրոս Մանուիլը, որ Թեոփիլոս կայսեր օրոք Անատոլիկոն բանակաթեմի զորավարն էր* (*Janin*, La géographie ecclésiastique, p. 331—333)։

*392. Ապագա կայսր Ռոմանոս IV Դիոգենեսի հայրը։*

*393. Բնագիրն այդքան էլ հստակ չէ.* Γεώργιος τε καὶ Βαραζβατζε ὁ ἐν ὄρει τῷ Ἄθω τὴν τῶν Ἰβήρων μονὴν συστησάμενος, οἱ τοῦ πατριχίου Θευδάτου ἀνεψιοί. *Եթե բառացի հասկանանք, ապա գեորգը և Վարազվաչեն տարբեր մարդիկ են, պատրիկ Թևդատի եզբորորդիները, բայց վանքը հիմնադրողը մեկն է՝ Վարազվաչեն։ Պ. Պետերսը, ցույց տալով, որ Վարազվաչե անունով մարդ հայտնի չէ Աթոնի Իվիրոն վանքի պատմության մեջ, իսկ հիշյալ վանքի հիմնադիր Եվթիմիոսին հաջորդողն այդ տարիներին Գեորգն էր, ուղղում է մտցնում Սկիլիցեսի բնագրում.* Γεώργιος τε (ὁ) καὶ Βαραζβατζε *(Գեորգը, որ և Վարազվաչե)։ Տե՛ս Peeters*, Un colophon géorgien, pp. 365—366։ *Կաժդանը համամիտ է Պետերսին (Каждан*, Армяне, стр. 50), *և* οἱ τοῦ πατριχίου Θευδάτου ἀνεψιοί *բառերը գտնում է, որ չեն վերաբերում Գեորգին և Վարազվաչեին այլ ուրիշ անձնավորություններ են (նույն տեղում, էջ 60, քանզի Գեորգ-Վարազվաչեն Պետերսի ընթերցմամբ դառնում է մեկ մարդ, իսկ* ἀνεψιοί *բառը հոգնակի է)։*

*Վ. Շանդրովսկայան էրմիտաժի մի արճճե կնիքի հիման վրա ցույց է տալիս, որ Վարազվաչե անուն չէ, այլ ազգանուն, որ տվյալ դեպքում Սկիլիցեսը նկատի ունի երկու տարբեր անձնավորությունների* (*Шандровская*, Одно уточнение, стр. 46)։

*394. Ինչպես գրում է Ժ. Լորանը՝* le couvent d'Iviron ou des Ibères (comprenez des Arméniens de rite orthodox), au mont Athos *(«Իվիրոն, այն է իբերների, այսինքն՝ ուղղափառ (քաղկեդոնիկ—Հ. Բ.) հայերի) վանքը Աթոս լեռան վրա։ Տե՛ս նրա հոդվածը՝* Les origines médiévales, p. 45։ *Վերահրատարակված է հեղինակի հայագիտական հոդվածների վերջերս լույս տեսած ժողովածուում. Joseph Laurent*, Études d'Histoire Arménienne, Louvain, 1971, p. 11։ *Որ էթնոնիմի տակ նկատի է առնվում դավանանք, պարզվում է և IX դարի նշանավոր մի վրացի գրողիասույթով, թե «Վրաստան է համարվում այն լայնարձակ երկիրը, որտեղ եկեղեցական պաշտոնը և բոլոր աղոթքները կատարվում են վրացերեն լեզվով» (տե՛ս Марр*, Кавказский культурный мир, стр. 21)։

*Աթոնի վանական կազմակերպության հիմնադրումը կապվում է Նիկեփոր II Փոկասի անվան հետ։ Նա իր մորեղբայր Միքայել Մալեյինոսի՝ Թեսալիայի Կյումենա կոչված վանքի վանահոր մտերիմ սբ. Աթանասիոսի միջոցով և ջանքերով 963 թ. հիմնադրում է Մեծ Լավրա վանքը։ Հովհաննես Չմշկիկ կայսեր կարգադրությամբ կազմվում է Սուրբ Լեռան առաջին կանոնադրությունը (Տիպիկոն)։ X դ. վերջում, դեռևս սբ. Աթանասիոսի կենդանության օրոք հիմնադրվում է իբերների (Իվիրոն) վանքը։ Աթոնում հայ վանականների գոյության մասին վկայում է սբ. Աթանասիոսի վարքը։ Նրա տվյալների համաձայն, սբ. Աթանասիոսի մոտ վանական դառնալու էին գալիս բազմաթիվ ժողովուրդների ներկայացուցիչներ «հենց Հռոմից, Իտալիայից, Կալաբրիայից, Ամալֆեից, Իբերիայից և Հայաստանից* (Ἰβηρίας καὶ Ἀρμενίας), *այն էլ ոչ միայն անտոհմիկ, հասարակ մարդիկ, այլև ազնվական ու հարուստ» (տե՛ս* Vie de Saint Athanase, p. 56)։ *Բացառված չէ, որ Աթոնում բացի քաղկեդոնիկ հայերից, եղած լինեն և հայադավաններ, համենայն դեպս սկզբնական շրջանում։ Այդ մասին է վկայում վերոհիշյալ վարքը, որտեղ խոսվում է Աթոնում մեծ աղմուկ հանած հաղորդության համար բաղարջ հացի* (ἄζυμον) *թխման մասին (տե՛ս* „Vie de Saint Athanase", p. 62)։ *Նիկոլայոս Միստիկոս պատրիարքը (901—907, 912—925) վկայում*

*է, որ Աթոնում կային հայոց ցեղից ծագող* (φυλῆς κατάγονται ἐκ τῆς τῶν 'Αρμενίων) *վանականներ, որոնք պահում էին հայերի մոտ ընդունված առաջավորաց պահքը* ('Αρτζιβούριον), *ապա և «ուղղափառ»* (πιστοὶ ὀρθόδοξοι, *հավանաբար՝ քաղկեդոնիկ) հայեր (տե՛ս* Nicolai patriarchae Opus, col. 404)։

*Վրացադավան (քաղկեդոնիկ) հայերի հարցը հանգամանորեն ուսումնասիրվել է դեռ Ն. Մառի մի աշխատության մեջ, որը Պ. Պետերսը դասական է համարում։ Խոսքը Մառի* «Аркаун» *ծավալուն հոդվածի մասին է։ Ն. Մառի ծանրակշիռ փաստարկումների վրա կարելի է ավելացնել և հետևյալները։ Այսպես. 1. Սև լեռան (Մուսա լեռան) հարավարևելյան մասում, այժմ Սուրութմե (Սուրբ Թովմաս) կոչվող գյուղում վրացական. եկեղեցու ավերակների մեջ 1935 թ. գտնվել է վրացերեն խուցուրի գրով մի վիմագիր արձանագրություն, որը Բլեյկն ընթերցել է.* „eklesiay ars somekht'oy" *և թարգմանել.* „L'eglise est aux Armeniens"։ *Հենց այդպես է թարգմանել նաև Պ. Պետերսը, այսինքն՝ «եկեղեցին հայերինն է»։ Պետերսը տվել է նաև բացատրություն.* „c'est-à-dire aux chalcedoniens ibero-armeniens *(այսինքն՝ քաղկեդոնիկ վիրահայերի», տե՛ս Mécerian,* Expedition archeologique, p. 111—112)։ *Այդ մասին տե՛ս նաև՝ Peters,* Orient et Byzance, pp. 162—163։ Նույնի, Un temoignage autographe, p. 179—180։ *Բացառված չէ, որ հենց այս վանքում է եղել Վասիլ II կայսրը։ Մատթեոս Ուռհայեցու տվյալներով «Վասիլն յետ ժամանակաց գայ յԱնտիոք ի ծածուկ Գ արամբք հաւատարմօք և եկեալ ի Սեաւ լեառն ի տեղին, որ կոչի Պաղակծիակ, և ի հօրէ և յառաջնորդէ տեղւոյն առնու զքրիստոսական կնիքն և յայնմ հետէ եղև որպէս զհայր աշխարհիս Հայոց...» (*Մատթ. Ուռհ., *էջ 50)։*

*2. Սուրբ Մարիամ Նորավկայի (մեռ. 902—903) հունարեն վարքը, որից իմանում ենք, որ Վասիլ I-ի թագավորության ժամանակ (867—886) «Մեծ Հայքի մեծամեծներից ոմանք», այդ թվում և սբ. Մարիամի հայրը, գալիս են Կոստանդնուպոլիս կայսեր մոտ, սիրալիր ընդունելություն գտնում վերջինիս կողմից, ստանում նրանից թանկարժեք նվերներ և արժանանում բարձր աստիճանների ու պաշտոնների։ Ըստ Պետերսի ենթադրության, Մարիամը ծնվել է Տայք-Կղարջքում, քաղկեդոնիկ հայերի ընտանիքում։ Մարիամի քույրերից մեկը ամուսնացավ Թրակիայի Մեսենե ավանի արվարձանում մի փոքրիկ կալված ունեցող գաղթականի հետ, որ կոչվում էր* Βάρδας ὁ Βρατζῆς *(Վարդ Վրացի)։ «Վրացի» հայերեն բառը հունարեն տառերով է գրված։ Այդ Վարդի կալվածը վարքում կոչվում է* τοῦ Βρατζῆ *(«Վրացու»)։ Եզրակացություն. եթե նա Վարդ է, ապա հայ է, եթե Վարդ է, բայց «Վրացի» վրացադավան հայ էր, իսկ նրան այդպես անվանող բնակչությունը հայ, հայադավան ու հայախոս (Մարիամ Նորավկայի վարքի ամբողջական թարգմանությունը հայերեն և նրա մասին ուսումնասիրությունը տե՛ս* Քարթիկյան, *Մամիկոնյան (*) սուրբ Մարիամ Նորավկայի բյուզանդական վարքը, էջմիածին, ԺԲ, 1975, Ա, Բ, 1976)։*

*3. Թորթումի շրջանի էգրեկ (Ագարակ) գյուղում վրացական եկեղեցու պատերի վրա 1006/1007 թթ. փորագրված Լարիսայի և Մակեդոնիայի զորավար Գրիգոր պատրիկի՝ Սմբատ պատրիկի որդու հունարեն արձանագրությունը։ Թեև նա արձանագրության մեջ իրեն վրացի է համարում* ("Ιβηρ), *բայց իր մականունը հիշում է որպես Վխկացի* (BHXKATZI)։ *Հունարեն արձանագրության մեջ հայերեն-ացի ածանցի գոյությունը կասկած չի թողնում, որ տվյալ «վրացին» հայ է։ Հայտնի է, որ Անիի կառավարիչ Բագարատը նույնպես Վխկացի էր, իսկ նրա մասին աղբյուրներն, այդ թվում և Սկիլիցեսը, վկայում են, որ նա հայ էր* (δοὺξ 'Αρμένιός τις Παγκράτιος τοὔνομα)։ *Այդ*

մասին տե՛ս Bartikian, La genealogie, p. 261—262։ Նաև Lemerle, Nouvelles remarques, p. 177—181։

4. Աշխարհի արարչագործության 6543 (1035) թ. կրող մի հունարեն փաստաթուղթ, գրված Աթոնի Մեծ Լավրայում, ստորագրել են 24 վանական։ Առաջին ստորագրությունը պատկանում է առաջնորդ Թեոկտիստոսին, որ ստորագրել է, ինչպես բոլորը՝ հունարեն, բայց իր ստորագրության տակ նպատակահարմար է գտել ստորագրել նաև հայերեն. «Իմ ձեռոքս գրեցի, Թեոկտիստոս»։ Թեոկտիստոսը, հավանաբար քաղկեդոնիկ հայ էր, «իբեր» (վրացի) ինչպես կոչում էին Աթոնում երկաբնակ հայերին (տե՛ս Բարթիկյան. Թեոկտիստոսի հայերեն ստորագրությունը... էջ 68—71)։

394ա. Սկիլիցեսը Գիորգիի մահը դնում է 1030-ի տակ՝ Ռոմանոս Արգիրոսի թագավորության օրոք։ Իրականում նա վախճանվեց 1027 թ.։

395. Նասր իբն Մուսարաֆ առ-Ռավադիֆին։

396. Բերդի անունը տալիս է Սկիլիցեսը մի փոքր հետո՝ Մենիկոս (արաբ. ալ-Մանիքա, այժմ՝ Քալատ Մանիքա)։

397. Ծագումով թուրք Անուշտեքին ալ-Դուզբերին, որ երկար ժամանակ եգիպտական զորքերի սպարապետն էր։ Յահյա Անտիոքացու (նա նրան դայլամցի է համարում) և իբն ալ-Աթիրի գրչագրերում նրա անունը գրվում է ալ-Բերբերի, բայց Քեմալեդդինը միշտ գրում է ալ-Դզ-բ-րի (տե՛ս Розен, Василий, стр. 379)։

398. Մատթեոս Ուռհայեցու համաձայն, Ռոմանոսը 479 թ. (1030) հարձակվեց Հալեպի մոտ գտնվող Ազազ բերդի վրա։ Իր բանակում բացի հույներից, ամենայն հավանականությամբ, կային նաև հայկական զորամասեր, քանզի հրամանատարների թվում պատմիչը հիշում է Դավիթ կուրապաղատի վրանապահ Ապուքապին։ Ե՛վ Լաստիվերցին, և՛ Ուռհայեցին ընդգծում են Ռոմանոս կայսեր անզիջում քաղաքականությունը հայադավանների նկատմամբ, նրան համարում «խակամիտ», «յոյժ չարաբարոյ և կարի հայհոյիչ ուղղափառ (այսինքն՝ միաբնակ) հաւատոյ» (Արիստ. Լաստ., էջ 43, Մատթ. Ուռհ., էջ 57)։ Սև լեռան շրջանում կայսրը հրաման տվեց գերել բոլոր միաբնակ վանականներին և զինվորագրել, որից հետո նրանց իր հետ վերցրեց՝ ընդդեմ արաբների։ Միաբնակներից (հայերից և ասորիներից) բաղկացած զորամասերը «ոչ էին ընդ նմա միաբան և խորհէին զի ի ժամ պատերազմին թողցեն գնա ի մէջ զորացն Տաճկաց և ինքեանք զերեսս դարձուցանիցեն ի պատերազմէն, դի սատակեսցի անօրէն թագաւորն» (Մատթ. Ուռհ., էջ 57)։ Նրանք այդպես էլ արեցին և պատճառ դարձան Ռոմանոսի պարտության։ Ռոմանոսի բանակում եղած հայկական (ու վրացական) զորամասերի մասին կա Քեմալեդդինի ուղղակի հիշատակությունը (Розен, Василий, стр. 317—318)։

Այս ճակատամարտի մասին տե՛ս Canard, Les sources arabes, p. 291։

399. Մանիակեսների ընտանիքը շատ հին է և, բացառված չէ, ունի հայկական ծագում։ Դեռևս Միքայել III կայսեր ժամանակ (842—867) հիշատակվում է Կոստանդին պատրիկ ἐξ 'Αρμενίων (ի հայոց. տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 44), որին Լևոն Քերականը (Գրամմատիկոս) Մանիակես է անվանում (Leo Grammaticus, Chronographia, Bonnae, 1842 p. 236)։ Սկիլիցեսը Գեորգիոս Մանիակեսին անվանում է Տլուր բանակաթեմի զորավար, մի փոքր անց՝ Մերձեփրատյան քաղաքների զորավար, ինչպես և Զոնարասը (Zonar. IV, p. 132)։

400. Բնագրում՝ κάτω Μηδία։ Հոնիգմանն սկզբում կարծում էր, որ Ստորին Մարաստանը նույնանում է Անձևացիքի և Մանազկերտի հետ (Honigmann, Die Ostgrenze, S. 10, An. 5), հետագայում հրաժարվելով այդ մտքից, մտադիր էր այն նույնացնել Ամիդի

հետ, քանզի Հովհաննես Մալալասը Ամիդը (῎Αμιδα) կոչում է նաև Ամիդիա (Ἀμήδεια)։ Տե՛ս Honigmann, Une „Scala „geographique, p. 101։ Կաժդանը Ստորին Մարաստանը նույնացնում է Եդեսիայի հետ (տե՛ս Каждан, Армяне, стр, 50, 157։ Ավելի մանրամասն ծանոթ. 352)։

401. Կատապան (κατεπάνω) տիտղոսը հանդիպում է բյուզանդական աղբյուրներում IX—XI դդ. և սկզբում նշանակում էր մի որոշակի ծառայության վերակացու։ Կոստանդին Ծիրանածինը (էջ 235) այդ տերմինը նույնացնում է վաղ շրջանի magister militum-ի հետ։ Դուքսի նման կատապանը զորահրամանատար է և գլխավորում է բանակաթեմում տեղակայված մի զորամաս՝ զորավարի հրամաններին ենթակա։ X դարից կատապանը սահմանամերձ մեծ բանակաթեմի կառավարիչն է։ X դարի երկրորդ կեսից կատապան տերմինն ստանում է նոր բովանդակություն՝ դուքսին համանման, ձևականորեն նրանցից ցածր, բայց իրականում այդ տարբերությունն էական նշանակություն չուներ կյանքում. նույն դիրքերը սովորաբար տրվում էին և՛ դուքսերին, և՛ կատապաններին։ XI գ. կատապան և դուքս տիտղոսները կրողները նույն ֆունկցիաներն ունեին և անգամ միևնույն անձնավորությունը հիշվում է այդ երկու տիտղոսներով։ Անտիոքի կառավարիչ Խաչատուրին Սկիլիցեսն անվանում է դուքս, իսկ Ատտալիատեսը՝ կատապան։ Դուքսն ու կատապանը ենթարկվում էին սխոլերի դոմեստիկոսին։ Կատապան տիտղոսը XI դ. վերջից անհետանում է։ Կարծիք է հայտնվել, որ արևմտաեվրոպական «կապիտան»-ը (capitano, capitain, captain) ծագում է բյուզանդական կատապանից։

Հայկական վիմական արձանագրություններում ևս կատապանն ու դուքսը օգտագործվում են միևնույն իմաստով։ Բագարատ Վխկացին իրեն անվանում է «արևելից կատապան» («Դիվան հայ վիմագրության», պր. Ա, Երևան, 1966, էջ 37), իսկ Վեստ Սարգիսը՝ «արևելից կատապան»-ի փոխարեն օգտագործում է «դուկ արևելից»-ը (Կոստանյան, Վիմական տարեգիր, էջ 17)։

402. Միսթիան քաղաք էր Արմենիակների բանակաթեմում։

403. Ասորիքի Տրիպոլիս քաղաքի ամիրա Հասան իբն ալ Մուֆարրիգ իբն ալ Ջարրախ, որին Կեկավմենոսն անվանում է Ապելզարախ։ Նա, հավանաբար, չորս անգամ եղավ Կոստանդնուպոլսում։ Նրա երրորդ այցելությունն, ըստ Հոնիգմանի, տեղի ունեցավ 1032 թ., չորրորդը՝ 1033—1034 թթ. (Die Ostgrenze, SS. 109. 113—116)։ Կեկավմենոսը գրում է, որ նա հաճախակի գալով Կոստանդնուպոլիս, դարձավ արհամարհանքի առարկա, քաղաքում պահվեց երկու տարի՝ աքսորի և մահապատժի սպառնալիքի մեջ և հազիվ ազատ արձակվելով, վերադարձավ իր երկիրը („Советы и рассказы", стр. 302)։

404. Շվայտ կյանքից որովայնային հիվանդություն չի առաջանա։ Բնագրում τρυφή է, որ պետք է ուղղել՝ τροφή (սնունդ, կերակուր)։

405. Բնագրում՝ οἶκον, որ բառացի տուն է նշանակում, բայց հաճախ ունի προάστειον-պրոաստինի, ագարակի նշանակություն։ «Տունը» ֆեոդալի ագարակի հենց կենտրոնն էր (տե՛ս Каждан, Византийское сельское поселение, стр. 233։ Նույնի՝ Формирование феодального поместья, стр. 102)։

406. Կոստանդին V պատկերամարտ կայսր (741—775)։

407. Պետրիոնի Սբ. Եվփեմիայի վանքը։ Այստեղ են թաղված հայազգի շատ գործիչներ, Վասիլ 1-ի ընտանիքի անդամները, այդ թվում և Վասիլ I-ի մայր Պանկալոն, Վասիլի երկու եղբայրները՝ Մարիանոսն ու Սմբատը, դստրեր Անաստասիան, Աննան և Հելենեն, ինչպես և Կոստանդին Ծիրանածինի մայր Զոե Կարբոնոպսինան։

*408. Բյուզանդացիներն այդպես էին անվանում Շիրակի Բագրատունի թագավորներին։ Բայց այստեղ պարզ չէ ո՞ւմ նկատի ունի, Հովհաննես-Սմբատին, թե՞ Աշոտին։ Այդ ժամանակ Հայաստանում իշխում էին երկուսն էլ։ Քանի որ տվյալ ժամանակաշրջանում Բյուզանդիան օգնում էր Աշոտին՝ ընդդեմ Հովհաննեսի, հավանական է, որ Ռոմանոս կայսրը խնամիացել էր Աշոտի հետ։*

*409. Բյուզանդիայում որբանոցներ կային շատ վաղ ժամանակներից։ Նրանք հիշվում են դեռևս Կոստանդ II (337—361) կայսեր ժամանակներից։ Որբանոցների գլուխ կանգնած անձնավորությունը կոչվում էր օրֆանոտրոֆոս, որ բառացի նշանակում է որբերին խնամող սնող։ X դ. օրֆանոտրոֆոսը գտնվում էր արքունիքի 60 բարձրաստիճան պաշտոնյաների թվում։ Փիլոթեոսի «Կլետորոլոգիոնում» (899) նա գրավում էր 56-րդ տեղը։ Նա ուներ անթիպատ-պատրիկի, պատրիկի կամ պրոտոսպաթարի պատվաստիճանը։ Օրֆանոտրոֆոսը քաղաքացիական պաշտոնյա էր և ոչ եկեղեցական աստիճանավոր։ Նա իր ենթակայության մեջ ուներ մի շարք այլ պաշտոնյաներ։ Բյուզանդիայի պատմության մեջ ամենանշանավոր օրֆանոտրոֆոսը Ռոմանոս III Արգիրոսի ժամանակ հանդես եկած և այդ կայսեր հաջորդած վեհապետների ժամանակ ևս գործած այս Հովհաննես Օրֆանոտրոֆոսն էր, որին հիշատակում է անգամ Լաստիվերցին «Որթանոտոս» ձևով։ Օրֆանոտրոֆոսների մասին տե՛ս.* Guilland, L'Orphanotrophe, pp. 205—221։ *Հատկապես Հովհաննես Օրֆանոտրոֆոսի մասին՝* Janin, Un ministre byzantin.

*410. Ինքնասպանների գերեզմանոցում թաղվելն անպատվաբեր էր համարվում։*

*411. Ռագուզայի (սլավ. Դուբրավայի) բնակիչների մասին է խոսքը։*

*412. Բնագրում՝* Ἀπομερβάνης։ *Նույնանում է Մատթեոս Ուռհայեցու Նսրտոլի (Նասր էդ-դին Դաուլայի) հետ։*

*413. Մեծ եկեղեցին Ուռհայեցին անվանում է «սուրբ Սոփի» (էջ 61)։*

*414. Եդեսիայի առումը բյուզանդացիների կողմից մանրամասն նկարագրված է Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրության» մեջ։ Եդեսիան այն ժամանակ երկու ամիրաների ձեռքում էր գտնվում՝ իրար թշնամի Շեպլի և Ուտայրի։ Ուտայրին հաջողվում է սպանել Շեպլին, սակայն վերջինիս բերդապահներից մեկը՝ Սալման անունով (Սկիլիցեսի Սալամանը և Յահյա Անտիոքացու Սուլեյման իբն- ալ-Կուրջին (ալ-Թուրքին), նրան ընդդիմակայեց, բայց հաջողության չհասնելով, բերդը հանձնեց Նփրկերտի ամիրա Նսրտոլին։ Վերջինս ոմն ռայիս Պայելի ուղարկում է տիրանալու Սալմանի հանձնած բերդին։ Պայելը սպանում է Ուտայրին և տիրանում ողջ Եդեսիային։ Ուտայրի կինը Նսրտոլի դեմ է հանում ողջ արաբական աշխարհը և ստիպում է նրան Ուռհայի բերդը հանձնել Սալմանին և հեռացնել այնտեղից Պայելին։ Բայց Ուտայրի կինն ընդհարվում է և Սալմանի հետ, որի վրա վերջինս «առաքեաց ի Սամուսաթ առ Մանիակ իշխանն Հոռոմոց, որ անուանեալ կոչէին Գէորգ. գրեաց առ նա Սալման և ասէր. «Եթէ առցես ի Հոռոմոց թագաւորէն ինձ իշխանութիւն և գաւառս, ես տաց զՈւռհա ի ձեռս քո»։ Նրանք համաձայնության են գալիս և Մանիակեսը ոտք է դնում Եդեսիա* (Մատթ. Ուռհ., *էջ 60—64։ Հմմտ.* Արիստ. Լաստ., *էջ 44—45), ու դառնում քաղաքի առաջին բյուզանդացի կառավարիչը։ Եդեսիան արաբների ձեռքում էր 641 թվականից։ Եդեսիայի առման մասին տե՛ս նաև* Michel le Syrien, Chronique, t. III, p. 147։ *Նորագույն մենագրական ուսումնասիրությունը Եդեսիայի վերաբերյալ՝ Սելևկյանների կողմից քաղաքի հիմնադրումից մինչև 1146 թ. հետևյալն է.* Segal, Edessa։

*415. Ըստ Յահյայի, Քրիստոսի նամակը քաղաքի կառավարիչ Սուլեյմանը բերեց Կոստանդնուպոլիս՝ Ռոմանոս կայսեր։ Պատմիչը գրում է երկու նամակի մասին՝ Աբգա-*

րի, ուղղված Քրիստոսին, և Քրիստոսի պատասխանի՝ Աբգարին։ Նրա ասելով այդ նամակներն ասորերեն էին, գրված մագաղաթի վրա և թարգմանվեցին հունարեն, իսկ հունարեն թարգմանողը միաժամանակ Յահյայի խնդրանքով թարգմանեց նաև արաբերեն։ Յահյան իր գրքում բերում է Աբգարի նամակի թարգմանությունը (տե՛ս *Розен*, Василий, стр. 72—73)։

*416. Ազիզի մասին տե՛ս վերը, էջ 80։*

*417. 3600 դահեկան։*

*418. Հայտնի չէ Բաբելոնի տակ ի՞նչը նկատի ունի։*

*419. Ամենայն հավանականությամբ, նույնանում է Դյուրախիոնի բուլղար կառավարիչ Խրիսելիոսի հետ։ Հայր Խրիսելիոսը Վասիլից խնդրել էր իր երկու որդիների համար պատրիկի պատվաստիճան։ Գրիգոր Մագիստրոսն այս Նիկողայոսին նկատի ունի իր մի տաղի մեջ, որտեղ խոսք է լինում Հայաստան եկած «ավարարող, ավերող Նիկողասի» մասին, որին նա «գիշերաբուն բուլղարաց» է անվանում (մանրամասն տե՛ս* Բարթիկյան. *Գրիգոր Մագիստրոսի քաղաքական կողմնորոշման շուրջը, էջ 67—72։* Նույնի՝ О болгарском войске, стр. 95)։

*420. Սկիլիցեսը այս դեպքը վերագրում է Ռոմանոս կայսեր թագավորության ժամանակաշրջանին և հիշատակում Մանիակեսի կողմից Եդեսիայի գրավման տարում (1032)։ Բյուզանդացիների կոտորածը Բերկրիում, սակայն, Արիստակես Լաստիվերցին հիշատակում է Միքայել IV Պափլագոնացի կայսեր ժամանակ. «Ի սորա թագաւորութեանն,— գրում է նա,— եղև մեծ կոտորած զօրացն Հոռոմոց՝ ի բերդաքաղաքն որ կոչի Բերկրի» (էջ 48)։ Ինչպես երևում է հայ մատենագրի պատմածից, Բերկրին գրավել էր Վասպուրականի գավառապետ (կատապան) Կավասիլասը։ Այդ բանը հաստատում են և արաբական աղբյուրները, տվյալ դեպքը թվագրելով հիջրի 425 (1033—1034) թվականով (տե՛ս* Տեր-Ղևոնդյան, *Արաբական ամիրայությունները, էջ 201), և ոչ թե պատրիկ Նիկոլայոս Խրիսելիոսը, ինչպես գրում է Սկիլիցեսը և ոչ սարակինոս Ալիմից, այլ ամիրա Խտրիկից, որը, հավանաբար, նույնանում է արաբական աղբյուրների հիշատակած Աբու-լ-Հայջա իբն Ռաբիբ ալ-Դաուլայի հետ (*Տեր-Ղևոնդյան, *նույն տեղում, էջ 201), որ հոռոմոց զորքերի կոտորածը (24 հազար հոգու) տեղի ունեցավ Վասպուրականի կատապան Կավասիլասի հաջորդի օրոք (*Արիստ. Լաստ., *էջ 48)։ Նրա անունը հայ պատմիչը չի տալիս։ Լաստիվերցին վկայում է նաև, որ բերդաքաղաքը վերագրավելու գործում Բերկրիի ամիրային օգնեցին «պարսիկները». «ազդ առնէ,—գրում է նա,— առ գլխաւորս Պարսից աշխարհին։ Որք յանկարծակի ձայն տուեալ միմեանց՝ ի մի վայր ժողովեցան, և հասեալ ի վերայ քաղաքին պաշարեցին զնա պատնիշաւ... (և) սուր եղեալ կոտորեցին արս իբրև քսան և չորս հազար» (էջ 48)։ Ինչ վերաբերում է քաղաքի ամիրային, ապա, ի տարբերություն Սկիլիցեսի, որի համաձայն նրա իր որդով հանդերձ հռոմայեցիները մահապատժի ենթարկեցին, Լաստիվերցու ասելով նա պարսից զորքերով, գերությամբ ու թալանով ողջ առողջ «չոգան յաշխարհն իւրեանց» (նույն տեղում)։*

*Մատթեոս Ուռհայեցու ասելով քաղաքը գրավեց ոչ թե Կավասիլասը, ինչպես գրում է Լաստիվերցին, այլ «իշխանն հայոց Գանձի» (էջ 74) և նրա գլխավորած «զօրքն Հայոց» (էջ 75)։ Փաստերի համադրումը ցույց է տալիս, որ հայերն, անկասկած, մասնակցել են Բերկրիի գրավմանը իրենց իշխան Գանձիի գլխավորությամբ։ Կ. Յուզբաշյանը անդրադառնալով հայոց իշխան Գանձիի անձնավորությանը, վստահորեն պնդում է, որ նա նույնանում է Նիկոայոս Խրիսելիոս բուլղարի հետ, և որ Գանձին բուլղարահայ էր*

(տե՛ս «Повествование», стр. 153), ուշադրություն չդարձնելով, որ խրիսելիոսները բուլղարական հայտնի ընտանիք էին, իշխում էին Դյուրախիոնում և պատմության մեջ հայտնի են այդ ընտանիքի բազմաթիվ ներկայացուցիչներ (հմմտ. Каждан, Армяне, стр. 123), որոնցից մեկը, Նիկոլայոսը, Մոգլենում գերի ընկած բուլղարների գլխավորությամբ եկավ Վասպուրական (Бартикян, О болгарском войске, стр. 95): Իր միտքը Յուզբաշյանն ուզում է հաստատել նաև գանձ և χρυσός բառերի, իր կարծիքով, ունեցած իմաստային նույնությամբ (բայց χρυσος գանձ չի նշանակում, այլ ոսկի, գանձը կլինի θησαυρός) բացի այդ, Նիկոլայոսի մականունը Χρυσός չէ, այլ Χρυσήλιος, որը թարգմանվում է «ոսկե արև»։ Մի կողմ թողած լեզվաբանական անհաջող մեկնաբանությունները, պետք է նաև նկատի ունենալ այն հանգամանքը, որ Գանձին սպանվեց մարտի դաշտում, այնինչ խրիսելիոսը պարզապես պաշտոնանկ արվեց։ Գևորգ Աբգարյանը Գանձի-Խրիսելիոս նույնացումը, «հիացմունքի արժանի» (!) է համարում (տե՛ս Գ. Աբգարյան, Ո՞վ է Գրիգոր Մագիստրոսի հիշատակած Նիկողաս զորավարը, «Լրաբեր», № 9, 1971, էջ 46, ծանոթ. 21)։

421. Լաստիվերցին այդ դեպքը դնում է Միքայել IV-ի թագավորության երկրորդ տարում (էջ 49)։ Նիկետաս Պեգոնիտեսին Ադոնցը նույնացնում է Ուռհայի դուքս Փիղոնիտի հետ (Մատթ. Ուռհ., էջ 157), որ հիշվում է 1065 թ. դեպքերի առնչությամբ Adontz, Notes, p 154), այսինքն Բերկրին գրավող Պեգոնիտեսից առնվազն 30 տարի հետո։ Ուռհայեցին 1056 թ. դեպքերի առնչությամբ հիշում է մի «իշխան Հոռոմոց», որին անվանում է «Պիգշօնիտ», որ Փիղոնիտի (Պիղոնիտի) աղավաղումը պետք է համարել։

422. Վրաց թագավոր Գիորգի 1-ի (1014—1027)։

423. Տե՛ս ստորև, ծանոթ. 425։

424. Խոսքը Ափխազիայի գլխավոր բերդաքաղաքի Անակոպիայի մասին է, որտեղ դեռևս VI դարում աբխազ պատմաբան Անչաբաձեի կարծիքով, Հուստինիանոս 1-ը տաճար կառուցեց (տե՛ս Анчабадзе, Из истории, стр. 27)։ Գտնվում է ժամանակակից Նոր Աթոնի մոտ։ Եղել է Ափխազիայի մայրաքաղաքը և երկրի կրոնական կենտրոններից մեկը։ «Մատիանե Քարթլիսաի» Անակոպիան համարում է Ափխազիայի գլխավոր բերդը (տե՛ս Каухчишвили, Грузинские источники, стр. 94) և այդ աղբյուրի համաձայն Դեմետրեն էր, որ գնաց «հունաց կայսեր մոտ» և նրան տվեց Անակոպիան (Анчабадзе, նույն տեղում, էջ 179)։ Բերդը հիշում է Մխիթար Այրիվանեցին (էջ 51)՝ «Անակոփ բերդ» ձևով։

425. Դեմետրիոսը Գեորգիոսի որդին էր նրա երկրորդ ամուսնությունից ծնված։ Սկիլիցեսը նրա (երկրորդ) կնոջ՝ Ալդեին ալան է համարում, բայց գտնում են, որ նա օսեթ էր (Анчабадзе, Из истории, стр. 179)։

426. Բոննի հրատարակությունը տալիս է 6542 (1034) թ., որ ճիշտ է։ Թուրնի քննական բնագիրը տալիս է 6547 (1039) թ., որ տպագրական սխալ պետք է համարել, քանզի հրատարակիչը աշխարհի այդ թվականի դիմաց տալիս է մ. թ. 1034 թ.։

427. «Պանթեոտներ» անունով զորամաս հիշատակված է բյուզանդական աղբյուրներում (տե՛ս Кулаковский, Византийский лагерь, стр. 70)։ Կեկավմենոսը հիշատակում է ոմն πανθεώτην Ζεπέ („Советы и рассказы", стр. 174)։ Աղբյուրներում հանդիպում է Πάνθεα անունով վայր և ենթադրվում է, որ հիշյալ զորամասը համալրված էր այդ վայրի բնակիչներից („Советы и рассказы", стр. 432)։

428. Հոգի մասին «տե՛ս Կոստանդին Ծիրանածին», էջ 219։ Սենատորներին տրվող ρόγα-ն Լաստիվերցին անվանում է «արքունատուր պարգև» (էջ 45), իսկ Ասողիկը՝

*«արքունատուր պատարագ» (էջ 101)։ Հոռգի վերաբերյալ վերջին կարևոր ուսումնասիրությունն է.* Lemerle, „Roga", p. 77—100։ *Սենատոր և սենատ հասկացությունները Սկիլիցեսի մոտ բավական ընդհանուր են, նրանց տակ նա հասկանում է աստիճանավորներին ու բարձր պաշտոնյաներին ընդհանրապես (տե՛ս* Guilland. Le Preposite, p. 349)։

*429. Ռոմանոսի սպանության մասին հիշատակում է և Լաստիվերցին. «Հրաման տայ (Ռոմանոսը) ոսկի լականաւ ջուր պատրաստել առ ի լոգանալ նմա։ Եւ իբրև եմուտ յոսկի ծովակն լցեալ ջերմ ջրով, սպասաւորքն բուռն հարեալ զգիսոյ գլխոյ նորա ծածկեցին ընդ ջրովն մինչև վճարեցաւ ի կենաց՝ թագուհւոյն կամակից լինելով առնելեացն» (էջ 45—46)։ Մի քիչ հետո պատմիչը ցույց է տալիս, որ Միքայելը ևս մասնակցել է կայսեր սպանության. «ի սպանողաց մի գսա ասեն լինել» (էջ 46)։ Մատթեոս Ուռհայեցին գտնում է, որ Ռոմանոսին թագուհին թունավորեց (էջ 64—65)։*

*430. Խոսքը Պերիբլեպտոսի սբ. Աստվածածնի վանքի մասին է։ Կոստանդնուպոլսի ժամանակակից Սամաթիա թաղամասի հայկական սբ. Գեորգ եկեղեցին հենց բյուզանդական Պերիբլեպտոս վանքն է (*Janin. La géographie ecclésiastique, p. 227—231)։ *Թուրքերեն անվանում են Սուլու Մանաստր։ Մինչև 1641 թ. այնտեղ էր գտնվում հայոց պատրիարքարանը, որանից հետո այն տեղափոխվեց Քում-Քափու, որտեղ և գտնվում է մինչև օրս։ Վանքը հայերին տրամադրվեց ըստ ոմանց՝ 1543 թ., սուլթան Սուլեյման Մեծի կողմից (1520—1566)։ Բանասեր Հ. Պերպերյանը բազմաթիվ աղբյուրների հիման վրա եկել է այն եզրակացության, որ Պերիբլեպտոսի վանքը հայոց պատրիարքության աթոռանիստն էր շուրջ 1461-ից և նրանց էր տրամադրվել սուլթան Մեհմեդ II-ի կողմից (տե՛ս Պերպերյան, Օսմանյան քանի մը վավերագիր, սյունակ 723—728։ Նաև նույնի՝* Peribleptos, p. 145—149)։

*431. Բառացի ենք թարգմանում։ Հունարեն* οἶκος*-տուն ունի շատ ավելի ընդարձակ նշանակություն։ Տե՛ս ծանոթ. 405։*

*432. Միքայելի դիվահարության մասին գիտե նաև Լաստիվերցին. «Հարաւ ի դիւէ», «մինչ ի վախճանն ոչ հեռացաւ ի նմանէ այսն որ ըկէր զնա» (էջ 47)։*

*433. Տե՛ս ծանոթ. 431։*

*434. Բնագրում՝* οὐχ ὄναρ ἀλλ' ὕπαρ։ *Համտ. «Ոդիսական», ԺԹ, 549։*

*435. Խոսքը Փոքրասիական Օլիմպոսի մասին է և ոչ Թեսալիայի։*

*436. Քննական բնագրում՝* σεβαστός, *մեր համոզմամբ ճիշտ է Բոննի հրատարակությունը՝* Ἀβασγός *(աբասգոս-աբխազ)։ Մի շարք ձեռագրեր տալիս են,* Ἀβασγός *ընթերցումը, Զոնարասն էլ, որ Սկիլիցեսին է օգտագործել, գրում է* Παγκράτιος ἄρχων Ἀβασγίας (Zon., IV, p. 139)։ *Սկիլիցեսի բնագրում ոչ մի տեղ (բացի նշվածից) σεβαστός բառը չի հանդիպում, և այս մեկն էլ պետք է գրչի սխալ համարել։*

*437. Սկիլիցեսը Եդեսիայի կառավարչի պաշտոնում Մանիակեսին փոխարինողին անվանում է Լևոն Լեպենդրինոս, այնինչ Մատթեոս Ուռհայեցին գտնում է, որ նրան փոխարինողը Ապուքապն էր, Դավիթ կուրապաղատի վրանապահը (էջ 64)։*

*438. Լաստիվերցին գիտե, որ Անտիոքի կառավարչի պաշտոնին Միքայելը նշանակել էր իր եղբոր, բայց չի տալիս անունը։ «Եւ զմինն,—գրում է նա,— անուանէ դեմեսլիկոս, և առաքէ ի մեծն Անտիոք զՏաճկաստանի և զհարաւային կողման զհոգսն յանձն առնելով նմա» (էջ 47)։ Սկիլիցեսը չի ասում, որ Անտիոքի զորավար Նիկետասը դոմեստիկոս էր, նա դոմեստիկոս է անվանում նրա եղբայր Կոստանդինին և հնարավոր է, որ Լաստիվերցին նկատի ունի ոչ թե Նիկետասին, այլ Կոստանդինին, որը փոխարինեց Նիկետասին՝ Անտիոքի կառավարչի պաշտոնում։*

*439. Մի փոքր առաջ Գեորգիոս Պրովատասին հիշատակել էր միայն մականվամբ։*

440. Բնագրում՝ Χαγε։ Հունարեն ոչինչ չի նշանակում, գուցե «Հայ՞ է»։

441. Եթե անունը Վարգաս է, ապա հայ է։ Մականունը՝ Πίτζης ոչինչ չի նշանակում հունարեն։ Գուցե հայերեն «բէճ՞»-ն է (ապօրինածին)։

442. Բնագրում Νεσισθλάβος καὶ Ἱεροσθλάβος, այսինքն՝ Մստիսլավ և Յարոսլավ։ Զենիսլավի տակ ենթադրվում է Իզյասլավը (տե՛ս *Каждан*, Эксцерпты Скилицы, стр. 544։ Տե՛ս և *Shepard*, Byzantinorussica, p. 219 sqq.)։

443. Սկիլիցեսը այս վարշամակը (ինչպես և Քրիստոսի նամակը Աբգարին) մի փոքր առաջ էլ հիշեց, ի թիվս այն սրբությունների, որոնք տարվեցին Դալասսենոսի մոտ։ Խոսքը ըստ ավանդության Քրիստոսի կողմից Եդեսիայի Աբգար թագավորին ուղարկված վարշամակի մասին է, որի վրա կար Տիրոջ անձեռագործ պատկերը։ 944 թ. նվիրվեց Ռոմանոս Լակապենոս կայսեր (մանրամասն տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 177—194։ Նաև *Weitzman*, The Mandylion.

444. Վրաց թագավոր Բագարատը։ «էքսուսիաստես»-ը վրաց թագավորի բյուզանդական պաշտոնական անվանումն էր։ Տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 152։

445. Խոսքը Տայքի կուրապաղատ Դավթի հողերից XI դ. 20-ական թթ. կազմակերպված Իբերիա բանակաթեմի մասին է։

446. Միքայել Իասիտեսը, հայկական աղբյուրների Ասիտը։

447. Բոննի հրատարակության մեջ՝ «արևելից բոլոր տագմաններով»։

448. Այս մարտերում Սիկիլիայի սարակինոսների՝ դեմ բյուզանդական բանակում ծառայում էին ի միջի այլոց և «պավլիկյաններ» (տե՛ս *Annales Barenses*, In Monumenta Germaniae Historica, Scriptores. t. V. p. 55)։

449. Այսինքն՝ վրացադավան հայ։ Ըստ Ուռհայեցու, Գեորգիոս Մանիակեսին Եդեսիայի կառավարչի պաշտոնում փոխարինեց Դավիթ կուրապաղատի վրանապահ Ապուքապը (էջ 64), բայց ըստ Սկիլիցեսի նա Լևոն Լեպենդրինոսն էր, որն այդ պաշտոնում էր դեռևս 1037 թ.։ Սկիլիցեսը 1038 թ. որպես Եդեսիայի կառավարիչ հիշում է վերոհիշյալ Վարազվաչեին։ Լորանը հարց է տալիս. Ապուքապն ու Վարաղվաչեն նույն մարդը չե՞ն (տե՛ս *Laurent*, Des Grecs aux Croisés, p. 82–83)։ Վերջերս Վ. Շանդրովսկայան էրմիտաժի բյուզանդական արճճե կնիքների հավաքածուում հայտնաբերեց այս Վարաղվաչեի մի կնիքը, որով պարզվում է, որ Վարաղվաչեն անուն չէ, այլ ազգանուն, որ հիշյալ անձնավորության անունը Թոռնիկ է։ Կնիքի վրա գրված է. Κύριε βοήθει τῷ σῷ δούλῳ Τορνικίῳ πρωτοσπαθαρίῳ καὶ στρατηγῷ τῷ Βαραζβατζε (Տե՛ր օգնյա՛ քո ծառային պրոտոսպաթար և զորավար Թոռնիկ Վարազվաչեին)։ Տե՛ս *Шандровская*, Одно уточнение, стр. 46.

450. Բոննի հրատարակության մեջ՝ երկու հազար։

451. Աերիկոնը (օդի հարկ) Բյուզանդիայում գանձում էին Հուստինիանոս I-ի ժամանակներից։ Սկզբնական շրջանում վճարում էր համայնքի բնակչությունն իր տարածքի վրա կատարված հանցագործությունների համար։ XI դ. վերածվել էր բնակչությունից կանոնավոր կերպով դանձվող հարկի։ Նրա մասին մանրամասն տե՛ս *Dölger*, Das ἀερικόν։ Հովհաննես Օրֆանոտրոֆոսի հարկային քաղաքականության մասին. *Литаврин*, Налоговая политика, стр. 85։

452. Պեդիադիտեսի մասին հետաքրքիր մի պատմվածք ունի Կեկավմենոսը։ «Սիկիլիայի կատապան Վասիլ Պեդիադիտեսը,— գրում է նա,— մի քանի օր ազատ ժամանակ ձեռք գցելով, նարդի (τάβλαν) էր խաղում, մի բան, որ չվրիպեց կայսեր (Միքայել IV Պափլագոնացու) ուշադրությունից։ Վերջինս նրան գրեց, թե «ինչպես տեղեկացավ իմ թագավորությունը, նարդիում հաջողությունների ես հասել» («Советы и

рассказы" стр. 158)։

*453. Կատակալոն Կեկավմենոսը, ծագումով կոլոնիացի հայ (Կաժդանը գրում է, որ նրա հայկական ծագումն անվիճելի է), որ փոքր անց գարձավ զորավար։ Նա Հայաստանի և Իբերիայի միացյալ կատապանության ղեկավարն էր։ Միքայել Իասիտեսից հետո շուրջ 1050 թ., գարձավ Արևելից ստրատելատ, 1056-ին՝ Անտիոքի դուքս, 1057-ին ստացավ կուրապաղատի տիտղոսը։ Հայկական աղբյուրներում կոչվում է Կամենաս (*Արիստ. Լաստ.*, էջ 63, *Մատթ. Ուռհ.*, էջ 104, 107)։ 1169 թվակիր հայկական Ավետարանի մի հիշատակարանի մեջ հիշվում է այս Կամենասի տոհմածառը։ Այնտեղ ասված է, որ Սասունի իշխան Վիգենի գուստր Կատային կնության տվեցին «Շահինշահի որդւոյ Գրիգորի, թոռին Կատակալոսի, որգոյ* Կամենի մեծի. *ի Դեգեաց գաւառ, ի մեծ ամրոցն որ կոչի Սազուկ» (*Ալիշան, *Հայապատում, էջ 394)։ Մի ժամանակ Կատակալոն Կեկավմենոսին էր վերագրվում «Ստրատեգիկոն» (« Պատմություններ և խորհուրդներ») նշանավոր երկի հեղինակությունը, որ այժմ մերժված է գիտության մեջ։ Մանրամասն տե՛ս* „Советы и рассказы", стр. 36—39։

*454. Զատկից Պենտեկոստե (Հոգեգալուստ) ընկած ժամանակամիջոցի մեջտեղում նշվող տոնը, Զատկից 25 օր հետո։*

*455. Միքայել կայսեր՝ Թեսաղոնիկե գնալու մասին գիտե և Լաստիվերցին, որը ձեռքում, հավանաբար, եղել է կայսեր հակառակորդ դիրքերում կանգնած հեղինակի աղբյուր, քանզի Միքայելի Թեսաղոնիկե գնալը նա կապում է ոչ թե նրա՝ սբ. Դեմետրիոսից բուժում ստանալու հետ. «բայց ասեն,—գրում է նա,—և այլ պատճառս, եթէ վասն զի չէր անգ նմա թագաւորութիւնն, վասն որոյ երթեալ ի քաղաքն թեսաղոնիկեցւոց առ կին մի կախարդ... տուեալ գինքն ի ծառայութիւն հօրն ամենայն չարեաց», «զի յաճախ թագաւորն ի Թեսաղոնիկն կայր, զոր կարծէին առ կախարդին լինել» (էջ 47)։*

*456. Ստեփան-Վոյիսլավը (Կեկավմենոսի «սերբ Տրիբունիոսը»* «Советы и рассказы», стр. 168) *Դուկլայի (Դիոկլիա) իշխանը (1040—1052)։ Բուլղարիայի նվաճումից հետո հարևան սերբական շրջանները կայսրությունից վասալական կախման մեջ ընկան։ Նրանց իշխաններից Ստեփան-Վոյիսլավը 1034 թ. ապստամբություն բարձրացրեց, բայց պարտվեց։ Ստեփանը գերի ընկավ և տարվեց Կոստանդնուպոլիս։ Նրա տիրույթները տրվեցին Թեոփիլոս Էրոտիկոսին, բյուզանդական կառավարչին։ Ստեփանը մայրաքաղաքից փախավ 1040 թ., եկավ իր հայրենիքը և քշեց բյուզանդական կառավարչին։ Նրա մասին հանգամանորեն խոսում է Կեկավմենոսը (նույն տեղում, էջ 168, 406—407)։*

*457. Ցիրեչեկը այս Թեոփիլոս Էրոտիկոսին համարում է Դյուրախիոնի դուքս, իսկ Շլյումբերժեն՝ Դալմատիայի զորավար, մինչդեռ Վ. Լորանը նրան Սերբիայի կառավարիչ է համարում (տե՛ս Laurent,* Le thème byzantin de Serbie, p. 191)։

*458. Բնագրում՝* χριτής (διχαστης)։ *Բյուզանդիայում կար մի քանի կարգի դատավոր՝ բանակաթեմային, զինվորական, մայրաքաղաքի և այլն։ Սկիլիցեսի մոտ խոսքը, հավանաբար, բանակաթեմային դատավորի մասին է, որպիսիք կային յուրաքանչյուր մեծ ու փոքր բանակաթեմերում։ Նա բանակաթեմի զորավարի հետ բարձրագույն նահանգային վարչության ներկայացուցիչն էր, սկզբում զորավարին ենթակա, X դարի վերջից՝ նրանից անկախ։ «Բասիլիկաների» (Մակեդոնական հարստության դատաստանագրքի) մի մեկնիչ գրել է, նկատի ունենալով XI դարը, թե «հնում յուրաքանչյուր բանակաթեմ երկու մարդ էր ուղարկվում, մեկը քաղաքացիական, այսինքն՝ մասնավոր հարցերը քննելու* (χρίνειν), *որը կրիտես էր կոչվում, մյուսը՝ դուքսը, որն իր ենթակա-*

յության ուներ զինվորներին» (տե՛ս *Ahrweiler*, Recherches, p. 69)։ Այս շրջանում բանակաթեմային դատավորի իրավասությունների մեջ էին գտնվում, նախ և առաջ, ինչպես անունն է վկայում, շրջանի դատավարությունը, նա վարում էր գույքային, մասնավոր ու քրեական գործերը։ Նա իր դատավարական գործունեության համար պարտավոր էր տեղյակ պահել Կոստանդնուպոլսի կենտրոնական արդարադատական մարմինը, որը գլխավորում էր Մոնոմախի ժամանակներից սկիզբ առնող բարձրաստիճան պաշտոնյան՝ ἐπὶ τῶν κρίσεων անվան տակ։ Կրիտես-դատավորի ենթակայության մեջ էին գտնվում պրոտոնոտարը, χρυσοτελής-ը, պրակտորը, դիեկետեսը, լոգարիաստեսը՝ հարկահավաքման պաշտոնյաները, ինչպես նաև քարտուղարներ ու տաքսեոտներ (ոստիկանության գործակալներ)։ Դատավորն իր պարտականությունները կատարելիս գործակցում էր տվյալ նահանգի զինվորական պաշտոնեության հետ, բայց նրանից անկախ էր։ Բանակաթեմային դատավորի մասին տե՛ս *Скабаланович*, Византийское государство, стр. 187—190; *Литаврин*, Болгария и Византия, стр. 303—304; *Ahrweiler*, Recherches, p. 67—78։

XI դ. հայկական աղբյուրները հիշատակում են Բյուզանդիայի կողմից նվաճված Հայաստանում գործող դատավորների մասին։ «Տիրէ (Վասիլ II-ը 1000—1001 թթ.) բազում դաւառաց և բերդից և քաղաքաց։ Եւ կացուցանէ ի վերայ նոցա գործակալս և դատաւորս և վերակացուս» (Արիստ. Լաստ., էջ 24)։ Թոնդրակեցիների շարժման առնչությամբ նույն պատմիչը հիշում է կայսեր կողմից ուղարկված մի դատավորի մասին.«առաքի ի թագաւորէն դատաւոր իրաւանց աշխարհին, որում անուն էր Եղիա» (էջ 130)։ Սրա մոտ է գնում իշխան Վրվեռ բողոքելու, որ եպիսկոպոս Սամուելը 1011 թ. և այլ եպիսկոպոսներ «զիմ տունն յաւարի տարան, և զգիւղն աւերեալ հրդեհ արարին» (նույն տեղում)։

459. Մինչև վերջերս ապստամբ Պետրոսի մականվան ընդունված ձևը Դելյան էր։ Այժմ գտնում են, որ Օդելյան է, որ բյուզանդական աղբյուրների ο Δελεάνος-ի ο-ն հոդ չէ, այլ արմատական։ Օդելյան-Դելյանը նախկին արևմտա-բուլղարական թագավորության բնակչության 1040—1041 թթ. բարձրացրած ապստամբության ղեկավարն էր։ Այդ ապստամբության, բացի բուլղարներից, մասնակցել են նաև սլավոններ, վալախներ, ալբանացիներ և Բյուզանդական կայսրության արևմտյան նահանգների հունական բնակչության մի մասը։ Ապստամբությունը տարածվեց Դյուրախիոնից Սոֆիա և Դանուբ գետից մինչև Ատտիկա։ Առիթը սլետական հարկերի բարձրացումն էր և նրանց բնամըթերայինից դրամականի վերածվելը։ Ուսումնասիրողների մի մասը գտնում է, որ դա ապացույց է Բուլղարիայում դրամական հարաբերությունների թույլ զարգացման, ու րիշներ գտնում են, որ դրամահարկը պարզապես հարկերի չափի բարձրացում էր նշանակում։ (Երբ 1043 թ. ապստամբ Գեորգիոս Մանիակեսը անցավ Բուլղարիա, բնակչությանն իր կողմը գրավելու համար կարգադրեց թեթևացնել հարկերի բեռը)։ Ապըստամբները Դելյանին Բուլղարիայի թագավոր հռչակեցին, որը, հակառակ իր հասարակ ծագման, իրեն ցար Սամուիլի թոռ էր համարում և Գաբրիել-Ռադոմիրի (1014—1015) որդին։ Դելյանի ապստամբության մասին ավելի մանրամասն տե՛ս *Благоев*, Делян; *Литаврин*, Болгария, стр. 376—396:

Պետրոս Դելյանի ապստամբության մասին գիտե և Մատթեոս Ուռհայեցին, որի համակրանքը ապստամբների կողմն է. «յաղթեցին զօրքն Բուլղարաց զօրացն Հոռոմոց և փախստական արարին զնոսա առաջի իւրեանց և սրով յարձակեցան զհետ նոցա... և թագաւորն Միխայլ փախստական անկանէր ի Կոստանդնուպօլիս։ Եւ զօրացան Բուլղարք ի վերայ Յունաց և առին զամենայն աշխարհն իւրեանց և զերծան ի ծառայութենէ Հո-

ռոմոց. և եղև խաղաղութիւն մեծ ի վերայ ազգին Բուլղարաց» (էջ 78—79)։ Բուլղարները իրենց պետականությունը վերականգնեցին միայն 1187 թ. Ասենովների հարստության հաստատումով։ Ուռհայեցին, հավանաբար, բուլղարների սկզբնական հաջողությունը ընդհանրացնում է։ Բյուզանդական կայսրը, ինչպես մի քիչ հետո ցույց է տալիս Սկիլիցեսը, իսկապես փախուստի դիմեց դեպի Բյուզանդիոն, և բուլղարները սկզբում իսկապես թռթափեցին բյուզանդական լուծը։

460. Թուրքիայի կրալը հունգարացիների թագավորն է։

461. Փոխզորավար։

462. Կավխանը անուն չէ, այլ աստիճան, նշանակում է սպարապետ։ Ավելի մանրամասն տե՛ս ծանոթ. 346։

463. Հելլադայի տակ ենթադրվում է ոչ ողջ Հունաստանը, այլ կենտրոնական Հունաստանի արևելյան կեսը։

464. Ջչփոթել Փոքր Ասիայի Նիկոպոլսի հետ։ Այստեղ նկատի ունի Էպիրոսի Նիկոպոլիսը։

465. Հարկահավաք։

466. «Ալուսիան» անվան շուրջ բազում վեճեր են եղել։ Բուլղար պատմաբան Իվանովը այն հայկական է համարում *Иванов*, (Произход на цар Самуиловия род, стр. 59)։ Ն. Ադոնցն այդ միտքն անհիմն համարեց (*Adontz*, Samuel, p. 381, n. 3)։ Արտահայտվել են կարծիքներ, որ Ալուսիան անունը լատինական կամ հրեական ծագում ունի։ Վերջին ենթադրության համաձայն ծագում է եբրայերեն alluf-ից, որ «առաջնորդ», «գլուխ», «տեր» է նշանակում (*Gičev*, Essay, p. 165—178)։ Կոմսաձագերի ընտանիքի մեջ այս տիտղոսը տրվում էր երկրորդ որդուն։ Մինչև վերջերս տիրում էր այն կարծիքը, որ հիշյալ Ալուսիանը Սամուիլի եղբայր Ահարոնի թոռն էր, Ահարոնի որդի Հովհաննես-Վլադիսլավի (բուլղարների թագավորի—1015—1016 թթ.) որդին։ Բուլղար պատմաբան Ժիչևը ցույց է տալիս, որ նա Ահարոնի որդին էր, Հովհաննես-Վլադիսլավի եղբայրը։ Բուլղարիայի նվաճումից հետո 1018 թ. Վասիլ II-ը բուլղարական թագավորական ընտանիքի անդամներին բնակեցրեց Փոքր Ասիայում։ Ալուսիանը դարձավ Կարինի (Թեոդոսուպոլիս) բանակաթեմի զորավար։ Ավելի մանրամասն տե՛ս «Советы и рассказы», стр. 391—392։ Նաև՝ *Литаврин*, Болгария и Византия, стр 389—390։

467. Բնագրում՝ στολὴν λαβὼν 'Αρμενίων։ Սա շատ կարևոր վկայություն է, որ ցույց է տալիս, որ բյուզանդական բանակում ծառայող հայկական զորամասերը կրում էին իրենց ազգային համազգեստը, որ, անկասկած, տարբերվում էր բուն բյուզանդական (հունական) զինվորների համազգեստից։ Այս դեպքի մասին խոսում է և Պսելլոսը (Psellos, Chronographie, I, p. 83), չնշելով, սակայն, որ Ալուսիանը հայ զինվորի զգեստ հագավ, այլ պարզապես վարձկան (κατὰ τὸν μισθοφόρων τρόπον) զինվորի։ Համադրելով երկու աղբյուրների տվյալները, կարելի է հանգել այն եզրակացության, որ բյուզանդական ծառայության մեջ գտնվող հայկական հիշյալ զորամասը վարձկաններից էր բաղկացած։

Ալուսիանը, ինչպես ցույց է տալիս նրա հետագա գործունեությունը Բուլղարիայում, պարզապես գնացել էր բյուզանդական իշխանությունների առաջադրանքը կատարելու, բուլղարական ապստամբությունը չեզոքացնելու։ Կեկավմենոս-հեղինակը կարծես սրան նկատի ունի, երբ խորհուրդ է տալիս դասալիքների հանդեպ զգույշ լինել, քանզի «նրանք նենգությամբ են գալիս քո մոտ, նպատակ ունենալով քեզ քո թշնամու ձեռքը հանձնել, իսկ վերջում իրենք էլ փախուստի են դիմում» («Советы и рассказы», стр. 138)։

468. Բնագրում՝ τὸ τάγμα τῶν μεγαθύμων։ Բացի հայտնի տագմաներից (տե՛ս ծանոթ. 26 և 528) բյուզանդական բանակում X—XI դդ. ստեղծվել էին և այլ տագմաներ

(գնդեր)։ Դրանցից էին Հովհաննես Ձմշկիկի հիմնադրած «Անմահների» տագման, որ գոյություն ունեցավ մինչև XI դ. վերջը, μεγάθυμοι-ների տագման, որ կարճ կյանք ունեցավ, ինչպես և ὁμοεθνεῖς («ցեղակիցների») տագման, որոնց մասին հիշատակություն ունի Սկիլիցեսը (էջ 173)։ Բնագրից ելնելով պարզվում է, որ այդ գնդում օտարերկրացիներ էին ծառայում (տե՛ս Ahrweiler, Recherches, p. 27—28)։

469. Քննական բնագրում՝ Τζιντζιλούκιος, մի շարք ձեռագրերում՝ Τζιντζουλούκιος նաև Τζουντζουλούκιος։ Հայկական անուն է, որ Բյուզանդիայում վերածվեց ազգանվան։ Ընտանիքի մասին տե՛ս Каждан, Армяне, стр. 107—108։

470. Միքայել Պափլագոնացին, ինչպես երևում է Սկիլիցեսից, անձնապես չի մասնակցել արևմուտքում տեղի ունեցած պատերազմներին։ Այնտեղ հիմնականում մասնակցել են զորավարներ Գեորգիոս Մանիակեսը, Միքայել Դոկիանոսը, Բոյանը, ապա դարձյալ Մանիակեսը։ Սկիլիցեսը ցույց է տալիս նաև, որ կռիվներին մասնակցել են Օպսիկիոն և Թրակեսիոն բանակաթեմերի, Պիսիդիայի և Լիկաոնիայի զորքերը։ Մատթեոս Ուռհայեցին գտնում է, որ Միքայելը մասնակցել է (էջ 88—89)։ Կարևորը, հարկավ, նրա մասնակցելու կամ չմասնակցելու հարցը չէ, այլ այն, որ արևմուտքում մղված պատերազմներում գործոն մասնակցություն են ունեցել հայերը։ Ուռհայեցու տվյալներով 1041 թ. «զօրաժողով արար թագաւորն Հոոոմոց Միխայլն զամենայն աշխարհն Յունաց և այլ ի Հայոց զօրացն, որք ընդ Հոոոմոց իշխանութեամբն էին՝ Սեբաստիա և Տարօն և ամենայն Վասպուրական. և անթիւ բազմութեամբ հասանէր թագաւորն Միխայլ յարևմուտք և դերի առեալ զամենայն աշխարհն Գթաց (դոթերի—Հ. Բ.) և զապրստամբսն ածէր ի հնազանդութիւն և արար իւր հնազանդ զամենայն աշխարհն և դարձաւ ի Կոստանդնուպօլիս» (էջ 88—89)։ Սա պարզ ցույց է տալիս, որ դեռևս 966 թ. դրավված Տարոնը, 1021 թ. նվաճված Վասպուրականը, ապա և Սեբաստիայի հայությունը Բյուզանդական կայսրությանը զորք էին մատակարարում, նրանք զինապարտ էին։

471. Նորբելիսսիմոսը կեսարի հին մակդիրն է, որ Կոստանդին Մեծի ժամանակ վերածվեց պատվաստիճանի։ Հազվագյուտ էր տրվում և վերաբերում էր կայսերական ընտանիքի անդամներին։ XI դ. հանդես է գալիս պրոտոնորբելիսսիմոս պատվաստիճանը, որը XII դ. կեսերին կրում էր Սասունի իշխան Վիգենը։

472. Ս. Առաքելոց նշանավոր եկեղեցին Կոստանդնուպոլսում, որն սկսվել է կառուցվել IV դարում՝ Կոստանդին Մեծի կողմից և ավարտվել՝ Կոստանդի։ Այնտեղ էին ամփոփված Անդրեաս, Ղուկաս և Տիմոթեոս առաքյալների մասունքները։ Հուստինիանոս I-ը քանդեց եկեղեցին և ի նորո կառուցեց։ Հետագայում այդ եկեղեցում շինարարական աշխատանքներ կատարեցին Հուստինիանոս II-ը, Վասիլ I-ը և Անդրոնիկոս II Պալեոլոգոսը։ Կոստանդնուպոլսի գրավումից հետո Մեհմեդ II-ը եկեղեցին թողեց նոր պատրիարքի՝ Գեննադիոս Սխոլարիոսի տրամադրության տակ, որը և այստեղ հաստատեց իր աթոռը, բայց կարճ ժամանակով։ Մի քանի տարի անց այն տեղափոխվեց Պամմակարիստոսի եկեղեցի։ Մեհմեդ II-ը 1461 թ. սբ. Առաքելոց եկեղեցին քանդեց և նրա տեղում իր անունը կրող մզկիթը կառուցեց։ Մինչև XI դարը բյուզանդական կայսրերից շատերը սբ. Առաքելոց եկեղեցում էին թաղվում (տե՛ս Janin, La géographie ecclesiastique, pp. 46—55)։

473. Խոսքը Ալեքսիոսի վանքի մասին է, որը հիմնադրել է Ալեքսիոս Ստուդիտես պատրիարքը։ Կոստանդին Մոնոմախի կողմից այդ վանքում արգելափակված պատրիարքը վախճանվեց 1043 թ. փետրվարի 20-ին։

474. Բնագրում՝ ἀναφορά։ Բառը հանդիպում է նաև հայկական աղբյուրներում՝ սկսած VII դարից (տե՛ս Ա. Աբրահամյան, Անանիա Շիրակացու մատենագրությունը,

էջ 398)։ Ուռհայեցու «Ժամանակագրության» մեջ աղավաղված ձևով՝ «յանափորտէն» (բացառական հոլով)։ Դյուլորիեն սխալմամբ այդ բառը համարել է հատուկ անուն՝ Անափորտեն։ Ադոնցը սրամիտ կերպով ուղղել է «յանափոռաէն» (տե՛ս Adontz, La lettre de Tzimiscès, pp. 143—144)։

475. Ուռհայեցին գրում է, որ Միքայել Պափլագոնացուց հետո թագավորեց նրա «քուեր որդին... որ Կեսարոսն էր, և զամիսս չորս կալեալ զթագաւորութիւնն»։ Նա «զԿիւռա Զոյի զդուստրն Կոստանդեայ կայսերն իբրև գրոգ խուզել համարձակեցաւ և կապանօք աքսորեաց զնա ի կղզիոջ» (էջ 89)։

476. «Կալաֆատը» արհեստ է։ Այդպես էին կոչվում նավերի վերանորոգողները, նավի փայտերի միջև եղած անցքերը խցանողները։

477. Կայսեր ննջասենյակին կից սրահ, որտեղ, որպես կանոն, կանգնած էր կայսեր սպասախումբը։

478. Ցուկանիստերիոնը պալատի դիմաց գտնվող ձիարշավարան էր։

479. Զատկին հաջորդող կիրակին կոչվում է անտիպասքա։ Այդ կիրակիից հետո եկող շաբաթի երեքշաբթի օրը։

480. Սեկրետներ էին կոչվում դրասենյակները, բյուրոները։

481. Այս խռովությունն ուներ խոր սոցիալական բովանդակություն։ Դրա ապացույցը ապստամբների կողմից հարկացուցակների ոչնչացումն է։ Ատտալիատեսի ասելով, խռովարարները բանտերից ազատ արձակեցին բանտարկյալներին, հարձակում գործեցին մեծահարուստների ապարանքների վրա և թալանեցին նրանց հարստությունը, որ «դիզվել էր բազում ապօրինություններից և չքավորների կեղեքումներից» (Attal. p. 15)։ Ապստամբությունը բռնկվեց Կոստանդնուպոլսում 1042 թ. ապրիլի 19-ին և մայրաքաղաքի ժողովրդական մասսաների մասնակցությունը պատճառաբանվում է հարկային ծանր բեռով, պաշտոնեության կամայականություններով, վաճառականների ու վաշխառուների ճնշումներով։ Զոեի աքսորվելը ժողովրդական մասսաների հրապարակ գալու սոսկ առիթ հանդիսացավ, որը վարպետորեն օգտագործեց կայսեր հակադիր ավագանին (տե՛ս *Литаврин*, Восстание в Константинополе, стр. 33—46)։

482. Սուրբ խորանը։

483. Ճիշտը՝ Ատրիկլին (a triclinis)։ Նրանց պարտականությունն էր կայսերական ընդունելությունների կարգ ու կանոնին հետևելը։

484. Լաստիվերցին հիշատակում է Կոստանդին Մոնոմախի հոր անունը՝ Թեոդոս (Պսելլոսը Թեոգորոս է անվանում), ինչպես և նրա պաշտոնը։ Նա «ի պալատին զգայիոսութեան ունէր զպատիւ, յորմէ ամենայն դատաւորք աշխարհին առաքին» (էջ 51—52)։ Տարածված (և ընդունված) է Պրուդոմի կարծիքը, որ «գայիոսություն» իբրև թե առնչություն ունի հունարեն δικαιοσύνη բառի հետ, որը նա թարգմանում է «արդարադատություն» (տե՛ս „Повествование", стр. 154)։ Բայց δικαιοσύνη նշանակում է «արդարություն» և ոչ «արդարադատություն», իսկ Բյուզանդիայում չկար ո՛չ արդարության և ո՛չ էլ արդարադատության պաշտոն։ Կոստանդին Մոնոմախի հայրը հավանաբար ἐπὶ τῶν κρίσεων էր, որ իսկապես ժամանակակից տերմինով ասած արդարադատության նախարարն էր։ Հենց այս ἐπὶ τῶν κρίσεων-ին էին ենթակա բանակաթեմերի բոլոր դատավորները (պաշտոնի վերաբերյալ տե՛ս *Ahrweiler*, Recherches, p. 70)։ Լաստիվերցին տալիս է և նրա ծագման մանրամասնությունները։ Խոսելով Միքայել Պափլագոնացու մասին, նա գրում է (օգտագործելով Դանիել մարգարեի մի դարձվածքը), թե հոռոմոց թագավորությունը նման է «երկաթով ու խեցիով խառը սրունքի ու ոտքի» և բացատրում. «Որ ի հարց և ի հաւուց ունի զիշխանութիւնն՝ այն երկաթ է. իսկ եկամուտն՝ որ չէ ի թագաւորական

տոհմէ՝ այն խեցին է» (էջ 46)։ Միքայել Պափլագոնացին «ոչ ի թագաւորական տոհմէ, և ոչ որդի թագաւորի, և ոչ իշխանութեամբ յերևելի սպայից» էր, հետևաբար նա «խեցի» էր։ Երբ արդեն խոսք է լինում Կոստանդին Մոնոմախի մասին, Լաստիվերցին (էջ 51), օգտագործելով վերոհիշյալ ասացվածքը, գրում է, թե «եւ սա ըստ մարգարէին տեսողութեան՝ ի խեցի մասնէ», այսինքն թագավորական տոհմից չէր ծագում։ Կ. Յուզբաշյանը, դժբախտաբար, չի նկատել Լաստիվերցու այս երկու նախադասությունների կապը և պատմիչի վերջին նախադասությունը թարգմանել. „Согласно видению пророка, Константин был сотворен из глины" (!). „Повествование", стр. 78։ Կարծեմ Դանիել մարգարեն Կոստանդին Մոնոմախի վերաբերյալ է տեսիլք տեսել։

485. Խոսքը 876/877 թթ. Վասիլ I-ի հիմնադրած նշանավոր Նեա (Նոր) եկեղեցու մասին է, նվիրված Քրիստոսին, Աստվածածնին, Միքայել և Գաբրիել հրեշտակապետերին, սուրբ Եղիային և սուրբ Նիկողայոսին։ Կոչվում էր Նեա, տարբերվելու համար նույն պալատում գտնվող և Քրիստոսին նվիրված մյուս եկեղեցուց (տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 104 և հտ., 287։ Նաև *Janin*, La géographie ecclésiastique, p. 374—378)։

486. Ինչպես տեսնում ենք, Կոստանդին Մոնոմախի և Զոեի ամուսնությունը առանց որևէ արգելքի կատարվեց, այնինչ Լաստիվերցին գրում է, որ Զոեն «ելանէ արտաքոյ կանոնական կարգաց, և կոչէ զայրս զայս յառաջ և առնէ այր իւր. և նստուցանէ զնա յաթոռ թագաւորութեանն» (էջ 52)։ Լաստիվերցին, հարկավ, ճիշտ է, որ կանոնական խախտում է տեսնում, քանզի օրենքը չէր ընդունում երրորդ ամուսնություն, իսկ սա Զոեի չորրորդ ամուսնությունն էր։

487. Բյուզանդիայում սովորություն կար նոր կայսեր իշխանության գլուխ անցնելու առթիվ քաղաքական ու ռազմական աստիճաններ շնորհել։

488. Անտիկ շրջանում տրիվալլոս էին կոչվում Դանուբի ափին ապրող մի ժողովուրդ։ Պատմիչը հին ցեղանունն է օգտագործում՝ տեղաբնիկներին անվանելու։

489. Լոգոթետների մասին տե՛ս «Կոստանդին Ծիրանածին», էջ 291—292։ Նրանք ընդհանուր առմամբ հարկային պաշտոնյաներ էին, որոնց հիմնական պարտականությունն էր հարկերի հավաքումը, տարբեր վարչությունների հաշիվների վերահսկողությունը։ Լոգոթետներ կային ոչ միայն նահանգներում, այլև բանակում։ Եկեղեցին իր հերթին նույնպես ուներ լոգոթետներ (նրանց մասին տե՛ս *Miller*, The Logothete of the Drome, p. 438—470. *Guilland*, Les Logothètes, p. 5—115)։

490. Կայսրությունը X—XI դդ. նվաճած նահանգները վարչականորեն տրոհեց մի շարք փոքր միավորների՝ զորավարին ենթակա։ Սրանք կայսրության նահանգների օրինակով կոչվեցին բանակաթեմեր և ենթարկվեցին դուքսին, այդ թվում և նոր բանակաթեմերի զորավարները։ Այստեղ Դյուրախիոնի դուքսն (արխոնտ) իր ենթակայության ուներ շրջակա «բանակաթեմերի» գործերը (տե՛ս *Ahrweiler*, Recherches, p. 46)։

491. Տե՛ս վերը, էջ 136։

492. Բնագրում՝ σιτηρεσιῶν. կերակուր, որ ինչպես պարզ երևում է վերոբերյալ փաստից, տագմաների զինվորներին վճարվում էր ամիսը մեկ անգամ (հմմտ. նաև՝ «Советы и рассказы», стр. 276։ Տե՛ս և ստորև, ծանոթ. 625)։ Ի տարբերություն տագմաների զինվորներից, բանակաթեմերի դինվորները և նրանց ընտանիքները, որոնք հիմնականում ազատված էին հարկերից (նրանք միայն հողային հարկ էին վճարում և, նայած պայմաններին, աերիկոն), ստանում էին նվերներ (δωρεαὶ, εὐεργεσίαι, φιλοφρονήσεις) և ռոճիկ (ῥόγα)։ Աղբյուրներում, դժբախտաբար, տվյալներ չկան բանակաթեմային զինվորների ստացած ռոճիկի չափի և վճարման պարբերացման մասին։

Կոստանդին Ծիրանածինի մի տվյալի համաձայն ռոճիկը վճարվում էր չորս տարին մեկ անգամ, բայց նույն հեղինակի ասելով, դա հնում էր կատարվում և հնարավոր է, որ այդ ժամանակ ռոճիկը տարին մեկ անգամ էր վճարվում (տե՛ս *Ahrweiler*, Recherches, p. 7—8)։

493. Չշփոթել Ֆրանսիայի հարավում գտնվող համանուն քաղաքի հետ։ Այստեղ խոսքը Ապուլիայի Աուֆիդուս (այժմ՝ Օֆանտո) գետի աջ ափին գտնվող քաղաքի մասին է։

494. Դաշնակից զորքերի։

495. Ատտալիատեսի ասելով, Մանիակեսի զորքերը բաղկացած էին հռոմայեցիներից (իմա՝ հույներից), և ալբանացիներից (*Attal.*, p. 18)։ Որ հռոմայեցիներ ասելով նա հույներ է հասկանում և ոչ իտալացիներ, վկայում է այն, որ այդ զինվորներն ուզում էին Իտալիայից իրենց հայրենիքը վերադառնալ։

496. Այսինքն՝ Բյուզանդիոնի, Կոստանդնուպոլսի բնակիչ։

497. Բնագրում σεβαστοφόρος։ Տիտղոսը հիմնադրվել է 963—975 թթ. միջև։ Այդ աստիճանը բյուզանդական արքունիքի հիերարխիայում գտնվում էր մագիստրոսի և պրոեդրոսի միջև։ Տրվում էր գլխավորապես ներքինիներին և սոսկ պատվաստիճան էր։ Շատ քիչ թվով սեբաստոֆորոսներ են հայտնի։ Առաջինը Ստեփանոս Լակապենոսի որդի Ռոմանոս Լակապենոսն էր, Ռոմանոս I-ի թոռը։ Մյուսը՝ այս Ստեփանոսն է (տիտղոսի մասին տե՛ս. *Guilland*, Le sebastophore, p. 199—207)։

498. Մանիակեսի ապստամբության մասին խոսում են Արիստակես Լաստիվերցին և Մատթեոս Ուռհայեցին։ Վերջինս հաղորդում է մի կարևոր մանրամասնություն։ Հիշելով Մոնոմախի կողմից ապստամբի դեմ ուղարկված զորքերի մասին, նա գրում է. «Յայնժամ թագաւորն Մոնոմախն արար ժողով զամենայն ազգն Յունաց և զայլս ի զօրաց Հայոց աշխարհին և յարուցեալ գնաց յաշխարհն արևմտից ընդդէմ Մանիակայ՝ որ ի ձեռն քաջութեան իւրոյ խնդրէր զաթոռ թագաւորութեանն» (էջ 93)։

499. Բյուզանդիայում պրակտոր (πράκτωρ) էին կոչվում հարկահավաքները, որ իրենց կամայականությունների, ընչաքաղցության պատճառով ժողովրդի ատելի էին։ Պրակտորների մռայլ պատկերը տալիս է Կեկավմենոսը, անվերջ խոսելով նրանց ապօրինությունների մասին։ Պատմիչի ասելով նրանք բազում նահանգների կորստյան պատճառ դարձան, քանզի ստիպեցին բնակիչներին անցնելու այլազգիների կողմը և վերջիններիս ուղղել հռոմայեցիների դեմ (տե՛ս «Советы и рассказы», стр. 152, 296։ Տե՛ս նաև՝ ծանոթ. 609)։ Տվյալ ժամանակաշրջանում հարկերի հավաքումը Բյուզանդիայում սովորաբար կապալով էր տրվում, պաշտոններր դարձել էին առուծախի առարկա (տե՛ս «Советы и рассказы», стр. 236—238։ Պաշտոնների վաճառքի վերաբերյալ տե՛ս *Kollas*, Amter—und Würden kauf im früh—und mittelbyzantinischen Reich, Athen, 1939)։ Հարկահավաքների մասին տե՛ս *Скабаланович*, Византийское государство, стр. 352 и сл.; *Литаврин*, Налоговая политика Византии, стр. 105—106; *Бартикян*, Эникион, стр. 127—128։

500. Միքայել I Կերուլարիոս (25 մարտ 1043—2 նոյեմբեր 1058 թթ.)։

501. Բնագրում՝ Ῥῶς։ Ռուսների այս արշավանքը, որ վերջինն էր ընդդեմ Բյուզանդիայի, տեղի ունեցավ 1043 թ. հուլիսին և միակն է, որ քրիստոնյա Ռուսիան կատարեց կայսրության դեմ։ Արշավանքին մասնակցություն ունեցան հին Ռուսիայի երկու խոշորագույն կենտրոններ՝ Կիևր և Նովգորոդը։ Բյուզանդա-ռուսական այս պատերազմի դրդապատճառները դեռևս մինչև վերջ պարզված չեն, բայց բավական խորն էին ու յուրջ, քանզի հուզում էին հին ռուսական պետության իշխող դասակարգերի լայն



559—28

շրջաններին։ Ուսումնասիրողները գտնում են, որ նրանց բախումը Ռուսիայի՝ Բյուզանդիայի եկեղեցական կախումից ձերբազատվելու փորձ էր, կամ Ռուսիայի և Բյուզանդիայի պետական-քաղաքական շահերի հակադրությունը, և կամ, վերջապես Կիևի և Կոստանդնուպոլսի փոխհարաբերությունների ողջ կոմպլեքսը՝ տնտեսական, քաղաքական, եկեղեցական։

1043 թ. պատերազմի մասին բացի բյուզանդական աղբյուրներից (Միքայել Պսելլոս, Միքայել Ատտալիատես, Հովհաննես Զոնարաս և Միքայել Գլիկաս), խոսում են ռուսական և արևելյան աղբյուրները։ Ռուսական աղբյուրներն են երկու տարեգրություններ, համառոտ տարբերակը («Կիևյան» կոչվածը) և ընդարձակը («Նովգորոդյան»)։ Ռուսական աղբյուրներում ցույց է տրված, որ նովգորոդյան իշխան Վլադիմիրը հանդես է գալիս որպես իր հոր՝ Յարոսլավ Իմաստունի կամակատարը, մինչդեռ բյուզանդական աղբյուրները Վլադիմիրին համարում են ռուսների միակ իշխանը և չեն հիշում Յարոսլավին։ Արևելյան աղբյուրներից կարելի է հիշատակել Իբն ալ-Աթիրին, Աբուլ Ֆարաջին։ 1043 թ. ռուս-բյուզանդական պատերազմի մասին տե՛ս Poppe, La dernière expedition russe, p. 1—29, 233—268;

502. Ըստ Ատտալիատեսի 400 նավ (Attal., p. 20)։ Մոնոքսիլոն նշանակում է միակտուր փայտից պատրաստված նավ։

503. Ատտալիատեսի ասելով Թեոդորականը պատերազմական գործերում շատ հմուտ էր, ոչ միայն ծովում, այլև ցամաքում, և այդ պատերազմի ժամանակ նա բոլորից շատ աչքի ընկավ (Attal., p. 21)։

504. Խոսքը «հունական» կամ «հեղուկ» կրակի մասին է։ (Նորագույն գործերից. Ellis Davidson, The secret weapon, pp. 61—74)

505. Ժամանակակից Վառնա նավահանգիստը Բուլղարիայում։ Հայագիտության համար հետաքրքրական է նշել, որ դեռևս XI դ. հիշյալ քաղաքում հայություն կար։ Այդ մասին տե՛ս Բարթիկյան, Վառնա։

506. 1043 թ. ռուս-բյուզանդական պատերազմի ավարտից երեք տարի անց երկու երկրների միջև վերականգնվում են բարեկամական հարաբերությունները։ Կոստանդին Մոնոմախի դուստրը կնության տրվեց Յարոսլավի որդի Վսեվոլոդին։ 1051 թ. խաղաղ ավարտ ունեցան նաև եկեղեցական հակասությունները։

507. Սկլերենան թագուհի չէր, այլ Կոստանդին Մոնոմախի հոմանուհին։ Կա երկու Սկլերենա, առաջինը պատրիկ Վասիլ Սկլերոսի, Անատոլիկոն բանակաթեմի զորավարի դուստրն էր և Կոստանդին Մոնոմախի երկրորդ կինը, որ վախճանվեց նախքան ամուսնու կայսր դառնալը։ Երկրորդ՝ Մարիա Սկլերենան, որի մասին խոսք է լինում այստեղ, Կոստանդին Մոնոմախի կին Սկլերենայի զարմուհին (ανεψιά) էր։ Seibt, Die Skleroi, S. 70—76։

508. Բյուզանդացիները Անի ասելով ենթադրում են ոչ միայն Բագրատունիների մայրաքաղաքը, այլև նրանց թագավորությունն ընդհանրապես (տե՛ս Бартикян, О феме Иверия, стр. 74)։ Սկիլիցեսը Բագրատունի թագավորին անվանում է τοπάρχης (այս բառը Խորենացին թարգմանում է «իշխան աշխարհի», Բ, 31), քանզի բյուզանդացիները հայոց թագավորին երբեք βασιλεύς չեն անվանել։ Կոստանդին Ծիրանածինի մոտ պահպանված՝ օտարերկրյա տիրակալներին դիմելու ֆորմուլաներում Բագրատունի թագավորի պաշտոնական անվանումն է ἄρχων τῶν ἀρχόντων τῆς Μεγάλης Ἀρμενίας («Իշխանաց իշխան Հայոց Մեծաց»)։ Կոստանդին Ծիրանածինն այդպես է անվանում նաև Վասպուրականի Արծրունի թագավորին («Կոստանդին Ծիրանածին, էջ 151)։ Մեր կարծիքով Կ. Յուզբաշյանը ճիշտ չէ, երբ գտնում է, թե ἄρχων τῶν ἀρχόντων բյուզան-

դական պատվաստիճան է, որ տրվում է կայսրության կողմից հայոց մեկ իշխանի և, ցանկության դեպքում, ետ է վերցվում և տրվում մի ուրիշի, որ տվյալ պահին Հայաստանում կարող է լինել միայն մեկ «արքոնների արքոն» (տե՛ս Յուզբաշյան, Ռոմանոս Լեկապենոս կայսեր անհայտ հասցեատերը, էջ 41—42։ Նույնի, Закат Багратидов, стр. 10)։ Բայց ըստ Ասողիկի (էջ 170) Աշոտ II-ը «զինքն անուանեաց Շահանշահ, այսինքն Թագաւորաց Թագաւոր»։ «Շահնշահը» հենց բյուզանդական «արքոնների արքոնն» է, Աշոտն է իրեն այդպես անվանել։ Յուզբաշյանն առաջ գնալով գրում է, որ Բյուզանդիայի համար վերջին ἄρχων τῶν ἀρχόντων-ը Աշոտ II Երկաթն էր, որի մահից հետո տիտղոսն անցավ Գագիկ I Արծրունուն (տե՛ս „Закат Багратидов", стр. 10)։ Այդ ենթադրությունն էլ է մերժվում հետևյալ պատճառաբանությամբ։ Նույն Ծիրանածինի «Արարողությունների մասին» աշխատության Բ գրքի 48-րդ գլուխը, որ կրում է «Այլազգիներին ուղարկվող նամակների վերնագրերը» խորագիրը, կողք կողքի նշում է երկու «իշխանաց իշխան»՝ Բագրատունի և Արծրունի. «Մեծ Հայքի իշխանաց իշխանին» և «Ասպուրականի, այն է Վասպուրականի իշխանին, որ այժմ իշխանաց իշխանի պատիվն է ստացել» («Կոստանդին Ծիրանածին», էջ 151)։ Արդ, եթե խոսքը մեկի մասին է, ինչո՞ւ է նշվում մյուսը, եթե տվյալ պահին «իշխանաց իշխանի» պատիվը տրրված է Գագիկ Արծրունուն, ապա ինչո՞ւ է ցուցակում նշվում Բագրատունի գահակալը։ Ավելորդ չէ ասել, որ Ուռհայեցու «Ժամանակագրության» մեջ պահպանված է Չմշկիկ կայսեր՝ Աշոտ III Բագրատունուն (953—977) ուղղված նամակի հայերեն թարգմանությունը, որի հասցեատերը կոչված է «Աշոտ Շահնշահ Հայոց Մեծաց»։ Դարձվածքը, անկասկած, մեզ հայտնի ἄρχων τῶν ἀρχόντων τῆς Μεγάλης Ἀρμενίας բյուզանդական պաշտոնական տիտղոսի թարգմանությունն է, և բառացիորեն համընկնում է Կոստանդին Ծիրանածինի մոտ պահպանված պաշտոնական ձևին. εἰς τὸν ἄρχοντα τῶν ἀρχόντων τῆς Μεγάλης Ἀρμενίας։ Հետևաբար միանգամայն սխալ է Յուզբաշյանը, որ գտնում է, թե Բյուզանդիայի համար վերջին Բագրատունի թագավորը, որ ստացել էր ἄρχων τῶν ἀρχόντων տիտղոսը Աշոտ II Երկաթն էր։

Ավելորդ չէ ասել, որ իշխանաց իշխան էին անվանում բյուզանդացիները ոչ միայն հայոց թագավորներին, ինչպես կարծում է Յուզբաշյանը գրելով. «սույն տիտղոսի մեզ հայտնի բոլոր կրողները հայաստանցի թագավորներ են, ...հիմք չկա ենթադրելու, որ բյուզանդական արքունիքը խախտելով ավանդույթը... այդ տիտղոսը շնորհեր ոչ հայաստանցուն» (Յուզբաշյան, Ռոմանոս Լեկապենոս կայսեր անհայտ հասցեատերը, էջ 39), այլև արաբ ամիրաներին. *Ménager*, Amiratus (apud „Byzantinische Zeitschrift", Bd. 54 (1961), p. 20Ͻ)։

509. Բոննի հրատարակությունը Ἰβήρων-ի փոխարեն ունի Ἀβασγῶν (աբխազների)։

510. Վրաց թագավոր Գիորգի I-ը (1014—1027)։ Նա ուզեց օգտվել Վասիլ II-ի բուլղարական պատերազմով զբաղված լինելու հանգամանքից և նվաճել Դավիթ կուրապաղատի՝ Բյուզանդիային անցած հողերը։

511. Հովհաննես-Սմբատ Բագրատունին։

512. Այս բանակցությունները Վասիլ II-ի և հայոց թագավոր Հովհաննես-Սմբատի միջև կայացան 1021 թ. վերջին Տրապիզոն քաղաքում։ Հայոց թագավորի բանագնացներն էին Պետրոս կաթողիկոսը և վարդապետ Հովհաննես Կոզեռնը (Մատթ. Ուռհ., էջ 50)։ Լաստիվերցու ասելով հենց այստեղ «եղև Հայոց կորստեան գիր և նամակ. քանզի Յովհաննէս պատուէր տուեալ էր հայրապետին, եթէ՝ Գրէ գիր և տուր կտակ թագաւորին, զի յետ իմոյ վախճանին՝ զիմ քաղաքս և զերկիրս նմա տաց ի ժառանգութիւն» (Արիստ. Լաստ., էջ 32)։

513. Գագիկ II Բագրատունին (1043—1045), որը, սակայն, Հովհաննեսի որդին չէր, այլ վերջինիս եղբոր՝ Աշոտի։ Հովհաննեսին «ոչ գոյր որդի թագակալ թագաւորութեանն. վասն զի որդին նորա Երկաթ վաղ վախճանեցաւ, և չժամանեաց ի պատիւ հօրն» (Արիստ. Լաստ., էջ 32)։

514. Ուռհայեցու տվյալներով հայոց թագավոր Հովհաննեսը վախճանվեց Միքայել (IV Պափլագոնացու) օրոք և Բագրատունյաց թագավորությունը պահանջողը ոչ թե Կոստանդին Մոնոմախն էր, այլ նրանից առաջ Միքայելը։ Հիշելով Հովհաննեսի վախճանը, Ուռհայեցին շարունակում է. «Եւ եղև իբրև լուան զայս ազգն Հոռոմոց, ժողով արարեալ թագաւորն Հոռոմոց Միխայլն և հասանէր յաշխարհն Հայոց և աւար հարկանէր զտունն Հայոց սրով և գերութեամբ։ Վասն զի Յովհաննէս ի կենդանութեան իւրում գիր էր տուեալ Հոռոմոց՝ եթէ զկնի մահուան իմոյ Անի Հոռոմոց լիցի» (էջ 84)։ Ուռհայեցին այնուհետև հիշում է հոռոմոց զորքերի երկրորդ հարձակման մասին Բագրատունյաց տիրույթների վրա, որի ժամանակ «բազում տեղիք հաւանեցան Հոռոմոց», որից հետո «ժողովեցան զօրքն Հոռոմոց ի վերայ թագաւորաբնակ քաղաքին Անւոյ» (էջ 85)։ Հայերը Վահրամ Պահլավունու գլխավորությամբ սոսկալի ջարդ տվեցին բյուզանդացիներին, որից հետո «ոչ ևս խնդրեցին զօրքն Հոռոմոց զքաղաքն Անի, այլ դարձան ամօթով և գնացին ի Կոստանդնուպօլիս առ Միխայլն» (էջ 86)։ Ուռհայեցին չգիտե հոռոմոց զորքերի հարձակման մասին Անիի վրա՝ Մոնոմախի ժամանակ։

Հովհաննես-Սմբատը վախճանվեց ՆՂ (1041) թ., այսինքն Միքայել IV Պափլագոնացու օրոք։ Կոստանդին Մոնոմախը սկսեց իշխել 1042 թ. հունիսից։ Հետևաբար Բագրատունյաց թագավորությունը կարող էր պահանջած լինել Միքայել Պափլագոնացին։ Կոստանդին Մոնոմախը պետք է կրկնած լինի Միքայելի կիսատ թողած գործը։ Այդ բանը հաստատվում է Լաստիվերցու տվյալներով։ Պատմիչը հիշում է մի ավանդություն, որի համաձայն Վասիլ II-ի եղբայր Կոստանդին կայսրը հայոց թագավորին նամակ է ուղարկել «Վասն Հայոց աշխարհին», որով հաստատում էր հայոց թագավորության գոյությունը «մինչև յաւիտեան»։ Այս գիրն ահա նամակաբերն իր մոտ պահեց «մինչև ի ժամանակս Միխայիլի թագաւորութեանն, և վաճառեալ նմա՝ առ գանձ բազում» (էջ 57)։ Հայոց թագավորի մահից հետո հոռոմոց կայսրը «գտեալ զգիր նամակին Հայոց, իբրև իւրեան սեպհական ժառանգութիւն՝ հոգ տարաւ առնուլ զքաղաքն Անի և զաշխարհն»։ Ինչպես տեսնում ենք, Լաստիվերցին էլ Բագրատունյաց թագավորության պահանջող է համարում Միքայել կայսեր։

515. Այսինքն՝ վասալը։

516. Իմա՝ Իբերիա բանակաթեմի, որ ստեղծվել էր XI դ. քսանական թվականներին՝ Դավիթ կուրապաղատի 1000 թ. նվաճված հողերից։

517. Հիշատակվում է և Ուռհայեցու կողմից. «Կացուցանէր (Մոնոմախը) զօրագլուխ զՊառակամանոսն՝ զայր ներքինի կուրտ գոլով, և դա֊ր զօրօք բազմօք հասանէր ի դուռն Անւոյ» (էջ 96)։ Նա ազգությամբ հույն էր։ Գևորգ Աբգարյանը գտնում է, որ նա նույնանում է Գրիգոր Մագիստրոսի մի տաղի մեջ հիշատակված « գիշերաբուն Բուլղարաց» Նիկողայոսի հետ, մոռանալով, որ վերջինս, հարկավ, բուլղար է (տե՛ս նաև վերը, ծանոթ. 419)։

518. Սկիլիցեսը չի խոսում պարակիմոմենոսի ստացած ջարդի վերաբերյալ, այդ մասին խոսում է Ուռհայեցին, որը միաժամանակ նշում է, որ պարտություն կրած պառակամանոսը «ձմերեաց յԱղթիքն», որը Տայքի (այսինքն՝ բյուզանդական Իբերիա բանակաթեմի) կենտրոնն էր։ Պառակամանոսի պարտությունը տեղի ունեցավ այն ժամանակ, երբ Գագիկ II թագավորն արդեն խաբեությամբ Բյուզանդիայում էր գտնվում։ Երբ

հայերը համոզվեցին, որ Գագիկին չեն թողնելու այլևս զա Անի, «գրեցին առ զօրապետն Հոռոմոց ի Պառակամանոսն և երդմամբ կոչեցին զնա ի քաղաքն Անի և ետուն զքաղաքն Անի ի ձեռս Հոռոմոց» (Մատթ. Ուռհ., էջ 97)։ Սկիլիցեսի ասելով, այս դեպքերի ժամանակ Գագիկը Անիում էր։

519. Սկիլիցեսի մոտ՝ Ἀπλεσφάρης։ Խոսքը Դվինի (1022—1049) և Դվինի ու Գանձակի (1049—1067) ամիրա Աբու-լ-Ասվար Շավուր իբն Ֆադլ իբն Մուհամմեդ իբն Շադդադի մասին է։ Նա ըստ Մունեջիմ Բաշիի աղբյուրի (Թարիխ ալ-բաբ վա Շարվան) ամիրայեց 46 տարի։ Ուներ հինգ որդի՝ Ֆադլ, Աշոտ, Իսկանդար, Մինուճիհր և Մարզուբան։ Աբու-լ-Ասվարը վախճանվեց 1067 թ. նոյեմբերի 10-ին։ Նա, ինչպես ազգանունից է երևում, Շադդադյանների քրդական տոհմին էր պատկանում և սերտ հարաբերությունների մեջ էր հայերի հետ։ Նա «էր փեսայ թագաւորին Հայոց Աշոտոյ» (Արիստ. Լաստ., էջ 96), իսկ նրա որդի Մինուճիհրը (հայկական աղբյուրների Մանուչեն) ամուսնացել էր Բագրատունի Կատայի հետ։ Նրանց մասին մանրամասն տե՛ս Minorsky, Studies, p. 50—64, 80—81։ Դվինի ամիրայի և Շիրակի Բագրատունիների փոխհարաբերությունները սրված էին նախքան Մոնոմախը և բյուզանդական կայսրը վարպետորեն օգտագործեց այդ հանգամանքը։

520. Ատտալիատեսը գրում է ավելի պարզ ու հստակ։ Մանրամասն նկարագրելով Անի քաղաքի անառիկությունը, նա ցույց է տալիս, որ Մոնոմախն ուժեղ բանակ ուղարկեց, բայց չկարողացավ գրավել քաղաքը և նրան տիրացավ միայն Գագիկի հետ վարած հաջող բանակցություններից հետո։ Նույն պատմիչի ասելով, Անին, որ շատ ընդարձակ տարածություն ունի, նրա շրջապատում կան բազմաթիվ ավաններ, դքսության (կատապանության) կենտրոն դարձավ (δουκάτη κατεκοσμήθη ἀρχῇ), և Բյուզանդիայի համար մի հսկայական պատվար՝ արևելքից Իբերիա ներխուժող բարբարոսների համար (Attal., p. 79—80)։ Այս փաստը մի անգամ ևս ցույց է տալիս, որ Բագրատունյաց թագավորությունը չդարձավ Իբերիա բանակաթեմի կցորդը։ Հայկական աղբյուրների տվյալներով Գագիկն ակամա ու խաբեությամբ հրաժարվեց իր տիրույթներից ու գահից, բյուզանդացիներին հաջողվեց Գագիկին Կոստանդնուպոլիս հրավիրել և այլևս թույլ չտալ նրան վերադառնալ Հայաստան։ Այդ ընթացքում կաթողիկոս Պետրոս Գետադարձը և վեստ Սարգիսը Անիի բանալիները տվեցին հոռոմներին (տե՛ս Արիստ. Լաստ., էջ 61—62։ Մատթ. Ուռհ., էջ 93—95)։ Ըստ Լաստիվերցու, Մոնոմախը Գագիկ թագավորին Անիի փոխարեն խոստանում էր տալ «զՄելիտինէ և զգաւառսն որ շուրջ զնովաւ» (էջ 62), բայց Գագիկը չէր համաձայնվում։ Ի վերջո նրան տվեցին Սենեքերիմ Արծրունու որդի Դավթի տիրույթները (այսինքն՝ Սեբաստիան), քանզի Դավիթը վախճանվել էր անզավակ, իսկ Դավթի դուստրն էլ դարձել էր Գագիկի կինը (Արիստ. Լաստ., էջ 63)։ Ուռհայեցու ասելով, Մոնոմախը Գագիկին տվեց «զԿալօն-Պեղատն և զՊիզու» (Մատթ. Ուռհ., էջ 95)։

521. Դվինի Շադդադյան Աբու-լ-Ասվար ամիրան։

522. Այսինքն՝ պրոեդրոս Նիկոլայոսին։

523. Ենթադրվում են Տայքի (Իբերիայի) զորքերը։

524. Թե ո՞վ է Անեցին, Սկիլիցեսը չի հայտնում։ Եղել են ուսումնասիրողներ, որոնք նրա տակ ենթադրել են Բաղարատ Վխկացուն (Ahrweiler, Recherches, p. 59 n. 12)։ 1046 թ. Անիի դուքսը ամենևին էլ Բագարատը չէր, այլ Միքայել Իասիտեսը (Ասիտը)։ Բագարատը Անիի կառավարիչ դարձավ 15 տարի անց, շուրջ 1060 թ.։ Հայկական աղբյուրները հնարավորություն են տալիս պարզելու Անեցու ո՞վ լինելը։ Հարցն այն է, որ Դվինի դեմ ուղղված այդ արշավանքի ժամանակ բյուզանդական զորքերի և հենց Իա-

սիտեսի հետ միասին կռվում էր «մեծ իշխանն Հայոց Վահրամ», այսինքն հայոց սպարապետ Վահրամ Պահլավունին, որն սպանվեց այնտեղ իր որդու՝ Գրիգորի հետ (տե՛ս Արիստ. Լաստ., էջ 63։ Մատթ. Ուռհ., էջ 98)։ Այդ մասին գրում է և Գրիգոր Մագիստրոսը (Թուղթ ԺԱ)։ Տե՛ս նաև՝ Ն. Ակինյան, Պահլավունի և Լամբրոնի Հեթմյանց ազգաբանությունը. «Հանդես ամսօրյա», 1954, թիվ 1—6, սյունակ 23—24։ Սկիլիցեսի հիշատակությունն այն մասին, թե «Մեծ Հայքի զինյալ ուժերը գլխավորում էր Անեցին» (Վահրամ Պահլավունին) կարևոր է այն տեսակետից, որ ցույց է տալիս Բյուզանդական կայսրության ռազմական քաղաքականությունը նվաճված Հայաստանում։ Նա հայկական զորքերը լուծարքի չէր ենթարկում, այլ օգտագործում էր իր նպատակների համար։ Եվ միանգամայն իրավացի է Լաստիվերցին, երբ գրում է, որ Շիրակի գրավումից հետո հայոց «հեծելազօրն անտէրունչ շրջեալ ոմն ի Պարսս, ոմն ի Յոյնս, ոմն ի Վիրս» (էջ 60)։

525. Մի փոքր հետո նրան անվանում է «Իբերիայի դուքս» որպիսին նա էր մինչև Շիրակի Բագրատունյաց թագավորության վերացումը։ 1045 թվականից, երբ Շիրակը կազմեց բյուզանդական մի սովորական նահանգ, ապա նրան միացվեց նաև «Իբերիան» և նոր կառավարիչն արդեն կոչվում էր ոչ թե Իբերիայի դուքս (կամ կատապան), այլ Հայաստանի և Իբերիայի կատապան։ Անիում գտնված 6567 (1059) թվակիր հունարեն արձանագրության մեջ Հովհաննես Մոնաստիրիոտեսը իրեն անվանում է „Κατεπάνω 'Αρμενίας καὶ 'Ιβηρίας" (տե՛ս *Бенешевич*, Три Анийские надписи, стр. 19)։ Նա կոչվում էր նաև Անիի և Իբերիայի կատապան։ Արիստակես Լաստիվերցին ցույց է տալիս, որ մինչև Շիրակի գրավումը Իասիտեսը «կալեալ էր զտէրութիւնն արևելից» (տերմինը Բագարատ Վխկացու արձանագրության մեջ հանդես է գալիս «արևելից կատապան» ձևով (տե՛ս «Դիվան հայ վիմագրության», պր. Ա, էջ 37)։ Բագրատունյաց թագավորության վերացումից հետո Իասիտեսին «առաքէ թագաւորն տեղակալ քաղաքին Անւոյ» (էջ 63)։ Հայաստանի և Իբերիայի կատապանության կենտրոնը Անի քաղաքն էր։

526. Բնագրում՝ δοῦλος, որ ստրուկ, ծառա է նշանակում, բայց չպետք է բառացի հասկանալ։ Դա գործածվում էր որպես οἰκεῖος (մտերիմ) բառի հոմանիշ (տե՛ս *Verpeaux*, Les Οἰκεῖοι, p. 96)։

527. Կատակալոն Կեկավմենոսը, որ մի քանի տարի առաջ Պարիստրիոնի կառավարիչն էր։

528. Բյուզանդական բանակում բացի տագմաներից (տե՛ս ծանոթ. 26) ծառայում էին այլ զորամասեր, որոնք թեև հազվագյուտ էին կրում «տագմա» անվանումը, բայց կազմվում էին այն սկզբունքով, ինչ տագմաները։ Նրանցից էին կայսերական գվարդիայի մաս կազմող հետերիաները (ἑταιρεῖαι), որոնց գլխավորում էր հետերիարխը (և ոչ դոմեստիկոսը)։ Աղբյուրների տվյալներից հայտնի է, որ կային երեք կարգի հետերիաներ՝ մեծ, միջին և փոքր (տե՛ս *Ahrweiler*, Recherches, p. 27։ «Կոստանդին Ծիրանածին», էջ 307)։ Սկիլիցեսի հիշատակած «մեծ հետերիարխ ներքինի Կոստանդինը» նույնանում է Ուռհայեցու հիշած մեծ իշխան Տելիարխին (Տերիարխ-(է)տերիարխ), որ հայ պատմիչի ասելով «կուրտ էր և ներքինի»։ Այդ մասին տե՛ս Բարթիկյան, Մի քանի բյուզանդական տերմինների մասին։

Ըստ Մատթեոս Ուռհայեցու, Բյուզանգական կայսրությունը Դվինի ամիրայի վրա երեք արշավանք կատարեց. առաջինը 494 (1045) թ. աշնանը, որտեղ բյուղանդացիները պարտվեցին (էջ 98)։ Երկրորդ արշավանքը տեղի ունեցավ 495 (1046) թ.՝ Տելիարխի գլխավորությամբ «ի ձմերային ժամանակն», որը դարձյալ վերջացավ ապարդյուն։ Երրորդ արշավանքը նույն Տելիարխի գլխավորությամբ կատարվեց 496 (1047) թ., որի

*ժամանակ «բազում չարչարանս և տագնապս գործեաց այնմ գաւառին (այսինքն՝ Դվինի) և սրով և գերութեամբ ապականեաց զամենայն ազգն Տաճկաց և դարձաւ յաշխարհն Յունաց խաղաղութեամբ» (էջ 100)։ Այս վերջին արշավանքի տարին, Ուռհայեցու ասելով, տեղի ունեցավ Թոռնիկի ապստամբությունը և քանի որ ստույգ է, որ այն ճնշվեց 1047 թ. սեպտեմբեր ամսին, ապա Ուռհայեցու մոտ հիշված բյուզանդական երրորդ արշավանքը դեպի Դվին տեղի ունեցավ 1047 թ. սեպտեմբեր ամսից առաջ։ Բյուզանդական աղբյուրներում Տելիարխի առաջին արշավանքի վերաբերյալ հիշատակություն չկա։*

*529. Սկիլիցեսն ասում է, որ այս արշավանքի ժամանակ բյուզանդացիները չուզեցին հարձակվել Դվինի վրա, այնինչ Ուռհայեցու ասելով Տելիարխն «իջանէր ի վերայ քաղաքին Դվնայ» (էջ 100)։ Ամենայն հավանականությամբ հակասություն չկա այստեղ. հայ պատմիչը նկատի ունի Աբու-լ-Ասվարի տիրապետությունն ընդհանրապես և ոչ կոնկրետ Դվին քաղաքը, քանզի մի քիչ հետո ցույց է տալիս, որ Տելիարխը ավերածություններ գործեց «այնմ գաւառին»։*

*530. «Սուրբ Մարիամը» նույնանում է Սուրմառիի (Սուրբ Մարի, այժմ Սուրմալու) հետ (տե՛ս* *Peeters*, Quelques noms géographiques, p. 436)։ *Պետերսի այս հոդվածը վերահրատարակվել է նույն հեղինակի* Recherches d'Histoire et de Philologie Orientales, t. I, Bruxelles, 1951, *գրքում, էջ 261—266։ Գտնվում էր Մասյացոտն գավառում* (Երեմյան, *Հայաստանը..., էջ 65)։ Սուրմառին առաջին անգամ հիշվում է XI դ. սկզբին։ Վեստ Սարգիսը 1042 թ. «երթայ ի բերդաքաղաքն որ կոչի Սուրմառի»* (Արիստ. Լաստ., *էջ 58)։ Սրանից երևում է, որ Աբու-լ-Ասվարը վերջերս էր այն Գագիկից գրավել և Բյուզանդիան որպես Անիի թագավորության ժառանգության պահանջում էր այն։*

*Ալիշանը («Այրարատ», էջ 121—122) գտնում է, որ Սուրբ Մարի ձևը հետագա հայ պատմիչների (սկսած XIII դ.) ստուգաբանությունն է, այնինչ, ինչպես տեսնում ենք բյուզանդական աղբյուրները դեռ XI դարում այն կոչում են Սուրբ Մարիամ* (ἁγία Μαρία)։ *Բերդը ծանոթ էր արաբներին և արևմտյան ճանապարհորդներին (համմտ.* Analecta Bollandiana, t. 38 (1920), p. 324; *Marquart*, Das Itinerar von Artaxata nach Armastica, *սյունակ 852)։*

*531. Բնագրում՝* Ἀμπίερ *(Ամպիեր, կարդացվում է Ամբիեր)։ Բերդ Արագածոտն գավառում, Բյուրականի մոտ։ Առաջին անգամ հիշատակում է Վարդան պատմիչը Գագիկ I թագավորի կողմից այն իր հաջորդ՝ Հովհաննես-Սմբատին կտակելու առնչությամբ. «Ջթագն տայ Յովհաննիսի, զԱնի և զՇիրակ, Սուրբ Գրիգոր ձորովն Աշոցաց, զԱնբերդ և զդաշտն Այրարատեան, զԿայան և զԿածոն և զՏաշուշ՝ գաւառն Սևորդեաց»* (Վարդան, *էջ 125)։ Մինչև օրս պահպանված են բերդի պարիսպների ավերակները, ինչպես և եկեղեցին՝ բերդի ներսում։ 1936 թ. այստեղ պեղումներ կատարեց ակադ. Հ. Օրբելին, որն, ինչպես և Թ. Թորամանյանը, եկել է այն եզրակացության, որ բերդի տեղում հնում եղել է կիկլոպյան ամրոց։ Սկզբնական շրջանում Անբերդը պատկանել է Կամսարականներին, ապա IX—X դդ. Բագրատունիներին, իսկ XI դ. անցել է Պահլավունիներին, որոնց ժառանգական կալվածն էր։ Ն. Տոկարսկին գտնում է, որ Անբերդը կառուցվել է IVI դ.։ Ս. Հարությունյանը, որ վերջերս պեղումներ է կատարել Անբերդում, հանգել է այն եզրակացության, որ Անբերդը կառուցվել է Աշոտ Երկաթի օրոք (913—929) և որ միջնադարյան շերտի տակ կիկլոպյան որևէ հետք չկա։ Անբերդի վերաբերյալ տե՛ս* *Орбели*, Баня и скоморох, стр. 316—322; *Токарский*, Архитектура Армении, стр. 40—48։ Հարությունյան, *Անբերդ, էջ 89—95։* Նույնի, *Անբերդի պաշտպա-*

նական սիստեմը, էջ 138—146։ Հովհաննիսյան, Հայաստանի բերդերը, էջ 766—781։

Սկիլիցեսի Ամպիերը Անբերդի հետ նույնացրեց առաջին անգամ նույն Պ. Պետերսը (տե՛ս նրա Quelques nomes géographiques, p. 437—438)։

532. «Սուրբ Գրիգոր» բերդի տեղը դեռևս հաստատ որոշված չէ։ Արտահայտվել են կարծիքներ, որ դա Խոր Վիրապն է՝ Դվինից հարավ, կամ Սուրբ Գրիգորը Արագածոտնում (տե՛ս Peeters, Quelques noms géographiques, p. 437։ Honigmann, Die Ostgrenze, SS. 176—177)։ Արագածոտնի սբ. Գրիգորը հիշատակում է Հովհաննես Դրասխանակերտցին. «ի գաւառէ Արագածոտան, ի բնակչաց Սրբոյն Գրիգորի»։ Ավելի մանրամասն տե՛ս Ալիշան, Այրարատ, էջ 159։ Ելնելով Վարդան պատմիչի նախորդ ծանոթագրության մեջ հիշված վկայությունից («Սուրբ Գրիգոր ձորովն Աշոցաց») հավանաբար Աշոցքում պետք է այն փնտրել։ Վարդանը, Սկիլիցեսի նման, սուրբ Գրիգորը Անբերդի շարքում է հիշատակում։

533. Թարգմանաբար նշանակում է Ծիծեռնակաբերդ, որի տեղադրությունը նա հաստատված չէ։ Սկիլիցեսի ասելով, այն գտնվում էր Դվինի մոտ։ Սկիլիցեսի Ծիծեռնակաբերդը գուցե նույնանա Երևանի Ծիծեռնակաբերդի հետ, թեև այնքան էլ Դվինին մոտիկ չէ։ Պետերսը և նրան հետևող Գրուսեն ենթադրում են, որ այն նույնանում է Երևանի Ծիծեռնակաբերդի հետ (Peeters. Quelques noms géographiques, pp. 438—440. Grousset. Histoire de l'Arménie, p. 584)։ Հայկական միջնադարյան աղբյուրներում Ծիծեռնակաբերդը որքան ինձ հայտնի է, չի վկայված։ Ղ. Ալիշանն այդ առթիվ գրում է. «...մինչ նոր ումն տեղագրող զԾիծեռնակ բերդ, ինձ անծանոթ այլ ուստ» («Այրարատ», էջ 311)։

534. Լևոն Թոռնիկի ապստամբությունը ծագեց 1047 թ. սեպտեմբերին։ Այդ ելույթի մասին գիտե և Ուռհայեցին, բայց չի նշում, որ Աբու-լ-Ասվարի դեմ ուղարկված զորքը ետ կանչվեց Բյուզանդիոն՝ այդ ապստամբության բռնկման առնչությամբ։ Ատտալիատեսը ցույց է տալիս, որ Լևոն (Թոռնիկը) Կոստանդին Մոնոմախի ազգականն էր (συγγενία κεκτημένος, συγγενής). որին կայսրը տվել էր ոչ միայն պատրիկի, այլև վեստի պատվաստիճանը, և որ նա 1047 թ. գարնանից մինչև ապստամբության ժամանակ Մելիտենեի (և ոչ Իբերիայի, ինչպես գրում է Սկիլիցեսը) զորավարն էր։ Ն. Ադոնցը գրում է, որ Իբերիայի զորավարը 1045—1047 թթ. Միքայել Իասիտեսն էր (Les Taronites, p. 255)։ Բայց Իասիտեսը, ինչպես երևում է Սկիլիցեսի տվյալներից, պաշտոնանկ եղավ Դվինյան արշավանքի (1046) ժամանակ։ 1047 թ. Իբերիայի զորավարն էր Կեկավմենոսը։ Բոլոր դեպքերում 1047 թ. Թոռնիկը չէր կարող Իբերիայի զորավարը լինել։ Ադոնցը, հետևելով Ատտալիատեսին, գտնում է, որ Թոռնիկը տվյալ ժամանակաշրջանում Մելիտենեի զորավարն էր (Adontz, Les Taronites. p. 255)։ Այս հարցի վրա կանգ է առել նաև Հ. Գլիկացի-Արվայլերը, որի ասելով, Մելիտենեն Կոստանդին Մոնոմախի ժամանակ Իբերիա բանակաթեմի մեջ էր մտնում (Ahrweiler, Recherches, p. 58)։ Վ. Հարությունովայի ենթադրությամբ Լևոն Թոռնիկն Իբերիա բանակաթեմի ինչ-որ մասի կառավարիչն էր և նա ենթակա էր բանակաթեմի զորավարին (Арутюнова, Византийские правители, стр. 71—72)։

Մելիտենեում եղած ժամանակ Թոռնիկը, ըստ Ատտալիատեսի, մեղադրվում է ապստամբություն ծրագրելու մեջ և մայրաքաղաք կանչվելով, վանական է խուզվում։ Այնտեղ Կոստանդնուպոլսից նա սեպտեմբեր ամսի 14-ին փախչում է Ադրիանուպոլիս և ապստամբություն բարձրացնում (Attal., pp. 22—23)։ Լևոն Թոռնիկի՝ Մոնոմախի ազգականը լինելու մասին գիտե նաև Պսելլոսը (ἐξανέψιός τις ἐκ μητρικῆς ἐγεγόνει ρίζης

τὸ μὲν ὄνομα Λέων. τὸ δὲ γένος Τορνίκιος—Psellos, Chronographie, I, p. 14)։ *Каждан*, Армяне,... стр. 52:

*535. Այսինքն՝ Իբերիա բանակաթեմի։ Ըստ Պսելլոսի, Կոստանդին կայսրը, իմանալով Թոռնիկի՝ իր քրոջ հետ ունեցած սիրային կապերի մասին և ցանկանալով նրանց իրարից հեռու պահել, նրան պատվավոր աքսոր ուղարկեց, նշանակելով Իբերիայի կառավարիչ* (*Psellos*, Chronographie II, p. 15: *Zon.*, IV, p. 163—164):

*536. Պսելլոսի ասելով Թոռնիկը Կոստանդնուպոլսում էր արգելափակված, բայց իր մակեդոնացի բարեկամները գիշերով նրան փախցրին Ադրիանուպոլիս* (*Psellos*, Chronographie, II, p. 17: *Zon.*, IV, p. 164):

*537. Խարաքս բառը մի քանի նշանակություն ունի. ցանկապատ, խրամ, նաև ճամբար։*

*538. Հայկական աղբյուրներում՝ Ասիտ։ Սա 1046 թ. դեռ «Իբերիայի» կատապանն էր և Դվինի ամիրայի դեմ մղած պատերազմում պարտություն կրելու պատճառով պաշտոնանկ էր արվել։*

*539. 1047 թ. դեկտեմբերի 25-ին։ Մատթեոս Ուռհայեցին բավական հանգամանալից է խոսում Թոռնիկի ապստամբության մասին, միայն նա ապստամբի գերվելն ու կուրացվելը այլ կերպ է նկարագրում։ Եթե ըստ Սկիլիցեսի նա պարտություն կրելով ապաստանեց եկեղեցում և այնտեղ բռնվելով կուրացվեց, հայ պատմիչը գտնում է, որ կայսրը, պատրիարքն ու բոլոր իշխանները, ընկնելով անելանելի դրության մեջ, «խորհեցան չար խորհուրդ վասն Թոռնկայ և գրեցին երդմունս ահաւորս և սուտ և խաբանօք եդրուան Թոռնկայ դնել զնա Կեսար և թէ զկնի մահու Մոնոմախին Թոռնիկ լիցի թագաւոր» (էջ 101) և որ երբ նա հավատաց նրանց, մտավ Կոստանդնուպոլիս, բայց երդմնազանց հոռոմները «խաւարեցուցին զաչսն Թոռնկայ զառն քաջի» (էջ 101—102)։ Ուռհայեցու ողջ համակրանքը ապստամբ Թոռնիկի կողմն է։*

*540. Այլ աղբյուրներից հայտնի է, որ Մոնոմախը Թոռնիկի ապստամբությունը ճնշելու համար օգնություն խնդրեց նաև ռուսներից։ Նրանց զորքերը, սակայն ամենայն հավանականությամբ, տեղ հասան ապստամբության ճնշումից հետո (տե՛ս* Кажда н Иоанн Мавропол, стр. 182—184)։

*541. Խոսքը Միքայիլ իբն Սելջուքի մասին է, Չաղրի բեկի և Տուղրիլ բեկի հոր։*

*542. Բնագրում՝* Ταγγρολίπηξ։ *Ուռհայեցու մոտ՝ «Տուղրէլ սուլտան» (էջ 102)։*

*543. Հիշյալ Արաքսն, ամենայն հավանականությամբ, չի նույնանում Հայաստանի Արաքս (Երասխ) գետին, քանզի այդ Արաքսն անցնելով թուրքերը մուտք էին գործում Պարսկաստան և ոչ Հայաստան։ Արաքս անունով այլ գետեր էլ կան Պարսկաստանում։*

*544. Բնագրում՝* Πισσασίριος։

*545. Բնագրում* Κουτλουμοῦς։ *Ուռհայեցու Գթլմուշը (էջ 102)։ Կարմիրխաչը Ուռհայեցու մոտ կոչված է «զօրապետն Մօսլայ, որ ասէն Խուրէշ, տէրն Մօսլայ», «ամիրայն Տաճկաց» (էջ 99)։*

*546. Պարադինաստևոն նշանակում է կայսերակից։ Համապատասխանում է ժամանակակից պրեմիեր մինիստրի պաշտոնին (տե՛ս *Beck*,* Der byzantinische „Ministerpräsident“, S. 309—338)։

*547. Դեպքերը տեղի ունեցան Արճեշում։ Ուռհայեցին այստեղ Գթլմուշին չի հիշում, այլ Պօղի, Պուկի և Անազուղլի ամիրաներին, որոնք ավարի առնելով Պաղինն ու Թլմուխ գավառը, բռնել էին վերադարձի ճանապարհը։ Նրանց զորքը «հասանէր մինչև*

*յԱրճէշ քաղաքն Հայոց։ Եւ էր անդ զօրավար մի Հոռոմոց՝ որում անուն ասէին Ստեփան կատապան. և ամիրայքն Պարսից յուղարկեցին բազում աւարս Հոռոմոց զօրավարին՝ զի տացէ նոցա անց, զի գնասցեն յաշխարհն իւրեանց։ Իսկ նորա հպարտացեալ ելանէր ի պատերազմ ի վերայ զօրացն Թուրքաց. և յայնժամ յաղթեցին զօրացն Հոռոմոց Թուրքն և արին սաստիկ կոտորածս և կալան զՍտեփան կատապանն և տարան ի Հեր քաղաք»* (Մատթ. Ուռհ., *էջ 99)։*

*548. Մոտավորապես նույն ձևով է բնութագրում հոռոմոց զինվորներին Ուռհայեցին։ Թուրքերը, ասում է նա, 498 (1049) թ. եկան հայոց աշխարհը «վասն զի ի ձեռացն Հոռոմոց գիտացին անտէր և անպահապան զամենայն աշխարհն Հայոց. զի զարաքաջս և զհզօրս քակեալ հանին յարևելից Հոռոմք և կուրտ զօրապետօք ջանային պահել զաշխարհն Հայոց և զամենայն տունն արևելից» (էջ 102)։*

*549. Վասպուրականը։*

*550. Այստեղ նկատի ունի Վրաստանը և նրա թագավորին, և ոչ Իբերիա թանակաթեմը։*

*551. Մատթեոս Ուռհայեցին Լիպարիտի մասին գրում է, թե նա «եղբայր էր Ռատին (Սկլիրցեսի Օրատիոսը) և Զոյատին՝ վրացի ազգաւ՝ ի հզօր ջոկէ»* (Մատթ. Ուռհ., *էջ 109)։*

*Կ. Թումանովի կարծիքով Լիպարիտյանները հանդես եկան Վրաստանում 876 թ. որպես Թրիալեթիի (Թռեղք) տերեր և, հավանաբար, սերում են Արտավազդ Մամիկոնյանից (VIII դ.), կամ նրա ազգականներից։ Նրանք կրում էին Ռատ մականունը, որ ծագում է հայկական Հրահատից։ Ինչպես Մամիկոնյանները Հայաստանում, այդպես էլ Լիպարիտյաններր Վրաստանում (XI—XII դդ.) ունեին սպարապետի աստիճանը (տե՛ս Toumanoff*, The Mamikonids, p. 125—138)։

*552. Այս դեպքերն իրենց արտացոլումն են գտել նաև Վարդան Արևելցու պատմական երկում։ «Յայն ժամանակի,—գրում է նա,—փոխէ զԳէորգ՝ Վրաց թագաւոր, որդի իւր Բագարատ. և իշխանն Վրաց Լիպարիտ ապստամբեալ փախուցանէ զնա ի խորին Ափխազք և ունի ինքն զաշխարհն իմաստութեամբ՝ ձեռն տուեալ ի Միքայէլ կայսրն» (էջ 132)։*

*553. Բնագրում՝* Τεφλις։

*554. Խոսքը նշանավոր Ահարոն Բուլղարի մասին է, Վասպուրականի բյուզանդական կառավարչի, որ հետագայում դարձավ «Հայաստանի և Իբերիայի» կատապան։ Ղ. Ալիշանը այս Առոն Մագիստրոսին չգիտես ինչու համարում է Պահլավունի (հետևաբար՝ հայ)։ Տե՛ս* Ալիշան, *Շիրակ, էջ 39։ Գրքի ցանկում Ալիշանը նույն մարդուն երկու անգամ է հիշատակում, մեկ անգամ որպես «Առօն մագիստրոս Պահլաւունի» (էջ 182) և «Առօն մագիստրոս կատապան»։ Սակայն աշխատության 97-րդ էջում Առոնն իրավացիորեն համարվում է «ազգաւ բուլղար»։ Ահարոնը բուլղարների թագավոր Հովհաննես-Վլադիսլավի որդին էր, որ բուլղարական թագավորության վերացումից հետո իր եղբայրների հետ բերվեց Բյուզանդիա և անցավ ծառայության։*

*555. Խոսքը Մեծ Զաբ գետի մասին է, որ Վասպուրականի սահմանն էր կազմում (Honigmann*, Die Ostgrenze, S. 179)։

*556. Իբրահիմ Ինալը, Ուռհայեցու Աբրեհմը (էջ 102)։ Սելջուկների այս արշավանքի մասին տե՛ս Успенский*, Движение народов, стр. 15 и сл.։

*557. Լաստիվերցին հիշում է այդ բերդերից մեկը, Մանանաղի գավառի Սմբատաբերդը, որտեղ ապաստան էր գտել անզեն բնակչությունը. «քանզի անդ ժողովեալ*

*էին բազմութիւն անթիւ փախստէիցն, և անասնոցն որ ոչ գոյր թիւ» (էջ 71)։ Սակայն այն չփրկեց իրենց, «Հասեալ անօրինացն ապականեցին զամուրս նորա, և մտեալ ի ներքս՝ սուր վերայ եդեալ կոտորեցին զամենեսին» (էջ 71)։*

*558. Հայ. Օրդորու, Օրդրու, վրաց. Օւդրու։ Գտնվում էր Բասենում* (*Honigmann*, Die Ostgrenze, S. 180)։

*559. Արծնի առումն ու կործանումը շատ մեծ տպավորություն գործեց ժամանակակիցների վրա։ Լաստիվերցին մի ամբողջ գլուխ (ԺԲ) է նվիրել դրան՝ «Վասն Արծինն անողորմ կոտորածին» վերնագրով։ Լաստիվերցին Արծնը համարում է հոյակապ և ականաւոր ...ամենայն աշխարհաց... և իբրև ակն մի պատուական լուսագեղ պայծառութեամբ փայլէր քաղաքս մեր ի մէջ ամենայն քաղաքաց, ամենևին գեղեցիկ, բոլորովին զարդարուն» (էջ 74—75)։ Ուռհայեցու ասելով Արծնն էր «անթիւ բազմութեամբ լցեալ զարանց և զկանանց և անհամար չափս ոսկւոյ և արծաթոյ» (էջ 102)։ Սկիլիցեսի նման նա էլ կոտորված բնակչությունը հաշվում է «իբրև զբիւրս հնգետասան»։ Մատթեոս Ուռհայեցին Արծնի առումը համարում է «սկիզբն ...Հայոց կորստեանս... վասն զի այս է առաջին քաղաք, որ առաւ սրով և գերութեամբ ի Հայոց» (էջ 103)։ Սկիլիցեսը Արծնը անվանում է «գյուղաքաղաք», Ատտալիատեսը* πολιτεία *(էջ 148), որի տակ նա քաղաք է հասկանում։ Մի այլ տեղում Ատտալիատեսը Արծնը կոչում է գյուղաքաղաք, ցույց տալիս, որ այն գտնվում էր Կարինին մոտ, իր աշխարհագրական հարմար դիրքի պատճառով առինքնել էր Թեոդոսուպոլսի բնակիչներին, և Թեոդոսուպոլիսը դրա հետևանքով անմարդաբնակ էր դարձել* (ἀοίκητος)։ *Արծնում կարելի էր գտնել Պարսկաստանից, Հնդկաստանից և Ասիայից բերված ապրանքներ* (*Attal.*, p. 148)։

*560. Մատթեոս Ուռհայեցու մոտ՝ «բերդն՝ որ կոչի Կապուտռու» (էջ 107)։ Հայ պատմիչը ցույց է տալիս, որ բերդն է «ի տեղին՝ որ Արջովիտ ասի»։ Արջովիտը գտնվում էր Բասենի դաշտում։ Լաստիվերցին այն տեղադրում է «ի դաշտին Բասենայ» առանց նշելու բերդի անունը (էջ 80)։ Կարծես Կապուտռուն նկատի ունի Ասողիկը՝ VII դարի վերջերի դեպքերի առնչությամբ։ Հուստինիանոս II կայսրը Ներսեհին նշանակեց «կոմս Կապոյտիրոց»* (Ասողիկ, *էջ 101։ Այլ գրչագրեր տալիս են Կապուտռու ընթերցումը)։*

*561. Նույն բանն է ասում և Ուռհայեցին. «և ասէր Լիպարիտն՝ եթէ «Շաբաթ է, և ոչ է օրէն վրացեացս յառնուլ շաբաթու ի պատերազմ» (էջ 107)։*

*562. Քննական բնագրում՝* Χωροσάντης, *Բոննի հրատարակության մեջ՝* Χωροσανί-της *(Խորասանցի)։*

*563. Քննական բնագրում՝* 'Ασπὰν Σαλάριος, *Բոննի հրատարակության մեջ՝* 'Ασπαν Σελάριος։ *Անուն չէ, այլ «սպասալարի» (ասպասալար) աղավաղումը։*

*564. Սկիլիցեսը գրում է* ἀνεψιός, *որ և՛ քեռորդի, և՛ եղբորորդի է նշանակում։ Մատթեոս Ուռհայեցին տալիս է նրա անունը՝ Չորտվանել և համարում Լիպարիտի «քուրորդին» (էջ 107)։*

*565. Մինորսկին ենթադրում է, որ Կապուտռուի ճակատամարտը և Լիպարիտի գերումն Իբրահիմ Յանալի կողմից տեղի ունեցավ 1048 կամ 1049 թ. սեպտեմբերի 18-ին* (*Minorsky*, Studies, p. 61 n. 2)։

*566. Բնագրում՝* Καστροκώμιον (Καστροκώμη), *որ թարգմանաբար «բերդագյուղ» է նշանակում։ Բայց պետք է կարդալ* κάστρον 'Οκώμιον*— Օկոմի բերդ։ Ուղղումը կատարել է դեռևս Բրոսսեն* (*Brosset*, Additions, p. 225, n. 2), *բայց Սկիլիցեսի քննական բնագրում սխալը մնացել է։ Լաստիվերցին այն անվանում է «մեծ աւանն՝ որ կոչի Օկոմի» (էջ 29), և մի քիչ հետո ավելի հստակ. «աւան մի էր ի գաւառին Բասենոյ՝ մերձ առ ստորոտով լերինն որ կոչի Ծիրանիս, և անուն նորա Օկոմի մարդաշատ և ընչաւէտ» (էջ 102)։*

Ավելորդ չէ նշել, որ Օկոմին հիշում է և Ասողիկը. «Վանս, որ Ակսիկոմս ասի, ի Բասեան գաւառի, ...առ ստորոտով լերինն Ծիրանեաց» (Ասողիկ, էջ 185)։

567. Այս պատերազմում, բացի Կեկավմենոսից (Կամեն), Անհարոն Բուլղարից (Առօն) և Լիպարիտից, մասնակցում էր նաև «Գրիգոր Վասակայ որդին», այսինքն՝ Գրիգոր Մագիստրոսը, որ այն ժամանակ լինելով Միջագետքի կառավարիչը («...գոր ընդ ձեռամբ իւր ունէր՝ և զդքսութիւն Միջագետացն», Վարդան, էջ 133), պետք է որ ի պաշտոնե մասնակցեր մարտին։ «Զայսու ժամանակաւ,— գրում է Վարդանը,— Գրիգոր՝ որդի քաջին Վասակայ... առնու ընդ իւր զԱպիրատ (հավանաբար՝ Լիպարիտ—Հ. Բ.) գիշխան Վրաց և այլ ևս երկու մագիստրոս (երևի՝ Անհարոն Բուլղարին և Կատակալոն Կեկավմենոսին—Հ. Բ.) և երթայ ընդդէմ Իբրահիմայ զօրագլխի Տուղրիլ պէկ սուլտանին» (Վարդան, էջ 133)։

568. Պարսկաստանի Ռեյ քաղաքը։

569. Վասպուրականի կատապան Անհարոն Բուլղարի փոխքարտուղարը։

570. Բոլորովին այլ կերպ է նկարագրում Լիպարիտի գերվելը Մատթեոս Ուռհայեցին։ Հայ պատմիչի ասելով, սկզբնական շրջանում նա ջարդ տվեց թշնամիներին, բայց հոռոմոց զինվորները, տեսնելով Լիպարիտի քաջությունը, լքեցին և փախան, որպեսզի նա «մի առցէ զանուն քաջութեան»։ Բացի այդ, Լիպարիտի ձիու ոտքի ջլերը կտրեց «մի ոմն ի զօրաց Վրացն» (էջ 108), որով նա ընկավ գերի և տարվեց «ի Խորասան առ Տուղրէլ սուլտանն»։ Լաստիվերցին ևս ցույց է տալիս, որ բյուզանդական զորահրամանատարները «ինքեանք իսկ չէին միաբան առ միմեանս», որ պատերազմի ժամանակ «որդի Բուլղարին (այսինքն՝ Անհարոն Բուլղարը) իւրայնովքն ի թիկունս դարձեալ համարձակութիւն տայր թշնամեացն. որք մեծաձայն աղաղակաւ զմիմեանս յորդորէին, և ի մէջ փակեալ զԼիպարիտն իւրով քաջ արամբքն զոմանս սպանանէին, և գերիվարի նորա զջիլսն հատեալ սուսերաւ՝ զինքն ձերբակալ առնէին։ Զոր տեսեալ այլ զօրացն՝ ի փախուստ դառնային» (էջ 81)։ Սկիլիցեսի մոտ, ամենայն հավանականությամբ, տեղ է գտել բյուզանդական զորավարների կայսեր տված զեկուցագիրը, որտեղ պարտության մեղքն ամբողջովին զցված էր Լիպարիտի վրա։ Այդ բանը հաստատվում է և դրանով, որ Լիպարիտին ազատելու համար ինքը՝ Մոնոմախը մեծ փրկագին է վճարում սուլթանին և նրա ազատվելուց հետո մեծ պատիվների է արժանանում կայսեր կողմից (հմմտ. նաև Վարդան, էջ 133—134)։

Ստեփանոս Օրբելյանը Լիպարիտին Օրբելյան է համարում և ցույց տալիս, որ բյուզանդական կայսրը թուրքերի վտանգի առաջն առնելու համար 1049 թ. հայերից ու վրացիներից զինական օգնություն է խնդրում։ Վրաց Դավիթ և Կարսի Գագիկ թագավորները համոզում են «զքաջն անպարտելի՝ զԼիպարիտն Օրբէլեանց՝ գնալ և խառնիլ ի զօրն Յունաց և ընդդիմանալ մարտին եկելոյ»։ Պատմիչի ասելով «կոտորեալ յաղթեաց Իսմայելացւոցն. և փախստական արար զսակաւ մնացեալսն քաջն Լիպարիտ»։ Օրբելյանը շարունակում է. «իսկ անիծեալ և տիրասպան ազատքն Վրաց երկուցեալ յահագին զօրութենէ նորա. և խորհուրդ առեալ ընդ դէղեպուլ զօրագլուխսն Լիպարտի. և յանկարծակի հատին զջիլ երիվարին նորա. և ընկեցին յերկիր զԼիպարիտն։ Եւ ի մէջ առեալ բազմութեանն սպանին զնա ի տեղւոջն...» (Ստեփաննոս Օրբելյան, Պատմություն, էջ 374—377)։

Իբն ալ Աթիրը գրում է, թե 440 (1048/9) թթ. մուսուլմանները հաղթանակ տարան հոռոմների դեմ, փախուստի մատնեցին նրանց, շատերին կոտորեցին և բազմաթիվ պատրիկների գերի տարան։ Նրանց թվում էր և «Ափխազների մելիք (թագավոր) Կարի-

տր»։ Բ. Սիլագաձեի կարծիքով խոսքը Բասենի ճակատամարտի մասին է և Լիպարիտ զորավարի (էրիսթավի)։ Տե՛ս *Силагадзе*, К уточнению одного места, стр. 69։

571. Շերիֆ Նասիր (Նադյիյյա?) իբն Իսմայիլ ալ-Հասանին (տե՛ս *Cahen*, La diplomatie orientale, p. 13)։

572. Դնեպր գետը։

573. Ուզերը (օղուզները) թուրքական ցեղ են։ Դյուլորիեն կարծում էր, որ Ուռհայեցին «ազգք ածիցն» ասելով (էջ 109) նրանց նկատի ունի (ուզ-օձ)։ (Տե՛ս *Matthieu d'Edesse*, p. 404)։ Այս ներքին կռիվների մասին հետաքրքիր տվյալներ ունի Ուռհայեցին. «ազգք օձիցն ելին և հարին զխարտէշքն, և խարտէշքն ելին և հարին զՈւզն և զՊածինակն, և միաբան բորբոքեցան ի վերայ տանն Հոռոմոց» (էջ 109)։ Այսպիսով, Դյուլորիեի ենթադրությունը ուզ-օձ-ի նույնության մասին չի հաստատվում։ Բացի այդ, հիշյալ դարձվածքը հանդիպում է նաև Ղևոնդի մոտ և գործածված է արաբների վերաբերյալ. «իբրև օձք թևաւորք յառաջեցին թշնամիքն» (էջ 9)։

574. Պածինակները դեռ 1036 թ. ջարդ ստանալով Կիևյան իշխան Յարոսլավից, սկսել էին գաղթել արևմուտք։ Նրանք բյուզանդական տիրապետություններն անցան 1048 թ. Ա. Կաժդանի կարծիքով Կեդրենի պածինակները մուտք գործեցին 1045 թ. ոչ ուշ, Տյուրախը ներխուժեց 1046 թ. հունվարին (տե՛ս *Кажэан*, Иоанн Мавропод, стр. 182)։

575. Մերձդանուբյան շրջաններ։

576. Խոսքը սլավոնական Օվչեպոլի մասին է։

577. Բյուզանդա-պածինակյան այս դեպքերի ու հետևանքների մասին մանրամասն տե՛ս *Кажэан*. Иоанн Мавропод, стр. 177—184; *Stanescu*, Le crise du Bas-Danube, p. 49—73։

578. Թվում է լատիներեն բառ է, խորհուրդ նշանակող։

579. Հավանաբար նույն Օկոմին (տե՛ս ծանոթ. 566)։

580. Բնագրում՝ Μανζικίερτε։ Մատթեոս Ուռհայեցու համաձայն սուլթան Տուղրիլը նախքան Մանազկերտ հասնելը, «իջեալ ի քաղաքն, որ կոչի Բերկրի, և պատերազմաւ առեալ զքաղաքն», ապա «պատեալ զքաղաքն, որ կոչի Արճէշ»։ Բնակիչները նրան հնազանդություն հայտնեցին և խորհուրդ տվեցին, գնալ ու գրավել Մանազկերտը, քանզի դրանից հետո «մեք և ամենայն աշխարհն Հայոց քեզ լիցուք ի ծառայութիւն» (էջ 118)։

581. Ուռհայեցու խոսքերով. «և էր զօրապետ քաղաքին իշխանն Հոռոմոց Վասիլն՝ որդի Ապուքապին», որին նա բնորոշում է որպես «այր քարի և աստուածապաշտ» (էջ 119)։ Լաստիվերցին նրան հիշում է «Վասիլն՝ որ քաղաքին իշխանն էր» ձևով (էջ 94), իսկ դրանից առաջ, առանց անունը տալու, նրան բնութագրել էր հետևյալ կերպ. «իսկ իշխանն որ ունէր զհոգ վերակացութեան քաղաքին, քանզի այր բարեպաշտ էր, զամենակալն Աստուած կարդայր յօգնականութիւն» (էջ 90)։ Վասիլ Ապուքապի և ընդհանրապես Ապուքապների մասին տե՛ս *Кажэан*, Армяне, стр. 67—70։

582. Սկիլիցեսը խոսում է բաբանների մասին։ Ուռհայեցին ցույց է տալիս, որ թուրքերը մարդ ուղարկեցին Բաղեշ և բերել տվեցին Վասիլ կայսեր՝ Հեր քաղաքի գրավման համար պատրաստած «ահաւոր և զարմանալի» բաբանը (էջ 119—120), որը սակայն Վասիլ Ապուքապը կրակի տվեց մի ֆրանկ զինվորի օգնությամբ։ Այդ բաբանը (առանց Ուռհայեցու տված մանրամասնությունների) հիշատակում է և Ատտալիատեսը, որը ևս վկայում է, որ այն կրակի տվեց մի լատին զինվոր (*Attal.*, 46—47)։

Մովսես Խորենացին նման մի մեքենա կոչում է «էշ» և տալիս նրա հետաքրքիր նկարագրությունը. «Եւ է այս գործի մեքենայից անուաւոր, յերից երից արանց մղիլով

տարեալ, և ի ներքուստ կացնովք և սակրօք երկբերանովք և կտցաւոր մրճովք՝ փորել զհիմունսն» (Գ, 28)։

583. Ալկանն, ամենայն հավանականությամբ, նույնանում է Լաստիվերցու հիշատակած «Դելմից զօրուն» իշխանի հետ, որ իսկապես գերի ընկավ քաղաքի պաշտպանների ձեռքը (էջ 92)։ Ուռհայեցին այս ընդհարումների ժամանակ հայերի ձեռքում գերի ընկածների թվում հիշում է սուլթանի աներոջ, որին Ոսկեծամ է կոչում։ Կ. Յուզբաշյանը նրան նույնացնում է Ուռհայեցու «Դելմից զօրուն» իշխանի հետ (տե՛ս Юзбашян, Дейлемиты, стр. 146—148)։

584. Ուռհայեցին չգիտե Ալկանի գլուխը բաբանով դեպի սուլթանը շպրտելու մասին, բայց նա ցույց է տալիս, որ բաբանով սուլթանի կողմը գցեցին մի խոզ, ասելով, թե «Ա՛ռ սուլտան, զայգ քեզ կին արա, և մեք տամք զՄանծկերտ քեզ պռոյգ» (էջ 122)։

585. Սուլթանը հեռանալով Մանազկերտից, մտավ Արծկե քաղաքը և կոտորելով, թալանելով ու գերեվարելով բնակչությունը, հեռացավ (Արիստ. Լաստ., էջ 94)։

586. Նկատի ունի մեծ հետերիարխ Կոստանդին Ներքինուն, որը 1047 թ. Աբու-լ-Ասվարի հետ պայմանագիր էր կնքել՝ բյուզանդական տիրույթների անձեռնմխելիությունն ապահովող (տե՛ս վերը, էջ 150)։

587. Այս արշավանքը թվագրվում էր 1048—1049 թթ., այժմ ոմանք գտնում են, թե 1055—1056 թթ. հետո է տեղի ունեցել։ Ըստ Մինորսկու դեպքերը տեղի ունեցան 1048-ին կամ 1049-ին, նախքան Աբու-լ-Ասվարի Գանձակի վրա տիրապետությունը տարածելը (տե՛ս Minorsky, Studies, pp. 55—56, 59—64)։

Ռեկտոր Նիկեփորին հանդիպում ենք և վրաց «Մատիանե Քարթլիսայ»-ում («Матиане Картлисай», стр. 52), որտեղ նա հանդես է գալիս «Լիխտուրի» «անվան» տակ։ Վրաց մասնագետները «Լիխտուրի»-ն համարելով վրացերեն բառ, մեկնաբանում են «սպարապետ» (նույն տեղում, էջ 86), այնինչ դա բյուզանդական «ռեկտոր»-ի պարզ աղավաղումն է։

588. Այս «Երկաթե կամուրջը» (σιδηρᾶ γέφυρα) Լիտավրինը սխալմամբ նույնացնում է Անտիոքից հյուսիս-արևելք, Օրոնտես գետի վրա նետված Σιδηρογέφυρον-ի (Երկաթե կամրջի) հետ, ժամանակակից Gisr al-hadid-ի („Советы и рассказы", стр 641)։ Սկիլիցեսի պատմածից պարզ երևում է, որ Գանձակից (Կիրովաբադ) հեռու չէր գտնվում։

589. Նկատի ունի ժամանակակից Կիրովաբադը։

590. Բնագրում՝ Ἀβιμέλεχ, արաբ. թրք. Աբու Մելիք (կամ Աբդուլ Մելիք)։

591. Այս դեպքերը տեղի ունեցան 1049 թ. առաջ, քանզի այդ թվականին Աբուլ-լ-Ասվարը իր գերիշխանությունը տարածեց նաև Գանձակի վրա։ Երբ Լաստիվերցին Աբու-լ-Ասվարի մասին գրում է, թե նա «զԴուին և զԳանձակ ունէր» (էջ 96), նկատի ունի 1049-ից հետո տեղի ունեցած դեպքերը։ Սկիլիցեսը տարբերություն է դնում Դվինի իշխանի (ἄρχων τοῦ Τιβίου), այն է Աբու-լ-Ասվարի և Գանձակի իշխանի (κατάρχων τοῦ Καντζακίου) միջև։ Վերջինս Լաշկարին էր, որ իշխեց մինչև 1049 թ.։ Սկիլիցեսի ասելով Արտաշիրը [Աբու-լ-Ասվարի] եղբայր, Գանձակի տիրոջ Փադլունի որդին էր։ Մինորսկու կարծիքով Արտաշիրը կարող է լինել միմիայն Լաշկարիի որդին (Minorsky, Studies p. 48—49)։

592. Բառը հունարեն չէ, գուցե արաբերեն Մայդա՞ն (դաշտ, հրապարակ)։

593. Ապստամբ Լևոն Թոռնիկի։

594. Հերվե Ֆրանկոպոլոսին հիշատակում է Մատթեոս Ուռհայեցին 511 (1062) թվականի դեպքերի առնչությամբ, անվանելով նրան «մեծ իշխանն, որ կոչէր Փրանգապօլ»

(էջ 142)։ Ֆրանկոպոլոս թարգմանաբար նշանակում է ֆրանկորդի։ Պահպանվել են նրա արճճե կնիքները, «մագիստրոս, վեստ և արևելից ստրատելատ» մակագրությամբ։

595. Հավանաբար թուրքական կուլի (ծառա, ստրուկ) բառից։

595ա. Կատակալոն Կեկավմենոսը այսքան վերքեր ստանալուց հետո հազիվ թե կենդանի մնար, գեռ ավելին, առողջանալուց հետո շարունակեր իր ռազմական գործունեությունը (արմատից կտրված լեզվով)։ Հետևաբար հետագայում հիշվող մագիստրոս Կատակալոն Կեկավմենոսը այլ անձնավորություն է։ Սկիլիցեսը առաջին Կեկավմենոսին երբեք մագիստրոս չի կոչում, ամենաշատը՝ վեստ։ Առաջինը Սկիլիցեսի գիտական բնագրի հրատարակիչ Թուռնը նրանց երկու տարբեր անձնավորություններ է համարում, հակառակ դրան նորագույն աշխատություններում շարունակում են այգ երկու անձնավորություններին նույնացնել (տե՛ս Каждан, Армяне։ Նաև՝ Shepard, Synopsis)։

596. Տոպոտերետեսը ռազմական աստիճան էր Բյուզանդիայում, տագմայի հրամանատարից անմիջապես հետո եկող և նրան ենթակա (Ahrweiler, Recherches, p. 31)։

597. Բյուզանդական աղբյուրներում հստակ տարբերվում են ֆրանկ և վարանգ (այսինքն՝ վարյագ, սկանդինավացի) հասկացությունները։ Հայկական աղբյուրներում հաճախ վրանգը շփոթվել է ֆրանկի հետ և ձեռագրերում գրիչների մեղքով ֆրանկ են կոչվել վրանգները (տե՛ս Արիստ. Լաստ., էջ 88։ Մատթ. Ուռհ., էջ 350)։ Հարցի վերաբերյալ տե՛ս Еремян, Юрий Боголюбский, стр. 390): Նաև՝ Կ. Ն. Յուզբաշյան, Արիստակես Լաստիվերցու Պատմության մեկ տարընթերցվածքի մասին, էջ 77—79։ Վարյագների մասին տե՛ս Benedikz, The evolution, p. 20—24։

598. Տլուքում, Սև լեռում և Կարկառում բնակվում էին բազմաթիվ հայեր։ Դեռևս Ռոմանոս III Արգիրոս կայսեր ժամանակ Սև լեռան շրջանում կային մեծ թվով հայադավան վանքեր ու մենաստաններ (Արիստ. Լաստ., էջ 42—43), որոնց բնակիչներին կայսրը բռնի գինվորագրեց։ Կարկառը (այժմ Գերգեր Եփրատի ափին) մտնում էր Ուռհայի կատապանության մեջ (Մատթ. Ուռհ., էջ 142)։

599. Բնագրում՝ ἐθνάρχης։ Հավանաբար օտարերկրացիներից բաղկացած զորքերի հրամանատար։

600. Բնագրում՝ ἀκόλουθος։ Այդպես էր կոչվում վարյագների զորահրամանատարը։ IX և X դարերում ակոլութոսը գլխավորում էր օտարերկրացի վարձկան գինվորներին, որոնք գլխավորապես ֆրանկներ էին։ Նա անմիջականորեն ենթարկվում էր Արիթմոսների կամ վիգլայի դրունգարին և իր աստիճանով հավասար էր սխոլերի պրոքսիմոսին և էքսկուբիտորների պրոտոմանդատորին, դրա համար էլ կոչվում էր նաև ἀκόλουθος τοῦ ἀριθμοῦ։ Բոլոր ժամանակներում վարյագները մաս էին կազմում կայսերական գվարդիայի։ Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում աղբյուրները հիշում են միայն այս ակոլութոս Միքայելին։ Մի ակոլութոսի էլ հիշում է Մատթեոս Ուռհայեցին (էջ 83)։ Սրանց մասին մանրամասն տե՛ս Guilland, Les commandants de la garde imperial, p. 79—96։

601. Բոյիլասները հայտնի ընտանիք էին Բյուզանդիայում, ծագումով հավանաբար բուլղար (բոյիլաս հին բուլղարների մոտ նշանակում էր բոյար)։ Բյուզանդական աղբյուրներում անունն առաջին անգամ հանդիպում է Թեոփանեսի «Ժամանակագրության» մեջ, 798 թ. դեպքերի առնչությամբ։ Նշանավոր էր Եվստաթիոս Բոյիլասը, որ 1059 թ. կտակ է գրել, որից երեւում է, որ նա հաստատվել է Տայք-Կղարջքում և ունեցել լայնատարած կալվածներ։ Մանրամասն տե՛ս Բարթիկյան. Բոյիլասի կտակը։

602. Մալիք իբն Իբրահիմ Ինալ։

603. Բնագրում Κάρσε (Կարսե։ Հմմտ. ծանոթ. 25)։ Գրիգոր Բակուրյանի Կանոնագրության մեջ (տե՛ս Georgica, t. V, էջ 246) նույնպես գրված է Κάρσε։ Լաստիվերցին Կարսի գրավման նվիրել է իր աշխատության մի ամբողջ գլուխը (ԺԵ) «Թե որպէս անհնարին հարաւ քաղաքն յղփացեալ, որ կոչի Կարս» վերնագրով։ Քաղաքի գրավումը նա թվագրում է հայոց 502 թ. (8 մարտ 1053—7 մարտ 1054), Քրիստոսի Հայտնության տոնին (6 հունվար), հետևաբար 1054 թ. հունվարի 6-ին։ Նա ևս նշում է, որ թշնամին չկարողացավ գրավել միջնաբերդը. «Թէ ոք ժամանեաց յամուրն ելանել որ ի վերայ քաղաքին կայ, նա միայն ապրեցաւ» (Արիստ. Լաստ., էջ 84)։ Շարունակելով իր պատմությունը, Լաստիվերցին ցույց է տալիս, որ թուրքերը քարուքանդ արեցին տները, ապա քաղաքը կրակի տվեցին և գերիներով ու թալանով հեռացան իրենց երկիրը։ Դեպքերի մասին տե՛ս Еремян, Присоединение, стр. 12:

604. Արիստակես Լաստիվերցին «Վասն գալոյ սուլտանայ» գլխում ցույց է տալիս, որ 503 (1054) թ. սուլթանը բանակեց Ապահունյաց գավառում, Մանազկերտ քաղաքի շուրջ, որտեղից «արձակեաց ասպատակս յերեսին կողմանս աշխարհիս, ի հիւսիս՝ մինչև յամուրն Ափխազաց և մինչև ի լեառն որ կոչի Պարխար և մինչև ցստորոտն Կովկասու. և յարևմուտս՝ մինչև յանտառսն Ճանեթոյ, իսկ ի հարաւ մինչև ցՍիմն կոչեցեալ լեառն» (էջ 84—85)։ Պատմիչը շարունակում է. «իսկ որ ի Տայսն մտին, առեալ զերկիրն և հասեալք մինչև ի գետն մեծ՝ որ կոչի Ճորոխ, և զկնի գետոյն դարձեալ իջին յաշխարհն Խաղտեաց. և առեալ զառ և զգերի գաւառին՝ դարձան, և եկեալ մինչև ի բերդաքաղաքն որ կոչի Բաբերդ» (էջ 87)։ Տայքը, հարկավ, նույնանում է Սկիլիցեսի Իբերիային, իսկ վերջինիս խայդիայի տակ՝ ենթադրվում է Լաստիվերցու Խաղտիքը։

Այս նույն գլխում Լաստիվերցին ցույց է տալիս, որ սելջուկները ասպատակեցին նաև Խորձյանն ու Անձիտը, Դերջանն ու Եկեղյաց գավառը, բայց, ինչպես իրավացի նշում է Կ. Յուզբաշյանը, Լաստիվերցին նկատի ունի տարբեր տարիներում տեղի ունեցած արշավանքները („Повествование", стр. 165)։

605. Այդ մասին գրում է Լաստիվերցին։ Տողրուլ բեկի դեմ, ասում է նա, Բաբերդում դուրս եկավ «գունդ մի ի զօրացն Հոռոմոց, որ կոչին Վռանգք» (էջ 87—88)։

606. Սկիլիցեսը ցույց է տալիս, որ սուլթանը կռվի չբռնվեց Միքայել ակոլութոսի գլխավորած ֆրանկների և վարյագների հետ, մինչդեռ ըստ Լաստիվերցու ճակատամարտ տեղի ունեցավ և հոռոմները հաղթեցին, ազատեցին գերիներին։ Պատմիչը գրում է նաև, որ սուլթանի մի այլ զորք Վանանդում սլատերազմի բռնվեց Գադիկ Արասյանի քաջազուն իշխանների հետ, նրանց պարտության մատնեց և, ի միջի այլոց, գերեց Թաթուլ իշխանին, որին տարան Տողրուլ բեկի մոտ և մահապատժի ենթարկեցին (էջ 88)։

607. Ատտալիատեսի վրա այս փիղն ու ընձուղտն այնքան մեծ տպավորություն գործեցին, որ նա ամենայն մանրամասնությամբ նկարագրում է այդ կենդանիներին, որոնց նա, անկասկած, առաջին անգամ էր տեսնում (Attal., p. 48—50)։

608. Կոստանդնուպոլսի ամենանշանավոր վանքերից մեկը։ Իր գոյությունը պահպանեց մինչև մայրաքաղաքի անկումը, որից հետո անցավ դերվիշների ձեռքը։ 1467 թ. Մեհմեդ II-ը այն քանդեց և նրա տեղում կառուցեց սերայլը, նրա շինարարության համար օգտագործելով սբ. Գեորգի վանքի և եկեղեցու քարերը։

609. «Իբերական» (և Միջագետքի) զորքերի լուծարքի մասին տե՛ս նաև՝ Glycae Annales, p. 598։ Կեկավմենոսը գրում է, որ Կոստանդին Մոնոմախի հրամանով Սերվլիասը գնաց Իբերիա և Մեսոպոտամիա՝ ունեցվածքի հաշվառում կատարելու (ἀναγράψασθαι, դա կատարվում էր 15 տարին մեկ և հաշվառման էին ենթարկվում հար-

կատու բնակչության շարժական ու անշարժ ունեցվածքը, ամենից առաջ հողն ու լծկան անասունները)։ Սերվլիասը այնպիսի հարկեր նշանակեց, որպիսիք այդտեղի մարդիկ, Կեկավմենոսի ասելով, իրենց օրում չէին տեսել։ Հենց այդ բանն էլ «բնակիչներին ստիպեց տնով տեղով անցնել պարսից (իմա՝ սելջուկների) թագավորի (հավանաբար՝ Տողրուլ բեկի—Հ. Բ.) կողմը։ Նրան ամբողջ զորքով բերելով ընդդեմ Ռոմանիայի, երկիրը ողողեցին բյուր փորձություններով ու արհավիրքներով» („Советы и рассказы", стр. 152—154։ Համմտ. և *Attal.*, p. 44—45)։

Ավելորդ չէ ասել, որ Սկիլիցեսի (և բյուզանդական մյուս հեղինակների) հիշած «իբերական» զորքը չի կարելի միայն վերագրել Իբերիային (Տայքին)։ Է. Հոնիգմաննի կարծիքով դա հայկական զորք էր՝ „iberische Heer, d. h. die einheimische Miliz Armeniens" (*Honigmann*, Die Ostgrenze, S. 178)։

610. Շատ պատկերավոր է նկարագրում այս քաղաքականությունը Զոնարասը։ «Կային երկրներ,—գրում է նա,— որ կայսեր հարկատու չէին, այլ ամեն տեսակի հարկատվության փոխարեն պաշտպանում էին (երկրի) դժվարանցանելի վայրերը և հռոմայեցիներին հպատակ երկրների առջև բարբարոսների ճանապարհն էին պարսպապատում։ (Կայսրն)՝ այդ երկրների վրա հարկեր նշանակեց և ցրեց պահակազորերը։ Դրա հետևանքով բարբարոսների մուտքը հռոմեական շրջանները հեշտացավ։ Միանգամայն չնախապաշարված մարդիկ հենց այս մարդուն (կայսեր—Հ. Բ.) պետք է համարեն (պետության) արևելյան մասը բարբարոսական նիզակի կողմից նվաճվելու պատճառ» (*Zonar*., IV. p. 178)։

611. Ավելի մռայլ գույներով է բնութագրել Կոստանդին Մոնոմախին Կեկավմենոսը։ Նա գրում է, որ Մոնոմախը «ավերեց ու ամայացրեց հռոմայեցիների թագավորությունը» («Советы и рассказы», стр. 288)։ Նրանցից ետ չի մնում Լաստիվերցին։ Մոնոմախի առնչությամբ նա բերում է Սողոմոնի առակը (ԻԹ, 4) թե «թագաւոր արդար կանգնէ զաշխարհս, իսկ անօրէնն կործանէ»։ Վերջինիս տակ նա Մոնոմախին նկատի ունի, որ «միշտ ուտելեաց և ըմպելեաց պարապեալ, զաղբիս մեծացուցանէր, և զգանձս, զոր ի հարկաց ամենայն աշխարհաց ժողովէր... ի բոզից ծախսն վճարէր և ոչինչ ցաւէր նմա աշխարհի աւերումն» (էջ 95)։ Նա «թագաւորեաց ամս երեքտասան, ոչինչ բարի յիշատակաց արժանի եղեալ» (նույն տեղում)։

612. Կոստանդին Ծիրանածինը բացատրում է տերմինը. «Նա ում վստահված է կայսերական գրչի հոգսը»։ Գլխավոր քարտուղար։

613. Բառացիորեն նույն բանն է ասում Լաստիվերցին, «իսկ Թէոդոռայ... կալաւ զԹագաւորութիւնն իբրև զիւր սեպհական ժառանգութիւն հայրենի» (էջ 95)։

614. Թեոդորայի թագավորության առնչությամբ Լաստիվերցին մի հետաքրքիր տեղեկություն է տալիս, որ չկա Սկիլիցեսի մոտ։ Հայ պատմիչի ասելով, սուլթանը (Տողրուլ բեկը) կայսրուհու մոտ դեսպանություն է ուղարկում, պահանջելով Բյուզանդիայի՝ արաբների ձեռքից խլած քաղաքներն ու բերդերը, կամ, հակառակ դեպքում, օրական հազար դահեկան։ Թեոդորան նրան ուղարկեց ձիեր, ջորիներ, բազում գանձեր ու ծիրանի հանդերձներ (էջ 96)։ Մի այլ տեղում պատմիչը գրում է. «թագուհւոյն զՍուլտանն իբրև զքաղցեալ դազան՝ տրոց առատութեամբ յագեցուցեալ» (էջ 101)։

615. Պրետորիոնը, Խալկեն, Ստրատեգիոնը Կոստանդնուպոլսի բանտեր էին։

616. Սկիլիցեսի մոտ սենատ (σύγκλητος) և սենատոր (συγκλητικός) տերմինները շատ ընդհանուր են և իրականում նշանակում են աստիճանավորների ամբողջությունը և բարձրաստիճան պաշտոնեությունը (տե՛ս *Guilland*, Le Preposite, p. 349)։

617. Տե՛ս ծանոթ. 615։

618. Չշփոթել Նիկեփոր II Փոկասի ժամանակ գործած Միքայել Բուրցիսի հետ։ XI դ. կեսերին այդ ընտանիքը համարվում էր ամենանշանավորներից։ Սկիլիցեսը մի քիչ հետո Բուրցիսներին, Արգիրոսների, Սկլերոսների և Բրիեննիոսների կողքին, համարում է Անատոլիկոնի առաջին արիստոկրատները (Каждан, Армяне, стр. 86):

619. Հմմտ. Մատթ. Ուռհ., էջ 133. «առաւել քան զգազանս» չար և արյունարբու ամիրա Սամուխ։

620. Հմմտ. Արիստ. Լաստ., էջ 103. «իսկ ընդ մեծամեծսն ատենախօս եղեալ, ասէ. Կամ ելէք ընդդէմ Պարսից ի պատերազմ, և մի՛ տայք զերկիր ապականել. կամ թէ ոչ, զձեր հոգն հարկեցից Պարսից, և պահեցից զաշխարհս ի խաղաղութեան։ Որում ոչ հաւանեալ իշխանացն՝ ելին... և միաբանութեամբ ղաշն արարեալ՝ անցին ընդ ծովն, և ժողովեցան զօրք բազումք, որոց ոչ գոյր թիւ։ Որոց առաջնորդք էին Կոմիանոսն (իմա՝ Իսահակ Կոմնենոսը—Հ. Բ.) որ և թագաւորեացն իսկ և Կամենասն (Կատակալոն Կեկավմենոսը)»։

621. Բառացի չհասկանալ։ Նշանակում է և կալված։ Տե՛ս ծանոթ. 405։

622. Հավանաբար Վասպուրական։

623. Մերվանյան ամիրա Նասր ադ-Դաուլա Աբու Նասր Ահմադ (1010—1061)։

624. Սկիլիցեսը գրում է Ֆրանկոպուլոսի սոսկ գերման մասին։ Ուռհայեցին չգիտե դա, բայց գրում է, որ նրան կայսրը Կոստանդնուպոլիս կանչեց ու ծովահեղձ արեց, քանզի վերջինս պատճառ էր դարձել Ուռհայի կառավարիչ Դավատանոսի (Դիավատինոսի) սպանության։ Ուռհայեցու շարադրանքից երևում է, որ դա տեղի ունեցավ Տուկիծ (Դուկաս) կայսեր օրոք (էջ 144):

625. Ռոճիկ ենք թարգմանում բնագրի σιτηρέσιον-ի։ Դա, ինչպես բառն է ցույց տալիս (σῖτος- ցորեն), սկզբնական շրջանում պետության կողմից կենտրոնական (և ոչ բանակաթեմային) զինվորին տրվող ուտեստ-կերակուրն էր։ Այդ կերակուրը հավանաբար չէին ստանում բանակաթեմերի զինվորները, որոնք, զինվորական ծառայության դիմաց, պետությունից հողակտոր ստանալով, իրենք էին իրենց այդ կարիքները հոգում։ Բայց նրանք ստանում էին վարձ՝ դրամ։ XI դ., ինչպես ցույց է տալիս Սկիլիցեսի վերոհիշյալ տվյալը, σιτηρέσιον-ի և ռոճիկի միջև տարբերությունը վերացել էր և կենտրոնական զինվորներն իրենց կերակուրը ստանում էին դրամով։ Ավելի մանրամասն տե՛ս *Ahrweiler*, Recherches, p. 7—8, 12, 25։

626. Կաստամոն (Castra Comneni), այժմ Կաստամբոլ Թուրքիայում։

627 Տաքսիսը 128 ռազմիկներից բաղկացած զորամաս էր։

628. Բնագրում՝ καὶ τοὺς οἰκείους։ Այդ դարձվածքի տակ կարելի է հասկանալ ինչպես պետության կողմից զորավարին վստահված զորքը, այնպես էլ ֆեոդալի սեփական զորամասը (տե՛ս *Литаврин*, Был ли Кекавмен... феодалом?, стр. 231 и сл. 236—238)։

629. «Կնոջ» բառից հետո Սկիլիցեսի երկի երկու գրչագրերում կա ընդմիջարկություն. «էկատերինեին, Բուլղարիայի (var. բուլղարների) թագավոր Վլադիսլավի դուստեր»։

630. Նշանակում է՝ «իշխանակից»։

631. Բնագրում՝ ὥσπερ ἐκ κύκλου γραμμαὶ πρὸς αὐτὸν ὡς εἴς τι σημεῖον νενεύκασιν ἐν ἴσῳ καὶ ἀπαραλλάκτῳ βουλήματι։

632. Քննական բնագրում՝ Տրախանիոտես, Բոննի հրատարակության մեջ՝ Տարխանիոտես։ Ճիշտը Տարխանիոտես ձևն է, քանզի անունը ծագում է թուրքական «թարխան» բառից (տե՛ս *Moravcsik*, Byzantinoturcica, Bd. II, S. 299—300։ Ավելորդ չէ ասել,

որ երկու ձեռագիր տալիս է Ταρωνίτης (Տարոնացի) սխալ ընթերցումը։ Ուռհայեցին նրան կոչում է Տարխանիատ (էջ 200)։

633. Բոննի հրատարակությունը տալիս է Մավրոկատակալոն ընթերցումը։ Հայկական աղբյուրներում վկայված է Կատակալոս ձևը (հմմտ. Սրվանձտյանց, Թորոս աղբար, հտ. Բ, էջ 313։ նաև՝ Ալիշան, Հայապատում, էջ 396)։

634. Ὁ τῶν φιλοσόφων ὕπατος։ Երևելի գիտնականներին տրվող տիտղոս էր։

635. Վանական դառնալուց հետո կոչվեց Միքայել։ Նշանավոր քաղաքական գործիչ, գրող ու գիտնական, Կոստանդնուպոլսի բարձրագույն փիլիսոփայական դպրոցի առաջին ղեկավարը։

636. Սրանց դեսպանության մասին տե՛ս Արիստակես Լաստիվերցու մոտ, էջ 112. «սկսաւ դեսպանս առաքել. պարգևս խոստանայր ե զԿիւրապաղատին իշխանութիւնն յարևելս տալ նմա»։

637. Քննական բնագրում՝ ἀπάξειν (իրենց հետ տանել), Բոննի հրատարակության մեջ՝ ἀπάγξειν (խեղդել, խեղդամահ անել)։

638. Հմմտ. Արիստ. Լաստ. էջ 112. «Եւ քանզի պատրիարքն ի կողմն Կոմիանոսին էր, զբաղումս ի գլխաւորաց քաղաքին միաբանեաց ընդ ինքեան. և տարեալ ի ներքս զԿոմիանոս, թագաւորեցուցին»։

639. Հմմտ. Լաստիվերցի, էջ 112. «Եւ զՄիխայիլն աքեղայ արարեալ, ի կղզի անցուցին. բայց ասեն թէ ինքն յօժարութեամբ չոգաւ»։

640. Կոստանդնուպոլսի ակրոպոլսի։

641. Հմմտ. Մատթ. Ուռհ., էջ 125. «Եւ հրամայեաց թագաւորն Կոմանոս դեկան (դահեկան) զարկանել յիւր անուն և զթուրն հանել ի վերայ ուսոց իւրոց, եթէ «Իրով առի զաթոռ թագաւորութեանս»։

642. Կայսրուհի։

643. Ասել է հռետոր Դեմոսթենեսն իր Առաջին Օլինթիական ճառում (Ա. 20)։

644. Օֆֆիկիա նշանակում է այն պաշտոնը, որ կրում էին եկեղեցական, արքունական, քաղաքական և զինվորական պաշտոնյաները։ Ոմանց համար դա պատվավոր մի տիտղոս էր, ուրիշների համար նշանակում էր որոշակի պաշտոն։

645. Սյուբարիսը հարավային Իտալիայի հունական հին քաղաք էր։ Նրա արտակարգ հարստությունը պատճառ դարձավ բնակիչների՝ սյուբարիտների հղփացման ու նրանց բարքերի անկման, որով սյուբարիտ բառը ստացավ բացասական իմաստ։

646. Շատ տարածված առած է։ Տե՛ս Πολίτης, Δημώδεις παροιμίαι:

647. Կոստանդին III Լիխուդեսը։ Աթոռակալել է 1059 թ. փետրվարի 2-ից 1063 թ. օգոստոսի 9-ը։

648. Բնագրում՝ τῆς τῶν Μαγγάνων προνοίας (այսինքն՝ Մանգանան տվեց որպես «պրոնիա»)։ Պրոնիա, որ հոգացողություն է նշանակում. Բյուզանդիայում ուներ նաև որոշակի տեխնիկական տերմինի իմաստ, «պրոնիա» այսինքն՝ պարգև։ Սկիլիցեսի տվյալ հիշատակությունը որպես տեխնիկական տերմին են ընդունում մի շարք պատմաբաններ (տե՛ս Сборник документов, стр. 190): Օստրոգորսկին (Feodalite p. 20) գտնում է, որ սա պրոնիայի հիշատակության առաջին դեպքն է։ Ցոլակիսը ցույց է տալիս, որ Սկիլիցեսի «Շարունակության» մեջ հաճախ հանդիպող այդ բառը տեխնիկական տերմինի նշանակություն չունի, այլ պարզապես նշանակում է «հոգացողություն» (Τσολακης, Ἡ Συνέχεια σελ. 191): Հավանաբար նրա օգտին է խոսում և Մանգանայի պրոնիայի մասին հիշատակող պարբերության վերջում դարձյալ հանդես եկող այդ բառը (τῆς αὐτοῦ προνοίας — «նրա հոգացողությունից»), որի մեջ և ոչ մի տեխ-

նիկական տերմին տեսնել հնարավոր չէ, ինչպես և հնարավոր չէ ենթադրել, որ հեղինակր նույն պարբերության մեջ երկու անգամ հիշատակեր նույն բառը, մի անգամ մի կերպ հասկանալով, մյուս անգամ՝ այլ։

Արիստակես Լաստիվերցին Միքայել Պափլագոնացու ժամանակվա դեպքերը շարադրելիս, գրում է, թե կայսրը «հաւատայ ի նա (այսինքն՝ իր եղբոր—Հ. Բ.) զհոգս Բուլղարացն և արևմտական կողմանցն» (էջ 47)։ Կ. Յուզբաշյանը ընդգծված բառը թարգմանում է «прония» և նրա տակ տեսնում տեխնիկական տերմին, բյուզանդական տերմինի պատճենահանումը, իսկ նրա կրողին նույնացնում է բյուզանդական աղբյուրների προνοητής-ի հետ (տե՛ս նրա «Варяги и прония», стр. 21—24: Նաև՝ «Повествование», стр. 24, 74, 151—152): Բայց նման դարձվածք, ինչպես Յուզբաշյանն է ցույց տալիս, կա դեռևս Մովսես Խորենացու մոտ. «հաւատացեալ զՄաժաք և զհոգս Միջերկրայն» (էջ 127)։ Հետևաբար հիմք չկա Լաստիվերցու «հոգի» մեջ անպայման բյուզանդական տեխնիկական տերմին տեսնել։ Լաստիվերցու «հոգը» իմաստային առումով կարելի է նույնացնել բյուզանդական πρόνοια բառի հետ՝ φροντίς իմաստով։

Պրոնիայի վերաբերյալ բյուզանդական աղբյուրների տվյալները մինչև XII դարը Կ. Վ. Խվոստովան համարում է ոչ բավարար չափով հստակ։ Դրա էությունը պարզ է դառնում XII—XV դդ. աղբյուրների տվյալներից։ Պրոնիան ուսումնասիրողների մեծ մասի համաձայն իրենից ներկայացնում էր պետական ծառայության դիմաց հողի ժամանակավոր պարգևում, եվրոպական բենեֆիցիումը կամ լենը։ Պ. Խարանիսը և Ա. Կաժդանը գտնում են, որ պրոնիան ոչ թե հողի պարգևում էր, այլ հարկի։ Տե՛ս *Каждан*, Аграрные отношения; Նաև՝ *Хвостова*, О некоторых особенностях, стр. 212—230, որտեղ և մանրամասն գրականություն։

649. Մատթեոս Ուռհայեցին գրում է, որ Կոմնենոսը գահ բարձրանալուց հետո արշավեց պածինակների դեմ։ Հայ պատմիչը ևս հիշում է Տօնաւիս» (Դանուբ) գետը, ինչպես և նալսեր պարտության հիմնական պատճառը. «եւ գի ահա ելանէր ամպ յարևմտից և գայր ի վերայ բանակին Կոմանոսին... և եղեն ճայթմունք և որոտմունք, և հրացայտ փայլատակմունս յարուցանէր. և յայնժամ սկսաւ ի կարկուտս մեծամեծս և րախեալ հարկանէր զբանակն և սաստկապէս դիպէր ամենայն զօրացն» (էջ 125—126)։ Հայ պատմիչի ձեռքում հավանաբար բյուզանդական աղբյուր է եղել։

650. Զարմանալիորեն նման շարադրանքի ենք հանդիպում Ուռհայեցու մոտ. «գիտացեալ Կոմանոսն, եթէ այս ամենայն աստուածասաստ բարկութիւնս վասն իմոյ յանցանացն եհաս ի վերայ քրիստոնէից... եկեալ ի Կոստանդնուպօլիս և անկեալ առաջի Աստուծոյ՝ խնդրէր զթողութիւն մեղաց իւրոց, զոր արար. և այնուհետև խնդրէր ելանել յաթոռոյ թագաւորութենէն և մտնել ի կարգ ապաշխարութեան պահօք և արտասուօք» (էջ 126). «կամեցաւ զգենուլ զգեստ կրօնաւորութեան և միաւորիլ ի վանք կրօնաւորութեան» (էջ 127)։ Դարձյալ կարելի է բյուզանդական սկզբնաղբյուրի առկայություն ենթադրել։ Տե՛ս նախորդ ծանոթագրությունը։

651. Կարևոր մանրամասնություններ է տալիս Ուռհայեցին։ Կոստանդին Դուկասը (պատմիչի մոտ՝ Տուկիծ) Ուռհա քաղաքի դուքսն էր։ Կայսրը «առաքեաց ի կողմն Տաճկաց ի քաղաքն յՈւռհա և բերեալ զտուկ քաղաքին Ուռհայու, որում անուն էր Տուկիծ, վասն զի ի մեծամեծաց ազգէ էր, և առեալ զթագն դնէր ի գլուխ Տուկծին և երկրպագէր նմա, և նստոյց զնա յաթոռ թագաւորութեանն և ինքն գնացեալ յանապատ և եղև վանական» (էջ 127)։ Դուկասների մասին նորագույն ուսումնասիրությունը. *Polemis*. Doukai։ Աղբյուրների հիշատակած բոլոր Դուկասները միևնույն ընտանիքին չեն պատկանում։ Առաջին Դուկասը հիշատակված է 855 թ.։ Արտահայտվել են կարծիքներ, որ

Դուկասների այս առաջին ճյուղը հայկական ծագում ուներ, մի բան, որ Պոլեմիսը մերժում է։ Վասիլ II-ի ժամանակ հանդես եկած Դուկասների ճյուղը արևելյան ծագում ունի (Պափլագոնիա) և Բյուզանդիայում բարձր դիրքի հասավ 1050—1150 թթ. (տե՛ս նաև՝ V. Laurent-ի գրախոսականը վերոհիշյալ գրքի մասին Byzantinische Zeitschrift-ի 65-րդ հատորում (1972), էջ 94—97)։

652. Մյուրելեոնի պալատը Ռոմանոս I Լակապենոսի պալատն է, որ վերջինս վանքի էր վերածել նույն անվամբ։ Այժմ՝ Բոդրում ջամի։ Գտնվում էր Թեոդոսիոսի հրապարակից մի փոքր հարավ-արևմուտք։

653. Այս դավադրությունը տեղի ունեցավ 1061 թ. ապրիլի 23-ին (տե՛ս Polemis, Notes, p. 61)։ Օրը որոշվում է սբ. Գեորգի տոնով, որ հունական եկեղեցին նշում է այդ օրը։

654. Սեկրետների (մինիստրությունների) հետ առնչություն ունեցող։

655. «Ուժեղների»՝ այսինքն հողատեր ֆեոդալների։

656. Ամենայն հավանականությամբ, նկատի ունի «Հայաստանի և Իբերիայի» բանակաթեմը։ Թվարկած տեղանունների մեջ բացակայում է Հայաստանը, պետք բացատրել «Իբերիա» հասկացության մեջ նաև Հայաստանի առկայությամբ։

657. Լաստիվերցին հիշյալ դեպքերին նվիրել է իր աշխատության երկու գլուխ՝ ԺԹ «Վասն աւերանաց երկրին Միջագետաց և որ ինչ ի նմա քաղաքք, և անչափ կոտորածին» և ԻԱ՝ «Կործանումն Մելիտենոյ շահաստան քաղաքին» վերնագրով, որտեղ շատ ավելի մանրամասնություններ է հաղորդում, քան Սկիլիցեսի Շարունակողը։ Հայ պատմիչը ցույց է տալիս, որ թուրքերը, հասնելով Կամախ, բաժանվեցին երկու մասի, մեկը գնաց Կոլոնիա, մյուսը՝ Մելիտենե, որոնք գրավեցին ու ավերեցին, ավարառեցին ու թալանեցին։ Մելիտենեից թուրքերը գնացին մինչև Խորձյան, այսինքն՝ ոտք դրեցին նաև Չորրորդ Հայք։ Տարոնում, սակայն, սասունցիներից ջարդ ստացան։ Հայոց զորքերը գլխավորում էր Մուշեղի որդի քաջ Թոռնիկը, որը «աղատեաց զանթիւ բազմութիւնն զՄելտենւոյ քաղաքին ի ծառայութենէ անօրէն ազգին Պարսից» (Մատթ. Ուռհ., էջ 131)։ Սկիլիցեսի Շարունակողը այս դեպքերից հետո խոսում է Անիի գրավման մասին, որ տեղի ունեցավ 1064 թ., այն էլ ոչ թե Տողրուլ բեկի, այլ նրա հաջորդ Ալփ Արսլանի կողմից։ Մինչ այդ թուրքերը դեռ բազում անգամ ասպատակեցին բյուզանդական արևելքը։ Նրանք 508 (1059) թ. Սամուխի, Ամրքափրի և Գիճաճիճիի գլխավորությամբ գրավեցին, ավերեցին Սեբաստիան, 511 (1062) թ. մտան Պաղնատուն (Չորրորդ Հայք) և Թլմուխ։ Նրանց գլխավորում էին Սլար Խորասանը (Սկիլիցեսի Խորոսալարիոսը), Ծմճմը և Իսուլվը (Մատթ. Ուռհ., էջ 133 և հտ.)։

658. Բնագրում՝ Χωροσὰν σελάριος, այլ ձեռագրերում՝ Χωροσαλάριος, որ սխալմամբ անուն է համարված, այնինչ տիտղոս է և նշանակում է Խորասանի սպասալար (տե՛ս Moravcsik. Byzantinoturica, II, S. 349)։ Տե՛ս և նախորդ ծանոթագրությունը։ Ատտալիատեսը գրում է, որ «իրենց զորահրամանատարներին թուրքերն անվանում են ամիրաներ և սելարներ» (Attal. p. 276—277)։

659. Խոսքը Բագարատ Վխկացու մասին է, որ 1059 թ. Վասպուրականի կատապանն էր։ Անիի մայր տաճարի վրա փորագրված իր արձանագրությունում նա գրում է, թե «...ողորմութեամբ սուրբ և ինքնակալ թագաւորին Կոստանդեա Դուկի կամ եղև իմ Բագրտա մագիստրոսի և Արևելից կատապանիս Վխկացոյս՝ առնել ողորմութիւն մայրաքաղաքիս Անւո...» («Դիվան», պր. Ա, էջ 37)։ Հետևաբար նա Անի է ուղարկվել Կոստանդին X Դուկաս կայսեր (1059—1067) օրոք, բայց քանի որ Անին թուրքերը գրավեցին 1064 թ., ապա մնում է 1059—1064 թթ. միջև որոշել նրա Անիի (Հայաս-

տանի և Իբերիայի) կառավարիչ նշանակվելը։ Բենեշևիչը գտնում է, որ դա կատարվեց 1063 թ., քանի որ, ըստ Սկիլիցեսի Շարունակողի, մինչև այդ Ալփ Արսլանը (հիշենք, սակայն, որ Սկիլիցեսի Շարունակողը նրա անունը չի տալիս), ամայացրել էր բազում շրջաններ և հասել էր մինչև Վասպուրական (*Бенешевич*, Три Анийские надписи, стр. 24—25): Ավելորդ չէ ասել, որ Սկիլիցեսի Շարունակողը, ճիշտ է, Բագարատի Անի ուղարկվելու մասին խոսում է թուրքերի կողմից տվյալ երկրների ավերման մասին պատմությունը տալուց հետո, բայց դա դեռևս փաստ չէ, որ Բագարատն իրադարձություններից հետո է ուղարկվել Անի։ Դժվար չէ համոզվել, որ Սկիլիցեսի Շարունակողը մի տեղում և մի քանի տողում շարադրում է թուրքերի տարիներ տևած ասպատակությունների մասին ընդհանրապես։ Հետևաբար Բագարատը կարող էր Անի ուղարկված լինել 1063 թ. առաջ։

Բագարատի գործունեությունը Անիում մռայլ գույներով է նկարագրում ժամանակակից պատմիչ Միքայել Ատտալիատեսը։ Կայսրությունից Անին զրկողը, գրում է նա, Մոնոմախի կծծիությունն էր։ Անիի կառավարիչը, շարունակում է նա, ռոճիկ (σιτηρέσιον) էր ստանում, բայց կայսեր ներկայացավ ոմն հայ Բագարատ անունով, և նրա՛ն ասաց, թե կառավարչի պաշտոնն առանց վարձի կարող է վարել և ավելի լավ պահպանել քաղաքն ու նրա ողջ շրջակայքը։ Կայսրը նրան ընդառաջեց, նշանակեց դուքս և հանձնեց կառավարչի պաշտոնը (ἡγεμονία)։ Բայց Բագարատը վատ էր վարում գործերը, նա միջնաբերդը հացով չապահովեց, պատերազմական կամ քաղաքական ոչ մի հարց ճիշտ ու ստատ չլուծեց և հոյակապ քաղաքը գցեց մեծ վտանգների մեջ, քանզի ի վերա ամենայնի այս «անվարձ զորավարը» (ἄμισθος στρατηγός), ինչպես անվանում է Ատտալիատեսը Բագարատին, կայազորն էլ էր ցրել՝ պետությանը օգուտ տալու համար և խոստացել քաղաքն առանց կայազորի պաշտպանել (*Attal*. p. 80—81)։

Նույն կերպ է նրան բնութագրում և Մատթեոս Ուռհայեցին. «անօրէն իշխանքն Հոռոմոց՝ զորս կացուցեալ էր թագաւորն պահապանս տանն Հայոց, Բագրատ հայրն Սմբատայ և Գրիգոր Բակուրանին որդին» (էջ 148)։ Բակուրանի որդի Գրիգորին (Գրիգոր Բակուրյանին) հիշում է Դավիթ Շինարարի «Պատմությունը»։ «Գիորգի թագավորը,— ասված է այնտեղ,— գնաց իր տիրույթը՝ Տայք և հասավ Բանա։ Այնտեղ իր մոտ եկավ արևելից կառավարիչ Բակուրանի որդի Գրիգորը, որը տիրում էր Օլթիին, Թեոդոսուպոլսին և Կարսին» (*Каухчишвили*, Грузинские источники, стр. 12)։ Գրիգոր Բակուրյանի մասին տե՛ս *Арутюнова*, Типик Григория Пакурпана: Նաև՝ Մուրադյան, Գրիգոր Բակուրյանի «Սահմանքը», էջ 103—118։ *Шанидзе*, Великий доместник: *Каждан*. Армяне, стр. 60—63.

660. Անիի հետ կապված դեպքերը նկարագրելիս, Ատտալիատեսը տալիս է քաղաքի վերաբերյալ արժեքավոր տեղեկություններ։ Նրա ասելով Անին մեծ ու բազմամարդ քաղաք է, ամեն կողմից բնական խրամներով, գահավեժ ժայռերով շրջափակված, իսկ այնտեղ, որտեղ չկան կիրճեր, այնտեղից էլ հոսում է շատ խոր և անանցանելի գետ։ Քաղաքի այն փոքր մասը, որտեղից մատչելի է, այն էլ ամուր պարիսպներով է պաշտպանված։ Այդ էր պատճառը, որ Մոնոմախը չկարողացավ այն զենքով գրավել (*Attal*. p. 79, տե՛ս նաև վերը, ծանոթ. 520)։

Անին գրավվեց 1064 թ. օգոստոսի 16-ին։ Քաղաքի անկման մասին կարևոր մանրամասնություններ է հաղորդում Ատտալիատեսը, որոնք չկան անգամ հայկական աղբյուրներում։ Անիի բնակիչները, գրում է նա, լինելով վաճառական մարդիկ և պատերազմական գործերում անփորձ, որոշ ժամանակ դիմադրեցին, բայց չկարողացան դիմանալ, քանզի ի վերա ամենայնի դուքս Բագարատի և կայսեր կողմից նրա օգնության

*ուղարկված ոմն «թագավորական ծառայի» (սրա տակ ենթադրվում է Գրիգոր Բակուրյանը։ Տե՛ս* Арутюнова, К истории, стр. 68—72, Նույնի, Из истории, стр. 100), *միջև քաղաքի իշխանության շուրջ սուր պայքար էր սկսվել։ Եվ երբ սելջուկ թուրքերը տարբեր տեղերից պարիսպների վրա ճեղքվածքներ առաջացրին, բնակիչները դիմեցին փախուստի, իսկ թուրքերը, տեսնելով դա, բացեցին դարպասները, մտան ներս ու դրոհով առան քաղաքը, որտեղ մեծ կոտորած եղավ. թուրքերը չխնայեցին ոչ սեռ, ո՛չ տարիք, իսկ ով էլ խուսափեց սրից, գերության քշվեց։ Միջնաբերդ փախչելով, փրկվեց քաղաքի բնակչության փոքր մասը, այդ թվում՝ «վատագույն կառավարիչները», որոնք սակայն պարեն չունենալով շուտով բանակցությունների մեջ մտան թշնամու հետ և հանձնեցին միջնաբերդը, որով ողջ քաղաքն իր շրջակայքով ու ավաններով ընկավ թուրքերի ձեռքը (Attal, p. 81—82)։*

*Անիի գրավման մասին կարևոր մանրամասնություններ են պահպանել նաև արաբական աղբյուրները։ Իբն ալ Աթիրը գրում է, որ Ալփ Արսլանը 1064 թ. փետրվարի 22-ին դուրս գալով Ատրպատականից, Նախճավանի վրայով շարժվեց Վրաստան, իսկ որդին՝ Մելիք Շահը, գրավելով երեք բերդ (նրանցից մեկի անունն է միայն հիշում՝ Սուրմառի), կրակի տվեց Մարիամ Նիշինը (Մարմաշեն), շարժվեց Սաբիդ շահրի (Սպիտակ քաղաք, ենթադրում են վրաց Թեթրիսցիխեն կամ Ախալքալաքը) վրա, կրակի տվեց այն և ապա երկուսով հարձակվեցին Անիի վրա։ Արաբ պատմիչը Անին անվանում է մեծ ու ծաղկուն, շատ ամուր ու անառիկ բազմամարդ քաղաք, որն ուներ 500 եկեղեցի։ Թուրքերը պաշարմամբ գրավում են այն և հաստատում կայազոր՝ մի ամիրայի գլխավորությամբ։ Անիի գրավման մասին խոսում է նաև Սիբթ իբն ալ-Ջավզին, որն իր երկրում մեջ է բերում տվյալներ, համաձայն որոնց Անին ուներ 700 հազար տուն և հազար եկեղեցի ու վանք։ Նա նշում է, որ բնակիչներից հիսուն հազար հոգի գերվեց։ Անիի անկման մասին վկայում է և սելջուկների անանուն մի պատմություն, որ հայտնի է Ախբար ադ-դաուլա աս-սելջուքիյյա անունով։ Մանրամասն տե՛ս* Canard, La campagne arménienne, p. 249—253։

*Ասորի հեղինակներից Անիի անկման մասին վկայում է Բար Հեբրեոսը։ Միքայել Ասորին ոչինչ չի գրում այդ մասին, բայց հավանաբար նրա երկրի հայ թարգմանիչներն են պատմում «...Ալփասլան որ անձամբ եկն ի Հայս» բառերից հետո բերված հատվածը. «և հնազանդեաց զնոսա (զՀայս) առեալ զՇամշուլտէ. և անցեալ յԱնի հարիւր հազարաւ առ զնա և սպան հազար այր ի փոս մի, և լոգացաւ արեամբ. և դարձաւ ի Նախջուան»* (Միխայել Ասորի, *1870, էջ 404։ 1871 թ. հրատարակության մեջ այս հատվածը բացակայում է)։ Այս գրույցը հանդիպում է Վարդան Արևելցու «Պատմության» մեջ (էջ 136), այն Վարդանի, որ համարվում է Միքայել Ասորու «Ժամանակագրության» թարգմանիչը։*

*Անիի անկման մասին մանրամասն խոսում են հայկական աղբյուրները (տե՛ս Ա-*րիստ. Լաստ., *էջ 133—136,* Մատթ. Ուռհ., *էջ 146—150)։*

*661. Վասիլ Ապուքապը, Դավիթ կուրապաղատի վրանապահ, ապա Ուռհայի կառավարիչ Ապուքապի որդին։ Բյուզանդացիների և ուզերի այս պատերազմին մասնակցեցին նաև հայոց զորքերը. «Եւ զօրաժողով արար թագաւորն Տուկիծ զամենայն ազգն Յունաց և զօրս Հայոց աշխարհին և կացոյց զօրագլուխ զմեծ իշխանն Հոռոմոց զՎասիլն զորդին Ապուքապայ»* (Մատթ. Ուռհ., *էջ 151)։*

*662. Ուռհայեցին Իստրոս գետն անվանում է Տօնաւիս, այսինքն՝ Դանուբ* (Δούναβις)։

*663. Վասիլի գերման մասին գիտե և Ուռհայեցին. «և զօրք Ուզացն սրով յարձակե-*

ցան զհետ մեծաւ կոտորածով և կալան զՎասիլ զօրապետն Հոռոմոց և տարան զնա ի գերութիւն յաշխարհն իւրեանց» (էջ 152)։

664. Այսինքն՝ Մերձիստրոսյան քաղաքների կառավարիչներ։ Ուռհայեցին ցույց է տալիս, որ Վասիլ Ապուքապը բազում օրեր մնաց գերության մեջ, նրան չկարողացան փրկագնել, քանզի շատ մեծ գումար էին պահանջում, բայց մի այլազգի զինվորի օգնությամբ նրան հաջողվեց փախուստի դիմել, գալ կայսեր մոտ, այնտեղից էլ «առ Ապուքապ հայրն իւր ի յՈւռհա, և հայրն և ամենայն ազգ իւր լցան ցնծութեամբ» (էջ 152—153)։ Այս կառավարիչների մասին ավելի մանրամասն տե՛ս *Banescu*, Les duchés, p, 141—143։ *Diaconu*, Vasile Apokapes, p. 437—451.

665. Կայսեր «բարեպաշտության» մասին (բյուզանդացու տեսանկյունից) վկայում է այն հանգամանքը, որ նա ծայր աստիճան սաստկացրեց հայադավանների հալածանքները։ Ուռհայեցու ասելով «կամէր թագաւորն չար միաբանելովք իւրովք բառնալ զՀայոց հաւատոյ դաւանութիւնն և խորհէին եղծանել զհաւատս սուրբ Լուսաւորչին Գրիգորի. և կամեցաւ գիր դիւարուն և զխառնափնդոր և զթերակատար զհաւատսն հաստատել ի Հայք» (Մատթ. Ուռհ., էջ 160)։ Կոստանդին Դուկասի ժամանակ միաբանակների (հայ և ասորի) հալածանքների մասին վկայում է և Միքայել Ասորին (*Michel le Syrien*, Chronique, t· III, pp. 166—167)։

666. Այն տեսանելի էր և Հալաստանում. «իսկ ի փոխել թուականութեանս Հայոց յամս ՇԺԵ (1066) երևեցաւ աստղ մի գիսաւոր յարևելից կողմանէ և յարևմուտս ընթացեալ. և կացեալ նորա ամիս մի՝ և եղև աներևոյթ» (Մատթ. Ուռհ. էջ 185)։ Գիսավոր այդ աստղի մասին գրում է և Կեկավմենոսը („Советы и рассказы", стр. 254)։ Գիտական հաշվումներով այն երևաց 1066 թ. ապրիլի 2-ին (տե՛ս *Grumel*, La Chronologie, p. 473)։

667. Հովհաննես VIII Քսիֆիլինոսն աթոռակալել է 1064 թ. հունվարի 1-ից 1075 թ. օգոստոսի 2-ը։

668. Փոքրասիական Օլիմպոսի։

669. Սիմպոնոս (Σύμπονος) օգնական։ Լամպեն գտնվում էր Փռյուգիայի հարավ-արևմուտքում, ժամանակակից Սոնդուրլուի մոտ։

670. Այսինքն ծնվել էր այն ժամանակ, երբ հայրը ծիրանի էր հագած, կայսր էր։

671. Եվդոկիայի ստորագրած երդմնագիրը պահպանվել է (տե՛ս *Oikonomidès*, Le serment,p. 101—128)։ Ն. Ադոնցի ենթադրությամբ, Կոստանդին Դուկասի կին Եվդոկիայի կերպարը տեղ է գտել բյուզանդական «Դիգենիս Ակրիտաս» էպոսում։ Դիգենիս Ակրիտասն ամուսնացավ Դուկաս զորավարի դուստր Եվդոկիայի հետ (տե՛ս *Adontz*, L'epopée, p. 23)։

672. «Տեղացի» (բնիկ) դինվորների» (ἰθαγενέσι στρατιώταις) տակ հավանաբար ենթադրվում են հայկական զորքերը։

673. Գուցե Ամիրթեքի՞ն (ամիր Թեքին)։

674. Այս ժամանակաշրջանում բյուզանդական բանակի թուլության պատճառներից մեկն էլ իշխանությունների կողմից նրանց ռոճիկի ոչ ժամանակին և ոչ լրիվ վճարումն էր։ Այդ բանը հստակ կերպով ցույց է տալիս Կեկավմենոսը։

675. Այստեղից պարզ երևում է, որ հագարացի (արաբ) ցեղանունն արդեն թուրք է նշանակում։ Նման երևույթի հանդիպում ենք նաև հայերի մոտ։ Տաճիկ, որ միջնադարում արաբ էր նշանակում, հետագայում սկսեց թուրք նշանակել։

676. Բնագրում՝ ξυρὸς εἰς ἀκόνην (սրաքարով սրած ածելի)։ Առած է։ Սուդայի

բառարանում ասված է, թե այդ դարձվածքը օգտագործվում է այն մարդկանց վերաբերյալ, որոնք իրենց մտքում դրածին հասնում են։

677. Ըստ Զոնարասի՝ զարմիկը։

678. Ալփ Արսլանը։ Պսելլոսը նրան անվանում է «պարսից կամ քրդերի թագավոր» (ὁ σουλτάν, ὁ τῶν Περσῶν ἢ Κούρτων βασιλεύς – *Psellos*, Chronographie, II, p. 161)։ Ինչպես արդեն տեսանք, բյուզանդական (և հայկական) աղբյուրներում պարսկի տակ այս ժամանակ թուրքերն էին ենթադրվում։

679. Ռոմանոս IV Դիոգենեսի զորքի խայտաբղետության մասին հետաքրքիր տեղեկություններ է պահպանել Իմադ էդ-դին Իսպահանցին։ Նա Դիոգենեսի բանակը հաշվում է 300 հազար հոգուց ավելի. հույներ (ռում), ռուսներ, օղուզներ, ղփչաղներ, վրացիներ (կուրջի), աբխազներ, խազարներ, ֆրանկներ (ֆերինջի) և հայեր (տե՛ս *Розен*, Арабские сказания, стр. 198)։

680. Ինչպես տեսնում ենք, «բանակաթեմ» բառը արդեն կորցրել է իր տեխնիկական իմաստը և ունի պարզ աշխարհագրական նշանակություն։ Այդ փոփոխությունը կապված է բանակաթեմային զորքերի վերացման և զորավարի ֆունկցիաների փոփոխության հետ։ XI դ. «բանակաթեմ» նշանակում էր վարչական մի շրջան, որը կառավարվում էր դատավորի (κριτής-πραίτωρ) կողմից (տե՛ս *Ahrweller*, Recherches, pp. 82—83)։

681. Հմմտ. Եսայի, Բ 4. «Եւ ձուլեսցեն զսուսերս իւրեանց ի խոփս, և զսուինս իւրեանց ի մանգաղս»։

682. Հին հունական դիցաբանության պատերազմի աստվածի։

683. Պավլիկյանների նշանավոր բերդաքաղաքներ Տիվրիկն ու Արղովանը։

684. Գտնվում էր Հուստինիանոս I-ի կազմած Երրորդ Հայքի սահմաններում։ Այժմ Գյոքսուն։

685. Այժմ՝ Մարաշ։

686. Ատտալիատեսը ճշտում է. «հայերի կողմից Տլուք կոչվող բանակաթեմը» (*Attal.*, p. 107)։

687. Երկու տաքսիսի կամ տասնվեց լոխոսի (250 հոգուց բաղկացած զորամասի) հրամանատարը։

688. Ատտալիատեսի մոտ՝ Ավսինալիոս։ Խոսքը Ավշինի մասին է, Մատթեոս Ուռհայեցու «ամիրայն Պարսից՝ որ ասի Օշէն» (էջ 185)», «անօրն և չար զազան Օշէն, որ է անպատմելի է ասացողացս գործ նորա» (էջ 186)։ Հայ պատմիչի ասելով, նա «յապականութիւն դարձոյց զբազում գաւառս, և արեան ճապաղիս արարեալ զդաշտս հաւատացելոցն Քրիստոսի. և բազում սուգ և խաւար տարածեցաւ ի վերայ երկրի ի ձեռաց անօրինիս այսմիկ» (էջ 185)։ Ուռհայեցու ասելով նա հիմնականում գործեց Սև լեռան գավառում։

689. Կարելի է ենթադրել՝ ռուսների։ Իմադ էդ-դին Իսպահանցին հիշում է ռուսների առկայությունը Դիոգենեսի բանակում (տե՛ս ծանոթ. 679)։ Սակայն մի քիչ հետո Սկիլիցեսի Շարունակողը գրում է. «վարձկան սկյութները, ես նկատի ունեմ ուզերին»։

690. Իմա՝ Մեմբիջ։

691. Այս Ամերտիկին, հավանաբար, ընդհանուր ոչինչ չունի վերևում հիշված դասալիք Ամերտիկիի հետ։ Ամերտիկին գուցե ամիր Թեքինի աղավաղումն է, որի տակ թաքնված է Կումուշտեգինը, Ուռհայեցու Գոմեշ տիկինը։ Նրա ասելով 515 (1066) թ. «ելանէր ամիրայ մի մեծ և հզօր ի դրանէ Արասլանայ սուլտանայ, որ էր հեճպ նորա՝ Գոմէշ-Տիկին անուն նորա» (էջ 186)։

*692. Ռոմանոս Դիոգենեսի բանակում ծառայող հայազգի զորքերի և նրանց՝ Դիոգենեսին դավաճանելու մասին տե՛ս նաև* *Michel le Syrien*, Chronique, III, p. 169)։ *Ասորի պատմիչը այդ քայլը բացատրում է դրանով, որ հայ ռազմիկներին ուղում էին ստիպել ընդունել քաղկեդոնականությունը։ Հետաքրքիր է նշել, որ Միքայել՝ Ասորու երկի հայ թարգմանիչն ավելացնում է մանրամասնություններ, որոնք դժվար է այլ աղբյուրներով ստուգել. «Իսկ Դէօժանն (Ռոմանոս Դիոգենեսը—Հ. Բ.) կուտեալ անթիւ զօրս, չոգաւ ի վերայ նորա (Ալփ Արսլանի—Հ. Բ.). և եկեալ ի Կարս այրեաց զՀայոց եկեղեցին. և երդուաւ եթէ յաղթէ Թուրքաց կամ ջնջէ բնաւ զՀայս կամ ի կրօնս իւր դարձուցանէ»* (Միխայել Ասորի. *1870, էջ 404—405։ 1871 թ. հրատարակության մեջ այս մանրամասնությունը բացակայում է)։*

*693. Ատտալիատեսի ասելով Հիերապոլիսը գրավեցին կայսեր սպասավորները և հայ զինվորները, որոնք որևէ դիմադրության չհանդիպեցին, քանզի Թուրքերը, իմանալով կայսեր գալստյան մասին, փախել էին Եփրատից այն կողմ* (*Attal.*, p. *109)։ Հիերապոլսի (Մեմբիջ) գրավման մասին ավելի հանգամանորեն գրում է Մատթեոս Ուռհայեցին (էջ 191—192)։*

*694. Սկիլիցեսի Շարունակողը գրում է Հիերապոլսի միջնաբերդի բնակեցման մասին։ Ատտալիատեսը ավելացնում է, որ միջնաբերդի բնակեցումը հնարավորություն կտար, որ մնացած քաղաքն էլ բնակեցվի հռոմայեցիներով և հայերով* (*Attal.*, p. *116)։*

*695. Սկիլիցեսի Շարունակողը Փարեսմանին համարում է իբեր, բայց Ատտալիատեսը՝ հայ* (ἐξ Ἀρμενίων τὸ γένος ἕλκοντα)։ *Առաջին հայացքից իրար հակասող այս փաստերը բացատրվում են դրանով, որ Փարեսմանը վրացադավան հայ է։*

*696. Խոսքը Ալեքսանդրետի (Սանջակի) մասին է, որ նոր շրջանի հայ հեղինակները (Ալիշան և ուրիշներ) Ալեքսանդրյակ են կոչում։ Ասորիներն անվանում են Փոքր Ալեքսանդրիա, արաբները՝ ալ-Իսկանդարիյա։*

*697. Այժմ՝ Էսքիշեհիր Թուրքիայում։*

*698. Մավրոկաստրոն* (Μαυρόκαστρον) *թարգմանաբար նշանակում է Սև բերդ։ Ռամզեյի ենթադրությամբ նույնանում է ժամանակակից Կարա Հիսարին, որ թուրքերեն նույն բանն է նշանակում։ Նույն հեղինակը հավանական է գտնում այն նույնացնել Կոլոնիայի հետ* (*Ramsey*, HGAM, p. 267)։

*699. Բնագրում՝* νεμιτζης։ *Նույնն է, ինչ ռուսերենում և այլ սլավոնական լեզուներում* немец-*ը (գերմանացի կամ ավստրիացի)։*

*700. Ատտալիատեսը Կեսարիան հիշելուց հետո, նշում է նաև Լարիսան* (*Attal.*, p. *126), որը, ինչպես գիտենք, 1021 թ. Սեբաստիայի հետ տրվել էր Արծրունիներին։ Ատտալիատեսի գրածը կարևոր է, քանզի պարզվում է, թե մոտավորապես ո՞րտեղ ունեցավ այս ընդհարումը թուրքերի հետ։*

*701. Ռոմանոպոլսի տեղադրությունը մինչև վերջերս վիճելի էր։ Հ. Գելցերը տեղադրում էր Բալուում (տե՛ս* *Georgius Cyprius*, p. 177)։ *Հոնիգմանն իր «Բյուզանդական կայսրության արևելյան սահմանները» գրքում այն տեղադրում էր Տիգրիսի արևմտյան վտակ Արգանա սուի վրա* (*Honigmann*, Die Ostgrenze, S. 90—92)։ *Սակայն նույն հեղինակը, հենվելով ավելի ուշ լույս տեսած մի փաստաթղթի վրա, Ռոմանոպոլսի տեղադրությունը դարձնում է անվիճելի։ Խոսքը ղպտի-արաբ աշխարհագրական* «scala»-*ի մասին է, որտեղ օգտագործվել է X դ. մի պատմական աշխատություն՝ բյուզանդացիների և Սայֆ ադ-դաուլայի պատերազմները նկարագրող։ Տարբեր տեղանունների շարքում հիշված է և Ռոմանոպոլիսը՝ ղպտի տեքստում, որի դիմաց արաբերենն ունի Ջանջուր։ Քանի որ այդպիսի անունով քաղաք հայտնի չէ, Հոնիգմանն այն ուղղում է Ճա-*

պաղջուր և գտնում, որ Ռոմանոպոլիսը Հայաստանի Ճապաղջուրն է (տե՛ս *Honigmann*, Une „scala" géographique, p. 87, 98, 122—123)։ Յակուտ ալ-Համավիի տվյալներով Ճապաղջրի «բնակիչները քրիստոնյա հայեր են։ Ունի բերդեր և գյուղեր» (Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 46)։

702. Խլաթը գտնվում էր թուրքերի ձեռքում։ Ռոմանոս Դիոգենեսը որոշել էր վերադառնալ Կոստանդնուպոլիս, բայց բանակում գտնվող Միքայել Ատտալիատեսը, որ զինվորական դատավորի պաշտոնն ուներ, կոչ արեց կայսեր պաշարել և գրավել Խլաթ քաղաքը (τὸ ἄστυ τοῦ Χλιατ) և նրա շուրջ եղած ավանները, զինվորներն ավար ձեռք բերելով, ավելի պատրաստակամությամբ դիմեն պատերազմի, այդ շրջաններում հաստատվի հռոմեական գերիշխանությունը, որպեսզի դրանք թշնամու հենակետերից ու մատակարարման կետերից, վերածվեն նրանց դեմ ուղղված պատվարների (*Attal.*, p. 131)։

703. Խոսքը նշանավոր զորավար Փիլարտոս Վարաժնունու մասին է։ Բյուզանդական աղբյուրների համաձայն Ռոմանոս կայսրը նրան նշանակեց զորավար, կամ զորավարավտոկրատոր, կամ էլ գոմեստիկոս։ Նրա վերաբերյալ աղբյուրների տվյալները շատ հակասական են, մի բան, որ իր արտացոլումն է գտել նաև ուսումնասիրողների երկերում։ Նրա վերաբերյալ մանրամասն խոսում է Մատթեոս Ուռհայեցին, որին նա բնորոշում է որպես «անօրէն և ամենաչար իշխանն», որ «վարքն և կրօնքն զՀոռոմոցն ունէր, և հայրենեօքն և մայրենեօքն Հայ էր... սա տիրեալ բազում աշխարհաց և քաղաքաց... և եկեալ բնակեցաւ ի Մշարն» (Մատթ. Ուռհ., էջ 206)։ Երբ Վասակ Պահլավունին, Անտիոքի կառավարիչը, սպանվեց, նրա ազատագունդը դիմեց Փիլարտոսին։ Վերջինս տիրանալով քաղաքին, որոշ ժամանակ իր ձեռքում պահեց այն (Մատթ. Ուռհ., էջ 213)։ Փիլարտոսը, ըստ Ադոնցի պատկանում էր Վրախամիոսների (Վահրամյանների) ընտանիքին, որ ժամանակին մասնակցություն ունեցավ Վարդաս Սկլերոսի ապստամբությանը՝ ի դեմս Սահակ Վահրամյանի (*Adontz*, EAB, p. 148—149)։ Յառնլին չի բաժանում Ադոնցի ենթադրությունը (*Yarnley*, Philaretos, p. 334, n. 17)։ Միքայել Ասորին ցույց է տալիս, որ Փիլարտոսն իր իշխանությունը տարածեց Տարսոնի, Մոպսուեստիայի, Մարաշի, Քեսունի, Ուռհայի, Եդեսիայի, Անազարվայի, Անտիոքի, Ջահանի և Մելիտենեի վրա (տե՛ս *Michel le Syrien*, Chronique, p. 173, 187 sq., 280)։ Պահպանվել են Փիլարտոսի արճճե կնիքները, որոնց հիման վրա հնարավոր է վերականգնել նրա cursus honorum-ը։ Տե՛ս *Шандровская*, Печати Филарета, стр. 47։ Փիլարտոսի մասին հանգամանորեն տե՛ս *Laurent*, Les origines medievales, p. 50—51։ Նույնի, Byzance, p. 81 և հտ.։ Նույնի, Des Grecs aux Croises, p. 367—449։ Վերահրատարակվել է հեղինակի հայագիտական հոդվածների ժողովածուում՝ Etudes d'Histoire Armenienne, Louvain, 1971, p. 61—128։ Նույնի, Byzance et Antioche, p. 61—72 (վերահրատարակությունը վերոհիշյալ ժողովածուում, էջ 148—159)։ Կոմմագենացի, Փիլարտոս հայը, Հալեպ, 1930։ Քասունի, Կիլիկիոյ հայկական իշխանապետությունը։ *Yarnley*, Philaretos, pp. 331—353։ *Каждан*, Армяне, стр. 26—28։

704. Սկիլիցեսի Շարունակողի մոտ՝ Մունզարոն, Ատտալիատեսի՝ Մուղուրոն։ Հայոց Մրնձուրը (Մձուր) Պաղինի մոտ։

705. Եկեղյաց գավառը։

706. Ատտալիատեսը գծում է ավելի մանրամասն երթուղին։ Թուրքերը մտան Կապադովկիա անցնելով Եփրատ գետը՝ Մելիտենեից վերև (*Attal.*, p. 135)։

707. Ատտալիատեսի մոտ ավելի հստակ. ἵνα μὴ καταλαμβανόμενοι σποράδες ἐξ ερημης

ὑπὸ τῶν Ἀρμενίων ἀπόλωνται—*Attal.*, p. 135 (*«որպեսզի ցիր ու ցան եղած ու մենակ մնալով, հայերի կողմից կորստյան չմատնվեն»)։*

*708. Բնագրում՝* καὶ τῶν Ἀρμενιακῶν θεμάτων։ *Չշփոթել Արմենիակների բանակաթեմի հետ։ Այստեղ «բանակաթեմ» բառը չի օգտագործված վարչական առումով։ Պատմիչը ցույց է տալիս, որ Ռոմանոս Դիոգենեսը Կոլոնիայի և «Արմենիական բանակաթեմերի վրայով» հասավ Սեբաստիա։ Նա նկատի ունի հայերով բնակեցված շրջանները, քանզի Արմենիակների բանակաթեմը գտնվում էր Սեբաստիայից արևմուտք և եթե նա նկատի ունենար Արմենիակների բանակաթեմը, ապա այն գտնվում էր Սեբաստիային կից, կայսրը կարիք չուներ նախապես գնալ Կոլոնիա, որ Սեբաստիայից արևելք է գտնվում (տե՛ս այդ մասին Ahrweiler*, Recherches, p. 80, n. 3)։

*709. Հավանաբար՝ Հերակլիան, այժմ՝ Էրեգլի։*

*710. Անտիոքի դուքս խաչատուրը, որին Ատտալիատեսը* (*Attal.*, p. 172) *անվանում է հայ.* „ὁ τῆς μεγάλης Ἀντιοχείας κατεπάνω, Χατατούριος ἐπονομαζόμενος, ἐξ Ἀρμενίων δ'ἕλκων τὸ γένος"։ *Նրան Ռոմանոս Դիոգենեսը նշանակել էր Անտիոքի կառավարիչ 1068 թ.։ Զարմանալին այն է, որ խաչատուրի մասին հայկական աղբյուրներում չենք հանդիպում որևէ տեղեկություն։ Այդ ուսումնասիրողներին դրդել է ենթադրելու, որ խաչատուրը հայկական աղբյուրներում հանդես է գալիս այլ անվան տակ։ Սկսած Չամչյանից ենթադրել են, որ Մատթեոս Ուռհայեցու մոտ 1065 թ. տակ հիշատակված Անտիոքի հայազգի դուքս-կառավարիչ Բեխտը* (Մատթ. Ուռհ., *էջ 157) հենց խաչատուրն է։ Չամչյանն այդ նույնացումը կատարելով («Հայոց պատմություն», հտ. Բ, էջ 972) գտնում էր նաև, որ Բեխտ անուն չէ, այլ բյուզանդական վեստ պատվաստիճանը (նույն տեղում)։ Չամչյանի ենթադրությունը կրկնում են Բրոսսեն (նրան նա անվանում է* Vest Khatchatour։ *Տե՛ս Lebeau*, Histoire du Bas-Empire, t. XIV, 1833, p. 441։ *Համտ. նաև հտ.* XV, **1833**, p. 71, n. 1), *Ալիշանը (տե՛ս նրա Վարդան Բարձրբերդցու Պատմության 105-րդ ծանոթագրությունը) և այլ ուսումնասիրողներ, այդ թվում մեր օրերում նաև Ե. Քասունին (տե՛ս նրա հոդվածը. «ԺԱ դարու Անտիոքի հայ կառավարիչներ», էջ 123—134)։*

*Դեռևս 1929/1930 թթ. Ժ. Լորանն իր մի հոդվածում (տե՛ս նրա* Le duc d'Antioche Khatchatour), *ապացուցեց այդ նույնացման անհնարինությունը և հանգեց այն եզրակացության, որ Բեխտը ոչ թե Մեծ Անտիոքի կառավարիչն էր, այլ, հավանաբար, Իսավրիայի Անտիոքի։*

*711. Ատտալիատեսը տալիս է կարևոր մանրամասնություններ։ Նրա ասածից պարզվում է, որ «Սելևկիայի լեռնային շրջաններում բնակվող հայերը»* (ἐν τοῖς ὀρεινοῖς τῆς Σελευκείας κατοικούντων Ἀρμενίων) *կարգադրություն էին ստացել նեղանցքներում հարձակվելու ու վնասելու թուրքերին, այսինքն պարզվում է, որ խոսքը ոչ թե հայերի ինչ-որ զորամասի մասին է, այլ տվյալ շրջաններում բնակություն հաստատած հայերի (տե՛ս Attal., p. 137)։*

*712. Սկիլիցեսի Շարունակողի մոտ՝* Σαρβανικὸν ὄρος: *Ատտալիատեսը ավելի ճիշտ է գրում.* Σαρβανδικὸν ὄρος (*Attal.*, p. 138)։ *Խոսքը Սարվանդիքարի մասին է։*

*713. Կուրապաղատ Մանուիլ Կոմնենոսի Սեբաստիայում պարտվելու և գերվելու մասին մանրամասն խոսում է Մատթեոս Ուռհայեցին, տալիս և այլ տեղեկություններ։ Նրա ասելով Սեբաստիայի վրա էր եկել «ամիրայ մի Կտրիճ անուն», որ «էր... յազգէ Արասլան սուլտանին»։ Դիոգենեսը նրա դեմ ուղարկեց Կուրապաղատին, որը սակայն պարտվեց ու գերի ընկավ (էջ 192)։*

714. Փոյուգիայի հնում Կոլոսսե կոչվող քաղաքը (Պողոս առաքյալն առ Կողոսացիս թուղթն այս քաղաքի բնակիչներին էր ուղղել), Լավոդիկիայի և Հիերապոլսի մոտ։ Այն կոչվեց Խոնե՝ XI դ.։ Այս քաղաքից էին ծագում Միքայել և Նիկետաս Խոնիատեսները։

715. Նրանք, հարկավ, հերետիկոսներ էին բյուզանդացիների հասկացողությամբ։ Խոսքը հայերի (հայադավանների) մասին է, որոնք երկաբնակների համար հերետիկոս էին։ Հարցի մեջ պարզություն է մտցնում Ատտալիատեսը։ Նույն բառերով, ինչ Սկիլիցեսի Շարունակողը, շարադրելով այս դեպքերը, նա գրում է. τῶν αἱρετικῶν, οἵ τε τὴν Ἰβηρίαν καὶ Μεσοποταμίαν καὶ ἄχρι Λυκανδοῦ καὶ Μελιτηνῆς καὶ τῶν παρακειμένων οἰκοῦσιν Ἀρμενίων, այսինքն պարզ ցույց է տալիս, որ Իբերիայում, Միջագետքում՝ մինչև Լիկանդոս և Մելիտենե և (նրանց) մոտակայքում ապրում են հերետիկոս (միաբնակ) հայերը (Attal., p. 97)։

716. Ակեֆալ (անգլուխ, առանց պարագլխի) էին կոչվում Եգիպտոսի միաբնակ վանականները, որոնք հանդես եկան Զենոն կայսեր Հենոտիկոնի դեմ, քանզի վերջինս դատապարտում էր ոչ միայն Նեստորին և միաբնակության առաջնորդ Եվտիքեսին, այլև որովհետև հստակորեն չէին դատապարտվում Քաղկեդոնի որոշումները։ Այստեղ պարզապես հին տերմինն է օգտագործվում ընդհանրապես միաբնակների վերաբերյալ։

717. Հին կտակարանի համաձայն կռապաշտ մի ժողովուրդ («Դատաւորաց», Գ, 5—7)։

718. Բնագրում՝ ὕπατος τῶν φιλοσόφων, հյուպատոս (գերագույնն) իմաստասիրաց։ Ֆիլոթեոսի «Կլետորոլոգիոն»-ում փիլիսոփաների հյուպատոսը սպաթարից ցածր էր կանգնած։ Կարևոր աստիճան էր հատկապես բարձրագույն կրթության ասպարեզում (տե՛ս Bréhier, Les Institutions, p. 50)

719. Այս թուրք ամիրայի անունը ըստ Ուռհայեցու Կտրիճ էր (տե՛ս ծանոթ. 713)։ «Թագաւորն Հայոց (իմա Գագիկ II-ը)—գրում է հայ պատմիչը,—և իշխանքն և ամենայն նախարարքն արարին սէր և միաբանութիւն ընդ մանուկ ամիրային» (էջ 192)։ Թուրք ամիրայի Կոստանդնուպոլիս գնալու մասին վկայում է նաև Ուռհայեցին (էջ 193)։

720. «Ուղղափառության կիրակին» (մեծ պահքի առաջին կիրակին) նշվում էր 842 թ. և նվիրված էր պատկերապաշտության տարած հաղթանակին։

721. Հելենուպոլիս նշանակում է Հելենեի քաղաք, աղավաղելով դարձրել են Էլեյնուպոլիս (թշվառ քաղաք)։

722. Տե՛ս ծանոթ. 201։

723. Եվդոկիա կայսրուհու որդիներին նկատի ունի։

724. Նիկեփոր Բոտանիատեսը ազնվական ծագում ուներ, Անատոլիկոն բանակաթեմի ամենից հարուստ ու երևելի մարդն էր, որ դարձել էր նաև հիշյալ բանակաթեմի զորավարը (Attal., p. 213։ Տե՛ս նաև ստորև, ծանոթ. 778)։

725. Պաղ Աղբյուրը (Κρύα πηγή) Ռամզեյի ենթադրությամբ նույնանում է Վաթրիսաքսի հետ, այն վայրի, որտեղ 872 թ. Վասիլ I-ի զորքերի և պավլիկյան առաջնորդ Խրիսոխիրի միջև ճակատամարտ տեղի ունեցավ (Ramsey, HGAM, p. 267, n.)։ Համանաբար գտնվում էր Տիվրիկի մոտ։ Վաթրիսաքսը Ա. Վասիլևի ենթադրությամբ նույնանում է ժամանակակից Ենի Խանի հետ, Սեբաստիայից հյուսիս-արևմուտք (Васильев, Византия и арабы, II, стр. 32: Վաթրիսաքսի տեղադրության մասին տե՛ս նաև Տաշյան, Արևմտյան սահմանը, էջ 459)։

726. *Հմմտ.* Արիստ. Լաստ., *էջ 138. «և բազում զօրս ի ձեռն սպարապետաց ընդ այլ ճանապարհ արձակէր, և ինքն բազում ամբոխիւ յարևելս ճանապարհ կալեալ գայր հասանէր ի մեծ քաղաքն Թէոդուպօլիս. և անդ գայրուձի կազմէր»։*

727. *Ատտալիատեսը պարզաբանում է. «գերմանացիների, որոնք ֆրանկ են կոչվում»* (*Attal.*, p. 148)։ *Ռուսելիոսը* Roussel de Bailleul-*ն է։*

728. *Բնագրում՝* Μαντζικιέρτ։ *Տալիս է Մանազկերտ տեղանվան հայերի մոտ տարածված տարատեսակներից մեկը՝ Մանծկերտ։ Բյուզանդական բանակի էթնիկական խայտաբղետության մասին Ուռհայեցին գրում է. Դիոգենեսը «արար ժողով մեծ և ահագին բազմութեան զամենայն աշխարհն Գդաց (գոթաց, արևմտականների—Հ. Բ.) և զհամօրէն ազգն բուլղարաց և զամենայն կղզիս հեռաւորս, զԳամիրս և զամենայն Բիւթանիա, զԿիլիկիա և զԱնտիոք, զՏրապիզոն և* զամենայն տունն Հայոց՝ որք էին մնացեալ ի քաջ զօրականացն. *և բերեալ այլ զօր յայլազգեացն խուժաստանացն» (էջ 198)։*

729. *Ուռհայեցին գրում է, որ «առ ի չգոյէ պահապանաց քաղաքին՝ յաւուր միում առաւ քաղաքն Մանծկերտ, վասն զի փախեան Հոռոմոց պահապանքն» (էջ 194)։*

730. *Ատտալիատեսը* (*Attal.*, p. *149) ցույց է տալիս, որ սուլթանը Մանազկերտում հաստատեց մեծաթիվ թուրքերի և «դիլիմիտների» (դայլամցիների)։*

731. *Հմմտ.* Մատթ. Ուռհ., *էջ 200. «և յայնժամ ...զՏարխանիատն երեսուն հազարով զարձուց (կայսրը—Հ. Բ.) ի վերայ խլաթայ»։ Իմադ էդ-դին Իսպահանցին գրում է, որ Դիոգենեսը Խլաթ ուղարկեց ռուսների հրամանատարներին՝ 20 հազար հեծյալներով, որ նրանց դեմ դուրս եկավ Խլաթի զորքը՝ թուրք Սնդակի գլխավորությամբ, նա ջարդեց բյուզանդական զորքերին և գերի վերցրեց նրանց հրամանատարին։ Պատմիչը այս դեպքը թվագրում է հիջրայի 463 թ. Զուլ-Կադ ամսի չորսին, երեքշաբթի օր (1071 թ. օգոստոսի 3։ Տե՛ս Ռոզեն,* Арабские сказания, стр. 198—199)։

*Ուռհայեցին ցույց է տալիս նաև, որ կայսրը 12 հազար հոգու էլ ուղարկեց «յԱպխազք» (էջ 200)։ Այս փաստը Սկիլիցեսի Շարունակողի մոտ չի արձանագրված, թեև տվյալ պահին անհասկանալի է Ափխազիա բյուզանդական զորք ուղարկելու իմաստը։ Իմադ էդ-դին Իսպահանցին ցույց է տալիս, որ Դիոգենեսի բանակում կային և աբխազներ։ Ուռհայեցու «յԱպխազքը»-ը գուցե ուղղել «յափխազա՞ց»։*

732. *Ավելի խորամուտ հայ պատմիչը բյուզանդացիների անհաջողության հիմնական ու միակ պատճառը հենց ուժերի փոշիացումն է համարում* (Մատթ. Ուռհ., *էջ 200)։*

733. *Մանազկերտի վերստին առման մասին գրում է և Ուռհայեցին. «և յարուցեալ Տիօժէն ամենայն բազմութեամբն գնաց յարևելք՝ յաշխարհն Հայոց և իջեալ ի քաղաքին Մանծկերտոյ՝ և էառ զնա. և զօրք սուլտանին՝ որ կայր ի քաղաքն՝ փախեան. և զորս ըմբռնեաց՝ կոտորեաց» (էջ 199)։*

734. *Սկիլիցեսի Շարունակողի պատմածից այն տպավորությունն է ստացվում, որ Մանազկերտում թուրքերը Դիոգենեսին դիմադրություն չցուցաբերեցին և առանց պատերազմի հանձնեցին քաղաքը։ Ատտալիատեսը, սակայն, ցույց է տալիս, որ Դիոգենեսը բանակեց քաղաքին մոտիկ, ապա վերցնելով զորքի լավագույն մասը, պտտեց քաղաքի շուրջ՝ առավել խոցելի տեղ փնտրելով և բաբաններ գործի դնելու համար վայր։ Ատտալիատեսի ասելով, այդ կռվում մասնակցում էր հայոց հետևակազորը, նա էր, որ հարձակվեց միջնաբերդից դուրս գտնվող պարիսպների վրա և գրոհով վերցրեց։ Այս սրանից հետո է, որ թուրքերը ստիպված եղան բանակցություններ սկսելու կայ-*

սեր հետ և հանձնել քաղաքը։ Այս դեպքերին ականատես էր Ատտալիատեսը, նա հետևվում էր Դիոգենեսին։

735. Թեոդոսուպոլսի դուքս Նիկեփոր Վասիլակի «բնիկ զինվորները» հավանաբար հայեր էին։ Հայ էր և ինքը Վասիլակը։ Մանազկերտի ճակատամարտին Ռոմանոս Դիոգենեսը Ուռհայեցու ասելով «կացոյց զօրագլուխ զօրաց իւրոց զխատապ և զՎասիլակ իշխանճ ՀայեցիՆ՝ զայր քաջք և պատերազմողք, (էջ 201)։ Կաժդանը, ելնելով այն նկատառումից, որ Նիկեփոր Վասիլակը Մանազկերտում չսպանվեց, այլ գերի ընկավ (Ուռհայեցու հիշած Վասիլակը սպանվեց), ապա նրանց տարբեր անձնավորություններ է համարում, թեև չի ժխտում այն հնարավորությունը, որ աղբյուրներից մեկն ու մեկը սխալ է (*Каждан*, Армяне, стр. 103)։

736. Տե՛ս նախորդ ծանոթագրությունը։

737. Մատթեոս Ուռհայեցին տալիս է մանրամասնություններ, որոնք բացակայում են Սկիլիցեսի Շարունակողի մոտ. «Թագաւորն Տիոֆէն,— գրում է նա,...—զՈւզն և զՊածունակն կացուցանէր ընդ աջմէ իւրմէ և ընդ ձախմէ և զայլ զօրսն զառաջոյ և զթիկանց» (էջ 201—202)։ Սկիլիցեսի Շարունակողն ասում է, որ թուրքերի կողմն անցան միայն ուզերը, մինչդեռ Ուռհայեցին գրում է «Ուզն և Պածինակն ի սուլտանի կողմն անցանէին» (էջ 202), իսկ Լաստիվերցին, թե «մեծ գունդ մի՝ առ որս չիք ի նոսա աստուածապաշտութիւն, ապստամբեալ ի թագաւորէն Յունաց՝ ի կողմ թշնամեացն յաւելուին» (էջ 139)։ Մանազկերտում քաջաբար կռվեցին հայերը։ Հայոց զինվորները, գրում է Լաստիվերցին, «ոչ զանգիտէին ի կորովի աղեղնաւորացն Պարսից, այլ արութեամբ ընդդէմ կային հանդիսին, և ոչ զթիկունս դարձուցանէին. թէպէտև բազումք ի սիրոյ թագաւորին բաժանեցան, սակայն միամտութեամբ նոքա զմահ յանձն առին» (էջ 139)։

738. Մատթեոս Ուռհայեցին վճռական ճակատամարտի վայրը Տողոտափ է անվանում. «մերձ ի Մանծկերտ, ի տեղին՝ որ կոչի Տողոտափ» (էջ 201)։

739. Ատտալիատեսը գրում է, թե Դիոգենեսին ինքը խորհուրդ տվեց իր բանակում ծառայող ուզերին հավատարմության վերաբերյալ երդումներ պահանջել և ինքը չի սխալվել, քանզի նրանցից և ոչ ոք այդ պատերազմում `չանցավ թշնամու կողմը (*Attal*., p. 158— 159)։ Դա, հարկավ, իրականությանը չի համապատասխանում (տե՛ս ծանոթ. 737)։

740. Ալփ Արսլանը ամենևին էլ խաղաղության կամ հաշտության հետամուտ չէր։ Դեսպանություն ուղարկելով, նա նպատակ ուներ լրտեսել (տե՛ս *Рэзен*, Арабские сказания, стр. 199—200)։ Խաղաղության վերաբերյալ սուլթանի առաջարկը, ըստ Իմադ էդ-դինի, Ռոմանոսն համարեց թուլության նշան, դրա համար մերժեց և պատասխանեց. «Ես այդ առաջարկին կպատասխանեմ Ռեյում» (նույն տեղում, էջ 200)։

741. Տե՛ս ծանոթ. 723։

742. Մանազկերտի ճակատամարտը տեղի ունեցավ 1071 թ. օգոստոսի 19-ին։ Հունարեն մի ձեռագրի (Athenensis graecus 1429, folio 45) հիշատակարանում ասված է, որ Ռոմանոսը գերի ընկավ օգոստոսի 26-ին շաբաթվա 6-րդ օրը (ուրբաթ). Պ. Գոտիեն այս փաստի հիման վրա ուզում է ուղղում մտցնել Մանազկերտի ճակատամարտի ընդունված ամսաթվի մեջ (տե՛ս *Gautier*, Monodie inedite, p. 157)։

Բյուզանդական կայսեր գերվելը մեծ տպավորություն գործեց ժամանակակիցների վրա։ Արիստակես Լաստիվերցին դրան նվիրեց իր աշխատության ԻԵ գլուխը. «Յաղագս թագաւորին Յունաց, որ ի թագաւորէն Պարսից ձերբակալ եղև» ի միջի այլոց նշելով. «Արդ զայն աշխարհակալ և զմեծ աթոռոյ տէր, իբրև ստրուկ մի անարի մե-

դացն՝ ձերբակալ արարեալ՝ առաջի թագաւորին Պարսից կացուցանէին» (էջ 140։ Համտ. Մատթ. Ուռհ., էջ 202)։ Մանազկերտի ճակատամարտի վերաբերյալ վերջին գործերից տե՛ս. *Toumanoff*, The Background: *Гусейнов*, Из истории, стр. 160—163։ Նույնի, Последствия сражения при Манцикерте, стр. 148—152։ Ճակատամարտի մասին նաև՝ *Cahen*, La campagne de Mantzikert, p. 613—64?; *Streater*, The battle of Mantzikert, 1071, p. 257—263; *Minorsky*, Studies, p. 59։

743. Իմաց էդ-դին Իսպահանցու ասելով, սուլթանի հարցին, թե «Ասա ինձ անկեղծորեն, ի՞նչ կուզենայիր, կամ ի՞նչ կանեիր դու եթե հաղթեիր», Դիոգենեսը պատասխանեց. «Ես որոշել էի ձեզանից գերի վերցրածներին շների հետ մի տեղ փակել... Իսկ եթե ես քեզ գերի վերցնեի, (շան) վզնոց կ՚ագցնեի, այնքան գազազած էի ես քո վրա» (*Розен*, Арабские сказания, стр. 202)։

744. ὁ ἐπὶ τῶν δεήσεων։ Համապատասխանում է V դարի magister a memoriae-ին։ Այդ աստիճանավորը քննում էր և Կոստանդնուպոլիս ուղարկում կայսեր հասցեագրված բոլոր հայցադիմումները, խնդրագրերը, բողոքները։ Նա մնում էր նահանգներում, գլխավորապես մեծ կենտրոններում։ X դարում ὁ ἐπὶ τῶν δεήσεων-ը գրավում էր հիերարխիկ աստիճանի 55-րդ տեղը և մտնում էր դատավորների (κριταί) դասի մեջ։ Կրում էր անթիպատ-պատրիկի, պատրիկի կամ պրոտոսպաթարի աստիճանը։ Սահակ-Վահրամը (տե՛ս էջ 59) ունեցել է ὁ ἐπὶ τῶν δεήσεων-ի պաշտոնը։ Պաշտոնի մասին մանրամասն տե՛ս *Guilland*, Le Maître des Requêtes, p. 97—118։

745. Վասիլ Մալեսիսը Կոստանդին Դուկասի ժամանակ (1059—1067) Կատոտիկա նահանգների (Հելլադա և Պելոպոնեսի բանակաթեմ) դատավորն էր, ապա՝ Արմենիակների բանակաթեմի։ Ռոմանոս Դիոգենեսի թուրքերի դեմ ձեռնարկած արշավանքի ժամանակ նրան ուղեկցող սեկրետիկոսների կազմում էր (տե՛ս *Daye*, Basile Malésès, p. 167—178)։

Դժվար չէ նկատել, որ Լեոնի և Եվստաթիոսի սպանության, Վասիլ Մալեսիսի գերման մասին պատմությունն այստեղ ընդմիջարկություն է, գրչի կողմից սխալմամբ ձեռագրի հաջորդ էջից բերված։ Ատտալիատեսը այդ մասին խոսում է կայսեր իբերական գյուղերը գնալու վերաբերյալ շարադրանքից հետո, ընդ որում նա նշում է, որ այդ դեպքերը տեղի ունեցան Մանազկերտի աղետի և պարտությունից հետո փախուստի դիմելու ժամանակ (*Attal.*, p. *167*)։

746. Ատտալիատեսը ցույց է տալիս, որ Ռոմանոսը իբերական գյուղերում հավաքեց պատերազմից փախած փոքրաթիվ զինվորների, որ իր հետ էին նաև ազատություն ստացածները (*Attal.*, p. *166—167*)։

747. Նշանակում է՝ «Մեղուների քար, ժայռ»։ Բլրի վրա կառուցված բերդ էր (*Attal.*, p. *168*)։

748. Եդեսիայի կատապան Պողոսի մասին Ուռհայեցու ժամանակագրության մեջ խոսք չկա։ Ատտալիատեսը գրում է, որ պրոեդրոս Պողոսը թուրքական արշավանքի ժամանակ Դիոգենեսի խորհրդականներից էր, կայսրը նրան կանչել էր Եդեսիայի կատապանությունից։ Պողոսը համաձայն էր Դիոգենեսի նկատմամբ, բայց այն պատճառով, որ կայսրը Թեոդոսուպոլսի դուքսի (Նիկեփոր Վասիլակիի) հետ գերի էր ընկել, Պողոսն իր վրա էր վերցրել Թեոդոսուպոլսի կառավարչի պաշտոնը (*Attall.*, p. *168*)։

749. Այն է Եվդոկիա։ Գտնվում էր Արմենիակների բանակաթեմում (*Attal.*, p. *169*)։

750. Ֆրանկներ կային և՛ Դիոգենեսի, և՛ Կոստանդնի բանակում։ Կոստանդնի ֆրանկներին գլխավորում էր Կրիսպինոսը, որին հաջողվում է «իրենց (ֆրանկների)

յեղվով» դիմել Դիոգենեսի ֆրանկներին և նրանց դրդել փախուստի դիմել (տե՛ս Attal., p. 171)։

751. Ճշգրիտ տեղադրությունը հայտնի չէ։ Հավանաբար գտնվում էր Կապադովկիայում։ Վարդաս Փոկասը Բաղդադից վերադարձած Վարդաս Սկլերոսին հենց այս բերդում էր արգելափակել։

752. Խաչատուրի մասին տե՛ս վերը, ծանոթ. 710։

753. Բնագրում՝ αἱροῦσιν։ Նշանակում է «սպանում են», բայց և «գերում են»։ Ատտալիատեսի բնագիրը պարզ ցույց է տալիս, որ խոսքը գերման մասին է (Attal., p. 174)։ Խաչատուրի գերման վերաբերյալ ավելի մանրամասն խոսում է Նիկեփոր Բրիեննիոսը։ Խաչատուրը փախուստի դիմելով, թաքնվել էր անտառում, բայց բռնվեց մի զինվորի կողմից և քիչ էր մնացել սրի քաշվեր։ Զինվորը, սակայն, ընդառաջելով խաչատուրի պաղատանքին, նրան մերկացնելով, անտառում բաց է թողնում։ Մի ուրիշ զինվոր, հանդիպելով նրան, փորձեց սպանել, բայց խաչատուրի խնդրանքով տարվեց զորավար Անդրոնիկոսի մոտ։ Վերջինս նրան հագուստ տվեց «ինչպիսին վայել է քաջարի զորավարին, և պահում էր անկալանք կալանքի մեջ»։ Խաչատուրը Անդրոնիկոսի վերաբերմունքից զգացված, նրան հայտնում է անտառում իր թաքցրած մի թանկագին քարի մասին, որն իր մեծությամբ ու պայծառությամբ գերազանցում էր բոլոր նման քարերը, և նրան նվիրում այն։ Հետագայում այդ քարն Անդրոնիկոսը նվիրեց թագուհի Մարիային (Nic. Bryenn., p. 53։ Տե՛ս նաև Psellos, Chronographie, II, p. 170)։ Աղբյուրներում վկայություններ չկան խաչատուրի վախճանի մասին։

754. Հմմտ. Մատթ. Ուռհ., էջ 202. «Տիոժէնն գնաց փախստական ի քաղաքն՝ որ կոչի Ատանա. և ժողովեցան ի վերայ նորա զօրք թագաւորին Միխայլի. իսկ Տիոժէնն առ վտանգի իւր զգեցաւ զգեստ աբեղայի և ելեալ առ զօրագլուխն Հոռոմոց՝ որ էր եղբայր Տուկծին»։

755. Ժամանակակից Քյոթահյա քաղաքը։

756. Նրանց մասին տե՛ս վերը, ծանոթ. 390։

757. Այսինքն՝ դրոմոսի լոգոթետ։ Հմմտ. Attal., p. 187. Nic. Bryenn, p. 56։

758. Սկիլիցեսի Շարունակողի մոտ՝ καὶ πίστις εὐθὺς ἀπαραλόγιστος, որ հավանաբար աղավաղում է։ Այս տեղում Ատտալիատեսը գրում է՝ φισκοσυνηγορίαι πολλαί, այսինքն փաստաբանություններ՝ հօգուտ պետական գանձարանի (Attal., p. 183)։ Պարապինակեսի տնտեսական քաղաքականության մասին տե՛ս Karayannopulos, Zur Finanzpolitik, S. 109—111։

759. Հմմտ. Արիստ. Լաստ., էջ 140. «Եւ արդ զոր Աստուած ազատեալ ի ձեռանէ այլազգւոյն կորզեալ եհան, որ իւրքն էին՝ նենգութեամբ և խայտառականօք խաւարեցուցին զլուսարանս նորա և սպանին»։

760. Բրիեննիոսի ասելով՝ Սեբաստիա (Nic. Bryenn., p. 59)։

761. Բրիեննիոսը նրանց հրամանատարին անվանում է Արտուխ (Nic. Bryenn., p. 81)։

762. Ապագա կայսր Ալեքսիոս I Կոմնենոսը։

763. Բրիեննիոսն նրան անվանում է Տուտախ (Τουταχ)։

764. Ալեքսիոս Կոմնենոսը Տուտախի մոտ մարդ ու նվերներ էր ուղարկել, խնդրելով ձերբակալել Ռուսելիոսին։ Տուտախը Ալեքսիոսի մոտ՝ Ամասիա իր ամենահավատարիմ մարդուն ուղարկեց, որին Ալեքսիոսն ասաց, թե կայսրն ու սուլթանը բարեկամներն են, իսկ Ռուսելիոսը երկուսին էլ թշնամի, որին կայսեր հանձնելու դեպքում նա շատ դրամ կստանա։ Հետաքրքրական է նշել, որ երբ թուրքերը Ռուսելիոսին ձերբակալեցին և

*հանձնեցին Ալեքսիոսին, Ամասիայի բնակչությունը փորձեց նրան ազատել* (*Nic. Bryenn.*, p. 86—90)։

*765. Այս մոնոպոլիոնն ու ֆունդաքսը (բորսա) այնքան ատելի էին, որ մի փոքր անց, Նիկեփոր Բրիեննիոսի ապստամբության ժամանակ, երբ վերջինս մտավ Ռեդեստոս, բնակչությունը հիմնահատակ, քարուքանդ արեց նրանց շենքերը* (*Attal.*, p.. *249)*։

*766. Պարապինակես* (παρὰ πινάκιον) *մոդից մեկ պնակ՝* $^1/_4$ *մոդ պակաս,* $^3/_4$ *մոդ հացահատիկ)*։

*767. Բոննի հրատարակության մեջ՝ Կոմխան, դուցե Կավխա՞ն։*

*768. Հավանաբար չի նույնանում Կոստանդին VIII-ի ժամանակ գործած համանուն անձնավորության հետ (Каждан*, Армяне, стр. 86*)*։

*769. Ավելի հայտնի է Որմզդի վանք անունով։ Վանքի եկեղեցին մինչև օրս կանգուն է և կոչվում է Փոքր Սուրբ Սոֆիա (Քյուչյուքայասոֆյա)։*

*770. Խոսքը Ռոբերտ Գվիսկարի մասին է (1015—1085)։ 1059 թ. նա իրեն հայտարարեց Կալաբրիայի և Ապուլիայի դուքս, և իրեն համարում էր Կոստանդնուպոլսի կայսեր ներկայացուցիչը։ Սկիլիցեսի Շարունակողի հիշատակած խնամիական կապեր հաստատելու փորձերը տեղի ունեցան 1073 թ., Ռոբերտի դուստրերից Հելենեն եկավ Կոստանդնուպոլիս 1075 թ.։ Այս խնամիական կապերի շուրջ եղած բանակցությունները զուտ քաղաքական բնույթ ունեին։ Պահպանվել է այդ ամուսնության պայմանագիրը, որտեղ, ի միջի այլոց, ասված է, որ նրանք պետք է նույն թշնամիներն ունենան և նույն բարեկամները, որ Ռոբերտը պետք է կայսրության դաշնակիցը դառնա (տե՛ս Kolias*, Le motif et des raisons, p. 424—430)։

*771. Սկրիբոնները VI—VII դդ. կայսեր թիկնապահներն էին։ Այդ մասին հատուկ նշում է Թեոփիլակտոս Սիմոկատտասը. «կայսեր թիկնապահին... հռոմայեցիները լատիներեն լեզվով սկրիբոն են անվանում»(Theoph. Sim.*, I, 14, 7)։ *Որպես կանոն համալրըվում էին բարձր խավերի ներկայացուցիչներից և բացի իրենց ուղղակի պարտականությունից, հաճախ ստանում էին քաղաքական ու դիվանագիտական առաքելություններ։ Նրանք անմիջականորեն ենթարկվում էին էքսկուբիտոսների դոմեստիկոսին։ Ավելի ուշ շրջանում կատարում էին դաշտային բժիշկների դերը։ Նրանց հիշատակում է Մխիթար Գոշը. «Եւ ի սոցանէ՝ (այսինքն «եսկոպտիբայն-էքսկուբիտոսներից—Հ. Բ.) լինին՝ որք սրկրունք...» («Գիրք դատաստանի», էջ 138)։*

*Սկիլիցեսի Շարունակողը չի բացատրում, ի՞նչ ոճիրի մասին է խոսքը։*

*772. Ուզում է ասել «Անմահների գնդի», որն, ինչպես գիտենք, կազմավորվել էր Հովհաննես Չմշկիկի ժամանակ։*

*773. Դրամական փոքրագույն միավոր։*

*774. Նկատի ունի Կոստանդին (Միքայել) Պսելլոսին։*

*775. Բնագրում* ἰσότιμα *(համարժեք), թարգմանում ենք համանուն, քանզի հեղինակն այդ նկատի ունի։ Հունարեն «սով» կլինի* λιμός, *համաճարակը՝* λοιμός, *երկուսն էլ նույն կերպ են հնչում՝ լիմոս։*

*776. Բյուզանդիայում էմբոլոն էին կոչվում մեծ փողոցների կողքին կառուցված պորտիկները՝ ծածկած սյունաշարքերը։*

*777. Այսինքն՝ Նիկեփորը Միքայելին։*

*778. Նիկեփոր Բոտանիատեսի ծագման մասին Սկիլիցեսի Շարունակողի տարբեր ձեռագրեր տարբեր են խոսում։ Քննական բնագրում ընդունված է Ֆլավիոսներ ընթերցվածքը, այնինչ այլ ձեռագրերում (և Ատտալիատեսի մոտ) հանդիպում ենք Ֆարիոսներ։ Հասկանալի է, Բոտանիատեսը ցանկություն է ունեցել իրեն նշանավոր նախնիներ գտնել հին Հռոմում։*

*Հավանական է, որ նա Փոկասներից էր սերում, հետևաբար նա կապ ուներ հայազգի ծագում ունեցող այդ ընտանիքի հետ։ Ատտալիատեսի ասելով Փոկասները 92 սերունդ էին, որոնց թվում և հայազգի կայսր Նիկեփոր II Փոկասը, որի արձանը Կրետեում տեսած լինելով, Ատտալիատեսը նշում է նրա դիմագծերի մեծ նմանությունը Բոտանիատեսի հետ* (*Attal.*, p. *228*)*, որի հիման վրա էլ հաստատում էր նրանց ազգակցական կապը։ Ատտալիատեսը ցույց է տալիս նաև, որ Փոկասները կապ ունեն և իբերների հետ, որոնց Կոստանդին Մեծը Իսպանիայից գաղթեցրեց և բնակեցրեց հետագայում Իբերիա* (*Վրաստան*) *կոչված երկրում, որը մինչև այդ բնակեցված էր «ասորեստանցիներով, ապա մարերով և բավականին անց՝ հայերով»* (*Attal.*, p. *22*)*։*

*779. Տրայանուպոլիսը գտնվում էր հարավային Թրակիայում, Էվրոս* (*Մարիցա*) *գետից արևմուտք, ծովափից 14 կմ հեռավորության վրա։*

*780. Ատտալիատեսը գրում է, թե նա վախճանվեց «կամ բնական մահով, կամ էլ նրան թունավորեցին, ոչ ոք ճիշտը չգիտե»* (*Attal.*, p. *247*)*։ Թեոդորականների հայկական ընտանիքի մասին տե՛ս վերը, ծանոթ. 328։*

*781. Ատտալիատեսի ասելով այս կինն իր ամուսնու Բոտացեսի գծով էր ազգական գալիս Բրիեննիոսին* (*Attal.*, p. *244*)*։ Այս դեպքերի ժամանակ Ատտալիատեսը հենց Ռեդեստոսում էր գտնվում, որտեղ նա կալվածներ ուներ։*

*782. Նաև Պանիդոն։ Քաղաք Թրակիայում՝ Պրոպոնտիսի ափին, Ռեդեստոսից մեկ ժամ ճանապարհ դեպի հարավ։*

*783. Բյուզանդիայում Հերակլիա անունով մի քանի քաղաք կար։ Այստեղ նկատի ունի Թրակիայի Հերակլիան, Պրոպոնտիսի ափին գտնվող, Կոստանդնուպոլսից 60, իսկ Ռեդեստոսից 20 մղոն հեռավորության վրա։*

*784. Ոսկեղջյուրի մոտ գտնվող սբ. Պանտելեիմոնի վանքի անունը կրող կամուրջը։*

*785. Աթյուրա գյուղը փակում էր Ռեգեստոսից Կոստանդնուպոլիս տանող ճանապարհը և միշտ էլ ունեցել է ռազմագիտական խոշոր նշանակություն։ Այժմ կոչվում է Բոյուք Չեքմեջե։*

*786. Ըստ Ատտալիատեսի՝ քսան կենտինարից* (*14.400 դահեկան*) *ոչ պակաս։*

*787. Այսինքն՝ Երուսաղեմից։*

*788. Կոսմաս I* (*1075 թ. օգոստոսի 2-ից մի փոքր հետո—1081 թ. մայիսի 8-ը*)*։*

*789. Այսինքն՝ Բյուզանդական կայսրության մեջ։*

*790. Մուսուլմանների կրոնապետը։*

*791. Մարիամը Միքայել Դուկասի* (*հետագայում՝ Նիկեփոր Բոտանիատեսի*) *կինը վրաց թագավոր Բագրատ IV-ի դուստր Մարթան է և վրաց թագավոր Գիորգի II-ի քույրը, որ Բյուզանդիայում ստացավ Մարիամ անունը։ Աղբյուրներում սխալմամբ ալան է համարվում, բայց և արագդ, որի տակ վրացի են հասկանում։ XII դարի բյուզանդական նշանավոր գրող Հովհաննես Ցեցեսի չափածո պատմության 588—594 տողերում գրված է հետևյալը.*

*«իբերները, աբազգներն ու ալանները մեկ ցեղ են,*
*առաջին կարգում են իբերները, աբազգները՝ երկրորդ,*
*իսկ ալանները գտնվում են երրորդ տեղում։*
*Ցեցեսի մոր կողմից տատի մայրը՝*
*տիրուհի Մարիամը* (*աբազգուհուն նկատի ունեմ,*
*որին շատերը սխալմամբ ալան են կոչում*)*,*
*Կոստանդնուպոլիս եկավ...»* (*տե՛ս Gautier*, La curieuse ascendance, p. 209, sq.: *Նաև՝ Ioannis Tzetzae* Historiae, p. 190—191)*։*

Կայսրուհի Թեոդորան ցանկություն էր հայտնել որդեգրել Մարթային, հայրը նրան ուղարկեց Կոստանդնուպոլիս, բայց Թեոդորայի մահից (1056) հետո ետ վերադարձավ Կոստանդին Դուկասի օրոք (1059—1067) Մարթան Վրաստանից Կոստանդնուպոլիս եկավ Ահարոն Բուլղարի ուղեկցությամբ ու ամուսնացավ Միքայել Պարապինակեսի հետ։ Նրա մասին հատկապես տե՛ս *Нодия*., Грузинские материалы, стр. 98—99։

792. Պրեննետոսը փոքր քաղաք Բյուզանդիայում (Փոքր Ասիա)։

793. Այս Բորիլոսին (Բորիլ) Նիկեփոր Բրիեննիոսն անվանում է «սկյութ» կամ «միուսացի» (հավանաբար՝ բուլղար), որին Բոտանիատեսը, կայսր դառնալուց հետո, շնորհեց պրոտոպրոեդրոսի պատվաստիճանը և նշանակեց էթնարքես (աղդապետ)։ Այս Բորիլոսն է, որ կուրացրեց ապստամբ Բրիեննիոսին, վերջինիս դերի ընկնելուց հետո։

794. Բրիեննիոս մականվան մեջ երկու «ն» կա, Բոտանիատեսի մեջ՝ մեկ։

795. Բրիեննիոսը ցույց է տալիս, որ Ալեքսիոսը սեփական զորք չունենալով, դաշնակից զորք խնդրեց Նիկիա քաղաքում գտնվող թուրքերից, որոնց հրամանատարներն էին Կուտլումուշի որդիներ Մասուրը (Մանսուր) և Սոլիմանը՝ (Սուլայման)։ Նրանք շուրջ երկու հազար հոգի տվեցին և պատրաստվում էին ուրիշներին էլ տրամադրել (տե՛ս *Nic. Bryenn.*, p. 130)։

796. Բրիեննիոսի զորքի աջ թևը (5000 զինվորներ) գլխավորում էր նրա եղբայր կուրապաղատ Հովհաննեսը, որին ապստամբը սխոլերի դոմեստիկոս էր նշանակել։ Ձախ թևը (3000 զինվոր) գլխավորում էր Կատակալոն Տարխանիոտեսը։ Կենտրոնում կանգնել էր ինքը՝ Բրիեննիոսը (Nic. Bryenn., p. 136)։ Ալեքսիոսն իր ուժերը երկուսի բաժանեց, «անմահներին» ու ֆրանկներին գլխավորեց ինքը, իսկ թուրքերին ու խոմատյաններին՝ Կոստանդին Կատակալոնը (*Nic. Bryenn.*, p. 134—144)։

797. Բրիեննիոսին գերեցին Ալեքսիոսի թուրք զինվորները (*Nic. Bryenn.*, p. 144)։

798. Սկիլիցեսի Շարունակողը վարանգներին (վարյագներին) երկու մասի է բաժանում։ Նա խոսում է «պալատի վարյագների» մասին, որոնց տակ նկատի ունի կայսերական գվարդիայում ծառայողներին, և «դրսի վարյագներին»՝ նահանգներում ծառայողներին (տե՛ս *Ahrweiler*, Recherches, p. 34)։

799. Հմմտ. Մատթ. Ուռհ., էջ 213. «Ի թուականութեանս Հայոց ՇԻԵ թագաւորեաց ի վերայ Հոռոմոց Վոտոնիատն և առեալ իւր կին զկին Միխայլին և զդուստր Գուրգէի Վրաց թագաւորին. որ յաղագս աղտեղի պոռնկութեան աոին զմիմեանս»։ Մարիամի մասին Բրիեննիոսն ասում է, թե նա «իբերների իշխան Պանգրատի (Բագրատի) դուստրն էր» (*Nic. Bryenn.*, p. 56)։ Մարիամ «ալանուհու» մասին տե՛ս ծանոթ. 791։

800. Ալբանացիներին նկատի ունի։

801. Ատտալիատեսի ասելով Ալեքսիոսը ոչ թե սեաստոսի, այլ պանսեաստոսի պատվաստիճանն ստացավ (*Attal.*, p. 299)։

802. Չչփոթել Խրիսուպոլսի (Ոսկե քաղաք—Սկյուտար) հետ։ Խրիստուպոլիսը (Քրիստոսի քաղաք) ժամանակակից Կավալլան է Թրակիայում, որի անառիկ բերդը համարվում էր Մակեդոնիայի և Թրակիայի բանալին։

803. Վասիլակի դեմ կռվելու ժամանակ Ալեքսիոս Կոմնենոսի մոտ է գալիս Վասիլակի ազգականներից (οἰκογενῶν) մեկը՝ անունը Թաթիկ (Τατίκιος Nic. Bryenn., p. 150)։ Ալեքսիոսի զորքում էր և ոմն մակեդոնացի, անունը Պետրոս, մականունը՝ Թոռնիկ (Nic. Bryenn., p. 153), ինչպես և Վասիլ Կուրտիկը (նույն տեղում, էջ 154), որ ազգակցական կապ էլ ուներ Կոմնենոսների հետ (տե՛ս *Каждан*, Армяне, стр. 15—16)։ Հենց այս Կուրտիկը գերի վերցրեց Վասիլակի եղբորորդի Մանուիլին։

804. Կոմմանները (ղփչաղ, ռուս. պոլովցիներ) թուրքական քոչվոր ցեղ։

